# ԵՂԻՇԷԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

ՎԱՍՆ

# ՎԱՐԴԱՆԱՅ ԵՒ ՀԱՅՈՑ

ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

ԵՒ

ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՔ

ՄԻՔԱՅԷԼ ՔԱՀԱՅԻ ՔՈՐԽՈՒԳԱՆ



ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅ ՂԱԶԱՐՈՒ

1903 – ՌՅԾԲ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՂԻՇԷԻ

ԵՒ

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՔ

ՄԻՔԱՅԷԼ ՓԱՇԱՅԻ ՓՈՐԹՈՒԳԱԼ.

# ԵՂԻՇԷԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

ՎԱՍՆ

# ՎԱՐԴԱՆԱՑ ԵՒ ՀԱՅՈՑ

ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

ԵՒ

ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՔ

ՄԻՔԱՅԷԼ ՓԱՇԱՅԻ ՓՈՐԹՈՒԳԱԼ





ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐՈՒ

1903 – ՌՅԾԲ

# ՄԻՔԱՅԵԼ ՓԱՇԱ ՓՈՐԹՈՒԳԱԼ

Միքայէլ փաշա ծնաւ յՕրթաքէօյ, 1842ին։ Հայրը, Յովսէփ Փորթուգալ, արքունի ականագործաց վերատեսուչն էր փողերանոցին մէջ, ուղիղ և պարկեշտ անձնաւորութիւն մը, որ իւր խղճին դէմ երբեք չէր մեղանչած, և ինքզինքը յարգել ու մեծարել տուած էր իւր պաշտօնակցաց։ Հայ կաթողիկէ հասարակութեան պատուաւոր անդամներէն մին ճանչցուած էր։

Կանուխէն ջանացած էր տպաւորել իւր զաւկին մտաց մէջ խստաբարոյ առաքինութեան մը առածները, առածներ՝ որոց Միքայէլ Փորթուգալ նախանձախնդիր պահպանողն եղաւ։ Ահաւասիկ օրինակ մը այն բարուց առաքինութեան, որ գոհացում մը եղաւ իւր անձին համար և բարի օրինակ մը զաւկին։ Օր մը, կանչելով զաւակը, Յովսէփ Փորթուգալ կը բանայ իւր գզրոցը և կը տարածէ պատանեկին աչաց առջև բազմաթիւ մեծագին ադամանդներ, զոր իրեն յանձնած էին։ Կը տեսնե՞ս, կ՚ըսէ, այս գանձը որ ահագին հարստութիւն մը կը ներկայացնէ. լաւ, կարող եմ ափ մը առնել ասկէ և պահել առանց նշմարուելու, որով և քեզ մեծ հարստութիւն թողուլ։ Գիտե՞ս ինչ է որ կ՚արգիլէ զիս։ Չեմ մտածեր երկնաւոր պատուհասը հանդերձելոյն, այլ զիս իմ անձիս առջև անարգելու երկիւղը՝ կորսնցնելով զայն որ աշխարհիս ամենամեծ հարստութիւններէն վեր է, այսինքն պատիւս, որ միշտ առաջնորդած է զիս կենացս մէջ։ Մանուկը, չափահաս եղած, պիտի ապացուցանէր թէ այս դասը լաւ ըմբռնած էր։

Միքայէլ Փորթուգալ իւր նախնական ուսումն առաւ Օրթաքէօյի Թաղային Ս. Լուսաւորչեան վարժարանին մէջ, ուր սկսաւ յաճախել երբ վեց տարեկան էր։ Կանխահաս խելացիութիւն մը, անյագ փափաք մը ուսանելու, յարատեւութիւն մը զոր ոչինչ կարող էր կասեցնել, և որ զարմանք կը պատճառէր այնչափ մատաղ

հասակի մէջ, կ'ընէն զինքը միշտ իր դասընկերաց առաջինը։ Մինչ դեռ ասոնք զանազան խաղերով կ'անցընեն իրենց զբօսանաց ժամերը, Միքայէլ դասարանին մէկ անկիւնը քաշուած կը կարդայ կամ դաս կը սերտէ։ Հայրը իր զաւկին այնչափ ուսմանց ցանկութենէն քաջալերուած՝ կ'որոշէ զայն Բարիզ ղրկել, որպէս զի կարենայ հետեւիլ հօն լիկէանի բարձրագոյն ընթացքին։

Մուրատեան վարժարանը, ուր ժամանակին բազմաթիւ հայ երիտասարդներ առած են հաստատուն ուսմունք և գիտութիւն Գաղղիական մեծ վարժարանաց ծրագրին համաձայն, ընդունեցաւ զինքը իր ծոցին մէջ։ Ազնիւ բնաւորութեամբ, ուշիմութեամբ և ինքնամփոփ մտադրութեամբ, ինչպէս նաև հաճելի կերպարանքով, Միքայէլ իսկոյն գրաւեց իր դաստիարակաց համակրութիւնը և աշակերտակցաց սէրն ու յարգանքը։ Հ. Գաբրիէլ Վ. Այվազովսքիի, Հ. Յովսէփ Վ. Թիրեանցի և Հ. Ղևոնդ Ալիշանի նման դաստիարակաց ազդեցութեան ներքև, որք զինքը մասնաւոր գորովով մը կը սիրէին և ուշի ուշով կը դիտէին իր մտաց զարգացումը, արագընթաց կը յառաջադիմէր ուսմանց մէջ։ Քաջ խելամուտ եղաւ ազգային մատենագրութեան, զոր չափազանց կը սիրէր, և առանձինն ուշադրութեամբ ուսումնասիրեց հին ազգաց պատմութիւնն, ինչպէս նաև քաղաքային գիտութիւնները. — երեք առարկան՝ որ պիտի կազմէին պետական և գրագէտ մարդուն հանգամանքը։ Ուսումնասիրեց նաև Գաղղիերէն և Անգղիերէն լեզուներն, զորս կը խօսէր և կը գրէր անսխալ։ Վարժարանին մէջ ընդհանուր տխրութիւն մը տիրեց, ինչ որ կը յայտնէր դաստիարակաց և աշակերտաց տածած սէրն առ Միքայէլ, երբ սա վեց տարիէն ստանալով իր բարձրագոյն ուսմանց վկայագիրը՝ մեկնեցաւ Բարիզէ 1858ին և դարձաւ Կ. Պոլիս։

Այլ այն խթանն՝ որ անդադար կը մղէր զինքը ստանալու նորանոր ծանօթութիւններ, չպիտի դադրէր գործելէ ընտանեկան հանդարտ կեանքին մէջ եւ, այնչափ քաղցր, երկարատև պանդխտութենէ մը յետոյ։ Իսկոյն իրաւագիտութիւն և Տաճկերէն, Պարսկերէն և Արաբերէն լեզուաց ուսմունք յաջորդեցին լիկէանական ընթացքին և գրաւեցին իր բոլոր ժամերը։ Ի զուր մայրը կը յորդորէր զինքն զբօսանք ընելու։ «Մայր, անկարելի է ժամերս կորսնցնել. հարկ է որ մարդ ըլլամ»։ Ահա իր մօր տուած պատասխանը, մինչդեռ իր սիրելի դաստիարակներէն մէկուն կը գրէր Բարիզ. «Հսկայաքայլ կը յառաջանամ Տաճկերէնի մէջ»։

Վերջապէս 1860ին կը սկսի իր քաղաքական ասպարէզին, և Ի. Դրան Թարգմանութեանց Սենեկին մէջ պաշտօն կը վարէ: Քիչ ատենէն արտաքոյ կարգի պաշտօնով Կրետէ կը ղրկուի, ուրկէ ըրած յայտարարութիւններովը ու տեղեկագիրներով ինքզինքը կը ծանօթացնէ: Տարի մը վերջը աղերսագրաց Քննիչի պաշտօնին կը կոչուի Պետական Խորհրդոյ Հանրային շինութեանց ճիւղին մէջ. և յետոյ, 1867ին, Վերատեսուչ կ'ընտրուի Պոլաթիոյ Մաքսատան: Շատեր կը տարակուսէին, նկատելով իր երիտասարդ տարիքը, թէ կարող ըլլայ այնպիսի դժուարին և կարևոր պաշտօն մը վարել: Բայց երիտասարդ Տեսուչը ցոյց տուաւ իր ձեռնհասութեամբն ու յարատեւութեամբ՝ թէ կարողութիւնը չէր պակսեր իր քով, և մանաւանդ թէ երիտասարդական առուգութեամբ զօրացած իր կորովին պէտք կար հիմնապէս բարւոքելու և կանոնաւորելու համար հնաւանդ գրութիւնը՝ զոր կը ներկայացնէր նոյն ժամանակ Պոլաթիոյ Մաքսատունը: Այստեղ կարգուեցաւ Նախագահ Անուղղակի Տրոց Վարչութեան. և յետոյ թողլով այս պաշտօնը, ուր կոչուած էր իր մտադրական ծանօթութեանց համար, ընդունեցաւ Դրոշմաթղթոց Վարչութեան Վերատեսչութիւնը, հաստատութիւն մը՝ զոր կատարելապէս վերակազմեց: Երբ այս Վերատեսչութիւնը ջնջուեցաւ, քիչ ժամանակուան համար անցաւ վերստին յառաջագոյն վարած պաշտօնին, և 1887ին անուանուեցաւ Խորհրդական Ելևմտից Նախարարին: Այլ իր անդուլ ուղղութիւնն ու անխոնջ փոյթը Պետութեան բարգաւաճութեան համար՝ միշտ կը մղէր զինքը իր Վեհապետին և երկրին շահերը անհատական շահերէ գերադաս համարել: Վերջապէս անընդհատ մաքառելէ յետոյ, փոթորիկը կը ծագի և հետեւանք կ'ունենայ Նախարարին պաշտօնէ մէկուսացումը: Յաջորդը կ'ընդունի Նախարարութիւնը՝ պայմանաւ որ Միքայէլ Փորթուգալ քաշուի իր պաշտօնէն: Վեհ. Սուլթանը կը յանձնէ Միքայէլ Էֆէնտիի Երկրագործական Դրամատան Տեսչութիւնը, և միանգամայն Անուղղակի Տրոց առժամեայ մատակարարութեան պաշտօնը, մինչև ցանուանումն Բայիֆ փաշայի:

Երկրագործական Դրամատունը սաղմնային վիճակի մը մէջ կը գտնուէր, երբ Միքայէլ Փորթուգալ կոչուեցաւ անոր Տեսչութեան, և չէր ակնկալուեր արագընթաց զարգացումն ու փայլուն կացութիւնը զոր պիտի ստանար ընդ հուպ:

Ահա ինչ որ կ'ըսէ «Սերվէթ» օրաթերթի յօդուածագիր մը այս դրամատան մասին, որ հիմնուեցաւ 1886ի վերջերը. «Միքայէլ

փորթուգալ անմիջապէս առանձնեց Դրամատան Տեսչութիւնը։ Կազմակերպման կանոնագրութիւնը պատրաստած էր Նուրի Պէյ, յայնժամ Վերատեսուչ Երկրագործութեան։ Մատակարարութիւնը յանձնուած էր Տեսչին, օժանդակ խորհրդով մը, որուն կը նախագահէր Պետական Խորհրդական մը։ Միքայէլ Փորթուգալ այս դրամատան Տեսչութիւնը վարեց երեք տարի, և խիստ բարգաւաճ դիրքի մը հասուց զայն՝ հաստատելով ոչ նուազ քան 450 գործակալութիւն։ Դրամատան արդի կացութիւնը կը յենու նախարարական հրամանագրի մը վրայ, որով հաստատուած է նորոգ կազմակերպութիւնը վերաքննեալ կանոնագրութեան՝ զոր յօրինած է Միքայէլ Փորթուգալ, և յաւելուածական յօդուածի մը վրայ՝ որ պատրաստուած է նոյն Տեսչութեան ձեռամբ։ Կը հետևի ուրեմն թէ Երկրագործական Դրամատունը կերպով մը անձնական ձեռակերտն է Միքայէլ Փորթուգալի, զոր կայսերական հրովարտակ մը կոչած էր Տեսչութեան գլուխը»։

Եւ ինքն իսկ կ՚ըսէր երբեմն. «այս հաստատութիւնը ինձ կը պարտի իւր կեանքը, և կը սիրեմ զայն զաւկի մը պէս՝ որուն ծնունդ կու տաս, որուն զարգացումը անձկանօք կը դիտես, և զոր կը խնամես ու կը զօրացնես ապագայ մաքառումներու դէմ»։ Մի՞ թէ սա այն հաստատութիւններէն է՝ որոց արգիլուիլ կը թուի ամէն զարգացում, անոր համար որ համրուած են անոնց օրերը։ Վեց տարիէ ի վեր կարգուած էր Նախարար Կայսերական Գանձուն, երբ մահուընէն քիչ առաջ արտասուալից աչօք կը լսէր՝ թէ որպիսի վտանգի մէջ կը գտնուէր Դրամատունը։ Կ՚առաջարկուէր հատրակաց դրամագլուխը գործածել երաշխաւորելու համար Եւեւմուից պաշտօնարանին գործողութիւնները։

Սակայն հակայաքայլ յառաջադիմութիւնը, զոր Դրամատունն ունեցած էր Միքայէլ փորթուգալի Տեսչութեան ներքև, անծանօթ չպիտի մնար։

Գաղղիոյ ակէրութիւնն իսկոյն նուիրեց անոր երկրագործական Արժանեաց շքանշանը։ Կը սիրէր նայիլ անոր ազնուակ կիսուածէ աստղին՝ որ իւր աչաց առջև կը բերէր դժուարին աշխատութեամբ պարապած օրերն և կը յիշեցնէր իրագործեալ յոյսերն ու յաջողութեամբ պսակուած ջանքը։ Վեհ. Սուլթանն ալ քիչ վերջը պիտի վարձատրէր անոր անհուն վաստակը և յայտնէր իւր գոհութիւնն ու մեծ վստահութիւնը՝ կարգելով զինքը, 1891ին, Նախարար Իւր Անձնական Գանձուն, Յակոբ Փաշայի մահուընէն յետոյ։

Միքայէլ Փորթուգալ կը թողու Դրամատունն՝ ոչ առանց կասկածելու այդ հաստատութեան ապագային նկատմամբ, որուն վրայ այնչափ կը հպարտանար, և կ'ընդունի գոհութեամբ նոր պաշտօնն, վասն զի կարող պիտի ըլլար ուղղակի Կայսերական անձին օգտին իսկ նուիրել իւր բոլոր ջանքն և ուժը, իւր կեանքն իսկ։

Իւր նախորդին վարչական դրութիւնն ընդունելով, և սակայն խափանելով տեսակ մը զեղծումներ, բոլոր փոյթը կենդրոնացուց մեծամեծ ձեռնարկութեանց հաստատութեան մէջ, ինչպէս Եփրատ գետին վրայ նաւարկութեան ծրագիրն և Սելանիկի քարափանց շինութիւնը։ Այս վերջինը միակ առաջարկութիւնն էր որ ի գործ դրուեցաւ։

Նոյնժամայն նոր մղում մը կու տայ Հերէքէյի Կայսերական գորգի գործարանին, և անոր արտադրութիւնը կը տարածէ Եւրոպիոյ ու Ամերիկայի մէջ իսկ։ «Ինքն է առաջին և գլխաւոր պատճառն ամէն կերպ յառաջադիմութեանց որ հոն կը կատարուին», գրած է Լեւանդ Հերալդ։

Վեհ. Սուլթանը անոր խորհուրդը կ'ուզէ ամէն դրամական գործառնութեանց վրայ, և ստէպ կը հրաւիրէ զինքը նախարարաց խորհրդին ներկայ գտնուելու։

Փոխարէն իւր բազմաթիւ ծառայութեանց և անխոնջ ջանից՝ բարձրացաւ Վէզիրութեան ամենաբարձր աստիճանին (1893), և ստացաւ հետզհետէ Մէճիտիէյի և Օսմանիէյի ականակուռ պատուանշանները, ինչպէս նաև Իմթիազի և Լիագաթի ոսկի ու արծաթ շքադրամները։

Բայց այնչափ վաստակ, այնչափ երկարաձիգ տքնութիւնք անդադար հարուած կու տային իւր առողջութեան, առանց սակայն նախատեսել տալու աղետալի վախճանն, որ տեղի ունեցաւ 1897ի վերջերն, իւր առոյգ հասակին մէջ, և զրկեց Վեհապետն իւր ամենահաւատարիմ մէկ պաշտօնեայէն, ինչպէս նաև Օսմանցի ժողովուրդը՝ իւր իրաւանց յոյժ նախանձախնդիր մէկ անձնաւորութենէն։

*
* *

Իւր արդարասիրութեամբ և ուղղութեամբ, որ զինքը գերի ըրին իւր պարտուց, իւր խորին հմտութեամբ և վերջապէս անձնական բարեմասնութիւններով միայն պիտի կարենար Միքայէլ փաշա, — եթէ չունենար իսկ քաղաքական փայլուն գիրքն ու բարձր պաշտօ-

նը, — դասուիլ առաջին կարգը անոնց հետ՝ որ պատիւ կը բերեն Օսմանեան տէրութեան և Հայ ազգին։

Մեծ եղաւ նա ո՛չ միայն ամենաբարձր աստիճանաւ և տիտղոսամբ ու բազմաթիւ շքանշաններով, այլ նաև մանաւանդ բարոյական յատկութիւններովն, արդարութեան հաստատ սկզբունքներովը և կենաց ու պատուոյ ճշմարիտ և ազնիւ գիտակցութեամբը։ Արդարութիւն, սկզբունք և անաչառ անձնանուիրութիւն զայնս պաշտպանելու համար, ահա իւր բոլոր կեանքը, զոր սիրեց իւր հանրային պաշտօնավարութեան, ինչպէս նաև ընտանեկան յարկին մէջ։ Կը սիրէր կեանքը, վասն զի կարող կ՚ըլլար զարգացնել, ազնուացընել, և գործածել այն պատուական ձիրքերը՝ զոր բնութիւնը շնորհած էր իրեն շռայլաբար։

Ոչ մէկ վայելք, ոչ մէկ ընկերական զբօսանք այնչափ քաղցր եղան, որչափ ընտանեաց մէջ անցուցած ժամերն, երեկոյին կամ տօնի օրերը, մօրս քով, իւր հինգ զաւակներէն շրջապատեալ։ Քոյրերս շատ փոքրիկ էին զինքը կարենալ հասկնալու համար. անոնց բաժինն էր գգուանքը, մինչ եղբօրս և իմ բաժինս էին իւր խօսքերը՝ զոր կ՚ընդունէինք իբրև ճշմարտութիւն և կենաց կանոն. այնչափ մեծ էր մեր հաւատքն անոր վրայ։ Եղաւ ինքը մեր ամենասիրելի բարեկամը. համբերութեամբ և ժպիտ ի շրթունս մտիկ կ՚ընէր մեր այլ ընդ այլոյ եռանդուն տեսութեանց՝ պարագայից թողլով զայնս մեղմացնելու հոգը։ Ստէպ բարձրաձայն կը կարդար մեզ. կարծես իւր առոյգ արտասանութիւնը կը պարզէր խրթին կէտերը, և իւր քաղցրահնչիւն ձայնը կը թափանցէր մեր սրտին խորերը։ Ապա կը մեկուսանար իւր մատենադարանին մէջ, որ մեր վրայ կ՚ազդէր իբրև նուիրական տեղ մը, և ուր կը մտնէինք լուռ ու մունջ ընթրիքէն յետոյ, երբ գիշերուան ժամերն յառաջացած էին, դիպող վայրկեանին ըսելու համար. «Հայր, բարի գիշեր», և խլելու հանգստեան համբոյրը։

Այն մատենադարանին մէջ անցուցած ժամերուն արդիւնք եղաւ «Եղիշեայ Քննադատութիւնը», զոր սկսած էր 1878ին, և զոր աւարտեց 1886ին, թափելով անոր վրայ իւր բոլոր հմտութիւնը՝ պատմութեան, բանասիրութեան, կրօնագիտութեան և քաղաքագիտութեան մէջ։ Այն տքնութեանց արդիւնք եղան նաև բազմաթիւ գրութիւններ իւր ժամանակին քանի մը անձնաւորութեանց և զանազան պատմական դիպուածոց վրայ. ինչպէս նաև Կրետէի պատմութիւն մը, և Պարթևաց պատմութիւն մը, որուն առաջին հատորը միայն աւարտած է և որք կը կազմեն իւր անտիպ երկերը։

Պետական մարդը, որ այնչափ յարգանք և հիացում կ'ազդէր ամենուն, և հմուտ գրագէտը՝ մնաց միշտ պարզ և խոնարհ իր բարձր գիրքին մէջ: Դիւրամատչելի եղաւ ամենուն, և մանաւանդ խոնարհներուն. միշտ լսեց անոնց խնդիրքը և ջանաց գոհացում տալ անոնց. բայց երբեք չըրաւ խոստում մը զոր ձեռնհաս չէր կատարել: Շատեր կու գային խորհուրդ հարցնել իրմէ. առանց ընդմիջելու մտիկ կ'ընէր իր խօսակցին, և անգամ մը խնդրոյն տեղեկանալէ յետոյ՝ կարծիքը կու տար ու կը պարզէր զայն ծանրութեամբ և մեկին ոճով: Չէր վարաներ ճշմարտութիւնը յայտնել մեծամեծաց անգամ, երբ ատոնք շեղէին արդարութենէ: Իր հմտութեամբն և յատուկ բացատրութեամբ պաշտելի եղած էր Մէքթէպի աշակերտաց, որ անհամբերութեամբ կը սպասէին իր դասախօսութեան ժամերուն, և անոնց ու անոնց յաջորդներուն թողուցած է ելեւմտական ուսմանց վրայ պատրաստուած դասախօսութիւնները:

Վերջապէս, կարելի է ըսել Միքայէլ փաշայի համար՝ թէ ոչ ինչ կը պարտէր բախտին, և թէ ինքն իսկ պայծառացուց իր աստղը:

*
* *

Երբ անկենդան մարմնոյն քով, իր լայն մարմարեայ ճակտին վրայ խոնարհած, կը մտածէի Արարչութեան այնչափ գեղեցիկ հրաշակերտին անհետացման վրայ, և կ'ողբայի մեր անդարմանելի կորուստը, թուեցաւ ինձ լսել իր սիրելի ձայնը, որ կ'ըսէր ինձ. «Ձեզ կը թողում յիշատակ մը և օրինակ մը մշտնջենական»:

ԱՇԽԷՆ ՓՈՐԹՈՒԳԱԼ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ



*Ա. Եղիշէ իբրեւ մատենագիր և Պատմութիւն Վարդանանց։ — Բ. Միհրներսեհ։ — Գ. Փոքրն Թէոդոս և Արեւելեան կայսրութիւն։ — Դ. Յազկերտ և Սասանեան իշխանութիւն։ — Ե. Վասակ։ — Զ. Քաղաքակրթութիւն Հայոց։ — Է. Եղիշէի այլ երկասիրութիւնքը։ — Ը. Կենսագրութիւն Եղիշեայ։ — Թ. Զանազան տպագրութիւնք և Թարգմանութիւնք։*

## Ա

*Եղիշէի «Վարդանն և Հայոց Պատերազմը» աւելի դիւցազներգական քերդուածոյ կերպարանքն ունի քան պատմական դպրութեան։ Երբ ազգի մը կենաց մէջ կը պատահի դէպք մը որ ամենուն միտքը կը գրաւէ, ու արանց՝ կանանց և տղայոց եռանդը կը բորբոքէ, այնպէս որ ուրիշ ամենայն հոգ և պարապումն ի բաց Թողլով զայն միայն կը մտածեն ու Նորա համար կը շարժին ու կը գործեն, այդպիսի վիճակի մէջ գտնուող ազգը ի հարկէ դիւցազնական Նահատակութեանց կը ձեռնարկէ։ Այս մեծ դէպքս սրտերուն մէջ կարգէ դուրս բռնութեամբ հաստատուած Նոր և սուրբ հաւատոյ դէմ յարուցեալ վտանգին երկիւղն էր, որոյ Ներքեւ այլ կը ծածկուէր քաղաքական ազատութեան տենչը։ Եղիշէ որ քարտուղար և զինուորակից[1] ըլլալով Վարդանայ, ժամանակին իրաց կատարեալ տեղեակ և գործոցն ալ մասնակից էր, որում բաժին ընկած էր վառվռուն երեւակայութիւն, անկեղծ ջերմեռանդութիւն, զգայուն*

1. Սոփերք հայկ. — հատ. ԺԱ, էջ 39։

և դիւրատիպ բնութիւն, ընտել և սիրելի բարք՝ որով Հայոց աշխարհին խիստ շատ գաւառաց մէջ հիւրընկալութիւն գտած էր, որ ոչ միայն նախարարաց և պատերազմողաց հետ անձամբ ծանօթացեր էր, այլ և յաւագագոյն և ի դեռահասակ «կանանց երանելի առաքինեացն և կապելոցն և անկելոցն ի պատերազմին՝ հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչէր», այդպիսի սա նոյն ժամանակին զգացմանց և գաղափարաց անձնաւորութիւնն և իր գրուածն այլ ընդհանուր վիճակին ճշմարտատիպ պատկերը միայն կրնար ըլլալ։

Աւելորդ է հարցնել՝ թէ Եղիշէ պատմութի՞ւն ուզեց գրել թէ դիւցազներգութիւն. Նմանօրինակ պարագաներու մէջ ուրիշ բանաստեղծ հանճարներու արտադրածն՝ յետոց կողմանէ ազգային երգոց կարգը գրուեցան. Թէպէտ սոցա հեղինակները մի միայն եղելութիւնը պատմել ու իրենց ազգակցացը աւանդել խորհեր էին, և անհմուտ կամ անտարբեր իսկ էին դիւցազներգութեան կանոնաց։ Եղիշէ ալ տեսածը և զգացածը առանց արուեստի մեզ երկրորդել ուզեց. բայց եթէ դիւցազներգութիւնը նշանաւոր ձեռնարկութեան մը քերթողական պատմութիւնն է[1], իր երկասիրութիւնը ազգային վիպի ամենայն հանգամանքը ինքիրեն ունեցաւ։ Իւր արձակ շարադրութիւնն անգամ այնպիսի ներդաշնակութիւն և չափակցութիւն մը տուաւ, զոր ի զո՜ւր կը փնտռեմք ոսկեդարեան ուրիշ ընտրելագոյն մատենագրաց մէջ։

Արդարև նիւթ ընտրուած գործոյն շքեղ և ահաւոր երևոյթ մը ընծայելու համար մտացածին կազմած կամ մեքենայ մի յօրինել, և ընթերցողին միտքը հանգիստ տալու համար՝ զուարճալի դրուագներ միջարկել, սովորական եղած է համայեղ քերթուածոց մէջ։ Առաջնոյն պակասը զգալի չէ յԵղիշէ. Նորա պատմած իրաց սկզբնապատճառը Պարսից զՔրիստոնէութիւնը ջնջելու կամքն էր։ Ուստի պարտ էր մեզ ցուցանել հանգիտապէս՝ թէ ո՞յք և ինչպէս յղացան այդ չար մտածութիւնը, որոյ վերայ պիտի շրջէր բոլոր իր գրութիւնը։ Մինչ աւելի մօտ ժամանակի քերթողք, Նմանօրինակ պարագայից մէջ, սանդարամետից ժողով մը հնարեցին, Եղիշէ աւելի պարզութեամբ և ճշմարտութեամբ մեր առջևը կը գումարէ Մոգուց ակումբը՝ զոր կը նախագահէր անձամբ արքայից արքայն, և յորում հաստատուեցաւ ստուգապէս այդ խորհուրդը։

1. Blair's Lectures on Rhetoric and Belles Lettres. 507.

Քրիստոնէական կրօնքը և դարուն բարեպաշտական զգացմունքը բնական կերպով կը հայթայթէին նմա հարկաւոր և վայելուչ մեքենայն. նահատակութեան մեծ խնդրոյն մէջ՝ միայն մարդիկ չէն որ կը գործեն. երկնային և անդնդային զօրութիւնք այլ կը մասնակցին նոցա:

«Եթէ գիտէիք և երևէր ձեզ յայտնի», կ'ըսեն Հայք արեգական պաշտօնն յանձն առնող նախարարաց՝ որք դառնային յԱպար աշխարհէ, «սուգ առին երկինք ի վերայ ձեր, և թաղծեցաւ երկիրս ի ներքոյ ոտից ձերոց: Հրեշտակք ի վերուստ են ձեզ բարկացեալք, և ի յերկրէս՝ մարտիրոսքն են ձեզ ցասուցեալք»:

Երբ աշխարհին մեծ ամրոցները քրիստոնէից ձեռքը կ'անցնին ու մոխրապաշտութիւնը կը վերնայ, բնութիւնը իւր կանոններէն դուրս կ'ելնէ, և յերկինս մեծ լուսաւորութիւն կը լինի.

«Բանզի ուր ոչ էր ակնկալութիւն՝ եթէ զանուն Աստուծոյ ոք յիշեսցէ, արհաւիրք մեծ անկանէին ի վերայ նոցա, և ամենայն մարդ պատմէր ընկերի իւրում տեսիլս նորս և զարմանալիս: Այնպէս և աստեղք ի յերկինս երևէին յոյժ լուսալից պայծառացեալ, զոր ոչ ունէին յառաջին բնութեանն»:

Իսկ երբ մոգերը Հայաստան կը մտնէին, «Լինէր զունդ զօրաց բազմաց, և չարաչարն սատանայ իբրև զօրավար ի մէջ նոցա երևէր, և անդադար յորդորելով զամենեսեան ձեպել փութացուցանէր»: Նոյնպէս Վասակ՝ իւր նենգութիւնքը գործադրելու սկսած առենը, «ի ձեռն էառ զսատանայ իբրև զվահան, և ագաւ զնա իբրև զրահս, և եղև իւր զինուոր կատարեալ կամաց նորա»:

Անշուշտ փափագելի էր որ Եղիշէ իւր գլխաւոր նահատակաց միայն՝ ընտանեացը տուած հրաժեշտին առթիւ, տանուտերաց ամրոցներուն ներքին վիճակը մեզ ցուցանէր, կամ դրուատելով կանանց միայն արտաշարժ մէկ դէպքը ի մէջ բերէր: Այդպիսի մի կամ երկու դրուագներ կրնային մեծ գեղեցկութիւն մը յաւելուլ և փոփոխութիւն տալ գրութեան, առանց ճշմարտութենէ խոտորելու: Այդպիսի պակաս մը թերութիւն մի այլ ըլլայ, գրուածոյն ոչ էութիւնը կը փոխէ և ոչ կատարելութիւնները կրնայ մեզ մոռցնել տալ:

Գրութեան նպատակը յաջողութիւն կամ յաղթանակն է. բայց ոչ մարմնաւոր իշխանութեան վերականգնումը, այլ Քրիստոնէութեան ազատութիւնն և վրայ ելնելն յերկիրն Հայոց. այդ ալ ոչ զինուց առաւելագոյն զօրութեամբ ու Պարսից բանակները ի սպառ խոր-

տակելով պիտի ըլլար, այլ մարտիրոսութեամբ։ Միջոցը գործադրեցաւ ու նպատակը ձեռք բերուեցաւ։

Եղիշէի «Վարդանն» ուրեմն դարու մը գլխաւոր անցքը ժամանակագրութեամբ և ցուրտ դատողութեամբ գրուած յիշատակարանը չէ. այլ նշանաւոր մէկ դէպքի և անոր մէջ հանդիսացող անձանց կենդանի ներկայացումն։ Բնաւորութիւնները այնպիսի զօրաւոր գոյներով կը նկարագրէ, որ կարծես տեսնել աչօք Սասանեանց միահեծան իշխանակալը՝ բազմեալ ի հրապարակին, ու կը լսես դու ալ նորա «ահագին ձայնը» որ «շարժէր և տատանէր զամենայն բազմութիւն զօրացն, իբրեւ զհողմն սաստիկ զի բաղխիցէ զծով մեծ»։ Վարդանայ քաջութիւնը զքեզ կը վառէ իբրեւ թէ իրեն հետ զինուորակից ըլլայիր, ու կը հարուիս անոր սիրովն՝ որպէս Եղիշէն։ Վասակայ՝ նենգութիւն դաւելու համար՝ խիզախ, ի պատերազմի՝ երկչոտ, և աշխարհավարութեան մէջ գեղծ ըլլալը կ'իմանաս։ Տէր Միհրներսեհի խորագիտութիւնը և երկայն ատեն աւագ պաշտօնի մէջ ստացած փորձառութիւնը և Արեաց տէրութեան մէջ ունեցած մեծ ազդեցութիւնը կը հասկնաս։ Սակաւ մի առ մի պիտի քննեմք սոցա իւրաքանչիւրին բարքը՝ որպէս կը ցուցանէ մեզ Եղիշէ։ Սոքա երբ ի հրապարակ կ'իջնեն, իրենց բնութեանը և կրիցը համեմատ կը բարբառին և գործեն միշտ. հեղինակն ալ աւելի գիւր դիւցազանց կը խօսեցնէ քան ինքը կը խօսի։ Յայտ է թէ ազգային կենսական մեծ եղելութեան մը մէջ երեւելի եղող անձինք, եթէ սիրելի ըլլան կամ եթէ ատելի ընթերցողաց, անոնց խօսքը աւելի կենդանութիւն կու տայ գրութեան և աւելի համակրանս կամ բարկութիւն կը հրաւիրէ՝ քան եթէ հեղինակն ինքզինքը մտիկ ընել տայ նոցա տեղ։ Վասն որոյ խօսակցութիւնք բնական կերպով բաւական մեծ տեղ մը բռնած են յԵղիշէ։

Հայաստանի կրօնական յուզման մէջ՝ եռանդեամբն ամենէն նըշանաւոր և խորհրդոյ և բարբառոյն բռնութեամբը իրաց մղումն տուողն երէց մի էր, որոյ անուամբն յորջորջեցան աստիճանաւ շատ աւելի վեր եկեղեցականք ալ։ Մինչ ժողովուրդը դարուց ի դարս Վարդանայ անուամբը փառաւորեց զաշխարհիկ զինուորս և զզօրագլուխս՝ որք սպարապետին մարտակից կամ վկայակից եղան, «Ղեւոնդեան» կոչեց այն սրբակրօն, արի ուխտաւորներն՝ որք իրենց արեամբ հաստատել ուզեցին իւրեանց քարոզած կրօնին ճշմարտութիւնը։ Ղեւոնդ որ քան զամենեսին ճոխացեալ էր կրօնական գիտութեամբք, և զոր պարսիկք եւս «աւագագոյն խրատատու և պատ-

ճառ համարէին ամենայն իրացն Վարդանայ և գործոցն որ ի ժամանակին յայնմ գործեցան յաշխարհիս Հայոց[1]», ալեւոր ծերունի մի էր, «ախտացեալ մարմնով» (անշուշտ այնպիսի հիւանդութեամբ մը որ գրնութիւնը կը դառնացնէ), «և ձեռնարկութեամբ բժշկաց չէր գտեալ դառողջութիւն, և հիւանդոտ կենօք ձանձրացեալ էր և փափագէր ի մահ քան ի կեանս[2]»։ Այսնք իր դաշնակեաին Դենշապհոյ խօսքերն են, բայց և այնպէս կը ցուցնեն զպայման խառնուածոյ յորում կը գտնուէր մարմնապէս Ս. Ղևոնդ, և որ իր բարոյական վիճակին վրայ ալ պէտք էր ներգործել։ Տարակոյս չկայ թէ նոյն իսկ աստուածային նախանձը անհատին բնութեամբ և հանգամանաց համեմատ տարբեր երեւոյթներ կրնայ ընծայել։

Ղևոնդ առաջին անգամ կը ներկայանայ մեզ երրորդ Ցեղանակին մէջ։ Հարիւրաւոր մոգեր զօրաց բազմութեամբ ի Բագրեւանդ կը հասնին, ի գիւղաքաղաք մի մեծ՝ յԱնգղ, և կ'ուզեն կարել եկեղեցւոյ դուռը և կրակի պաշտօն հաստատել։ Ղևոնդ, որ անդ էր յայնժամ, առանց նախարարաց հաւանութիւնն առնելու, առանց անգամ եպիսկոպոսաց խորհուրդ հարցնելու, կամ թշնամւոյն և իր զօրութիւնը կշռելու, անմիջապէս կը հաւաքէ զժողովուրդը, ջարդել կուտայ վիրգերով զկատաղածոլս մոգաց, և կը սարսափեցնէ ու կը ցրուէ զամբոխն։ Այդ եղաւ պատմութեան սկիզբը։

Երկրորդ անգամ կը տեսնենք զՂևոնդ հինգերորդ Ցեղանակին մէջ, երբ Վարդանայ բանակին հետ Աւարայրի դաշտը երթալով, պատերազմին նախընթաց գիշերը զօրաց կը խօսի։ Ճառիս առաջին կէսը գուցէ Եղիշէի ամենէն տկար մասն է. բայց հետզհետէ մտածութիւնները պարզացյիցւ և խօսողին բարուց համեմատ կը սաստկանան։ Վերջին կիսոյն մէջ բացատրուած զգացմունքն այնպիսի ուժգին դառնութեամբ խմորեալ են ու մարդկային տառապանքը, նոյն իսկ բնութեան տկարութիւնքը՝ որպէս քաղց և ծարաւ, կամ եղանակաց փոփոխմունքը՝ զորս ամենիմաստ Արարիչը միացուցած է պէսպիսի ախորժից և հեշտութեանց հետ՝ զկեանս սիրելի ընելու համար մարդկան, այնքան սեւ գոյներով նկարագրուած են, որ ամենէն հոգեառնդն կրօնասիրութիւնը միայն չի բաւեր զայն մեկնելու համար։

1. Փարպ. 1873, էջ 304: — Դենշապուհ ալ Ղևոնդի կ'ըսէ. Մեր լսեալ է վասն քո՛ թէ օրինաց քրիստոնէից իբրեւ դբեղ որ անղեակ չէ. և ի քո խրատուէ աւելի եւս կորեաւ աշխարհն Հայոց. Նոյն 297:

2. Եղիշէ, Ը. 68:

Ութերորդ Ցեղանակին մէջ նոյնօրինակ զգացումներ կը դնէ Եղիշէ Ղեւոնդի բերանը. «Ո՞չ ահա ամենայն լի են տեսիլք. է որ ի ներքոյ, և է որ արտաքոյ. ցուրտ և տօթ, քաղց և ծարաւ և ամենայն աղքատութիւն կարօտութեան: Արտաքոյ՝ անիրաւութիւն, յափշտակութիւն, գէճ պղծութիւն անառակ յարձակմամբ. ի ներքոյ ամբարշտութիւն, ուրացութիւն, աղխտութիւն, անդարձ մոլորութիւն ի կամաւոր ազատութենէն»:

Վերջապէս երբ անապատին մէջ ատեանը կը գոցուի ու դահիճք կը պատրաստուին կատափելու, այն վերջին ահաւոր վայրկեանին ալ Ղեւոնդ կ'երեւի մեզ իբրեւ առաջնորդ և հրամանատար նահատակութեան գործոյն. ինքն երէց՝ կը հրամայէ Կաթողիկոսին. «Մատիր, յառաջեա ընդդէմ սրոյն, զի դու աստիճանաւ ի վեր ես քան զամենեսեան»:

Որքա՜ն կը տարբերի Ղեւոնդեայ անյողդողդ և անընտել հանգէն՝ Սահակայ Ռշտունւոյ վարպետ և խոհեմ վարմունքը:

Եղիշէի ամէն ընթերցողք գիտեն զԱւանձար, գեղուհն Ամատունի, որ Ալիշան Վարդապետին գեղեցիկ Տաղերէն միոյն նիւթ եղած է, և որոյ համար սակայն մեր հեղինակը ութ տասը փոքրիկ տողեր միայն յատկացուցած է: Գիւթական զօրութիւն մի կայ այդ տողերուդ մէջ. թէպէտ եթէ մի առ մի քննեմք զնոսա, կարգէ դուրս բան մը չենք գտներ: Տեսայ մատանւոյ փոքրիկ զմրուխտի մը վրայ փորագրուած հին Աթենաս մը, որ վահան ի ձեռին օդերուն միջէն կ'իջնէ ի պատերազմ. եթէ քանդակին իւրաքանչիւր մասունքը զննես, դժա իրենց փոքրկութեանը մէջ չեն կրնար քու հետաքրքրութիւնդ յագեցնել. բայց ամբողջին այնպիսի կորով մը, հոգի մը տուած է անանուն արուեստագործը, որ կը տպաւորուի մտացդ մէջ, և կարծես թէ ահա հեռուն այերց մէջ կը տեսնես բարկացայտ դիցուհին որ կը սահի կու գայ դէպ յերկիր:

Մէկ քանի տող դարձեալ բաւական են ծանօթացնելու համար երկու ուրիշ անձինք ալ. զԳարեգին և զվաճառականն Խուժաստանցի:

Եղիշէ իւր նիւթովն այնքան վառեալ է՝ որքան կրնայ պահանջել դիւցազներգակ քերթողէ. գրութիւնը այնչափ յարատեւ եռանդն, աշխոյժ երեւակայութիւն, վսեմ և գեղեցիկ իմաստներ կը պարունակէ, որչափ պէտք են տաղաչափեալ քերթուածոյ: Նոյն իսկ քրիստոնէական և մոգական վարդապետութիւնք, յորդորակք և պայքարք, որ այսօր մեզ քիչ քերթողական կ'երեւին, այն ժամանակին ամենէն աւելի ուշագրաւ, կարեւոր և ախորժական խնդիրներն էին:

Նկարագրութեանց մէջ կը գերազանցէ Եղիշէ. Այստղու պատերազմը այնչափ աշխոյժ և կենդանի է որքան Հոմերոսինները. անն յանդիման կը տեսնես զօրավարաց կարգադրութիւնքը, պարսկական և հայ զօրաց տեսակները և զինուց տարազքը։ Գիտէ շատ սակաւաթիւ մատենագրաց նման, խառնել յանկարծ զուարճալին և Հեշտալին՝ տխուր և վսեմին մէջ։ Բազմակոյտ խոցելոց մնչիւնը և բեկելոց մռնչիւնը ականջիդ հնչեցուցած ատենը, կու յիշեցնէ քեզ «գարնանային ժամանակը և ծաղկալից դաշտքը», որով յորդահոսան արեանց գոլորշիէն թմրած և վիրաւորներու թաւալգլոր խաղալէն սողալէն, վահանաց կոփմանէն և լարից աղեղանց ճայթմանէն և մեծ գալարափողոց հնչմանէն ափշած միտքը՝ յանկարծ կը սթափի ու զանազակկիծ ողիտին սաստկութիւնը կ'ըմբռնէ։

Իսկ երբ Հայոց փափկասուն Տիկնանց վիճակին սիրտդ ճմլած, կը սպասես որ սոցա ամուսինքն ժամ յառաջ դառնան ի Հրեւոյ (Հերատ քաղաքն արդի Աֆղանաց),

«Բազում ձմերաց հալեցան սառնամանիք, եհաս գարուն և եկին նորեկ ծիծեռունք, տեսին և խնդացին կենցաղասէր մարդիկ, և նոքա ոչ երբէք կարացին տեսանել զանձկալին իւրեանց։ Ծաղիկք գարնանայինք յիշատակեցին զպատկառէր ամուսինս նոցա, և աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի գեղ երեսաց նոցա։ Սպառեցան բարակք որսականք, և խցեալ կուրացան արշաւանք որսորդաց»։

Կամիս գաղափար մը ունենալ Սասանեան Արքայից արքային արքունեացը վրայ. ահա թագաւորին սիրելիներէն մէկը հիւանդ է, և բժիշկ կը կանչեն որ արտորնօք պալատ կ'երթայ. դու ալ ընկերացիր նմա.

«Եւ հասեալ ի մեծ հրապարակն՝ տեսանէ զբազմութիւն պատուաւորացն և զառողջութիւն գեղ՚ցիկ երիտասարդացն, և եւս ի ներքս մտուցեալ ի սրահն արքունի, և անդ տեսանէ զամենայն պատուաւորացն զչքնաղ և զքանչելի տեսիլն, և ոչ ինչ զարմանայ ընդ հրաշակերտ տեսիլն։ Նաև եթէ զահոյք ականակապք իցեն և համակ ոսկեղէնք՝ յորոց վերայ հիւանդն անկեալ դնիցի, չէ ինչ նմա փոյթ զայնմ ամենայնէ. այլ ի բաց հրամայէ տանել զանկեհուռ վերարկուսն, և ձեռն ի ներքս տարեալ, զննէ զամենայն մարմինն, եթէ ջե՞րմ իցէ բնութիւնն, և եթէ սիրտն ի տեղւոջն հանգի՞ստ կայցէ, և կամ թէ լեարդն կակու՞ղ իցէ, և կամ թէ շարժք երակացն յարմա՞ր իցեն. և ըստ նմին զդարման բժշկութեանն առնէ՝ շնորհելով նմա զառողջութիւնն»։

Որքան չի հոգնիր և չի տկարանար Եղիշէ երկայն նկարագրութեանց մէջ, նոյնքան ազդու է կարճերուն մէջ։ Բաղդատէ Տիկնանց նկարագրին հետ որ առաջին տեսակին կը պատկանի, ասդա արանց համար գրուածը.

«Առաւել ընդ այն եմք զարմանչացեալ, զի մարդիկ փափուկ բերբեւ գնտոտ՝ ընդարձակատունս բնակիչք ճոխանեաց յարկաց՝ եղեն բնակիչք խորշակահար դաշտաց։ Որ զօրէն ազատ եղանց շրջէին ի մէջ ծաղկաբեր յարկաց, ընկեցան ի բացակեզ աշխարհն արեւելից, կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք»։

Ինչպէս որ տեսանք, Եղիշէի մէջ արտաշարժ և գողտրիկ զգացմունք պակաս չեն. բայց վսեմը և զօրաւորը շատ աւելի յաճախ են։ Առաջին եօթն յեղանակքն, ի բաց առեալ մէկ քանի վիճաբանական կամ խրատական հատուածները, ծայրէ ի ծայր վեհ և կորովի իմաստներ և պերճ և բարձր տաղացուած ունին։ Նմանութիւնները վսեմ են. դիմառնութիւնք, հակադրութիւնք և ուրիշ զանազան ձեւք բանից լի են քերթողական աստղութեամբ. բացատրութիւնքն երբեք չեն նուաստանար։

Կարելի չէ Եղիշեայ գրութեան գեղեցկութիւնը մի առ մի դնել աստ. գոյս միայն յիշեցնեմք, որ երբ Յազկերտի վրայ խօսի, կամ նորա հրամանները և սպառնալիքը ի մէջ բերէ, իմաստները սովորականէն աւելի կը բարձրանան։

Նաբուքոդոնոսոր օր մը իւր քաղաքին պարսպաց վրայ ճեմելու ատենը ըսեր էր. «Ո՞չ այս այն մեծ Բաբելոն է զոր ես շինեցի ի տուն թագաւորութեան հաստատութեամբ զօրութեան իմոյ՝ ի պատիւ փառաց իմոց»։ Յազկերտ՝ երբ Հայոց Տանուտեարք կը մերժեն զիւր հրամանն ու կը յայտնեն նմա թէ պատրաստ են ի մեռանել..., «Ոչ կարէք աւերել, ասէ, զանխար ամուրս իմ, և ոչ որում ցանկացեալդ էք՝ վաղվաղակի տամ գտանել ձեզ»։

Բնաւորութեանց և բարուց սեփականութենէն, իմաստից և ըզգացմանց վսեմութենէն, տաղացուածոց և ոճոյ պերճութենէ զատ, Եղիշէի «Վարդանն» սքանչելի յատկութիւն մի ալ ունի, այս է ժամանակին հանգամանաց, զուգակից դիպաց՝ սովորութեանց՝ ճըշմարտատիպ պատկերն ըլլալ։

Թէպէտ պատմութիւնը և Եղիշէ ինքնին մեզ կը գրուցեն՝ թէ Արշակունեաց թագաւորութեան բառնալէն ետքը «ի նախարարան անկանէր իշխանութիւնն», Հայոց աշխարհին մէջ իշխեցողք՝ չէին նախարարք և ոչ իսկ մարզպանն, այլ Եկեղեցականութիւնը, որ

կարող էր՝ եթէ հարկ ըլլար՝ ամենայն բնական և քաղաքական կարգ և կապ խզելու և նոցա տեղը հաստատելու հետեւեալ գարհուրելի օրէնքը.

«Ձեան եղբօր հարազատի ի մերձաւոր իւր լիցի՝ որ անցեալ իցէ ըստ ուխտ պատուիրանին Աստուծոյ, և մի խնայեսցէ հայր յորդի. և մի ակն ածուցէ որդի հօր պատուոյն. կին կռուեսցի ընդ ամն ամուսնոյ, և ծառայ դարձցի ընդդէմ տեառն իւրոյ. օրէնք աստուածայինք կացցեն թագաւոր ի վերայ ամենայնի, և ի նմին օրինաց ընկալցին յանցաւորք զպատիժս դատապարտութեան»: Որոյ ձայնին ամենեքեան ոտք կ'ելլէին «զինեալք և սաղաւարտեալք, սուր ընդ մէջ և վահան ի ձեռին՝ ոչ միայն արանց քաջաց, այլ և կանանց առնականաց», և որ մէկ գիշերուան մէջ վառեց կազմեց երեք բանակք¹: Եղիշէ զքեզ հանդիսակից կ'ընէ մոգաց խորհրդոյն և հմուտ նոցին օրինաց և բարուց: Աչացդ առջեւ՝ մեծ հազարապետը ատեանը նստած՝ հրապարակաւ կը հարցափորձէ ու կը դատէ հետզհետէ՝ իշխանութեան դէմ զէնք վերցնող նախարարները, եպիսկոպոսները և զՂեւոնդ: Սասանեանց դատաստանական և վարչական ձեւերն տեղեակ կ'ըլլաս: Դրացի ազգաց ո՞վ ըլլալնին ու Հայոց հետ ունեցած վերաբերութիւնքը կը հասկնաս: Կը տեսնես դարձեալ Հայոց կանանց վիճակը, իրաց մէջ նոցա ունեցած մասնակցութիւնը, առտնին կեանքը, տներնուն ձեւը, սենեակներնուն զարդարանքը և կարասիքը, կերակուրներուն տեսակներն և զբաղմունքը: Նոյնպէս կը ցուցանէ քեզ՝ թէ Հայոց աշխարհին ժողովուրդը քանի կարգի մարդկան կը բաժնուէր, և թէ ինչ էր իւրաքանչիւրին վիճակն ու գործը. ո՞րչափ հարկս կը հատուցանէին. ինչ էին շինականաց տառապանքը և հոգերը. բարեկեցիկ ճոխութիւնը ինչ աստիճանի հասած էր ազատաց մէջ. երկիրը ո՞րքան հարստացած էր:

Վերջապէս դոցա ամենուն հանդիսարանն եղող աշխարհին «անտառախիտ» և «անլոյս» վայրերն, «ձիւնեղէն լերինքն», սառնամանիքը, ձմերային սարսափելի բուքերը, «ծաղկաբեր» բլուրները, «անկասկածելի» և «անխար» ամրոցներն, «ազատ» էրէքն, բնակչաց որսորդութեան սէրը, ազգու յիշատակութեամբք քեզ կը ներկայանան:

Զայդոսիկ և այլ բազմապիսի տեղեկութիւններ, զորս մի առ

1. Եղիշէ, Գ. 10, 32.

մի ի համար տաս արկանել անկարելի է, կը գտնես յԵղիշէ. բայց նա ասոնց ամէնքը քեզ հասկցնելու դիտմամբ յառաջ չբերեր, այլ երկրորդաբար և գրեաթէ պատահմամբ։ Իրեն միակ նպատակը՝ իր և Աստուծոյ սիրելեաց նահատակութիւնը պատմել է. բայց որովհետեւ հանճարոյն եզական մէկ յատկութեամբը ամենայն ինչ կը տպաւորէր իր մտացը մէջ, քեզ ալ կը հաղորդէ ամէն տեսածները։ Նման քաղաքի մը կամ բնութեան գլխաւոր դիրքի մը լուսանկար պատկերին, որ կը ցուցանէ ի մօտուստ և խոշոր չափերով զառարկայն՝ որոյ ապագաւ այդ պատկերը չինուած է. միանգամայն շատ մ'ուրիշ ներկայ մանրամասն հանգամանք, ինչպէս շրջակայ լերանց պարեր և ծառաստանք, այգեստանք, արտորայք, հողագործք և արջառք որք դիպմամբ անդ կը գտնուին, և որք աւելի փոքր չափերով նկարուած ըլլալնուն համար, նուազ ճշմարիտ և ճշգրիտ չեն, բայց աւելի մեծ ուշադրութեան կարօտ։

Սակայն «վէպ» ըսելով ամենեւին չեմ ուզեր հասկցնել՝ թէ այդ գրութիւնը առասպելօք խառնուած ըլլայ. կամ թէ ինչպէս ոմանք ասացին, «արձակ չափական մի է, այլ ոչ պատմութիւն»։ Եղիշէէն աւելի անսուտ և անկեղծ ըլլալ կարելի չէ. նա յաջողած է իր ժամանակակից դիպաց և անձանց և բարուց այնպիսի հաւատարիմ նկարագիր մը տալ, որպէս քիչ պատմագիրք կրցած են ընել։ Նա ոչ մի կարգի և ոչ մի կուսակցութեան կը պատկանէր. հայրենի սուրբ կրօնին ազատութիւնը միայն փնտռելով՝ ո՛ և է եղելութիւն կամ ճիգ որ այդ նպատակին ծառայէր, ուրիշներն ինչ աչօք ալ նկատէին զայն և որքան ալ ջանային ծածկել, ինքն արդար և բնական կը գտնէր առանց քօղոյ, զգուշաւորութեան կամ սեթեւեթից հռչակել.

«Յայնմ ժամանակի սփռեցան եպիսկոպոսքն յիւրաքանչիւր իշխանութիւնս, և առաքեցին զքորեպիսկոպոսս ի գիւղս և յագարակս և ի քաղաքս ամուրս լեռնային գաւառացն։ Դրդեցին և ժողովեցին զբազմութիւն արանց և կանանց, շինականաց և ազատաց, զքահանայից և զմենակեցաց. խրատ եդին, պնդեցին և արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի»։

«Ճառագրեմք, ասէ Եղիշէ, զբազում հարուածս յորում պատահեցաք և մեք իսկ ականատես լինելով»։ Նա գրեաց «ոչ ի կարծ ընդոստուցեալ և ոչ ի լուր զարթուցեալ, այլ զոր ինչ ինքնին անձամբ անդէն ի տեղւոջն պատահեաց և ետես»։ Աւելցնենք՝ զոր

ինչ սրտովը զգաց ու հաւատաց, կամ զոր ժողովուրդը առհասարակ կը հաւատայր ու ինքն ալ բնական և հաւատալի կ'երեւար[1]։

Եւ որովհետեւ ուր սովորական պատմագիր մը գլխաւոր դէպք մը միայն կը տեսնէ ու բոլոր ուշադրութիւնը անոր վրայ ամփոփելով կարգաւ և ոճով կը ճառագրէ զայն, Եղիշէի ամէն առարկայէ տպաւորուող միտքը հազար ու մէկ ուրիշ պարագայներ ալ կը գտնէ, իւր նկարագրութիւնքը թէպէտ հիանալի կենդանութիւն և իրականութիւն ունին, սակայն չորեքտասան դարուց յետոյ եկող ընթերցողաց դժուարաւ հասկնալի կ'ըլլան, որչափ ալ բացատրութիւնքն դիւրիմաց ըլլան և ընտիր։

Հայոց աշխարհն Մեծին Աղեքսանդրի արշաւանքէն ի վեր առարկայ եղած էր երկու քաղաքակրթութեան, Յունականին և Պարսկականին։ Քրիստոնէութիւնը առաջնոյն աւելի հաստատութիւն տալով՝ երկուքին մէջի անհամաձայնութիւնը սաստկացոյց, մինչեւ որ հուսկ յետոյ Նշանագրաց գիւտովն՝ նոր զգլութիւնք արեւմտեան քաղաքակրթութեան խմբին մէջ մտուցին զՀայ ազգն։ Եղիշեայ գրքուկը ճշգրիտ պատկեր մի է այն երկրին՝ որ մրցարան եղեւ այդ հակառակ ազդեցութեանց։

Եւրոպացի հեղինակ մը երեք չորս դարէ ետքը՝ առանց լուսաբանութեան գրեթէ անիմանալի կ'ըլլայ իւր ազգակցաց. ո՜ւր մնաց՝ երբ այն հայկական ընկերութիւնը, որոյ ինչ ըլլալը կ'ուզեմք գիտնալ, խորտակած ու առանց յաջորդութեան լմնցած ըլլայ, երբ աշխարհագրական դրից քիչ տեղեակ և ի նոցանէ հեռի գտնուինք, երբ՝ զանազան աստեղաց ներքեւ՝ բազմադարեան թմրութենէ արթընցած, նոր բարք, նոր լեզու, նոր գաղափար ունենալու կը նկրտինք, երբ դրացի և իշխող Սասանեան Պարսից կրօնքը և սովորութիւնքը[2] բոլորովին կերպարանափոխ եղած՝ պատմութիւննին անգամ

1. Եղիշէ կը պատմէ երկու մեծամեծ ընդդէմ պարսպաց հրաշիւք կինալը և աստեղաց բնականէն աւելի լուսալիր և պայծառ երեւելը. Գ. 42։

2. Եղիշէի դժուարիմաց բառերն շատ ի հնուց ազգային ընթերցողաց հետաքրքրութիւնը շարժեր են ։ Բանասէրն, որ թուի բաւական հին, հաւաքեր է զանոնք տետրակի մի և գրեր է բառերն ալ, մեկնութիւնքն ալ, որ հին բառարանաց մէջ գտնուին զատ յայլոց։ Այդ բառերդ Հայոց համար անիմանալի չէին կրնար ըլլալ՝ քանի որ Սասանեան իշխանութիւնը կանգուն կայր. այլ միայն յորժամ Իսլամական կրօնը ընդհանրանալով Պարսից աշխարհին մէջ, վանեց ջնջեց զմոգական օրէնսն և Զրադաշտայ գենին յատուկ բացատրութիւնքն ալ ի բաց թօթափեցան պարսկերէն լեզուէ։ Եւ երբ այդ բացատրութիւնքդ անհասկնալի եղան, պարթեւ ալ մնացած չէր։ Ասկէ զատ, ինչո՞ւ դիմել պարթեւի,

մեր պատմագրաց լուսաւորուելու կը կարօտի. եթէ նոցա լեզուէն ժանգահար մետաղի բեկորներու և աստ անդ մնացեալ քարերու և խարակներու վրայ մնացած մի քանի բառ միայն գիտենք, և անհմուտ լինիմք այն բազմահատոր պարսիկ գրչագրաց՝ զորս եւրոպական հնաքրքրութիւնը և յարատեւութիւնը մոռացութենէ հանելով հաւաքեց, ուսումնասիրեց, թարգմանեց և մեկնեց վերջին երեսուն քառասուն տարուան մէջ, և որոյ այն ազգերը միայն անտեղեակ են տակաւին, որք ամենէն աւելի պարտէին հետամուտ լինել նոցա։ Չի բաւեր՝ որ հայկական հզօր և ճոխ բարբառն, որ հազար չորս հարիւր տարի յառաջ կենդանի էր, իւր հրաշագան կերպարութեամբքը՝ երեւելի և գաղտնի կանոններովը՝ ճշգրիտ ուղղագրութեամբը այսօր յանկարծ երեւան ելած ըլլայ՝ մոխրի տակ ծածկուած Պոմպէյին նման։ Չի բաւեր՝ որ Բագրատունի մը զայն գործածած ըլլայ այնքան տիրութեամբ և ճարտարութեամբ, որ Սահակայ և Մեսրոպայ անգամ զարմացումը պէտք էր շարժել։ Յստակախօսն Եղիշէ անթիւ խրթնութիւններ պիտի պարունակէ մեզ համար, եթէ քերականութեամբ միայն ջանանք զայն հասկնալ ու նորա նկարագրած հանգամանաց անգէտ մնամք։

Եւ որովհետեւ Եղիշէի «Վարդանն» ազգային վիպի ամենայն կերպարանքն ունի, դժուարութիւն մի ալ կը ծագի դրուածոյս բնութենէն։ Այդ տեսակ քերդուածք — և յայդմ իսկ է նոցա գլխաւոր արժէքը — խիստ շատ կիրք կը պարունակեն, որով կը գունաւորուին քիչ շատ ամենայն ինչ. շարը երբեմն իբրեւ շարագոյն կը ներկայանայ. անպիտանը իբրեւ պիտանի, ու արժանաւորն իբրեւ անարգ և անգոսնելի։ Բարկութիւնը արդարեւ չի կուրացնէր զԵղիշէ. իւր սիրելեացը սխալանքը՝ ինչպէս և ատելեացը բարեմասնութիւնքը՝ կը յայտնէ շատ անգամ ու կը խոստովանի։

երբ մինչեւ ցայժմ Պարսկաստանի մէջ գտանին կրակապաշտ Պարսիկք որ աւելի ճիշդ մեկնութիւնս տալու կարող էին իրենց պաշտած գենին նկատմամբ։ Հին բառագրոց մէջ գտնուած մեկնութեանց մահմետականութենէ բաւական ետքը շարագրուած ըլլալուն մէկ ապացոյցն ալ այն է. թէ՝ այն բառերը որ նոր պարսկերէնի մէջ կան ցարդ՝ ուղիղ մեկնուած են. բայց անոնք որ մազդեզն օրինաց կը պատկանին և կամ չկան այժմեան պարսկերէնի մէջ, անոնց բոլորովին երեւակայական իմաստներ տրուած են. այսպէս գուժեզ թարգմանուեր է օշնան խոտ. մովպետան մովպետ՝ իշխանաց իշխան. քրտիկար՝ լուացումն ի փոր. Նըրան և տանեռան՝ մեծարոյ և պատուական. զանդիկ՝ ապաստաւոր, դենիմազդեան՝ հաւատոց հաւատք, եւայլն։

Բայց՝ «Թէպէտ և ոչ ունիմք, ասէ, հրաման բամբասել զիշխանն, և ոչ գոլովք կարեմք լինել այնմիկ՝ որ աստուածամարտ լինին»։ Ընթերցողք պարտին մտքերնին պահել Եղիշէի այդ խօսքը։ Որ ոք քրիստոնէութեան զարգանալուն ցանկացող է, սիրելի է և գովելի. ամենայն թշնամիք հաւատոյ՝ սեւ և ժանդ կ'երեւին աչաց նորա։

## Բ

Սասանեանց պատմութեան մէջ՝ Միհրներսեհ իւր երկար և խելացի պաշտօնավարութեամբը հոյակապ թագաւորաց չափ նշանաւոր եղած է։ Ըստ Թաբարիի և Միրխոնտայ, որ հին աւանդութիւններէ քաղելով կը գրէին, ան էր իշխան աւագագոյն և ամենուտէր իմաստնախորհ, յարքայական ցեղէ Իսփանտեարայ որդւոյ Վշտասպայ[1]։ Ժողովուրդը կը սիրէր ու կը մեծարէր զնա յոյժ. և արդէն իր ժամանակին ամենէն ուսեալ անձերէն մէկն էր, Հիւպատան Հիպատ «իմաստնոց իմաստուն» կոչեաց զնա։ Յազկերտ Ա. (399–419), որ անգթութեանցը և վէս բարուցը, գուցէ եւս Օրմնականաց և Աւագանւոյն ազդեցութիւնը կասրել ուզելուն համար, Պազաքար յորջորջեցաւ ի Պարսից և Ալ-Աթիմ յԱրաբացւոց, ճանչցեր էր նորա կարողութիւնը և զնա Վզուրկ Հրամանատար կարգեր էր պետութեան. բայց կ'երեւի թէ քիչ անգամ կ'անսայր խրատուց նորա։ Յաջորդը՝ Վռամ Ե՝ Հռոմոց դէմ պատերազմի գնացած ատենը, զօրապետ կարգեր էր զնա իւր քառասուն հազար հեծելոց. և զԲուչանս Պարսկաստանէ վանեալ յետոյ, վերստին հազարապետ անուաներ էր ու տէրութեան ամենայն գործերն նմա էր յանձներ՝ ի մեծ գոհութիւն հպատակաց իւրոց։ Այս վիճակիս մէջ մնացեր էին իրերը երկու տարի, երբ արքայից արքային՝ որ անհանգարտ բնաւորութեան տէր մարդ մի էր, և զոր որսոյ և մանաւանդ վայրի ցռուց արշաւանքը չէին կրնար զբաղեցնել և գոհացնել,

1. Դիտելի է՝ թէ ըստ պարսկական հին աւանդութեանց՝ Արտաշիր Սասանեանն Արիմեննեանց ցեղէն կ'իջնէր (Տես Միւճէլ-իւթ-Թավարիխ և Թաբարի)։ Իսկ Միհրներսեհի գալով՝ ահաւասիկ Թաբարիի տուած ցեղագրութիւնը. Միհրներսեհ որդի Նոտարայ, որդւոյ Վէճզատայ. որդւոյ Փուհեարայ, որդւոյ Սիսաբայ, որդւոյ Տէհքայ, որդւոյ Աշաքայ (Արշակ), որդւոյ Դարեհի։

հեռաւոր աշխարհաց և դժուարին պատահարաց և արկածից ի խնդիր՝ ճամբայ կ'ելլէր դէպ ի Հնդիկս, տեղական կարգերով գնալ։ Եւ երբ յետ երկարժամանակեայ պանդխտութեան, դարձեալ կու գար իր աթոռը, կ'առաքէր զնա ի Բիւզանդիոն Թէոդոսի հետ դաշինս կնքելու համար։

Մեծ պատիւ և չքեղ հիւրընկալութիւն գտեր էր Միհրներսեհ Կոստանդնուպոլսոյ արքունեաց մէջ. և յորժամ իր պաշտօնը յաջողութեամբ կատարելէ ետքը կը վերադառնայր ի Գուռն Պարսից, գիւր բազմամեայ վաստակին և զալեւոր ծերութիւնն կը յիշեցնէր թագաւորին և հրաման կը խնդրէր յիւր բնիկ տունն յԱրտաշիր-Խուռանն երթալ ու անդ անցնել մնացած կեանքը։ Վռամ իր քովը պահեր էր Միհրներսեհի երեք որդիքը. զՋարուանդ՝ այր իմաստուն՝ որ Մովպետան Մովպետ էր ի ժամանակին, զՄահպեհ՝ համարակալն արքունի (բայատշթ), և զՊիւրճ Ֆարգանն՝ այր քաջ և կորովի որ սպարապետ էր Արեաց. և արձակեր էր զհայրն։ Սա իր եր՚կիր երթալով՝ չորս գիւղ շիներ էր անդ յանուն իր և որդւոցն, և ամէն մէկուն մէջ տաճարներ կանգներ էր. ուստ եկամուտ հայթայթելու համար ալ մեծամեծ ագարակներ յատկացուցեր էր, որոց իւրաքանչիւրն ունէր 1000 ձիթենի, 1000 նռնի և 1000 արմաւենի։

Բայց Միհրներսեհ չկրցաւ մինչեւ վերջը վայելել իր առանձնութիւնը. Յազկերտ Երկրորդ աթոռը ելնելուն պէս, կոչեց զնա վերստին ու յանձնեց նմա կուսակալութիւնը։ Միհրներսեհ հանճարեղ օրինօք և օգտակար կարգադրութեամբք՝ մեծամեծաց և փոքունց առ զայն ունեցած վստահութիւնը և համակրութիւնը աւելցուց։

Այդ է ահա պարսիկ պատմչաց քիչ մը ծանծաղ՝ բայց նպաստաւոր նկարագիրը։ Տեսնենք արդ Եղիշէինը։

Եպիսկոպոսունք զնա իւրեանց նամակին մէջ «յոյժ իմաստուն» կը կոչեն։ Նորա յիրաւի այդպիսի գովասանաց արժանի և յոյժ պատկառելի անձ մի ըլլալուն ապացոյց է այն իսկ, որ երկու ասիական ինքնակալք՝ Վռամ և որդին Յազկերտ Բ՝ իրենց երկար բացակայութեանց ժամանակ չէին երկուայեր փոխանորդ կարգելու զայն՝ որում «չէր ոք ամենեւին որ իշխէր ըստ ձեռն նորա ելանել. և ոչ միայն մեծամեծք և փոքունք, այլ և ինքն թագաւորն հրամանի նորա անսայր[1]»։

1. Եղիշէ, գ. 89.

Միհրներսեհ թէպէտ արտաքին դիմօք մեծարէր զՎասակ, քանի որ ապստամբութիւնը յատին էր, այլ ի ներքոյ յոյժ գարշէր զնա[1]։ Անոր անաչառ դատաւորն եղաւ. և կապեալ նախարարաց հաստատամտութիւնը տեսնելով՝ «սկսաւ արկանել սէր ընդ նոսա իբրև ընդ սիրելիս Աստուծոյ, և բազում ողոքանօք ածէր զթագաւորն ի հաւանութիւն, զի թողութիւն արասցէ նոցա ի կապանացն իւրեանց... և զկապելոցն ոչ երբէք չարախօս կամէր լինել մինչև ցօր վախճանի կենաց իւրոց»։

Զարրապաշտութիւնը չքարոզեց Հայոց. ու ի զրադաշտական օրինաց կ'երևի թէ միայն երկարմատեան սկզբունքը կ'ընդունէր[2], որ միայնոյ Աստուծոյ կրօնքէն ետքը ամենէն բանաւորը կրնայ համարիլ։

Սակայն Միհրներսեհը կը նկարագրի եւս իբրև «Ծեր մի լի զանութեամբ, յորում հանգուցեալ էր սատանայ զօրութեամբ իւրով, և բազում գործեալ էր նորա նախճիրս. որոյ կերակուր կամաց իւրոց էր ի մանկութենէ անտի մարմին որբոց, և ըմպելի անյագութեան նորին՝ արիւն անմեղացն»։

Եւ յորժամ ապստամբութիւնը ճնշելու միջոցները խորհելու համար կու գայ ի քաղաքն Փայտակարան, ուր «զօղեալ և թաքուցեալ» յապահովի կրնար կարգադրութիւններն ընել, իբրև «հին վիշապ չարաթոյն յամուր որջն մտեալ՝ որ բազում կեղծաւորութեամբ զինքն թաքուցանելով յաներկիւղութիւն, հեռաւորացն ահագին ձայնիւ սաստէր և ի մերձաւորսն իբրև զօձ սողալով փչէր»։

Այդ չափազանցութիւնքդ կը մեկնուին, երբ ի յուշ ածեմք՝ որ Միհրներսեհի միակ բայց ահագին յանցանքն էր կարծել՝ իրմէ ետքը եկող դեռ ուրիշ շատ քաղաքագիտաց հետ, թէ այլազգ ժողովուրդ մը իշխանութեան հնազանդ և հաւատարիմ պահելու համար բաւական չէ զայն արդարութեամբ կառավարել և անոր բարօրութեանն աշխատիլ. այլ թէ հարկ է նորա կրօնքը՝ լեզուն և էութիւնը խանգարել և հնարիւք կամ բռնութեամբ՝ տիրող ազգին նմանեցնել։ Ուստի զՀայս ի Յունաց բոլորովին օտարացնելու համար, պէտք էր զանոնք կրակապաշտ ընել։ «Գիտէք, կ'ըսէր Միհրներսեհ ցՅազկերտ, զաշխարհն Հայոց՝ թէ որպէս մեծ է և պիտանի, և մօտ սահմանակից է կայսեր իշխանութեան, և զօրէնս և պաշտօն զնոյն ունի. զի կայսր զիշխանութիւն նոցա ունի։ Եւ եթէ մերոց օրինաց ըն-

1. Եղիշէ, Դ. 5։

2. Տես հրովարտակը, Բ. 19 և Հ։

տանեցուցանէք զնոսա և ընդելնուն… այնուհետև զձեզ սիրեն և զԱրեաց աշխարհս, և ի կայսերէ մերժին և հեռանան ի բաց։ Եւ լինի այնուհետև աշխարհն ընդ մեր սերտ սիրով և միաբանութեամբ[1]»։

Իրաւամբ կամ կարծեօք՝ Միհրներսեհ այդ ծուռ և աշխարհաւերծան սկզբան նախաձեռնը կը համարուէր. և որովհետև իւր մտածութիւնները երկար քննութեամբք[2] և բազում պատրաստութեամբք կը յաջողէր ի գլուխ հանելու, եղած չարեաց և վնասուց գլխաւոր պատճառը կը սեպուէր։

## Գ

Մեծին Թէոդոսի մահուամբը (395ին) Հռովմէական կայսրութիւնը դարձեալ յերկուս բաժնուեր էր. բայց այսուհետև մէջ մ'ալ պիտի չմիանար։ Արևելեան մասը բաժին ընկած էր Արկադիոսի, և Արևմտեանն՝ Ոնորիոսի (395–423)։ Թէոդոս վերջինն եղաւ ի յաջորդացն Օգոստեայ և Կոստանդիանոսի, որք պատերազմի դաշտին մէջ բանակաց գլուխը անցած՝ պատկառելի ըրեր էին իրենց իշխանութիւնը պետութեան ամէն կողմը։ Ասոնց ջանիւքը, այդ ահագին շէնքը որ շատոնց ի վեր սկսեր էր ի ներքուստ փտիլ ու խարխլիլ, տակաւին կանգուն կը կենար։ Բայց Թէոդոս իւր հետը տարեր էր հռովմէական հանճարը, և անոր անարժան զաւակացը ժամանակ՝ վիթխարի կազմածը յանկարծ կ'իյնար ու կը փլանէր։

Արկադիոսի յաջորդեց 408ին՝ ութ տարեկան որդին՝ Թէոդոս երկրորդ, որ քառասուն և երկու տարի թագաւորութիւն քշեց։ Իւր կրաւորութեան տանը, որ կրնայ ըսուիլ թէ կենացը չափ տևեց, տէրութեան հոգը երկու ամօք երիցագոյն Պուղքերիա քրոջը և յետոյ Խրիզափիոս ներքինւոյն թողուցեր, ու ինքը պատկերահանութեամբ, քանդակագործութեամբ և կրօնական գրքեր օրինակելով օրերը կ'անցնէր, վայելչագիր ըսուելու կ'արժանանայր. ժուժկալ, առատաձեռն և գթած էր բնութեամբ. բայց այս ձիրքերը՝ զորս պէտք չէ առաքինութիւն կոչել՝ եթէ կորովոյ և չափաւորութեան

1. Փարպեցի, էջ 118–121։ 2. Եղիշէ, Գ. 19–21։

հետ միացած չէն, քիչ անգամ օգտակար կ'ըլլային, երբեմն ալ վնասակար։ Պահոց, սաղմոսերգութեանց ու եկեղեցականաց պատուիրանաց կարգէ դուրս ուշադիր էր։ Կրօնաւոր մը զինքը բանադրելուն համար՝ կերակուր ուտելէ հրաժարեցաւ, մինչեւ որ լիրբ պատուհասողն հաճեցաւ իր թագաւորին վրայէն վերցնել բանադրանքը։

Անշուշտ տարբեր յատկութիւններ կը փնտռուէր իշխանէ մը, երբ գերմանական և հոնական անհամար ցեղեր ամէն կողմանէ խորտակելով Արեւմտեան կայսրութեան սահմանները, կ'ողողէին զԻտալիա, զԳալլիա և զՍպանիա. երբ Ալարիկ՝ արքայն Վիզիգոթաց՝ սովու բռնելով զՀռոմ, բնակիչները անօթութենէ կը մեռցնէր ու վերջապէս ներս մտնելով աւարի կու տար գոթացի և հոնական կատաղի հրոսակաց (410ին) զքաղաքն կայսերաց, որ յերկոտասան դարուց ի վեր տէր և դատաւորակ եղած էր հին աշխարհին մեծագոյն մասին. երբ Ոնորիոս՝ այլ եւս ապահովութիւն չգտնելով անոր պարըսպացը մէջ՝ աթոռը փոխադրեր էր ի Ռավեննա, իշխանութեան ատուեր մի ճահիճներով և ծովով պաշտպանելու համար. երբ Վանդալք Գենսերիկայ առաջնորդութեամբ յԱփրիկէ կ'անցնէին ու Ովկիանոսէն մինչեւ զՏրիպոլիս ապատապուա կը խորտակէին Հռովմայեցւոց վեցդարեան տիրապետութիւնը (430ին), կողոպտելով զԿարքեդոն և ուրիշ բազմահարուստ վաճառաշահ քաղաքներ, և աւերելով այն բերրի և արգաւանդ նահանգներն որուն ցորենովը կ'ենար միայն ապրիլ Իտալիա։ Բայց երկու կայսրութեանց մէջ այլ եւս կապ և գործակցութիւն չէր մնացեր. մանաւանդ որ իրերաց դէմ աւել նախանձ և ատելութիւն կը տածէին քան օտար ազգաց։ Արեւելեանը արհամարհ եղած էր արեւմտեայց իբրեւ յունական իշխանութիւն, և արեւմտեանն ալ հռոմէական նշան և կերպարանք մը չպահելով, աւելի իտալական ըսուելու արժանի էր։ Եւ թէպէտ բիւզանդեան Կայսրութիւնը տակաւին ենթակայ չէր եղած նոյնքան սոսկալի տառապանաց, որովհետեւ բարբարոսաց ասպատակութիւնը գլխաւորապէս դէպ յԱրեւմուտս դիմեր էր, բայց անոնց բազմութիւնը հետզհետէ ասիական խորերը եկած նոր յաւելուածօք կը խտանայր, ու Գալլիոյ և Իտալիոյ մէջ յափշտակելու նիւթ մնացած չըլլալով՝ Դանուբը անցնելու և Պալքանեան Թերակղզւոյն վրայ յարձակելու կը պատրաստուէին։ Բարբարոս զօրավարաց և իշխանաց իրարու հակառակութենէն և զիրար ջնջելու յօժարութենէն օգուտ քաղել անհնար էր այժմ։ Ատտիլաս իր հրամանաց ներքեւ միա-

տանեցուցանէք զնոսա և ընդելնուն... այնուհետև զձեզ սիրեն և զԱրեաց աշխարհս, և ի կայսերէ մերժին և հեռանան ի բաց։ Եւ լինի այնուհետև աշխարհն ընդ մեր սէրս սիրով և միաբանութեամբ[1]»։

Իրաւամբ կամ կարծեօք՝ Միհրներսեհ այդ ծուռ և աշխարհակործան սկզբան նախածնողը կը համարուէր. և որովհետև իր մտածութիւնները երկար քննութեամբք[2] և բազում պատրաստութեամբք կը յաջողէր ի գլուխ հանելու, եղած չարեաց և վնասուց գլխաւոր պատճառը կը սեպուէր։

## Գ

Մեծին Թէոդոսի մահուամբը (395ին) Հռովմէական կայսրութիւնը դարձեալ յերկուս բաժնուեր էր. բայց այսուհետև մէյ մ'ալ պիտի չմիանար։ Արևելեան մասը բաժին ընկած էր Արկադիոսի, և Արևմտեանն՝ Ոնորիոսի (395–423)։ Թէոդոս վերջինն եղաւ ի յաջորդացն Օգոստեայ և Կոստանդիանոսի, որք պատերազմի դաշտին մէջ բանակաց գլուխը անցած՝ պատկառելի ըրեր էին իրենց իշխանութիւնը պետութեան ամէն կողմը։ Ասոնց ջանիւքը, այդ ահագին շէնքը որ շատոնց ի վեր սկսեր էր ի ներքուստ փտիլ ու խարխլիլ, տակաւին կանգուն կը կենար։ Բայց Թէոդոս իւր հետը տարեր էր Հռովմէական հանճարը, և անոր անարժան զաւակացը ժամանակ՝ վիթխարի կազմածը յանկարծ կ'իյնար ու կը փլանէր։

Արկադիոսի յաջորդեց 408ին՝ ութ տարեկան որդին՝ Թէոդոս երկրորդ, որ քառասուն և երկու տարի թագաւորութիւն քշեց։ Իւր կրտսերութեան ատենը, որ կրնայ ըսուիլ թէ կենացը չափ տևեց, տէրութեան հոգը երկու ամօք երէցագոյն Պուլքերիա քրոջը և յետոյ Խրիզափիոս ներքինւոյն թողուցեր, ու ինքը պատկերահանութեամբ, քանդակագործութեամբ և կրօնական գրքեր օրինակելով օրերը կ'անցնէր, վայելչագիր ըսուելու կ'արժանանայր. ժուժկալ, առատաձեռն և գթած էր բնութեամբ. բայց այս ձիրքերս՝ զորս պէտք չէ առաքինութիւն կոչել՝ եթէ կորովոյ և չափաւորութեան

1. Փարպեցի, էջ 118–121։ 2. Եղիշէ, Գ. 19–21։

հեռ մնացած չէին, քիչ անգամ օգտակար կ'ըլլային, երբեմն ալ վնասակար։ Պահոց, սաղմոսերգութեանց ու եկեղեցականաց պատուիրանաց կարգէ դուրս ուշադիր էր։ Կրօնաւոր մը զինքը բանադրելուն համար՝ կերակուր ուտելէ հրաժարեցաւ, մինչեւ որ լիրբ պատուհասողն համեցաւ իւր Թագաւորին վրայէն վերցնել բանադրանքը։

Անշուշտ տարբեր յատկութիւններ կը փնտռուէր իշխանէ մը, երբ գերմանական և հոնական անհամար ցեղեր ամէն կողմանէ խորտակելով Արեւմտեան կայսրութեան սահմանները, կ'ողողէին զԻտալիա, զԳաղղիա և զՍպանիա. երբ Ալարիկ՝ արքայն Վիսիգոթաց՝ սովու բանելով զՀռոմ, բնակիչները անօթութենէ կը մեռցնէր ու վերջապէս ներս մտնելով աւարի կու տար գոթացի և հոնական կատաղի հրոսակաց (410ին) զքաղաքն կայսերաց, որ յերկոտասան դարուց ի վեր տէր և դատաւորակ եղած էր հին աշխարհին մեծագոյն մասին. երբ Ոնորիոս՝ այլ եւս ապահովութիւն չգտնելով անոր պարըսպացը մէջ՝ աթոռը փոխադրեր էր ի Ռաւեննա, իշխանութեան տուներ մի ճահիճներով և ծովով պահպանելու համար. երբ Վանդալք Գենսերիկայ առաջնորդութեամբ յԱփրիկէ կ'անցնէին ու Ովկիանոսէն մինչեւ զՏրիպօլիս ապառապուռ կը խորտակէին Հռովմայեցւոց վեցդարեան տիրապետութիւնը (430ին), կողոպտելով զԿարքեդոն և ուրիշ բազմահարուստ վաճառաշահ քաղաքներ, և աւերելով այն բերրի և արգաւանդ նահանգներն որուն ցորենովը կրնար միայն ապրիլ Իտալիա։ Բայց երկու կայսրութեանց մէջ այլ եւս կապ և գործակցութիւն չէր մնացեր. մանաւանդ որ իրերաց դէմ աւելի նախանձ և ատելութիւն կը տածէին քան օտար ազգաց։ Արեւելեանը արհամարհ եղած էր արեւմտեայց իբրեւ յունական իշխանութիւն, և արեւմտեանն ալ հռոմէական նշան և կերպարանք մը չպահելով, աւելի իտալական ըսուելու արժանի էր։ Եւ թէպէտ բիւզանդեան Կայսրութիւնը տակաւին ենթակայ չէր եղած նոյնքան սոսկալի տառապանաց, որովհետեւ բարբարոսաց սաստկութիւնը գլխաւորապէս դէպ յԱրեւմուտս դիմեր էր, բայց անոնց բազմութիւնը հեռահեռէ ասիական խորերը եկած նոր յաւելուածօք կը խտանայր, ու Գաղղիոյ և Իտալիոյ մէջ յափշտակելու նիւթ մնացած չըլլալով՝ Դանուբը անցնելու և Պալքանեան թերակղզւոյն վրայ յարձակելու կը պատրաստուէին։ Բարբարոս զօրավարաց և իշխանաց իրարու հակառակութենէն և զիրար ջնջելու յօժարութենէն օգուտ քաղել անհնար էր այժմ։ Ատտիլաս իւր հրամանաց ներքեւ միա-

ցուցեր էր Գերման և Հոն ցեղերը, ու Հունգարիոյ մէջ հաստատելով զիւր աթոռն՝ կը տարածէր իշխանութիւնը մինչև Վոլկա և պատկառելի կ'ընէր զայն Սկանդինաւեան աշխարհաց մէջ։ Արեւմտեան կայսերութեան նահանգաց մէջ իշխեցող խուժդուժ զօրագլուխք, ինչպէս և Գենսերիկ յԱփրիկէ, նորա հրամանին կ'անսային։ Քուչանաց աճաւոր տէրութիւնն ալ անոր լուտանաց և սաստկութեան համն առեր էր։

Ատտիլաս պահանջեր էր ի Թէոդոսէ որ Դանուբի հիւսիսային ափանցը վրայ ազատ վաճառատեղի մը հաստատուի. տարեկան հարկ մը վճարուի իրեն. ձեռքը յանձնուին կայսեր իշխանութեան մէջ ապաւինող բարբարոս փախստեայք, ու կայսրը խոստանայ դաշինս չկնել Ատտիլայայ թշնամեաց հետ։ Խնդիրքը կատարուեր էր. բայց սակաւատեւ խաղաղութենէ մը ետքը նորանոր պահանջումներ յառաջ կը բերէր, որոց մերժուելովն պատերազմի կը պատրաստուէր։ Կոստանդնուպօլսոյ արքունիքը մօտալուտ վտանգը տեսնելով՝ սահմանագլուխները և ասիական գաւառները պարպեր և բոլոր զօրութիւնը եւրոպական մասին մէջ ժողվեր էր։ Ատտիլաս երեք ճակատամարտիւք խորտակեց կայսեր բանակները, ու Սեաւ ծովէն մինչեւ ցԱդրիականը և Դանուբէն մինչեւ ցշրջակայն Բիւզանդիոնի իւր հրոսակօք լեցուց՝ ասպատակեց ու գերեց զընակիչս (444ին)։

Թէոդոս՝ որ տակաւին անյաղթելի Օգոստոս տիտղոսը կը կրէր առանց յաղթութիւն մը տարած ըլլալու կամ բանակի մը գլուխը կենալու, Ատտիլայայ գթութիւնը հայցելու համար դեսպաններ ղրկեց անոր ոտքը։ Հոնաց զարհուրելի ինքնակալը պահանջեց լայնածաւալ երկիրներ ի հարաւոյ Դանուբայ, զյաւելումն տարեկան հարկին և պատերազմի ծախուց փոխարէն գումար մը։ Ուզուած դրամը մեծաքանակ չէր. բայց տէրութիւնը՝ կայսեր շռայլութեամբը և կառավարութեան անխնամ ընթացիւքը այնքան աղքատացած էր, և տրոց հասոյթը այն աստիճան նուազեր էր, որ պահանջեալ տուգանաց վճարման համար ծերակուտի անդամոց պալատանց զարդարանքը և կանանց գոհարեղէնքը աճուրդի ծախուեցան։ Բաց աստի Ատտիլաս պայման դրաւ՝ որ Հոն գերիները առանց փրկանաց իրեն յանձնուին. իսկ իւր ձերբակալած յոյն գերեաց իւրաքանչիւրին համար տասն և երկու ոսկի վճարուի, և իր իշխանութենէն փախչելով Յունաց ապաստանողներն իւր ձեռքը տրուին։ Այդ վերջին պայմանդ գործադրելու համար Թէոդոսի պաշտօնեայք կը խողխողէին փախստէից շատերն որք չէին հաւաներ Ատտիլայայ երթալու, ուր անվրէպ մահ կը սպասէր նոցա։

Բայց Հոնաց արքայն ետեւէ ետեւ պնդադեսպանս կ'առաքէր յարքունիս Բիւզանդիոյ, որոց հիւրընկալութեան համար ահագին ծախքեր կ'ըլլար և զանձք չահելու կամ բարեկամացնելու համար թանկագին պարգևներ կը տրուէր։ Ատտիլաս բազմահարուստ օրիորդ մը ուզեր էր իր Կոստանդինոս քարտուղարին տալու համար ի կնութեան. բայց Սատուրնինոս կոմսին աղջիկը զոր Թէոդոս ընտրեր էր, չհաւանեցաւ հարս երթալ Հոնաց։ Գանգատեցաւ Ատտիլաս. «Զվայլեր, կ'ըսէր, որ կայսր մը սուտ զրուցէ. նա խոստացաւ իմ հպատակներէս միոյն Սատուրնինեայ դուստրը տալու. եթէ խոստումը կատարել չուզեր, ահա պատերազմ տամ. եթէ անկարող է և կը յանդգնի ոք անսաստել նմա, կը փութամ անոր օգնութեան»։ Թէոդոս ստիպուեցաւ Արմատիոսի մեծահարուստ այրին ղրկելու, որ հարստութեամբը և գեղեցկութեամբը նշանաւոր էր տիկնանց մէջ։ Շքեղ դեսպանութիւն մի ալ կ'երթար յարքունիս Հունգարիոյ՝ առկախ մնացեալ խնդրոց վրայ բանակցելու. և Խրիզափիոս ներքինին՝ որ այն ժամանակ կը կառավարէր փոխանակ Պուլքերիա իշխանուհւոյն, գաղտնի հրահանգ մը տուած էր դեսպանութեան՝ գիտակցութեամբ կայսերն, զոր դեսպանաց ընկերացող Վիգիլիոս անուն թարգման մը միայն գիտէր ու պիտի գործադրէր։

Պատգամաւորութիւնը դեռ Ատտիլայայ չներկայացած՝ այդ ծածուկ հրահանգը հասեր էր նորա ականջը. բայց նա յարգեց ազգաց օրէնքը, ոչինչ վնասեց դեսպանաց. ու թարգմանը միայն նեղելով՝ երբ խոստովանեցուց պչարանենգ խորհուրդն, պատգամաւորներ ղրկեց ի Կոստանդնուպոլիս, որք խրոխտաբար Թէոդոսի դիմացն ելլալով՝ զրուցեցին յանուն արքային Հոնաց. «Թէոդոս մեծահաչակ և յարգելի ծնողաց զաւակ է. Ատտիլաս ալ ազնուական տոհմէ կ'իջնէ, ու իր անձնական գործերովը հայրենի փառքը պահպանեց։ Բայց Թէոդոս զրժեց հօրմէն ժառանգած պատուոյն, և հարկատու լինելով՝ գերւոյ չափ նուաստացաւ. պարտի ուրեմն յարգել այն անձը զոր բախտն ու արժանիքն իրմէ վեր դասեցին, և ոչ թէ անպիտան ստրկի նման՝ գաղտնի որոգայթիւք իւր տիրոջը դէմ դաւաճանել» (448ին)։

Դողայր Թէոդոս։ Ատտիլայայ բարկութիւնը իջեցնելու համար անմիջապէս աւագագոյն նախարարներէն զՆոմիոս և զԱնատոլ ղրկեց։ Ատտիլաս քամահրանօք ընդունեցաւ, բայց ուրիշ կերպով վրէժ առնել հարկ չտեսաւ. հաշտութիւն ըրաւ. ու այդ հաշտութիւնը՝ բիւզանդացւոց զօրաւոր դիմադրութեան չափ յոգնածախ եղաւ։

Այդ էր Թէոդոսդ որոյ օգնութիւնը կը խնդրէին եպիսկոպոսունք և նախարարքն մեր՝ Յազկերտի դէմ։

Բայց Եղիշէ և Հայք գուցէ բաւական տեղեակ չէին վերջին իրաց, ու Թէոդոսի ժամանակէն՝ միայն Պուլքերիայ խոհեմ և մեղմ կառավարութիւնը և գնացքը տեսեր կամ լսեր էին։ Աստուածանակեաց պանդխտութեամբ ի քաղաքն կայսեր, Սահակայ և Մեսրոպայ աշակերտքն գուցէ չէին անդրադարձեր՝ թէ հոնտեղի արքունեաց մէջ՝ միայն շողոմարարք էին յարգելի, իսկ իմաստունք և հանճարեղք՝ արհամարհելի։ Բայց քիչ մը վերջը (441ին) Եղիշէ անձամբ պիտի տեսնէր ու իր գրչաւը վկայէր Թէոդոսի ապիկար և վատ ընթացքը, որ վասն քրիստոնէութեան հալածեալ և կայսեր քաղաքն ապաւինեալ պարսիկները բանեց ու մատնեց Նոցա դահճին՝ Յազկերտի ձեռքը, որուն ուրիշ ամէն ուզածն ալ կատարեց[1], ու տակաւին կշտամբանաց խօսք մը չգտնելով նորա համար, «երանելի և այր խաղաղասէր ի Քրիստոս» և «մեծ Թագաւոր» կը կոչէ զնա։

## Դ

Այդ հակասութիւնքն աւելի նշմարելի են Յազկերտի նկատմամբ գրուցածներուն մէջ։

Սասանեան պետութիւնը որ այն ատենը Յունաց աշխարհէն մինչեւ ի Հնդիկս տարածանէր, սահման ունէր զԿովկաս, զԾովն Կասպից և զՕքսոս, և հարաւային կողմէն զՊարսկային ծոցը և Հնդկաց ծովը[2]։

1. Եղիշէ, Ա, 3։

2. Դժուարին է կատարելապէս ճշդել արեւմտեան հիւսիսային սահմանաց այն մասը որ և զՀայս յերկուս կը բաժանէր. մեր պատմագրաց մէջ գոհացուցիչ տեղեկութիւն չգտանք. գուցէ եւս Պարսից և Յունաց մէջ երբէք այնպէս ճշդիւ որոշուած չէր. ինչպէս սովոր են ընել այժմ սահմանակից տէրութիւնք։

Ըստ Պրոկոպիոսի (Anecdota, էջ 623, Isambert), Բիւզանդեան կայսերութիւնը կը յանգէր ի Ռիզէ. Տրայանոս արդարեւ աւելի անդին բանակ անցուցեր և մինչեւ Լազերու և Աբազգաց աշխարհին մէջ զօրանիստ բերդեր կառուցեր էր, բայց հռովմէական իշխանութիւնը տեւողութիւն չէր ունեցեր անդանոր և ոչ իսկ Լազերու և Ռիզէի մէջտեղը՝ լեռներու վրայ բնակող Ճանիւս կոչեցեալ վայրենաբարոյ և գրեթէ ինքնագլուխ ժողովրդեան վրայ։ Բաղդատելով եւս Եղիշէի Բ, 26 և 27 հատուածները և փարպեցւոյն 184, 219, 220 էջերը, կրնանք մօտ ի մօտոյ հաստատել

Այս ընդարձակածաւալ տէրութիւնս՝ ինչպէս Հռովմայեցւոցը, հիւսիսային ազգերէն խորտակման զարհուրելի վտանգի մէջ էր։ Հոնք՝ Կովկասեան դռներէն, Քուշանք կամ Հեփթաղք՝ Օքսոսէն, յորդախաղաց հոսանաց նման կը վազէին դէպ ի հարաւ։ Հարկատու ազգերէ՝ Հայք, Վիրք և Աղուանք, կէս մը քրիստոնեայ ըլլանուն, կէս մի այլ աւելի եւրոպականացեալ գտնուելնուն համար, չէին կրնար յօժարիլ ասիական քաղաքականութեան լծին տակ մնալու. և երբ քիչ մը նեղուէին, աչուընին Հոռոմոց կը դարձնէին. մանաւանդ որ իշխող ազգը՝ Պարսիկք՝ մոգական օրինաց զօրութեամբ վերստին կանգնելով, հիմն էին դրած կառավարութեան զգենն իւրեանց։

Կովկասային անցքերէն՝ Ալանաց դուռը որ այժմեան Վլատիքավքաս քաղաքէն ի Մցխէթ իջանող կիրճն է, դիւրին էր մէկ երկու մանր զղեկօք բռնել։ Բայց լեռնադաւոյն արևելեան բազկաց և Կասպից ծովուն մէջտեղի տափարակ վայրն ուր ի հնուց հետէ բերդաքաղաք մը և պահակ որմ մը շինուած կայր, բաւական ամրութիւն չունէր զարշաւանս արգիլելու համար։ Իսկ Խորասանի կամ Հերատայ կողմէն երկիրը բոլորովին անպատսպար էր, ու Յազկերտի նախորդին Վռամայ Եի ատենը Քուշանք այնպիսի բազմութեամբ եկեր էին, որ արքայից արքայն Ատրպատականի լերանց մէջ փախչելու և Տէրութիւնը հիւսիսայնոց խոստանալու ստիպուեր էր. Հոռոմք ալ լերանց արևելեան սահմանացը վրայ Կարնոյ ամրացեալ քաղաքը կանգնելով՝ Սասանեանց ներքև գտնուող մերձակայ Հայ գաւառաց մէջ ազդեցութիւննին օր ըստ օրէ կը տարածէին։

Յազկերտի առաջին մտածութիւնը եղաւ Յունաց հետ զարնուիլ, զորս իւր թշնամիներէն հզօրագոյնը կը կարծէր. բայց նոքա Աստի-

թէ սահմանագլխոց Բիզէէն սկսեալ կը բարձրանայր դէպ ի հարաւ ի գագաթն լերանց. այնուհետև Սպերայ և Որջընհաղայ մէջտեղէն կը կտրէր զՃորոխ, և Եփրատայ հիւսիսակողման լերանց վըրայէն դէպ յարևելս դառնալով կը հասնէր ի Տէվէպոյնու։ Ապա վերստին քիչ մը ի մուսս շեղելով ներս կ'առնէր զՄանանաղի գաւառը, և Պինկէօլ լերանց վըրայէն և Պալթման-Սու վտակաւ կ'իջանէր ի Տիգրիս ու անտի ի Մծբին։

Ասանկով Կարնոյ դաշտը Պարսից բաժնին մէջ դուրս ցցուած գիրք մը կ'ունենայ։ Հաւանական է թէ Յոյնք ի սկըզբան չէին տեսներ այդ բարձրաւանդակին մարտական կարևորութիւնը, և ի սկիզբըն հինգերորդ դարուն ուղեցին անդ բերդաքաղաք մի կանգնել, որ մարթ է կարծել որ յառաջուց իրենց սահմանէն դուրս էր. այդ ենթադրութեամբ աւելի դիւրին կ'ըլլայ մեկնել թէ ինչո՛ւ համար Թէոդոսպօլսոյ շինութիւնը պատճառ եղև արիւնահեղ պատերազմի (420–422) ընդ մէջ Յունաց և Պարսից։

դատայ յարուցած տառապանաց պատճառաւ ամենէն դիւրաւ գիջանողն եղան։ Այնուհետեւ բոլոր ուշադրութիւնը դարձուց Դարբանդայ եւ Ճորայ պահակին վրայ, զոր ահագին ծախիւք այնպէս ամրացուց՝ որ Հոնք դադրեցան անցնելէ[1], եւ մանաւանդ Քուշանաց դէմ՝ որոց հետ կարելի չէր յաջողութեամբ պատերազմ վարել ի թագաւորանիստ քաղաքէն. անոր համար հաստատեց զիւր բնակութեան տեղին ի Նիւշափուր՝ Խորասանի մէջ, ու սակայն ինքնակալաց անսովոր յարատեւութեամբ ութը տարի շարունակ կռուեցաւ եւ վերջապէս զսպեց զանոնք։

Այդքան յաջողութեանց վրայ ալ դիւրին երեւցաւ՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից իր կամքը կատարել տալ եւ զանոնք իր միւս հպատակացը պէս զրադաշտական օրինաց հնազանդեցնել. մանաւանդ որ Հայաստանի մէջ զօրաւոր կուսակցութիւն մը կը խոստանայր իւր այս նպատակին օժանդակելու. եւ եթէ Հայք գամ մի ընդունէին զպարսկական դենը, Վիրք եւ Աղուանք նոյնպէս պիտի հետեւէին. «Եւ յորժամ Հայք սերտիւ մեր լինին, Վիրք եւ Աղուանք այնուհետեւ մեր իսկ են», կ'ըսէր Միհրներսեհ ցՅազկերտ (Փարպ. 119)։

Այդպիսի քաղաքական օգուտներ ձեռք բերել կարծեցին իմաստագոյնքն ի կայսերաց Հռոմայ՝ Տրայիանոսը եւ Աւրելիոսը, երբ հալածեցին զԵկեղեցին։

Մեք որ այժմ աւելի հանդարտ եւ անկողմնակալ աչօք կը նկատեմք գիրս այնր ժամանակի, սխալմունք մի համարելու եմք մեր նախնեաց ատելութիւնը Պարսից դէմ եւ համակրութիւնն առ Յոյնս, որով եւ Սասանեանց անվստահութեանը եւ թշնամութեանը պատճառ կու տային։ Հայաստանի հնացեալ ձորձոյ նման յերկուս ծուէնս պատառելէն[2] եւ այս դրացի եւ մեծազօր պետութեանց մէջ բաժանելէն ի վեր (յամի Տեառն 384), խելահաս ոք ալ չէր կրնար յուսալ զայն վերստին միացնելու անկախ թագի ներքեւ։ Մինչդեռ Հռոմք Արշակայ մահուընէն ետքը իւրեանց մասը այլեւայլ գաւառներու բաժանելով, յոյն կոմսերու ձեռօք կը կառավարէին եւ զբնակիչս հռոմայեցնելու համար կ'արգիլէին հայկական դպրութեանց ծաւալումը, Արեւելեան բաժինը, որ կարեւորագոյնն էր, դեռ շատ ատեն ունեցեր էր իւր արշակունի թագաւորները։ Պարսիկք ոչ միայն կրօնից կատարեալ ազատութիւն տուած էին, այլ մասնաւոր

1. Տես Եղիշէ, Ա. 14. Է, 18. եւ ծան.² Ա. 9։ 2. Փարպ. եջ 2։

փայթ ունէին Հայոց ազգութիւնը ամբողջ և յունականութենէ անխառն պահելու, քաջալերելով և պահանջելով հայերէն լեզուին գործածութիւնը։

Արդարեւ՝ Սասանեանց վարչութեան կերպը աւելի կեդրոնացեալ էր քան զՊարթեւացն, որք տէրութեան իւրաքանչիւր նահանգը յորդւոց յորդիս յաջորդող մէկ մէկ թագակապ-կուսակալի յանձներ էին։ Այդպիսի ինքնուրոյնութիւնք ուրիշ ամէն կողմերէ վերցուեր էին. բայց Հայք, Վիրք, Աղուանք և Լփինք տարբեր բարուց և քաղաքականութեան տէր՝ և զօրաւոր և թշնամի ազգի մը մերձակից գտնուելնուն համար, դեռ կը վայելէին իրենց բնիկ իշխանները. և Արտաշէս Գ. Արշակունեաց վերջինը չէր ըլլար, եթէ անխաղաղասէր և անիմաստ նախարարաց թախանձանքը չհրաւիրէր զմարզպանութիւնը։

Զմոռնանք սակայն՝ թէ ինչ պակասութիւն որ ըրած ըլլան մեր նախնիք յանչութիւնան զոր ունէին դրացի ազգաց հետ, սոնք բաւական չեն արդարացնելու Յազկերտի յարուցած հալածանքը. որովհետեւ Արտաշէս Երրորդի թագաւորելէն ի վեր, այս է գրեթէ երեսուն տարի, առանց ապստամբութեան և խլրտման հպատակեր էին Պարսից։ Զմոռնանք որ Սասանեան կառավարութեան հիմունքը հաստատեալ էին կրակապաշտ մոլեռանդութեան վրայ, որ հետզհետէ կը սաստկանայր քանի որ Քրիստոնէութիւնը կը ծաւալէր տէրութեան ամէն կողմը։ Պարսաւենք այն կուրութիւնը, որ զկրօնական զգացմունս բռնաբարելով՝ աւելի կը զօրացնէ զայն։

Եւ երբ «այնպիսի պատուական զինուորութիւն հասեալ էր ի չորաչուք անարգութիւն, և հայրենի ազատութիւնն չարաչար կայր ի ծառայութիւն մարդախողխող բռնաւորին»,

Երբ «քաջ նահատակքն մեր անկան ի մեծ պատերազմին և բազում վիրաւորք տապալեցան յարիւն ապաժոյժ ի մէջ դաշտին և ամենեցուն մարմինքն եղեն գէշ թռչնոց և կերակուր գազանաց.. և ամենայն փափկութիւնն Հայոց ի վիշտս վտանգի և յանհնարին ապականութիւն»,

Երբ մարդիկն Հայոց աղաղակէին, «Զի՞ պիտոյ է մեզ բնակեանք, և կամ ընդէ՞ր տեսանիցեմք զարեւ յետ մերոց սիրելեաց», չզարմանանք եթէ Յազկերտ երեւի Եղիշեայ՝

«Իբրեւ պատկանդարան զօր ելից սատանայ դեղեալ ներքուք», կամ իբրեւ «զգազան մի կատաղի» որ «եղջիւր ածէր անօրէնութեամբ և •գռալով հող հանէր ընդ չորս կողմանս երկրի». որ

«Նեղեալ տագնապէր անխաղաղասէր կենօք․ քանզի յոյժ սիրելի էր նմա խռովութիւն, արիւնհեղութիւն»․ «Մերթ չանթէր գալարէր իբրեւ զօձ թիւնաւոր, մերթ պարզէր գոչէր իբրեւ զառիւծ զայրացեալ, գեղոյր, գլորէր, տապալէր երկդիմի մտօք, զխորհուրդս կամացն կամէր կատարել»։

Կամ «իբրեւ զչարագեւ մի՝ որ ոչ եւս դադարէր յուզել և շարժել զբուք ձմերայնւոյ, որպէս և նմանեալ խակ էր ծովածուփ ալեկոծ խռովութեան, և ոչ դուզնաքեայ վեր ի վերոյ, այլ անդատին յանդնդոց բարձրանալ փրփրել կուտակել՝ միշտապաձայն որոտալով, գազանաբար գոչելով առհասարակ դողացուցանէր զտիեզերական իշխանութիւնն, որպէս փլեալ տարածանիցի համատարած ամենայն ի վերայ լերանց, խորոց, ձորոց, ապականեալ միանգամայն զլայնութիւն դաշտացն վայելչութեան»։

Նմանութիւնները իրարմէ վսեմ և իրարմէ սաստիկ կը հոսին ետեւէ ետեւ, բայց առանց պաղչակելու հեղինակին սիրտը։ Եղիշէ՝ որ Յազկերտի որդւոց Որմզդայ և Պերոզի միմեանց դէմ մղած քաղաքական պատերազմին առենը ձեռնարկեր էր իւր պատմութեան, մոռալու կը տեսնէր Սասանեան ինքնակալութեան կործանումը․ «Նա և արջք օրհասականք ընդ վախճանել շնչոյն հզօրագոյնք կըռուին․․» և այլն։ Բայց ասով ալ չգոհանալով և իբրեւ թէ Յազկերտի հետ դէմ առ դէմ մաքառիլ ուզէր, խաղայ բանիւք ի վերայ նորա․ «Արդ՝ զի՞ կոծիս, զի՞ մրցիս, զի՞ այրիս, զի՞ բորբոքիս, զի՞ շիջանիս, զի՞ կոչես ի խորհուրդ զայնոսիկ, որոց զօգիսն ձեր ի ձէնջ քաղեալ՝ հանեալ է զանպականդ յապականութիւն, և զապականելի մարմինդ զէշաքարշ արարեալ՝ իբրեւ զագիր մեռելոտի ի բաց ընկեցեալ։ Ապաքէն զայդ կամիս զի ծածկեսցի զխորհուրդ ամբարշտութեանդ․ տեսջիր յորժամ յայտնեսցի, ապա գիտասցես զելս կատարածի դորա»։

Այս քաղուածներէս կրնայ ոք կարծել, թէ Յազկերտ վայրագ և արիւնարբու իշխան մի էր, և Սասանեան կառավարութիւնը՝ այդպիսի գազանի մը ձեռքը զարհուրելի գործի՝ հպատակ ազգերը թըշուառ ընելու համար։

Ոչ այդպէս սակայն Եղիշեայ գրութեան ընդհանուր տպաւորութիւնը։ Թէպէտ երբեք հեղինակին մտքէն անցած չէ յարգելի ընել Յազկերտի նկարագիրը, ու պատշաճ զօրութեամբ կը մեծցնէ միշտ զՂեւոնդ, զՍահակ, զՎարդան, և այլն, այդքան հանդիսացելոց մէջ Յազկերտ կը ներկայանայ մեզ դարձեալ իբրեւ ամենէն հոյակապ և

պատկառելի անձը, որոյ գլխուն մէջ կ'ամփոփին Սասանեան կառավարութեան բոլոր խորհուրդքը, և ձեռացը մէջ՝ տէրութեան համայն ոյժը, և որուն քով փոքր կ'երևայ նոյն ինքն «յոյժ իմաստնոյ» մեծի հազարապետի Միհրներսեհի կերպարանքն[1]։

Պետութիւնը օտար թշնամիներէ պաշտպանելու համար անխռով յարատևութիւնը արդէն տեսանք. և թէպէտ նոյն հաստատամտութեամբ որով Խորազմի անապատի մէջէն կը կռուէր Քուշանաց հետ, ջանաց և գքրիստոնէութիւնը ջնջել և անպատեհ միաձևութիւն մը հաստատել տէրութեան ամէն կողմը, թէպէտ Հայոց ապստամբութիւնը աչացին վտանգ մը եղեր էր և Վասակայ ձեռօք յաջողեր էր զայն նուաճել, բայց երբ իմացաւ թէ նա իւր առաջին նենգութիւնքը ծածկելու համար երկպառակեց զգունդն Հայոց, «Դատնացաւ յանձն իւր և սաէ անտուտ երդմամբ. եթէ ապրեցի անօրէնն այն ի մեծ պատերազմէն, մեծաւ անարգանօք տամ ըմպել նմա զբաժակն դառնութեան մահու»։

Իսկ ո՞րչափ ցաւ կը յայտնէ Վարդանայ մահուան վրայ։

Ազգերն օրէնքը կը պատուիրէին չէն, բարեկարգ և բազմամարդ պահել գաւառս[2]. քանզի ուրշտկել և կործանելը Հարամանոյ ծառայել էր։ Ի՞նչպէս կը տեսնի Յազկերտ Հայաստանի աւերմունքը լսելով. կ'ուզէ իրաց սկզբնապատճառը քննել. Միհրներսեհ Վասակայ վրայ կը ձգէ յանցանքը, բայց կասկածոտ ինքնակալը չհամոզուիր. — «Զայդ ես ասեմ քեզ, արքայ քաջ, կը կրկնէ Միհրներսեհ, եթէ կամիս սուգութեամբ լսել զարդարն, որք զըլխաւորք քրիստոնէիցն են ի Հայս, տուր կոչել և գան յօժարութեամբ և ասեն քեզ զամենայն արդարութեամբ»։

Իրաւախոհութիւնը Սասանեան կառավարութեան ամենէն աւելի յարգեալ սկզբունքներէն մէկն է, վասն որոյ կարգէ դուրս կը զգուշանային պատժելէ զոք առանց դատելու։ Վասակ առանձին տեսութեամբ կը ջանար Յազկերտի աչքը մոնել, «տակայն ի միտս թագաւորին ոչ կարէր զանձն արդարացուցանել. այլ պատասխանի տայր նմա և ասէ. Յորժամ քրիստոնեայքն եւս եկեսցեն, հասարակ լուայց յատենի»։ Վերջապէս հրապարակաւոր հարցափորձը Վասակայ մեղապարտութիւնը երևան հանեց, ու թագաւորը Մի-

1. Պարսիկք Յազկերտ Բի կրկին տիտղոս տուած էին. Ա. Նարմ որ է «քաղցրաբարոյ» (Մուհամալիթ-Թափարիի, Journal Asiatique 1841, 273). Բ. Սիփահ-Տօսր «սիրող սպայից» կամ «բարեկամ զօրաց». Միրխոնտ։

2. Տես Մոգպետին խոստկցութեան վերջին մասը. Գ. 21, 24։

հրրներունէն լսելով անոր դէմ եղած վկայութիւնքը՝ «բարկացաւ յոյժ և ի խոր խոցեցաւ»։ Բայց և այնպէս չէր ուզեր տակաւին դատապարտութեան վճիռը տալ. «Լուռ եկաց աւուրս երկոտասան՝ մինչ ի գլուխ չողաւ փութսիչ ամբաստանութեանն»։

Յազկերտ իր իննեւտասնամեայ թագաւորութեան միջոցը ըղ-Միհրներսեհ հազարապետութեան պաշտօնին մէջ պահեր էր. նոյն-պէս և Դենշապհոյ շարունակ թագաւորին մտերիմ և համբարապետ մնալէն հետեւցնելու եմք՝ որ Յազկերտ լաւ ընտրել և գործածել գիտէր գիւր պաշտօնեայս։

Բայց սակայն ինչպէս կը պատկառէին իրմէ. Նիւսալաւուրտ ահագին յաղթութիւն մը քիչ մը սուղ ձեռք բերելուն համար՝ կը վախէր եղած վնասը թագաւորին իմացնելու, բայց և այնպէս չէր համարձակեր ծածկել։ Իսկ մովպետը, անդերձապետը և համբարապետը՝ անապատին մէջ մահապարտաց՝ դատուածոց դէմ արտաբերած հայհոյութեանց առանց այլայլութեան մտիկ կ'ընէին, բայց նոցա բերանէն թագաւորին անձին նախատական խօսք կամ երգիծանք լսելէն անգամ կը դողային[1]։

# Ե

Սակայն Եղիշէայ գրքուկին մէջ Յազկերտէն աւելի սեւ մարդ մը կայ. որոյ վրայ խօսած ատենը կարծես՝ հեղինակին վառվռուն հանճարը կը պաղի, և միայն անոր վախճանը պատմելու ազդաւ կը բորբոքի. սոսկալի նկարագրութիւն մի կու տայ նորա սատակման, ու ասով եւս չշատանալով՝ կ'իջեցնէ զնա ի դժոխս, ու աշխարհիս վրայ նորա ոսկերը հալածելու համար յաւիտեան՝ կը գրէ այս յիշատակարանը «ի կշտամբումն յանդիմանութեան մեղաց նորա, զի ամենայն որ զայս լուեալ գիտասցէ՝ նզովս ի հետ արկցէ և մի լիցի ցանկացող գործոց նորա»։

Չհայրենիս անձնական շահուց ոտնակոխ ընողին՝ զարհուրելի

1. Ը. 87. — Միրխոնտ իր պատմութեան մէջ Յազկերտի վրայ շարադրուած տող մի կը գտնէ, որոյ վերջին տունը այսպէս կը վերջանայ. «Բոլոր կենացը մէջ իբրև զօձ տաժանեցաւ և իբրև զմրջիւն աշխատ եղեւ»։

պատուհաս, որոյ տառապութիւնը տասնեւչորս դարէ ետքն ալ չամոքեցաւ տակաւին։

Բայց մենք պահ մը ձեռուընիս բռնենք այն քարը՝ զոր կը պատուիրէ մեզ Եղիշէ նետել նորա գերեզմանին վրայ, ու տեսնենք թէ ո՞վ եղաւ Վասակ[1]. ինչո՞ւ համար մատնեաց զանձն իւր այդպիսի քամենելի դատակնքի. եւ միթէ իրաւացի՞ է այն ազգային վճիռը որ զնա միակ պատճառ եւ պատասխանատու կը համարի եղած չարեաց եւ վնասուց։

Վասակայ նախընթաց վարուց եւ գնացից վրայ քիչ տեղեկութիւն ունինք[2]. որդի էր սա Բաբկայ, որդւոյ Անդովկայ անուանի իշխանին Սիւնեաց եւ հօրն Փառանձեմայ. Պապայ երկու որդիքներէն՝ զորս մեծն Թէոդոս միանգամայն թագաւորեցուցեր էր Հայոց վրայ, մտածելով որ երկուքը չեն կրնար միաբանիլ յապստամբութիւն, Արշակ Գ. իրեն կին առեր էր Բաբկայ անդրանիկ աղջիկը, մինչ Վաղարշակ Բ ամուսնացեր էր ընդ դստեր Սահակայ ասպետի Բագրատունւոյ։

Բայց Անդովկայ մեծ յանդգնութեամբ Տիգրանի ապարանքը աւարելէն ի վեր (350) Շապուհի ցասումը հալածեր էր զնա եւ զաշխարհն Սիւնեաց աւերակեր էր։ Նա չկարելով մնալ ի Հայաստան՝ Մեծին Թէոդոսի էր ապաւիներ, իսկ որդին Բաբիկ աստանդական կը պտտէր մերժեալ ի հայրենի տէրութենէն։ Բազում տարիներ առանց նահապետի մնաց Սիւնականը, մինչեւ որ Բաբիկ Հոնաց Հոնազուր իշխանին մենամարտութեամբ յաղթելով (յամի տեառն 378)[3], արքայից արքային մոռացաւ հօր յանցանքը ու Բաբկայ դարձուց Սիւնեաց տէրութիւնը։ Երբ քանի եւ մէկ տարի իշխանութիւն

1. Ինչ է անուանդ ստուգաբանութիւնը. է Բազանա, և արդի պարսկերէն՝ վազող՝ «մողէզ»։

2. Ահա ըստ պատմչաց ազգատոհմն Վասակայ.

ԱՆԴՈՎԿ
- Բաբիկ
  - Դարա
  - Վասակ ուրացեալն
    - Արտներսեհ
    - Բակուր
    - Բաբգէն
    - Ա. Ա. կին Վարազվաղանայ
  - Ա. Ա. կին Գ. Արշակայ
- Վաղինակ
- Սամ
- Փառանձեմ (կին Գնելոյ)

3. Օրբելեան, հատ. Ա. 90–91։

փարելէ և երկիրը բարեկարգելէ յետոյ մեռանէր Բաբիկ, որդին Վռամ, գեռ պատանի, Պարսից դուռը կը գտնուէր՝ անշուշտ իբրև պատանդ։ Բաբկայ սեննեկապետը Սամ Գնթունի՝ արտօրնօք կու գար յարքունիս, և իւր տիրոջը մահը արքայից արքային իմացնելէ ետքը կը անմուէր Վռամայ հետ, ու անոր կը զրուցէր՝ թէ թագաւորը[2] կը խորհի զնա տէր ըլլալու Սիւնեաց։ — «Չե՞ս տանէ տէր, մինչ բնական իմ հարցն է ժառանգութիւն Սիւնեաց[3]», կը գոչէր Վռամ։ Այս խոխտ պատասխանս արքային ականջը կը հասցունէր Սամ, և Սիւնեաց իշխանութիւնը տիրանենգ ծառային կը տրուէր։ Բայց նա չէր կրցեր երկար վայելել իւր մեղմեխանաց պտուղը. տարի մը ետքը մոլեխինդն խմելով դաւաճանութեամբ՝ մեռեր ու տեղն անցեր էր Վաղինակ եղբայրն Բաբկայ (401–410)։ Այս երկրորդ զրկանքս ալ պէտք է մեծ ազդեցութիւն մը ըրած ըլլայ գեռահասակ Վռամայ մտաց և բարուց վրայ։ Բայց ինչ ատելութիւն որ զգաց Պարսից դէմ, կ'երևի թէ վարպետութեամբ ծածկեց, ու օրէ օր արքունեաց համակրութիւնը և վստահութիւնը գրաւելով, փոխան հայրենի իշխանութեան՝ ընդունեցաւ Վրաց մարզպանութիւնը[4] և իրեն յանձնուեցաւ նաև Ճորայ պահակը։ Վաղինակայ բնական նախանձորդը Հայոց և Հոնաց մէջտեղ գնելով Սասանեանք, ապահով և կարող ձեռաց մէջ կը համարէին պահակին պահպանութիւնը։ Թագաւորք սակայն կը գործեն այն սխալանքը, որով կը վստահին իրենց անիրաւած պաշտօնէից, կարծելով որ նոր երախտիք մոռցնել կու տան հնագոյն և մեծագոյն զրկանքը։ Վռամ ալ չէր մոռացեր իրեն եղածը, և Սասանեանց լուծը թօթվելու հնարը կ'որոճայր մտացը մէջ։ Այս նպատակիս հասնելու համար, որովհետև կրնար ի վերջոյ կարօտիլ Հոնաց օգնականութեանը,

1. Ըստ բանից Բուզանդայ սակայն Սամ Սիսական տոհմէ էր. քանզի ասէ, ի նուաճելն Մանուէլի Մամիկոնէի յետ փտարանդութեան Վարազդատայ (377–80) և ի գալ առ նա մնացորդացն «ի տանէն Սիւնեաց, պատանեակք երեք մնացեալք ի կոտորածէն Պարսից ... և անուանք նոցա՝ միումն Բաբիկ և միւսումն Սամ, միւսումն Վաղինակ. և ընկալաւ զնոսա զօրավարն Հայոց Մանուէլ, և եղև նոցա օգնական, և դարձ արար նոցա յերկիրն իւրեանց, և կացոյց ըզԲաբիկ ի վերայ երկրին և զերկուսն եւս ըստ իւրաքանչիւր չափու. և էր Բաբիկ նիզակակից զամենայն աւուրս կենաց նորա»։ Այդ դրութեամբ Սամ Վռամայ հօրեղբայրը կ'ըլլայ։

2. Այս է Վռամ Դ. կոչեցեալն Կըրմանն։

3. Օրբէլեան, հտ. Ա, 90–91։

4. Տե՛ս Եղիշէ, Է, 32. «Հաւատացէք դմա զաշխարհն Վրաց». և փարպ. 247. «Նա մինչ Վրաց մարզպան էր և դուռն Աղուանից յիմում ձեռին էր ...»։

Նոյա զօրագլխաց հետ կը բարեկամանայր և գաղտնի ուխտիւ և երդմամբք դաշինս կնքէր Նոյա հետ[1]։ Միանգամայն և զհայրենի ժառանգութիւնը հօրեղբօրը ձեռքէն հանել ուզելով, «եւ ապանանել նենգութեամբ և քսութեամբ» զՎաղինակ[2], անշուշտ բանսարկութեամբ համոզելով Դրան՝ թէ Հայք Վաղինակայ միջոցաւ Հոնաց հետ գաղտ կը բանակցին։ Սիւնեաց իշխանութիւնը առնելէ ետքը[3] Վասակայ անունը և ազդեցութիւնը հետզհետէ բարձրացաւ և ամենայն նախարարաց աւագ եղաւ[4], որով և Վեհ-Միհրշապհոյ տեղ կարգեցաւ մարզպան Հայաստանի (442ին)։ Բայց նա չկարէր այսչափով շատանալ. հիմայ որ աշխարհին դրամական միջոցները և իշխանութեան երասանակը ձեռքն անցուցեր էր, իր նախկին տենչն ի գլուխ հանելու համար պիտի ջանայր օգուտ քաղել առաջին առթէն որ ինքնովին պիտի ներկայանայր, կամ զոր ինքը պիտի յարուցանէր։

՚Նոյն միջոցին Հեռան՝ Հոնաց զօրավարը՝ Ճորայ պահակէն անցնելով խառնակեց զպարսկական զօրն զոր Սասանեանք կը կեցնէին միշտ Աղուանից երկրին մէջ՝ զպահակը պաշտպանելու, միանգամայն և զՀայս զսպելու համար եթէ խլրտէին[5]։ Հեռան իրեն դաշնակից ըրած էր զԲաղասական արքայն, և Հայոց Մարզպանին հետ արդէն համամիտ ըլլալով՝ արձակ համարձակ կ'ապստամբէր Յունաց երկիրը և շատ աւար և գերի կը ժողովէր ի Հոռոմոց և ի Հայոց և ի Վրրաց և յԱղուանից[6]։ Պատեհ էր Վասակայ ապստամբութեան դրօշը կանգնելու. բայց Սասանեանց թագաւորը արթուն գտնուեր ու զԲաղասական արքայն մեռցնել տալով՝ գործը խափաներ էր[7]։

1. Եղիշէ, Է, 32. և փարպ. 247։

2. Եղիշէ, Է, 37։

3. Վասակ Վահաշապհոյ ժամանակ իշխան եղեր էր (Օրբել. էջ 91), վասն որոյ ասոր թուականը 412էն անդին չի կրնար անցնիլ։

4. Եղիշէ, Գ, 20։ Տես և Գահնամակն ի Սոփերս Հայկ. հտ. 6, էջ 133։

5. Այդ բանակը 10,000 այրուձի էր. Եղիշէ, Գ, 23։

6. Եղիշէ, Է, 30։

7. Բրիսկոս Պանիդէս իր պատմութեանը մէջ կը յիշատակէ Հոնաց մէկ արշաւանքը, որ գուցէ Հեռանայ առաջնորդութեամբ եղած է. Ատտիլայ զօրավարներէն մին անապատ և ճախճախուտ երկրէ մը (զոր Հռովմայեցիք Մէոտեան լիճը կը կարծէին) անցնելէն ետքը, լերանց մէջէն յառաջ խաղացեր ու տասն և հինգ օր արշաւելէ ետքը Մարաստանի սահմանը հասեր էր. անդ դաշտի մէջ Պարսից զօրաց հետ յաջողութեամբ պատերազմելէն ետքը, թշնամւոյն բազմութենէն ստիպուեր էր ուրիշ ճամբով մը ետ քաշուելու, թողլով զմեծագոյն մասն աւարին զոր ժողովեր էր։ Կիպպըն. հատ. Գ, 556։

Այդ մէկ քանի մանրամասնութիւնք բաւական են մեզ յայտնելու Վասակայ բարուց ընթացքը և խորհուրդքը։ Բայց պէտք չէ փութալ գովելու զՀայաստան ինքնագլուխ ընելու փափագը․ այդպիսի մեծ գործ մը կամ անձնական մեծամեծ շահատակութեամբք և կամ այլոց քաջութեանը և աշխատութեանցը օգտակար և պատշաճ գործածութեամբը կրնար յաջողիլ։ Վասակ որ ի մարտի փղերուն կռնակը պահուըտող անձ մի էր[1], և որ զուրկ ըլլալով ի պատերազմական հանճարոյ, բաւական անձնուրացութիւն ալ չունէր այլոց յաղթանակներէն չզչարելու համար, չէր յարմար այդ նպատակդ ի գլուխ հանելու։

Առաջին առիթը փախցնելէ յետոյ՝ Վասակայ ուրիշ մը ներկայացաւ։ Եպիսկոպոսաց խիստ և խրոխտ պատասխանին վրայ Յազկերտ ի դուռն կոչեր էր Հայոց գլխաւոր նախարարքը, և անոնց բռնութեամբ և ապառնալեօք արեգական պաշտօն մատուցանել տալէ յետոյ, իրենց երկիրը խրկեր էր բազմաթիւ մոգերով՝ մնացած Հայերն ալ մազդեզն օրինաց դարձնելու համար։ Քրիստոնէութեան տեղ տարերաց պաշտամունքը հայ մտաց մեծագոյն մասին մէջ տարածելը շատ դժուարին էր, բայց աւելի դժուարին պարսկական պիղծ և այլանդակ բարքը ընդունելի ընել Հայաստանեայց։ Ուստի քահանայք և աշխարհիկք, արք և կանայք, ազատք և շինականք միահամուռ ոտք ելան։ Երբ ամենայն կողմանէ կը պատրաստուէին ուժգին դիմակալութեան, որուն յաջող ելք կը խոստանայր ամենեցունց միութիւնը, յանկարծ պատմիչը կը զրուցէ մեզ՝ թէ Վասակ իւր զօրքը Սիւնեաց երկիրը քաշուեցաւ։

Ի՞նչ էր այդ անջատման պատճառը․ ըստ Եղիշեայ՝ «Վասակ սրտի մտօք կալեալ ունէր զպարսկական օրէնս» և «ոչ ի բաց կացեալ էր յուխտէն հեթանոսաց ըստ ներքին խորհրդոյն իւրոյ»։

Այդ մեկնութիւնդ եթէ բառական նշանակութեամբը առնեմք, անընդունելի է․ Վասակ՝ թէպէտ Սիւնեաց տանուտէրութիւնը ձեռք անցնելէ ետքն ալ «այր խորհրդական և հանճարեղ և յառաջիմաց շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ» երեւէր ժամանակակցացը և կատարեալ հպատակութիւն յայտներ էր Մեսրոպայ և Սահակայ[2], անշուշտ երբեք չէր եղած անկեղծ քրիստոնեայ․ բայց և այնպէս նոյն իսկ պարսկական զօրք իւր հակառակորդքը ընկճելէն ետքը՝

1․ Եղիշէ, Զ, 17։

2․ Տես Կորիւն, 1833, 15․ – Խորէն․ 1827, 500։

ինքզինքը միշտ քրիստոնեայ կը ցուցանէր, և քրիստոնէութեան ազատութիւն խոստանալով՝ կը ջանայր որսալ ժողովուրդն։ Չյիշուիր ալ որ իւր փեսին Վարազվաղանի պէս՝ կրակատուն կանգնած ըլլայ։ Պատմագրութենէն վերջն անգամ մինչ քանի մը տարի դեռ ապրեր էր ի դուռն Պարսից, մոխրապաշտ եղած ըլլալուն տեղ մը խօսք չկայ։ Քանի որ տակաւին մարզպան էր, Հայոց եռանդը պաղեցնելու համար «հանապազորդ առատացուցանէր զռոճիկն տաճարին և յերկարէր զնուագն ուրախութեան, մաշելով զերկայնութիւն գիշերացն յերգս արբեցութեան և ի կաքաւս լկտութեան. քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական և զերգս հեթանոսականս։ Ներեալ էր յարքունուստ բազմութիւն կարասւոյ և միում միում կաշառ գաղտ խթէր ի պատճառս պարգևի և պատուոյ»։ Աւելի ընական է կարծել՝ որ այդպիսի քաղաքականութիւն ունեցող մը բանի մը չէր հաւատար, և ամենայն միջոցք կը գործածէր եթէ իր նպատակին ծառայէին։

Միթէ Սասանեանց զօրութենէն վախնալով՝ զզջա՞ց այնքան յառաջ նետուելուն։ Ինչո՞ւ ուրեմն երկար տարիներէ ի վեր կը խորհէր իւր անձին վրայ Հայոց թագաւորութիւնը վերականգնելու ու կը տեսնուէր մինչեւ այն օրերը Հոնաց զօրագլխաց հետ որ շարունակ կ'երթեւեկէին առ նա[1]։ Աշխարհին բովանդակ հարկքն իրեն կ'երթար և գործակալք ամենայն յիւրում ձեռին էին. անբաւ հարըստութիւն դիզեր էր, յորոց մէկ մասը եթէ տայր Հոնաց, անտի այնչափ սաստիկ Հոնս կրնար հանել, որչափ զի հօղն Պարսից չրաւէր նոցա յաւարի[2]։ Միթէ բաւական առեն չէ՞ր ունեցեր կշռելու արգելքներն և դժուարութիւնները, Սասանեանց զօրութիւնը, իր և դաշնակցաց ոյժը։ — Դարձեալ՝ ինչ կերպով որ դատենք զՎասակ, պէտք է որ մեր դատաստանը պարունակէ յինքեան և այլոց այնքան հոյակապ նախարարաց ընթացից մեկնութիւնը՝ որ նորա հետ ձեռնտու եղան Պարսից, ազգային և կրօնական ազատութիւնը խորտակելու համար։

Եղիշեայ Հայաստանի ընդհանուր վիճակին և հանգամանացը վրայ մեզ տուած հաւատարիմ և անկեղծ նկարագիրը, միանգամայն և Փարպեցւոյն և ուրիշ ժամանակակից հեղինակաց ծանուցած մի քանի մասնական պարագաները նշմարել կու տան մեզ Վասակայ գնացից ներքին շարժառիթը, զոր կը ճգամ արդ բացատրել և քըն-

1. Փարպ. 247։ 2. Փարպ. 248։

նել կարգաւ, կարելի եղածին չափ թօթափելով առ ժամ մի մեր սրտէն անոր անձին դէմ զգացած դարաւոր կիրքերնիս և ատելու-թիւննիս։

Անկէ յառաջ տեսանք, որ Արշակունեաց թագաւորութեան վեր-նալէն ետքը՝ իշխանութիւնն իրօք ոչ նախարարաց, այլ եկեղեցա-կանութեան անցեր էր։ Այս նշանաւոր յեղափոխութիւնս Արտաշէս Երրորդի մերժուելուն միայն արդիւնք չէր, այլ աւելի յառաջ եւս՝ քրիստոնէութեան հաստատուելէն ի վեր սկսեր ու հետզհետէ ըն-դարձակեր էր։

Ո և է կրօնի պաշտօնեայք ամէն տեղ ժողովրդեան վրայ մեծ ազդեցութիւն ունեցող կարգ մի կը կազմեն։ Ուր քաղաքական իշ-խանութիւնը միահեծան է, թագաւորէն զատ ուրիշները քիչ շատ իրարու հաւասար են. ամենեցուն ոյժը կ'ամփոփի մէկ հոգւոյ ձեռ-քը և քահանայութիւնը անոր օժանդակ և հպատակ կ'ըլլայ։ Բայց ուր երկրին ձեւակերպութենէն կամ ուրիշ հանգամանաց պատճա-ռաւ աւատական կամ տանուտէրական դրութիւնը կը տիրէ, անդ ժողովուրդը երկու կարգի կը բաժնի. մին թուով սակաւագոյն, բայց բռնութեամբ տիրապետող, կեղեքիչ և այլոց քրտանց պտուղը վայելող, և միւսը շատ աւելի բազմաթիւ, բայց աղքատ, տգէտ և ստրուկ։ Մինչ Հայոց ազատանին գոռոզացեալ զինուորութեամբ՝ որսի արշաւանօք կը զուարճանայր և կալուածոց եկամտօք կը ճո-խանայր, շինականք կրկին արքունեաց՝ թագաւորին և նախարարին՝ գանձը լեցնելու համար կրկնակի հարկաց և տուրք ներքեւ կը ճըն-շուէին. և եթէ յանցանք մը գործէին, բաց ի դրամական տուգա-նաց՝ և գան ըմպէին յոլով[1]։ Քրիստոնէութիւնն ի Հայաստան, ինչ-պէս և Միջին դարուց մէջ յԵւրոպա, անբանական ուժոյ յափշտա-կութեանց և հարստահարութեանց տեղ հաւասարութեան սկզբունքը քարոզելով ու զրկեալ և խեղճ ժողովրդեան միտքը արթնցնելով ու բարձրացնելով, կը բարձրացնէր նաեւ անոնց նիւթական վիճակը ու ի հիմանց կը քանդէր նախարարաց զօրութիւնը։ Միւս կողմանէ՝ այդ նոր վարդապետութիւնը ներկայացնող եկեղեցականք՝ որք ինք-զինքնին ազատաց կարգը դասեր էին և նոցա ամենայն առանձնա-շնորհութիւնքն ունէին[2] ժողովրդեան անհամեմատ մեծագոյն բայց

1. Տե՛ս Շահապիվանի ժողովոյն կա-նոնքը որ հաստատեցան յամին 445. Զամչ. Պատմ. Հայոց. հա. Բ, 16։

2. Եպիսկոպոսունք, երիցունք և քա-հանայք ազատ էին ի հարկաց մինչև ցգալն Պենչապհոյ ի Հայս. Եղ. Բ. 16, 17։ Մ. 16։

գրկեալ մասին պաշտպան և ազատարար կանգնելով Նախարարաց դէմ, բնականաբար և Նորա իրական տէրն և հրամանատարը կ'ըլլային։ Արդար է եւս ասել՝ որ կրօնական մեծարեալ կերպարանքներէն զատ, ուսմամբ, գիտութեամբ, աշխարհաշէն և ազգօգուտ ձեռնարկութեամբք, նա մանաւանդ և հայրենի ազատութեան սիրովն, Յեացեալ ժողովրդէն և նոյն ինքն տանուտերց խմբէն գեր ի վերոյ գտանէին[1]։ Յայս սակս մեր հայրապետքն քաղաքական իրաց մէջ աւելի կարեւոր մասնակցութիւն ունեցան քան իրենց հաւասար կամ աւելի նշանաւոր եպիսկոպոսունք Համմէական միապետութեան մէջ[2]։ Արքայական աթոռոյն առընթեր՝ կանգներ էին կաթողիկոսական աթոռը, որոյ տէրը Թագաւորին պէս Արշակունի Պարթեւ իշխանաց ցեղէն կ'իջանէր, և անոր նման որդւոց յորդւո կը յաջորդէր[3]։ Բարոյական մեծ ազդեցութեամբն զոր ունէին՝ շատ անգամ յաջողութեամբ կռուեր էին քաղաքական իշխանութեան հետ, և անոր ակարացած ատենը՝ նմա նեցուկ և պաշտպան եղան։ Արքունի գահուն խորտակուելէն ետքը ոչ միայն իրենց իշխանութիւնը պահեցին Հայաստանի մէջ, այլ և կը հրամայէին տակաւին Վրաց և Աղուանից ալ։ Նոցա պահանջմամբ կամ խորհրդով կը կարգուէին շատ անգամ սպարապետք, տանուտեարք և երբեմն ալ Թագաւորք։ Նոցա թախանձանքը և խնդիրքը աւելի ազդու էին դրացի և զօրաւոր արքունեաց առջեւ քան ընիկ Թագակապ իշխանաց։ Խնամութեամբ կամ ազգակցութեամբ և կամ հլու հնազանդութեամբ նոցա հաճելի եղող Նախարարք նախապատիւ կ'ըլլային քան պող և անտարբեր շարժողները։ Այսպէս մեծն Սահակ որ մանաւոր փոյթ և խնամ կը տանէր իրեն խնամի Մամիկոնեան ցեղին որեարը կրթելու և լուսաւորելու[4], ի թախանձելոյ դասերն՝ Հայոց սպարապետ անուանել կու տայ գիւր փեսայն զՀամազասպ Մամիկոնեան, հակառակ կամաց աւելի խոհեմ և հեռատես Վռամշապուհ արքային[5], և թշնամի կ'ընէ Բագրատունեաց տանուտէրը զՏիրոց, որոյ հայրը կամ նախորդը քաջ ատպետն Սահակ այնքան շքեղ յաղթանակօք և ծառայութեամբք պայծառացուցեր էր զապա-

1. Թէ նախարարաց և սեպհաց շատերը կարդալ, գրել չէին գիտեր, տե՛ս Եղիշէ, Ը. 137։

2. Տե՛ս Կիզոյի Պատմ. Քաղաքականութեան Գաղղիոյ, Դասախօսութիւն Գ, էջ 67, և Բուզանդ. Մեծն Ներսէս։

3. Սահակ Պարթեւ թոռն էր թոռնորդւոյն Ս. Գրիգոր Լուսաւորչի, որոյ հայրն Անակ՝ պարթեւական արքունի տան Սուրենեան ճիւղէն էր։

4. Տե՛ս Կորիւն, 13։

5. Տե՛ս Կորիւն 15։ – Խորենացի 500։

բարեկաւութիւնը։ Բնական էր որ երբեմն ընկճած նախարարք մասնաւոր ատելութիւն մը զգային եկեղեցականաց դէմ, ինչպէս որ ունեցեր էին այն թագաւորաց դէմ ալ՝ որք նոցա կոթներ կամ հաժախտ զանուեր էին։ Կարելի է ըսել, թէ ամենք ի հայրապետացն մերոց մոռացան՝ թէ չատ անգամ ինչ որ աշխարհական անհատի նըկատմամբ առաքինութիւն կամ բնական պարտք մի կրնայ համարուիլ, իշխանաց համար պակասութիւն կամ յանցանք կ'ըլլայ. թէ իշխեցողք՝ աշխարհիկ ըլլան թէ քահանայ՝ մահուչափ խորչելու են կուսակցութիւն յարուցանող առիթներէ, և թէ պարտին հասարակաց օգտէն զատ՝ մերձաւոր կամ ազգակից չունենալ։

Կորիւն իւր ժամանակի Հայաստանը՝ Հայոց քաղաքականութեան հետեւող դրացի ազգերն ալ ի միասին առնելով՝ յերկուս կը բաժանէ կրօնական տեսակէտով, ի Կայսերականն և ի Հեթանոսաց երկիր [1]։ Կայսերականք ըսելով կ'իմանայ Հայաստանի այն գաւառները, յորս քրիստոնէութիւնը և քաղաքակրթութիւնը զարգացած էին։ Աւեստայի մէջ ալ ասէպ կը տեսնենք Կաւէրա՝ իբրեւ բնակավայր կամ կայանք նախնի Իրանեանց, զոր հողագործութեամբ մշակեցին և զոր ցցովք փակեր էր Ահուրամազդա, առ ի պաշտպանել զնա ընդդէմ վրանաբնակ և Թափառիկ ազգաց։ Այն գաւառաց մէջ՝ ուր քրիստոնէութիւնը կատարելապէս հաստատեալ էր, աղայք և չինականք ալ վարժեր էին ընկերական նոր ձեւին, ու մտքերնէն չէին անցներ զայն յեղափոխել. զուցէ եւս չկարողանային, քանզի իշխանութիւնը ի տանուտէրական ապարանից անցեր գնացեր էր յաթոռ եպիսկոպոսին։

Բայց Սիւնականի պէս լեռնոտ երկիրներու մէջ՝ ուր ամենայն նոր սկզբունք դժուարաւ մուտ կը գտնէր, ինչպէս և աւելի հեռաւոր Վրաց և Աղուանից աշխարհին մէջ, ժողովուրդը մեծաւ մասամբ դեռ նախկին վիճակին մէջ մնացեր էր, ու տանուտերց նիւթական առաւելութեանց միայն ենթարկուած էր։ Տրդատայ զօրութեան առջը մտուցեր էր արդարեւ քրիստոնէութիւնը լեռնադաւառաց մէջ ալ, բայց չէր կրցեր վանել անտի զհեթանոսութիւն, որ զաղտնի կը յարատեւէր. ու նորա յաջորդաց ժամանակ կեդրոնական իշխանութեան հետզհետէ նուազելովն՝ արձակ համարձակ երեւան ելեր էր։ Այսպէս Լուսաւորչայ քարոզութենէն դար մը ետքը, չուրջ 400ին, Մեսրոպ՝ որ իր ճգնութեան տեղէն կը տեսնէր Գողթանոյ «անկարգ

1. Խորենացի, 511։

և անդարման» վիճակը, լեռնակեցութենէ և բանջարաճաշակութենէ աւելի պիտանի սեպեր էր իջանել ու քարոզել անդր։ «Ջաւետարանական արուեստն ի մէջ առեալ, ձեռն արկանէր զգաւառին՝ հանդերձ միամիտ սատարութեամբ իշխանին. զերեալ զամենեսեան ի ձայրենեաց աւանդերոց, և ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէն՝ ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր»։ Եւ թէպէտ վարդապետութեանը սատակութենէն, երկու ժամանակակից պատմչաց՝ Խորենացւոյ և Կորեան նկարագրերը բացատրութեան համեմատ, «հալածական լեալ դեւք մարմնաւոր տեսլեամբ՝ անկանէին ի կողմանս Մարաց», սակայն և այնպէս Մեսրոպ՝ որ ի մանկութենէ վարժեալ էր հելլէն դպրութեամբք, որ Արշակունեաց արքունական դիւանին մէջ քարտուղարութեամբ՝ տեղեակ և հմուտ էր աշխարհական կարգաց[1], Գողթանայ մէջ բնակութեան ատենը փորձով իմացեր էր՝ թէ որքան դժուարին պիտի լինէր առանց դպրութեանց այդ եզական գաւառին բնակչաց վառվառուն և երեւակայող միտքը գրաւել ու սանձել։ Անդ զգացեր էր հայկական նշանագրաց անհրաժեշտ պէտքը. զորս հնարելէ ետքը նորէն քարոզութեան կը ձեռնարկէր՝ թողլով զկայենական «Տէր Եպիսկոպոսին» և ինքն «ակիզբն առեալ զխուժադուժ կողմանս Մարաց, որք ոչ միայն վասն դիւական, սատանայական բարուցն ճիւաղութեան, այլ վասն խեցբեկագոյն և խոշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին»։ Եւ միանգամայն Սահակայ և այլոց հետ թարգմանութեանց պարապելով՝ հայաբարբառ և հայերէնախօս մարգարէիւք և առաքելովք վերստին կը մտնէր ի Գողթն։ Այս անգամ «լի առնէր զգաւառն ոջխունիւ Աւետարանին և կարգէր յամենայն գիւղս դասս վանականաց, օժանդակութեամբ Շաբիթայ՝ Գողթան իշխանին»։

Անտի անցեր էր ի Սիւնիս, ուր բազում օգնականութիւն գտեր էր ի Վաղինակայ ի տեառնէ նահանգին. «Ժողովէր մանկունս առ ի նիւթ վարդապետութեանն, տաւել զգազանամիտ զվայրենագոյն զձիւաղաբարոյ կողմանցն»։ Գրիգորիսէ ի վեր Սիւնիքի մէջ մետրապոլիտ չէր նստեր. Մեսրոպ «մինչեւ ի նոցունց իսկ վայրենեացն եպիսկոպոս տեսուչ եկեղեցւոյն Սիւնեաց կարգէ զԱնանիա զայրն սուրբ և զերեւելի», և զերկիրն՝ վանականաց դասուք լեցնելով՝ ամէն կողմ կը տարածէր զՔրիստոնէութիւն։

Բայց Կորեան այդ նկարագրոյդ և Վասակայ զրոյր զիւր աշ-

1. Կորիւն. 6։

խարհն ապստամբեցնելուն[1] և հեթանոսական երգերով ժողովուրդը զբաղեցնել ուզելուն թէ նայինք, Մեսրոպայ երկրորդ քարոզութենէն երեսուն տարի ետքն անգամ դեռ քրիստոնէութիւնը պէտք եղածին չափ ամրացած չէր, և հեթանոսական բարք և սովորք զօրաւոր և սիրելի էին Սիսականի մէջ։

Սակայն այդ վիճակը չէր կրնար յարատեւել. արդէն Հայոց մեծամասնութիւնը անդառնալի կերպով ընդուներ էր քրիստոնէութիւնը, որ ազգային նոր դպրութեանց[2] ազդեցութեամբը և ժողովրդեան համակրութեամբը օր ըստ օրէ պիտի զօրանայր ու դրոշմուէր մոցածներուն մտաց մէջ։ Սահակայ և Մեսրոպայ առաջին աշակերտքն, որ արեւմտեան քաղաքականութեան և գրականութեան հետամուտ եղեր էին, այժմ եկեղեցական բարձրագոյն պաշտամանց հասած անվեհեր ուժգնութեամբ կը մաքառէին պարսկական բարուց և ազդեցութեան դէմ, ու հարկ չէին սեպեր իրենց մեծ վարդապետաց չափ անգամ երբեմն զիջողութիւն ընել կամ տեղի տալ պարագայից բնութեան և նախանձընդդէմ շահուց և զգացմանց։ Բզնունեաց եպիսկոպոսը Սուրմակ, զոր Սահակայ և Մեսրոպայ մահուընէն ետքը Յազկերտ կաթողիկոս անուաներ էր, չուզելով հաստատել նոցա ընտրած յաջորդը զՅովսէփ, հինգ վեց տարի այդ պաշտօնը անուանապէս վարելէ յետոյ՝ հրաժարեր էր ու թողուցեր էր զայն Յովսէփայ[3], որ արդէն իրապէս կը կատարէր զհայրապետութիւնը։ Իսկ Հայաստանի երիտասարդներէն ընտրուած կորո-

1. «Եւ բովանդակ զիւր բոլոր աշխարհն ապստամբեցոյց յուրացութիւն, ոչ միայն ըստ աշխարհին բազմութեանն, այլ և զբազումս յուխտէ Եկեղեցւոյն». Եղիշէ, Դ, 10։

2. Այրուբենից գիւտը՝ որ սոսկ մատենագրական երեւոյթ ինչ ունի, պատճառ եղեւ ի սպառ բաժանելու զՀայս՝ Արեւելից միւս ազգերէն. դա զՀայս առանձին ժողովուրդ կազմեց։ Վանելով կամ գոնեա իբրեւ անօտարը մերժել տալով զօտար այրուբենս, որք սփռուած Հայոց երկրին մէջ, առիթ էին ծաւալման հեթանոսական աղանդոց և Զրադաշտական մատենից, հաստատեց զՀայս քրիստոնէական կրօնից մէջ։ Այդ Նշանագրաց գիւտով պահուեցաւ հայ լեզուն և մատենագրութիւնը. հաւանական է, որ եթէ դա չլինէր, այդ ազգը չէր յապաղեր խառնիլ Պարսից և Ասորւոց հետ և ջնջիլ ի սպառ, ինչպէս ջնջուած են այնքան հին ասիական ժողովուրդք։ Նովաւ դարձեալ հայ ազգն և Եկեղեցին յատուկ կերպարանք մի ստացան, նովաւ պահեցին իրենց քաղաքական և կրօնական անկախութիւնը երկար ժամանակներ և նովաւ կան մնան մինչեւ ցայսօր։ — Սէն-Մարթէն ի Պատմ. Ասորին Կայսեր. 1824, հտ. Է, 230։

3. Տե՛ս Պատմ. Յովհաննէս Զ կաթողիկոսի։

վամիս և աշխատասէր վաթսունի չափ անձինքն որք ինն տարի յԱ-
ղեքսանդրիա, ի Բիւզանդիոն և յԱթէնս ուսմամբք պարապեր էին, յունական գաղափարօք և ոգւով լցեալ և զարեւելեան գիւրաթեք բնութիւնը փոխանակելով ընդ անյողդողդ սկզբանց և մտաց, դարձեր էին ի Հայրենիս. սոքա հոս Նախարարաց վանուց և ամբոխաց մէջ՝ քարոզարութեամբ և խորհրդատուութեամբ՝ զազգն բոլորովին դէպ ի յունական բարս և ի կրթութիւն կը մղէին: Վաղ կամ անագան՝ հին զրութիւնը պահել ուզող Նախարարք պիտի փախցնէին ձեռքերնէն իրենց հպատակները: Վասն որոյ կը ջանային հաճոյանալ Սասանեանց, որոց Հայաստանի մէջ բանած քաղաքականութիւնը նոյն ատեն բարեկամ և ձեռնտու էր քան ատեն զօրաւոր և բազմաթիւ մասին: Նոյն ինքն Պարսիկ Թագաւորի (416ին) և ատեն հաքը (429-441) ստորագրի մարզպանի զրկուելն ի Հայս՝ ատեն նպաստաւոր էր նոր վիճակէն դժգոհ աշխատաւորաց, և վերջերս մարզպանութեան ատենց միայն տրուելովը՝ (441ին) կրնային յուսալ իրենց փափագած նախկին զրութիւնը երկարաձգելու:

Նախարարաց՝ Եկեղեցականութեան հետզհետէ բարձրացող ազդեցութեանը չհանդուրժելը բնական էր. և որովհետեւ ամենայն բացարձակ իշխանութիւն վնասակար կ'ըլլայ թէ գործածողին և թէ կրողին, ազգին ընդհանրութեանը համար ալ օգտակէտ և նոյն ինքն եկեղեցականաց բարուց անսպառ Յիսուան համար հարկաւոր պէտք էինք համարիլ, եթէ մէկ կողմը գիտնար շատանալ բարոյական և մտաւորական առաջնորդութեամբը և չափաւորել իր աշխարհային ընչից և տիրապետութեան ցանկութիւնը, և եթէ միւս կողմը ինքզինքը ակար անեալ ատենը չզիմէր օտար և նախանձոտ տէրութեան մը՝ հակառակ կուսակցութիւնը խորտակելու համար:

Բայց երկու կուսակցութեանց վէճը մոգերուն ի Հայաստան զըրկուելովը (449ին) ապստամբութեան կէտին հասած էր. եպիսկոպոսունք և քահանայք գիւղերը՝ ագարակները մէկիկ մէկիկ երթալով ժողովուրդը ոտք հաներ, ու ամենայն աշխարհիկ կարգ ու կանոն զայրեցնելով՝ ապստամբութիւն մը հասուցեր էին: Այր և կանայք մի սիրտ՝ մի հոգի, զատ զէնքերնին ձեռք առած՝ ոչ յարտաքինսն խնայէին և ոչ յեղբարս և յորդիս և ի մերձաւորս[1]:

Անմիջապէս երեք աշագին բանակք կազմուեր էին. և եօթնասուն և հինգ տարիէ ի վեր պատառատեալ աշխարհ մը այժմ եկե-

1. Եղիշէ, Գ, 14. — Ե, 10:

ղեցականաց հրամանաւը[1] Սասանեանց իշխանութիւնը կը թոթվէր ու կ'արհամարհէր։

Բայց այս ընդհանուր վրդովումը Վռամին փնտռածը չէր. ինչ պիտի շահէր, եթէ քրիստոնեայ Հայք յաղթանակէին զբանակս մոխրապաշտ Պարսից, որք անշուշտ պիտի գային օգնել զՀայաստան։ Զվահան Ամատունին՝ զՀազարապետն աշխարհին և գլուխ երկրորդն՝ գլորեր էր պաշտօնէն. բայց տակաւին ունէր իւր դիմաց ուխտի հօյակապ այր մը՝ որ յաղթող ելեր էր քառասուն մեծ ճակատամարտի մէջ[2], որոց վէրքն և ոսկերն տակաւին կը կրէր իւր մարմնոյն վրայ[3]. ախոյեան մը՝ որոյ կանգնած յաղթանակաց մեծագոյն մասին ականատես եղած էր նոյն ինքն Յազկերտ՝ Մերվ-ռոտ գետոյն եզերքը և Խորազմի անապատին մէջ. զոր Հոռոմոց կայսրն և Խաքանն Հոնաց սաստիկ ջանացեր էին հանել յարքայից արքայէն, և նա ամենայն Արեաց ուժովը կռուեր էր անդուլ անդադար՝ մինչև որ յաջողեր էր դարձնել յինքն թափելու զնա[4]։ Սա էր որդի Համազասպայ տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետի և երբեմն իշխանապետի, և թոռն Սահակայ Պարթևի՝ որ յիսնամեայ հայրապետութեան միջոցին մէջ դաստիարակ եղած էր հայ ազգին, պաշտպան թագաւորական բնիկ աթոռոյն և խրատաբար կառավարէր նախարարաց։ Թէպէտ զնա տապալեալ և Վռամ՝ սպարապետ կարգեր և հաստատեր էին Հայոց։ Վարդան որ այդ պաշտօնը քսան տարիէ ի վեր կը վարէր, տուեն մը մինչև թագաւորի տեղակալութեամբ պատուեալ էր ի Յունաց և ի Պարսից։ Տանուտէր էր արգաւանդ և բազմամարդ Տարօնոյ, որում յաւելցեր էին Մեծին Սահակայ սեփականութիւնքն ալ, և Տայոց նահանգին մեծի մասին[5]։ Երկու հարիւր տարիէ ի վեր Հայք վար-

1. Եղիշէ, Գ. 29. «Ազատեմք զձեզ զամենեսեան սուրբ աւետարանաւս» ևն։

2. Ալիշան Վ. ի Յուշիկք, 265, և Եղիշէ, Ե, 5։

3. Եղիշէ, Ե, 5։

4. Փարպեցի, 252։

5. Սահակ Պարթև արու զաւակ չէր ունեցեր, այլ դուստր մի միայն Անուշ կամ Սահականուշ, զոր էր առեալ կընութեան Համազասպայ Տեառն Մամիկոնէից և Հայոց սպարապետի. ի սոցանէ ծնան երեք արու որդիք՝ Վարդան, Հմայեակ և Համազասպեան։ Երբ Յազկերտ Բի նախորդը Վռամ զօրք դրկելով ի Հայս՝ կը վրդովէր զերկիրն, Սահակ Յունաց մասը գնացեր էր, բայց անդ լաւ ընդունելութիւն չգտնելով, ըզՄեսրոպ և զիւր թոռն զՎարդան Կոստանդնուպոլիս առաքեր էր՝ խնդրել ի կայսերէն որ հրամայէ կուսակալացը՝ որպէս զի չարգիլեն Յունաց բաժնին մէջ հայերէնի ուսումը։ Կայսրը կատարեր էր հայրապետի խնդիրը և զՎարդան ըստրատելատ էր անուաներ։ Քիչ մը վերջը (421ին) Սահակ արևելեան մասին մէջ անցեր ու զնախարարս Վռամայ հետ

ժեր էին երթալ ի պատերազմ առաջնորդութեամբ Մամիկոնեան տան որոյ գլուխը այժմ իւր եղբարցը Հմայեկայ և Համազասպեանի հետ, Լուսաւորչայ և Սահակայ յետին չառաւղին սերունդն էր [1]: Դրացի ազգաց բդեաշխք և քրիստոնէութեան և հայութեան սիրող տանուտեարք՝ ազգականութեան, խնամութեան և բարեկամութեան

հաշտեցնելու համար դարձեալ գրկեր էր զՎարդան Միրան ասպետին հետ յարքունիս Սասանեանց, ուր հաշտութիւն հաստատուելով Վռամշապհոյ որդին Արտաշէս թագաւոր դրուեր էր Պարսից Հայաստանի: Քանի մը տարի ետքը (428ին) երբ Վռամ զԱրտաշէս մերժելու համար աթոռէն Սահակայ հաւանութիւնը կ'ուզէր առնուլ, ի զո՛ւր կը խոստանայր նմա դիւր թոռն զՎարդան կարգել ի վերայ Հայոց զուգահաւասար թագաւորի և համապատիւ: Վռամ, ժամանակ մը անարգանօք պահելէ յետոյ զՍահակ ի Դուռն, Հայաստան գրկեր էր և «դարձեալ հաստատելով զթոռն նորա զՎարդան սպարապետ ի տէրութիւն իւրոյ ազգին Մամիկոնէից, արձակեր ի Հայս»: — Սահակ վախճանեցաւ ի գաւառին Բագրեւանդայ 439ին, ու թոռներուն թողուց կտակաւ զաստուածային գիւղից և ագարակաց և որ ինչ միանգամ էր իւր, ի ժառանգութիւն և զաւակի նոցա մինչեւ ցյաւիտեան: Որոց առնել զնշխարս որբոյն հանդերձ աշակերտօքն և Տիկնաւն Մամիկոնէից, նորին նուաւ, որում անուն էր Դստրիկ, կին Վարդանայ Սպարապետի, տարան ի գաւառն Տարօնոյ և հանգուցին ի բնիկ գիւղն իւր սեփական՝ յանուանեալն Աշտիշատ: (Խորեն. և Փարպ.): — Տայոց մէջ Մամիկոնեան տոհմին բնակութեան տեղն Էրախանի կոչուած ամուր բերդ մի էր. Բուզանդ՝ Դ, ԺԸ: Ճենացիք զՄոզոլս կոչեն Մուժքու՝ որում նմանի յոյժ Մամիկոն կամ Մամգուն. Տես Histoire des Huns par Deguignes. հատ. Ա. էջ 275, տպ. 1756: Գիտեմք ի Խորենացւոյ՝ թէ Մամիկոնեան տան նախահայրը Մամգուն՝ Սասանեան Արտաշրի օրերը Ճենաց աշխարհին մէջ իշխեցող թագաւորաց մէկուն դայեկորդին էր. այս է թէ Մամգունայ հայրը դայեկութիւն ըրած էր թագաւորին՝ մինչ սա տակաւին մանուկ էր և չէր հասեալ յարբունս: Մամգուն՝ փախուցեալ յերեսաց արքային, Պարսկաստան եկեր էր և անտի ի Հայս: Խորեն. Բ. ՁԱ:

1. Ճիւղագրութիւնս (Գաթրճ. Տիեզ. Պատմ. հտ. Բ, էջ 606–608 և Կոստանեանց) աւելի մեկին կը ցուցանէ Վարդանայ ազգակցութիւնքը և խընամութիւնքը.

ա. Սահակ Պարթեւ († 439) թոռն թոռնորդւոյն Լուսաւորչի. սորա միակ դուստրը Սահականոյշ.

բ. Համազասպ Մամիկոնեան՝ այր Սահականուշի. ի սոցանէ ծնան
Վարդան, Հմայեակ և Համազասպեան:

| | |
|---|---|
| գ. Վարդան Մամիկոնեան († 451)<br>Դստրիկ՝ կին Վարդանայ<br>յորոց ծնաւ | գ. Հմայեակ Մամիկոնեան († 453)<br>Ձուիկ՝ կին Հմայեկայ<br>յորոց ծնան |
| դ. ա. Շուշանիկ Վարդենի, որոյ այրն<br>Վազգէն որդին Աշուշայ | դ. ա. Վահան Մամիկոնեան<br>բ. Վարդ Մամիկոնեան<br>գ. Վասակ Մամիկոնեան |

կապերով իրեն պաշտպանութիւնը, սէրը կամ փառքը մանուկ-ցութիւնը ապահովեր էին։ Անդրանիկ զաւակը՝ Շապուհ-Վաչա-նիկ Հարս գնացեր էր ի Ցուրտաւ, ի մայր քաղաքն Գուգարաց, և էր կին Վազգենի որդւոյ Աշուշայ մեծ բդեշխին[1]. իսկ երկրորդը Վարդանայ փեսայ ըրեր էր սպարապետին՝ տանուտերց ամենէն ուժին և կորիճներէն մին զԱրշաւիր Կամսարական, զՏէրն Արշարունեաց, և Հայոց ամենէն բարերեր և հարուստ գաւառին Շիրակայ։ Արծրունեաց տանէն երկու օրիորդք, Անուշ-Վռամ[2] և Հա-բաղատ ու սրտակից քոյր նորին Զուիկ՝ «որ եղեւ կին անուանի և առաւելեալ ամենայն յաւ և մեծաւոր մասամբք յամենայն կանայս ի Հայաստան աշխարհի[3]», — առաջինը տիկին Աշուշայ Գուգարաց բդեշխին, և երկրորդը Հմայեկայ եղբօր Վարդանայ, — սերտ միութեամբ կը կապէին Արծրունեաց և Գուգարաց ապարանքը Մամիկոնեան տան հետ։ Մոկաց «մեծ իշխանն» Արտակ, այր «մաքրի, համեստ և քաջ», անպայմանակ կը պահէր հինաւուրց բարեկամութիւն մը որ հաստատուեր էր յառանձնութեան, երբ սպարապետը Արշակունեաց բանակէն ետքը, չմուծալով Պարսից մարզպանաց՝

բ. Վարդանոյշ. սորա այրն Արշաւիր Կամսարական. ի սոցանէ ծնան
ե. ա. Ներսեհ Կամսարական
բ. Հրահատ Կամսարական
գ. Սահակ Կամսարական

դ. Արտաշէս Մամիկոնեան սորա որդին՝
ե. Գրիգոր Մամիկոնեան։

1. Սոփերք Հայկականք. հտ. Թ., և Յուշիկք Հայրենեաց Հայոց՝ Շուշան Վարդենի։
2. փարպ. 148։
3. փարպ. 334. սա է մայր մեծին Վահանայ Մամիկոնենի։ Նախընթաց և հետագայ ցեղագրութենէդ կը տեսնուի թէ կրկին խնամութեան կապեր կային ընդ մէջ Աշուշայ և Մամիկոնեան տան.

ա. Վասակ իշխան Արծրունի. սորա զաւակներն են՝

ԴՈՒՍՏՐՔ

բ. ա. Անուշվռամ՝ կին Աշուշայ բդեշխի
|
գ. ա. Վազգէն՝ այր Շուշանայ՝ դստեր Վարդանայ.
բ. Ջոջիկ.

բ. Զուիկ՝ կին Հմայեկայ Մամիկոնենի
|
գ. Վահան Մամիկոնեան եւ եղբարք

ՈՐԴԻՔ

ա. Ադան Արծրունի
բ. Մեհրուժան Արծրունի

որք եկեր էին Հայ աշխարհին կարգերը վեր վար ընելու, քաշուեր էր Մոկաց Ջերմաձոր (Շատախ) գաւառին ափափայից մէջ յամուր բերդն Զաղայչ[1] ու մեծ պատիւ և ազնիւ հիւրընկալութիւն գտեր էր յիշխանէն Արտակայ։ Իսկ Ամատունին Վահան «Խորհրդական և հանճարեղն» զոր Վասակ հազարապետ կարգեր էր Հայաստանի, և որ քանի տարիէ աւելի խնամեր էր աշխարհն ընդ մարզպանութեամբ Պարսից և ինքզինքը «իբրև հայր վերակացու համարել տուեալ էր աշխարհականաց քրիստոնէից», ոչ միայն զգացմամբք և գաղափարօք համամիտ էր ընդ Վարդանայ, այլ և մանաւանդ ոխ և բարկութիւն կը տածէր Վասակայ դէմ, որ քսութեամբ պաշտօնանկ ընել տուեր էր զնա և փոխանակ նորա Պարսիկ մը դրուած էր։ Վասակ ոչ կրնար աւերել այդ մեծամեծ նախարարաց և Վարդանայ մէջ եղած բնական դաշնակցութիւնը, և ոչ ուծացընել կամ յինքն դարձնել այն յարգանքը և հպատակութիւնը՝ զոր ուրիշ տանուտերք ունէին Մամիկոնեան իշխանին։ Պատերազմից և զինուորական գործոց մէջ երբէք պիտի չկարողանայր փայլիլ Սպարապետին չափ, որոյ ոչ առիւծի սիրտն ունէր, ոչ կայծակի արագութիւնը, ոչ փորձառութիւնը և ոչ զօրաց ազդած վստահութիւնը և համակրանքը։

Արդարև ինքն ալ ունէր հզօր նիզակակիցներ. բայց սոքա իրեն հետ այնքան անկեղծ և հաստատուն կապերով չէին կապուած՝ որքան իրեն հակառակորդ նախարարք ընդ Վարդանայ։ Սպարապետին դէմ ունեցած նախանձուն և ատելութեանը համար միայն՝ Բագրատունին Տիրոց բարեկամացեր էր Վասակայ հետ. և եթէ Վարդանայ փառքը նուազէին, հաւանական էր որ այդ ատելութիւնը Սիւնեաց իշխանին դէմ դառնար։ Արծրունեաց մէկ կարևւոր մասը իրեն հետ էր. և թէպէտ սոքա լայնատարած գաւառաց կ'իշխէին ու մեծ ազդեցութիւն ունէին ի հարաւոյ Հայաստանի, բայց աւելի անկախ տէրութիւն մը վարելու հետամուտ էին և յոյժ անտարբեր կրօնից կամ ազգին ազատութեանն։ Խոսխոռնիք՝ որ

1. Թովմա Արծրունի, 81։ — Այդ անուամբ բերդ մի գտնուիլն ի Մոկս յոյժ նշանաւոր է, եթէ արդարև Քաղդէացւոց առաջին բնակավայր եղած է լեռնաշխարհն որ ի հարաւոյ ծովուն Վանայ։ Քանզի էր երբեմն Զիրկուլլա անուն քաղաք մի մեծ ի Բաբելաստան հին Սումմեր գաւառին մէջ, քիչ հեռի ի Թելլօհ կոչեցեալ բլրակաց որք հռչակաւոր եղան վերջերս Պ. Սարզէքի պեղմամբք։ Այդ քաղաքին անունը մինչև ցայժմ պահուած է ի գիւղ մի որ կոչի Ջերղուլ։ Տես Babelon, Hist. anc. de l'Orient. հատ. 4. էջ 80 — Իսկ եւս այժմ յաշխարհին Մոկաց գիւղ մի Զարխալ անուն, որուն քովէն կ'անցնի Զարխալ գետն, որ կը թափի ի Բոհթան-Սու։

արդէն բացէ ի բաց զՄոզականն օրէնս կը դաւանէին, անշուշտ գէնքերնին Վասակայ դէմ պիտի դարձնէին, եթէ նա Սասանեանց տան հետ թշնամանայր։ Ցաւօք, Աղձնեաց վրայ կռթնիլ անհնար էր, որովհետեւ դոքա բաւական ժամանակէ ի վեր յունական և պարսկական վեհապետութեան ներքեւ ինքնիշխանութեան վարժած ըլլալով, փափագ չունէին նոր տեարց հնազանդելու և Հայաստանի խառնաշփոթութեանց և տագնապաց մասնակցելու։ Իսկ Վիրք[1] և Աղուանք, որք Հայոց տիրութենէն օգուտ քաղելով մերձակայ հայ գաւառներն յափշտակեր ու իշխանութիւննին աւելի եւս տարածելու ջանացեր էին, աւելի վնասաբեր պիտի լինէին երկոցունց կողմանց ալ քան օգտակար։

Վասակ իւր գործունէութեամբը[2], հրամանաւը և խորագիտութեամբը յոյժ պիտանի կրնար ըլլալ[3] Վարդանայ. բայց որովհետեւ Վարդան Եկեղեցականաց պատուարն և գործիքն էր, Վասակ եթէ նմա ձեռնտու լինէր, իւր ոխերիմ թշնամեաց[4] Եկեղեցականաց համար աշխատած պիտի ըլլար։ Պարզ նախարարաց կարգը պիտի իջնէր իւր աստիճանը, մինչ այժմ մարզպանութեամբ նոցա մէջ ամենէն վեր էր։ Իսկ եթէ նոյն ինքն Վասակայ դաշնակցութեամբ Վարդան չկարենար վանել զՊարսիկս, որ շատ հնար էր, այն ատեն Վասակ պիտի կորսնցնէր ոչ միայն զՄարզպանութիւնն այլ և Սիւնեաց Տէրութիւնը։ Իւր փեսայն Վարդվաղան՝ կնոջը հետ ունեցած ատելութեանը պատճառաւ, Պարսկաստան փախեր էր յերեսաց աներոջն[5], որ մախացեալ կամէր սպանմամբ խնդրել զվրէժ քի-

1. Վիրք տիրեր էին Գուգարաց. այս հայկական նահանգս որ իններորդ դարուն վերջերը վերստին Բագրատունեաց հարստութեան անցեր էր, տասներորդ և ԺԱ. դարուց մէջ նոցա մէկ ճիւղին տէրութիւնն եղաւ։ Այնուհետեւ Վիրք նորէն առին զայն Մահմետականաց ձեռքէն ու առանձին գաւառ մ'ըրին՝ որ Սոմխէթ կոչեցաւ։ Աղուանք ալ զիշխանութիւննին տարածեր էին Ուտիոյ, Արձախոյ և Փայտակարանի մեծագոյն մասին մէջ. ու Գանձակայ և Պարտաւայ մէջ հաստատեր էին արքայական և պատրիարքական աթոռնին։

2. Տես Վասակայ մտաւորական կարողութեանը վրայօք Մոզպետին վկայութիւնը. Եղ. Գ. 20։

3. Տես Եղիշեայ ըրած նկարագիրը. «Մարտեաւ հնարիւք ընդ իմաստուն, և յոյժ խորագիտութեամբ ընդ գիտուն, յայտնի ընդ անմեղս, և ի ծածուկ ընդ խորհրդականս, ձեռն էարկ և եհան զբազումս ի գնդէն Քրիստոսի և խառնեաց. և այլն. Դ, 8։

4. Տես Եղ. Գ, 72. «ամենայն ամբաստանութիւնն ի սուրբ Եկեղեցւոյն կրթեալ էր»։

5. Վարդվաղանի փախուստին 447էն յառաջ եղած կ'երեւի. Տես Գաթրճ. Տիեզ. Պատմ. հատ. Բ, էջ 529, ծն. 4։

նուն, և անդ Միհրներսեհի խորհրդական և մտերիմ ըլլալով և Արքային արքային աղջկան ալ երես գտնելով, անհամբեր կը սպասէր ընդունելու զխոստացեալն նմա զտէրութիւն Սիւնեաց, ի վարձատրութիւն ուրացութեան և չար խրատուցն: Ասկէ զատ՝ ներելի էր Վասակայ գանգատիլ Սասանեանց դէմ զէնք վերցնելու, քանի որ զիւր երկու որդին՝ զԲաբիկ և զԱտրներսեհ պատանդ թողուցեր էր յարքունիս Յազկերտի:

Իսկ եթէ Պարսից հետ միանար իւր ազգակցացը դէմ, կը յուսար թագաւոր լինել ըստ խոստմանն Միհրներսեհի ու ազատապէս խորտակել զիւր հակառակորդս [1]:

Վասակ հայրենեացը և ազգին կորուստը ընտրեց, չուզելով նոցա զոհել իւր փառասիրութիւնը և ոխը:

Քաղաքական վրդովումը սակայն անմիջական սաստկումն կը սպառնար յայտնի զինադրութեան յանդգնողին: Նախարարներէ մին՝ որ սպարապետին տունը գումարեալ ժողովոյն մէջ հակառակ կարծիք յայտներ էր, անմիջապէս ի տեղւոջն քարկոծեցաւ յամբոխէն: Վասակ ժամանակ մը գաղտնի որոգայթիւք աշխատեցաւ գործը խափանելու. Նենգութիւնը իմացուեցաւ, ձերբակալ եղաւ, եպիսկոպոսաց առջև կ՚երդնար, «կրկնէր, երեքկնէր զանուտ երդումն առաջի բազմութեան ի սուրբ աւետարանն». և աւելի վստահութիւն տալու համար երկբայողաց, գրով խոստմամբք եւս կը դարձնէր զՎարդան՝ որ դէմ եղեալ Յունաց երկիրը կ՚երթար, անդ քրիստոնէաբար ապրելու, թողով զՀայս իւրեանց ճակատագրին:

Կայսեր՝ Վրաց՝ Աղուանից՝ Աղձնեաց բդեշխին՝ Անգեղ տան՝[2] Ծոփաց՝ Հաշտենից՝ Եկեղեաց՝ Անձիտեայ սպարապետին և այլոց իշխանաց օգնութիւնը խնդրելու համար գրուած նամակները իւր մատնեաւ կը կնքէր, իւր գրաւոր հրամանաւը բերդերէն պարսիկ զօրքը կը վռնտուէին, և Զարեհաւանի մէջ մոգերը կը սպաննուէին:

Այսպէս կը ծածկէր զանձն Վասակ, ժամանակ տալու համար յԱղուանս գտնուող պարսկական զօրաց՝ որ իւր ծածուկ հրահանգաց համեմատ Հայաստան վաղէին: Եւ երբ նոցա յառաջ խաղալուն գոյժը հասաւ ու Վարդան զնոսա վանելու համար բանակաւը հեռացաւ Հայոց սահմաններէն, յայտնեց Վասակ զիւր խարդաւանքը, ու համախոհներովը Սիւնեաց լեռները քաշուեցաւ:

1. Եղիշէ, Գ. 5:

2. Ասմ Լեռն, Տիգրիսի եզերքը, ի հիւսիսոյ Տիգրանակերտի:

Մնացածը գիտես, ո՜վ ընթերցող. բայց Վասակայ և նորա համախոհից լրած միտքը՝ միայն Աւարայրի մէջ անկեալ քաջերուն կամ Վազգեսի անապատին մէջ չարաչար տանջանօք պատժեալ նահատակաց թուէն մի չափեր։ Այնք անշուշտ վեհ և առաքինի անձինք էին՝ որք իրենց ազգին դեռ օգտակար կրնային լինել. բայց Աւարայրու ճակատամարտին մէջ գրեթէ խանգարեցաւ փառաւոր քաղաքակրթութիւն մի այլ, որոյ մատենագրական մնացորդքն մեր ամենէն շօշափելի և աներկբայելի պարծանքն են։

## Զ

Այս քաղաքակրթութիւնս երեք գլխաւոր տարրերէ կազմուեր էր. Տանուտէրական դրութիւն, Քրիստոնէութիւն, և Յունական և Ասորի դպրութիւնք։

Հայաստանի կառավարութեան հիմնական ձեւը տանուտէրական եղած ըլլալուն կարելի չէ, կարծեմք, տարակուսիլ։ Եղան անշուշտ հանճարեղ թագաւորք կամ Այրարատ նահանգին տանուտերք, որք ուրիշ ազգաց ահեղասաստ ինքնակալաց հաւասար միահեծան վարեցին զազգն համայն. բայց սոքա բացառութիւններ կրնան համարիլ մեր ընդհանուր պատմութեան մէջ. երբ թագաւորին անձնական կարողութիւնները պարագայից ծանրութեանը անզուգական ըլլային, կամ օտար պետութեանց ճնշումը անոր ազդեցութիւնը ակարացնէր, տանուտերք գլուխ կը վերցնէին և թագաւորը կը ստիպուէր նոցա հետ բաժանել երկրին իշխանութիւնը։ Այդ տանուտէրական դրութիւնն աւելի միակերպութիւն և օրինական հաստատութիւն առաւ Պարթեւաց ժամանակ, որք իրենց լայնածաւալ պետութիւնը՝ յորդւոց որդի յաջորդող կուսակալ–սատրապից կամ աշխարհապետաց ձեռօք կառավարեր էին։ Բայց ինչ որ Ասորեստանի ու Պարսկաստանի մէջ ժամանակաւոր՝ և Պարթեւական հարստութեան յատուկ ձեւ մի էր, Հայաստանի մէջ սովորական և յարատեւ եղած էր[1]։ Դորա պատճառը փնտռելու է գլխաւորապէս

1. Արշակունեաց վերջին ժամանակաց հայկական ընկերութիւնը կը կազմուէր. Ա. ի Թագաւորէն. Բ. ի Նախարարաց կամ ի տանուտերաց՝ որոց թիւը

հայկական լեռնաշխարհին կազմակերպութեանը մէջ. երկիր մը որ բարձրաբերձ լերանց պատերով և յաղթաջուր գետերով ի զանազան մասունս տրոհեալ էր: Այդ բնական անջրպետքն կովկասեան լեռնագօտւոյն պէս դիւրին չէր պաշտպանել թշնամի մեծամեծ բանակաց դէմ, որովհետև առհասարակ չէին ներկայացներ բաւական անընդհատ բարձրութիւն կամ դժուարութիւն. բայց և այնպէս այլևայլ նահանգաց ժողովրդոց իրարու միացման և ձուլման արգելք էին. միանգամայն և ներքին բարեկարգութեան և միութեան հսկելու պաշտօնն ունեցող արքունի զօրաց խաղացման խոչընդոտն կը լինէին: Հայկական բարձրաւանդակին անհամբոյր կլիմային ուրիշ շրջակայ աշխարհաց նման հրապոյր չէր ազդեր արշաւող ազգաց. այսու հանդերձ ընդունարան եղած էր այլացեղ և այլաբարբառ ժողովրդոց, որոց շատերուն ճանապարհին վրայ կը գտնուէր: Անշուշտ այժմեան հաղորդակցութեան զօրաւոր միջոցները կարող են այդպիսի երկրի բնակիչները իրարու կապել և հաստատել. բայց այդ միջոցներդ չկային հին ատենը. և նախնի ազգաց մէջ միայն Հռովմայեցիք հասկցեր էին ամրակառոյց պողոտայից օգուտը: Հայաստանի նահանգաց և ոչ մին մնացածներէն ըստ բաւականի ոչ աւելի ընդարձակ և ոչ ալ բազմամարդ էր՝ զանոնք կատարելապէս ճնշելու և նուաճելու համար: Ինչպէս որ Եւրոպայի պատմագէտք իրաւամբ գրուցեցին՝ թէ Սենայի և Լուարի դաշտավայրք, որ Գաղղիական միապետութեան խանձարուրքն եղան, եթէ աւելի

120ը անցնելու չէր. Գ, յԱզատաց՝ որք նախարարներէ անհամեմատ աւելի բազմաթիւ էին և ժողովրդեան ընտրելագոյն մասը կը կազմէին. Դ, ի Շինականաց. Ե, յԵկեղեցականաց: Ազգային պատմագրութեան մեծ ծառայութիւն մը մատուցանէ այն՝ որ այդ հինգ կարգի մարդկան կացութիւնը, իրարու նկատմամբ ունեցած իրաւունքը և պարտականութիւնքը, հողատէրութեան և ժառանգութեան օրէնքը վաւերական փաստիւք հաստատէ:

Այսչափ միայն յիշեցնենք աստ թէ նախարարք թագաւորէն անկախ կ'իշխէին՝ ժառանգութեամբ ստացած երկիրներուն վրայ. իրենց հպատակաց կենաց և մահուան դատաստանը կը տանէին. հարկ կը հաւաքէին իրենց երկրին բնակիչներէն, և ի ռազմի իրենց յատուկ զօրք կը կազմէին: Այդ արտօնութեանց կամ իրաւանց փոխարէն պարտաւոր էին՝ իւրեանց զօրօք օգնել թագաւորին՝ ընդհանուր վտանգի ատեն, և հարկ հատուցանել նմա: Այդ իրաւունքներդ և պարտականութիւններդ միշտ չէին յարգուեր. երբեմն թագաւորք նահապետական իշխանութենէ կը դրկէին զօրինաւոր ժառանգը և այլում կը պարգևէին զայն. շատ անգամ ալ նախարարք առ գահն ունեցած պարտքերնին չէին կատարեր: Եթէ այսպէս և եթէ այնպէս, խաղաղութիւնը կը վրդովէր և մեծամեծ շարիք կը հետևէին:

զօրաւոր անջրպետօք բաժանեալ լինէին յիրերաց, այդ երկու նահանգաց միացումն անհնարին եղած կ'ըլլար, որով և Գողթն գուցէ մինչև ցայժմ բաժանեալ մնայր յինքնուրոյն իշխանութիւնս, որպէս էր Միջին Դարուց մէջ. Նոյն օրինակ մարթ է կարծել որ եթէ Այրարատայ նահանգը կրկին ընդարձակութիւն ունենար, կամ եթէ շրջակայ նահանգները անկէ զանազանող անջրպետք կամ բնական հանգամանք աւելի ակար լինէին, Հայաստանի մէջ իշխանութիւնը միահեծան կ'ըլլար, որպէս յԱսորեստան և ի Պարսկաստան։ «Ասիական Զուիցերի» անունը զոր տուին աշխարհագէտք ոմանք Հայոց երկրին, կը յարմարէր ամա հին ատենը ոչ միայն բարձրութեանը, լճերուն առատութեանը, զօռ և հզօր պետութեանց մէջ ունեցած դիրքը պատճառաւ, այլ և ներքին քաղաքական կազմակերպութեանը համար։

Նախարարական դրութիւնը սակայն, որ զՀայս աւելի պինդ կազմութիւն ունեցող ազգաց բաղդատմամբ ակար պահեց, նոյն անհատական կորովյն աւելի դիմանալու պատճառ եղաւ։ Փոխանակ խառնամբոխ քաղաքաց մէջ դիզուելու և ապականութեան ենթարկուելու, ժողովրդեան աշխոյժ և գործունեայ մասը ընհանրապէս ագարակներու մէջ և նահապետաց դղեկաց և աւանից բոլորտիքը սփռած կը բնակէր. և թէպէտ Երասխայ դաշտին մէջ Թագաւորաց կառուցած դաստակերտքն տակաւին կանգուն և մարդաշատ էին, Հայաստանի մէջ՝ մանաւանդ Թագաւորութեան վերնալէն ի վեր՝ գիւղերը համեմատաբար աւելի կարևորութիւն առեր, բազմացեր և շէնցեր էին։ Անդ ազատանին որսորդութեամբ և մնացած ժողովուրդը հողագործութեամբ պարապելով՝ մարմիննին առողջ և սրտերնին առոյգ կը մնար. մինչ նախանձը կամ փառասիրութիւնը վառ կը պահէր տանուտերց պատերազմական ոգին[1]։ Թող այն երրորդ կամ չորրորդ հարստութիւնները՝

1 Երասխայ ձորադաշտակին մէջ, որ յարևելից ի Հայաստան արշաւանաց և առևտրոյ մեծ ճանապարհն է, ամէն ժամանակ գտնուած էր ամրացեալ և հոյակապ քաղաքներ։ Արմաւիրէն ետքը՝ մայրաքաղաք եղած էր Հայոց Արտաշատ. Ախուրեանի կանակը և սորա Երասխայ խառնուած տեղը՝ իբրև երկրորդ պատուար կանգնեալ էր Երուանդաշատ։ Արտաշատայ շուրջը բազմաթիւ գիւղեր և աւաններ գտնուելէն (Եղ. Գ. 64) կը հետևի՝ որ ի կէս Ե դարուն բազմամարդ էր տակաւին. անդ ժողովեցան Եպիսկոպոսունք և Նախարարք, բայց իբրև Թագաւորանիստ վայր կամ պաշտօնատեղի, նորա նախկին շքեղութիւնը փոխադրուեր էր ի Վաղարշապատ կամ ի Նոր քաղաք, որ իւր բարձրաբերձ շինուածօքն և անթիւ ապարանօքն, մեծ եկեղեցեաւն և վկայարանօքն կեդրոն եղած էր Հայաստանի (փարպ. 28–29)։ Եղիշէ կը յիշատակէ և զԳառնի քաղաք, զփայտա-

զոր ունեցան Հայք յետագայ ժամանակաց մէջ, ինչ հետք մնացեր էր ի հինգերորդ դարու՝ Ասորեստանեայց, Բաբելացւոց, Մարաց, Պարթեւաց և Խորայելացւոց իշխանութիւններէն, որք Հայկազանց հետ կամ աւելի նոքը ծներ և մեծցեր էին: Նոյն ինքն Հռոմէական մեծազօր ազգէն անուն մը կամ աւեր մը միայն կայր. Իտալական բանակները կազմողներն և առաջնորդողները վարձկան խուժդուժ զինուորք և զօրագլուխք էին. Իսկ արեւելեան կայսերութիւնը ջլատութեան, ապիկարութեան և աղքատութեան օրինակ մը միայն կրնար ըլլալ: Մինչդեռ մարզպանութեան ներքեւ գըտնուող Հայք, որք Յունաց բաժին ընկնող գաւառաց և առանձինն կառավարուող Կորդուաց, Աղձնեաց և Արզնարզինի բաղդատմամբ Հայաստանի մէկ կէսն անգամ չէին, իննսուն հազար զօրք կարող կը լինէին հանելու ու երեք բանակք կազմելու. Յազկերտի՝ Յունաց և մանաւանդ Քուշանաց դէմ ըրած պատերազմներէն պարպուած արքունի գանձը կը լեցնէին կրկնապատկեալ տրոց և հարկաց կանոնաւոր վճարմամբ[1], ի մեծ ապշութիւն Պարսից, որ նոցա կեղեքմանէն աւելի Հայոց իրական հարստութեան ապացոյց էր, և Խորազմի անապատին մէջ հայկական այրուձին մեծամեծ ծառայութիւններ կը մատուցանէր ապերախտ տանն Սասանեանց:

Իսկ եթէ ուզենանք գիտնալ թէ ինչ ազդեցութիւն ունեցաւ քրիստոնէութիւնը Հայոց բարուց վրայ, բաւական է բաղդատել Բուզանդայ՝ Արշակայ և Պապայ դարուն ըրած նկարագիրը Եղիշէեայ պատրեալ նախարարաց Տիկնանց նկարագրին հետ: Վռամշապհոյ քանամեայ իմաստուն կառավարութեամբ, ուսեալ և եռանդուն հայրապետաց ջանիւքը՝ աւետարանական սկզբունքը Հայոց մտաց և սրտին մէջ տպաւորուեր էին. Հայկական ընտանիքը սրբուեր էր ի հեթանոսական խառնակութեանց. և առանձին կենաց մաքրութեամբը անհատից կորովը և կորձութիւնն ալ աւելցեր էր: Ամէն կողմ դպրոցներ, ուսումնարաններ բացուեր և բեմասացութիւնք հրապարակային դատախօսութեանց տեղը բռներ էին. Նախարարք ալ տանն տանն վէճերնին մոռնալով՝ ուսմանց և ընթերցման կը պարապէին ու կը յորդորէին զգպրութիւնս. Երկրին ընտրելագոյն

կարան քաղաք: Կ'երեւի թէ Ն դարուն վերջերը Դուինի կարեւորութեամբ մնացեալ քաղաքները անցեր էր: Միջին Դարուց մէջ Եւրոպա եւս, աւատական իշխանութեան տակը, քաղաքները նուազեր և ամայացեր. Իսկ գիւղօրէից կարեւորութիւնը աւելցեր էր: Տե՛ս Guizot, Civilisation en Europe.

1. Եղիշէ, Բ. 17. 69:

երիտասարդները ծաղկաքաղ մեղուաց նման, այն ժամանակի քաղաքակրթութեան գլխաւոր կեդրոններուն մէջ, հելլէն և ասորի դպրութիւնքը և գաղափարները հաւաքելով՝ դարձեր էին ի Հայրենիս. և թէպէտ դոցա Հայաստան բերած գիտութեանց ծիլերն հնացեալ կամ հիւանդ արմատներէ աճեցած էին, բայց արգաւանդ հողոյ և կազդուրիչ բնութեան մը ազդեցութեամբ՝ զօրաւոր կերպով աճեր և գեղեցիկ պտուղներ արտադրելու սկսեր էին: Եթէ Սասանեանք կամ մեր կռուասէր նախարարք միջոց տուած ըլլային, հուժկու քաղաքակրթութիւն մը և ճոխ մատենագրութիւն մը պիտի գոյանար, յատուկ հայկական կերպարանօք, որոյ նախընծայքը և բեկորքը եւեթ մեր այնքան հիացումը և օտարաց զարմացումը կը շարժեն այժմ:

## Է

Մինչեւ ցայս վայր քննադատեցինք Եղիշէ՝ միայն Վարդանայ պատմութեան վրայէն՝ որ նորա գլխաւոր գործն համարուած է: Սակայն մատենագիր մը լաւ ճանաչելու համար, նորա ամբողջ երկասիրութիւնքը տեսնել պէտք է: Քննադատք համօրէն համամիտ են գովասանօք խօսելու առ Միանձունս ուղղեալ խրատուց վրայ, որ թէ իմաստից և թէ ոճոյն համար ազգային մատենագրութեան ամենէն գեղեցիկ արտադրութիւններէն մին կրնայ համարուիլ: Չորս ու կէս դար յառաջ Փիլոն Եբրայեցին Աղեքսանդրիոյ մօտերը բնակող Եսսենեանց (Essèniens) կենցաղոյն վրայ գեղեցիկ ճառ մը գրած էր, զոր հաւանօրէն առաջին թարգմանիչքն փոխածեր էին ի հայ բարբառ, և որոյ վրայ Եւսեբիոս եւս ընդարձակ տեսութիւն մի կ'ընէ իւր Աւետարանի պատրաստութիւն անուն երկասիրութեան մէջ: Եղիշէ այդ ճառէդ և տեսութենէդ հաւաքելով ինչ որ քրիստոնեայ ճգնաւորաց կրնար յարմար գալ, կատարելագոյն և գեղեցկագոյն պայմանաց մէջ միանձնական հասարակութիւն մը կը գծագրէ, զոր անորոշ կերպով կը դնէ «ի կողմանս հարաւոյ», օրինակ տալով զայն հայ վանականաց: Եւ թէպէտ Եղիշէի նպատակը տեսական կենաց (vie contemplative) և իմաստութեան առաւելութիւնները ցուցանել է, բայց իւր ազգակից

վանականաց ընչից և ստացուածոց, ագարակից և կալուածոց և բարեկեցիկ կենցաղոյն և յղփութեանց վրայ կարևոր տեղեկութիւններ կու տայ, և այդ հեղգութեանց իբր երկնառաք պատուհաս՝ երկրաշարժի և սովու ահաւոր նկարագիր մ՚ընելով, յետին սրտառուչ հառաչանք մը կ՚արձկէ իւր ականատես եղած քաղաքական աղխտից վրայ: Այդ պատճառաւ մեք իսկ յարմար դատեցինք յարել զսա Վարդանայ պատմութեան՝ իբրև շարունակութիւն կամ լրացնող մասն նորին: Այսու հանդերձ այդ փոքրիկ ճառդ մեր հեղինակին մասնաւոր զօրութեան և որպիսութեանը նկատմամբ՝ «Վարդանէն» աւելի բան մը չի աւելցներ մեզ: Այս նշանաւոր քերթուածը գրողը անշուշտ Միանձանց ճառն ալ գրելու կարող էր:

Են բազում այլ երկասիրութիւնք Եղիշեայ նուիրեալ, զորս Վենետկոյ Մխիթարեան Հարք կրկին անգամ տպագրեցին:

1. Մեկնութիւն Յեսուայ և Դատաւորաց. 31 էջք.
2. Յաղօթսն որ ասէ՝ Հայր մեր որ յերկինս. 8 »
3. Ի Մկրտութիւն Քրիստոսի. 6 »
4. Ի Թաբօր լերինն՝ Յայտնութիւն Տեառն առ Պետրոսեանս. 27 էջք.
5. Ի Չարչարանս Տեառն (և ի խաչելութիւն, ի Թաղումն, և ի Յարութիւնն, յԵրևումն աշակերտացն առ Տիբերեայ ծովուն և ի քարոզութիւն Առաքելոց) 114 էջք.
6. Վասն դատաստանին և միւսանգամ գալստեանն. 2 էջք.
7. Վասն Յիշատակաց մեռելոց ի կանոնաց Գրոց. 5 »
8. Կանոնք վասն դիւահարաց. 5 »
9. Վասն ճգնողաց մարդկանն թէ ուստի գան և առ ով երթան. 8 »

Այդ զանազան մեկնութիւնքդ և ճառերդ Վարդանանց պատմութեան Ութ Յեղանակաց հինգ չորրորդին չափ են:

Արարածոց մեկնութիւն մի ալ շարադրած էր Եղիշէ, որոյ կորուստը մեծ զրկումն է հայերէն դպրութեանց, և այս կորուստեան ցաւը աւելի զգալի կ՚ընեն նորա հատուածները, զոր համանուն երկասիրութեանը մէջ յառաջ կը բերէ Վարդան՝ մատենագիր ԺԳ. դարու, յանուն Եղիշեայ[1]:

Զգրութիւնս զորս յիշատակեցինք ի վերոյ, ամենք ժամանակաւ երիցագոյն համարեցին քան զպատմութիւնն և զճառն Միանձանց. և նոյն ոճոյն մէջ այնքան զանազանութիւններ տեսան, որ կը կարծեն թէ Եղիշէ զգաստ այնպիսի հասակի մէջ շարադրեր էր,

1. Պատմութիւն Հայերէն Դպրութեանց, էջ 242:

որ տակաւին չէր ստացած այն լեզուի զարմանալի մաքրութիւնը և հմտութիւնը որ ուրիշ գրուածոցը մէջ զմեզ կը զմայլեցնեն։ Մխիթարեանց 1859 տարւոյն հրատարակած Եղիշեայ ամբողջ երկասիրութեանցը մէջ յետագայ ծանօթութիւնը կը գտնենք ի տարբե մեկնութեան Դատաւորաց և Հայր մերին։

«Յաջորդ ճառքդ գտանին յանուն Եղիշէի Վարդապետի, այլ հարազատութեանն և իմաստիցն չեք երաշխաւորել»։

Ասանկով զվերոյգրեալ երկուսն հարազատ կը թուին համարել և երկրայութեան տակ կը դնեն մնացեալ գրութիւնքը։ Գարեգին Վարդապետը իւր Հայերէն դպրութեանց պատմութեանը մէջ կ'արձանագրէ այդ գրութեանց հարազատութեանը վրայ ոմանց յայտնած կասկածը. բայց որովհետեւ մի քանի պատմիչք, և ի մասնաւորի Կիրակոս ըսած է՝ թէ «Եղիշէ գրեաց պատմութիւն սրբոց Վարդանանց և զգիրս կանոնացն և այլ մեկնութիւնս գրոց սրբոց և զչարչարանաց փրկչին», կ'ուզէ հաւատալ և նոցա հարազատութեանը[1]։

Արդ Կիրակոս ԺԳ. դարու մատենագիր է և Եղիշէէ 800 տարի ետքը արուած վկայութիւն մը ստուգութեան շատ ակար արժէք մը կրնայ ունենալ։ Վարդանանց պատմութեան ոճը, իմաստները, շարագրութեան ձեւերն այնքան որոշ և յատուկ կերպարանք մի ունին, որ մեզ թոյլ չեն տար շփոթել նորա հեղինակը այլոց հետ։ Եւ եթէ չգտնեմք այդ յատկութիւններդ Եղիշեայ ընծայեալ ուրիշ գրութեանց մէջ, պարտիմք մերժել զնոսա իբրեւ անհարազատ, նաեւ եթէ մի քանի դար յետոյ վկայող զանազան պատմիչք իրարմէ երկրորդելով՝ հակառակը պնդեն մեզ։ Եղիշեայ ոճը յատուկ, գեղապաճ և ազդու է՝ երբ նա մեծ զգացմունք մը կամ զօրաւոր կրքեր բացատրէ. մթին՝ սեղմեալ և կրնամք ասել եւ խառնակ՝ երբ ընդգանցական և աստուածաբանական խորհրդածութեանց մտնէ։ Վարդանայ պատմութեան ճակատը դրուած ընծայականը, զոր շարագրեց եօթն Յեղանակները գրելէ, այս է՝ որպէս պիտի ասէին երկրայողքն՝ լեզուին կատարեալ հմտութիւն և մաքրութիւն ստանալէն յետոյ, այնքան խրթին և սեղմեալ կ'երեւի՝ որքան Յեսուայ և չարչարանաց մեկնութեանց ամենէն մութ մասունքը։ Գիտելի է միայն՝ որ աստուածաբանական իմաստք Վարդանանց պատ-

1. Եղիշէի անուան կենսագիրն ալ կ'ըսէ. «որ եւ այլ գիրս ստացեալ կանոնական եւ զգուշաւորս սրբոյ Եկեղեցւոյ, և սաւելեալ ի վերա արդարութեան հաճոյ լինէր Աստուծոյ և մարդկան». Սոփ. Հայկ. հտ. ԺԱ. 40։

ժութեան մէջ քիչ կը հանդիպին, մինչ միւս գրութեանց մէջ մեծ տեղ բռնած են։ Ասոր հակառակ երբ Մեկնութեանց մէջ տեղ տեղ բուն կիրք մը կամ սրտաշարժ զգացմունք մը բացատրելու կը ձեռնարկէ, ոճը այնքան կը պարզի ու կը մաքրուի, որքան Վարդանանց պատմութեան ընտրելագոյն էջից մէջ։ Եղիշէի գրութեան գլխաւոր յատկանիշներն են նմանութեանց առատութիւնը և վսեմութիւնը, դիմառնութեանցը մէջ ցուցուցած բարկութիւնը, հակադրութեանց յաճախ գործածութիւնը և չափակցեալ կազմութիւնը, պատկերակերպ նկարագրութիւնքը, մարդկային սրտի և կրից տատանմանց խորին ճանաչողութիւնը, վերջապէս սաստիկ տպաւորող և մանրակրկիտ միտքը՝ որով առարկայի՝ իրողութեան կամ խնդրոյ մը գլխաւոր և երկրորդական բազմապիսի երեւոյթները և հանգամանքը միանգամայն կը տեսնէ։ Այդ վստահելի նշաններուն ամէնն ալ կը գտնեմք երկարագոյն գրուածոյը մէջ, և գոնեա միայն համառօտ ճառերուն մէջ, քանզի այս վերջնոց նիւթը և կարճութիւնը ընդարձակ ասպարէզ մը չէր հայթայթեր Եղիշէի հանճարոյն։ Նմա նուիրեալ երկասիրութեանց մէջ կը տեսնեմք նմանօրինակ իմաստներ յար եւ նման բացատրութեամբք, որ նոցա ամենեցուն իրարու քիչ շատ մօտ ժամանակի մէջ գրուած ըլլալուն ապացոյց է։ Կը թողումք միւս մանր գրութիւնները, ամփոփելու համար մեր ուշադրութիւնը երկու երկարագոյն մեկնութեանց վրայ՝ Դատաւորաց և Չարչարանաց։

Գիտեմք՝ թէ ի չորրորդ դարուն քրիստոնէութեան ոգին ամբանալով այն ժամանակի մտաց և սրտից վրայ, կրօնական պերճ մատենագրութիւն մը յառաջ բերեր էր Հռովմէական և Յունական աշխարհին ամէն կողմերը։ Մտաւորական այդ մեծ շարժումը Հայոց բարձրաւանդակին վրայ ելլելու և անդ տարածուելու համար գրեթէ կէս դարու չափ միջոցի պէտք ունեցեր էր։ Բայց սա եւս արդիւնքը եկեղեցական մատենագրութիւն մը եղած էր։ Քանի որ նախնի հեթանոսութեան սովորութիւններն և մեծամեծ դէպքերն ալ ոչ կարեւորութիւն ունէին և ոչ ախորժ կ'ազդէին, այգային հանճարներն եւս քրիստոնէութիւնը հասկնալու՝ հասկցնելու և հերձուածները հերքելու պարապեցան։ Եթէ մատենագիրք ոմանք մէկ մէկ հոյակապ անձանց հրամանաւ (Խորենացին՝ Սմբատայ Բագրատունւոյ և Եղիշէ՝ Դաւթի Մամիկոնէի հրամանաւ), գրիչնին ժամանակ մը անցեալ կամ ժամանակակից աշխարհական իրաց եղելութեանց պատմութեամբը զբաղեցուցին, զայդպիսի գրութիւնքս

պարտիմք բացատութիւններ և իրր, այդ երկու հոյակապ մատե-
նագրաց գրական գրուանքն համարել: Այսպէս զոր ինչ նոքա եր-
կրորդական և զուգնաքեայ կը վարկանէին, մեք իրաւամբք գլուխ
գործոց նոցա կը դատիմք, վասն զի հանճարոյ բնական և ոչ բռնա-
զբօսեալ ծնունդքն էին. բայց և այնպէս պէտք չեմք մոռնալ՝
թէ Խորենացին և Եղիշէն կեանքերուն և աշխատութեանցը մե-
ծագոյն մասը, ինչպէս իւրեանց ընկերակիցքը, կրօնական վարդա-
պետութեանց, կատարանաց թարգմանութեան և մեկնութեան և
բեմբասացութեանց սեփականեցին[1]:

Վասն որոյ Եղիշէ եւս երբ զինուորութիւնը թողուց և կրօնա-
ւորեցաւ, այլ և այլ մեկնութեանց ձեռնարկեց, զորս մեծ տօներու
առթիւ շարագրած և խօսած կ'երեւի: Բայց այդ տեսակ երկասի-
րութիւնք նորա վաղուան և զօրաւոր հանճարոյն անյարմար էին,
որ դժուարաւ կը համբերէր արբազան մատենից անողոքելի պա-
հանջմանց: Նա որ մարդկային կրից յուզմանց ճարտար նկարողն
էր, պատճառաբանելու պիտի ստիպուէր. նա որ դիւցազներգու-
թեան լայնարձակ ասպարիզին մէջ վազելու կամ աստուածերգու-
թեան բարձրութեանց և խորոց մէջ ճախրելու ծնած էր, այժմ
կրօնական վարդապետութեանց ամուր հանգուցիւք կը կաշկանդուէր:
Բայց ինչ որ ալ ըլլար պարապմանցը տեսակը, Եղիշէի հանճարը
չէր կրնար փոխուիլ, և երբ առիթը ներկայանայր, երբ կիրք մը
բացատրել կամ պատկեր մը նկարագրել հարկ ըլլար, իւր կրակոտ
երեւակայութեանը նշանները պիտի տար մեզ:

Կը յիշէք Ցեփթայեայ ուխտը, որ Ամոնացոց դէմ պատերազմի
գնացած ատենը երդուընցեր էր նուիրել Աստուծոյ, եթէ յաղթող
դառնայր, զոր ոք իւր առջէն դիմացը ելանէր: Ցարժամ կատարեալ
յաջողութեամբ կու գար իւր բնակարանը, միամօր աղջիկը զհայրն
շնորհաւորելու կը վազէր: «Ողբս ի վերայ սա Ցեփթայէ և ասէ.
Վայ ինձ, դուստր իմ, ընկճելով ընկճեցեր զիս. և ես զբերան իմ
բացի վասն յուխտ պատարագաց. և արդ ոչ կարեմ դարձուցանել:
Եբաց զբերան իւր աղջիկն և ասէ. Ցիս դարձ հայր իմ. եթէ ինեւ
ետ Աստուած զյաղթութիւն Իսրայելի և ապրեցոյց ի ձեռաց Ա-
մոնացւոցն, որպէս և ելին բանքն ի բերանոյ քո՛ արա համարձակ:
Բայց խնդրուած մի խնդրեմ ի քէն, հայր իմ, մի արգելուր յի-
նէն. թող երթայց ամիս երկուս, լացից զկուսութիւնն իմ, ոչ ի

1. Վարդապետ կոչուելուն պատճառն ալ այս եղած է:

գիւղս և ոչ ի քաղաքս, այլ ի լերինս։ Եւ հայրն փաղփաղակի յանձն էառ և ասէ. Երթ զաւակ իմ՛։

«Եկն եհաս ժամանակ պատարագելոյ նորա։ Անդ ժողովեցաւ ամենայն Իսրայէլ ի Դանայ մինչև ցԲերսաբէէ՝ մարդախաղող տե-սանելով զհայր առ որդւովն։ Երկու ամիս լացին ի լերին, հնչեաց բարբառ զուժի նորա ընդ ամենայն երկիր, ժողովեաց և ած զբազ-մութիւն մարդկան. քանզի կարծեցին ամենեքեան՝ թէ նոր օրէնք գնին՝ ոչ ի մարդկանէ՝ այլ յԱստուծոյ։ Աստակացան վերջին լալիւն-քըն քան զառաջին երկուց ամսոյն. ի միտս խրեանց այսր և անդր հածեալ լինէին, յիշելով զԱբրահամ և զժամանակ փորձութեան նորա։ Ամենայն բազմութիւնն արանց և կանանց զայս խորհուրդ ի միտ եդեալ՝ կարծէին զԱստուած այցելութիւն եկեալ հասանել նոցա։

«Եւ ընդդէմ պատարագին իբրև կարծիք մնաց ննջեալ տաղ-նապէին, և յայտնութիւն ձայնի ոչ եղև վերուստ ի վայր, փու-թացաւ Յեփթայէ և եհան զդուստրն փաղփաղակի, կափոյց զաչս մը-տացն յանտեսութիւնն, մինչև այլքն զալարէին ի զութ խանդա-ղատանաց, թէպէտ սիրտն ի բերանն էր, հարաւ սուրն ի փողս զատերն և կոտրեաց։ Առ ի գոչիւն հեղման արեանն և ի հնչիւն կոկորդին, և ի շարժումն բոլոր մարմնոյն՝ առհասարակ ամենայն բազմութիւնն բոլոր մարդկանն միաձայն միաբարբառ ճչեցին, իբր թէ երկինք և երկիր լացին զմահ միամօրին, զանտանելին յաղջա-կէզ յանհրաման սեղանոյ անտի»։

Ի Սուրբ Գրոց գիտեմք թէ Սամփսոն պատանեկութեան ատենը առիւծ մը սպաննեց։ «Եւ էջ Սամփսոն և հայր նորա և մայր իւր ի Թամնաթա. և խոտորեցաւ Սամփսոն յայգեստանն Թամնաթայ, և ահա կորիւն մի առիւծուց գոչեաց ընդդէմ նորա։ Եւ յաջողե-ցաւ ի վերայ նորա Հոգի Տեառն և ճեղքեաց զնա իբրև զուլ մի այծեաց. և ոչ ինչ գոյր ի ձեռին նորա, և ոչ պատմեաց հօր իւ-րում և մօր իւրում զոր արար»։ — Տես ինչպէս կը մեկնէ Եղիշէ ու կը նկարագրէ այդ եղելութիւնդ։

«Գործի հաստատեցաւ նա բարկութեան ի վերայ այլազգեացն. նախ կամէր տանել Աստուած զվրէժ որդւոցն Ենակոյ։ Եւ անդ էր չնապէս մի յառիւծուց, գոչեաց և յարձակեցաւ ի վերայ նորա։ Առիւծ առիւծոյ պատահեցաւ, մինն հինաւուրց լի չարութեամբ, և

1. Առկէ վերջը Աստուածաշունչ Գիրքն յետագայ խօսքերը միայն կը դը-նէ։ «Եւ եղև յետ կատարելոյ երկուց ամսոյն, դարձաւ առ հայր իւր, և արար նմա զուխտն զոր ուխտեաց»։

մինն այն ինչ կորիւն առիւծու մատաղ յաւուրց, և լի երկնաւոր զօրութեամբն. Հին առիւծն գոչէր մեծաձայն՝ ահ արկանելով մատաղ կորեանն, իսկ նա զօրութեամբ մինչէ՝ քամահելով զանոյժ բանս, և փախուկ մարմնոյն հեղձուցանէր ։ Այդ ուրեմն չարաւէր թշնամին մարդկան, մինչդեռ Հրեշտակն Աստուծոյ զաւետիս չքնաղ մարդկանն հօրն և մօրն աւետարանէր, լուաւ զամենայն բան կարգի զոր առաց նմա Հրեշտակն, դէտ ակն ունէր նմա թէ ուր կորուսցէ զնա ի դեղս[1] ։ Եւ յորովայնէ ի ծննդեանն ոչ կարաց վնասել նմա. եկն եմուտ ի չար զազանն մոլեգնեալ. կատաղեցոյց և յարոյց ի վերայ նորա, Թերեւս կարասցէ զաստուածատուր շնորհն խափանել, զցանկալի ծաղիկն խամրեցուցանել, զարծարծեալ լոյսն Իսրայելի շիջուցանել ։ Բազում զունդք դիւացն ընդ նմա եկեալ յօգնականութիւն՝ եկին մտին յառիւծն զազանացեալ. մանչեալ ընդդէմ եօթնազխեան մանկանն ։ Իսկ նա՝ իբրև զաւխտաւոր քահանայ՝ զաջ ձեռն դնէր ի վերայ գլխոյն և զահեակն արկանէր զներքին կզակաւն, ի գիրկս իւր առեալ հեղձուցանէր զերեւակի սրտմտութիւնն, և թմբրեցուցեալ զանմահ չարութիւնն՝ ընդ նմին և զշունչ զազանին քաղեալ հանէր ։ Բազուկ առ բազուկ կարկառէր, և ձայն առ ձայն բարբառէր, զբազում զունդս դիւացն ի բաց հալածէր, ոչ բրաւ ջախջախեալ և սրով հատեալ՝ զգեղեցիկ բնութիւն առիւծոյն ոչ ապականէր, որ էր խորհուրդ բոլոր աշխարհիս»։

Բայց այն գրութիւնը՝ յորում Եղիշէի հանճարոյն մեծութիւնը և կորովը դուրս կը ցայտէ առաւել եւս քան ի պատմութիւնն Վարդանանց, Քրիստոսի չարչարանաց և յարութեան Մեկնութիւնն է՝ զոր շարադրած է ըստ Յովհաննու աւետարանի, և որ «Վարդանայ» եօթն Յեղանակաց չափ ընդարձակութիւն ունի ։ Անշուշտ սա՝ պատմական երկասիրութեանը հաւասար ոչ զուարճալի և ոչ անտագիւտ է, և այդ պատճառաւ զուցէ յերեւէ ընկած ի բանասիրաց ։ Սակայն ինչ պէսպիսի և սքանչելի հնարքներ և միջոցներ կը գտնէ հեղինակին բեղմնաւոր միտքը ։ Իւր գրչին տակ աւետարանչին խօսքերը զարմանազան երեւոյթներ կը ներկայացնեն մեզ ։ Հռետորական և բանաստեղծական ձեւերն յաճախ են և յոյժ աշխատեալ. և երբ բնագիրը թոյլ տայ նմա, շղթայի զարնուած հզօր արծուի նման, որ կապերը յանկարծ թուլցած կամ արձակած գտնէ, կը թեւակոխէ ու կը սաւառնի այերց կամ անդնդոց մէջ, և այնպիսի

1. Հրեշտակը պատուիրեր էր Սամփսոնի մօրը՝ իւր յղութեան ատենը չխմել ոչ գինի և ոչ օղի և չուտել զամենայն անսուրբ, քանզի Սամփսոն Աստուծոյ ուխտաւորը պիտի լինէր ։

վսեմութեան մը կը հանդիպի, որոյ նմանը չեմք տեսներ նոյն ինքն Վարդանայ պատմութեան մէջ, որ սակայն հոծ է վսեմի ընտիր օրինակօք։ Ապացոյց մը տալու համար մեր ըսածին, միանգամայն և յորդորելու զազգայինս որ այդ Չարչարանաց Մ·կնութեան արժանաւոր յարգ և ուշադրութիւն ընծայեն, աստ կը դնեմք քաղուած մը։

Քրիստոս՝ յետ աւանդելոյ զհոգին ի վերայ խաչին՝ իջեր էր ի դժոխս, առ ի լուծել զիշխանութիւն մահու։ Այդ վարդապետութիւնք որ ի Զ. դարուն Լատինական հանգանակին մէջ մտաւ, արդէն իսկ յերկրորդ դարէն ի վեր վաւերուն և ճոխ նիւթ մը հայթայթած էր առհասարակ թէ արևելեան և թէ արևմտեան Եկեղեցւոյ հարց երևակայութեան և ընմատցութեանց, ինչպէս և միստինակերտ պատկերաց, որոց նկարագրութիւնքը գտցես ամփոփեալ են Նիկոդեմեան Աւետարան կոչուած հինգերորդ դարու անվաւեր գրութեան մէջ։ Անոնց մէջ կայ դժոխոց յանկարծական լուսաւորութիւնը կենդանի լուսովն Քրիստոսի, երկաթեայ և պղնձանեաց դրուներն՝ որպէս ի Հոմեր (Իլիական Ը, 15), կամ պղնձակուռ դրունք և նիգք երկաթիք՝ որպէս յԵսայի (ԽԵ, 2), մահուան փախչիլն ու թաքչիլը և ապա կոչկանդիլն ու պրկիլն ի Քրիստոսէ։ Ոմանք զՄահ և զԴժոխս կ'անձնաւորեն՝ որպէս ի Յայտնութեանն Յովհաննու (Զ, 8 Ի, 14), և Մահն ահարեկ՝ կը հարցնէ. «Ո՞վ է աս»։ Այլք զՍատան և զԴժոխս, և զէմ առ զէմ կը խօսեցնեն զնոսա, զՄահ կամ զՍատան չարութեան մէջ յամառ և զԴժոխս աւելի վարանեալ և տարտամ ցուցանելով։ Ոսկեբերան Դաւթի բերանն ալ խօսքեր կը դնէ, «Համբարձէք զդրունս ձեր ի վեր» և այլն, նոյնպէս և Եսայեայ. այլք ի մէջ բերեն և զՅովհաննէս Մկրտիչ որ Քրիստոսի մօտալուտ գալստեան լուրը բերեր էր ի Դժոխս։ Որոգինէս կ'ըսէ՝ թէ Քրիստոս յաղթութեամբն աւար առաւ ու տարաւ Սեթայ զաւակները։ Են ի հայրապետաց՝ որք զյունական Տարտարոսը կը յիշեցնեն երեքգլխեան Կերբերուն. այլք Հրէից պէս առհասարակ կը համարէին զերկիրս՝ զմբեթայարկ և բևեռեալ երկնաւ, ի ներքոյ երկրի՝ Դժոխք կամ Շեոլ, ահագին և խաւարչուտ վայր, ուր իջանեն ամենայն հոգիք արդարոց և մեղաւորաց։ Տեսնենք Եղիշէ ինչպէս կ'ըմբռնէ զվարդապետութիւնդ։

«Այլ տէր մեր Յիսուս Քրիստոս զառ ի ներքոյ արեգականս զամենայն զփրկագործն կատարեաց, և ի ստորին կողմն երկրիս ամենայն զօրութեամբ իւրով խաղաց գնաց իջանել տեսանել զզօրու-

1. Տես Alfred Maury. Croyances et légendes de l'Antiquité, 1863. և Ath. Coquerel fils, Histoire du Credo, 1869.

թիւն մահու և մխիթար տալ Ադամեան զաւակին՝ որք յուսահա-տութեամբ նստէին ի խաւարի և ի ստուերս մահու։ Եւ իբրև ե-հաս յամուր պարիսպն դժոխոց և յերկաթի պղնձանից դրունսն, ձայն աչագին մեծ կարապետին զպարիսպն առհասարակ դղրդացուցեալ կործանեաց, և զօրութիւն կենդանի հրոյն զկարծրանից դրունսն իբրև զմոմ հալեալ սպառեաց. և ճառագայթք ինքնածագ լուսոյն առ հասարակ սփռեալ տարածեցան ի գոգս և ի խորշս անմատոյցս ամուր վայրացն նորա. մաշեցաւ և սպառեցաւ թանձրացեալ խա-ւարն, և երևեցաւ մերկ խայտառակեալ զազրատեսիլ զարդ սան-դարամետականին ¹ ։

« Յայնժամ մահու զծիչ առեալ, զաղաղակ բարձեալ և լայր զառնագէս, գոչէր բարձրաձայն և ասէր. Ո՞վ է սա որ եկն եմուտ յանմատոյց ամուրսն իմ, մեկնեաց զիս ի բնական խաւարէն զգես-տէ իմմէ, և այրիմ ի տապ տապակիս յաչագին ի հրեղէն փառաց նորա. ոչ մնաց ինձ խորշ խաւարի և ոչ մութ գիշերոյն, ոչ դաշտ փախստեան և ոչ լեառն թաքստեան և ոչ ծործոր ապաւինի, չիք հեռաստան թէ փախեայց, և ոչ խորխորատ մոտաւորութեան թէ կացցէ։ Անդունդք աղաղակեն թէ սաս է, և լերինք իբրև զմոմ հալին առաջի փառաց նորա. զերեաց զամենայն տարտարոս, դո-ղացոյց զզօրս խաւարինս՝ զձախոյ մանկունսն իմ։ Վա՜յ է զինև, եղուկ եմ ես, կողոպտեաց զգանձս իմ, յաւարի էառ զամենայն զմեծութիւնս իմ, ոչ եթող ինձ յոյս մխիթարութեան, և ոչ զմի ոք յիմոց սեփականացս։ Ո՞վ արդեօք իցէ սա, զի ես ոչ գիտեմ. Ենովք և Եղիա այսրէն ոչ եկին. Աբրահամ և Սահակ և Յակոբ ընդ իս զայս ոչ գործեցին. Նոյ և Աբէլ և ամենայն արդարքն ընդ ինեւ անկեալ գնին, Մովսէս և մարգարէքն ինձ հնազանդեալ են, Մել-քիսեդեկ և ամենայն թագաւորք արդարք յինէն ոչ ապստամբեցին։ Եւ զի՞ մի մի թուեցեմ յանուանէ զազգս արանց կամ կանանց.

1. « Drove them before him thunder-struck, pursued
With terrors, and with furies, to the bounds
And crystal wall of heaven; which, opening wide,
Roll'd inward, and a spacious gap disclosed
Into the wasteful deep: the monstrous sight
Struck them with horror backward, but far worse
Urged them behind; headlong themselves they threw
Down from the verge of heaven; eternal wrath
Burnt after them to the bottomless pit ».

ՄԻԼՏՈՆԻ Կոր. Դրախտին, Գիրք Զ։

ահա ի սկզբանէ մինչև ցայսօր արդարք և մեղաւորք, հզօրք և տը-կարք, ծերք և տղայք, նա և որք չեւեւին գլոյս աշխարհի, առ ի ժողովեալ են, ամենեքեան ընդ իմով իշխանութեամբ կան հնազան-դեալ: Իսկ ո՞վ իցէ սա, տայր ոք գիտացեալ: Եթէ զտեղին կարէի գիտել, թերևս և հնարս ինչ խնամոյի. եթէ յերկրէ է, ապա և զգաւառն գիտէի և զազգատոհմն. զբնութիւնն զոր տեսանեմ, ըստ ամենայն ազգատոհմի մարդկան բերէ նա զնմանութիւն. մանաւանդ զթիւ ամաց մարմնոյն ոչ աւելի և ոչ պակաս գտանեմ, այլ ըստ ամենայնիցն և զորպսս: Բայց յերեսաց սորա կարի իմն զարհուրեալ եմ. զի եթէ յիջանելն իւրում առ ի զբազումս կորզեաց եհան յի-նէն , վայ ինձ եթէ չարակամաց առ անգրէն եղանիցէ , երկնչիմ եթէ ընաւ իսկ զամենայն ընդ իւր տանի, և ես յիմոցս միայն մը-նացից: Նա և յանձնէ մեծ երկիւղ է ինձ, զի ոչ միայն զիմն հանէ յինէն, այլ և զտեղի խաւարինս ինձ ոչ թողու. և որպէս իմանամ, յայսմ խաւարէ զիս յայլ խաւար տանելոց է. և երանի եթէ այս-պէս էր խաւարն՝ ուր տանելոցն էր զիս: Բայց եթէ այսպէս էր ուր տանէրն, նա և հանէր իսկ ոչ զիս աստի: Այլ արդ և ահա յայանի եղև, որպէս ոչ գիտացի զգաւառ սորա, այնպէս և ոչ գիտեմ զխաւարն յոր զիս տանելոց է: Բայց չար այս իսկ է ինձ քան զամենայն, որպէս երեւի՝ զի ոչ միայն վասն արդարոց եկեալ է այսր, այլ և վասն ամենայն մեղաւորաց: Եւ եթէ ածէ և հա-մար առնէ ընդ իս, և պահանջէ յինէն զոսկերս փախձանելոցն որք առ իս եկին, թերևս կարեմ տալ: Իսկ արդ եթէ զԵնովք և զԵղիա յինէն խնդրեսցէ, և եթէ զայս եւս արասցէ ընդ իս, յայն-ժամ ինձ վտանգ տագնապի և վարան տարակուսի, զի ոչ ուրեք գտանեմ երթալ:

« Արդ իբրև այսու ամենայնիւ Մահ յանձն իւր տագնապէր, և ոչ յամեալ գտանէր բան մխիթարութեան, դժոխք եւսն պա-տասխանի մահու և ասեն. Զբնութիւն սորա գիտեմք մեք, և զազ-գատոհմն զորս ճանաչեմք. դա է վասն որոյ ասաց յառաջագոյն Յոբին սուրբ. «Համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, և համ-բարձցին դրունք յաւիտենից, և մտցէ Թագաւոր փառաց»: Եթէ կրկնեսցես և երեքկնեսցես և բազում անգամ հարցցես, զնոյն լուիցես. Տէր զօրութեանց, սա ինքն է Թագաւոր փառաց:

« Եւ իբրև լուաւ Մահ զայն անուանն և զհզօր և զպատերազ-մող և ի կախ եկեալ ընդ իշխանութեամբ մահու, լուծաւ լքաւ և ընկաւ ամենայն զօրութիւն նորա, և հատաւ յոյս թագաւորութեան

Նորա. զաՀի Հարեալ յերեսաց Նորա՝ ձեռէր փութայր փախչել և թաքչել, և տեղի ոչ գտանէր[1]. ձայն բարձեալ յաղերս մեծ աղաչէր և ասէր. Գիտեմ զքեզ, Յիսուս Նազովրեցի, դու ես սուրբն Աստուծոյ. մի յառաջ քան զժամանակն տանջեր զմեզ: Արդ իբրև կապեաց զնա, և բևեռեաց բևեռօք. բևեռեաց զոտս և զձեռս Նորա, և պրկեաց կապեաց ընդ զօրութիւն անպարտելի խաչին. և ետ իշխանութիւն ամենայն մարդկան՝ որ խաչեցայն Հաւատան և կատարեն զպատուիրանն Աստուծոյ Բանի, գնալ ի վերայ իժից և քարբից և ամենայն զօրութեան Մահու. էտ ուար բազում և բերեալ բաշխեաց ամենայն Հաւատացելոց »:

Ի՞նչ է այդ մեր կարդացածը: Քրիստոսի պարապաղատ դժոխոց վրայ յարձակիլը կը յիշեցնէ մեզ «Կորուսեալ Դրախտին» մէջ Որդւոյն Աստուծոյ ապստամբ Հրեշտակաց դէմ երթալը: Ջաստուածութիւնը պատերազմող մարդոյ կերպարանաց տակ նկարագրելու ձեռնարկելը մեծ յանդգնութիւն մի է, որ յայնժամ միայն կրնայ ներելի ըլլալ՝ երբ Հեղինակը նիւթոյն զուգաչափ կարող գիղելու և խանելու կարող ըլլայ: — Իսկ Մահուան մենախօսութիւնը, որ իւր «ընական զգեստէն՝ ի խաւարէն» մերկանալուն զայրացած՝ կ'ուզէ փախչիլ, և թաքստեան տեղի չգտնելով կը յուսաՀատի, որ քիչ մը վերջ սանդարամետաց աղջամղջին մէջէն՝ Քրիստոսի լուսաձաձանչ դէմքը գննելով՝ կը տեսնէ որ մարդոյ նմանութիւն ունի, և մտածելով որ Համայն մարդկութիւնը իւր Հրամանին ներքեւ կեցած է, սիրտ կ'առնու և ձար և Հնար կ'որոճայ զայն ալ իւր ճիրանաց մէջ անցնելու, որ ըմբռնելով վերստին ի զարՀուրանաց՝ խորամանգութիւնը մէկդի կը թողու, կ'ողբայ «զձախող մանկունս իւր», և այնուՀետեւ տատիճան տատիճան լքանելով՝ ամենայն յոյս կը կորսնցնէ, — կրնայ բաղդատուիլ այն Հաչակաւոր խօսքերուն զոր Միլտոն կը դնէ Սատանայի բերանը, յորժամ սա Անդնդէն բարձրանալով առաջին անգամ Արեգական կը Հանդիպի: Քլոփշթօք իւր Մեսիականին վեշտասաներորդ երգոյն վերջը՝ Քրիստոսի դժոխք իջնալը նկարագրած է. կարգա՛ տես թէ Եղիշէինը իւր պարզութեամբը և վսեմութեամբ անկէ վար կը մնա՞յ:

1. « Hell heard the unsufferable noise, hell saw
Heaven ruining from Heaven, and would have fled
Affrighted; but strict fate had cast too deep
Her dark foundations, and too fast had bound ».

ՄԻԼՏՈՆ Կոր. Դր. Գ. Զ.

Եթէ քիչ մը շարունակեմք մեր ընթերցումը, մանկամարդ կնոջ գողտրիկ զգացմանց և սրտաշարժ վարանմանց գեղեցիկ օրինակ մը կը գտնեմք յետագայ մենախօսութեան մէջ զոր կը դնէ Եզնիկ ի բերան Մագդաղենացւոյն։

« Եւ քանզի հատեալ էր քուն յաչաց նորա (կանանցն) զայն երիս տիւս և զերիս գիշերս, կանխագոյն Մարիամ Մագդաղենացի եկն եհաս ի գերեզմանն անդր. և քանզի զվէմն ի բաց թաւալեցուցեալ էր հրեշտակացն, հայեցաւ ի ներքս, և զտէրունական մարմինն անդ ոչ եսես. վասն այնորիկ լայ կոծի ողբալով և ասէ. « Զի՞նչ արարից, յո՞ երթայց, ո՞ւր խնդրեցից. ի խաչէն իջուցին, ի գերեզմանիս եդին, զդուրս վիմով կնքեցին և պահեն զզուշութեամբ. աշակերտացն վկայեմ, զի ոչ ուրեք շարժեցան զգիշերս ամենայն. ի Հրէից զայս ոչ ոք առնէր վասն մեծի շաբաթուն պատուոյ. հեթանոսաց չէր ինչ փոյթ. նա և ումեք ի մարդկանէ չէ օրէն զխազող շրջել. ի գողանաց կասկած ինչ ոչ է վասն մեծի վիմիս ծանրութեան, և տաւել վասն զինուորացն պահպանութեան։ Եւ եթէ յարութիւն կարծեցից, այս վաղ կարի է. ընդ երեկս ուրբաթուն թաղեցաւ. գիշերքս ահա երկու են, իսկ տիւս օր մի է և ժամք երկու. և նա զերիս տիւս և զերիս գիշերս ասաց լինել ի սիրտ երկրի։ Եւ զիա՞րդ, որ յամենայնի արդարն խօսէր, յայսմ վայրի ստեա՞ց արդեօք. քաւ լիցի ոչ կարեմ վասն նորա յերկբայս լինել. սուտ և ոչ երբէք խօսէր, այլ արդար յամենայնի. քանզի զամենայն զոր ասաց ի կենդանութեան իւրում, եղեւ և կատարեցաւ. իսկ արդ յայսմ միայն ստեցե՞ արդեօք։ Արդ ես ոչ գիտեմ եթէ արդարեւ յարուցեալ իցէ և կամ ննջեալ յամեքէ »։

## Ը

Եղիշեայ ծննդեան վայրն և թուականը չգիտեմք։ Պատանեկութեան ատենը՝ Մեսրոպայ և Սահակայ պատրաստած վարժարանաց մէջ ուսեր էր հայերէնի դպրութեանց հետ՝ յունական, ասորի և պարսիկ լեզուս։ Նոյն միջոցին (412–426) Հայրապետքն իրենց երիցագոյն աշակերտօքն թարգմաներ էին աստուածաշունչ գիրս նախ յասորերէնէ, յետոյ Եօթանասնից թարգմանութեամբը սրբագրեր էին կամ վերստին թարգմաներ։ Աւելի վերջը, երբ

Եփեսոսի ժողովէն (431) ետքը՝ Ղեւոնդ Երէց, Յովհան Եկեղեցացի, Յովսէփ Պաղնացի, Արձան, Եզնիկ և Կորիւն կը դառնային ի Կոստանդնուպոլսոյ, հետերնին բերելով աւելի ընտիր և ստոյգ Եօթանասնից օրինակ մը, ինչպէս և ուրիշ մատեանք, այդ նոր օրինակին հետ համեմատեր և փոխեր էին առաջին թարգմանութիւնը։

Բայց Եօթանասնից վերծանութիւնը՝ որ Քրիստոսէ յառաջ երրորդ դարուն մէջ եղած էր, դիւրին չէր կատարելապէս հասկնալ. շատ բառեր և իմաստներ ստուգելու կամ ճշդելու կը կարօտէին. որոց համար բաւական չէր առաջին աշակերտաց գիտութիւնը։ Ուստի քաջուղեղ, երկարօգի և աւելի ստոյգ և կրտսեր աշակերտներէն՝ Մովսէս Խորենացին, Դաւիթ, Եղիշէ, Ղազար Փարպեցին և այլք ընտրուեցան երթալու յԱղեքսանդրիա, որ յայնժամ գիտութեանց, լեզուաց, վաճառականութեան և արուեստից գլխաւոր կեդրոնն էր։

Եղիշէ իւր ընկերներովը ճամբայ ելաւ (434ին), ու դէպ ի հարաւ իջնելով՝ հասաւ նախ յԵդեսիա. անտի գնաց ի Պաղեստին։ Շատ տեղեր այցելեց ու քննեց անշուշտ. բայց իւր գրուածոց մէջ — այն ալ նիւթոյն յարմարութեամբ — միայն երկու տպաւորութիւններ մեզ կը պատմէ. Ասորի միայնակեցաց վարքը և Թաբոր լերին գեղեցիկ նկարագրութիւնը[1] ուր հետիոտն ելեր էր։

Պաղեստինէն անցան յԱղեքսանդրիա. անդ հարուստ գրատանց և սուրբ Կիւրղի վարդապետարանին մէջ երկար ատեն կեցան մեր պանդուխտքն, որպէս զի կատարելապէս հմտանան յոյն լեզուին։ Այնուհետև ուղեցին նաւել չիտակ յԵլլադա, բայց հողմոց բռնութենէն յԻտալիա ընկան[2]. գնացին ողջունել առաքելոցն Պետրոսի և Պօղոսի գերեզմանը, առանց սակայն երկար մնալու ի Հռոմ։ Անտի անցան ընդ Ելլադա յԱտտիկէ, սակաւ ինչ կեցան յԱթէնս,

1. Տես Մխիթարեանց ճառը, և մանաւանդ «Յայլակերպութիւն Քրիստոսի» էջ 236. — «Լսելով յաւետարանէն ամենեքեան գիտէք զանեղին. բայց մեք եւ անձամբ իսկ հասեալ եւ այօք տեսեալ, ոչ յաւուրս միայն առանձինն, այլ բազում ընկերակցօք, որոց և կամ իսկ եղեւ ամենայն մնալ ի լերինն, ոչ ըստ մարմնոյ ախորժմութեամբ բաղձանաց, այլ առ ի գութ սիրոյն Քրիստոսի». և այլն։ Տես և յէջ 239, Մատենագրութիւնք, 1859։

2. Եղիշէայ յԻտալիա գնացած ըլլալուն անձնական վկայութիւն մի մարթ է համարել՝ մարդկային մտաց ամենուրեք հանդերձ նկատմամբ գիւր հետագայ խօսքը. «Դու քոյոցդ մտացդ չկարես պահապան լինել. մինչդեռ կաս ի սուրբ տեղիս, զամենայն յանդորման տեղւոջ. զոր օրդ ի քաղաքի, եւ անասնս խոտածս. զործես ի ցամաքի, և ի ծովու նաւես ի նաւի. կաս ի յերկրի, և ի վեր յերկնից երկնի շրջիս ընդ գունդս հրեշտակաց», Մատենագրութիւնք, էջ 296։

ուր ապաստանեցին ձմերուան անցնելուն. և երբ Կոստանդնուպոլսոյ ճամբով դարձան ի Հայս (442ին), Սահակ և Մեսրոպ արդէն վախճանած էին[1]:

Ի՞նչ բրաւ այնուհետև Եղիշէ: Իրեն յատուկ անանուն կենսագրութեան[2] մը նայելով՝ «զինուորեալ էր Սրբոյն Վարդանայ և սպասաւորէր նմա, և էր հաւատարիմ յամենայն իրս աստուածային և մարդկային»: Ըստ այլոց հեղինակաց՝ քարտուղար և մերձաւոր ազգական էր Սպարապետին:

Յարգի բանասիրաց ոմանք Արտաշատայ ժողովոյն մէջ (448ին) ներկայ գտնուող Ամատունեաց եպիսկոպոսը զԵղիշայ կարծեցին զնա: Արդարև Սահակայ և Մեսրոպայ աշակերտաց շատերը յեպիսկոպոսական աստիճան բարձրացան. բայց Յովսէփ, Եզնիկ, Մուշէ, Թաթիկ, Երեմիա եպիսկոպոսունք, ինչպէս և երէցն Ղևոնդ, որք նախագահ կամ անդամ էին նոյն ժողովոյն, առաջին աշակերտներէն են[3]. մինչ երկրորդ կարգի աշակերտքն, որոց դասէն էր Եղիշէ, հազիւ թէ վեց եօթը տարի էր որ ուսումնին աւարտելով դարձեր էին ի հայրենիս: Եւ որովհետև հանօրէն պատմագիրք զնա Վարդապետ կը կոչեն, վերջնոց այս կարծիքս մեզի հաւանական չի թուիր[4]:

Վարդանայ պատմութեան ճակատը՝ Դաւթի երիցու Մամիկոնէի ուղղեալ ընծայականէն կը հետևի՝ թէ սորա հեղինակը եպիսկոպոս մը չէր: Մնաց որ Եղիշեայ վարուցը վրայօք ունեցած անօսր տեղեկութիւնքս ալ այդ ենթադրութիւնը չեն հաստատեր: Երբ Մեհրներսեհի նամակին տրուած անվեհեր պատասխանին վրայ նախարարք ի Տիզբոն կոչեցան, նոցա ընկերացան բազում քահանայք՝ որք ուրացողաց հետ համամիտ գտնուեցան[5]: Թէ Եղիշէ ալ Վարդանայ ուղեկցած էր, կը հետևի նոյն իսկ իւր պատմութենէն[6]:

1. Խորենացի (523–527): Վարք Սահակայ և Մեսրոպայ ի Սոփերք Հայկ. հտ. Բ:

2. Պատմութիւն Եղիշէի Վարդապետի՝ Սոփերք Հայկ. հտ. ԺԱ:

3. Տես Գարեգին Վ.ի Պատմ. Հայ Դպրութեանց:

4. Վարդապետ Docteur տիտղոս՝ Եղիշեայ եկեղեցական եղած ըլլալուն անգամ ապացոյց չէ. դասախօսելու և քարոզելու պաշտօնը գիտութենէ և ճարտարախօսութենէ կախեալ էր, և քահանայից սեփական աստիճանաշնորհութիւն մի չէր:

5. Տես Եղիշէ. Յ. Գ., 250 «Ի յայս դարձեալ զուխտ քահանայութեանն... վարդապետք էին աշակերտական քարոզութեանցն» և այլն:

6. «Թէպէտ և ոչ իցեմք բաւական առնել զամենայն չարիսն, որ անցք անցին անդէն ի կարաւանին ընդ գաւառն Հայոց, սակայն և ոչ լռել կամիմք ծած-

Հնարաւոր չերեւիր սակայն՝ որ բարձրաստիճան եկեղեցական մը այդպիսի պարագաներու մէջ գնացած լինի յարքունի դուռն, և փորձեցին և ուրիշ պատմագիրք չյիշատակեն զնա։ Եղիշէի՝ Վարդանէն ընդունածն՝ ամենայն իրաց և պատերազմաց մէջ նորա հետ գտնուած ըլլալուն բաւական ապացոյց է գրութեանը մէջ ցուցուցած ռազմագիտական հմտութիւնը. զօրաց մէն մի շարժմունքը, տանց եղանակը, պատճառը, նպատակը՝ այնպիսի ճշդութեամբ և խելահաս մոօք կը նկարագրէ, որքան կրնար ստանալ այն ժամանակի զօրավարէ կամ պատերազմափորձ մատենագրէ մը։ Այդ գիտութիւնը չէր կրնար ստանալ՝ բայց միայն զինակիր կամ քարտուղար-փորձագետն ըլլալով Վարդանայ։ Տարակոյս չկայ՝ թէ այդ երկու պաշտօնէդ մին որ ըլլայ Եղիշէի վարածը, ապա չէին կըրնար պատշաճիլ թեմական եպիսկոպոսի մը, որոյ բազմապիսի գործամունքը և հոգերն ալ պէտք էին արգիլել զԵղիշէ ի զինուորական պարապմանց։

Բարեբախտաբար Աւարայրի նահատակութեան օրը՝ Եղիշէ [1] պատահմամբ կամ գործով պատերազմին ա՛նձէն վտանգաւոր կողմը չէր գտնուեր։ Ինքը պէտք էր ապրիլ դեռ՝ այդ մեծ ճակատամարտին յիշատակը անմահացնելու համար։ Այնքան սիրելեաց կորստեան և հայրենեաց աւերման կսկիծը իւր զգածութիւնը տակաւին չամոքած՝ և Դաւթի երիցու խնդրանաց ձեռնարկելուն նայելով՝ հաւանօրէն Մամիկոնեանց գաւառին մէջ ի գիր առաւ վերջին եղելութեանց պատմութիւնը, այսինքն զառաջին եօթն յեղանակն. քանզի ութերորդին հանդարտ և պատմական ձևը և իմաստասիրական խորհրդածութիւնքը բոլորովին կը տարբերին միւսոց վառվառուն և բանաստեղծական ոճէն։ Մնաց որ Եղիշէ ընծայականին մէջ, զոր եօթն յեղանակները աւարտելէ յետոյ շարագրած կ'երևի, կը հաստատէ թէ յ'օթն մասունս բաժաներ է իւր պատմութիւնը. և եօթներորդ յեղանակին վերջին տողերէն ալ կը հետևի՝ թէ ի սկզբան իրաւէս անդ կը վերջանայր։ Հարկ է ուրեմն ժամանակի միջոց մը — ու բաւական երկար միջոց մը — դնել Եօթներորդին և Ութերորդին շարագրութեան մէջ։ Առաջին յեղանակին մէջ պարբերութիւն մի կայ որ ճշդել կու տայ մեզ Եօթն Յեղանակաց գրութեան թուականը։

կեալ զվիշտս նեղութեանն. այլ առաւցուք փոքր ի շատէ, զի ձայնակիցք լիցուք այնոցիկ որք զանձնապէս զմեզ ողբային. զի և դու իբրև լուիցես, ոչ տակաւ արտասուս հեղուցուս ի վերայ ազգին թշուառութեան», Տես Յ. Գ. 1։

1. Տես Ալիշան Վարդապետի Հայբունի, էջ 273։

«Նա և արջք օրհասականք ընդ վախճանել շնչոյն հզօրագոյնք կային. յորոց և խմառուտւք տեղի տուեալ փախչէին ի Նոցանէ. Այսպիսի խմն եկեալ հասեալ է վախճան աերուրեանն. եթէ ծարկանեն չզգան, և երէ ծարկանեն չիմանան. խրրեւ ոչ գտանի արտաքին թշնամի, ընդ անձինս իւրեանց մարտ եղեալ կռուին: Ի դէպ իսկ երանէ բան մարգարէին ի վերայ Նոցա. «Այր, ասէ, առ քաղցի իւրում շրջեսցի, և կերիցէ զմիս անձին իւրոյ». Նման սմին և Տէր Յիսուս ասէ. «Ամենայն տուն եւ թագաւորութիւն՝ որ յանձն իւր բաժանի, ոչ կարէ կալ հաստատուն»:

Այդ խօսքերդ Եղիշէ չէր կրնար գրել բայց միայն յամին 458, յոր ժամանակ Պերոզ և Որմիզդ՝ որդիք Յազկերտի, իրենց հօրը թողուցած աթոռը իրարու ձեռքէ յափշտակելու համար քաղաքական պատերազմաւ կը պատառէին զպետութիւնն՝ զոր Յազկերտ այնքան անխոնջ ջանիւք ամրացուցեր էր: Երկուց եղբարց վէճը 457 և 458 տարիներն ամբողջ տեւեր էր, մինչեւ որ 458ին վերջերը Պերոզ Քուշանաց օգնութեամբ, որոց քով ապաւիներ էր, Որմզդայ յաղթելէն և զայն սպաննելէն ետքը քսան և չորս տարի (459-483) միահեծան և անվրդով և մեծաւ պայծառութեամբ կառավարեր էր վերստին զպետութիւնն: Ուրիշ ներքին վրդովման յիշատակութիւն չունինք մինչեւ Վաղարշայ որդւոյն Զարեհի գլուխ վերցնելը հօրը դէմ, որ աւելի ապստամբութիւն մի էր քան քաղաքական պատերազմ և որ Հայկական այրուձիոյն հասնելովն դիւրաւ ընկճեցաւ:

Եթէ Եղիշէ իւր ընկերներովը Աղեքսանդրիա գնալու համար Հայաստանէն ճամբայ ելած ատենը (434ին) քսան քսանեւհինգ տարեկան մը կար, եօթն Եղանակները ի գիր առած ատենը 44-49 տարեկանէն աւելի չէր[1]:

Այնուհետեւ թողուց իւր այնքան սիրած և շրջագայած աշխարհը և այցելած գերդաստանները[2], ու առանձնացաւ Մոկաց լեռներուն վրայ քարանցաւի մը մէջ ապրելու համար, հեռի յամենայն ընկերութենէ և նոյն իսկ ի Միայնակեցաց:

Ի չորրորդ և ի հինգերորդ դարուն, Քրիստոնեայ աշխարհին՝ մանաւանդ Ասորւոց և Եգիպտոսի մէջ, հանճարեղ մտաց և զգայուն սրտի տէր անձանց շատերն ուսումնին աւարտելէ և քաղաքական չփո-

1. Կորիւն գրեաց զվարս Մես-րոպայ յամին 445–450: Խորենացին գիւր Պատմութիւնը գրած ըլլալու է 480ին. իսկ Փարպեցին՝ 488–490:

2. Տես յէջ 2 ի վերայ:

թութեանց և յուղմանց փոքր ի շատէ ականատես և մասնակից լինելէ յետոյ՝ անապատները կը քաշուէին, խոտաճարակք՝ խարազնազգեստ և գետնատարած անկողնոք կ'անցնէին զաւօրեայ կենցաղն. աղօթիւք, հսկմամբ և խորհրդածութեամբք կը բարձրացնէին միտքերնին. ոմանք լեռնաձորոց մէջ կը վերջացնէին իւրեանց օրերը. այլք ինքնաբեր կամօք կամ ժողովրդեան թախանձանօք եկեղեցական կարգ և աստիճան ընդունելով՝ նորէն քաղաքական կենաց կը դառնային: Խստամբեր առանձնակեցութիւնք միայնակեցին խառնուածոյը համեմատ՝ տարբեր ներգործութիւն կ'ընէր նորա բնաւորութեան վրայ: Ողջ և կորիճ մտաց կարգէ դուրս կորով կու տար. անապատին մէջ զմարդիկ առանց կրից և հանդարտօրէն դատելու վարժելով, աւելի սէր և գութ կը զգային. մարդկային ակարութեան աւելի ներողամիտ և աշխարհիս վշտերը սփոփելու աւելի յօժարակամ կ'ըլլային: Այդպիսիներն իւրեանց երկրորդ քաղաքական ընթացից մէջ մեծամեծ գործոց ձեռնարկելով, անյողդողդ և արիութեամբ և յարատեւութեամբ ի գլուխ հանեցին և յոյժ օգտակար դառն աշխարհի. զոյա կարգէն են Ոսկեբերան և Մեսրոպ: Իսկ դժխեմդատ և տաքգլուխ բնութիւնները՝ անապատի կեանքը աւելի կը դայրացնէր ու ծայրայեղութեան և երբեմն ալ յիմարութեան կը տանէր. այս վերջինները եթէ պատահմամբ կամ պարագայից ստիպմամբ ի քաղաք իջնէին, բարկութիւն՝ կռիւ և չփոթութիւն միայն կը յարուցանէին:

Լեռնային կեանքը Եղիշէի ալ հանդարտութիւն բերաւ. երբ արդէն չարադրած եօթն յեղանակաց վրայ տասն կամ տասներկու տարի եաքը ութերորդ մը աւելցնել և հայ միանձանց մի քանի խրատներ տալ ուզեց, միտքը և սիրտը մեծ փոփոխութիւններ կրեր էին. բարկութիւնք իջեր, անոյշ տխրութիւն մը յաջորդեր էր: Աստուծոյ և կրօնից սէրը անշուշտ չէր նուազ անխառն և զօրաւոր. բայց մարդկային յանցանքը առաջինին չափ կիրք և դայրայթ չէին պատճառեր: Վառվառուն երեւակայութիւնք տեղի տուեր էր փիլիսոփայական խորհրդածութեանց. փոխանակ մարդկային նենգութեանց՝ կռիւներու, բնութեան կանոնաւոր և գեղեցիկ երեւոյթքը զբաղեցուցեր էին զինքը[1]:

1. Են ոմանք՝ որ այդ տարբերութեանց պատճառաւ Ութերորդ Յեղանակը ուրիշ մատենագրի երկասիրութիւն կը համարին: Իրաւամբ կ'ըսէ հայագէտ Իտալացի մը՝ որ այդ խնդիրը հայոց համար մտայուզութիւն պատճառելու չէ. վասն զի մէկ Եղիշէի տեղ երկու Եղիշէ կ'ունենան, ինչպէս որ Եբրայեցիք ալ երկու Եսայի ունեցած են:

Սակայն Եղիշէ չկրցաւ մինչեւ վերջը իր միայնութիւնը անվրդով պահել Մոկաց այրին մէջ, որ իր անուամբը յետոյ կոչուեր էր «Սուրբ այրն Եղիշէի[1]»: Բացօթեայ հովիւներ տեսեր ու գնացեր հռչակեր էին ամէն դի զայրն եւ զանդին: Ամէն կողմանէ հետաքրքիր եւ բարեպաշտ այցելուք կու գային տեսնելու զծերնաւորն. իսկ նա խոյս տալով եւ ուզելով զինքն անյայտ ընել, Ոստանեաց գաւառն անցաւ ու անդ Վանայ ծովուն եզերքը զարձեալ քարայրի մը մէջ հաստատեց զիւր բնակութիւնը: Միայնակեցութեանը մեծագոյն մասը Մոկաց աշխարհն անցուցեր էր. վերջին բնակարանին մէջ սակաւ ամս միայն ունեցաւ ապրելու: Անցուորք պատահմամբ անկենդան մարմնոյ մը հանդիպեր էին, քննութիւններ կատարուեցան եւ ստուգուեցաւ թէ Եղիշէն էր՝ որ յառաջնումն Մոկաց գաւառին մէջ կը բնակէր: Անդ՝ քարայրին մօտ՝ շինեալ հանգիստ՝ փոխէին ի տեղի հանգստեանն, բազում բժշկութիւնք լինէին եւ գերեզմանն եղեւ ուխտատեղի:

Երբ Եղիշեայ նշխարաց գտնուելուն լուրը հասաւ Մոկաց իշխանին ականջը, տրտմեցաւ յոյժ որ իր երկրէն դուրս գնացեր էր նորա մահը. բժշկութիւն հայցելու կեղծեօք եկաւ օթեւանեցաւ նորա գերեզմանին մօտ կ'ուզէր մաս մի ունենալ ի նշխարէն, բայց չէր համարձակեր յայտնի մերձենալ եւ տանել՝ ակնածելով ի բնակչացն աշխարհին եւ ի նահապետէն Ոստանեաց: Ուստի ձեռքը եւ ոտքը ծածուկ կտրելով՝ փախաւ գնաց իր երկիրը: Գողութիւնը շուտով իմացուեցաւ ու ահագին աղաղակ մը յարեց. Մոկք եւ Ոստանիկք իրարու հետ կռուոյ պիտի ելնէին, բայց շատ չանցաւ երկու կողմն ալ խաղաղեցաւ: Մոկաց իշխանը վկայարան մը շինել տուաւ Եղիշեայ առաջին այրին մօտ ու անդ ամփոփեց Սըրբոյն նշխարքը: Ամենայն ջանք ըրաւ՝ որ այս վայրս աւելի մեծ ուխտատեղի մի ըլլայ քան զայն յորում վախճանեալն էր Երանելին. այնպէս ալ եղաւ ու նորա մահուան տարեդարձին մեծ տօն կը կատարուէր[2]:

1. «Որ և այժմ ամենեցուն յայտնի է», կ'ըսէ անանուն կենսագրութիւնը, և վկայ ազգաց յազգս երանելւոյն: Սոփ. Հայկ. հտ. ԺԱ, 42:

2. «Նշխարքն Եղիշեայ փոխադրեալ գտանին այժմ ի Ձագար-Աստուածածնի վանս, ի սարրսա բարձր և ծաղկաւէտ Արտոս լերին՝ որ ձգի ի հարաւոյ գետոյն Խօշապայ և յարեւելից հարաւոյ ծովուն Վանայ և որ գործէ զձորն Ոստանայ» (Ալիշան Վ. Տեղագիր, 95): Գերեզմանն վանուցս տաճարին անշուք գաւթին մէջ էր: Զորս հինգ տարի յառաջ Աղթամարայ Կաթողիկոսը զայն բանալով՝ տաճարին մէջ փոխադրեց, և իւր յիշատակ Եղիշեայ մատն և ատամներէն մին վերցընելով յԱղթամար տարաւ: (Արեւելք լրագիր, 23 Ապրիլ 1887):

Այսու հանդերձ Եղիշէի մահուան թուականը չհաստատուի մինչեւ ցմեզ. ոմանք զայն 480ին կը դնեն։ Ութերորդ Եղանակին վերջերը, յետ ասելոյ թէ Պերոզ արձակեց զկապեալ նախարարսն (յամի Տ. 463-464), Եղիշէ կ'ընդհատէ պատմութիւնը, և նախարարաց դարձը չյիշած՝ կ'ուզէ նոցա բացակայութեան միջոցին՝ կանանց կրած տառապանքը նկարագրել, և ապա վերստին ձեռք առնուլ իրաց շարքը, այս է պատմել նախարարաց վերադարձն ի հայրենիս՝ որ արդէն տեղի ունեցեր էր։ Այդպէս պէտք է իմանալ անշուշտ սա խօսքս. «Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի». և ոչ թէ Եղիշէ ուզեց խոստանալ ապագայ գրոց պատմութիւն մը։ Յայտ իսկ է՝ թէ կանանց նկարագիրն ալ անցեալ ժամանակի կը վերաբերի և ոչ ներկայի։ Ուրեմն Եղիշէ նախարարաց դարձէն (464) ետքը շարադրեց զՈւթերորդ Յեղանակը։ Աբրահամ խոստովանողին համար գրածէն ալ պարզ է հետեւցնել՝ թէ սա ի Հայաստան դառնալէն ետքը (463ին) մէկ քանի տարի դեռ ապրեցաւ։ Ասանկով Ութերորդ Եղանակը 470էն շատ յառաջ շարադրուած չկրնար ըլլալ։ Այսու ամենայնիւ եթէ տասը տարի դեռ կեանք ունեցած ըլլար, հաւանական է թէ Եղիշէ կը շարունակէր գիրք պատմութիւնը։ Աւելի յարմար կը թուի մեզ՝ թէ նա 470էն աւելին չապրեցաւ։ Գալով հաւանական հասակին, որովհետեւ աւելի առոյգ և կրտսեր աշակերտներէն էր իւր ընկերաց հետ ճամբայ ելած ատենը դէպ յԱղեքսանդրիա, ի Հռոմ և յԱթէնս, քսան՝ քսան և հինգ տարեկան ըլլալու էր. և քանզի ութ ինը տարի անցուց ի պանդխտութեան՝ ճանապարհորդութեամբք և ուսմամբ, Հայաստան դարձած ատենը 34 տարեկան կ'ըլլար, այս է 442ին։ Այդ հաշուով Եղիշէի ծննդեան տարին հինգերորդ դարուն սկիզբները կ'իյնայ, և տարիքը վաթսունը քիչ կ'անցնի, որ անոր կարգէ դուրս զգայուն բնութիւնը, ժամանակին խառնաշփոթութիւնքը, հայրենի աշխարհին դժնդակ աղէտքը, և վերջապէս քարանձաւի մէջ վարած խստակեցութիւնքը ի նկատողութեան եթէ առնենք, աւելի երեւալու է քան պակաս։

---

## Թ

Եղիշեայ պատմութիւնը առաջին անգամ տպագրեցաւ 1764ին ի Կոստանդնուպոլիս՝ ի ձեռն Էջմիածնայ միաբան Աբրահամ վարդապետի, որ միայն մէկ գրչագիր մի ունեցեր էր։ Երկրորդ տպագրութիւնն եղաւ ի Բեդրպուրկ 1787ին ի ձեռն իշխանացն Յովսէփ Արղութեանց արքեպիսկոպոսի։ Երրորդը՝ նոյն տարին ի Նոր Նախիջեւան։ Չորրորդ տպագրութիւնն եղած է դարձեալ ի Կոստանդնուպոլիս յամին 1823, ըստ ՌՄԼ. Թուականու ձեռագրի միոյ՝ զոր օրինակեր էր ի Հայաստան Գէորգ դպիրն Պալատցի, հեղինակն Պարսկերենէ ի Հայ բառարանին, և որ ինքնին իսկ օրինակուած էր ուրիշ հնագոյնէ մը, գրեալ յԱյրարատեան աշխարհի ի թուականութեան Հայոց ՈԺԶ, յաւուրս հայրապետութեան Տեառն Ներսէսի, եղբօր Գրիգորիսի, որ նստէր ի Կլայն Հռոմկլայն։

Վենետկոյ Մխիթարեանք 1825ին և 1828ին կրկին տպագրութիւն ըրած ատեննին, վեց ձեռագիրս ունէին, յորոց ՌՃԻ Թուական կրողն առաւագոյն էր քան մինչեւ ցայն վայր գտնուածները, և որոյ հետեւութեամբ և Յացածներուն ալ ուշիմ բաղդատութեամբ, յաջողեցան բաւական ուղիղ բնագիր մը ի լոյս ընծայելու։ 1838ին հրատարակեցին առաջին անգամ Եղիշէի ամբողջ մատենագրութիւնքը։ 1842ին նոր տպագրութիւն մը ըրած ատեննին, եօթներորդ գրչագիր մը ձեռք ձգեր էին, որ առջի տպագրութեանց ուղղութիւնը հաստատեր էր և պատճառ տուեր էր կրկին հարցափորձի և ընտրութեան ոչ սակաւ տեղեաց։ Ուրիշ տպագրութիւնք ալ եղան նոյն Միաբանութենէն ուրիշ մօտ ժամանակներս. ինչպէս 1852ին, որոյ առաջին երկու յեղինակները բաղդատուած էին Լիմ գտնուած հին երկաթագիր՝ բայց թերի ձեռագրի մը հետ. 1859ին՝ Եղիշէի ամբողջ երկասիրութիւնքը երկրորդ անգամ, և վերջապէս 1864ին, զոր վերջինն ըլլալուն համար մարթ է ընտրելագոյն համարել, թէպէտ առջի տպագրութեանց բաղդատմամբ՝ կրած փոփոխութիւնքը միշտ ուղիղ չեն։

Եղիշէ տպագրեցաւ և ի Մոսկուա 1861ին. ի Թէոդոսիա՝ նոյն տարին՝ ըստ Ընձեւացեացն կոչուած օրինակի. ի Բարիզ, յԱրու-

սաղէմ 1865ին, ի Կոստանդնուպոլիս 1866ին. ի Զմիւռնիա 1867ին և ի Տփխիս 1879ին: Տպագրութիւն մի այլ եղած կ'երևի Կալ-կաթա յամին 1816:

1877ին Պ. Կ. Կոստանեանց տպագրել տուաւ ի Վիեննա եր-կասիրութիւն մը՝ որ կը բաժանի յերիս մասունս. առաջինը՝ Արշակունեաց անկմանէն մինչև ցՎահան Մամիկոնեանի մարզ-պանութեան սկիզբը, այս է կէս դարու չափ միջոցի պատմութիւնն, զոր հիւսած է՝ քաղելով, իրարու կապելով և ընդմիջելով Եղիշէի՝ Փարպեցւոյ՝ Խորենացւոյ և այլ ամենայն պատմչաց բնագիրները: Երկրորդ մասը առաջնոյն վերծանութիւնն է յաշխարհիկ բարբառ Ռուսահայոց: Երրորդը կը պարունակէ տեղագրական, պատմական և լեզուաքննական կարևոր ծանօթութիւններ, յորոց և մեք օգտե-ցաք ոչ սակաւ:

Ներկայ տպագրութեանս օրինակ առինք Վենետկոյ 1864ի հրատարակութիւնը, բաղդատելով զայն 1842ի տպագրութեան կրկ-նակը ամփոփեալ զանազան ընթերցուածոք, Կոստանդնուպոլսոյ երկրորդ և Թէոդոսիոյ տպագրոք, և նշանակելով ի ստորեւ երբ փոփոխութիւն մը ընել հարկ սեպեցինք Մխիթարեան բնագրին:

Թէպէտ այլևայլ օրինակաց իրարու բաղդատմամբ՝ աղխու-թենէ յառաջ եկած ակամայ կամ կամաւոր գրչագրի սխալները մեծաւ մասամբ ուղղեալ են արդէն վերջին տպագրութեանց մէջ, սակայն պէտք չէ կարծել՝ թէ Մխիթարեանց այլևայլ տպագիրնե-րը, ինչպէս և Անձևացեաց բռնած օրինակին համեմատ եղածն՝ անհատապէս՝ ամենայն մասամբք անաղխտ ըլլան. այս պարու-նակած թերութիւններէն ոմանք հասարակ են ամենեցուն, ոմանք ալ յատուկ են մէն մի ձեռագրաց՝ որ օրինակ եղած են իւրաքան-չիւր տպագրին: Առջինները՝ որ թուով սակաւաւոր են, պիտի ուղղենք երբ կարելի ըլլայ, զուգաշտական հեղինակութեանց և երբեմն ալ ժամանակակից պատմչաց լուսով. իսկ երկրորդները, որք աւելի լեզուի կամ իմաստի կը վերաբերին, մատենագրական քննադատութեամբ: Այսու ամենայնիւ կ'ուզեմք ազդարարել սա՝ թէ զոր ինչ թերութիւն համարիմք ներկայ ընտրելագոյն տպա-գրաց մէջ, մասնական բաներ են, և թէ ուրիշ կողմանէ չունիմք պատճառ կարծելու՝ թէ այժմ մեր ընթերցած Եղիշէն յօշատեալ կամ աղաւաղեալ գրութիւն մը ըլլայ:

Թովմա Արծրունին սակայն պատմագիր իններորդ դարու, պա-կասեալ կը համարի զայն: Այս հեղինակիս նայելով 428էն մինչև

451 թուականը՝ Արծրունեաց տան ամենէն հոյակապ անձը Վահան մի էր. «այր արտեայ և ուժեղ, քաջախորհուրդ և իմաստնախորհ, խոնարհ, առատաձեռն և զուարթամիտ», որում նախարարք յանձներ էին «զթագաւորարնակ անդին Մեծին Տրդատայ, շինել նմա տուն թագաւորաց, քանզի խորհեցան թագաւորեցուցանել զնա ի վերայ Հայոց»: — Բայց կ'երեւի որ Տանուտերք քիչ մը վերջ մտքերնին կը փոխեն ու զՎարդան իրենց գլուխ կը ճանչեն. նոյնպէս կ'ընէ և արծրունին Վահան: Աւարայրի պատերազմին մէջ ալ Վահան՝ միշտ Վարդանայ քով՝ մեծամեծ քաջութիւններ կ'ընէ, ու նորա հետ ի միասին կը նահատակի:

Վահանայ Արծրունւոյ նկատմամբ Եղիշէի մէջ ամենեւին յիշատակութիւն չգտնուելուն պատճառը հետեւեալ եղանակաւ կը պատմէ մեզ Թովմա:

Պարսից Պերոզ թագաւորին ատենը՝ Բարծումա նեստորական եպիսկոպոսը կու գայ յԱրզնարզիւն և ի Մոկս, իւր մոլորութիւնը սերմանելու. և որովհետեւ Եղիշէ այն միջոցին Մոկաց մէջ կը բնակէր, Բարծումա պատմութեան գիրքը խնդրեց ի նմանէ և խնդիրը ընդունեցաւ: Բայց Արծրունեաց Մերշապուհ իշխանը (անշուշտ Եղիշէի Ներշապուհը) որ յայնժամ բերդի մը մէջ ամփոփուած էր ի Տմորիս, խստիւ հրաման կը ղրկէ նմա ելանել գնալ ի սահմանացն: Բարծումա յոյժ զայրացեալ ի պատճառէդ, վրէժխնդիր ոգւով՝ Եղիշէի գրոց մէջէն Արծրունեաց տան և Վահանայ մարտիրոսութեան վերաբերեալ յիշատակութիւնները կը հանէ: Երբ գիրքը ետ տուեր էր, Եղիշէ Ռշտունեաց գաւառին մէջ առանձնացած ըլլալով՝ ատեն չէ ունեցեր միւսանգամ աչքէ անցնելու, որովհետեւ անդ եղաւ իւր փոխումը: Իսկ այլք մտքերնէն անգամ չանցնելով եղած խարդախութիւնը, կարծեցին, կ'ըսէ Թովմա, թէ Եղիշէ այնպէս շարադրած է:

Դժուարին է համաձայնեցնել Արծրունեաց տան պատմչին այդ խօսքերդ Եղիշէի և Փարպեցւոյ հետ: Եթէ այսպիսի Վահան մի ալ եղած է, Արծրունեաց մեծ տան նահապետը ըլլալու չէ, այլ երկրորդ կամ երրորդ տան իշխանը[1]: Միթէ Եղիշէէն հինգ դար վերջ գրող Թովմաը իւր ցեղին պատմութիւնը աւելի շքեղացնելու համար այդպիսի աւանդութիւն մը յառաջ չի՞ բերեր. և ինչո՞ւ համար Բարծումա ջնջէ Վահանայ յիշատակութիւնքը՝ որ իրեն

1. Պատմութիւն Ներսէսի Պարթեւի, Ծանօթ. էջ 133: Սոփ. Հայկ:

միտս մը չէր ըրեր, ու նորա տեղ դնէ՝ Ներշապուհեաննները որ զինքը կը հալածէր։ Եթէ Եղիշէի գիրքն հերետիկոսապետին ձեռքն անցնելով, Վահանայ պէս նշանաւոր մարդու մը անունը վերցուեր էր, ի՞նչ պատճառ կար որ ժամանակակից հեղինակաց և ոչ մին զնա չյիշէր, և Փարպեցին եւս մոռանայր, կամ լաւ եւս ասելով՝ փոխանակէր զնա ընդ այլում։ Փարպեցին որ թէպէտ Եղիշէի չափ այն ժամանակի իրաց չէր մասնակցեր, բայց մինչեւ պատերազմին առնը Կամսարականաց և աւելի եւսքը Մամիկոնէից տան մէջ երկար ատեն բնակեր էր[1], և Նախարարաց գերութենէ դառնալէ եւքը՝ ի սոցանէ և մանաւանդ Արշարունեաց իշխանէն խիստ շատ տեղեկութիւններ հաւաքեր էր, և որ իր ազատօրէն խորհրդածութեամբքը շատ անգամ կ'ուղղէ կամ կը լրացնէ զԵղիշէ, և առհասարակ այնքան կը տարբերի ի նմանէ, որ ընթերցողը կրնայ իրաւամբ կարծել՝ թէ աչացը առջեւ չէր ունեցեր մեր հեղինակին գրութիւնը[2]։

Վերջերս 1893ին, հայագէտ Փր. Կոնիբիր, Լոնի մատենադարանի հայկական ձեռագրի մը կազմին մէջ մագաղաթեայ երկու հատակտոր գտաւ յԵղիշէէ՝ երկաթագիր, այս է չորս էջ, ամէն մէկը բաժանեալ յերկուս սիւնակս՝ որք քսանական տող ունին, ընդ ամէնը 160 տող։ Առաջին էջին առաջին սիւնակին ձախակողմը վերէն ի վայր աւրուած է, և միայն մէն մի տողի վերջի տառերը մնացած են. միւս սիւնակները բաւականապէս ամբողջ կրնան համարիլ ներկայ օրինակաց հետ բաղդատութիւն մը ընելու համար։ Ընթեռնլի մասը վեցերորդ Յեղանակին 10դ տան «ոչ ապաւ նախանձու ի տեղւոջն գործեր» բառերէն սկսելով՝ ներկայ օրինակաց հետ միահետ կ'ընթանայ մինչեւ 11դ տան վերջը. «զմիմեանս սատակէին մինչեւ ի մուտս արեգական»։ Անմիջապէս եւքը 12դ տնէն՝ «Քանզի ոչ եւս կռիւ էր որ յաղթեաց, եւ կռիւ էր որ պարտեցաւ» պարբերութիւնը միայն կու գայ։ Այնուհետեւ 13, 14, 15 տուներու հետ համաձայն կ'երթայ ու «նազար եղեւ...

1. Տես գլուխն վեր գրեաց յԱմիդայ։

2. Մխիթարեանք հին երկաթագիր մատենի կողք մը գտան, աւելի հին երկաթագիր մագաղաթէ, որոյ վրայ գրուած էր. «Վկայութիւն սրբոյն Վարդանայ և Հմայեկայ և Վահանայ և Սահակայ Հայոց սպարապետաց, և ամենայն սուրբ արանց որք մեռան ի Քրիստոս»։ Բայց մեզ այդ գրութիւնդ, որ երկայն քննադատութեան նիւթ եղած է յԱլիշան վարդապետէ (տես Բազմավէպ 1851։ Օգոստոս), ապացոյց չի կրնար ըլլալ Վարդանայ նիզակակից Արծրունի Վահանայ մը գոյութեանը, մինչեւ որ չհաստատուի — որ կարծեմ անկարելի է — թէ այդ կողքին վրայի ճաշոցի մասն Եղիշէէ քիչ վերջը կարգադրուած է. վասն զի են ուրիշ Վահաններ որք նահատակեցան վասն Քրիստոսի։

եւ վեց այր» բառերէն ետքը կ'աւելցնէ «Որք մեծաւ ձգնութեամբ վառեն սուրբ հաւատոց ի վերայ սուրբ եկեղեցւոյ պատերազմեալք կատարեցան ի Քրիստոս։ Ասոր ետեւէն կու գայ 16դ տունը մինչեւ «քան զՀայոցն»։ Երկաթագիրը այսուհետեւ կը ցատքէ Եօթներորդ Յեղանակին 3դ տան, զոր խառնաշփոթ կերպով կը կցէ նախընթաց իրաց, ու միահետ կ'երթայ ներկայ օրինակաց հետ մինչեւ այն տանը վերջը։ Ապա կու գան երկու տողք՝ որոց սկիզբը խանգարեալ է, ու վերջին բառերը միայն կան՝ որք չեն համեմատիր ներկայ օրինակաց հետ, ինչպէս առաջին էջին առաջին տողերուն վերջին բառերն։ Այդ զանազանութիւններէդ կը հետեւցնէ Կոնիբիր՝ որ ներկայ ձեռագիրք չափէ դուրս կերպարանափոխ եղած ու ընդմիջարկութիւններ (Interpolations) առած են՝ հաւանօրէն Ժ. դարէն ետքը։

Ըստ մեզ այդպիսի եզրակացութեան տեղի չկայ բնաւ։ Ինչ որ հատուկտորքդ աւելի ունին կամ պակաս բաղդատմամբ այժմեան օրինակաց հետ, յայտնի կ'ընեն թէ այդ երկաթագիր ձեռագիրը չէր բնագիր Եղիշէայ, այլ քաղուածոյ, որ Սրբոց վարքի ոճով՝ նահատակութեանց որպիսութիւնը ցուցանելու համար պէտք եղածը միայն առեր էր ի բնագրէն, և ի բաց թողուցեր էր քաղաքական հանգամանքն և քերթողական նկարագրութիւնքն։ — Տես Հանդէս Ամսօրեայ, Վիեննա, 1893, Մայիս։

Եղիշէայ գրութեան աղաւաղման կասկած տալու բան մը եթէ կայ, այս է՝ թէ գրչագրաց մէջ ընդհանրապէս հինգերորդ յեղանակը վեցերորդ կոչուած է նորին վեցերորդին վերնագրով, ու միահետ կը շարունակի մինչեւ ցեօթներորդն. մէկ ձեռագրի մէջ միայն՝ տպագրաց հինգերորդ յեղանակին հինգերորդ գրուցուած է՝ վեցերորդին խորագրով։ Եղանակին մէկը արդեօք բոլորովին պակա՞ս է. պատմութեան անընդհատ կարգը չտայ ինչ հաւաստի զուշակել[1]։

Եղիշէի պատմութիւնը Եւրոպացւոց առաջին ծանօթացնողն եղաւ Նոյման գերմանացին արեւելագէտն իւր անգղիական թարգմանութեամբը, զոր տպագրեց ի Լոնտոն յամին 1830[2]։ Անկէ ետքը՝ 1840ին իտալական թարգմանութիւն մը հրատարակուեցաւ ի Վենետիկ՝ Գաբէլլէդդի հայագէտ քահանային աշխատասիրութեամբը։ Քանի մը տարի յետոյ՝ Գապարաճեան Կարապետ վար-

1. Տես Եղ. Տպագրութիւն Մխիթ. ՌՄՀԷ., ծանօթութիւն յէջ 379։

2. The History of Vartan, by Elisoeus, bishop of the Amadounians. 1 vol. in 4. 111 էջք։

ղապետը կը հրատարակէր ի Բարիզ «Քրիստոնեայ Հայաստանի ընդդիմակալութեան պատմութիւնը» որ աւելի ազատ վերածութիւն մի է քան հաւատարիմ թարգմանութիւն[1]։

1853ին հրատարակեցաւ ի Տփղիս ռուսերէն թարգմանութիւն մը աշխատասիրութեամբ հայազն Պ. Պետրոս Ջանշէյէֆի։

1863ին Պ. Սիմէոնեանց տպագրեց ի Մոսկուա թարգմանութիւն մը յաշխարհիկ բարբառ ի պէտս հայազգեաց։

1869ին Պ. Վիկթոր Լանկլուա նշանաւոր գաղղիացի հայագէտն՝ Հայկական Պատմչաց շարակարգին[2] մէջ ընտիր թարգմանութիւն մը տուաւ Եղիշէի՝ հանդերձ պատմական և քննադատական ծանօթութեամբք։

1· Soulèvement national de l'Arménie Chrétienne au Ve· siècle· 1 հատ· ութածալ, 358 էջ· տախտակաւ։

2· Collection des historiens de l'Arménie· Paris, Firmin Didot, en 2 vol·



# ՅԱՂԱԳՍ ԼԵԶՈՒԻ
# ԵՒ ԴԵՆԻՆ ՊԱՐՍԻՑ

---

## Ա

Եղիշէի պատմութիւնը լաւ հասկնալու համար ամենակարեւոր կը դատեմք դրացի և իշխող Սասանեանց լեզուին՝ դպրութեանց և կրօնից վրայ քննութիւններ ընել, զոր մեծապէս կը դիւրացնեն մեզ Եւրոպացի հնագիտաց վերջին խուզարկութիւնքն։ Վարդանանց պատմութեան՝ ինչպէս և Եզնկայ Աղանդոց գրքին մէջ ամփոփեալ տեղեկութիւնքն թանկագին են անշուշտ, և եթէ նախկին պարսից կրօնական մատեանք յետին ժամանակները երեւան ելած և մեկնուած չըլլային, գայդ երկու գրութիւնք Սասանեանց դենին և բարուց նկատմամբ իբրեւ հոխագոյն պատմական աղբիւրներ կրնայինք համարել։ Բայց որովհետեւ դոքա Պարսից հետ առօրեայ յարաբերութիւն ունեցող և նոցա կրօնական վարդապետութեանց և ներքին իրաց տեղեակ՝ ժամանակակից Հայոց համար[1] գրուած են, բնական է որ այժմ անկատար և երբեմն ալ մթին երեւան մեզ։

Ազգի մը ինչ ըլլալը իմանալու համար չի բաւեր՝ որ անոր պատերազմաց և նշանաւոր դիպաց հմուտ ըլլանք. պէտք է որ նորա մտաւորական զարգացումը և վիճակն ալ տեսնենք։ Թէ Հայք աշխարհիս հնագոյն ազգերէն մին են՝ ոչ ոք կարէ ժխտել. բայց եթէ ուզենանք գիտնալ այդ ազգին հինգերորդ կամ չորրորդ դարէ առջի վիճակը, կառավարութեան ձեւը, կրօնքը, բարքը և լեզուն, անյաղթելի դժուարութեանց կը հանդիպինք՝ որք կը

1. «Զօրէնս՝ զոր ճանաչեմք եթէ սուտ են և անմիտ մարդոյ բարբանջմունք, զոր բազում անգամ մեր լսեալ է ի մեր աշտանեանց սուտ վարդապետացդ, և տեղեակ եմք իբրեւ զձեզ, զայն ոչ կարգալ պարտ է և ոչ լսել»։ Փարպեցի, էջ 128-129։

տառականան և բազմապատկին որքան հնագոյն դարուց խորը մըտնենք ։ Հեթանոսական ժամանակաց հայկական ընկերութիւնը առանց յաջորդութեան սպառած կը տեսնենք. վասն զի լեռնաձորոց կամ առանձին տեղւոյ մը մէջ չկայ հայ հասարակութիւն մը՝ որ Երուանդեան Տիգրանէն ի վեր նախնի աւանդութիւնք, դպրութիւնքը և կրօնը որդւոց յորդի մինչեւ ցայսօր պահած ըլլայ։ Քրիստոնէութեան հաստատուելէն յետոյ ի Հայս՝ կռապաշտական մատեանք և այլ յիշատակարանք մասնաւոր խնամօք խորտակեցան։ Վանայ, Բաղուայ և Հայաստանի ուրիշ տեղեաց մէջ գտնուած և արմենական կոչուած բեւեռագիրք, զորս մեր չորրորդ դարու հայրապետքն հարկ չսեպեցին փճացնել, — որովհետեւ ասոնք այն ատենն ալ կորուսած ըլլալով իրենց նշանակութիւնը՝ բնաւ չէին կրնար վնասակար ըլլալ, — նոր լոյս պիտի տան Հայկազանց աւելի հին ժամանակի իրաց և լեզուին վրայ, երբ յաջողին հնագէտք նոցա երկու երեք հազար տարիէ ի վեր պահած գաղտնիքը դուրս հանել։ Բայց ասոնք քառասնամեայ յոգնաջան և անձանձիր ճգանց հակառակ տակաւին վստահելի լուծում մի չունեցան։ Հայ Արշակունի թագաւորք, ցեղակից Պարթեւ արքայից նման, կ'երեւի թէ արձանագրութեանց փոյթ չունէին։ Իսկ Հայաստանի հողը դեռ կը սպասէ՝ որ իւր Լայարտներն և Շլիմաններն երթան պեղեն գտնեն ու երեւան հանեն զոր ինչ քրիստոնէից եռանդը՝ ջախջախելով, և հեթանոսական նախանձը՝ ծածկելով, թաղեցին նորա ծոցոյն մէջ։ Մեր ազգային պատմիչներէն Խորենացին միայն գերծ՝ հնութիւններ բնաջինջ անելու փափագէն, այս ընդհանուր մոռացութենէս յիշատակաց քանի մը բեկոր կ'ազատէ ու կը թողու մեզ. բայց նորա ականջովը լսած Վահագնի երգը կրնայ շատ հին ըլլալ, կրնայ ալ մնացած երգոց հետ Գողթան գաւառին բնակչաց ժառանգական վաղեմի երեւակայութիւնը աւելի մօտ ժամանակի՝ այս է Քրիստոնէութեան առաջին և երկրորդ դարու ծնունդ եղած լինել։ Երբ աներկբայելի փաստեր փնտռելով մեր նախնեաց բարքը և մտաց որպիսութիւնը հաստատելու համար, շատ անօր տարերք ձեռուընիս կը մնան։ Եւ քանի որ ամէն կենդանի լեզու տարուէ տարի ու բերնէ բերան կը փոփոխի ու իւր նախնական արմատէն կը հեռանայ, և միայն գրականութեամբ մնայուն և որոշ ձեւ կ'առնու, անհնարին կ'ըլլայ մեզ ապացուցանել՝ թէ հինգերորդ դարուն սկիզբը Մեսրոպեան նշանագրաց միջոցաւ հաստատեալ կամ սալացեալ հայերէնը Քրիստոսէ հինգ կամ տասն դար յառաջ մա-

տենագրութեամբք կազմուորեալ լեզուաց հաւասար կամ ի նո-ցանէ աւելի հնութեան դրոշմը կը կրէ։ Եւ թէպէտ ուրիշ պատ-մական ատուգութիւնք կասկածել չտան մեզ Հայ ազգին երից-գոյն ազգաց հաւասար հնութեանը վրայ, սակայն Հայերէնը պէտք է որ իւր գրականութեան ժամանակին կերպարանքը և կնիքը կրէ և իւր սկզբնական ձեւը կորուսած ըլլայ [1]։ Այսպէս մեր ոսկեդա-րեան գերապանծ լեզուն գոնէ մէկ քանի հարիւր տարուան կա-րօտէր՝ ստանալու համար այն կազմութիւնը և ընդարձակութիւնը որ մեր հիացումը կը շարժեն այժմ։ Վասն որոյ կրնամք ասանց երկբայութեան պնդել՝ թէ Եղիշեայ բարբառը քիչ տարբերելու էր Արտաշէս Բի՝ զուցէ եւս նոյն ինքն Միջին Տիգրանայ խօսածէն։ Բայց երբ ակն յանդիման կը տեսնենք այն այլայլութիւնքը՝ զոր կրեց պարսկերէնը Վշտասպեան Դարեհի օրէն մինչև ցԱստանեանն Արտաշիր և ապա ցՖիրտէվսի, դժուարին է հաւատալ՝ թէ Հայ-կազն Տիգրան և Վաղարշապաւ իրարու գրուցածը պիտի հասկնային, եթէ երբէք հանդիպէին իրերաց, ինչպէս որ յայտնի է՝ թէ Ար-տաշիր, Յազկերտ և Ֆիրտէվսի պիտի չկարէին հասկնալ Դարեհի լեզուն, և տակաւին եւս մազդեզն օրինաց հիմնագրին քարոզու-թիւնքը ։

Նախնի յիշատակաց և մատենից խորտակումը աւելի զարհու-րելի եղեր էր Պարսից Պետութեան մէջ Պարթեւաց օրերը, և մանա-ւանդ Մահմետականութեան անդ տիրանալէն ի վեր։ Այժմ Պարս-կաստանի հնագոյն մատենագիրը Ֆիրտէվսին է, որ գրեաց զիւր Շահնամէն Քրիստոսի 1003ղ թուականին, այս է մեր ձեռքը հա-սած նախնագոյն հայ հեղինակութիւններէ 6–700 տարի ետքը։ Ա-հագի՜ն միջոց ժամանակի, որ կը բաւէ շատ ազգերու և լեզունե-րու՝ ծնանելու, մեծնալու և անյայտ ըլլալու համար։ Պարսկական ազգը և բարբառը անցան այս ազմկալից և խառնաշփոթ դարուց մէջէն, բայց ոչ առանց աշագին փոփոխութիւններ կրելու. և եթէ Պարսիկք համօրէն Մահմետականութիւնը ընդունած ըլլային, ինչ-պէս Հայք աահաստրակ ընդունեցան զՔրիստոնէութիւնը, պարս-կական լեզուին այժմեան ձեւը միայն պիտի գիտնայինք և նորա նախնական կերպարանութեանը անտեղեակ պիտի ըլլայինք։ Վըշ-

1. Հայկական լեզուն պէտք չէ նկատել իբրեւ հին պարսկերէնի կամ հին բակտրիարէնի դուստր, այլ իբրեւ մի ուրիշ մեզ անծանօթ հիմնական լեզուի Stammsprache) սերունդ, որ հին պարսկերէնի կամ հին բակտրիարէնի հետ միասին անջատեցաւ սկզբնական (Grundsprache) Երանեան լեզուներէն »։ Ֆր. Միւլլեր։ – Տես Պ. Բ. Պատկանեանի գեղեցիկ յօդուածը ի Փորձ, 1880, Մարտ։

տապեան Պարեճի և Սասմնեանց արձանագրութիւնքը, զորս այսօր նոյնքան առաւելութեամբ կ'ընթեռնուն հնագէտք որքան հին յունական և հռովմէական արձանագրութիւնքը[1], գուցէ Վանայ և Բաղեշայ բեւեռագրաց չափ անլուծանելի առեղծուած պիտի համարէինք։ Սակայն Զրադաշտականութիւնը աւելի բռնութեամբ և յամառութեամբ մաքառեցաւ իսլամական օրինաց հետ՝ քան հայկական լոյծ և անկցորդ դիցապաշտութիւնը քրիստոնական հաւատոց դէմ։ Եւ երբ մի եւ նոյն հողոյն վրայ մօտ առ մօտ կենալը Մազդեզանց անկարելի եղաւ, ատոնք թողուցին գիւրեանց բնագաւառը, և յեօթներորդ դարուն բազմամբոխ գաղթականութեամբ գնացին ի Հնդիկս՝ Պոմպայի մօտ, Կիւճէրադ նահանգը, ուրանոր զրադաշտական Պարսիկք՝ կամ ինչպէս կը յորջորջին փարսիք՝ զօրաւոր և բազմահարուստ հասարակութիւն մը կը կազմեն այժմ, պահելով իրենց նախնի կրօնը, արարողութիւնքը և սովորութիւնքը[2]։ Հետերնին տարեր էին զԱւեստան և զայլ սրբազան ձեռագիր մատեանս, զորս ունէին կամ կրցեր էին ժողովել իւրեանց հայրենի երկրէն հեռացած ատեննին։ Եւրոպացիք քիչ ծանօթութիւն ունէին այս գաղթականաց վրայ, մինչեւ որ անցեալ ութեւտասներորդ դարուն կիսուն մօտ՝ 1754ին, Անքըթիլ Տիւբէրօն անուն գաղղիացին ի Հնդիկս երթալով և յետ բազում դժուարութեանց մտերմանալով Տէսթուր Տարապ անուն մոլպետի հետ, առկէ ուժով ձեռք ձգեց սրբազան մատենից զանազան օրինակներ, զորս բերանացի կը թարգմանէր նմա Տարապ և նա ի գիր առնոյր, և բազում տարիներէ յետոյ վերադառնալով ի Գաղղիա՝ կը հրատարակէր (1771ին)։

1. Տես Մաքս-Միւլերի Contemporary Review 1878, Օգոստ. յէջ 11։

2. Ըստ աշխարհամարի 1881 տարւոյ, են ի Հնդիկս 85397 փարսիք, 43598ը այր, 41799ը կին։ 72065ը Պոմպայի նահանգին մէջ են, և յայտնանէ միայն Պոմպայ քաղաքին մէջ 48597 հոգիք կան՝ ուր ընդհանուր ժողովրդեան հարիւրին 6.3ը կը կազմեն։ 12593 հոգիք ի վիճակն Սուրաթայ, 6118 ի գաւառն Պարոտա և 1908 յայլեւայլ տեղիս նահանգին։ Պենկալայ նահանգին մէջ ընդամէնը 156 և Մատրասայ նահանգին մէջ ալ միայն 143։ Կ'երեւի թէ 1891ի աշխարհամարը 89887 փարսի յայտնած է։
Պարսկաստանի մէջ 8500ը չեն անցնիր. յորոց 6483ը Յեզտ և ի շրջակայս նորա. 1756ը ի Կրման, 150ը ի Թեհրան, 58 ի Պահրամապատ, 25 ի Շիրազ, 15 ի Քաշան, և 12 ի Պուշիր։ Ասոնք բոլորովին անհետացած կ'ըլլային՝ եթէ չհասնէր հնդկաբնակ կրօնակցաց պաշտպանութիւնը և օգնութիւնը որ զանոնք գլխահարկէ (ճիզէէ) ազատեց։ — (Տարմէսթէթէր. հատ. Ա., 37 և 38)։

Բայց Անքըթիլ Զրադաշտայ ընծայեալ գրութեանց լեզուն չէր կրցեր սորվիլ, որովհետեւ զայն գիտցող չկար նոյն իսկ փարսի գաղթականաց մէջ, որք թէպէտեւ զայն կ'ընթեռնուին և անոր մէջի չարականները և տաղերը բերնուց սերտած էին, բայց իմաստը pahlavi այս է պահլաւիկ թարգմանութեամբ միայն կարող էին ըմբռնել։

Դժբաղդաբար փարսի մոպետաց պահլաւերէնի գիտութիւնն ալ յոյժ ծանծաղ և պակասաւոր էր, վասն որոյ Անքըթիլի հրատարակութիւնը աւելի նուազ վստահութիւն պարտ էր ազդել։

Կ'երեւի թէ Պապէքան Արտաշրի ժամանակն անգամ Աւեստայի լեզուն ժողովրդեան մեծագոյն մասին համար անհասկնալի և մեռեալ լեզու մը եղած էր։ Վասն որոյ Քրիստոսի թուականին առաջին դարուց մէջ Պահլաւի թարգմանութիւնք աւելի գործածական էին քան բնագիրն։ Սակայն պահլաւիկ թարգմանիչքն չէին կրցեր հաւատարիմ թարգմանութիւն մը յառաջ բերել, մէկ բառ մը շատ անգամ երկայն պարբերութեամբ բացատրեր և բնագիրը յաւելուածոյ մեկնաբանութեամբք ընդլայներ էին։ Պահլաւիկ բարբառն եւս տակաւ տակաւ մոռցուեր և Հնդկաստանի փարսիներուն սոսկ կրօնական և անկենդան լեզու մը դարձած էր։ Անքըթիլի բարեկամացեալ Տասթուրն Տարապ զպահլաւիկ Աւեստան՝ աւանդութեամբ և մօտ ժամանակի պահլաւերէնէ ի պարսկերէն և ի կիւճերատերէն թարգմանութեամբք կը հասկնար՝ քան քերականական հմտութեամբ։ Վասն որոյ գաղղիացի հնագէտին վերծանութիւնը թէպէտ փարսի Մոպետաց անցեալ դարուն աւանդութիւնքը ամբողջապէս կը պարունակէր, բայց Աւեստայի հաւատարիմ թարգմանութիւնը չէր կրնար ըլլալ. շարադրութիւնը և հիւսուածքը այնքան կը տարբերին ի բնագրէն, որ զայս վերջինս ուսումնասիրելու և երեւան հանելու ալ անբաւական է։

Սակայն Աւեստայի լեզուն կը նմանի Սանսքրիտի՝ որքան Ատտիկէի, Յոնիոյ, Դորիոյ և Եւոլիոյ հելլէն գաւառաբարբառք նման են իրերաց։ Եւ ինչպէս Յոնիացիք, Դորիացիք և այլն մի և նոյն հելլէն ազգին զանազան ցեղերն էին, նախնի Բրահմանք և Պարսիկք ալ երկու ցեղք են այն ազգին՝ որ թէ Վէտայի և թէ Աւեստայի մէջ Արիք յորջորջեալ է։

Մեծահամբաւն Եօժէն Պիւրնուֆ գաղղիացին, որ Սանսքրիտի կատարեալ հմտութիւն ունէր, իւր սուր դատողութեամբը տեսաւ այդ երկու լեզուաց իրարու մերձաւորութիւնը։ Յոյժ պիտանի եղաւ նմա Աւեստայի Եասնա գրոց սանսքրիտ լեզուաւ թարգմանութիւն

մը՝ զոր Ներիոսանկ անուն փարսի մը աշխատասիրեր էր ի ժե դարու՝ պահլաւիկ վերծանութեան վրայէն։ Ուստի ձեռք առաւ զայս և զԹարգմանութիւնն Անքըթիլայ, և Աւեստայի բառերը մի առ մի ստուգաբանելով և բաղդատելով Սանսքրիտի և ասոր համացեղ՝ յունական, լատինական, գերմանական և արդի պարսկական արմատոց հետ, Եասնայի մէկ մասին նոր և ճշգրիտ թարգմանութիւն մը ի լոյս հանեց, յամին 1835, հանդերձ պիտանի լուսաբանութեամբք և գեղեցիկ ճառագրութեամբք, յորում կ'ապացուցանէր Աւեստական և Սանսքրիտ լեզուաց իրարու հետ սերտ նմանութիւնը և կը հաստատէր առաջնոյն քերականական կանոնները։

Պիւրնուֆի գրութիւնը ուղիղ և անկասկածելի էր. նա հիմն դրեր էր իւր աշխատութեանը Անքըթիլայ հաւաքած աւանդութիւնքը և Ներիոսանկի թարգմանութիւնը որ հնագոյն աւանդութիւն մը կրնայ համարուիլ, և զնոսա կը հաստատէր, կը մերժէր կամ կը փոփոխէր Աւեստայի համացեղ լեզուաց և ի մասնաւորի Սանսքրիտի գիտութեամբ։ Սոսկ բաղդատական լեզուագիտութիւնը վտանգաւոր և մոլորեցուցիչ էր յոյժ։

Կանխահաս մահը չներեց Պիւրնուֆի որ իւր արդիւնաւոր ձեռնարկը լրացնէ։ Բայց նա ճանապարհը հարթեր էր։ Իրմէ ետքը Տանիմարքացի և մանաւանդ Գերմանացի հնագէտք շարունակեցին նորա գործը։ Վէսթէրկաարտ, Սբիկէլ, Եուսթի՝ Պիւրնուֆի ոճոյն հետեւեցան։ Պաւիերացին Հաուկ ի սկզբան մերժեց աւանդութեանց օգտակարութիւնը, պատճառելով՝ թէ ոչ պահլաւիկ թարգմանիչք բաւական տեղեակ էին Աւեստայի լեզուին և ոչ պահլաւերէնէ ի պարսկերէն կամ ի Սանսքրիտ լեզու փոխողները՝ պահլաւիկ լեզուին։ Ուստի արմատոց ստուգաբանութեամբ և բաղդատութեամբ միայն ուզեց մեկնել զԱւեստան, և երկար ժամանակներ բանակռուեցաւ Պիւրնուֆի հետեւողաց հետ։ Այս գրութիւնս շատ աւելի տաժանելի էր և վրիպական քան զՊիւրնուֆինը։ Բայց երկու հազար տարիէ ի վեր մոռացեալ լեզու մը երեւան հանելու համար՝ լաւ էր որ հնագէտք տարբեր ճամբաներով և ընդդիմակաց վարդապետութեամբք փորձէին այդ դժուարին նպատակը ձեռք ձգել։ Պ. Հաուկ որ կը դասախօսէր Միւնիքի համալսարանին մէջ, գնաց ի Բունա քաղաք Հնդկաց ու անդ հաստատեց զիւր բնակութիւնը, ուր ի մօտոյ կրնար քննել և կշռել փարսի մոգպետաց աւանդութիւնքը։ Անդ՝ թէպէտ իւր առաջին սկզբունքը բոլորովին չփոխեց, բայց աւանդութեանց արժանահաւատ լինելը խոստովանեցաւ Աւեստայի մեծագոյն

մասին համար. մինչդեռ իւր հակառակորդքն ալ իրեն հետ հաւանեցան՝ թէ աւանդութիւնք յիրաւի քիչ նպաստամատոյց կրնան լինել Աւեստայի հնագոյն մասերին՝ կաթայից ընթերցմանը (որ Զրադաշտայ հարազատ գրութիւնը կը կարծուի, մինչդեռ մնացած գըրքերը նորա աշակերտացը և հետագայ դարուց երկասիրութիւն են), և թէ զայն մեկնելու համար բաղդատական լեզուագիտութենէ զատ միջոց և ճար չկայ։

Եւրոպիոյ հնագէտքն՝ իւրեանց անխոնջ և մեր արեւելեան ձանձրացկոտ մտաց համար սարսափեցուցիչ պարապմանց մէջ, որոց ազդու մէջերնէն ոմանք տիեզերահռչակ անուան և փառաց արժանացան, ժամանակ ունեցան զփարսի գիտնականն, որք իւրեանց կողմանէ հետամուտ կ'ըլլային հայրենաւանդ գրութիւնքը աւելի բացայայտ ըմբռնելու, երբեմն ուղղութիւն տալով Եւրոպացի խուզարկուաց և շատ անգամ օգտուելով ի նոցանէ։ Հայերէնն ալ պիտի մատուցանէր իւր նպաստը զհարազատ եղբայր լեզուն կարդալու համար. Հաւկ, Եուսթի և ուրիշ երանագէտք ուշի ուշով քննեցին և մեր հայրենի բարբառը. իսկ Տըլակարտ գերմաներէն մասնաւոր գրութեան մը մէջ¹ Աւեստական շատ մը բառեր հայերէնով քննադատեց ու լուսաբանեց։ Հարիւրամեայ աշխատութենէ յետոյ յաջողեցան հնագէտքն ի խաւարէ հանելու զմազդէական գրութիւնս, որք՝ մանաւանդ գրչագրաց ապականման պատճառաւ՝ թէպէտ տակաւին խիստ շատ չմեկնուած տողեր կը պարունակեն, սակայն մեծաւ մասամբ թարգմանեցան ի Գերմաներէն, ի Գաղղիարէն և յԱնգղիարէն։ Միանգամայն և աչքէ անցուցին և բաղդատեցին Հելլէն, Հռովմայեցի, Հայ և Մահմետական մատենագրաց պատմչաց զրադաշտական օրինաց վրայօք տուած տեղեկութիւնները։ Աւեստայի լեզուին ուսումը նպաստեց մեծապէս Աքեմենեան բեւեռագրոց ընթերցմանը, որոց լեզուին հետ յոյժ սերտ նմանութիւն ունի, և պահլաւերենի գիտութիւնն՝ ալ Սասանեան արձանագրութեանց և դրամոց։

Այդ երկասիրութեանցդ շնորհիւ և մեք՝ կրկին բարբառոցդ ծա[illegible] և տաժանելի խրթնութեանց և դժուարութեանց առանց յոգնաշխատ լինելու, կրնամք հասկնալ և հասկցնել՝ թէ ինչ են զրադաշտական կամ մազդէական օրէնքը. որոնք են Պարսից

1. Beitraege zur baktrischen lenicographie, Leipzig 1868.

որքան մատեանքը, ինչ էր նոցա նախնական լեզուն, և ինչ փոփոխութիւններ կրեց դարուց յաջորդութեամբ[1]։

## Բ

Գիտելի է նախ՝ թէ Եւրոպացիք Արաբացի մատենագրաց հետևելով, զԶրադաշտական մատեանն «Զենդ–Աւեստա» յորջորջեցին. Փարսիք անուանց կարգը շրջելով՝ աւելի ճշդութեամբ «Աւեստա և Զանտ» կը կոչեն։ Աւեստա անունը կու տան նոյն ինքն Զրադաշտայ և նորա անմիջական աշակերտաց գրութեանց, և զանտ ասելով կ'իմանան պահլաւերէն թարգմանութիւնքը և մեկնութիւնքը։ Եւ որովհետև այս վերջնոյս միջոցաւ միայն կը հասկնային զԱւեստան, Աւեստայի հաւասար՝ արժանահաւատ և ճշմարտապատում համարեցան՝ ընծայելով զնոսա նոյն ինքն Զրադաշտայ։ Եւրոպացի հնագէտք սակայն նոյն ինքն Աւեստայի մէջ կը նշմարեն այլևայլ տներ և պարբերութիւններ՝ որք վերջէն աւելցած են իբրև լուսաբանութիւնք. և որք բուն Աւեստայի լեզուաւ գրուած ըլլալնուն համար խառնուած ըլլալու են բնագրին հետ, իբրև թէ մի և նոյն հեղինակէ լինէին։ Հաւանական է՝ որ առաջին Զանտքն կամ մեկնութիւնքն Աւեստայի լեզուաւ գրուեցան. և թէ բահլաւի մեկնութիւնքը սոցա թարգմանութիւնք են՝ մերթ ընդ մերթ յաւելուածով։ Վասն որոյ մարթ է անխտիր՝ «Զէնտ–Աւեստա» կամ «Ա-

1. Մեր ընելու համառօտ տեսութեան համար առաջնորդ առինք մեզ գըլխաւորաբար Պ. Հաուկի նշանաւոր երկասիրութիւնը՝ Essays on the sacred language, writings and re:igion of the Parsis by Ma.tin Haug. London 1878. Հարլեզ Պելճիացւոյն և մանաւանդ Ճէմս Տարմէսթէթէրի Աւեստայի գաղղիարէն թարգմանութիւնքը, Ճորճ Ռօլինսընի պատմական հայկական աշխատութիւնները. Պ. Ուէսդ անգղիացւոյն Մայնօ–խրատի, Պունտահիշի և այլ թարգմանութիւնքը. Տէսթուր Հօշանկ Ճամասբի հրատարակած Զանտ–Բահլաւի և Բահլաւի–Բազանտ բառագիրքը, և Պ. Եուսթիի բառարանը։ Խոստովանելու եմք սակայն՝ որ գժբաղդաբար գերմաներէն լեզուին անհմուտ ըլլալնուս համար չկրցանք պատշաճապէս օգուտ քաղել գերման մատենագրաց երանեան հըմտութեանց ամէն ճիւղին մէջ ըրած կարևոր հետազօտութիւններէն, զորս միայն կարող եղաք ուսումնասիրել որչափ հնար էր, նորա հետևող գաղղիացի հեղինակաց միջոցաւ։

ւեստա և Զէնտ » յորջորջել նախնական կամ աւեստական լեզուաւ գրուած մատեանքը, թէպէտև Փարսի աւանդութիւնը Զանտ անունը մի միայն պահլաւերէն թարգմանութեանց և ծանօթութեանց կը յատկացնէ։

Աւեստա՝ Աւա-ստա բառերէ բարդեալ կ'երևի, որք նշանակեն «հաստատեալ ինչ» կամ հաւատք։ Պ. Հաւկ աւելի կ'ընտրէ ա-շխաղա կամ Աւեստաք բառէ հետևցնել որով Աւեստա, Վեստա, Աւեստարան համանիշ կ'ըլլան[1]։ Իսկ Զանտ, որոյ պահլաւիկ ձևն է Զանդիգի, եկած է Զան արմատէ, որ է ճանաչել, գիտել, ինչպէս ի մեզ «ծանօթութիւն» ծանեայ, ծանիր, ծանուցեալ արմատէ կազմուած է[2]։

Պահլաւիկ թարգմանութեան և ծանօթութեանց վրայ Սասանեանց ժամանակ նոր ծանօթութիւնք կամ մեկնութիւնք աւելցան, որք կը կոչին Բազանտ, հաւանօրէն աղաւաղեալ կրճատումն Բաիդի-Զանդի բարդութեան, որ ըսել է վերստին կամ կրկին ծանօթութիւն։ Բազանտ անունը կը տրուի նաև այժմ այն զուտ Իրանեան լեզուին՝ որ Ֆիրտէվսիինէն քիչ կը տարբերի և որ հինգերորդ դարուն Պարսից կենդանի բարբառն էր։

## Գ

Պարսկաստանի լեզուները, զորս սովոր է Իրանեան կոչել, յատուկ ազգ մի կը կազմեն այն Արիական լեզուաց մեծ խմբին մէջ՝ որ Իրանեան բարբառներէ զատ կը պարունակէ Սանսքրիտը (սերնդօք իւրովք), և զՅունական, Լատինական, Հայկական, Տևտոնեան, Սլաւեան, Լիթվօնեան, Կեղտական և այլ համացեղ լեզուները։

1. Եւրոպացիք ասկէ յառաջ Զէնտ կը կոչէին Աւեստայի լեզուն, որով կ'ըսէին Langue zend, grammaire zend. Բայց որովհետև այդ անունը աւելի պահլաւիկ թարգմանութեանց և մեկնութեանց կը պատկանի, և պահլաւերէնն ալ մանաւանդ կը տարբերի Աւեստայի լեզուէն, չփոթութիւն չպատճառելու համար, լաւագոյն համարեցանք զայս վերջինս Աւեստայի լեզու կոչել։

2. Դարմեն իւր արձանագրութեանը մէջ կ'ըսէ. ափտրից ազատամ ուբարիշայամ. «ըստ Աւեստայի վարկցի». առարկէն սինակին մէջ ապաստ թարգմանի տինար՝ որ է գեն, օրէնք։ Պահլաւիկ ձևն է աբաստաք։

Իրանեան ազգը կը բովանդակէ Իրանայ հին, միջին և նոր լեզուները. իսկ Իրան բսելով իմանալի է Պարսկաստան, Մարաստան և Բակտրիա, որք Զենտ-Աւեստայի մէջ Այրիա̂օ-տաեա̂ւօ « Արիական աշխարհք » կամ « դեհք » կը յորջորջին։

Իրանեան լեզուք յերկուս ցեղս կը բաժանին. ա, Արեւելեան Իրանայ կամ Բակտրիոյ բարբառք, զորս միայն փարսի սրբազան մատենից՝ այս է Աւեստայի միջնորդութեամբ կը ճանաչեմք։ Այս բարբառքս եւս կրկին են. առաջինն՝ զոր պարտ է անուանել կաթայից կամ « Ագօթից », « Օրհներգութեանց » լեզու, հնագոյն է. միւսը Աւեստայի Յասցեալ գրոց բարբառ, որ առաջնոյն յաջորդեր է, ու հարիւրաւոր տարիներ Բակտրիոյ գրական և խօսեալ լեզուն լինելէ յետոյ, Քրիստոսէ յառաջ երրորդ դարուն մէջ առանց սերընդոյ վերջացած կ'երեւի։

Աւեստայի լեզուն թէ իւր հնագոյն և թէ վերջին կերպարանաց մէջ՝ մեծապէս զարգացեալ բարբառոյ մը ամենայն յատկութիւնքը կը կրէ։ Խոնարհմանց և հոլովմանց փոփոխմունքը յոյժ ճոխ են։ Անուանք՝ ճիշդ Վետայեան Սանսքրիտի պէս՝ երեք տեսակ թիւ և ութ տեսակ հոլովմունք ունին. իսկ բայերու շատ աւելի զանազան ձեւեր կան քան ի Սանսքրիտ։ Բարդութիւնք յաճախ են և բազմատեսակ. բանից իրարու յօդաւորութիւնքը՝ հեշտ, որով և խօսից ընդհանուր իմաստը դիւրըմբռնելի։ Աւեստայեան լեզուն հարազատ եղբայր կը համարուի Սանսքրիտի, Յունարէնի, Լատիներէնի և Գոթարէնի. բայց չերեւար մեզ իւր երիտասարդութեան պայծառ և կատարեալ հասակին մէջ, այլ սակաւիկ մի անկման և ծերութեան ժամանակի երերուն կերպարանօք։

Աշաւաւնի Կաթայից լեզուին օրինակ մը, զոր կը քաղեմք Ուշդաւաիդի կոչուած երկրորդ Կաթայէ. (Եասնա, 94, 3)։

Դատ թւա̂ պերեսա̂ երեշ մօի վօչա̂ Ահուրա̂
Զոր քեզ հարցից ճշմարտիւ ինձ ասա, Ահուրա̄.

Քասնա̂ զա̄թա պթա̂ աշահյա̂ պօուրւեյօ̂
Ո՞ այն արարիչ հայր բարութեան սկզբնական

Քասնա̂ քենգ ստարեմչա տատ ատուանեմ.
Ո՞ արեւու և աստեղաց արար զճանապարհ.

ցն եռ մռօ ուխշինէոցի նէրթաոյցի թվատ
Ո՞ (է) որ զլուսին լրացուցանէ և մաշեցուցանէ բաց ի քէն.

Դա̂շ̂իտ Մազատ̂ վառէմ̂ անէա̂շա̂ վ̂իտէ̂.

Ջայգօսիկ, Մազդա̄, կամիմ և զայլս գիտել։

Աւեստայի մնացած գրոց լեզուին ալ օրինակ մը տալու համար, ստորեւ կը դնեմք, քաղելով յԱպան Եաշդէ՝ այն աղօթքը՝ որ անվրէպ կը հասցնէր հայցողին՝ Անահտայ օգնութիւնը.

Ա̂իտի բաիդի ավա-ձասա
Եկ ընդ աստղ էջ ի վայր

Արդվիսուրա Ա̂նա̂հիդ̂
Արդվիսուր Անահիտ,

ձաչա աւտարիյօ ստարեպեօ̂
անդուստ ի հեռաւոր աստեղաց

աւի զ̄ամ Ահուրատա̂դ̄ամ
ի վայր յերկիր Ահուրակերտ

թվ̄ամ եազ̂աօնտէ աուրվ̂աօնհօ̂
զքեզ յազեսցեն (պաշտեսցեն) հնարագէտ

ա̂հուրա̂օնհօ̂ դանհուպադայօ̂
տէարք դեհապետք

պուդրա̂օնհօ̂ դանհուպաիդինա̄մ
որդիք դեհապետաց։

Բ. Արեւմտեան Երանայ, այս է Մարաստանի և Պարսկաստանի բարբառք։ Ցայսցանէ միայն զմին գիտեմք իւր նախնական, միջին և այժմեան ձեւերովը[1]։ Հին ձեւին օրինակներն են Աքեմենեան

1. Սէյիտ Հիւսէին Շահ Հագիգաթի՝ քեօփրիւ-իւլ-Աճէմ անուն պարսկերէն քերականութեանը, ինչպէս և Պիւրհա՛նի Գաթիի մէջ եօթն տեսակ գաւառաբարբառներ յիշատակեալ են, զորս բաժանեն յերկուս դասս. Ա. մեռեալ լեզուք. 1. Սուղտի, այս է Նախնի Սոգդիանաբէն (Սուղտա ի Զէնտաւեստա). 2. Զաւլի, այս է Զապէլիստանայ. 3. Սագզի, այս է Սագաստանի. 4. Հիրէվի կամ Հերաւայ (Հարօյու ի Զէնտաւեստա)։ — Բ. խօսեալ լեզուք. 1. Ֆարսի, զոր խօսին ի Սաաիր. 2. Տ̄արի, այս է դրան կամ արքունական, զոր խօսին, ասեն, ի Բալխ, ի Պուխարա, ի Մէրվ և ի Պատախշան. 3. Բահլավի կամ

հաստատութեան բեւեռագիր արձանագրութիւնները որ ի Պերսեպօլիս, ի Բիհիսթուն առ Եկբատանաւ և յայլևայլ տեղիս Պարսկաստանի։ Այս արձանագրութեանց լեզուն յոյժ նման է Աւեսդայինին, բայց և այնպէս ունի իւր սեփական հանգամանքը. այսպէս Աւեսդայի զ կը փոխուի ի տ. ազեմ՝ դերանուն «ես» կ'ըլլայ ատամ արձանագրութեանց մէջ. ինչպէս և զասդա՝ «ձեռն» յԱւեսդա, փոխի ի տասդա։ Դա անշուշտ այժմեան պարսկերէնի մայրն է. բայց զուտը այնչափ քիչ կը կրէ ծնողին նմանութիւնը, որ ցեղակից Սանսքրիտ և Աւեսդական լեզուներն անկէ շատ աւելի նպաստամատոյց են արձանագրութեանց ընթերցման։

Աստ կը դնեմք Վշտասպեան Դարեհի Քրիստոսէ 516 տարի յառաջ Բիհիսթունի քարաժայռին վրայ փորագրել տուած սեպագրոց Հայոց վերաբերեալ եօթն տներէն մէկը.

1. Թա՛թիյա Տարայաւուշ խշայաթիյա,
   Ասաց Դարեհ արքայ (շահ).
2. Պասա՛ւա Տա՛տարշիշ նա՛մա, Արմինիյա, մա՛նա պատաքա,
   Յայնժամ Դադարշէս անուն Արմէն հպատակն ինձ,
   ավամ տամ ֆրայշայամ Արմինամ.
   զնա ես առաքեցի յԱրմէնս։
3. Աւաթա՛շիյա աթահամ.
   Ասացի ցնա.
4. Պրիտիյա, քա՛րա հիյա համիթրիյա, մանա՛ նիյա կաւպա-
   Երթ յերկիրն ապստամբ, որ ոչ ճանաչէ
   տիյա, ավամ ճատիյա.
   զիս, յաղթեա՛ նմա։
5. Պասաւա Տատարշիշ աշիյաւա.
   Յայնժամ Դադարշէս խաղաց գնաց։

Յանձնարարեմ, զոր յառաջաբերին ի Յաւելս աշխարհաց ուրանոր են Ուէյ (Ուղղա բառ Զէնտաւեստայ, և Հրամա բառ Աստուածաշունչ գրոց), Աղաքան և Տիրամայր նահանգքը։ Տարի առելով, առէ Պիւրնաֆի Գարի, Ֆիրտէվսեայ լեզուն կ'իմանան. և առոր փարսիի հետ ունեցած տարբերութիւնքը ցուցնելու համար օրինակներ յառաջ կը բերէ. արբունեաց լեզուաւ՝ աշքամ (որովայն) և ապա (ընդ) բառլու է եղեր՝ փոխանակ շքամ և պա բառլու։ Բայց այդ տարբերութիւնքդ արտասանութեան չնչին զանազանութիւններ են, ուստի և անբաւական այդ երկու լեզուները իրարմէ որոշելու համար։ Տարի Իրանագիտաց Բազմեմն է, որոյ վերայ պիտի խօսինք ստորև։

6. Յաթա Արմինամ պարարասա, պասավա համիթրիյա
Երբ եհաս յԱրմէնիա, յայնժամ ապստամբքն,
հակամատա պարաիշա պատիշ Դադարշիմ համարանամ
ժողովելով, եկին անդրէն յանդիման Դադարշեայ տալ
չարթանիյա։
պատերազմ։

7. Զօզա[1] նամա, աւահանամ Արմանիյիյա, ավադա
Զօզա անուն, աւան Արմենիոյ, անդանօր
համարանամ ակունավա.
մղեցին պատերազմ։

8. Աւրամազդա մայիյա ուպաստամ աբարա.
Աւրամազդ (Որմիզդ) ինձ նպաստ եբեր։

9. Վաշնա Աւրամազդահա, կարա հյա մանա, ավամ
Շնորհօքն Աւրամազդայ, զօրքն իմ բոլորովին
կարամ տիյամ համիթրիյամ աժա վասիյա.
խորտակեցին զբանակն ապստամբ։

10. Թուրավահարահիյա մահիյա Ը րաւչաբիչ, թաքաթա ահա
Ութերորդ օր Թուրավահար ամսոյ, յայնժամ էր
ավաթա համարանամ քարդամ.
տուեալ պատերազմդ այդ։

Այժմեան պարսկերէնը հին լեզուէն որչափ գլխաւոր հանգամանքներն են՝ հոլովմանց և խոնարհմանց գրեթէ բոլորովին կորուսին, և սեռի բացարձակապէս ի բաց թողուին, մինչդեռ Քրիստոսէ 500–300 տարի յառաջ Աքեմենեան արձանագրութեանց մէջ տեսնուած հոլովական փոփոխմունք Սանսքրիտի, Աւեստայի և ուրիշ հին արիական լեզուաց համաձայն են։ Դժուարին է ասել՝ թէ երբ պարսկերէնը անգլիարէնին պէս պարզեցաւ և իւր նախնի հանգերձանքը մերկացաւ՝ օտար բառերու ընդունակ ըլլալու համար։ Բայց մարթ է կարծել՝ թէ անուանց և բայից վերջաւորութիւնքը տակաւ առ տակաւ անխմանալի լինելով, Քրիստոսէ շատ յառաջ սկսան

1. Մասուտի կ'ըսէ թէ Նինուէի հիմնադիրին եղաւ Պասուս بوس անուն հզօր թագաւոր մը՝ որ Բելայ որդին էր. Պասուս պատեաց գըրաղայքը պարսպօք և թագաւորեաց ամս 52։ Նմա յաջորդեց իշխանուհին Շամիրամ ամս 40։ Այս վերջնոյս պետութիւնը կը տարածէր ցըսահմանս Արմենիոյ, բովանդակէր զԱտրպատական, զերկր Միջագետաց, ըզլեառն Ճուտի, զլեառն Թիթել تيتل, զերկիրն Զաւզան بلاد الزوزان և զայլ գաւառս Արմենիոյ։

խառնակիլ և վերնալ. որովհետև այդ քերականական ձևերն Աքեմենեանց վերջին սեպաձև արձանագրութեանց՝ ինչպէս և Աւեստայի մի քանի գրոց մէջ՝ արդէն չփոթ են։ Իսկ որովհետև Արշակունի Պարթևաց ժամանակէն՝ որք յաջորդեցին Աքեմենեանց, պարսկերէն արձանագրութիւնք չկան բնաւ, կարելի չէ մեզ գիտնալ՝ թէ պարսիկ լեզուն ինչ այլայլութիւններ կրեց նոյն միջոցին։ Մեծին Աղեքսանդրի յոյն յաջորդացը հարկատու մէկ քանի պարսիկ իշխանաց կամ նահանգապետաց դրամներ կան արդարև (այս է Քրիստոսէ 2–300 տարի յառաջ), որոց վրայ սեմական նշանագրօք կոխուած բահլաւի բառեր տեսնուած են, ինչպէս և Պարթև Արշակունեաց ժամանակը գաւառաց ոմանց մէջ տպեալ դրամոց ոմանց վրայ. բայց այդ անօսր տարերքդ, որք բահլաւի լեզուին հնութիւնը կ'ապացուցանեն, բաւական չեն այդ լեզուին որպիսութիւնը մեզ յայտնելու, մինչև որ հասնինք Սասանեաց առաջին երկու թագաւորաց օրերը (226–271), որոց արձանագրութեանց և դրամոց մէջ զարմանօք կը տեսնենք սեմականով խառն պարսկերէն մը, այս է բահլաւի լեզուն։ Այս պահլաւիկ բարբառս ալ մինչև ցվերջ երրորդի դարուն Քրիստոսի փոփոխութիւններ կը կրէ. բայց այնպիսի փոփոխութիւններ միայն՝ զորս կրած է օրինակ իմն անգղիարէնը Չօսըրի դարէն մինչև մեր օրերը. ու այնուհետև յոյժ կը մերձենայ Սասանեանց Բահլաւի մատենագրութեան լեզուին, որ գործածուեր էր նոցա բառնալէն ետքն ալ մինչև ց881 տարին։ Այդ մատենագրութենէդ բաւական ընդարձակ գրութիւնք պահած են մեզ մինչև ցայսօր Փարսիք. յայտնի է ոմանք Աւեստայի թարգմանութիւնքն են, այլք հեղինակութիւնք, որպէս պիտի տեսնենք առաջև։ Տասներորդ դարէն ետքն ալ կան բահլաւի գրութիւնք, բայց սոքա հետևողութիւնք են և ոչ հարազատ հեղինակութիւնք։

Երանեան լեզուաց սերունդքն համարին հնագէտք բաշղու յորջորջեալ Աֆղաներէնը, ինչպէս և Կովկասաբնակ Օսէթաց բարբառը։

## Դ

Թէ ինչո՞ւ համար Սասանեան արձանագրութեանց սեմականաւ խառն պարսկերէնդ պահլաւիկ կամ բահլաւի կոչեցաւ, պատմագիրք և հնախոյզք զանազան մեկնութիւններ կու տան։ Անքըթիլ՝ Բահլու՝ «սահման» բառէ կ'ուզէ հանել, իբրև բարբառ սահմանագլխոյ վրայ գտնուող նահանգի միոյ. այս կարծիքս անընդունելի է.

քանզի կարելի չէ որ լայնածաւալ տէրութեան սահմանաց մէկ մասին մէջ խօսուած լեզու մը այդ տէրութեան ընդհանուր և պաշտօնական լեզուն ըլլայ։ Պարսիկ քերականներէ ոմանք Բահլա անուն աշխարհի մը լեզուն էր, կ'ըսեն. որ ըստ նոցա՝ իւր մէջ ունէր զԱսպահան, զՌէյ, զՀէմատան, զՆիհաւէնտ և զԱտրպատական, հանդերձ նախնի Մարաստանու. բայց այդ աշխարհաց բահլա կոչուելուն չկայ այլուր յիշատակութիւն մը։ Ըստ ոմանց ալ բահլաւ հասարակ անուն մի է և կը նշանակէ «քաղաք». որով և բահլաւի ըսել կ'ըլլայ «քաղաքացւոց լեզու»։ Պիւրհանի-Գաթիի հեղինակն՝ Գամբիժեցին Հիւսէյին՝ այդ զանազան մեկնութիւններդ տալէ յառաջ, կ'ըսէ թէ այդ լեզուն Բահլաւայ, որդւոյ Սամայ, որդւոյ Նոյայ անուամբն Բահլաւի կոչեցաւ. Նշանաւոր խօսք մը, որ սեմական արմատոց ծագմանը վրայօք Պարսից մէջ ալ աւանդութիւն մը եղած ըլլալը կը ցուցանէ։

Ըստ Խորենացւոյ Պահլաւ՝ էր անուն Բահլ քաղաքի և սորա աշխարհին, որ էր սեփական իշխանութիւն Պարթևաց թագաւորական զարմին[1]։ Աւանիկ Պահլաւ բուն Պարթևաստան (Parthia ըստ Յունաց և Parthva ըստ բևեռագրոց) կամ նորա մի կարեւոր նահանգը կը նշանակէ։ Մեր ծերունի պատմագրին տուած մեկնութիւնը ամենէն աւելի ընդունելութիւն գտած է. հնագէտք «պահլաւ» և «պարթեւ» լծորդ կը համարին, որովհետև գիտեր են՝ թէ ղ բաղաձայնը չկայ հին երանեան լեզուաց մէջ, փոխան որոյ ր տառը գործածուած է։ Իսկ հին երանեան բառից մէջտեղը գըտնուած th կամ ր վերջին ժամանակաց մէջ կը փոխուի ի հ, ինչպէս Mithra կ'ըլլայ նոր պարսկերենի մէջ Միհր։ Արդի պարսկերէն գոյականն բահլաւ, բահլաւան, որ կը նշանակէ «դիւցազն, նահատակ, ըմբիշ, այր կորովի», նոյն բառն է անշուշտ։ Այն ազգը՝ որ այնքան յաջողութեամբ կռուեր էր հռովմայեցի լեգէոնաց հետ, պէտք էր որ Արևելից մէջ կտրճութեան օրինակ եղած ըլլար. որով և յատուկ անունը տակաւ առ տակաւ հասարակ անուն մի եղաւ[2]։ Ռամայանա և Մահապարատա սանսքրիտ գրոց մէջ յիշատակեալ Բահլաւս անուն կորովի և կտրիճ ազգն ալ անշուշտ Պարթևականն էր։

Առ այս կրնայ ոք առարկել՝ թէ Պարթևք Սկիւթական կամ Թուրք ցեղ մի էին, և թէ բահլաւի չի կրնար սոյն յատուկ լեզուին

1. Տե՛ս Խոր. էջ 314, 360, 364։
2. Մինչև ցայժմ մեք եւ «այր պարթև» ըսելով կ'իմանանք այր քաջ, զօրաւոր։

անունն ըլլալ, քանի որ այդ բարբառը հոծ է սեմական արմատօք։ Կը պատասխանեմք՝ թէ պարսիկ պատմագիրք, որ Բահլաւի կոչեցին հին պարսկական լեզուն, կրօնը, գրութիւնքը, կը հասկնային սովաւ ոչ զպարթեւականն միայն, այլ ընդհանրապէս ինչ որ հին էր։ Վասն զի երբ նոքա կը գրէին իւրեանց պատմութիւնը, Սասանեանց հարստութիւնը արդէն վերջացած էր, և սոցա նախորդաց՝ այս է Պարթեւաց հինգհարիւրամեայ իշխանութեան ժամանակին մեծամեծ պատերազմաց և յաղթութեանց համբաւը կանգուն կեցած էր տակաւին Արեւելից մէջ. մինչդեռ աւելի հին պատմութեան յիշատակները գրեթէ բոլորովին մոռացեալ կամ շփոթ էին։ Այսպէս Մուճ-մէլ–իւթ–թավարիխի մէջ՝ Պերսեպոլսոյ սեպաձեւ արձանագրութիւնքն Բահլաւի կոչեալ են. և Իպն Հաւգալ՝ արաբացի աշխարհագիր տասներորդ դարու, Ֆարս նահանգին նկարագրութիւնը ըրած ատենը կը գրուցէ՝ թէ երեք լեզու կային անդ. ա, Ֆարսի (պարսկերէն) որ ժողովրդեան խօսածն էր և համայն Պարսկաստանի մէջ կը գործածուէր. բ, Բահլաւի, որ հին Պարսից լեզուն էր որով Մոգք գրեցին զյիշատակարանս իւրեանց, բայց Նորա՝ Իպն Հաւգալի ժամանակը առանց թարգմանութեան օգնութեան անիմանալի եղած էր Ֆարսիստանի մէջ. գ, Արաբերէնը որ պաշտօնական լեզուն էր։ Պարսկաստանի ուրիշ խօսեալ լեզուներէն կը յիշատակէ եւս զԽուզի, այս է Խուժաստանի, զորմէ ասէ թէ Եբրայեցերէնէ, Ասորերէնէ և Պարսկերէնէ բոլորովին տարբեր է[1]։

Նոյնպէս Ֆիրուզէվաբի ատենը ոչ միայն բեւեռագիրք, այլ և Աւեստան, այլ և Սասանեան պաշտօնական լեզուն Բահլաւի անուանեալ էր, մինչ այժմ՝ քանի որ առջի երկուքը ըստ բաւականի ծանօթացան, հնագէտք այդ անունը՝ միայն Սասանեանց ժամանակի խառն բարբառոյն կը սեփականեն։ Ուրեմն յայտ է՝ թէ Բահլաւի անխտիր իբրեւ «հին պարսկերէն» ի կիր առեալ է ի պարսիկ հեղինակաց, որ ժամանակի որ ըլլայ՝ Սասանեանց, Պարթեւաց, Աքեմենեանց, Քայանեանց կամ Բէշտատեանց։ Ազգի մը անուան ուրիշ ազգի մը համար գործածելը պարսիկ մատենագրաց մէջ ուրիշ առթիւ ալ կը ներկայանայ մեզ. այսպէս Մեծն Աղեքսանդր Հռոմայեցի կոչեալ է Սասանեան Արտաշրի առաջնոյ ժամանակակից գրութեան մը մէջ. որովհետեւ սա այն կողմէն եկեր էր ի Պարսկաս-

1. Խուժաստանի բարբառը Աքեմենեան հարստութեան բեւեռագիր արձանագրութեանց երկրորդ կարգին լեզուն կը կարծուի լինել։

տան որ կողմանէ որ յետագայ դարուց մէջ արշաւեցին Հռովմէական լեգէոնք, ինչպէս որ ալ աւելի վերջի ժամանակները բիւզանդեան Յունաց հռովմայեցի կամ հռոմ անունը կու տային ու կու տան ցարդ Պարսիկք և Հայք։

Որչափ ալ անորոշ իմաստով ի կիր առնուած ըլլայ առենօք Բահլաւի անունը, ինչպէս որ ըսինք ի վերոյ՝ տուաւ Սասանեանց ժամանակի դպրութեանց լեզուն միայն կ'իմանանք. այս է Սասանեան նշանագիր արձանագրութեանց, դրամոց և փարսիներուն պահած նոյն առենի հատուկտոր մատենից։ Այդ զանազան գրութիւնքդ զարմանալի կերպարանք մի ունին. սոյն լեզուն՝ փոխանակ զուտ երանեան ըլլալու՝ (ինչպէս որ յուսալի էր, քանի որ զաս ժամանակագրական կարգաւ մէկ կողմանէ Աքեմենեան բեւեռագրաց բոլորովին անխառն, և միւս կողմանէ Ֆիրտէվսիի գրեթէ նոյնքան զուտ պարսկերենին մէջ ներփակեալ կը տեսնենք), խիստ շատ սեմական բառերով խառն է։ Օտարամուտ արմատոց թիւը աւելի մեծ է Սասանեանց՝ ժամանակաւ երիցագոյն արձանագրութեանց մէջ, և շատ աւելի նուազ վերջնոց մէջ։ Անանկ որ Արտաշրի և նորա յաջորդին Շապուհ առաջնոյ արձանագրութիւնք սեմական լեզուաւ գրուած են սակաւաթիւ պարսկերէն բառերով և պարսկական շարադրութեամբ։

Արդ ուստի՞ սպրդեցան այդ սեմական բառերդ։ Այժմեան պարսկերէնը արաբերէնէ շատ բառ առած է, բայց անոնք մահմետականութենէ յետոյ մուտ գտան, և կրօնական կամ ուսումնական գաղափարներ կամ առարկայներ բացատրող անուանք են. արաբացի բայ և մասնիկք չպարսկացան ամենևին։ Արուայիկ եկամուտ բառերն ալ բնաշխարհիկ չկրցան ըլլալ, այլ յաւէտ անհարազատ և խորթ մնացին։ Աւելէ զատ՝ Բահլաւի արձանագրութեանց մէջի սեմական արմատներն այն տեսակ բառեր են միայն՝ որոց արաբերէնը գործածական չէ արդի պարսկերենի մէջ։ Այսպէս՝ դերանունք, նախդիրք, շաղկապք, սովորական բայք, առէպ գործածելի մակբայք և գոյականք, թուական անուանք մինչև ցառան՝ սեմական են. և այժմեան պարսկերենի մէջ մուտ գտած արաբերէն մէն մի բառին համանիշ երանեան բառ կը գտնուի բահլաւի արձանագրութեանց մէջ։ Մնաց որ եթէ ենթադրենք թէ Միջագետաց կամ Տաճկաստանի բնակիչք իրենց յարաբերութեամբքը բերին այդ սեմական արմատները, սոյն առնչութիւնքը աւելի շատ էին Սասանեանց վերջի ատենները. վասն որոյ եթէ յԱրաբացւոց առած ըլլային Պարսիկք, այդ սեմական բառերդ պահուելու՝ մնալու թէ հետզհետէ աւելնալու էին փոխանակ անհետ լինելոյ։ Եւ որովհետև այդ սեմական

բառերդ աւելի Ասորեստանեայց կամ Քաղդէացւոց լեզուին ձեւերուն նման են քան Արաբականին և Եբրայականին, պարտ է կարծել՝ որ եթէ խառնուրդ մի եղաւ երանեան և սեմական բարբառոց մէջ, Աքեմենեան Պարսից և Պարթեւաց պետութեան մէկ կարեւոր մասին մէջ տիրող ասորերէնին կամ քաղդէարէնին հետ եղած է։

Ոմանք ալ կարծեցին՝ թէ որովհետեւ Քրիստոնէութեան առաջին դարուց մէջ դպրութիւնք յոյժ ծաղկեալ էին յԱսորիս, և ասորի գրութեանց ընթերցումը մեծապէս ծաւալեալ էր ի Պարսկաստան, այդ խառնուրդդ այն ժամանակները եղած ըլլալու էր։ Բայց դժուարին է հաւատալ՝ որ Եդեսիոյ գրականութիւնը, որքան ալ ծաղկած ըլլար, առանց աշխարհակալութեան օգնութեան կարենար դրացի մեծ տէրութեան մը լեզուն ջնջել և գիր բարբառն նորա պաշտօնական և սրբազան մատենագրութեան լեզուն ընել. մանաւանդ երբ ի յուշ ածեմք՝ որ այդ դրացի տէրութիւնդ հնաւանդ դպրութեանց, կրօնի և սովորութեանց կարգէ դուրս նախանձախնդիր Սասանեան ինքնակալութիւնն էր։

Արձանագրութեանց քննութենէն կը հետեւի սակայն՝ թէ այդ սեմական արմատոց կիրառութիւնը առնչողական չէր. այս է՝ թէ պարսկական և սեմական համանիշք անխտիր կը գործածուէին իբարու տեղ մերթ ընդ մերթ, բաց ի մի քանի նախդիրներէ, շաղկապներէ և դերանուններէ, որոց պարսկերէնը այնքան քիչ կը հանդիպի՝ որ սոցա ուղղագրութիւնը մինչեւ ցայժմ անստոյգ է։ Այսու հանդերձ բահլաւիին կերպարանքը որչափ ալ սեմական ըլլայ, անուանց հոլովմունքը պարսկական են, ի բաց առեալ մէկ քանի հնագոյն Սասանեան (հնագիտաց Քաղդէա-պահլաւիկ կոչած) արձանագրութիւնքն, որոց մէջ յոգնակի ուղղականի և սեռականի ին վերջաւորութիւնը կը տեսնեմք փոխանակ պարսկական ա̂ն վերջաւորով. օրինակ իմն, «արքայից արքայ» ըսելու համար մալքի̂ն մալքա գրուած է. մինչ մնացած արձանագրութեանց մէջ առհասարակ կը գրուի մալքա̂ն մալքա, որպէս Եղիշեայ ատենը կ՚ըսէին եւս մոփգետան մոփգետ։ Նոյնպէս և սեմական բայից խոնարհական փոփոխմունքը երանեան են, ի բաց առնելով դարձեալ վերոյիշեալ մէկ քանի հնագոյն արձանագրութիւնքդ յորս այդ փոփոխմունքդ բնաւ նշանակեալ չեն։ Այդ մէկ քանի հնագոյն և մնացած համեմատաբար նոր արձանագրութեանց մէջ տեսնուած մասնական տարբերութիւնքը եթէ զանց առնեմք, պէտք է ընդունիլ՝ թէ սոցա ամենուն շարագրութիւնը և խօսից յօրինուածքը երանեան են։

Աստ կը գտնենք Պերսեպոլեայ աւերակաց մօտ Հաճիապատ գիւ-ղին մէջ՝ քարանձաւի մը բերանը գտնուած արձանագրութիւն մը որ տարբեր պարեխաց վրայ իրարու աննման պահլաւիկ նշանագրօք քանդակեալ է։ Ցայցանէ զմին Քաղդէա-պահլաւիկ կոչեցին հնա-գէտք, որովհետեւ սորա նշանագիրները յոյժ կը նմանին քաղդէա-կանին. միւսը սովորական Սասանեան արձանագրութեանց եւ դրա-մոց տառերով փորագրեալ է եւ քիչ կը տարբերի բահլաւի գրչա-գրաց տառերէն։ Քաղդէա-պահլաւիկ նշանագիրք 19 են, իսկ Սա-սանեան կոչուածները 18 պարզ եւ 1 բաղադրեալ. այս վերջնոցս շատերը յոյժ նման են հայկական տառից, բայց յաջէ ի ձախ կը գրուէին։ Երկար ա ձայնաւորը, ինչպէս եւ պ, կ, տ, ճ, խ, գ, դ, ք, մ, ն, ս, չ, ջ, ր բաղաձայններն յատուկ նշաններ ունին. վ նը-շանագիրը երկար ու եւ բ ալ կը կարդացուի. յ եւ ի̅ երկար, ինչ-պէս եւ լ եւ ր, փ եւ ֆ մէկմէկ հասարակ նշանագիր ունին։ Սուղ ձայնաւորները չեն գրուիր, ինչպէս արաբերէնի մէջ։ Քաղդէա-պահ-լաւիկ նշանագրաց վրայ չկարողացանք տեղեկութիւն մի տալ, չունենալով սոյն բառ բաւականի ճշգրիտ օրինակը։

Սասանեան-Պահլաւիկ. — Պակարաճի̂ զենմաճ յի̂ մազդայաճ

Քաղդէա-Պահլաւիկ։ — Քարդա̂մանի̂ զէնման յի̂ մազդայասն

պաճի̂ Շաճրու̂ճարի̂, մալքա̂ճ մալքա̂ Արիաճ ու Անի̂րաճ, մինօ̂-

ալահա̂ Շահի̂րու̂հարի̂, մալքի̂ն մալքա̂ Արեա̂ն վա Անա̂րեա̂ն, մինօ̂-

չիթրի̂ մին Եազդա̂ճ, պարմաճ մազդայաճ պակի̂ Արդախշադար

չիհար մին Եա̂զդան, պարի մազդայասն ալահա Արդախշադար

մալքա̂ճ մալքա̂ Արիա̂ճ, մինօ̂ չիթրի̂ մին Եազդա̂ճ, ճաբի պակի̂

մալքի̂ն մալքա̂ Արեա̂ն, մինօ̂ չիհար մին Եազդա̂ն, բու̂հարի̂ բու̂հար

Բաբա̂քի̂ մալքա̂, աֆաճ ամաղ զենմաճ խիրայա̂ շատիդուճ

պակ Բա̂բաք մալքա̂, վա ամադ լանդէնման խիրէրայա̂ շատի̂դ

ատինաճ յէմի̂նի̂ շադրատարա̂ճ վա պարպի̂դա̂ճ վա վաշարքա̂ճ վա

քատմադան խշադրատարի̂ն պարպիդա̂ն բադա̂ն վա

ա̂զա̂դա̂ճ շատիդուճ . . .

ա̂զա̂դա̂ն շատի̂դ . . .

«Պատուէրս այս է մազդեզն վեհ Շապուհի արքայից արքայի Արեաց և Անարեաց, ծնեալն հոգւով յԱստուծոյ, որդւոյ մազդեզն վեհի Արտաշրի, արքայից արքայի Արեաց, ծնեալն հոգւով յԱստուծոյ, թոռին վեհի Փափագայ արքայի։ Մեք յորժամ գայս նետս արձակեցաք, ի ներկայութեան աշխարհակալաց, զօրագլխաց, աւագաց և ազատաց արձակեցաք»։..

Բայց ի՛նչպէս ձեւացած էր այդպիսի լեզու մը, որոյ բառերը մեծաւ մասամբ սեմական և հիւսւածքը կամ քերականութիւնը եւրանեան էր։ Այդ դժուարին խնդիրը լուծելու ձեռնարկելէ յառաջ հարկաւոր կը դատինք պահլաւիկ գրչագրաց նշանագիրներուն վրայ եւս համառօտ տեղեկութիւն մի տալ։ Սոքա, որք տասն և չորս են թուով, ոչ միայն ամէն սեմական այբուբենից հասարակ պակասութիւններն ունին, այլ և ուրիշ թերութիւններ՝ որք պահլաւիկ գրութեանց սեփական են։ Շատ տառեր երեք չորս զանազան ձայներ կը բացատրեն, և այդ արդէն չփոթ և անորոշ գիրերը շատ անգամ խառն ձեւեր կը կազմեն՝ որք երբեմն տասն կամ տասնեւհինգ կերպով կրնան կարդացուիլ, և որոց ձայնը երբեմն պարզ տառի մը ձայնին նման է։ Վասն որոյ երբ բառի մը ճիշդ արտասանութիւնը ուրիշ միջոցներով կարելի չըլլայ հաստատել, սովորական տառից զօրութեամբ ամենադժուարին կ'ըլլայ քակելը։ Սուղ ձայնաւորք երբեք չեն գրուիր, ու ընթերցողը ունակութեամբ և ի մտաց պէտք է աւելցնէ. ի բաց առեալ բառից սկիզբը գտնուած ա ձայնաւորը որ միշտ կը գրուի, ինչպէս ամենայն սեմական լեզուաց մէջ։

Այդ սեմական արմատոց ընթերցման եղանակը և նշանակութիւնը գտնելէն բոլորովին յուսահատելու էին հնագէտք, եթէ հին ժամանակաց մէջ յօրինուած չըլլար պահլաւերենէ ի բազանդ բառարան մի, յորում մէն մի սեմական բառին առընթեր բազանդ կամ պարսկերէն համանիշը գրուած է։ Այդ բառարանից ձեռագիր օրինակաց մեծագոյն մասին մէջ՝ սեմական բառից աւանդական հնչման եղանակն ալ Աւեստայի՝ երբեմն ալ արաբացի տառերով ցուցուած ըլլալով, այդ կնճռոտ լեզուն կամ գրութեան ձեւը այսօր նիւթական մեծ դժուարութիւն մը չի յարուցաներ ոչ Փարսի և ոչ ալ օտարազգի հնագիտաց, բայց միայն յորժամ աւանդական նշանակութիւնը կամ ընթերցման եղանակը կասկածելի և տարակուսութեան կարօտ երեւի։ Բարեբախտաբար եւս Սասանեան արձանագրութեանց այբուբենքը, որք, ինչպէս ասացինք ի վերոյ, տասն և

ութ տառերէ կը բաղկանան, աւելի որոշ և անշփոթ են քան ձեռագրացը. ուստի սոցա շնորհիւ մարթ է եւս ճշդել շատ մը գրչագիր բառից հնչումը։

Տարակոյս չկայ ուրեմն, թէ Պարթևաց օրերը՝ եթէ ոչ աւելի եւս յառաջ՝ Պարսիկք սեմական այբուբենքն առած էին։ Արդ Պ. Հաւկ կը կարծէ՝ թէ սեմական նշանագրաց հետ սեմական շատ մը բառերու ամբողջ գրութեան ձեւերն ալ ընդունեցան. և թէպէտ գիտէին, ասէ, մէն մի նշանագրաց յատուկ ձայնը ու կըրնային սոքօք ամենայն պարսկերէն բառ գրել, բայց ստէպ գործածական սեմական բառից ձեւերն գծագրելով, պարսկերէն համանիշը կ'արտասանէին։ Այդ կարծեօք՝ Սասանեան արձանագրութեանց, դըրամոց և գրութեանց մէջ տեսնուած սեմական բառերը սոսկ գաղափարագիր կ'ըլլան։ Այդ գաղափարագրերը երբեք խիստ շատ եղած ըլլալու չեն. վասն զի մեր ձեռքը հասած բաւական մատենից մէջ նոցա թիւը հազիւ հազ չորս հարիւրի կը հասնի. բայց որովհետեւ ամենէն աւելի գործածելի բառերն են (ի բաց առնելով ըղկրօնական բառերս), բաւական գրչագրաց մէջ կիսէն աւելի տեղ բռնած են։ Ի հաստատութիւն՝ յառաջ կը բերէ Պ. Հաւկ՝ Ամմիանոս Մարկեղինոսի մէկ խօսքը. Կոստանդիոս կայսեր և Շապուհ երկրորդի մէջ (350ին) տեղի ունեցած պատերազմին պատմութիւնը ըրած ատենը՝ հռովմայեցի պատմագիրդ կը գրուցէ՝ թէ Պարսիկք սաանսաան և բիրօզեն կը կոչէին իրենց թագաւորը։ Շահանշահ և Պերոզ (յաղթող) իրանեան բառեր են։ Աւելի յայտ է, կը յաւելու Պ. Հաւկ, որ թէպէտ Շապհոյ երկրորդի արձանագրութեանց մէջ մալքան մալքա կը յորջորջի նա, Պարսիկք այդ բառերդ Շահանշահ կ'ընթեռնուին, բայց Բիրօզ կը գրէին ու կը հնչէին, որովհետեւ սորա սեմական համանիշը չկար։ Ամմիանոսէ 400 տարի յետոյ՝ արաբացի մատենագիրն Իպն Մուգաֆֆա ալ կ'ըսէ արդարեւ՝ թէ «Պարսիկք հազարի չափ բառերու համար յատուկ գրութեան ձեւ մի ունին, զոր զավարիշ (ուրիշ գրութեանց մէջ՝ հուզվարիշ կամ ճիզվարիշ[1]) կը կոչեն... օրինակ իմն՝ եթէ կօշդ «միս» գրել ուզեն, պիսրա կը գրեն՝ բայց կօշդ կ'ընթեռնուն. երբ նանն «հաց» ուզենան գրել,

1. Զավարիշ անունդ ոմանք ճիզվան-Աշար «լեզու Ասուրայ» բառից պաշտա-դումն, ոմանք ալ զիւզվարիտան «հնաւոյ» բայէ եկած կը համարին։

յաճախ կը գրեն և նաև կ'արտասանեն[1]։ Այն բառերը որ այդպիսի փոփոխութեան չեն կարօտիր, հնչուածին պէս կը գրուին»։

Ուշադրութեան արժանի է նաև՝ որ այժմ Փարսիք բահլաւի ձեռագիր մը կարդալու ատեննին սեմական բառերը երբեք չեն արտասաներ, այլ սոցա պարսկերէն համանիշը կ'ընթեռնուն. և ասոր համար առաջին գործերնին վերոյիշեալ բահլաւէ ի բազանդ բառագիրքը Թութակի պէս բերնուց սերտելն է։ Ասկէ պարտ է հետևցընել՝ թէ այդ սովորութիւնդ ի հնուց անտի աւանդութեամբ մնացած է, և թէ միջնադարեան Պարսիկք ալ նոյնպէս սովոր էին ընթեռնուլ. վասն զի եթէ այնպէս եղած չըլլար, արաբացի նշանագրաց գործածութեան սկսուած ատենը այդ նշանագրօք պարտէին գրուիլ սեմական բառերը, որով և արդի պարսկերէնի մէջ ալ պահուած կը լինէին, մինչ այժմ բնաւ գործածական չեն։

Այդ զարմանալի բայց արժանահաւատ վկայութեանց և իրողութեանց կարևորութիւնն ուրանալ կարելի չէ. ուստի հարկ է ընդունիլ՝ թէ Ալմամունի և Իբն Մուգաֆֆայի ժամանակի Պարսից՝ որպէս և այժմ Փարսիներուն համար՝ այդ սեմական բառերը սոսկ գաղափարագիր եղած են[2]։ Բայց խնդիր մի կը ծագի յայնժամ, որոյ պատասխանիք համոզիչ մեկնութիւն մի տալ. երբ Պ. Հաուկ և Պ. Ուէստ կը հաստատեն՝ թէ երանեան և սեմական համանիշք հեղինակին կամ օրինակողին ճաշակին կամ քմացը համեմատ շատ անգամ

1. Նաև և կուշդ երանեան՝ իսկ լամա և չարիա սեմական բառեր են, որ Քաղդէարէնի և Ասորերէնի մէջ կան. ասես lâmâ և Ն։ sariâ ի Տէսթուր Հօշանկճի ձեռնարկի. Old Pahlavi-Pazand Glossary. Bombay, 18 0։

2. Այժմ իսկ Ճարոնացիք գրութեան ձև մի ունին՝ զոր Yomi կամ Wá-Kun կ'անուանեն, և ըստ որում ճենացի բառեր և պարբերութիւններ կը գրեն, ու ասոնց համանիշ ճարոներէն բառերը և պարբերութիւնները կ'արտասանեն։ Ասորեստանեայք ևս իրենց բևեռագրաց մէջ շատ մը Աքքատ կամ հին Քաղդէացւոց լեզուաւ բառեր ի կիր առած են՝ որոց ասորերէնը կը հնչէին. և թէպէտ ասոնք ալ կրնային այդ աքքատ բառից ասորերէն համանիշները ձևակերպել բևեռագրօք, բայց միջնադարեան Պարսից նման-նա մանաւանդ այս վերջինքս Ասորեստանեայց հետևելով՝ լաւագոյն սեպեր են օտար լեզուի մը բառեր գծագրել իբրև գաղափարագիրս և անոնց վրայէն ընիկ լեզուաւ համանիշներն արտասանել։ Նինուէի աղիւսեայ գրատան մէջ գտնուեցաւ նոյն ինքն Ասորեստանեայց շինած բառգիրքը—ճիշդ նման բահլաւի-բազանդ բառագրոյն որոյ վերայ խօսեցանք—և յորում այդ գաղափարագիրներուդ իւրաքանչիւրին ձախ կողմը գրուած են բևեռագրօք՝ սոցա ձայնական ընթերցումը. և աջ կողմը ասորերէն համանիշը։ Lenormant. Langue primitive de la Chaldée, 1875. էջ 15 և 31։

անխտիր գործածուած են, երբ յայտ է՝ թէ այդ պահլաւիկ Նշանագրաց մարթ էր պարսկական բառը գրել, ինչո՞ւ համար այդքան կնճռոտ ու դժուար եղանակ մը ընտրեցին, ու փոխանակ շիտկէ շիտակ պարսկերէնը գրելու, օտար և անծանօթ լեզուի մը բառը կը գծագրէին, նորա պարսկական համանիշը արտասանելու համար։

Եթէ այդ երկու մեծանուն հնագէտաց կարծեաց վրայ Ներելի ըլլայ մեր կողմանէ ալ խորհրդածութիւն մի յաւելուլ, հիմն առնելով նոյն ինքն Հաւկի՝ Զանտ–բահլաւի բառագրոյն սկիզբը դրած երկար քննադատութիւնը, միանգամայն և նոյն հրատարակութեան մէջ Տէսթուր Հօշանկ Ճամասբի նախադրութիւնը, կարելի է ըսել՝ թէ այդ բահլաւին կամ պարթեւարէնը պարսկերէն լեզուն չէր որ սեմական բառեր ընդուներ էր, այլ Բաբելաստանի ասորերէնը, որ աղաւաղելով խառնուեր էր պարսկերէնի հետ, ինչպէս ասկէ քան երեսուն տարի յառաջ Կոստանդնուպօլսոյ Հայոց հայերէնը՝ Թուրքերէնի հետ։ Թէպէտ մեր հարց խօսած լեզուն շատ տաճկական բառ կը պարունակէր և շարադրութեան ձեւն ալ աւելի թուրքական էր, բայց յաճախ գործածելի անուանք և բայք և այլ մասունք բանի հայերէն էին։

Գիտեմք՝ թէ Աքեմենեան հարստութենէն յառաջ Միջագետաց և բուն Պարսկաստանի տէրք Ասորեստանեայք էին (1230–708 նախ քան զՔրիստոս), և թէ սոցա լեզուն ասորերէնը սեմական էր։ Այդ հինգ հարիւրամեայ իշխանութեան ժամանակ՝ ասորերէնը անշուշտ տիրող և պաշտօնական բարբառն էր Միջագետաց։ Բայց եօթներորդ դարուն սկիզբը իշխանութիւնը Մարաց և Պարսից անցնելով՝ պարսկերէնը պաշտօնական լեզու եղաւ ու ասորերէնը սկսաւ գերութեան նշանները կրել ու տակաւ առ տակաւ տիրող լեզուին հետ խառնուիլ։ Թէ նոյն ինքն Աքեմենեանց ժամանակը՝ պետութեան մէջ պարսկերէնի չափ գործածական ուրիշ մի կամ երկու լեզուներ կային, Դարեհի և Քսերքսեսի և նոցա յաջորդաց բեւեռագրաց գրեթէ միշտ երեք լեզուօք գրուած ըլլալն ապացոյց է[1]։

1. Թուկիդիդէս կը պատմէ՝ թէ Աթենացի Արիստիդէս զօրավարը Ստրիմոնի գետին մօտ Արտափեռն պարսկին հանդիպեր էր, որ՝ Արքայից արքային (Երկայնաձեռն Արտաշիսի) կողմանէ դեսպանութեամբ ի Լակեդեմոն կ'երթար 425 տարի նախ քան զՔրիստոս։ Արտափեռն յԱթէնս տարուեցաւ. ասորեստանեայց լեզուաւ նամակներ ունէր առ Սպարտացիս ուղղեալ, որոց պարունակութեանը հասու լինելու համար՝ Աթենացիք թարգմանել տուին. գրուած էր ի մէջ այլոց, թէ արքայից արքայն չէր հասկցած՝ թէ ինչ կ'ուզեն Լակեդեմոնա-

Այդ լեզուաց միայն սեմական ըլլալուն տարակոյս չկայ այսօր։ Իսկ որովհետեւ իշխանութիւնը Պարսից ձեռքն էր, բնական էր որ նոցա լեզուն աւելի ազնուական համարուելով՝ ամբողջ և անխառն ի կիր առնուէր. ասոր համար է՝ որ Աքեմենեան սեպաձեւ արձանագրութեանց պարսկերէն օրինակին մէջ մի միայն երանեան արմատներ կը գտնեմք։ Աքեմենեան հարստութեան մեր Հայկազանց ցեղին հետ Արբելայի պատերազմաւ բառնալէն ետքը (330 նախ քան զՔրիստոս) միջոց մը Սելեւկիացիք և աւելի ետքն ալ Պարթեւք յաջորդեցին։ Պարթեւք՝ որ հինգ դարուց չափ տիրապետեցին, օտար եկամուտ ազգ մի էին, որք իրենց սեփական ոչ մատենագրութիւն ոչ քաղաքականութիւն ունեցան։ Իսկ որովհետեւ Պարսից իրաւունքը յափշտակեր և զՏիզբոն մայր քաղաք ըրեր էին, չէին յորդորամիտ անարատ պահելու և մեծացնելու պարսկական լեզուն, կրօնքը և սովորութիւնքը, մանաւանդ թէ ամենայն պատճառ և շահ ունէին զայնս նուաստացնելու և խանգարելու. վասն որոյ արքունական լեզու ըրին Միջագետաց ռամկական բարբառը՝ որ պարսկերէնի հետ խառնուած ասորերէնն էր [1]։ Իսկ քանզի հպատակ այլեւայլ ազգաց ինքնորէնութեանց չէին դպեր և ամենեւին խնամ չէին տաներ զնոսա միացնելու և ի մի ձուլելու, տարակոյս չկայ որ պարսկերէնը շարունակեր էր զուտ և անխառն գործածուիլ բուն Պարսկաստանի կամ Ստահրի նահանգին մէջ։ Յետոյ երբ Արտաշրի առաջնոյ ձեռօք պարսիկ տարրը նորէն տիրող ազգն եղաւ (Քրիս-

ցեք, թէ մինչև ցայժմ իրեն ղրկուած դեսպանները իրարմէ տարբեր առաջարկութիւններ ըրած էին, և թէ դիտաւորութիւնին որոշ իմացնելու համար պարտէին պատգամաւորներ ընկերացնել Արտաւանի։ Գիրք Դ., գլուխ Ժ։

1. Այդ էր անշուշտ Ագաթանգեղոսի յիշած պարթեւարէնը. էջ 594 և 612։ — Bagh, ուստի և մերս «բագին», է բառ բահլաւի և նշանակէ՝ աստուած, բագին։ Սորա ածանցը կ'երեւի Սասանեան արձանագրութեանց մէջի պակի ածականն, որ կը թարգմանի «վեհ, դիւցական»։ Դիտելի է սակայն՝ որ Աւեստայի և Սանսքրիտի մէջ եւս կայ bagha իբր աստուած և բագին։ Ըստ վկայութեան Դիոն Կասսիոսի և Հերոդիանոսի՝ Հռովմայեցւոց և Պարթեւաց մէջ բանակցութիւնք յունարէն կ'ըլլային. և որովհետև պարթեւական արձանագրութիւնքն և դրամոց վերտառքն ալ յունարէն են, հարկ է որ աւագաց մէջ այդ լեզուն բաւական ծաւալած ըլլար։ Յովսեպոս սակայն իւր պատմութիւնը յունարէն չգրած, զայն ասորերէն լեզուաւ ի գիր էր առեր, իւր բազմաթիւ պարթեւ ընթերցողաց համար. յորմէ կրնանք հետեւցնել՝ թէ նոյն իսկ առաջին դարուն մէջ՝ ասորերէնը կամ քաղդէարէնը գլխաւոր բարբառն էր Պարթեւաստանի, որոյ վերջին թագաւորաց դրամոց վերտառութիւնքն ալ սեմական են, հաւանօրէն յունարէնին հետզհետէ մոռցուած և անհետացած ըլլալուն համար։

տարի 226 թուականին), պաշտօնական և գրական լեզուն այդ բաժլուին կամ պարթեւարէնը մնաց ժամանակ մը։ Այս կարծիքս այնքան աւելի հաւանութիւն կը գտնէ, որ Պարթեւաց մայրաքաղաքը Տիզբոն՝ Սասանեանց ալ Թագաւորանիստ ոստան եղաւ. վասն զի Եփրատայ և Տիգրիսի դաշտավայրքն տակաւին աւելի կարեւոր մասն էին պետութեան քան Ստահրի կամ Պերսեպոլեայ նահանգը։ Սակայն Սասանեանք մոգական օրինաց և պարսկական ազգային զօրութեամբը բարձրացեր ու տապալեր էին զՊարթեւս, ու ամենայն ջանք կ՚ընէին նախկին Աքեմենեանց իշխանութիւնը և գրութիւնը վերահաստատելու. հիմայ որ նիւթական ոյժը Պարսից անցեր էր, բնական էր որ բուն Պարսկաստանի մէջ պահուած պարսկերէնն ալ ուրիշ լեզուաց նկատմամբ ազնուանայր ու պաշտօնական բարբառ ըլլար. ինչպէս և մոգական օրէնքը վանեցին ու ջնջեցին Պարթեւաց ատենը մտած յունական դիցապաշտութիւնը և սովորութիւնքը, ինչպէս որ ալ աւելի վերջերս Ֆիրտէվսին իւր մեծահատոր դիւցազներգութիւնը ջանացեր և յաջողեր էր ի գլուխ հանել՝ առանց գործածելու արաբական բառեր՝ որք մուտ գտած էին Մահմետականութենէ ետքը։ Այդ յեղափոխութեանդ կատարումը Արտաշրի և որդւոյն՝ Շապհոյ առաջնոյ պէս երկու աչեղ ինքնակալաց ջանից կարօտ էր. ասոր համար է գուցէ՝ որ երրորդ դարուն վերջին տարիներէն կը սկսին արձանագրութիւնք աւելի պարսկական կերպարանք մի առնուլ[1]։ Բայց նշանագիրք նոյնը մնացեր էին՝ խառնակ, չփոթ և խրթին. բառ մը՝ աւելի զայն բաղկացնող գրերուն ընդհանուր երեւութէն աչաց վարժութեամբ կը կարդացուէր՝ քան իւրաքանչիւր տառին անհատական զօրութեամբ, ինչպէս նուազ աստիճանի մէջ սովոր ենք ընթեռնուլ այսօր թուրքական ձեռագիր շատ բառեր. ու այդ անորոշ գրերու կամ նշաններու խմբիկները մէկմէկ գաղափարագիր եղան Պարսից նկատմամբ, մինչ հաւանօրէն դեռ նշանագիր էին անոնց համար՝ որք աղաւաղեալ ասորերէնը միայն գիտէին, ինչպէս որ մի եւ նոյն թուանշանք յիւրաքանչիւր ազգէ տարբեր տարբեր կը կարդացուին։ Հետզհետէ ասորերէնի նուազելովը,

1. Թէպէտ բուն Պարսք նահանգին մէջ գտնուած Սասանեան արձանագրութիւնքն բաւական են, մարթ է սակայն պնդել՝ թէ այդ գրութեանց սեմական բառերը նոյն ինքն Արտաշրի և Շապհոյ օրերը սկսած էին գաղափարագիր ըլլալ, գոնեա Ստախր գաւառին մէջ. վասն զի դժուարին է հաւատալ՝ որ Պերսեպոլեայ մէջ խօսուած լեզուն պարսկերենով խառնուած Միջագետաց ասորերէնն եղած ըլլայ։

այբուբենքն պարսկերէնի միայն ծառայեցին, ու գաղափարագիրերն ալ պահուեցան պարսկերէն համանիշը միայն ցուցնելու համար։

Այդ գրութեամբ բահլաւի գրութեանց սեմական բառերն Պարթևաց օրերը կը հնչուէին որպէս և գրուած էին. և աւելի վերջերը միայն գաղափարագիր եղան։

## Ե

Ի վերոյ ըսինք՝ թէ փարսիք Աւեստայի բահլաւի թարգմանութեանց զանտ անունը կու տան, և թէ այդ թարգմանութեանց վրայ զուտ պարսկերէն լեզուաւ յաւելեալ լուսաբանութեանց ալ Բազանտ կ'ըսեն։ Բազանտ անունդ կը տրուի ևս Սասանեանց ժամանակի գրութեանց, երբ տեքստ Աւեստայի և կամ արդի պարսկական նշանագրօք գրուելով՝ ամենևին սեմական բառեր չպարունակեն ու անոնց տեղ պարսկերէն համանիշքն գործածուած ըլլան. միանգամայն և բահլաւի գրուածոց այն մասին որ սեմական չէ, ինչպէս և ի մասնաւորի բահլաւի արմատոց համանիշ պարսկերէն բառից։ Արդ՝ բազանտ բառերը կը գրուին բահլաւի նշանագրօք՝ եթէ պահլաւիկ արձանագրութեանց մէջ ընդմիջեալ են. և Աւեստայի նշանագրօք՝ եթէ ամբողջ գրութիւնդ այդ նշանագրօք գրուած է, ու այն ատեն ձեռագիր օրինակը բազանտ կ'ըսուի։ Են և բազանտ օրինակք այժմեան պարսկական տառիւք գրեալ. սոցա լեզուն Ֆիրտուսիի պարսկերէնէն այնու միայն կը տարբերի, որ հնագոյն բառեր և ձևեր աւելի կը պարունակէ։

Այդ բազանտ կոչուած բարբառն է Եղիշեայ դարուն պարսկերէնը. վասն որոյ մեր ոսկեդարեան հայերէնը բազանտի հետ շատ աւելի սերտ նմանութիւններ ունի՝ քան արդի պարսկերէնին հետ. երկու լեզուացդ հասարակ եղող անունները, որ այժմեան փարսիի մէջ քիչ շատ հեռացած են հայկական ձևէն, բազանտ գրութեանց մէջ հայերէններէն գրեթէ ամենևին չեն տարբերիր. նոյն իսկ պարսկական յատուկ անուանք այնպէս հնչուած են, որպէս կը գտնենք մեր հինգերորդ դարու հեղինակաց մէջ։ Հայերէնի գիտութիւնը շատ անգամ աւելի նպաստամատոյց կրնայ լինել բահլաւի և բազանտ գրութիւնները հասկնալու համար՝ քան պարսկերէնի հնագոյն և նորագոյն ձևերը։

Ահաւասիկ Արտաշրի Ասաշնոյ նուիրեալ Քարնամաք անուն բահլաւի մատենէն հատուած մը՝ որոյ դէմ առ դէմ կը դնենք բազանտ օրինակը ըստ Ներիոսանկի ուղղագրութեան։ Նօտրգիր բառերը սեմական են. վերին տողը բահլաւի է՝ ինչպէս գրած էր Արտաշիր. իսկ վարինը կը ցուցնէ՝ թէ ինչպէս կը կարդացուէր ու կը հնչուէր, կամ ինչպէս պէտք էր գրուիլ՝ եթէ ամբողջապէս պարսկերէն կամ բազանտ լինէր։

Բահլաւի․ Բա̂րաք ամադաշ Նա̂մաք տի̂տ անտո̂ւհքուն յեհի̂մունեն,

Բազանտ․ Բա̂րաք քաշ Նա̂մա տի̂տ անտուհկին պուտ,

ափաշ բալա̂ն բասուխô վալ Արտախշի̂ր քարտ նիբիշդ աի̂կ․ լաք յա̂

վաշ բա բասուխ ô Արտաշի̂ր քարտ նաւաշդ քու․ թô նէ

տանաքեհի̂շ քարտ . . . . . . . վա լաք պեհմափշըմաւ տա̂նէ̂տա

տա̂նա̂իհա̂ քարտ . . . . . . . Ու թô քատ տա̂նաէ̂

աի̂կ Արտաւա̂ն մառամ լի վալաք վա քապեհտա̂ն աեշուդա̂-ի

քու Արտաւան ասար մէն ու թô ու վասա̂ն մարտում-ի

տէն ճէ̂հա̂ն բաւան դանու վա խայա վա չապուեն վա խվատաք

անտար ճէ̂հա̄ բա դա̂ն ու ճա̂ն ու խի̂ր ու գա̂սդա

քա̂մքա̂րդար բա̂տախշա̂յի աի̂դօ։

քա̂մքա̂րդար պա̂տիշահ հասդ։

Որ թարգմանի․ «Փափագ յորժամ զնամակն եսես, մասյոյդ եղեւ (անդոհեցաւ)․ և ի պատասխանի առ Արտաշիր արար զգրութիւնս զայս․ Դու ոչ իմաստութեամբ գործեցեր... Եւ դու քաջ գիտես զի Արտաւան ի վերայ իմ և քո և բազում մարդկան աշխարհիս, նկատմամբ մարմնոյ, հոգւոյ, ընչից և վաստակոց բանաւոր իշխան (բդեաշխ) մի է»։

Դիտելի է՝ թէ բահլաւի օրինակին տիտ, քարտ, նիբիշդ և այլ բառերը բազանտ են, թէպէտեւ դոցա սեմական համանիշներն ալ կան և այլուր փոխան սոցա ի կիր առեալ են, ինչպէս խատիդուեն, վատուեն, եքքիպուեն։

# Չ

Պարսից կրօնական գրութիւնք շատ աւելի ընդարձակ ըլլալու էին քան ինչ որ մեզ հասած է։ Թէոպոմպոս Քրիստոսէ 300 տարի յառաջ և Զմիւռնացին Հերմիպպոս իմաստասէրը 250 տարի յառաջ, ծանօթացուցեր էին զնոսա Հելլենաց։ Սոցա երկուցունց եւս երկասիրութիւնքը կորուսեալ են այժմ. բայց ըստ վկայութեան Պլինեայ[1] Հերմիպպոս «Յաղագս մոգուց» անուն յատուկ գրութեան մը մէջ զրադաշտական մատենից վարդապետութիւնքը երկարօրէն և մի առ մի բացատրեր ու նոցա պարունակութիւնը երկու միլիոն տողի հասներ էր։ Ասկէ մարթ է հետեւցնել՝ թէ Հերմիպպոս իւր քննութիւնները բնագրաց վրայէն կատարեր էր, վասն որոյ իր երկասիրութեանը կորուստը շատ ցաւալի է։ Արաբացի պատմիչ մը՝ Աբուճաֆիր Աթթավարիի վկայութեան ալ նայելով՝ Զրադաշտական օրէնքն 1200 հորթի կաշւոյ վրայ գրուած էին։ Ձեռուընիս հասած Տինքարտ, Արտավիրաֆնամակ, Վաճառքարտ-Տինի անուն Սասանեանց ժամանակի բահլաւի գրոց և Պարսից յայմաւուրաց՝ Րիվայէթաց վկայութենէն ալ յայտ է՝ թէ Աւեստան կը բաժանէր ի 21 Նասքս կամ գիրս. յորոց զՎենտիտատն ունինք այժմ ամբողջ։ Կ'երեւի թէ Յասնայք ալ Աթօթ-Յաշտ կոչեալ միւս գիրք մը կը կազմէին։ Մնացածներէն ալ կան հատուկտորք, բայց անոնց նիւթոց ցուցակը կամ համառօտութիւնը գտնեմք վերոյգրեալ պահլաւիկ գրոց շնորհիւ։ Դոցա նայելով՝ Աւեստայի մէջ պիտի գտնուէին ոչ միայն հաւատոյ և բարոյական պատուիրանք, այլ և ստեղծագործութեան, աստեղագիտութեան, բժշկութեան, աշխարհագրութեան, հողագործութեան, բուսաբանութեան, փիլիսոփայութեան, աշխարհավարութեան վերաբերեալ սկզբունք և վարդապետութիւնք. միով բանիւ՝ նախնի Պարսից ամէն տեսակ ծանօթութիւնքը և գիտութիւնքը։ Ըստ Տինքարտի, այդ մատենից կրկին օրինակքն Վշտասպեան Դարեհի օրէն ի վեր պաշտօնապէս կը պահուէին, մին Պերսեպօլեայ դիւանատան և միւսն ալ Շապիկանի արքունի գանձատան մէջ. թէ առաջինը

1. Պատմ. բնակ. Լ. 3։

հրոյ ճարակ տալով էր յիւրումկէն Աղեքսանդրէ՝ երբ սա քանդեաց զքաղաքամայրն Արեաց, և թէ միւսը նոյն արշաւանաց ատենը Յունաց ձեռքն ընկած էր, զոր փոխեցին յիւրեանց լեզուն։ Արտավիրաֆնամաքի մէջ մէկ օրինակ մը միայն կը յիշատակի, որ կը պահուէր ի գրատանն Ստախրի։ Դիւրին է համաձայնել բահլաւի մատենից տուած տեղեկութիւնքը Գիոդորոսի և ուրիշ հելլէն պատմագրաց այն խօսքերուն հետ, թէ մեծն Աղեքսանդր՝ զմրեալ ի գինւոյ, Թայիս անուն սիրուհւոյն թելադրութեամբ և ի վրէժ Քսերքսեսի յունական տաճարները կործանելուն, այրել տուաւ զմիջնաբերդն և զապարանս Պերսեպօլեայ. ինչպէս և Հերմիպպեայ պարսկական գենին վրայօք ըրած բազմաքնին և մեծաշխատ երկասիրութիւնը, որում վկայեն Պլինիոս, Պլուտարքոս և Գիոգինէս Լայերտացին, կարծել կու տան մեզ՝ թէ զրադաշտական մատենից ամբողջ օրինակը նորա ձեռքն անցած էր։

Բայց այդ սրբազան գրութեանց մասնական օրինակներ ալ կային այլեւայլ քաղաքաց մէջ՝ դատաւորաց, մոգուց և այլ առանձնականաց քով։ Հինգ հարիւր յիսուն տարւոյ օտարազգի բռնակալութենէ և մերթ ընդ մերթ անիշխանութենէ յետոյ, ահա այդ օրինակներդ ժողովել տուաւ Սասանեանն Արտաշիր։ Եւ թէպէտ նմա կարելի չէր եղած զասա ամբողջապէս հաւաքել, բայց և այնպէս մէն մի ճառքի պարունակութեանց և այժմ կորուսեալ գլխոց վրայօք Արտաշրի ժամանակակից հեղինակաց տուած ծանօթութեանց նայելով, պէտք է որ 21 ճառքին ալ մեծու մասամբ գտնուած ըլլան և յետոյ մազդեզականութեան ատեն բնաջինջ եղած ըլլան, բաց յայն գրքերէն և հատուածներէն՝ որք աղօթից և կրօնական պաշտամանց կը յարաբերէին, և որոց օրինակներն յոյժ բազմաթիւ էին ժողովրդեան մէջ։ Այն եղաւ Աւեստայի ինչ որ կ'ըլլար Աստուածաշունչ գրոց՝ եթէ սոյն ժամագրոց և աղօթամատուցաց մէջ անցած մասունքը միայն ունենայինք։

Այդ ահագին մատենագրութիւնդ որ Աղեքսանդրի օրը կար, գոնեա Քրիստոսէ 400 ամօք յառաջ ձեւացած և լրացած ըլլալու էր։ Կարելի չէ սակայն՝ որ մէկ մարդոյ և մէկ դարու գործն ըլլայ։ Ինչպէս որ ըսինք ի վերոյ, այդ քսան և մէկ գրքէդ Վէնտիտատը ամբողջ մեզ հասած է։ Սակայն Փարսիներուն գործածած Աւեստան Վենտիտատէ զատ ուրիշ գրքեր ալ կը պարունակէ, որք են՝ Եասնա, զոր աւելի ճշդութեամբ Յասնա պարտէինք գրել հայերէն. Վիսպարատ. Եաշդք՝ կամ նախնի հայկական հնչմամբ Յաշտք՝

և կարճ շարականներ և աղօթներ, որք կը կոչին Նիյայիշ, Աֆրինկան, Գահ, Սիրօզահ։ Յայսցանէ Եասնա և Վիսպարատ առանձին գիրք կը թուին լինել. Մնացածները՝ այլևայլ Նասքից բեկորք։ Եասնան՝ որ զրադաշտական գրոց հնագոյնն է, Զենտ-Աւեստայի նկատմամբ այն դիրքն ունի, ինչ դիրք որ բռնած են Մովսիսական մատեանք ընդհանուր Աստուածաշունչ գրոց մէջ, կամ Վետան՝ Բրահմանաց մատենագրութեան մէջ։

## Է

Եասնա[1] սակ աղօթք՝ նիյայիշ չի նշանակեր, այլ զոհական արարողութեանց շարականներ հանդերձ զոհագործութեամբ։ Այդ մազդէական պատարագամատուցիդ հանդիսաւոր ընթերցման ատենը կը կատարուին այլևայլ արարողութիւնք, յորս կը գործածեն օրհնեալ ջուր (զաօթրա կամ զօւր). տեսակ մը հաց (դարնիդի), կոգի, կաթ, միս (միազդա)[2], Հօմայի և Նռնենւոյ ոստք, Հօմայէ քամեալ յոյզ, եզան վարս (վարասա) և սիզաւ կապեալ խուրձ մի ոստոց, այս է բարսմունք (պարէսմա, այժմ պարսօմ)։ Ասոնք բոլոր նուիրագործութեան դեռ չսկսուած՝ պատրաստ պիտի ըլլան մարմարեայ սեղանոյ մը վրայ դէմ յանդիման Ցասկաճ կոչուած մոխրանոցին[3]։

Եասնայի մէջ ևս երկու գլխաւոր մասունք նշմարելի են. մին՝ Կաթայք, որք աւելի հնագոյն են և լեզուաւ կը տարբերին մնացած մասէն. միւսն՝ Եասնա հափթանհաիթի, այս է «Եասնա եօթնագլխեան», և այլևայլ Եասնայք, որոց լեզուն Վենտիտատինին նման է, վասն որոյ Կաթայից նկատմամբ՝ ժամանակաւ կրսերագոյն։

Կաթայք կամ «Ա-ղօթք» բուն Զրադաշտայ գրութիւնքն են, մինչ մնացեալ Եասնայք՝ ինչպէս և քսան և մէկ Նասքքն՝ նորա աշակերտաց կամ հետագայ դարուց շարադրութիւնք։ Կաթայք, յո-

1. Եասնա (հայ. յազումն) կը բաղկանայ եազ կամ եաս արմատէ, որ է «պաշտել աղօթիւք և զոհիւք», և նա մասնկէ՝ որով կը կազմուին վերացեալ անուանք, ինչպէս հայերէնի մէջ ումն վերջաւորութեամբ։

2. Միյազդա՝ է «յազածոյ միս» եզան կամ կովու։

3. Ամէն մեհենի կամ Դարիմիհրի մէջ երկու մոխրանոց կայ. մին՝ Ցասկաճ, այս է սովորական կրակ Խղէշնէխանէի (կամ ով է տան). միւսն Սրբազան կրակ՝ Ատարան կամ Պէհրամ. այս վերջինս Եղիշէի մէջ «Վռամական կրակ» և Պունտահիշի մէջ Վահռամ Արաշ կոչուած է, և որ կարգէ դուրս խնամօք վառ կը պահուի։

րոց միայն հինգ ձեռագրներ հասած են՝ Կաթա Ոսկեվանքի, Կաթա Ուշգաւանքի, Սեւնգա-Մախին, Վօձոյ-Խաչաբերմ, Վանիչօղոկի, չափեալ և տնտուեալ քերթուածք են և նմանին յոյժ վետական երգոց։ Ցանգ չունին բնաւ. վանկերը միայն կը համրուին, թէպէտ տողս թիւը ճշդիւ չպահուիր միշտ, և երբեմն կ'աւելնայ կամ կը պակասի։ Առաջին կաթային իւրաքանչիւր տունը կը բաղկանայ ի քառատուն և ութ տողից, բաժանեալ յերիս տողս վեշտասանտեանս. մէն մի տողոյ առաջին եօթներորդ վանկին վերջը կը հանգչի ձայնը, որով երկրորդ անգամը կը լինի ինննտնեան։ Երկրորդ կաթային մէն մի տունը հինգ տող ունի, և մէն մի տող մետասան տառ։ Չորրորդին ամէն մէկ տունը երեք տող կամ վեց անգամ կը պարունակէ, իւրաքանչիւր անգամ յեօթն տողից բաղկացեալ, որով վանկերուն համագումար թիւը կ'ըլլայ քառասուն և երկու [1]։

Կաթայից իմաստները փիլիսոփայական և բնազանցական են։ Զոսա Զարաթուշտրա լսեր էր, երբ մօք յափշտակեալ յերկինս՝ հրեշտակաց պար մը կ'երգէր իւր մտաց ականջին։ Իւր յաջորդները ալ կրեցին Զրադաշտ անունը՝ որ Պարսից քահանայապետաց տիտղոսն եղաւ. բայց աստուածային յայտնութիւնք միայն մեծին Զրադաշտայ շնորհեցան, որոյ սեփական անունն է Սպիտամա։ Կաթայից ուշի ուշով ընթերցումը և Աւեստայի մնացեալ գրոց հետ բաղդատութիւն մը բաւական են համոզելու զմեզ՝ թէ նոքա բուն իսկ մեծի մարգարէին գործն են։ Բնագրին ըրած տպաւորութիւնը մարթ է եւս հաստատել արտաքին ապացոյցներով. մինչ Զէնտ-Աւեստայի ուրիշ գրոց համար տեղ մի յիշատակութիւն մը չկայ Զրադաշտայ երկասիրութիւնքն եղած ըլլալուն, Սրօշ Եաշդին մէջ բացորոշ կերպով գրուցուած է՝ թէ Կաթայք նորա շարադրութիւնն են։ Մինչդեռ մնացեալ գրոց մէջ Զրադաշտ երրորդ դէմքով միշտ կը խօսի կամ կը գործէ, կամ երբեմն ալ իբրեւ աստուածացեալ էակ մը կը ներկայանայ, Կաթայից մէջ առաջին դիմօք կը բարբառի ու անձամբ կու գայ կատարել այն մեծ պաշտօնը որ նմա յանձնուեր էր յերկնուստ։

Սպիտամայ մեծ արդիւնքն է մերժել հնդկական բազմաստուածութիւնը ու հաւատալ միայնոյ Աստուծոյ՝ որ է Ահուրամազդա կամ Մազդա, որոյ նշանակն և արարածն է հուրը։

1. Վենտիտատի մէջ ալ տեղ տեղ նշմարելի է երկայն հատուածներ որք չափեալ են. մէն մի պարբերութիւն 16 վանկէ կը բաղկանայ, որք կը բաժանին յերկուս հաւասար մասունս ութավանկ կամ չորստնեան։

Մեծն Զրադաշտ սրբազան կրակին յանդիման կայնած՝ մեծախումբ ամբոխի մը կը խօսէր այսպէս.

« Ասացից ձեզ որ աստ ժողովեալքդ էք, զիմաստութիւն բանս Մազդայ, զփառաբանութիւնս Ահուրայ և զերգս բարի Ոգւոյն. ճշմարտութիւնք երկնահրաշք, զորս աչս տեսանեմ զի ի սուրբ բոցոյդ ի վեր գան։

Ի սկզբանէ էին երկուորեակք, ոգիք կրկին, որիշ որիշ զօրութեամբ. սոքա են բարի և չար՝ ի խորհուրդս, ի բանս, և ի գործս. ընտրեցէք զմին յերկոցունց յայդցանէ. եղերուք բարի, ոչ չար։

Երկոքին միացեալ՝ արարին (զնիւթական աշխարհս). մին զգոյութիւն և միւսն զչգոյութիւն։ Ուրացողաց (դիւապաշտից կամ բազմաստուածից) կեանքն եղիցի դժնեայ. երջանկութիւն՝ բաժին այնորիկ որ հաւատայ ճշմարտին Աստուծոյ։

Ոչ կարէք երկուց միանգամայն ծառայել. մինչ ի վարանի կայք, մի ոմն ի դիւաց որուն հետ կը մարտնչիմք, պիտի պաշարէ զձեզ և չչէ յունկն ձեր խորհուրդս չարս (աքէմ-մանօ[1]), և յայնժամ դեւք կը յարձակին ի վերայ երկոցունց կենաց (հոգւոյ եւ մարմնոյ)» ։

Զարմանալի է որ դեւ կամ տեվա կոչուածն Պրահմանեան գրոց պաշտելի աստուածքն են, յունական տեոս կամ զեւս և հայկական « դիք »[2]։ Մինչ Զրադաշտ հնդկական աստուածութիւնները կ'իջեցընէր ի կարգս այսոց՝ իբրեւ ամենայն պղծութեանց և չարեաց պատճառ, Հնդիկք ալ իրենց աստուածոց հակառակող էակները ասուրա[3] կը յորջորջէին։

Մեծ կրօնական կռիւ մը տեղի ունեցեր էր Արիական երկու ցեղերուն մէջ։ Վենտիտատի առաջին երկու գլխոց քննութենէն կը հետեւի՝ թէ Արիք հիւսիսային ցուրտ երկրէ մը արշաւեր էին դէպ ի հարաւ ու գրաւեր զաշխարհն Բէնճապ։ Անդ աստանդական կենօք և աւազակութեամբ և հազիւ հազ անօթութենէ չմեռնելու չափ գործելով զերկիր, կ'ապրէին բազում դարեր. այդ վիճակի մէջ կը գտնեմք զնոսա Վեդայի հնագոյն ժամանակաց մէջ։ Բայց մէջեր-

1. Աքէմ-մանօ՝ « չար իմացումն », վերացական անուն մի կը թուի, որով Զրադաշտ կը բացատրէ զչգոյութիւն՝ պատճառ ամենայն չարի։

2. Դիւ, սեռական Դիւայ, որ է Դիոս՝ հայրն աստուածոց. իսկ ընդհանրապէս ասացեալ դիք=տէվաս։

3. Ասուր, յոգն. Ասուրա, ասուրեա, և այլն, պատասխանէ ըստ ամենայնի մերում զօր, զօրեմ, զօրաւորիլ բառից։ Ասուրա նշանակէ առ Հնդիկս ունող զօրութեան, գոլով սկզբնականն ա մասն ենթակայական. ասուրա ասացին երկնային զօրութեանց անձնաւորելոց՝ աստուածացելոց, և Ահուրա Մազդա իսկ՝ յԱսուրա ձայնէ։ Բայց երբ զսկզբնականն ա ժխտական մասն համարեցան, յայնժամ միայն զասուրա անզօր՝ անաստուած՝ անլոյս՝ հակառակող լուսոյ և ճշմարտութեան՝ խաւար՝ ոգի չար՝ և հակառակորդ ասացին։

նէն ցեղ մը, որ յետոյ Երանեան կոչեցաւ, ձանձրանալով այդ թափառական կենցաղէդ, Բակտրիոյ բարձրաւանդակն անցեր, ու թողլով զհայրենի խաշնարած բարքը, հողագործութեամբ սկսեր էր պարապիլ ու հաստատ բնակութիւններ հիմնել։ Այդ անջատումդ անշուշտ մեծ զայրոյթ յարուցեր էր երկու ցեղերուն մէջ։ Մինչ Բակտրիոյ գաղթականք օրէ օր կը զարգանային բարօրութեամբ և ընչիւք կը ճոխանային, Բէնճապ մնացողներուն նախանձը և ագահութիւնը կը գրգռուէր, որք յաջող ասպատակութեամբք և աւարառութեամբք շարունակ կը վնասէին նորահաստատ գաղթականութեան։ Քաղաքական երկպառակութենէ և ատելութենէ յառաջ եկաւ, որպէս սովոր է, կրօնական պառակտումը։ Արիք՝ որք հետզհետէ կը սփռէին ի Հնդկաստան, իրենց յաղթանակները աստուածոց (տեվայից) օգնութեանը, մանաւանդ Սոմայի զոհագործութեան գաղտնի և դիւթական արարողութեանց կ'ընծայէին, ու նովաւ կը պարծէին։ Ցափշտակութեանց և աւազակութեանց քաջալերիչ և պաշտպան դիքն՝ Բակտրիացոց համար չէին կրնար ճշմարիտ աստուած լինել, այլ աւերիչ և ապականարար դեւք։ Վասն որոյ ուրացան և մերժեցին զհայրենի կրօնս ու Ահուրայ միայն պաշտօն մատուցին։

Ե՞րբ և որո՞յ ձեռամբ կատարեցաւ այդ մեծ խռովութիւնդ, անշուշտ ոչ մէկ անձի կարողութիւնը և ոչ ալ միոյ մարդոյ կեանքը բաւական էր։ Ոշխանցօ կոչուած կրակաքուրմք ահա նոյն ժամանակները փայլեցան. Նոքա արկին զառաջին հիմունս Ահուրայեան կամ հողագործական կրօնից, որով և անհաշտ թշնամութիւն ընդ մէջ երկուց ցեղից, և պատրաստեցին զճանապարհ վասն Սպիտամայ Զրադաշտայ։ Սորա արդիւնքը սակայն նուազ չէ ուրիշներէ ետքը գալուն համար։ Նա եղեւ օրէնսդիր երանեան ազգին, շինեալ և կազմեալ զԴենիմազդէզն, խառնելով և ձուլելով ի նմա նախնի կրակաքրմաց ահուրայեան կրօնը։ Էր ինքն եւս Ոշխանցոներուն կարգէն, որովհետեւ ինչպէս տեսանք, Ահուրամազդայ պատգամները կրակի մէջէն կ'ընդունէր։

Դժուարին է սակայն ճշդել զդարն յորում ապրեցաւ Զրադաշտ։ Քսանթոս Լիւդացին, որ զնա յիշատակող յոյն հեղինակաց երիցագոյնն է (470 տարի յառաջ քան զՔրիստոս), Իլիոնի պատերազմէն 600 տարի յառաջ կը դնէ, այս է 1800 տարի նախ քան զթուական փրկչին։ Ըստ Արիստոտելի՝ նոյն պատերազմէն 5000 տարի յառաջ էր։ Փարսիք զնա Դարեհի հօրը Վշտասպայ ժամանակակից կը համարին (521–486)։ Արդարեւ Զրադաշտայ օրերը եղեր էր Քաւա Վիշդասպա անուն թագաւոր մը՝ որ նորա քա-

բողութիւնը ընդունելի էր. բայց կարելի չէ որ այդ Վիշտասպան Դարեհի հայրն ըլլայ[1]։ Ագաթիաս յոյն պատմագիրն՝ որ Քրիստոսէ 500 տարի ետքը կը գրէ, կը վկայէ մեզ թէ Սասանեանց ժամանակն անգամ Պարսիկք չէին կարող որոշելու թէ ո՛ր դարու կը պատկանէր Զրադաշտ. սորա Վշտասբ անուն արքայի մը ժամանակակից ըլլալը կ'երկրորդէին, կ'ըսէ, առանց գիտնալու՝ թէ Վշտասպդ Դարեհի՞ էր հայր թէ ուրիշ Վշտասպ մը։ Բայց որովհետեւ Զրադաշտայ հարազատ գրութիւնքը կամ վարդապետութիւնքը հնագոյն մասն են Զէնտ-Աւեստայի, որ արդէն՝ ինչպէս տեսանք՝ Քրիստոսէ 400 տարի յառաջ լրացեր էր, և որովհետեւ այդպիսի կրօնական մատենագրութեանց կազմութիւնը դարերու կը կարօտի, պարտ է զնա դնել Քրիստոսէ 1000 տարի յառաջ դնել, եթէ ոչ մէկ երկու դար եւս հնագոյն։

Այդ պատմական խորհրդածութիւններէդ յետոյ դառնանք վերստին Կաթայից քննութեան։

Մազտա կը պատուիրէ Զրադաշտայ մասնաւոր կերպով և կը պահանջէ իբրեւ կրօնական պարտաւորութիւն զհողագործութիւն և զսեփականութիւն ընչից և ստացուածոց։

« Երանի՜ անոր, կ'ըսէ Զրադաշտ ուրիշ Կաթայի մը մէջ, որում Ահուրամազդա շնորհէ զառողջութիւն և զանմահութիւն. Վասն որոյ աղաչեմ զքեզ. եղի՛ւ թէ բարեպաշտութեան հրեշտակիդ՝ Արմաիդիի միջոցաւ տայիր ինձ զերջանկութիւն, զճշմարիտ բարիս և զուղիղ միտս։

« Հաւատամ զի դու ես ամենաբարի և աղբիւր լուսոյ վասն աշխարհի. ամենայն ոք պիտի ընտրէ զքեզ (հաւատոյ ի քեզ) իր-

1. Պիհիստունի արձանագրութեան վերջին տունն ալ կ'եղծանէ այն կարծիքը՝ թէ Զրադաշտ ժամանակակից էր Վշտասպեան Դարեհի։ Այդ տունդ բաց ի մէկ բառէ ջնջուած է պարսկական մասին մէջ. բայց մարականն ամբողջովին ունի զայն, զոր Պ. Oppert այսպէս կը թարգմանէ. «Et Darius le roi dit : Pаr la grâce d'Ormazd, j'ai fa't une collection de tex'es ailleurs en langue arienne qui autrefois n'existait pas. Et j'ai fait un texte de l'Abasta, et un commentaire de l'Abasta, et le Zend et les t:aductions. Et ce fut écrit et je le promulguai en entier ; puis je rétablis l'ancien livre dans tous les pays, et les peuples le reconnurent ». Տես « Le peuple et la langue des Mèdes » par Jules Oppert. 1879. էջ 155 և 186։ — Դարեհ ուրեմն ըրեր էր ինչ որ իրմէ եօթն ու կէս դար ետքը ըրաւ Արտաշիր Սասանեան. ցրուած կրօնական մատեանքը հաւաքել, կարգադրել, թարգմանել և լուսաբանել տալ։

ըսէ աղբիւր լուսոյ, գքեզ ո՜վ Մազդա, ամենաբարերար ոգի, դու արարեր զամենայն իրս ճշմարիտս և զբարիս՝ քո բարի մտացդ զօրութեամբ, և խոստանաս մեզ որ հաւատամք ի քեզ՝ երկայն կեանս։

«Հաւատամ զի դու ես զօրաւիգն բարւոյ, քանզի տեսանեմ զի դու ես սկզբնական պատճառ և արարիչ կենդանութեան արարածոց. որ բաշխես վարձս ըստ գործոց և ըստ բանից. տաս զբարին բարւոյ և զչարն չարի»։

Ներկայ ներածութեանս չտալու համար չափազանց ընդարձակութիւն մը որ մեր նպատակին ալ անյարմար կը լինէր, կը վերջացնեմք աստ մեր քաղուածները ու համառօտիւ կ'եզրակացնեմք ըստորեւ Կաթայից ընդհանուր վարդապետութիւնը։

Թէպէտ Զրադաշտայ փիլիսոփայութեանը մէջ նշմարելի է երկարմատեան դրութիւնը, զոր կը կոչէ «Գոյութիւն և Չգոյութիւն», բայց աստուածաբանութեանը մէջ մէկ Աստուած մը միայն կը ճանաչէ, և բարոյական վարդապետութիւնն ալ կը հիմնէ Խորհրդոյ, Բանի և Գործոյ Երրեակին վրայ[1]։

Նոքա որ իրարմէ անկախ և ընդդիմակաց երկու էութեանց հընարողը կարծեցին զնա, չփաթեցին նորա աստուածաբանութիւնը փիլիսոփայութեան հետ։ Զրադաշտ գերագոյն Էակին մի և անբաժանելի ըլլալը հաստատելէ յետոյ, ուզեց մեկնել իմաստասիրապէս բնութեան մէջ երեւցած անկատարութիւններն և թերութիւններն, ենթադրելով երկու կամք կամ միտք՝ սկզբնական կրկին պատճառք՝ որք ի միասին ստեղծեցին զամենայն նիւթական և զաննիւթ արարածս։ Բարի խորհուրդը՝ Վոհու-Մանօ՝ արար զգոյութիւն՝ կայս. Չար խորհուրդն՝ Աքեմ-Մանօ՝ արար զչգոյութիւն՝ Աճեաիդի։ Ամենայն ինչ որ բարի է, ճշմարիտ և կատարեալ, բարի մտաց գործն է. և որ ինչ չար և խաբէական՝ չգոյութեան կը պատկանի ու չար մտաց է ծնունդ։ Այս երկուորեակ պատճառքս յաւիտենից անտի անբաժան են յիրերաց և են ամենուրեք, որպէս յԱհուրամազդա նոյնպէս և ի մարդիկ։

1. Ամէն երանագէտք համամիտ չեն յայսմ ընդ Պ. Հաուկի, որ միաստուածութեան վարդապետութիւնը Կաթայից մէջ որոշ կը կարծէ տեսնել. այլ երկբայելի համարելով մինչև ցայժմ այդ հնագոյն երգոց տրուած մեկնութիւնքը, և Աւեստայի լաւ հասկցուած ճշտացած գրոց վրայ հիմնուելով, մազդէականութիւնը ի սկզբանէ անտի երկարմատեան կ'ուզեն համարել։

Երբ այդ կրկին սկզբունքդ նկատուին յԱհուրամազդա, ո՛չ Վօհու– մանօ և Աքէմ– մանօ չէն յարջորջիր, այլ Սրէնդօ–մախնեուշ՝ «ոգի բարերար», և Անկրօ–Մախնեուշ՝ «ոգի վնասակար[1]»։

Բայց Անկրօ–Մախնեուշ դարձեալ որիշ և ընդդիմակաց էակ մի չէր, ինչպէս որ յայտնի կ՚երեւայ ԽԹ Եասնայի Թ տնէն, յորում Ահուրամազդա կ՚ըսէ.

«Իմ երկու ոգւոցս մին՝ որ աւելի բարերարն է, բարբառեցաւ զԱնռմա–վախիշա[2] արար զհամօրէն ուղիղ և բարի արարչութիւնը»... Ուրիշ տեղ մի այլ այդ կրկին ոգիքդ կոչուած են «երկու արարիչքն, երկու տէարքն» (բայոր)։

Աւեստայի կաթայից մէջ տեղ մը չենք տեսներ զԱնկրօ–Մախնեուշ իբրև մշտնջենաւոր հակառակորդ Մազդայի, որպէս կը ներկայացընեն մեզ յետագայ մատեանք։ Չարը, որոյ դէմ կը կռուին Ահուրամազդա և ամենայն արդար մարդիկ, տրուժիշ[3] կոչեալ է, որ սոսկ անձնաւորութիւն մի է Տէվայից կամ Դիւաց, և որ թարգմանի «սուտութիւն» և «աւերումն»։

Ինչ որ բնութեան մէջ պայծառ՝ բարի և օգտակար է, Սրէնդօ–մախնեուշ արար զայն, և որ ինչ մթին և վնասակար՝ Անկրօ–մախնեուշի կը վերաբերի։ Առաջինը ստեղծեց զլոյս տուընջեան և երկրորդը զխաւար գիշերոյ. մին կը զարթուցանէ ի գործ և յաշխատութիւն, միւսն կը թմրեցնէ յանգործութիւն և ի քուն։ Սրէնդօ–մախնեուշ է պարգևիչ կենաց, զորս Անկրօ–մախնեուշ կը զրաւէ. բայց զրաւելովն կը խորտակէ հոգւոյն շղթաներն և զայն կը բարձրացնէ ի կեանս յաւիտենականս։

Երբ մտածենք թէ Զրադաշտ այնպիսի հին ժամանակի մը մէջ ապրեր էր, յորում Հելլենք տակաւին և ոչ իսկ սկսեր էին պարապելու բնազանցական գիտութեամբք պարտիմք խոստովանել՝ թէ արդարև իր ժամանակակիցներէն՝ ինչպէս և հետագայ դարուց մէջ

1. Ահաւասիկ Եզնկայ տուած մեկնութիւնը. «Այլ թէ Արհմն չար կարծիցի նոցա, վասն զխարամանի անունն յանձին կրելոյ՝ առ ի յարեէ զարեգակնատենչիկան արկանելոյ, ուստի և զանունն իսկ զխարամանոյ էառ»։

2. Անռեա Վախիշտա կամ Յօհօվար աղօթքն կոչուած է «բանն և մաւն Ահուրամազդայ», և էր բանս այս յառաջ քան զարարածս և քան զդևս։ Ասկէ զատ կան ուրիշ երկու կարճառօտ աղօթներ՝ Աշէմ–Վօհու և Եննէ–հաառամ։ զոցա երեքին ձևերն ալ Ահուրամազդա ուսուցեր էր Զրադաշտայ. ամենատուրք են սոքա, յոյժ հոգեշահ և ազդու։ Փարսիք այդ աղօթներդ կը գրուցեն ոչ միայն պաշտամանց ատեն, այլ և օրուան այլ և այլ գործոց մէջ։

3. Բաշլաուի գրութեանց մէջ այդ անուանդ ձևն է տրուժ՝ որ նոյն է ընդ հայկական «դրուժ» բառի։

պայծառացող հոյակապ անձերէ՝ գեր ի վերոյ գտնուեր էր, և թէ բառ ամենայնի արժանի էր այն մեծ համբաւոյն զոր ունէր առ նախնի Հելլենս և Հռովմայեցիս։

Կ'երևի թէ Զրադաշտայ վարդապետութիւնքը մինչև Վշտասպեան Պարսիկի օրերը (516 տարի նախ քան զՔրիստոս) քիչ շատ անխառն մնացեր էին. որովհետև Պէհլվական արձանագրութեանց մէջ[1] Պարսից, որ գիր ամենայն յաջողութիւնս և զյաղթութիւնս Ահուրամազդայ կ'ընծայէ և որոյ անունը եօթանասնէ աւելի անգամ կը յիշատակէ, աւրիշ աստուածոց խօսքը չըներ. և ոչ իսկ Արհմնի կամ Անկրո-մայնեուշի։ Փոխան սորա այդ արձանագրութեանց մէջ ես կը գտնեմք տրուխչ անունը։

Բայց Զրադաշտայ վարդապետութիւնը տակաւ առ տակաւ կորսյս իւր պարզութիւնը։ Նորա աշակերտքը ժողովրդեան սրտերուն մէջ արմատացեալ հինաւուրց դիցապաշտական զգացմանց և աւանդութեանց զիջումներ ընելու ստիպուեցան։ Զրադաշտայ բնազանցական և վերացեալ գաղափարները թիւրիմացութեամբք կամ ծուռ մեկնութեամբք անձնաւորութիւն առին, և Մոգաց այլ և այլ յատկութիւնքը մէկ մէկ հրեշտակապետ եղան։

Այսպէս գերագոյն Լաւին արարչագործ կրկին մտաւնքն՝ որք յար ի նա միացեալ էին, անջատեցան յիրերաց։ Սրէնդօ-մայնեուշ նոյն ինքն Ահուրամազդայ անունն եղաւ, յորմէ Անկրո-մայնեուշ բաժնուելով՝ նորա նախանձորդ և ոսոխն համարեցաւ. առանկով ձևացաւ Աստուծոյ և Գիւի երկարմատեան վարդապետութիւնը։ Այդ իրարմէ անկախ կրկին Գերագոյն Լաւաց գործն էր իրերաց արարչագործութիւնքը խանգարել կամ խորտակել և անդադար մարտնչիլ։ Երկու Անձանց ինքնուրոյնութիւնը գաղափարաց մէջ հաստատուելէ ետքը, աշխարհային թագաւորաց նման իւրաքանչիւրը խորհրդականներ կամ պաշտօնեայներ ունեցան։ Մէն մի Տէր վեց պաշտօնեայս ունէր որք վարէին իրապէս զանեղերս՝ իւրեանց առաջնորդին որոշած սահմանին մէջ։ Ահուրամազդայ կամ Սրենդօ-Մայնեուշի՝ երկնային ժողովոյ նախագահելէ աւելի գործ մը չմնաց։ Շատ անգամ սա՝ միւս խորհրդականաց կարգը և իբրև համհարդ նոցա կը յիշատակի. և յայնժամ ամենուն մէկտեղ «Եօթն

1. Այս աչաղին արձանագրութիւնս ի Բարեկյանէ յԷկբատան փնացող ճանապարհին ու Նախկին Մարաստանի սահմանացը վրայ 1700 ոտնաչափ բարձր ապառաժի մը վրայ գետնէն 300 ոտնաչափ տեղ բանած է՝ բեւեռագիր և երեքլեզուեան. յորոց մին՝ հին պարսկերէն կատարեալ ստուգութեամբ կը կարդացուի այժմ. երկրորդն՝ Մեդաց լեզուաւ, երրորդն՝ Ասորերէն։

Ամշասպէնդայք (այժմ կրճատելով՝ Ամշասպանդք) անունը կը տրուի, որ թարգմանի «անմահ բարերարք»[1]։

Ահուրամազդայ խորհրդականաց անուանքն՝ Վօհու-Մանօ, Աշավահիշդա, Խշաթրա-Վայիրեա, Սբէնդա-Արմայիդի, Հաուրվադատ և Ամրդատ, տեղ կը հանդիպին Կաթայից մէջ. բայց ինչպէս որ այդ գրութեանց ընթերցմանէն և բառական ստուգաբանութենէ յայտնի է, սոքա իբրև վերացեալ գաղափարներ և իբրև հասարակ անուանք ի կիր առեալ են անդ, և նշանակեն սոսկապէս այն բարեմասնութիւնքը և պարգևները՝ զորս կը շնորհէ Ահուրամազդա այնոցիկ՝ որք ուղիղ սրտով, ճշմարիտ բանիւք և բարի գործովք կը պաշտեն զնա։

Վօհու-Մանօ (Բահման) «Բարի միտք»[2], համայն բարի արարչութեան կենդանարար ոգին է։ Ի սկզբան Ահուրամազդայ բարի միտքը միայն կը նշանակէր զոր նախ քան զամենայն ստեղծեր էր, վասն որոյ Ահուրամազդա Վօհու-Մանօյի հայր կը կոչի։ Նովաւ Ահուրա արար ի սկզբանէ զտիեզերս, զզէն և զկենդանի արարածս, և անոր խորհրդով կը շարժի յամենայն գործս իւր։ Նա համօրէն կենդանի արարածոց կը ներշնչէ. և ամենայն բարի խորհուրդք՝ բանք և գործք ի նմանէ ելանեն։

Աշա-Վահիշդա (Արտավահիշդ[3]) կը ներկայացնէ զհուր գերագոյն, զարփիս լուսոյ և ամենայն տեսակ փայլ և պայծառութիւն։ Աշա (յոգնակի աշեմ) նշանակէ սրբութիւն, ուղղութիւն, արդարութիւն, ճշմարտութիւն. իսկ Վահիշդա՝ ի սկզբան «սքանչելի», «գեղեցիկ», և վերջերս աւելի ընդարձակ առմամբ «գերագոյն»։ Եւ որովհետև լոյսը Ահուրամազդայ բնութիւնն է, և բոլոր արարչութիւնը լուսով լցուած է, Աշավահիշդա՝ Աստուծոյ ամենուրեք ներկայութիւնը կը ցուցնէ։ Եւ ինչպէս որ լոյսը ոյժ և աճումն կու տայ կենդանի և անկենդան արարածոց, այսպէս ալ Աշավահիշդա կենաց և ամենայն բարեաց պահապանն է համարեալ։

Խշադրա-Վայիրեա (Շահրիվար), ոգի բարի «աշխարհակալութեան». իշխէ ի վերայ մետաղաց. և է պարգևիչ հարստութեան։

1. Եպիսկոպոսաց պատասխանւոյն մէջ յիշեալ եօթն աստուածքն ահա այդ եօթն ամշասպանդքն են, այս է Ահուրամազդա կամ Որմիզդ և իւր վեց խորհրդականքը։ Բայց ինչպէս որ պիտի տեսնենք ստորև, վերջերս Միհր և Անահիտ դիք ալ սոցա ատենին բարձրացան. վասն որոյ Միհրի համար «համհարզ քաջ Եօթնեբորդացն աստուածոց» ըսուած է. Եղիշէ, Բ. 44։

2. Լծորդ թուի մեզ հայերէն ածականն «Բարեմիտ»։

3. Սորա կրճատեալ ձևն է անշուշտ «Արտաւազդ» յատուկ անունը։

Սպենդա-Արմատիի (Սպէնտարմատ կամ Սփէնտարմատ) «բարերարն Արմայիզի», կը ներկայացնէ զերկիր[1]։ Բայց Արմատիի կը նշանակէ եւ «բարեպաշտութիւն», «հլութիւն». եւ յանժամ կը ներկայացնէ Ահուրամազդայ ճշմարիտ երկրպագուաց բարեպաշտ եւ հլու սիրտը։ Երբ «երկրի» իմաստով առնուի, ծառայ է մարդոյ, որ եթէ լաւ խնամուի, այս է մշակուի, առատ կերակուր կու տայ նմա։ Վէտայից մէջ՝ Արամատիի իգական ոգի մի է եւ անդ եւ երկու նշանակութիւն ունի. Ա, Բարեպաշտութիւն, հպատակութիւն. Բ, Երկիր։ Նկարագրի իբրեւ աղջիկ մի՝ որ առաւօտ իրիկուն կոգի կը մատակարարէ Ակնի դից։

Հաուրվատատ եւ Ամրդատ, (Խորտատ եւ Ամարտատ) կ'իշխեն ի վերայ բուսոց եւ կը գոյացնեն ամէն կարգի պտուղները։ Հաուրվատատ է «լրութիւն, առողջութիւն». եւ Ամրդատ «անմահութիւն». երկուքին ի միասին կը յիշատակին. վասն որոյ եւ յօդուածոյ գաղափար մի կը յայտնեն։

Երկնային ժողովականներէդ զատ Սրաօշա անուն հրեշտակապետ մի կայ, որ Կաթայից մէջ ոչ իբրեւ վերացեալ գաղափար մը կը ներկայանայ որպէս Ամշասրանդքն, այլ իբրեւ գոյութիւն ունեցող էակ մը։ Սա է միջնորդ ընդ Ահուրամազդա եւ ընդ մարդիկ. աւագ ուսուցիչ վեհի կրօնին (վեհ-տէն, պահ-տին), որ եւ հրահանգեաց զԶրադաշտ։ Սա կը զատէ զգործս մարդոյ յետ մահու եւ կ'անձնաւորէ զկրօնական պաշտամունս, աղօթս եւ զոհից արարողութիւնս։ Երբ ասեն զնմանէ թէ կը պահէ զաշխարհս, եւ թէ առանց նորա՝ աշխարհս դիւաց ձեռքը կը մտնի, իմանալի է թէ պարտ է յաղօթս կալ. ապա թէ ոչ՝ բարի խորհուրդը՝ Վօհու-Մանօ՝ կը տկարանայ ի մարդիկ, եւ չարն Ակէմ-Մանօ կը զօրանայ, յորդորելով զնոսա ի մեղս եւ յոճիրս, որով կը կորսուին թէ այս աշխարհիս մէջ եւ թէ ի հանդերձելումն։ Երբ լսուի թէ Սրօշ կը կռուի Դէվայից հետ, իմա Զրադաշտական պաշտամունք կը ջնջեն դիւաց փառները։

Ահուրամազդայ պէս Անկրո-Մայնեուշ դիւապետն ալ (Դաէվանամ Դաէվօ, «Դիւաց Դև») ունէր զիւր վեց պաշտօնեայս, որք թէպէտ Զէնտ-Աւեստայի մէջ յիշատակեալ չեն, բայց Պունտահիշի

1. Բնաբի հայ. «ապանդարամետ»։ «Եւ երկիր պանդոկի՝ ապանդարամետ առուած է». Թովմա Արծրունի, էջ 27. եւ յետոյ երկրորդ բաղաձայնն թօթափելով «Սանդարամետ», խորք երկրի, ստորերկրեայ վայրք։ Այս վերջինս այլ փոխեցաւ ի սանդարապետ, իբրեւ համառօտութիւն «սանդարամետապետի». բայց սակ առեղոր չիք ի հայերէն եւ ոչ յայլ լեզու. եւ նշանակութիւն ալ չունի։

մէջ կարգաւ գրուած են։ Գոցա առաջինն էր Ակէմ-մանօ, որ ինչպէս տեսանք, Զրադաշտայ փիլիսոփայութեան երկրորդ ոգին է. սա կը ներշնչէ մարդկան զխորհուրդս չարս, բարբառել տայ նոցա զստութիւն և յորդորէ ի մեղս։ Նորա ազդեցութիւնը կասեցողն է Վօհու-Մանօ։ Բ, Ինտրա, որ Վետայեան աստուածոց գլխաւորն էր, աստ մի է ի գիւապետաց և իշխէ մրրկաց և փոթորկաց։ Երրորդն Սաւրա և չորրորդն Նաօնհաիթիյա՝ Հնդկաց Շիվա և Աշվին աստուածներն են։ Ե, Տաւրիք՝ գիւապետ խաւարի. և Զ, Զարիք իշխան և յարդարող թունից։

Զէնտ-Աւեստայի մէջ կան շատ մը ուրիշ գիւաց անուններ որք մոլութեանց անձնաւորութիւնք են. այսպէս Աէշմա նշանակէ «բարկութիւն», «յափշտակութիւն», «յարձակումն», ուստի մերն Հեշմակ, և արդի պրսկ. խիշմ. Տրիվիշ, «աղքատութիւն» (տրուպ). Տախվիշ՝ «դաւ, խարէութիւն». և այլն։ Մինչ երկնային կաճառը շարունակ միջոցներ կը խորհի զկեանս զարգացնելու և ճշմարտութիւնը տարածելու համար, դժոխային ջոլիրը նորանոր մեքենայներ կը դաւադրէ զկեանս խորտակելու և զստութիւն և զխարէութիւն աճեցնելու համար։

Եօթնագլխեան Նշանեայք, զորս Կաթայներէն ետքը ամենէն հին գրութիւն պարտ է համարել, աղօթներ են նուիրեալ ոչ միայն Ահուրամազդայ, այլ և Ամշասպանտից, Ֆրավաշիներու՝ այս է Հրեշտակաց, Կրակի, Երկրի, շատ մը իգական Ոգւոց (որք կենա կոչեալ են. հայ. «կին»), Ջուրց, արարչութեան ներշնչող Ոգւոյն և ամենայն բարի արարածոց։ Բայց այս Նշանայից մէջ տակաւին չենք գտներ պաշտաման յիշատակութիւն կամ ապացոյց մը՝ ոչ վեց Եղանակաց տարւոյ, ոչ օրուան հինգ բաժանմանց կամ պահուց, ոչ Զրադաշտայ, ոչ բարեաց և ոչ իսկ սրբազան օշարակին Հօմայի, որոց համար յատուկ պաշտօն և աղօթս կը պատուիրեն աւելի յետագայ մատեանք։ Ահաւասիկ մի քանի հատուածք յՆշանեայից. (Լ.Ե, 1)։ «Պաշտեմք (եազամայտէ, բառ մը զոր չենք տեսներ կաթայից մէջ) զԱհուրամազդա, զարդար Տէրն արդարութեան. պաշտեմք զԱմշասպանտս զպահպանիչս և զտուիչս բարւոյ. պաշտեմք և զհամօրէն արարածս արդար ոգւոյն, զնիւթականն և զաննիւթն, և զամենայն որ կը նպաստէ բարի արարչութեան և ծաւալէ զմազդեզն բարի կրօն։

«Պաշտեմք զԱհուրամազդա հոգւով և մարմնով իբրև հոգիք (Ֆրաւաշիք) արդար արանց և կանանց»։

ԺԷ․ Նման դաւանութիւն մը կը պարունակէ, որ կը պահանջուէր յայլոցենից՝ երբ մազդէականութիւնը ընդունէին և հրաժարէին յաստանդական կենաց։

«Զեմ այսուհետև Տեվս (դիցապաշտ)․ խոստովանիմ զանձն իմ զրադաշտական մազդայեան (մազդեզն՝ որ ըսել է Որմզդապաշտ), թշնամի դիւաց, երկիւղած յԱհուրայ, պաշտող և գոհարանող անմահ բարերարաց (ամշասբանտից)։ Ամենայն որ բարի է՝ յԱհուրամազդայ եղանէ․ և նա է բարի, արդար, պայծառ, ամենափառ և սկզբնապատճառ ամենայն բարեաց, ոգւոյն բնութեան (կո̂ւշ), արդարութեան, լուսաւորաց և ինքնափայլ լուսոյն աստեղաց։

«Ընտրեմ զբարերարն Արմաիդի, և զարշիմ յամենայն նենգութենէ և յամենայն վնասուց ընդդէմ ոգւոյ երկրի, և յամենայն չարագործութենէ ընդդէմ Կայենից մազդեզանց։

«Կը թողում որ այս աշխարհիս բարի կենդանեաց (կով, ոչխար են․) մէջ բնակող բարի ոգիք ազատ թափառին ուր և կամին։ Կ'օրհնեմ զնուիրեալն աղօթիւք վասն աճման և զարգացման կենդանութեան...

«Հրաժարիմ ի դիւաց պղծոց . . . հրաժարիմ ի կախարդաց․ հրաժարիմ խորհրդով, բանիւ և գործով։

«Որպէս Զրադաշտ հրաժարեցաւ ի դիւաց, յորժամ խօսէր և տեսակցէր ընդ Ահուրամազդայ, նոյնպէս և ես հրաժարիմ ի դիւաց, որպէս արդարն Զրադաշտ։

«Որ կողմն են ջուրք, ծառք․ բնութեան կենդանարար ոգին, որ կողմն է Ահուրամազդա որ ստեղծեց զայդ ոգին և զայր արդար, որ կողմն էին Զրադաշտ, Քաւա Վիշդասպա, Ֆրաշօշդրա և Ճամասպա և ամենայն նախնի կրակաքուրմք (Սօշեանդո̂) ծուալիչքն ճշմարտութեան, նոյն կողմէ և դաւանութենէ եմ և ես։

«Ես եմ մազդեզն․ զրադաշտական մազդեզն․ դաւանիմ զդէնս զայս՝ բարձրացուցանելով զնա գեր ի վեր քան զայլս համօրէն։ Գովեմ զխորհուրդ բարի, զբան բարի և զգործ բարի։

«Գովեմ զմազդեզն հաւատս և զարդար եղբայրակցութիւնն զոր հաստատէ նա և պահպանէ ընդդէմ թշնամեաց․ զրադաշտական և Ահուրայեան կրօնքը՝ որ վեհագոյն, լաւագոյն և գերազանցիկ է քան զայն ամենայն որք են կամ լինելոց են»[1]։

1. Գիտողութեան արժանի է՝ որ Աւեստայ մէջ աֆրինամի՝ հայերէն «աւրհնել» կամ օրհնել և երբայեցերէն պերեք բային նման, նշանակէ «գովաբանել» միանգամայն և «անիծանել»։

Սակայն մազդեզն քաջանայապետք հետզհետէ նորանոր արարողութիւններ և վարդապետութիւններ փոխ առին ի Նախնի բազմաստուածութենէն՝ զոր տապալեր էր Զրադաշտ. բայց տակաւին հեշտալուր էին ժողովրդեան իբրև հայրենուանց կամ առաջին կրօնք՝ Բաօիրեօ–տքաէշօ̂: Այսպէս՝ զոհագործութիւնք վերահաստատեցան, և հնդկական գլխաւոր Սոմա օշարակին տեղ անմահ և կազդուրիչ ըմպելիք մը՝ (Հօմա) գրուեցաւ, որ երանեան լեզուաց յատուկ տառադարձութեամբ՝ միևոյն անունը կրեց: Պրահմանաց Բուրատաշա կոչեալ սրբազան պաքսիմաթին տեղը նուիրագործեալ հաց մը (Տարուն) հաստատեցին:

Իններորդ և տասներորդ Եաշտք նուիրեալ են Հօմայի: Այդ անունը Զէնտ–Աւեստայի մէջ երկու իմաստ ունի. մերթ նշանակէ Պարսկաստանի յատուկ՝ դեղին ծաղկով բուսոյ մը ճիւղերն, որոց հիւթը կը քամեն և կը խմեն յանդիման կրակի. մերթ Ոգի մը՝ որ իր կեանքը և զօրութիւնը դրեր է եղեր այդ բուսոյն մէջ: Հին ժամանակները խիստ շատ աւելորդապաշտութիւններ եղած են Հօմայի նկատմամբ՝ զոր ամենայն հիւանդութեանց և ախտից բուժիչ կը համարէին. ուստի և մնացած ըլլալու է այն հաւատքը՝ թէ Հօմայի արարողութիւնը (որ յոյժ նման է Պրահմանաց Սոմայինին), խիստ օգտաւէտ գործ մի է թէ հոգեւորապէս և թէ մարմնապէս: Փարսիք այդ ճիւղերը բերել կու տան այժմ ի Պարսկաստանէ ու վրան աղօթներ կատարելով՝ մետաղեայ հաւանի մը մէջ (հաւանա) կը դնեն նռնենեայ ոստի մը հետ, ու կը ճզմեն գնտաւ սանդխառնամբ (տաշ՝ գաշա). յետոյ ջուր լեցնելով՝ հոյզը կ'առնուն, զոր ինն սրով պարզուած մը (տաշտա եօ սուրաք) անցնելէ ետքը, նուիրագործող քահանայից (զաօտա) մին՝ կրակին ցուցանելով դեղնագոյն և չարահամ ըմպելիքը, կը ճաշակէ փոքր ինչ և ապա թակոյկի մը մէջ կը պարպէ: Զոշ ճիւղերուն ճզմուելովը թէպէտ և Հօմա աստուածն կը սպաննուէր, բայց հօմա բոյսը կ'աճէր ու կը զօրանայր, և ամէն մի նուիրագործութեան բաւական էր հազար դեւ խորտակելու:

Հօմայի առաջին պատրաստողն եղեր էր Վիւանհօ, որում այդ նշանաւոր գործոյն փոխարէն շնորհուեր էր յերկնուստ Եիմա–Խշաէտա (Ճէմշիտ) անուն զաւակ մը: Սորա թագաւորութեան օրերը մահ չկար ոչ մարդոց համար և ոչ ալ անասնոց. ոչ բոյսք ցամաքէին և ոչ ջուրք պակասէին. հարք և որդիք հնգետասնամեայ պատանւոյ կերպարանօք կը ճեմէին:

Երկրորդ պատրաստողն Աթուիյա՝ հայր եղեւ Թրաէդոնա (հայ. Հրուդէն) անուն դիւցազին, որ սատակեաց զօձն (ազհի) Տահագա՝ վիշապ երեքգլխի սոսկալիթխոր, զոր Անկրօ–Մայնեուշ ստեղծեր էր սա ի քանդել և ապականել զկայանս արդարոց (կաէթա)։

Երրորդ պատրաստողն Թրիտա ի Սամաեան տոհմէ՝ երկուորեակ մը ունեցեր էր, յորոց մին Ուրուախշայա արդարակորով դատաւոր եղած էր, միւսն Գերեղարա՝ դիւցազն պատանի՝ սպաններ էր զվիշապն Սրուարա, որոյ վրայէն բազկի հաստութեամբ դեղնագոյն թոյն մը կը ժայթքէր, և որ կը լափէր ու կլանէր զձիան և զմարդիկ։

Չորրորդ պատրաստողն եղեր էր Բուրուշ ասպա՝ հայր Զրադաշտայ, որ առաջինն գրուցեր էր չորեցս Ահունա–վարիա կոչեալ աղօթքը, կանկ առնելով իւրաքանչիւր տողին վերջը, և զօրացնելով զձայն իւր մէն մի կրկնութեան։ Զրադաշտ երկրին յատակը վաներ էր զդեւս՝ որք մինչև իւր առենը մարդկան կերպարանօք աշխարհիս վրայ կը յածէին։

Հոման կու տայ գիտութիւն, կորով, յաղթութիւն, առողջութիւն, բժշկութիւն, աճումն և բեղմնաւորութիւն մտաց և մարմնոյ համայն արարածոց. կը վանէ զմահ ու կը շնորհէ անմահութին՝ ապառող ազգկանց։

Այդ հատուածներէդ հարկ է հետեւցնել՝ թէ Զրադաշտ չէր կրնար լռելեայն անցնել այնքան կարեւոր արարողութեան և վարդապետութեան մը վրայ՝ եթէ իւր ժամանակը եղած ըլլար։ Ըստ յետնոց՝ Զրադաշտ ընդուներ էր զայն։ Բայց որովհետև Կաթայից մէջ՝ ինչպէս Անահտայ, Միհրի, Ամշասպանդից և Բարսմանց, նոյնպէս ալ Հոմայի բնաւ յիշատակութիւն չկայ, մանաւանդ թէ հնդկական Սոման խստիւ կը դատապարտուի, կարծուած է իրաւամբ ի հնագիտաց՝ թէ նա մերժած ըլլալու է զայն, և թէ այդ աւելորդապաշտութիւնդ իրմէ ետքը մուտ գտած է մազդէականութեան մէջ։ Զարմանալի է սակայն՝ որ Հոմայի վարդապետութիւնը, որ այնքան մեծ տեղ մը բռնած է յԱւեստա, որպէս և Սասանեանց ժամանակի կրօնական գրուածոց մէջ, և որ մինչև ցայժմ կարգէ դուրս յարգութեամբ կը պահուի ի Փարսիներէ, բնաւ յիշուած չըլլայ ի հայ մատենագրաց։

ԺԹ Եասնան նուիրեալ է Մազդեզանց ամենէն սրբազան և հրաշագործ աղօթից, որ է Ահունա-վաիրեա, բաղկացեալ երեք տողէ և ի քսան և մէկ բառից[1]։ Այդ չափեալ աղօթքդ է բանն Ահուրա-

1. Այս բառերս Աւեստայ քսան և եղան, որովք և կը յորջորջին մինչև մէկ Նասքերուն միում միում անունն ցայժմ։

մազտայ, որ բարբառեր էր զայն մինչ չև էին երկինք և երկիր, և ոչ խակ հուրն՝ որդի Ահուրայ, և ոչ այլ ինչ բնաւ։ Սորա միանգամ և անախտ գրուցուածքը՝ Կաթաներէն միոյն հարիւր անգամ ծայրէ ի ծայր գրուցելուն համասար է։ Սխալով գրուցելն ալ տասն Կաթայից չափ արդիւնաւոր է։ Ահուրամազտա կը խոստանայ Զրադաշտայ՝ թէ որ ով Անձնա-վախիեայի մի մասը մաքէն յիշէ, կամ յիշելու ատենը մրմնջէ զայն, կամ մրմնջելու ատենը երգէ, կամ երգելու ատենը աղօթէ նմա, նորա հոգին՝ ինքն Ահուրամազտա պիտի անցնէ ի կամրջէն՝ որ կը տանի ի հանդերձեալ կեանս (վահիշտեմ անհում[1])։

Ծէ՛ Եաման նուիրեալ է Սրաւշա կամ Սրօշ հրեշտակապետին՝ որ մարդկանց հոգւոյն սրբազան պաշտամանց անձնաւորութիւնն է։ Սա առաջին եղեր էր յարարածոցն Մազտայ՝ որ պաշտօն մատուցեր էր նմա՝ հնարելով զբարսմունս, և Ամշասպանդաց (հրեշտակապետաց կամ խորհրդականաց) որոց կը բարեխօսէ վասն մարդկան։ Սրօշ հաստատեր էր բարսմանց այլ և այլ տարազքը՝ երեք, հինգ կամ եօթն ոստովք. ինչպէս և զայնս՝ որք մինչև ցծունկն կամ ցկէս լանջացն կը հասնին։ Նա առաջինն՝ երգեր էր Սրբազան Զրադաշտայ Կաթաները, զանազանելով բարձր և ցած խազերը։ Կը սատակէ զդեւն ստերիչ (տեվի տրուժաշ) որ կը խափանէ զաճումն բնութեան։ Միշտ անքուն՝ յորմէ հետէ Ողիքն կրկին ստեղծեցին զաշխարհս, կը պաշտպանէ զարարածս Մազտայ, և գիշեր ցերեկ կը մարտնչի Մազանեան Դիւաց հետ։ Նա Հարապերեզայիտիի («լեառն բարձր», այս է Էլպուրզ լեռնագօտին՝ որ ի հարաւոյ ծովուն Կասպից) գագաթանց վրայ հազար սիւնով պալատ մի ունի, ի ներքուստ ինքնածագ լուսով լուսաւորեալ և արտաքուստ զարդարեալ աստեղօք։ Ահունա-վախրեան, Եասնաներն և Ֆրաւշա անուն յաղթասաւր աղօթքն նորա սուսերներն են։

1. Ինչպէս որ կը տեսնենք այդ խօսքէդ, աղօթք մը չորս կերպով կրնայ ըլլալ. Նախ՝ մաքէն զուրցել. Բ, արտացած ձայնով և մրմռալով կարդալ. Գ, սրաւոյ կամ ֆրասրաւոյ, բարձրաձայն և երգախառն կարդալ. Դ, անձնաւորել զաղօթս և պաշտել զնա առելով «հազամայոկ Անձնեմ վախիեմ», որ թարգմանի՝ պաշտեմք զԱհունա-վախրեա։ Վազար Փարպեցին անշուշտ երկրորդ ձևին կ'ակնարկէ. «Տուեալ ընդ նախարարին բազմութիւն սուտ վարդապետաց զոր և մոգ անուանեն, յորդորէին ուսանել զսումունս ծաղրելի չեզմանց և բեզուեցարկու քարքրեզմանց, խօսել որպէս զռամկական և զորովայնախօս». էջ 154։

# Ը

Վխաքարատ (այս է վխաքրադաւօ, «համայն պետք կամ գըլ-խաւորք»), հաւաքածոյ մի է բաղկացեալ ի քսան և յերից ադօթից, որք Օրհնեալ ջրոյ և հացի, Հօմայի ոստոց և հայգին, պտղոց, կոգւոյ, կաթի և մսոյ նուիրագործման կը վերաբերին։ Այդ պատարագներդ կրակին բոլորտիքը պտտցնելէ և անոր ցուցնելէ յետոյ կը ճաշակէ զնոսա քահանայն կամ այն անձը՝ որում ի նպաստ այդ հանդէսը կը կատարուի։ Այդ արարողութիւնդ հացկերոյթ մի է ի փառս աննիւթական և մարմնաւոր աշխարհի պետաց կամ առաջնորդաց, որք են՝ Ահուրամազդա, Հրեշտակապետքն, ինչպէս և Նախատիպքն համայն կենդանեաց՝ որք բնակին ի ջուրս, կամ ծնանին ի ձուոյ և շրջին յերեսս երկրի։ Այդ Նախատիպքն իւրաքանչիւր տեսակ էակաց՝ կը յորջորջին ռադու։ Կենդանեաց առաջնորդներէն ոմքը՝ կը կոչեն զվեց պետս տարւոյ, այս է զվեց Յեղանակս կամ Կահանպարն։ Ահուրամազդա մէն մի կահանպարի համար տօն մի հաստատած էր, զոր մինչև ցայժմ ամենայն ճշդութեամբ և չքեղութեամբ կը կատարեն Փարսիք՝ ի յիշատակ վեց ժամանակաց յորս ստեղծեր էր նա զտիեզերս։

Վեց յեղանակներէն ոմքը կը կարդան զգլուխս տէրունական ադօթից (այս է ի մանաւորի՝ Կաթայից), որք եւս իբրեւ զհրեշտակս նկատեալ են. ապա զիգական Ոգիս՝ (կենա) զպարգեւիչս առատութեան և բեղնաւորութեան ամենայնի. զԱրտուի-Սուրա, Անահիտա (երկնային ջուրք), զլերինս, զհրեշտակն Պահրամ՝ Միհր, Րամա-Գաւղար (որ հսկէ ի վերայ կերակրոյ), զԹագաւորն աշխարհի և զԶրաթուշթրօդէմա, այս է զքահանայապետն կամ զՄովպետան մովպետն՝ որ այժմ կոչի Տաստուրի Տաստուրան։

Այդպէս ամենայն կարգի պետք կամ գլուխք կը հրաւիրուին ի կոչունս սուրբ. ապա մատուցանեն նոցա զօրհնեալ ջուր և զպտուղունս ի նշան ողջունի։ Այլ և այլ ադօթներէ ոմքը հանդիսադիր քահանայն (Զաօտա) կը պատուիրէ իրեն օգնական ուրիշ քահանայի մը (ռաթվի) յառաջ կոչելու զերիս կարգս քահանայից՝ որք կը ներկայացնեն զերիս կարգս ժողովրդեան, որք են քահանայք, զօրականք և շինականք. զՑեարս տոհմից, աւանից, քաղաքաց և

գաւառաց. զՏիկնայս գերդաստանաց և զայլ պատուաւոր կանայս և այլն։ Կ'երևի թէ Կաշանպարի հանդիսի ներկայ գտնուելու պարտաւոր էին ժողովրդեան ամէն նշանաւոր մարդիկն։ Վիսպարատ ալ այս վեց տօնից մաղթոցն էր, և ասոնց համար ևեթ կը գործածուի այժմ։

Այնուհետև ժողովուրդը միաբերան կ'օրհնեն զգոյս բարիս. ապա Ջաօդան կը հաչակէ՝ թէ ինքն փառաբանող է և երկրպագու Ահուրամազդայ և Հրեշտակապետաց. յայնժամ կը կարդան զՍրօշ, ըզՄիհր և զայլ ոգիս։

Այդ նախապատրաստական աղօթներէդ ետքը կը սրբագործեն կերակրոց գլխաւոր մասունքը, Հօմայի ոստերը նաննեւայ ոստի մը հետ, կոգի, նոր կաթ, հաց, միրգք և միս. և կը նուիրեն զնոսա համօրէն արարչութեան առաջնորդաց, և հանդէսը կը վերջանայ այլ և այլ աղօթիւք։

## Թ

Յաշտք[1] կը կոչէին քանի չափ օրհներգութիւնք, որք Յասնաներէն և Վիսպարատէն այնու միայն կը տարբերին, որ մինչդեռ այս վերջնոցս մէջ համայն դիք միահամուռ և անխտիր կը կոչէին, Յաշտք առանձին առանձին մէկ մէկ աստուածոյ շահատակութեանց, հրաշից և բարեմասնութեանց գովաբանութիւնք են. զորս աղերսարկուն մի առ մի յիշելով, կը ջանայ համոզել զնա՝ որպէս զի իջնայ յերկնից և ընդունի զիւր պատարագը կամ ընթրիքը, և շնորհէ հայցողին զոր ինչ ընձեռած է նախնի ժամանակաց մէջ երկրպագողաց իւրոց։ Այսպէս Յաշտ մի կայ Որմզդայ, Յաշտ մը Անահտայ՝ այս է երկնային ջրոց. ուրիշ մը Միհր աստուածոյ, Դիշդրիյա դից և այլն։ Այդ երկնային էակաց մեծագոյն մասին եազադա[2] անունը կը տրուի, որ թարգմանի «պաշտելի»։

Յաշտք, որ ընդհանրապէս յոյժ բանաստեղծական և գեղեցիկ ու տեղ տեղ ալ չափեալ գրութիւնք են, հիմն եղած կ'երևին Շահնամէի վիպաց։

1. Նշա՛ որ մեր «Յաշտ» բառին լծորդն է, նշանակէ պաշտամունք աղօթիւք և զոհիւք։

2. Պարսկերէն Եզդան՝ որ է Աստուած, յոգնակի է եազադաի։

Որմզդայ Եաշդին մէջ կը հարցանէ Զրադաշտ Ահուրամազդայ՝ թէ չար ոգւոյ դէմ ո՞րն է ամենէն ազդու խօսքը կամ կապը (մաթրա[1]): Ահուրամազդա կը պատասխանէ՝ թէ ամենէն զօրաւորն իւր անուանցը յիշատակութիւնն է. ու ի խնդրանաց Զրադաշտայ՝ քսան անուն կը սորվեցնէ նմա. որոց առաջինն է ամի, «ես եմ». չորրորդը՝ աշա-վահիշդա, «գերագոյն բարութիւն». (սա է անուն Արտիպահիշդ հրեշտակապետին). վեցերորդը՝ «ես եմ իմաստութիւն», երկոտասաներորդը՝ ահուրա «կենդանի». քսաներորդը «Ես եմ որ եմ Մազդա» ամի եատ ամի Մազդաօ: Եթէ զիս կարդաս, կ'ըսէ Ահուրամազդա, այդ անուամբքդ, գիշեր ըլլայ, ցերեկ ըլլայ՝ կը հասնիմ օգնութեանդ. և յետոյ հրեշտակն Սրօշ, Ոգեք ջուրց և ծառոց և Ուրուք մեռեալ արդարոց կը վազեն քեզ ի թիկունս: Ուրիշ անուններ ալ կ'աւանդէ. ինչպէս՝ «պահպանիչ», «ոգի», «ամենատուրբ», «կրակաքուրմ». «ամենալաւ» և այլն, որք զօրութիւն ունին սպառսպուռ վանելու զչարագործս, զկախարդս և զՊարիկս[2] (քարիքս):

Հափթան եաշդն, այս է՝ եօթանց վեհագոյն աստուածոց, գովաբանութիւն մի է Ահուրամազդայ և նորա վեց խորհրդականաց՝ որք կը կազմեն զկաճառն չերկնային:

Արտիպահիշդ եաշդին մէջ Ահուրամազդա կը պատուիրէ Զրադաշտայ՝ պաշտպանել և զօրացնել զԱշա-Վահիշդա (այժմ Արտիպահիշդ՝ որ թարգմանի գերագոյն բարութիւն), գովաբանութեամբք, հայցմամբք, երկրպագութեամբ, երգօք, միանգամայն և հրաւիրելով զնա յընթրիս նուիրականս, որպէս զի պահէ նա զպայծառութիւն լուսաւորաց՝ որք անհրաժեշտ պիտոյ են բարի արարածոց զարգացման: Զրադաշտ կը հարցանէ՝ թէ ի՞նչ գիւթական բանիւք կրնայ պատշաճապէս և ազդու եղանակաւ կատարել զպատուէրդ: Ահուրամազդա կը պատասխանէ՝ թէ ամենէն հզօր աղօթքը (մաթրա) Աիրեմա իշեօ աղօթքն է: Այնուհետև այլ և այլ հիւանդութեանց և ախտից դէմ զանազան կարդացմունք կը յիշուին, որք մինչև ցայժմ Եւրոպիոյ մէջ անգամ գործածելի են ի կախարդաց. «ի բա՛ց կացէք հիւանդութիւնք», «ի բա՛ց մահ», «ի բա՛ց դեւք»: Ասպս կը պա-

1. Մաթրա՝ աղօթք երդմնեցուցչութեան. ևս պարզապէս աղօթք կամ հակիրճ աղօթք առ ի հալածել զդևս, զախտս և զպատահարս:

2. Ջէնտ-Աւեստայի Պէրիները չար ոգիներ են, որք իրենց գեղեցկութեամբը կը հրապուրեն և կը պատրեն:

տուիրէ Ահուրամազդա սատակել «զսերմանս խժի» (ագռի-չիթրա), — այս է զամենայն վնասակար կենդանիս, որպէս գայլ, գորտ, մուկն, մրջիւն, օձ և այլն, որք չար ոգւոց ընդունարան և հանդերձքն համարեալ են, — իբրև կարի արդիւնաւոր և պիտանի վասն աճման բնութեան և պահպանութեան լուսոյ, որոց երկոցունց իսկ ներկայացուցիչն է հրեշտակապետն Արտիպահիշդ։

Մեր Զէնտ-Աւեստայի քննութիւնը չափէն աւելի չերկարելու համար կը թողումք յիշեալ յաշտերը, ու միայն անոնց վրայ դեռ կ'ուզեմք խօսիլ, որք կը վերաբերին այն դից՝ որ հեթանոս Հայոց համար ալ պաշտելի էին կամ ուրեք յիշատակուած մեր մատենագրաց մէջ։

Աբան յաշտն նուիրեալ է Արտվի Սուրա Անահիտա մեծազօր դիցուհւոյն նախնի Պարսից, նա մանաւանդ և Հայոց։ Բաբելացիք զդիցուհին իւրեանց կոչէին Մէլիդդա. Ասորեստանեայք՝ Պէլթիս. Հելլենք ունէին զԱփրոդիտէ և զԱրտեմիս կամ Դիանա։ Բայց եթէ զոցա իւրաքանչիւրին յատկութիւնքը քննեմք, կարելի չէ ժխտել՝ թէ հայկական և պարսկական Անահիտը տարբեր կերպարանք և անձ մի կը ներկայացնէ մեզ միւս օտարազգի դիցուհիներէն։ Հայ Անահիտը՝ որ «Ոսկեծին, ոսկիհատ, ոսկիամայր դիք» կ'ըսուէր, ոսկեձոյլ պատկեր մի ունէր յԵրիզայ, որում պսակս և թաւ ոստս ծառոց կը նուիրէին. յորմէ բժշկութիւն և բազում կեանս խնդրելու համար Արտաշէս Բ Արեգենից տաճէն նահապետ մը ղրկեր էր. և զոր, ըստ Պլինիոսի, Մարկոս Անտոնիոս կողոպտեց Պարթևաց դէմ պատերազմի գնացած ատենը[1]։ Տրդատ արքայն բանդ, կապանս և մահ կը սպառնայր Գրիգորի՝ եթէ յանձն չառնոյր դից պաշտօն մատուցանել. «մանաւանդ այսմ մեծի Անահտայ տիկնոջ՝ որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ, զոր և թագաւորք ամենայն պատուեն, մանաւանդ թագաւորն Յունաց. որ է մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, և ծնունդ է մեծին արին Արամազդայ». (Ագաթ. էջ 51)։ — ... «Եւ որ են իսկ ճշմարտիւ արարիչ՝ թշնամանես, և զմեծն Անահիտ՝ որով կեայ և զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց. և ընդ նմին և զմեծն և զարին Արամազդ՝ զարարիչն երկնի և երկրի» և այլն. (Նոյն, էջ 61)։ — «Լիութիւն պարարտութեան յարոյն Արամազդայ, խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ, և քաջութիւն հասցէ ի քաջն Վահագնէ ամենայն Հայոց

1. Անահտայ միւս մեհեաններն էին յԱրտաշատ և ի Ցաշտիշատ. այս վերջին նշանաւոր եղած էր հարստութեամբը և գանձերը։

աշխարհիս»․ (Նոյն, 106)։ Դժբախտաբար մեր ազգային պատմչաց մէջ գտած տեղեկութիւննիս յոյժ անօսր են։ Տեսնենք այժմ Զէնդաւեստային աւանդները։

Պարսկական Անահիտը երեք անուամբք ալ կը յորջորջի․ Արդվի՝ թարգմանի «բարձր»․ Սուրա՝ «հզօր»․ և Անահիդա՝ «անբիծ, անախտ, ան-աղտ, սուրբ, մաքուր»․ և ասքօք կ'իմանան զերկնային ջուրս՝ զորս կը ներկայացնէ Դիցուհին։ Ահուրամազդա կը պատուիրէ Զրադաշտայ երկրպագել Անահտայ՝ որ կը թաւալի ի ներքոյ կամրջաց, տայ զառողջութիւն օդոց, ընկճէ զդեւս, և իբրև պարգեւելիչ արգաւանդութեան՝ սրբէ զսերմանս արանց և զարգանդս համայն իգականաց, հատուցանելով վերջնոցս զկաթ ի ժամանակին։ Սա կ'իջնայ Ելպուրզի գագաթներէն․ երբ կը հասնի ի ծովն Վուրուքաշա, կ'ընդարձակէ զեզերս նորա։ Արդվիսուրա հազար առուակս և հազար ջրանցս ունի, իւրաքանչիւրը սրընթաց ձիոյ քառասուն օրուան ճանապարհի երկայնութեամբ։ Ջրանցք մը կ'երթայ ոռոգել զեօթն աշխարհան (քէշվար) երկրի, ամենուրեք հայթայթելով զերկնային ջուրս։

Ահուրամազդա ստեղծեց զԱնահիտ յօգուտ տան (նմանա), աւանի, քաղաքի և աշխարհի, որպէս զի պահէ պաշտպանէ զնոսա և հսկէ ի վերայ նոցա։ «Ո՞վ պիտի պաշտէ զիս, կ'ըսէ Անահիտ, նուիրելով ինձ զօրհնեալ ջուրն ընդ Հօմայի և մսոյ՝ սրբագործելով ըստ արարողութեանց»։

Անահտայ կառքը լծեալ է չորիւք սպիտակ ձիովք՝ որք կ'արհամարհեն զդեւս համօրէն։

Ահուրամազդա ինքնին յաշտ առեր էր Անահտայ՝ նուիրելով նմա զՀօմա, որպէս զի սա համոզէ զԶրադաշտ իւր մարգարէն լինելու․ և Անահիտ կատարեր էր անոր խնդիրը։

Հօշիանգա պատարագեց նմա հարիւր ձի, հազար եզն և տասն հազար խաշինս․ ի վարձատրութիւն ընդունեցաւ ի «սուրբ և կենդանարար» դիցուհւոյն զօրութիւն տիրելու ի վերայ ամենայն դիւաց և մարդկան և ի վերայ քահանայից սուտ աստուածոց (որք Փարի և Փարարան կը կոչին), և հաստատելու իւր թագաւորութիւնը։

Եիմա խշաետա (Ջէմշիտ) նոյնպէս պատարագօք նմանօրինակ վարձուց արժանացաւ․ բայց «սուրբ և կենդանարարն» Անահիտ մերժեց զպարգեւս Աժդահակայ (Աժհի–դահակա) որ կ'ուզէր ապանանել երկրիս երեսը գտնուող բոլոր մարդիկը․ և իւր օգնութիւնը

չնորհեց Թրակդաօնայ (Ֆէրիտուն և Հայ. Հրուդեն), որ սատակեաց զեազդխի, զեարերան, զվեցաչուի, զհազարթևեան զօձն Տահակ (ազհի Տահակա) զորուխչն սոսկալիթխար, յորմէ աւելի մնասաբեր այսոյ գոյութիւն չէր տուած Անկրօ-մանեուշ։

Այդ մեծաքանակ զոհերդ հարկաւոր էին գուցէ ի նախնի ժամանակս մեծամեծ չահատակութեանց համար։ Նայց զգիցուհին նըպաստաւոր ընելու կամ ողոքելու համար բաւական էր մատուցանել նմա զՀօմա ընդ միազայ, զբարձմունս, զմանրբայս որք ուղղեն զբարբառ, զաղօթս, զկարգս պաշտամանց, զջուրն օրհնեալ և զճըշմարտապատում բանս։

Մոլորեալ ուղեւորի մը հասեր էր Անահիտ՝ գեղեցիկ, անձնեայ, չքեղաչուք երիտասարդուհւոյ մը կերպարանօք, լայն գօտի ընդ մէջ արկեալ, հաստակազեղ, վեհ և պայծառ դիմօք. ցած կօշիկներ յոտին և ոսկի վարսակալ ի գլուխն. աղերսաւորին ձեռքէն բռնելով առաջնորդեր էր նմա մինչև անոր բնակարանը։

«Երթ, ասէ Ահուրամազդա ցԱրտուխուր, երթ առ ի յերկիրն զոր ստեղծեցի։ Զքեզ պիտի պատուեն դեհապետք և որդիք դեհապետաց։ Քաջամարտիկ զօրականք պիտի հայցեն ի քէն զարագութիւն ձիոց և զյաղթանա՛ն։ Աթարվանք, որք կատարեն զպաշտամունս և պահեն զանօթս սրբազանս, պիտի խնդրեն զիմաստութիւն, զսրբութիւն, զյաղթութիւն՝ զոր տայ Ահուրա, և զզօրութիւն որ զերազանցել տայ ամենայնի։ Կուսանք պիտի ուղեն յառագաստ իւրեանց զայր երիտասարդ. գեղեցիկ աղջկունք՝ զմեծազօր տանուտէր, և մանկամարդ կանայք՝ յաջողակ ծնունդ։ Կատարէ նոցա խնդրուածքը, դու որ կարես»։

Արտուխուրա բազմեալ ի զահոյն բարբառի և ուսուցանէ կերպարանօք գեղատեսիլ՝ անձնեայ՝ մեծաչուք օրիորդի, լայն կամար գօտի ընդ մէջ արկեալ, լուսապայծառ և կանգուն դիմօք. ունելով ոսկեհուռ վերարկու ի թիկունս, և բարձմունս ի ձեռին ըստ օրինի, քառակողմանի ոսկի գինդս յականջս ի ծածան։ Անահիտ իւր չքնաղ պարանոցին վրայ կը կրէ զմրուխտ մը. չքեղազարդ պատմուճանեալ զապէ զմէջն, հաճոյական և հրապուրիչ ձև մը տալով իւր լանջանցը. ի վերուստ ունի ութածալ և հարիւր աստեղաց չափ ոսկեփայլ գեղեցկահիւս պսակ մը՝ վերջաւորօք փողփողեալ։ Հանդերձ նորա երեքհարիւր քառածին՝ ջրշունէ ընտրուած մորթ մի է՝ ոսկե-

1. Կանանաւոր ծնունդ ունեցող ջրշունը չորս ձագ կը բերէ։

ղէն և արծաթեղէն զարդուք, յորմէ աւելի ընտիրն և գունագեղն անհնար է տեսնել ջրասուղակ ջրչնոց վրայ»[1]։

Խորշետայ ճաշըը նուիրեալ է արեգական, որ Աւեստայի մէջ հւարէ խշաէտա, «արև արքայ» կը կոչի. ուստի և արդի պարսկերէն խուրշիտ՝ արեգակ, և Եզնկայ Խորաշէտն։ Սա է լոյս նիւթական և հայելի Միթրա աստուածոյ՝ որ կը ներկայացնէ զլոյսն աննիւթական և համասփիւռ։ «Երբ արեգակը կը փայլի եթերաց մէջ, երկնային Եազատաները բազմերամ կը վազեն կու գան, և հաւաքելով զլոյսն՝ կը բաշխեն ի վերայ երկրի.... Քանի որ արեգակը կը բարձրանայ. Ահուրայ ստեղծած երկիրը կը սրբի, նոյնպէս և հոսանք, գետք և լիճք։ Բայց մինչև որ արեւը ծագի, Տէվայք կը սպանանեն զամենայն ինչ, կ'աւերեն և կ'ապականեն. և Եազատայք անկարող կը մնան վանելու զնոսա յորժամ բնութիւնն ի քուն կայ։ Ով որ անմահ, բոցաձաձանչ արեգական յաշտ ատնէ (որ ունի սրընթաց ձիս), առ ի վանել զխաւարային դևս, զաւազակս, զԵատուսս և զՊարիկս, նա Ահուրամազդայ՝ Ամշասպանտից և իւր հոգւոյն կը գոհէ։

Եզջերագեղ լուսինն ալ՝ որ կօաչիթրա՝ «կովագէմ» կոչեալ է, ունի իւր յատուկ ճաշըն. անմահ բարերարքն (Ամշասպանտքն) կ'ելլեն ու կը սփռեն լուսնոյ շողը ի վերայ աշխարհի։

Դիր ճաշըն զոհաբանութիւն մի է Դիշդրիա աստեղ, այս է փայլածուի. (Պաշդար՝ փարսի լեզուաւ, և Դիր՝ արդի պարսկերէն[2])։ Սա համանօրէն հայկական Տիւր կամ Տիր աստուածն է. թէպէտ Պարսից և Հայոց դիցաբանութեան մէջ մի և նոյն պաշտօնը չի վարեր։ Հայոց մէջ Տիր՝ Որմզդայ դպիրն էր, երազները կը մեկնէր ու մեհենական գիտութեանց և ամենայն արուեստից ուսուցիչ էր[3]։

1. Տես Հարլէզի Աւեստա. հատ. Բ, էջ 207 և 213։

2. Դիր պարսկերէն է եւ «նետ», «ոլաք». այդպէս կոչեալ էր մոլորակդ՝ արագ ընթացիցը պատճառաւ։

3. Տես Ագաթանգեղ. էջ 584, և Պ. Էմինեանի Recherches sur le Paganisme Arménien. — Հայկական Տիրին մի և նոյն կերպարանքն ունի ընդ Ասորեստանեայց Դիր կամ Նէբօ դից, և ընդ յունական Հերմեսի և Հռովմէական Mercureին։ Ասորեստանեայց բեւեռագրաց մէջ ոլաքը՝ որով կը կազմուին բեւեռագիրք՝ Տիր դից նշանն է. և էր նա պաշտպան և հնարող դպրութեանց և ուսուցիչ։ Մանտայեան մատենից մէջ ալ Նիպօ, որ կը ներկայացնէ զփայլածու, կը կոչի «Դպիր»։ Ըստ վկայութեան Արիւդննեայ՝ Նաբուքոդոնոսոր քաղաք մի շինած էր Եփրատայ բերնին մօտ, զոր անուանէր էր Տիրիտոդիս կամ «Տըր-դատ». այս է նուիրեալ կամ տուեալ Տիր դից։ Տես Ռօլինսընի Herodotus. հատ. Ա, էջ 661–664։

Պարսկական Դիրի գլխաւոր պաշտօնն է կռուիլ երաշտութեան դիւին դէմ, կամ երկնային Ովկիանու՝ Վուրու-քաշայի ջրերն հոսեցընել երկրիս վրայ, զայն արդաւանդելու համար: Դժուարին գործ մի է եղեր այս. որովհետեւ Պարիկք լուսաւոր որդանց ձեւով կը թափին այդ ծովուն վրայ, ու կ'արգելուն որ ջրերը դուրս չելլեն իւրեանց սահմանէն: Յայնժամ Դիր՝ աշխէտ Նժոյգի կերպարանօք կը մտնէ ծովուն մէջ, և զայն ուռուցանելով՝ կը հոսեցնէ ջրերը անձրեւի պէս երկրիս «Եօթն աշխարհացը» վրայ: Սակայն Դիր առանց հաւատացելոց աղօթից և յաշտից կարող չըլլար ընկճելու դեւս. մանաւանդ որ երեք օր և երեք գիշեր մաքառելէ յետոյ Ապաօշօ անուն դիւին հետ՝ կը յաղթահարի ու ծովէն դուրս կ'ելլէ գոչելով. «Եղո՜ւկ եմ ես, եղո՜ւկ զջուրս, եղո՜ւկ զծառս. վա՜յ մազդեզն դենի. մարդիկ ինձ չեն յաշտ աներ որպէս այլոց հրեշտակաց, եթէ յաշտ առնէին՝ տասն ձիոց, տասն ուղտուց, տասն եզանց, տասն լերանց և տասն գետոց հաւասար ոյժ կ'ունենայի»: Եւ երբ մարդիկ նմա օգնութեան հասնին աղօթիւք, կ'իջանէ վերստին ի ծով. այս անգամ կը յաղթէ դիւին ու կը տարածէ զջուրս ամենայն կողմ:

Միհր եաշդն նուիրեալ է աստուածոյն որ կ'իշխէր արեգական և վարէր ընթացս նորա: Միհր՝ որոյ հնագոյն ձեւն Mithra, է «հրեշտակն արեգական, արեգակ, բարեկամ, ուխտ, դաշն»: Ըստ Աւեստայի երկու գլխաւոր կերպարանս ունի. տառուած է՝ Ա, առեղծեալ լուսոյ. Բ, ճշմարտախօսութեան և ուխտապահութեան:

Միթրօ-տրուխշ կ'ըսուէր ուխտադրուժն, ստախօսն և պարտքը չվճարողը: Զսա կը պաշտէին ոչ միայն Պարսկաստանի մէջ, այլ և ի Հայաստան[1], ի փոքր Ասիա, ի Յունաստան և ի Հռոմ[2]: «Եւ

1. «Գայր հասանէր (Գրիգոր) ի Մհրական մեհեանն անուանեալ որդւոյն Արամազդայ, ի գիւղն զոր Բագայառիճն կոչեն (այժմ Բէգէռիճ գիւղ՝ ի Դերջան գաւառի բարձր Հայոց) ըստ Պարթեւական լեզուին: Եւ զայս ի հիմանց բրեալ խլէին և զգանձս մթերեալս աւար հարկանէին և աղքատաց բաշխէին, և ըզտեղիսն նուիրէին եկեղեցւոյ... և յայնմ հետէ փոյթ ի վերայ ունէր, զառընթերակաց արքունիսն հանդերձ մեծամեծ աւագանւոյն և ամենայն ազատագունդ բանակաւն, աստուածեղէն իմաստութեամբն վարդապետէր»: Ագաթանգ. էջ 593:

2. Միհրի պաշտօնը Հռովմայեցւոց մէջ Քրիստոսէ 60–70 տարի յառաջ միայն սկսաւ ծաւալիլ, յորժամ դիցապաշտութիւնը իւր պաղած անդամները կը ջանայր կենդանացնել արեւելեան երեւակայութեան եւ կրօնից ջերմութեամբը: Դիոն Կասիոս կը պատմէ, որ երբ Պարթեւաց Վողոգէս արքային եղբայրը Տրդատ Հռովմ հասաւ թագաւոր պսակուելու համար (61–62), կը գրուցէր Ներոն կայսեր՝ թէ աղերսաւոր կու գար առ նա որպէս առ նոր ոմն Միթրա. (Կգ. 5):

ստեղծեցի, ասէ Ահուրամազդա, զՄիհր աստուած՝ որ կ՚իշխէ ի վերայ լայնածաւալ արօտից, որպէս զի ինձ հաւասար պաշտօն մատուցանեն նմա և կարդան զնա. մի դրժեր երբէք զուխտն զոր կնքեցեր կրօնակցի կամ այլադենի հետ։ Միհր աստուած շնորհէ արընթաց ձիս այնմ՝ որ ոչ դրժէ նմա. կրակն՝ որդին Ահուրամազդայ, պահէ զայնպիսին ուղղութեան մէջ, և Ֆրաւաշիք պարգևեն նմա ընտիր զաւակունս»։

Ստեղծեալ աստուածն յետ ժամանակաց ստեղծողէն աւելի պաշտամանց և երկրպագութեանց արժանացաւ, ու յինքն ամփոփեց և անձնաւորեց մազդէական հաւատքը։ Սա էր որդի Ահուրամազդայ և միջնորդ ընդ հայրն և ընդ մարդիկ, լոյսն ամենատիփու և կենդանարար, արեգակն ճշմարիտ՝ տարբեր ի նիւթական աստղէն, որ աւելի վերջերը խառնեցաւ միացաւ բուն աստուծոյն հետ։ Ի պատիւ նորա մեծաշուք և խորհրդաւոր հանդէսներ կարգեալ էին։ Նմա նուիրեալ էր օրուան մէկ պահը արշալուսոյ ծագմանէն մինչև ցկէս օր. ամէն ամսոյ վեշտասաներորդ օրը, ինչպէս և պարսկական հին տումարին եօթներորդ ամիսը՝ նորա անուամբ յորջորջեցան։ Միհր ամսոյ հնգետասաներորդ օրէն՝ սկսեալ վեց օր Միհրական տօն կը կատարուէր, յորում արքայից արքայն միայն կրնար ինք զինքը տալ արբեցութեան և ի կաքաւս հեշտութեան. ազնիւ իւղով կ՚օծուէր, գոյնզգոյն փառաւոր պատմուճան մը կը զգենոյր, գլուխը կը դնէր զխոյրն՝ որոյ վրայ կը փայլէր արևուն բոլորշի պատկերը, և ժողովրդեան զգեստներ կը բաշխէր։ Ասոնք այլ իրարու ծաղկներ, պտուղներ, արմաւ, նուռն, բրինձ և խունկ կ՚ընծայէին։ Անշուշտ այն տօնին առթիւ էր, որ Հայոց Թագաւորն ըստ վկայութեան Ստրաբոնի՝ քսան հազար քուռակս ձիոց կը ղրկէր ի հարկ աշխարհի։

«Միհր աստուած՝ որ յաւէտ ճշմարտախօս է, հազար ականջս ունի, բիւր աչկունս (յոտևս ամենադէտ և ամենաքննին), և անդուլ և անքուն հսկէ վասն բարօրութեան արարածոց»։ Նորա շնորհիւք կանգնեն իշխանք զգղեակս բարձրաբերձս, լերինք կը զարդարուին ազգի ազգի ծաղկօք և բուսովք, գետք կը թաւալին յորդահոսան. սա բերէ զլոյս համօրէն աշխարհի, առաջնորդէ բանակաց, կազմէ զճակատս առ յաղթութիւն այնոցիկ որք գիտեն պատշաճ աղօթիւք

1. Այս է՝ ըստ Պիւրհանի Գաթիի՝ աշնանային գիշերահաւասար։ Արևելեան մատենագիրք նոյն օրերուն կը դնեն աշխարհիս ստեղծումը, միանգամայն և Հըրուդենայ ձեռօք Աժդահակայ սատակումը։

և արարողութեամբք յաշտ առնել նմա։ Պատուհասէ կուրութեամբ, խլութեամբ կամ կաղութեամբ զստախօսս և զուխտադրուժս։ Բնակարան նորա է ի բարձունս Էլպուրզայ, ի պալատան՝ զոր ԱՀուրամազդա կառոյց վասն նորա, յորում չիք գիշեր և ոչ խաւար, ոչ Հողմն ցրտաշունչ և ոչ խորշակ տօչորիչ, ոչ մառախուղ և ոչ ապականութիւն։ — Ամենայն դեւք խոյս կու տան ի նմանէ. աջ կողմէն կ'երթան Արաօշա՝ Հրեշտակն պաշտամանց, և Ռաշնուրազ՝ Հրեշտակն արդարութեան, Ոգիք Ջուրց, ծառոց և այլն։ Երբ երկնային դրախտէն (կարօ-նմանա) դուրս կ'ելլէ, ակեամբակ և ալխտակ չորեք ձիովք լծեալ կառք մը Հեծած է. պէս պէս զէնքեր կը կրէ իւր Հետ՝ առ ի խորտակել զդեւս, որոց ամենէն սարսափելին է վազրա[1]։

Ֆրաւարտին եաշդն՝ որ երկարագոյնն է, նուիրեալ է պաՀապան Հրեշտակաց՝ որոց թիւն անՀամար էր։ Աւեստայի մէջ սոցա անունն է ֆրաւաշի՝ «պաՀապան». բեւեռագիր արձանագրութեանց մէջ ֆրաւարդիշ, որ պաՀուած է փրաւարտ յատուկ անուան մէջ։ ԱՀուրամազդա կարգեր էր զնոսա ամենայն ուրեք՝ բարի արարչութիւնը պաՀելու և չար ոգւոց դէմ պաշտպանելու Համար։ Դոցա ձեռօք կը բանէր զերկինս և զերկիր, զջուրս և զՀամօրէն արարածս, որք կը խանգարէին և կ'աւրուէին՝ եթէ անոնք չըլլային։ Ամենայն բարի էակ՝ կենդանի, մեռեալ կամ տակաւին անծին, ունէր իւր յատուկ ֆրաւաշին[2], որ անդստին յաւիտենից եղած է։ Տեսակ մը նախատիպք էին նման գաղափարացն Պղատոնի, որոյ կարծեօք ամենայն ինչ կրկին գոյութիւն ունէր, առաջին՝ գաղափարական, երկրորդ՝ իրական։ Ի սկզբան ֆրաւաշի անուամբ մեռելոց և նախաՀարց ոգիքն կամ Ուրուքն միայն կ'իմացուէր. ինչպէս Ռիգդայա՝ «Հարք» ի ՊրաՀմանս և Manes ի Հռովմայեցիս։ — Յոգանու մատենից մէջ՝ ֆրաւաշ. երբեմն ալ ֆրաւշ։

1. Վէրթրագ՝ արդի պարսկերէն է «տապար, կացին»։ Հայերէն «վազր» ալ նոյն նշանակութիւնը ունել կը թուի։ Վազրա՝ Վեդայի մէջ նշանակէ «կայծակն» որ Ինդրայի մեծ զէնքն է։ Նաշդ մի ալ կայ Վանանդ աստեղ և աստուածոյն նուիրեալ, որոյ պաշտօնն էր խորտակել գաւերիչս բարւոյ արարչութեան։ Վանանդ՝ ըստ փարսի Տաղաւրաց, է նիր կալթին, որ չեշտակի գծով վրայ կեցած է՝ զարՀուրՀեցնելու Համար զդեւս. և է սա ՄիՀր աստուածոյն վազրա կոչեալ զէնքն՝ զոր դիւաց գլխուն վրայ կախեալ կը բանէ միշտ։

2. Ֆրաւաշիս՝ առաջնորդակ, նախնադակ. ի վաս՝ «ընակել, կամ» արմատոյ. ֆրա՝ առաջին, նախկին։

# Ժ

Նեյայիշք[1] կամ «Նուագք, աղօթք» հինգ են․ Նուիրեալ Արեգական (Խուրշիտ), Հրեշտակին արեգական (Միհր), Լուսնոյ (Մահ)․ Ջուրց (Աբան), և Կրակի (Ադաշ)։ Այսօր ամենայն բարեպաշտ Փարսի պարտի օրը երիցս զրուցել Խուրշիտայ և Միհրի նեյայիշները․ եթէ յայսմ անհոգութիւն ըլլայ, մահուընէ ետքը հոգին չի կրնար անցնիլ Չինուատ կամրջէն։ Լուսնոյ աղօթքը ամիսը երեք անգամ հարկ է ասել։ Ջրոց և կրակի աղօթները հոգեշահ են, այլ ոչ ստիպողական։

Աֆրինկանք կամ Օրհնութիւնք կը զրուցուին ի սկզբան ընթրեաց՝ որք ի պատիւ հրեշտակի կամ հանգուցելոյ հոգւոյ ուրուին կը տրուին։ Ընթրիքը կը բաղկանան ի գինւոյ, կաթէ, հացէ և ի մրգոց․ յետ սրբագործութեան՝ զոր քահանայն միայն կրնայ կատարել, բազմականք կը ճաշակեն։ Այս արարողութիւնս պարտ է ընել վեց յեղանակաց (կահանպարաց) տօներուն, որոց իւրաքանչիւրը հինգ օր կը տեւէ․ միանգամայն և տարւոյն աւելեաց հինգ օրերուն մէջ։

Հինգ Կահքն նուիրեալ են հինգ հրեշտակացն՝ որք կը հսկեն ի վերայ հինգ պահուց, յորս կը բաժանին գիշեր և ցերեկ։ Մէն մի կահ կը զրուցուի իւր յատուկ պահուն։

Սիրօզան աղօթք կամ տեսակ մի Օրացոյց է, յորում նշանակեալ են կարգաւ երեսուն հրեշտակքն՝ որոց իւրաքանչիւրը կը հսկէ ամսոյ մէկ մէկ օրուան, և որոյ անուամբը կը յորջորջի օրն։ Այս աղօթքս կը զրուցուի գլխաւորապէս մեռելոց համար, մանաւանդ է երեսուն օր ետքը։

1․ Բազմաթիւ լեզուաւ՝ Նեյէ կամ Նայիշ, որ է յծարդ հայերէն «Նուագ» բառի։

# ԺԱ

Արդ մնայ մեզ համառօտ տեղեկութիւն մի տալ Վէնտիտատի[1] վրայ, որ նախնի Պարսից կրօնական՝ քաղաքական և պատմական օրինագիրքն էր, և որ իւր այժմեան վիճակին մէջ՝ կը բաժանի ի քսան և երկու ֆարկարտս կամ հատուածս։ Ոճոյ զանազանութենէն մարթ է կարծել՝ թէ ոչ միոյ հեղինակի և ոչ իսկ մէկ ժամանակի գործ է։

Ըստ նիւթոց կրնամք բաժանել զՎէնտիտատ յերիս մասունս. առաջինք՝ (Ա–Գ ֆարկարտ՝) աշխարհագրական և պատմական տեղեկութիւններ կը պարունակէ։ Երկրորդը (ֆարկ. Դ–ԺԷ) ունի զօրէնս, զպատուիրանս, զկարգս և զծէսս պաշտամանց։ Երրորդին պարունակութիւնքը զանազան են, և մարթ է համարել զայն իբրև յաւելուած առաջնոց։

Առաջին ֆարկարտին մէջ կը նկարագրին մազդէական վեշտասան աշխարհք։ Ահուրամազդա՝ յետ ստեղծելոյ զերկիր, շինէ նախ քան զայլ աշխարհս զԱիրիանեմ-Վաէժօ[2] զվայրն երանութեան կամ զդրախտն. սոր դէմ մահարարն Անկրօ-մաինիւնեուշ կը կանգնէ զօձն աշագին և զձմեռն՝ որ է գործ դիւաց[3]։ Ահուրամազդայ երկրորդ ձեռակերտն եղաւ Գաւ, յորում գտանի Սուղտա. չար ոգին ալ սորա փոխարէն գոյութիւն տուաւ ժանտամահի՝ որ սատակէ զարջառս և զոչխարս։ Երրորդն եղև Մուրու (Մէրվ). չար Ոգին ալ հնարեց զապանութիւնս և զաւեր։ Չորրորդն է երջանիկն Պախտի (Բակտրիա), որոյ դէմ չար Ոգին կը վանէ զմժղակաց ճճիս և զթիւնալից բոյսս։ Հինգերորդը՝ Նիսա՝ ի միջոց Մուրուի և Պախտիի. սորա փոխարէն

1. Կրճատումն Վիտաէվօ-տադէմ բառից՝ որք նշանակեն «տուեալ ընդդէմ Դիւաց»։ Բաժլաւի գրութեանց մէջ բառս կը թարգմանի Ջուտ-շէտա-տատ։

2. Աիրեանեմ-Վաէժօ, որ թարգմանի «Արեաց վիճակ», է բնագաւառ Արիական ազին, ընդ մէջ Օքսոս և Եաքսարտես գետոց։ Պարսիկ մատենագիրք զայն դնեն յԱտրպատական։

3. Զարմանալի է՝ որ ձմերան նկատմամբ Աւեստայի տուած վարդապետութիւնը ապրած ըլլայ Եղիշէայ Զարչարանաց ճառին մէջ. «Յուրտ ոչ դողնացելոյ, այլ պարզ, հուրատոյց, նմանեալ է անպատաարեր ձմերայնոյ, և ձմեռն ճշմարիտ ատելութեան յարին, որ և գործեցաւ իսկ առ ժողովուրդն». էջ 288։

մահաբեր ոգին կը ստեղծէ զմեզս և զկապած: Ապա կու գան կարգաւ Հարոյիւ (Հէրատ), Վաէքէրէթա (Գապուլ). Ուրվա արօտաշատ. Խնէնթա ի Վհրքանա (ի Վրկանս), Հարախուաիթի գեղեցիկն (Արաքոսիա՝ ըստ Յունաց, ի հարաւոյ Գանտահարայ). Հաէթումանդ (այժմեան Հիլմանտ և ըստ հնոց՝ Էտիմանտէր). Ռագա (այժմեան Ռէյ). Չախրա. Վարենա (Կրման, և ըստ ոմանց Կիլան). Հափտահինտու կամ աշխարհն եօթնավտակեան, որ է Հնդսոյ դաշտավայրը. և վերջապէս Ծովեզերեայ Գաւառք[1]: Ասոնց իւրաքանչիւրին դէմ ալ Անկրօ-Մայնեուշ մէկ մէկ նորանոր աղէտներ կը նիւթէ. կարկուտ և չքաւորութիւն. Բարիկա (պարիկ՝) որ սուտ աստուածներ կը պաշտէ. տգամական ախտ. թագուհի մեռելոց. կախարդութիւն. անհաւատութիւն. այրումն դիականց. սաստ տաշորիչ և այլն:

Երկրորդ փարկարտը կը ճառէ զՅիմա Նահապետէն, որ երբեմն Ադամայ և ընդհանրապէս Նոյայ նկատմամբ աստուածաշնչական աւանդութիւնքը կը յիշեցնէ մեզ:

Երրորդ փարկարտը կը պատուիրէ մշակել զերկիր, շինել բնակարանի՝ հանդերձ տամբ, կրակով, արջառօք, կանամբք և որդւովք, և ի բաց կալ ի թափառական կենաց: Գարւոյ և արմտեաց մշակութիւնը աւելի կը նպաստէ մազդեզն կրօնից ծաւալման՝ քան հազար պատարագք և բիւր աղօթք: Այս փարկարտս նշանաւոր է յոյժ. քանզի կը ցուցանէ՝ թէ Մազդեզունք առաջին եղան Արիական ազգաց մէջ, որք քաղաքականութիւն ընդունեցան և թողուցին զասդանտական և զաւազակաբարոյ կենցաղս:

Չորրորդ փարկարտը կը սահմանէ զդաշինս՝ որք վեց տեսակ են. առաջինը՝ բերանացի խոստմամբ կ՚ըլլայ. երկրորդը՝ ձեռաց խառնըմամբ. երրորդը՝ ոչխարի չափ արժէք ունեցող բանի մը համար. չորրորդը՝ եզի մը արժէքին համար. հինգերորդը՝ մարդոյ մը (գերւոյ) արժէքին համար. վերջապէս վեցերորդը՝ որմնափակ և բարեբեր երկրի կամ կալուածոյ մը արժէքին համար: Դրժողաց մերթ տուգանք և մերթ տուառ գան որոշեալ է:

1. Թէպէտ այդ աշխարհագրական անուանց մի քանիին տեղերը տակաւին ստուգուած չեն, բայց հնագէտք համամիտ կը կարծեն՝ թէ սոցա ամէնն ալ Հնդոս և Սիր-Տարեա գետոց, Հնդուքուշ լեռնագօտւոյն և Կասպից անապատին մէջ տեղը գտնուող աշխարհին՝ այս է Պուխարայի, հիւսիսային Պարսկաստանի և Աֆղանստանի մէջ են: Այս փարկարտս շատ հին ժամանակի մէջ շարագրուած կ՚երևի. հաւանօրէն յառաջ քան զարշաւելն Արիական ազգաց դէպ յարևմուտս:

Հինգերորդէն ց ԺԸ փարկարդաց մէջ մանրամասն պատուիրանք կան դիականց նկատմամբ. թէ ինչ ձեւով պարտ է կառուցանել Ըղ-Ցախմայ[1] կամ «դաշտարակս լռութեան», այս է զգերեզմանատեղիս, և թէ ինչ պէտք է ընել սրբուելու համար, երբ մէկը դիակի մը դպած ըլլայ։ Վենտիտատի հիմնական սկզբունքներէն մէկն է դիակը ամենապիղծ համարել. վասն զի յորժամ մարդս մեռանի, Նազուշ այսը կը մտնէ նորա մարմնոյ մէջ ու կը յարձակի եւ անոր դպչողներուն վրայ։ Եւ որովհետև հողը, հուրը և ջուրը ամենասուրբ տարերք են, չի կրնար ոք թաղել՝ այրել զմեռեալս կամ արկանել ի ջուր՝ առանց մեծամեծ պատուհասներ հրաւիրելու աշխարհիս վրայ։ Այդպիսի ոճիր մը ոյժ կու տայ դիւացն՝ որք տիրացած են անկենդան մարմնոյն։ Իսկ Նազուշի ազդեցութենէն և պղծութենէն զերծ մնալու համար՝ զօրաւոր միջոց մը կայ, զոր յառաջագոյն գործադրելու պարտական են անոնք՝ որ դիակի մօտենալու ստիպեալ են։ Պէտք է մասնաւոր հանգամանօք շուն մը[2] բերել ու մեռելոյն առջև այնպէս կեցնել՝ որ անոր նայի. շան հայեցուածքը զՆազուշը կը վանէ ու կը խորտակէ։ Եթէ մարդ մը հպի դիակի՝ առանց այդ ամենակարեւոր պայմանը կատարելու, կը բռնուի ի Նազուշէն. և եթէ այնուհետև ուրիշի դպչի, այն ալ Նազուշի ընդունարան կ'ըլլայ, և այսպէս հետզհետէ մինչև ցմետասաներորդ այր. յորմէ ազատելու համար հարկ է՝ որ ամէնքն ալ ինն գիշեր ապաշխարեն և ստէպ լուացուին՝ նախ գումիզաւ և ապա ջրով։

Պարտ է դիակը բնակութենէ հեռի, անբեր կամ լու եւ ապառաժ լերան կամ բլրոյ գագաթան վրայ յատկապէս պատրաստուած գերեզմանատեղին տանիլ։ Ցախման քառակուսի և որմնափակ պարտի լինել։ Գետնէն հողը պատշաճ խորութեամբ փորելէ

1. Այս անուան լծորդ է մեր «թաղել», «թաղումն» բառի։ Է և արդի պարսկերէն՝ տախմ կամ տախմա, որ ըստ Պիւրնուֆի Գաթիի նշանակէ՝ Ա. ստորերկրեայ տեղի, ուր դնեն զմեռեալս տապանօք. Բ. քարայրի մէջ կամ լերան վրայ շինեալ սենեակ, յորում մի քանի դիակ միանգամայն կը դնեն. Գ. դագաղ. Դ. գերեզմանատեղի կրակապաշտից (Կոչրիանեկի մեծուսի)։

2. Պղծութեան փոխադրականութիւնը արգիլելու համար՝ շունը աչացը կապերուն վրայ մէկ մէկ սեաւ բիծ ունենալու է. կամ եթէ ճերմակ է, ականջները դեղին ըլլալու են։ Այսպէս կը պահանջէ Վէնդիտատը. բայց ըստ Պօնտահիշի՝ ո՛ և է շուն կը խորտակէ զՆազուշն, բաւական է որ դիական հայի. եթէ շան հայեցուածքը մեռելոյն միայն մազերուն կամ եղունգներուն հանդիպի, Նազուշը խորտակուած չըլլար։ Անգղը, սեաւ ագռաւը, ձին ալ կը վանեն զնա՝ երբ սոցա ստուերը հանդիպի դիական։

և հանելէ յետոյ՝ աղիւսով կամ քարով կը յատակեն։ Մէկ կողմէն միւսը երկու ուղի պիտի ձգուի՝ որ զիրար կտրեն ի միջավայրն։ Դուռը արեւելից կողմը յանդող ճանապարհին ծայրը պիտի ըլլայ։ Տախմային մնացած տեղուանքը՝ դիակունք կը զետեղեն առանց ծածկութի, երկաթեայ կափարիչներու կամ քարի վրայ, ի գիշատուին ազատուելոյ, անգեղց և շանց և յոգուտ կենդանեաց բարի արարչութեան, որք կը բառնան զպղծութիւնս յերկրէ։ Մեռելոյն երեսը արեւուն դարձած պիտի ըլլայ. մազերը և ոտքերը մեծամեծ քարերու պիտի կապուին, որպէս զի չըլլայ թէ թռչունք կամ գազանք ոսկերոտիքը բառնալով ջրոց մէջ ձգեն։ Մեռելակիրք տանուացն երկու պիտի ըլլան, իրարու պարանաւ կապուած և ձեռքերնին քանկներու մէջ անցած։ Իսկ եթէ մեռեալը յղի կին մի է, չորս անձինք պիտին։ Այդքա տախմային մէջ մտնելու առեննին չունը երկու անգամ կը կեցնեն դարձեալ՝ որ դիական նայի. ապա մասնաւոր արարողութեամբք կը սրբուին[1]։

Ութերորդ Փարկարտին մէջ կրակի վրայօք վարդապետութիւններ կան, զորս մարթ է հետագայ եղանակաւ եզրակացնել։ Կրակը յինքեան սուրբ տարր մի է, նշան աստուածային զօրութեան և սրբութեան։ Ամենայն կրակ արժանի է յարգանաց, ու ներելի չէ

1. Շարտէն կը պատմէ (1670ին), թէ Սպահանէն կէս փարսախ հեռաւորութեամբ բոլորաձեւ աշտարակ մի կար 3 տանաչափ բարձր, որ ամենեւին դուռն կամ մուտք չունէր։ Սանդղօք կը հանէին դրսէն կրակապաշտք զմեռեալն, ու մէջը կը ձգէին ի կուր ագռաւուց, որոց կարգէ դուրս բազմերամ թռչունը տեսեր էր այն կողմերը։ Այդպիսի աշտարակներ շատ կը գտնուին նաև Հնդկաստանի այն գաւառաց մէջ՝ յորս բնակին փարսիք։ Երբեմն աշտարակին մէջ երկաթեայ կասկարայ մը կայ՝ որ դէպ ի միջավայրն հակեալ է, և որոյ վրայ կը դրուի դիակը։ Յետ քայքայելոյ մարմնոյն, ոսկրոտին երկաթներու մէջտեղէն վար կ՚իյնայ ու կը դիզուի աշտարակին յատակը։ Տախմային մէջտեղն ալ երբեմն փոս մը փորուած է՝ մէկ քանի տանաչափ խորութեամբ. այս փոսս բոլորտիքը՝ իրարմէ մարդաչափ հեռաւորութեամբ համակեդրոն և շրջանակաձեւ ջրդաններ շինուած են, զորս կը կտրեն ուրիշ ջրդաններ որք կը ձգին ի շրջապատէն ի վայր զփոսն։ Ջրդանաց մէջտեղը մէկ դիակ մը միայն դնելու չափ տեղ թողուած է. անդ կը զետեղեն զայն՝ գլուխը դէպ ի շրջափակ որմն։ Յետ ժամանակաց կը հաւաքեն զոսկերոտին և կը դիզեն փոսին մէջ, որ երբ լցուի, պարտ է ծածկել զայն ու նոր տախմա մը ճարել։ — Զմեռեալս՝ թռչնոց և գազանաց գիշատել տալու սովորութիւնը Մողոլաց մէջ ալ կը տեսնուի։ Պարթեւ թագաւորք իրենց պետութեան մէջ դիակը այրելու սովորութիւնը մտուցեր էին, որ յոյժ ատելի էր Զրադաշտականաց։ (Տես Ռօլինսընի Պատմ. Սասանեանց, էջ 9։ — Պ. Ուէսդի Շայաստլա-Շայաստ, էջ 247)։

զայն սրբանել, այս է՝ մաքրել։ Եթէ ոք պղծէ զկրակ դիակամբք կամ աղտեղութեամբք, որ ամենամեծ մեղք է, պարտ է սրբագործել զայն անմիջապէս։ Արդարև վառել միայն վայել էր զնա ի վերայ սեղանոյ և ի պատիւ Բարձրելոյն։ Բայց Ահուրամազդա շնորհած է մարդոյ՝ որ իւր աշխարհային պիտոյիցը համար ալ ծառայեցնէ, պայմանաւ՝ որ տան՝ խոհանոցի կամ գործարանաց մէջ վառուած կրակը որոշեալ ժամանակէ մը ետքը ազատ ըլլայ այդ գերութենէդ ու տարուի Տատկահ ատրուշանին վրայ դրուի։ Այս պատուէրս կատարողին արդիւնքը մեծ կը լինի յոյժ [1]։

Տատկահին կրակը տասն և վեց տեսակէ պարտի բաղկանալ. զոր օրինակ՝ բրուտի, աղիւսագործի, երկաթագործի, ներկարարի և այլն. սոցա մէջ անհրաժեշտ պէտք է գտնուի եւ մեռելոտւոյ դպած կրակ։ Թէպէտ զմեռեալս այրելն աններելի յանցանք մի է, այսու հանդերձ այլազգինի կամ մեղսագործի զդիակ այրելու համար ի կիր առած կրակը յետ դժուարին արարողութեանց պարտ է առնել դնել ի վերայ տատկահին, քանզի սա կենդանի մարմնոյ մէջ գտնուած ջերմութիւնը առած կը համարուի։ Այդ բաղադրեալ հուրդ կը ներկայացնէ բնութեան զօրութիւնը՝ որ զհամայն կը կենդանացնէ, զօրացնէ ու պայծառացուցանէ։

Իններորդ փարկարտին մէջ երկարօրէն կը նկարագրի իննօրեայ ապաշխարանաց եղանակը, զոր պարտի գործադրել ոք՝ դիակի դպչելով ստացուած պղծութենէ և Նասուշի ազդեցութենէն ազատելու համար։ Նախ զումէզ պիտի ըմպէ. յետոյ բազմի քարակոյտներու վրայ, որոյ բոլորտիքը քահանայն դիւթական շրջանակներ կը գծէ հողոյն վրայ, և մէկ քարակոյտէն միւսը երթալու առենը մարմինը պիտի շփէ զումիզաւ, ապա աւազով. և հուսկ յետոյ լուանայ ջրով։ Գումիզաւ սրբուելու սովորութիւնդ անշուշտ շատ հին ժամանակէ մնացած էր. կովը նախնի Արեաց յոյժ սըրբազան կենդանին էր, վասն որոյ և անոր մէզը սրբարար և օգտաւէտ համարուած էին։ Գիտելի է սակայն՝ որ Արիք ամպի ալ կով կ'ըսէին. միթէ անձրևի կամ ամպի ջուրը յետոյ կովու մէզի՞ փոխուեցաւ։

Տասներորդ փարկարտը Նասուշի ազդեցութենէն ազատելու համար աղօթներ կը սահմանէ։ Մետասաներորդը՝ բնակարանները, արջառը և ոչխարը սրբելու համար պէտք եղած աղօթները կը ցուցանէ։

1. Տես Պ. Հարլեզի Աւեստան. էջ 162, հտ. Ա։

Երկոտասաներորդին մէջ սահմանեալ են՝ թէ քանի օր պարտ է սուգ ունել հօր, մօր և ուրիշ ազգականաց համար։ Եթէ հանգուցեալն իւր բնական մահուամբ և արդար մեռած է, սորա օրերը կիսով չափ նուազ են՝ քան երբ մեղաց մէջ կամ անձնասպանութեամբ[1] զրկուի ի կենաց։

ԺԳ. և ԺԴ. ֆարկարդները կը խօսին շանց և ջնջրեաց[2] վրայ, զորս պէտք չէ չարաչար գործածել, վիրաւորել, խեղել, անօթի ձգել և մեռցնել։ Եթէ ոք այդպիսի յանցանք մը գործէ՝ խստիւ կը պատժուի։ Մանաւանդ ջնջրի մը սպանանելը սոսկալի եղեռն մի է, վասն զի այդ կենդանին հազար արու և հազար էգ շանց ոգին ունի իւր մէջը։ Ոճրագործը պարտի կամ հազար գան ըմպել խարազանաւ, և կամ տասն հազար վնասակար կենդանիս սպանանել, որպէս օձ, մուկն, մողէզ, գորտ, մրջիւն և այլն, և տասն հազար բեռինս փայտի կրել ի կրակատունս։

Շունը մեծ տեղի մը բռնած է մազդեզն դենի մէջ. որչափ որ այլանդակ երևի մեզ այն կարևորութիւնը՝ զոր կու տային նախնի Պարսիկք այդ անասնոյդ, նոցա գաղափարաց համաձայն էր։ Բնութիւնը յարատև պատերազմ մի էր ընդ մէջ բարի և չար արարածոց. արդ շունը ոչ միայն կը պահպանէ զիւր տէրն և նորա զանձերը, այլ և զանդեայս և զհօտս ոչխարաց և զհաւս՝ որք Ահուրայ արարածքն են, զբնակարանս, զագարակս և զաւանս՝ որք Մազդայ հաճոյական վայրքն են։ Կենդանի մը՝ որ այդքան նշանաւոր ծառայութիւններ կը մատուցանէ բարի արարչութեան, մեծ խնամոց և յարգանաց արժանի կը թուէր և Ահուրամազդայ յոյժ սիրելի։ Շնջրին, աղուէսը, ոզնին՝ շան այլ և այլ տեսակները համարեալ էին. շան մեռելոտին մարդկային դիակի չափ վտանգաւոր և պղծիչ էր։

ԺԵ ֆարկարդն ցուցանէ Բէշոդանոս կոչուած յանցանքն և նոցա պատիժները։ Մազդէականը դենադարձ ընողը, պահապան

1. Անձնասպանութիւնը մարկ-արգան (մահու արժանի կամ մահացու) կոչուած մեղքերէն է, որպէս և շնութիւն, որք զհոգին կ'իջեցնեն ուղղակի ի դժոխս։

2. Աւեստայի մէջ գործածուած անունն է ուդրա, զոր Պ. Հաուկ Noter dog և Otter (գաղղ. Loutre) կը թարգմանէ. իսկ Պ. Հարլէզ՝ Castor. — Միջնադարեան մատեններուն մէջ՝ պաւար-ի-աւի, որ է ջրոյ պաւար. և Պ. Ուէսդ թարգմանէ զպաւար Loutre, castor. Անգղիարէն beaver նշանակէ Castor (Տես Մանեօ-խրատ)։ Բայց աւելի հաւանօրէն՝ Աւեստայի պաշտպանած անասունը Loutre է։

չան կարծր ոսկր կամ մետաղակար ուտելիք տուողը, ծոցւոր չան զարնողը Բէշոդանոս են:

ԺԶ փարկարտը կը վերաբերի դաշտանկի, զոր պարտ է տնէն դուրս և ի կրակէ և ի բարսմանց հեռի տեղ մը բնակեցնել, և կերակուր պաշտել նմա երկաթեայ կամ կապարեայ անարգ սպասուք: Միպիլեան վարդապետը որ Եզտ գնացեր էր, կը պատմէր մեզ՝ թէ կրակապաշտք մինչև ցայժմ կը բնակեցնեն զդաշտանիկն առանձին խուղի մը մէջ՝ որ ամենևին հաղորդակցութիւն չունի տան հետ. անդ ոչ զարեգակն պիտի տեսնէ, ոչ զաստեղս և ոչ զանասուն. ոչ ոք պիտի խօսի ընդ նմա: Մէկ քանի օր միայն ետքը՝ նախ գումիզաւ, և ապա պարզ և անուշահոտ ջրերով կը լուացուի և տուն կը վերադառնայ:

ԺԷ փարկարտը կը տնօրինէ այն աղօթները՝ զորս պարտ է ասել եղունգ կամ մազ կտրելու ատեն. եթէ պատշաճ աղօթքն չըրուցուին, կտրուած եղունգներն և մազերն աճաւոր զէնքեր կ'ըլլան դիւաց ձեռքը՝ բարի արարչութիւնը վեր ի վայր ընելու համար. մինչև անգամ ամպք և հողմունք անձրև բերելէ կ'արգիլուին յեղանակին: Անշուշտ այդ գաղափարդ ալ կը հետևէր այն վարդապետութենէն, թէ որ ինչ ելանէ ի մարմնոյ՝ պիղծ է և պատկանի Արհմենի: Կտրուած հերը և եղունգները մեծ զգուշութեամբ գաղտընի և մեկուսի տեղ մի պարտ է թաղել ի հող, որոշեալ խորութեամբ բացուած երեք ծակի մէջ, կարդալով այն աղօթներն որ զնոսա դիւաց իշխանութենէն ազատ կը պահեն, և ծակերուն բոլորտիքն վեց կամ ինն շրջանակս գծել:

ԺԸ փարկարտին մէջ Ահուրամազդա կ'ըսէ Զրադաշտայ. «Են բազումք՝ որ զքահանայական փանդամն, զխրաֆդղդրաղնա[1] և ըզբարսմունս կը կրեն, սակայն մերկ են ի դենէս. մի անուաներ զնոսա քահանայս. նա որ զգիշերն ի քուն քնով կ'անցնէ՝ առանց աղօթից և առանց կրօնական պարտքերն ընելու, նա որ ոչ ուսանի զօրէնս և ոչ կատարէ զսահմանեալ կարգս պաշտամանց, չէ «աթրաւա» (կրակաքուրմ):

Ահուրամազդա Բարօտար Թռչնոյ (աքաղաղի) գովեստը կ'ընէ, որ ի ծագել այգուն կ'աղաղակէ. «Զարթիր մահկանացու, օրհնէ զարրութիւն որ ամենէն թանկագին բանն է. չի վայլեր քեզ երկար քուն» և այլն:

1. Տեսակ մի գաւազան էր ճճիները մեռցնելու. միանգամայն և նշան քահանայութեան:

Դրուխչ այսը Արտօշա հրեշտակին ահագին լախտէն սարսափած, կը յայտնէ նմա զմեղաւորսն՝ որոց հետ խառնակելով կ՚աճեցնէ զսերունդ իւր. Նա որ ընաւ նոր զգեստ չի տար՝ յորժամ խնդրեն ի նմանէ. Նա որ կը միզէ ոտից ծայրէն միայն ոտնաչափ մի հեռաւորութեամբ:… Այդ երկու յանցանաց քաւութիւն կայ. բայց երբ ոմն տասն և հինգ տարեկանէ աւելի ըլլալով, պոռնկի հետ առնչութիւն ունենայ, նմա քաւութիւն չկայ. այդպիսին իսպառ կորուսեալ է և պիղծ:

Իսկ Ահուրամազդայ ամենէն աւելի ատելին՝ երբ մազդէական մը ամուսնանայ ընդ դիւապաշտի, երբ մէկը գիտութեամբ մերձենայ դաշտանկի. այս վերջինս՝ յանցանացը քաւութեան համար պարտի հազար ոչխարս նուիրել, տալ քահանային սոցա որոշեալ մասունքը, որպէս զի կրակի ճարակ ըլլան. հազար բեռինս փայտի բերել կրակի. երեսուն կամուրջ հաստատել. հազար խթան և հազար հարուած խարազանի (սրաօշաքարանա) ըմպել:

ԺԹ փարկարտին մէջ կը տեսնենք՝ թէ մահագործ դիւապետն Անկրօ-Մաինեուշ խաղայ գայ ի հիւսիսոյ և կը պատուիրէ Տրուխչ այսին երթալ սպաննել զԶարաթուշդրա: Բայց սա Եաթա-ահու-վաիրեօ աղօթքը կը գրուցէ, բարի ջրերը և զմազդեզն դենը օգնութեան կը կանչէ: Տրուխչ ահաբեկ կը փախչի ու իւր տէրոջը դառնալով «Սատանոս Անկրօ-Մաինեուշ, կ՚աղաղակէ, ա՛լ կարելի չէ ինծ ճնասել Զարաթուշդրայ»: Յայնժամ Անկրօ-Մաինեուշ անձամբ կ՚ուզէ փորձել զմարգարէն. «Մի՛ խորտակեր զիմ արարածս ու անիծէ զմազդեզն դէն և ես զքեզ Վատհազնօ արքային չափ կը ճոխացնեմ»: — «Մարմինս, հոգիս և կեանքս թող բաժնուին յիրերաց, քան անիծեմ զմազդեզն դէն», կը պատասխանէ Զարաթուշդրա: — «Ի՞նչ խօսքերով և որպիսի՞ զինուք կարես դու խորտակել իմ արարածներս», կը հարցնէ չար Ոգին: Որում Զարաթուշդրա. «Սանդը, բաժակը, հօման և Մազդայի բարբառած խօսքերն իմ հզօրագոյն զէնքերս են. այս խօսքերով պիտի զարնեմ և խորտակեմ, ո՛ չարագործ Անկրօ-Մաինեուշ: Բարերար Ոգին արար զնոսա անսահման ժամանակին մէջ (զրուանն ագարանա), և գործակից եղեն նմա անմահ Ամշասպանդքն՝ բարի կառավարիչքն այն և բարի յարդարողքն»[1]:

1. Անքըթիլի ժամանակի մովպետք հետագայ կերպով թարգմանել տուեր էին նմա այդ եղքի պարբերութիւնդ. «Ո՛ չարագործ Ահրիման, ամենափառ էակը ստեղծեց զքեզ, Անսահման ժամանակը (Զրուան ագարանա) ստեղծեց զքեզ. նա ստեղծեց և զԱմշասպանդս»: Աւեսդայի քերականութեան ծանծաղ գիտու-

Զրադաշտ աւանդութիւններ կը խնդրէ յԱհուրամազդայ հանգերձեալ կենաց վրայ։ «Երբ մէկը մեռնի՝ դեւք բոլորտիքը կը շրջին երեք գիշեր․ երրորդ գիշերուան լուսնալու ատեն, և յորժամ Միթրա լուսաճաճանչ զինուք կը բարձրանայ ի կատարս լերանց, Վիզարէշօ՝ անուն դեւն կ'առնու զհոգին, ու դիւապաշտից երկրէն՝ հինաւուրց ճամբայներէ անցընելով՝ կը հասուցանէ ի կամուրջն Չինվատ։ Անդ բարի գործոց խիղճը կը ներկայանայ նմա գեղատեսիլ աղջկան կերպարանօք, կը նետէ զնա ի խաւար եթէ չարագործ է․ իսկ եթէ բարի՝ կ'անցնէ կամրջին վրայէն ու կը տանի ի լեռան երկնային (Հարօ-պերեզաիթի) առաջի ոսկեղէն աթոռոյ Ահուրամազդայ, ի դրախտն երկնային (կարօ-նմանա) [2] որ է բնակավայր Ահուրայ, Ամշասպանտից և արդարոց։

թիւն մ'անգամ բաւական է ցուցանելու, թէ այս պարբերութեանս մէջ «անատհման ժամանակ» բառերը ոչ ուղղական՝ այլ պարառական հօլով կը կրեն. ուստի և չեն կրնար տէր բայի ըլլալ։ Ասկէ կարելի է գտնել՝ թէ որքան անհմուտ էին Աւեստայի լեզուին փարսի վարդապետք, կրնանք ևս ըսել Սասանեան Մոպետք, որոց ատենէն մնացած էր անշուշտ այդ ծուռ մեկնութիւնդ, յորմէ և ծագած կը կարծուի Որմզդայ և Արհմենի նախածնողի, այս է Զրուանայ վարդապետութիւնը, զոր կը տեսնենք Եզնկայ, Եղիշեայ և Խորենացւոյ, ինչպէս և Սասանեանց ժամանակակից յոյն պատմչաց մէջ, և որ բոլորովին հակառակ է Աւեստայի սկզբանց։ Եթէ նախնի Պարսիկք Որմզդէն հնագոյն էակ մը ճանչնային Զրուան անուամբ, անիմանալի կ'ըլլար՝ թէ սա ինչպէս ուրիշ տեղ մը չի յիշատակիր Աւեստայի մէջ, քանի որ գրեթէ ամէն գլխոյ մէջ Ահուրամազտա կը ներկայանայ մեզ իբրև անսկիզբն և ինքնագոյ Արարիչ։

1․ Դիւապաշտից երկիր, այս է Հընդկաստան։

2․ Կար է երգ․ դմանա կամ նմանա՝ բնակատեղի, տուն․ կարօ-դմանա է ուրեմն «Տուն Երգոց»․ Բազմաթ մատենից մէջ այդ բաղադրեալ բառդ كروثمان կարօթմանé գրեալ է․ յորմէ արդի պարսկերէն՝ كرزمان կարազմանé, որ նշանակէ «Արքայութիւն, աթոռն Աստուծոյ»։ Տարակոյս չունինք՝ որ մեր «գերեզման» բառն ալ նոյն է։ Թաղման տեղին միտք կը բերէ զհանդերձեալ կեանս։ Ինչպէս որ լեզուաց ոմանց մէջ «դժոխք» կը գործածուի անխտիր իբրև «գերեզման, շիրիմ», միանգամայն և իբրև «տարտարոս, սանդարամետք»․ Նոյնպէս ալ ուրիշ ազգեր դրախտ կամ արքայութիւն՝ կարօթմանé յորջորջեցին զգիր հանգստեան։ — Իսկ Սանդարամետաց անունն է Կաթայից մէջ Տրուժօ-դմանա որ թարգմանի «բնակարան տրուժի կամ ստութեան»։ Աւելի վերջերը կրճատեցաւ ի տուժգմանա, ուստի և Բազմաթ՝ Տուշախ և արդի պարսկ․ Տուզախ, որ է լծորդ հայկ․ «դժոխք» բառի։ Արդի պարսկ․ տախմա-ի-ֆիրուզի նշանակէ «երկինք»․ տախմա կամ տախմ է «շիրիմ», «տեղի թաղման», որպէս մեկնեցինք ի վերոյ․ և ֆիրուզի է բառ պատուական երկնագոյն՝ որ և կոչի բերուզի։

Ի և ԻԱ Ֆարկարդն ճառեն բժշկութենէ, և ախտերը փանելու համար դիւթական աղօթներ կը պարունակեն։ Զմարդիկ հիւանդութենէ առաջին ազատողը Թրիթա անուն մին է. իսկ բժշկութեան հրեշտակն է Այիրեաման, որում Ահուրամազդա ինքնին կը ղրկէ սուրհանդակն իւր Նաիրեօ-Սանհա, որպէս զի գայ բուժէ զարարածս իւր Անկրօ-Մայնեուշի հնարած 99.999 տեսակ ախտերէն ։

## ԺԲ

Որչափ որ Վենտիտատի այլեայլ գլուխները շատ մեծ հնութեան նշաններ կրեն, կարելի չէ սակայն նկատել զաս իբրև հարազատ գրութիւն Զրադաշտայ, որ Կաթայից մէջ չի յիշեր բնաւ ոչ այն բազմապիսի պարտականութիւնները՝ զորս կը սահմանէ Վենտիտատ ճշմարիտ հաւատացելոց, ոչ դիականց վերաբերող վարդապետութիւնքը՝ որք այդ Օրէնագրոյն շարադրուած ատենը ամենակարեւոր և հիմնական բաներ էին, և ոչ իսկ իննօրեայ քաւութիւնը՝ որ այնքան նպաստամատոյց պիտի ըլլար մազդէական աշխարհին։ Յայտ է՝ թէ Զրադաշտ այդ սկզբանց ծանրակշռութիւն մը չէր տուած. ապա թէ ոչ՝ երբ կը հարցնէր Ահուրամազդայ՝ դիւաց չար ազդեցութիւնները ջնջելու միջոցները, հարկ էր զոցա նկատմամբ ևս պատուիրանս տալ իւր հետեւողաց, փոխան զոցա՝ նա մի միայն կրակին պայծառութենէն, Ահուրամազդայ իրեն սովրեցուցած խօսքերուն կամ աղօթներուն զօրութենէն, հողագործութեան օգտակարութենէն, և մտաց, բանից և գործոց սրբութենէն միայն կը խօսի։ Սկզբունք մը կայ սակայն հասարակ Վենտիտատի և Կաթայից, այս է անդրժելի նկատել զխոստմունս և զդաշինս՝ որք Միթրա կոչուած են։ Այդ սկզբան վրայ ուզեր էր հիմնել Զրադաշտ իւր կրօնական նոր հասարակութիւնը։

Վենտիտատը հաւանաբար նմա յաջորդող քահանայապետաց գործն է, որք Զարաթուշդէմօ[1] կը յորջորջէին, և որոց՝ ինչպէս և Թագաւորաց համար կը կարծուէր՝ թէ ուղղակի Ահուրամազդայ հետ կը խորհրդակցէին և ի նմանէ պատգամներ կ'ընդունէին։ Վան

1. Դժնա գերագրական վերջաւորութիւն է. որով զարաթուշդէմօ բառ կ'ըլլայ զրադաշտագոյն կամ քահանայապետ։

որոյ և նոցա պատուիրանքն ալ հետզհետէ մեծին Զրադաշտայ քարոզութեանց հաւասար պաշտելի եղան Մազդեզանց։

Գալով Եաշդից, տարակոյս չկայ թէ սոքա չեն կրնար ընծայիլ Զրադաշտայ, և ոչ իսկ նորա անմիջական յաջորդաց։ Եաշդք, ինչպէս և աւելի կարճառօտ տաղքն՝ Աֆրինկանք, Կահք և այլն, Զէնտաւեստայի նորագոյն մասերն են։ Սոցա շարադրուած ատենը մազդէականութիւնը չափէ դուրս աղաւաղեր ու նախնի բազմաստուածութեան յոյժ մօտեցեր էր։ Երկու գրութեան ձև ունին Եաշդք. չափեալ տաղեր՝ որք պարսիկ վիպասանաց երգերն ըլլալու էին, և որովք հիւսեց վերջերս Ֆիրտէվսին գիւր դիւցազներգութիւնը. երկրորդ՝ խօսակցութիւններ ընդ Ահուրամազդայ։ Ամենուն մէջ տիրող ոգին է՝ բարձրացնել զՄիթրա, զՏիշդրեյա, զԱնահիտ և զայլ հրեշտակս. և զնոսա համհարզ և զուգատիճան անել Ահուրամազդայ. մինչև անգամ Զրադաշտայ հռչակած Գերագոյն Էակը մերթ ընդ մերթ պաշտօն մատուցանող կ'ըլլայ միւս դից, և Զրադաշտ ինքնին երկրպագու կը լինի նոցա։ Ի զուր կը փնտռենք այդպիսի աղճատանք Կաթայից մէջ։

Եաշդք, որ Հնդկաց Բրահմանական կոչուած դպրութեանց մասամբ իւիք կը համապատասխանեն, մեծապէս նպաստեցին Զրադաշտայ հաստատած կրօնը խանգարելու և վերականգնելու զոր ինչ նա տապալել ջանացեր էր։ Իսկ նոցա գրութեան թուականը մօտ ի մօտոյ կարելի է դնել Քրիստոսէ յառաջ հինգերորդ դարուն սկիզբները։ Ֆրաւարտին եաշդը կը յիշէ զԿաօդէմա՝ այս է Կաւդամա Պուտտհա՝ հիմնարկողն Պուտտհայութեան։ Ուրիշ վկայութիւններէ գիտեմք՝ թէ հնդկական կրօնք ծաւալեր էր ևս Բակտրիոյ մէջ։ Բայց որովհետև Պուտտհա Քրիստոսէ 543 տարի յառաջ մեռեր էր, և գոնէ հարիւր խուն տարի մը պէտք էր որ իւր կրօնքը հասնէր ու տարածուէր Բակտրիոյ մէջ, Ֆրաւարտին եաշդին թուականը կ'ըլլայ 450–400 նախ քան զՔրիստոս։ Աւելի վերջը դնել անհնար կը թուի. որովհետև Փրկչին թուականէն յառաջ սորա լեզուն արդէն անհետացեր էր, և Ֆրաւարտին եաշդը ոճոյ և գաղափարաց նկատմամբ միւս եաշդերէն չի տարբերիր. մինչդեռ ասոնց ամենուն լեզուն յոյժ նման է Վէնտիտատի մի քանի ֆարկարտներուն լեզուին, առանց աւելի քերականական սխալներ կամ փոփոխութիւններ ունենալու։ Պատճառ մ'ալ ունինք գոնէ գլխաւոր Եաշդերն 400էն ասդին չդասելու. վասն զի ինչպէս որ Արտաշէս Մնեմոնի բևեռագիրներէն յայտնի է, Միթրայ և

Անահտայ պաշտամունքը Պարսից պետութեան ամէն կողմը տարածուած էին (404–362), մինչդեռ Վշտասպեան Դարեհի բազմաթիւ արձանագրութեանց մէջ նոցա յիշատակութիւնը չկայ բնաւ։

## ԺԳ

Պահլաւիկ մատեանք յերկուս կարգս կրնան բաժանիլ. Ա. Թարգմանութիւնք յԱւեստայէ. Բ. գրութիւնք որոց Աւեստայի լեզուաւ բնագիր մը ձեռուընիս հասած չէ։ Թարգմանութիւնքն ընդհանրապէս յոյժ բառական են, և ստէպ ընդմիջեալ՝ Աւեստայի բնագրոք կամ երկար լուսաբանութեամբք։ Ազատ գրութիւնքն գրեթէ ամբողջապէս կրօնական են, մէկ քանին միայն պատմական վիպաց կը վերաբերին։ Թէ թարգմանութեանց և թէ ազատ գրուածոց ոմանց բազմոտ վերծանութիւններ ալ կան Աւեստայեան կամ եւ արդի պարսկական տառիւք։ Երբ բազմոտ ձեռագիր մը Աւեստայի նշանագրօք գրուած է, Սանսքրիտ կամ Կիւձերադերէն թարգմանութիւն մ'ալ կ'ունենայ իւր հետը շատ անգամ։ Եթէ արդի պարսկական տառիւք գրուած ըլլայ, պարսկերէն թարգմանութեամբ ընդմիջեալ կ'ըլլայ։ Են և մատեանք՝ որք պարսկերէնէ զատ ուրիշ լեզուաւ չկան. սոնք են գլխաւորաբար Րիվայաթ կոչուածքն, որք յիշատակարանք են արարողական կարգաց և օրոշմանց և զանազան կրօնական խնդրոց։ Րիվայաթքս սովորաբար սոսկ պարսկերէն բառ ունին. բայց ոմանք ալ այնքան խառն են արաբերէնի հետ, որքան Պարսից մահմետական մատենագրութիւնը։

Պահլաւիկ թարգմանութեանց մէջ կարեւորագոյնն է պահլաւիկ Վենտիտատն, որ շուրջ 48.000 բառ ունի[1]։ Ասկէ ետք կու գայ Պահլաւիկ Եասնա. 39.000 բառ։

Պահլաւիկ Վիսպարատ. 3.300 բառ։

Հատօխդ Նասք. 1.530 բառ. սա հատուկտր թարգմանութիւն մի է համանուն նասքին, և յերիս փարկարտս կը բաժանի. որոց առաջինը Աշէմ-վօհու աղօթից՝ պարագայից համեմատ այլեայլ զօրութիւններէն կը ճառէ. երկրորդ և երրորդ փարկարտքն կը նկարագրեն արդարոց և մեղաւորաց հոգւոց վիճակը յերիս աւուրս որ զկնի մահուան։

1. Այս և հետագայ թուոց մէջ ի համար առեալ չեն վա՛ «և» շաղկապն, և ոչ ի վերջաւորութիւնը զոր կ'առնեն յատկացեալք և բացայայտեալք։

*Վիշտասպ-Եաշտն*. 5.300 *բառ. են և պահլաւիկ թարգմանութիւք, ուրիշ զանազան Եաշտից և աւելի կարճառօտ Աղօթից* (*Նիյայիշք, կահանպարք և այլն*)։

*Նիրանկիստան*. 30.000 *բառ. Հատուածներ կու տայ Աւեստայի Հուսպարամ Նասքէն որոյ բնագիրը կորուսեալ է, և կը լուսաբանէ զնոսա պահլաւիկ լեզուաւ։ Արարողութեանց և ծիսից վերաբերեալ մանրամասն պատուիրանս կը պարունակէ։*

*Ֆարհանկի-օիմ-խատուք*[1]. *յաւեստայէ ի պահլաւերէն տեսակ մը բառագիրք է, որ մերթ ընդ մերթ ամբողջ պարբերութիւններ ալ կը դնէ։ Տաւթուր Խօշանկճի տպագրեաց զսա՝* An old Zand-Pahlavi Glossary *խորագրով։*

*Գանք այժմ այն պահլաւիկ գրուածոց՝ որք Աւեստայեան լեզուաւ բնագիր չունին։*

*Վաճարքարտի-Տինի*. 19.000 *բառ. Հաւաքածոյ մի է պէսպէս կրօնական պատուիրանաց։*

*Տինքարտ, որ երկարագոյն պահլաւիկ գրութիւնն է՝* 170.000 *բառ, թէպէտ առաջին և երկրորդ գիրքն պակաս են։ Երրորդ գիրքն կրօնական խնդրոց և պարտուց վրայօք մեկնութիւններ կը պարունակէ՝ ի գիտութիւն հաւատացելոց և ի փարատումն տարակուսանաց, և կը վերջանայ լուսնային և արեգակնային տարւոյ նկարագրութեամբ։ Չորրորդ գրքին մէջ վարդապետութիւններ կան՝ զորս ժողվեր էր Ֆարուխզատան անուն ոմն յայլ և այլ կրօնական մատենից, և կը պատմուի մանրամասն՝ թէ ինչ ջանքեր ըրին թագաւորք՝ սկսեալ ի Վշդասպայ մինչև ցԽոսրով Քաւատան* (*Նուշիրէվան*), *առ ի հաւաքել և պահպանել զտոհմային մատենագրութիւնը։ Հինգերորդ գիրքը պատմական, աստեղագիտական և կրօնական դժուարին խնդրոց վրայօք դատաստաններ կը պարունակէ։ Վեցերորդը՝ Զրադաշտայ նախնական կրօնին վարդապետաց, այս է Բորիոտքէշայ պատմական և բարոյական դաւանութիւնքը կը ցուցանէ։ Եօթներորդը մազդեզն գենի միջոցաւ կատարած հրաշքները կը պատմէ։ Ութերորդ և իններորդը հին Աւեստայի քսան և մէկ Նասքերուն պարունակութիւնները համառօտիւ կը յայտնէ։*

1. *Ֆարհանկ կամ ֆրահանկ է հրահանգ. օիմ՝ է «մէկ» Աւեստայի լեզուաւ, նոյնպէս և խատուք՝ պահլաւերէն. այդպէս յորջորջեալ է հրահանգ՝ վասն զի այդ երկու բառերով կը սկսի։ Նմանօրինակ բառից հաւաքածոյներ կան յԱրաբերէնէ կամ ի Պարսկերէնէ ի Թուրքերէն՝ որպէս Նիմաթ իպն աըսխած, Թեոֆիլի Վէնցի և այլն։*

Տասթուր Փէշօթանճի տպագրեց Տինքարտի բնագիրը՝ հանդերձ Կիւճերագերէն և Անգղիարէն թարգմանութեամբք։

Տատաստանի-Տինի. բառ 30.000. ինկնուն երկու հարցմունք և պատասխանիք՝ կրօնական պարտուց, պաշտամանց և ծիսաց վրայ։ Հեղինակն է Տաստուր Մինօչիհար Եուտա-Տաման, որ Մովպետան Մովպետ էր ի Պարս և ի Կրման ի Թուականին Յազկերտի 350, այս է յամի Տեառն 981։ Նոյն մակագրով ուրիշ գրչագիր մ'ալ կայ, որ եթէ ամբողջապէս վերոյգրեալ հեղինակին երկասիրութիւնն է, 78.000 բառ կը պարունակէ։ Զաս թարգմանեց Պ. Ուէսթ. 1882։ Pahlavi texts.

Շիքանտ-Կումանի-Վիճառ. 18.000 բառ։ Վիճաբանական գրութիւն մի է. յորում հեղինակը կ'ապացուցանէ Աստուծոյ գոյութիւնը, կը հերքէ զառարկութիւնս անաստուածից և անոնց, որ ուրանալով զգոյութիւն չար Ոգւոյն՝ զամենայն բարի և զչար միանգամայն կը վերագրեն Աստուծոյ. և կը քննադատէ Հրէից, Քրիստոնէից և Մանիքեցւոց վարդապետութիւնները։ Սա ևս թարգմանեցաւ ի ձեռն Պ. Ուէսթի, (Pahlavi texts), և հրատարակեցաւ ընդ Մատարի՝ որ մոգդեգանց կրօնի քրիստոնէական է։

Պունտահիշ, որ և կոչի Զանտ-աքաս՝ որ է Զանտագէտ, 13.000 բառ։ «Ճառէ զարարչագործութենէ Ահուրամազդայ, և զընդդիմակալութենէ չար Ոգւոյն. և ապա զբնութենէ արարածոց ի սկզբանէ մինչև ցկատարած, այս է մինչև ցհանդերձեալ կեանս, ըստ յայտնութեան որ եղև Մազդեզանց»։ Վինտիշման գերմաներէն թարգմանութիւն մը հրատարակեց 1863ին և Պ. Եուստի 1868ին. Պ. Ուէստ ալ թարգմանեց յԱնգղիարէն 1880ին։

Մայնօ-խրատ կամ Ոգի իմաստութեան. 12.000 բառ։ Վաթսուն և երկու պատասխանիք՝ զորս տայ Ոգին առ Խոհական Ոմն, յաղագս կրօնական և բարոյական և այլ զանազան խնդրոց։ Սորա բնագիրը Բազանտ լեզուաւ գրուած կ'երևի և ապա փոխադրեալ ի Բահլաւի և ի Սանսքրիտ։ Պ. Ուէստ հրատարակեց զսանսքրիտ և զբազանտ օրինակն՝ հանդերձ անգղիարէն թարգմանութեամբ՝ յամին 1871։ Երկրորդ թարգմանութիւն մի Pahlavi texts հաւաքածոյին մէջ 1885ին։ Պ. Աշրիէն Պարթէլմի ալ գաղղիարէն ընտիր թարգմանութիւն մի յամին 1888, Paris, Leroux։

Շայաստ-լա-շայաստ. 10.000 բառ։ Կը ցուցանէ՝ թէ ինչ են բարի գործք և ինչ մեղք. զխականց և այլոց պղծութեանց, որպէս պարտ է զարմանել և սրբել ի նոցանէ. զհարդ պատշաճ է ի

կիր առնուլ գնուիրական գօտին և զշապիկն և այլն։ Այդ խնդիրներդ Ռիվայէթներուն մէջ ալ կան. բայց աստ կը գտնեմք հին վկայութիւններ, որոց հեղինակաց երկասիրութիւնքը մեզ հասած չեն, ինչպէս և Աւեստայի նաքերու հատուածներ՝ զորս ուրիշ մատեններու մէջ չենք տեսներ։ Պ. Ուէսդ հրատարակեց թարգմանութիւն մը 1880ին։

Արտա[1]-վիրաֆ-նամաք, այս է Գիրք Արտավիրաֆայ. 8.800 բառ։ Արտավիրաֆդ սրբակաց մոգպետ մի էր՝ որ եօթն օր ճանապարհորդեր էր ի հանդերձեալ աշխարհն և տեսեր էր արդարոց համար պատրաստեալ վարձքը և մեղաւորաց պատիժները. միանգամայն և այն անորոշ վիճակը, յորում կը գտնուէին անոնք՝ որոնց մեղքն հաւասար էին առաքինութեանց։ Գժոխոց նկարագրութիւնը զարմանալի նմանութիւններ ունի Տանթէի նկարագրութեանց հետ։ Պահլաւի օրինակը հանդերձ անգղիարէն թարգմանութեամբ հրատարակեցաւ յամին 1872։

Պահման Եաշդ. 4.200 բառ։ Յայտնութիւն մի է յԱհուրամազդայ առ Զրադաշտ, յորում կը պատմուին Մազդեզն Դէնի կրած տառապանքը և ունեցած յաղթանակները Զրադաշտայ օրէն մինչև զկատարած աշխարհի։ Մեր ձեռքը հասած օրինակը Մահմետականաց յարուցած հալածանքն ալ կը յիշատակէ, ուրեմն յայտ է՝ թէ Արաբացոց արշաւանքէն վերջը գրուած է. հաւանական է սակայն որ բնագիրն աւելի հին էր ու յետոյ ձեռք խառնուեցաւ։ Սորա բազմաթ օրինակներ աւելի տարածուած են։ Պ. Ուէսդ ասոր ալ անգղիարէն թարգմանութիւնը հրատարակեց յամին 1880. — Pahlavi Texts. Oxford։

Քարնամակի-Արդախշիրի Բաբականի. 5.600 բառ։ Պատմութիւն Արտաշրի և որդւոյ նորա Շապհոյ, սկսեալ ի Սասանայ՝ որ էր ըստ գրուածոյս հայր Արտաշրի, մինչև զՈրմիզդ՝ որ թագաւորեաց զկնի Շապհոյ։ Բայց այս գիրքս համանուն երկասիրութենէ մը համառօտեալ կամ քաղեալ ըլլալու է, որովհետև այս պարբերութեամբս կը սկսի. «գրեալ է ի քարնամակն բաբականն Արտաշրի թէ» ։ . . .

Եատքարի զարիրանի. 3.000 բառ։ Պատմութիւն պատերազմին զոր մղեաց Վշտասպ արքայ ընդ Արճասպայ։

1. Երբեմն ալ կը գրուի արտայի, զոր մարթ է եւս ընթեռնուլ Արտակ. Արտայի նշանակէ ուղիղ, արդար, միանգամայն և յատուկ անուն է. տես Պ. Հաուկի Essays, ձն. յէջ 106։

«Քաղաքք Երանայ». 880 բառ։ Քաղաքաց անուանքը կու-տայ՝ համառօտ տեղեկութեամբք։

«Հրաշալիք Աէխաղան աշխարհի». 290 բառ։

Անտարի խիշաբօ-ի-Բաշատան։ Կատակ կամ յետին բանք Նուշիրէվանայ արքայի. 380 բառ։

«Պատճէն ամուսնական դաշին». 400 բառ։ Հնագոյն ձեռագիրը Յազկերտի 627 թուականը կը կրէ. այս է 1258։

Ֆարհանկի Սասանեան. այս է բառգիրք կամ հրահանգք ի Պահլաւերենէ ի Բազանդ, որոյ վրայ արդէն առիթ ունեցանք խօսելու։

Բաց յայսցանէ են և երեսունի չափ զանազան փոքր երկասիրութիւնք։

Պահլաւիկ թարգմանութիւնք 104.000 բառ, իսկ ազատ երկասիրութիւնք 413.000 բառ կը պարունակեն։ Մինչև ցարդ հնագիտաց կողմանէ քննադատեալ և ուսումնասիրեալ պահլաւիկ գրութեանց բառից համագումարը 517 հազարի կը հասնի ուրեմն, որ քառասուն անգամ Պունտահիշի և մետասան անգամ պահլաւիկ Վենտիտատի չափ ըսել է։

Այսու հանդերձ պէտք չէ կարծել, թէ վերոյգրեալ ցանկին մէջ յիշատակեալ գրութիւններէ զատ պահլաւիկ և բազանդ մատենագրութիւնք ի սպառ փճացած ըլլան։ 1878էն ի վեր գտնուեցաւ շատ աւելի ընդարձակ Պունտահիշ մը՝ որ Մեծ Պունտահիշ կը կոչուի. Պահլաւիկ Րիվայաթ մի. Սասանեան դատաստանագիրք մը. նոյն իսկ Աւեստայեան լեզուաւ այլ և այլ հատուկտորք, որք կորուսեալ Նասքերու բեկորքն են, և շատ հաւանական է՝ որ օր ըստ օրէ ուրիշ ձեռագիրք ալ երևան ելլան։

## ԺԴ

Յայս վայր քննեցինք զմազդէական վարդապետութիւնս՝ ինչպէս որ կը ներկայանան մեզ Պարսից հին մատենից մէջ։ Տեսանք՝ թէ ինչ մեծ յեղափոխութիւն մը յառաջ բերեր էր Զրադաշտ, քարոզելով փոխան հնդկական բազմաստուածութեան՝ միայնոյ Աստուծոյ վարդապետութիւնը. թէ ինչպէս նորա յաջորդները հետագայ դարուց մէջ արարչագործ էութիւնը յերկուս բաժանեցին, ի բարի և ի չար, որ այնուհետև զրադաշտական օրինաց հիմնական սկզբունքն եղաւ։ Այս երկու ճակաց ալ ընկեր և օգնական տուին Պրահմանաց բնապաշտութեան այլևայլ աստուածութիւնքը։

Զրադաշտայ պարզ դրութիւնը այնքան խճողեցաւ, որ քրիստոնեայ Հայք իրաւունք ունէին հարցնելու իրենց Պարսկաստանէն դարձող ուրացեալ եղբարց. «Ե՞րբ ուսանիցիք զբազմաթիւ անուանս աստուածոցն նոցա» [1]։

Սակայն պարտ է գիտել՝ թէ նոյն ինքն Զրադաշտայ օրէնքէն եւքը Աւեստայի մէջ քարոզուած վարդապետութիւնը բացարձակապէս երկարմատեան չէ։ Արդարեւ՝ Անկրօ–Մայնեուշ համագոյակից լինելով Ահուրամազդայ եւ անկախ ի նմանէ, միանգամայն եւ ստեղծագործելու կարողութիւն ունենալովն, կը տարբերէր մեծապէս քրիստոնէութեան Սատանէն. բայց եւ այնպէս նորա զօրութիւնը անբաւական էր Բարի Արարչին դէմ, եթէ գիտնային մարդիկ եւ պահէին ըստ պատշաճի Որմզդայ պատուիրանքը։ Մնաց որ Արհմենի իշխանութիւնն ինչ որ ալ ըլլար, ժամանակաւոր էր[2]. մեռելոց ընդհանուր յարութիւն մը վախճան պիտի տայր այդ իշխանութեան, եւ այնուհետեւ Ահուրամազդա բացարձակ պիտի ինքնակալէր համայն տիեզերաց։ Այդ յարութեան վարդապետութիւնը արդէն բաւական որոշ տեսանելի է Աւեստայի մէջ. բայց աւելի մանրապատում կ'ընծայի մեզ ի Պունտահիշ, որ աւանդութեանց եւ այժմ կորուսեալ հին մատենից հաւաքածոյ մի է[3]։ Այդ յարութենէն, զոր պահլաւիկ դպրութիւնք Ֆրաշաքերտ կը կոչեն (անշուշտ մեր «հրաշակերտը՝» գոյականաբար գործածուած), յԵզնկայ եւս յիշատակեալ է[4]։

1. Եղիշէ, Գ., 3։

2. 9000 տարի պիտի տեւէր ըստ Եզնըկայ. ըստ Պունտահիշի՝ 12.000, յորմէ եթէ զեղչեմք զառաջին 3.000 ամն, յոր ժամանակ արարածքն տակաւին աննիւթական՝ անշարժ եւ անշօշափելի վիճակի մը մէջ էին, երկուց էակաց կռուոյն տեւականութիւնը 9.000 տարի կ'ըլլայ։ Այժմ վերջին հազարի մէջ ենք. այնուհետեւ ժամանակը պիտի լմննայ ընդհանուր յարութեամբ մեռելոց. եւ երկինք եւ երկիր պիտի միանան, ու Արհմն եւ դեւք ընաջինջ պիտի խորտակին։

3. Պլուտարքոս (յաղագս Իսիսի եւ Ոսիրիսի) եւ Դիոգենէս Լայերտացին՝ Թէոպոմպոսէ առնելով կ'աւանդեն, թէ ըստ դաւանութեան Պարսից՝ Արէիմանոս հուսկ յետոյ պիտի ոչնչանայ. եւ մարդիկ առհասարակ երանութեան վիճակի մը պիտի հասնին, յորում այլ եւս ոչ սննդեան պիտի կարօտին եւ ոչ ըստուեր պիտի արձակեն. մեռեալք յարութիւն պիտի առնեն եւ անմահ ըլլան, եւ ամենայն ինչ պիտի կարգադրուի ըստ խնդրուածոց նոցա։

4. «Դարձեալ՝ եթէ աստուածք նոցա (Պարսից) մահկանացուք իցեն, ինքեանք յարութեան զի՞րդ ակն ունիցին. եւ մանաւանդ երեքմատեանն յարուցեալն՝ զոր չէ պարտ յարութիւն համարել, այլ չյարութիւն». էջ 143։ — Ի՞նչ է սակայն երեքմատեան յարութիւնդ։ Մարքուարտ նախ Պուտահայից կրօնական մատենին կը դիմէ՝ որ Դրիթիգաքա կը կոչի. զոր մարթ է թարգմանել եռապիտակ կամ երեքմատեան։ Պուտահայի կրօնը, որ

Սակայն մազդեզն կրօնից վերջին կերպարանքն Աւեստայի և այլ հին մատենից մէջ տեսանելի չէ։ Աւեստայի լեզուն արդէն Քրիստոսէ յառաջ սկսեր էր մոռցուիլ և անհետանալ. ընթերցողք թարգմանութեանց և մեկնութեանց կը կարօտէին զայն հասկնալու համար։ Ի վերջին կէս երրորդ դարուն Մանի անուն ոմն Աւեստայի այժմ կորսուած մեկնութիւն մը՝ Զանտ մը՝ հիմն առնելով, կամ մտացածին զանտ մը յօրինելով, բացարձակ երկարմատեան դրութիւնը քարոզեց. այս է անսկզբնակից, ինքնագոյ և յաւիտենական երկու արարչագործ էութիւնք՝ Բարւոյ և Չարի. իրարու ընդդիմակաց և հաւասարազօր։ Եւ ի Զրադաշտականութենէ, ի Քրիստոնէութենէ և ի Թալմուտեան Օրինաց շատ մը գաղափարներ առնելով և խառնելով՝ յօդուածոյ կրօն մը կարկատեց. զամուսնութիւնը պիղծ կը համարէր և գխտակեաց բարս

Վէտայեանին բոլորովին հակառակն էր, երեք չորս դարուց մինչ անկէ և զօրանալէ յետոյ՝ ընկճեցաւ ի հալածանացն զորս յարուցին Պրահմանք, և արտաքսուելով ի Հնդկաստանէ՝ տարածեցաւ Թուրանեան ազգաց մէջ. բայց և այնպէս մեծ ազդեցութիւն մի ունեցեր էր Վէտայեան կրօնից վրայ։ Պուտտհայի դրութեամբ մարդոյն վերջին և գերագոյն նպատակն է՝ յետ այլ և այլ հոգեփոխութեանց՝ հանգչիլ ի Նիրհ յաւիտենական կամ յոչընչութիւն, զոր Նիրվանա կը կոչէ. այս ալ ողորմութեամբք, համբերութեամբ, բարուց ուղղութեամբ, կարճութեամբ և միմեանց սիրով կը ստացուի։ Այդ էր արդեօք Եզնկայ չյարուցիչն կոչածը. կարելի է։ Բայց յայտնապէս պարտ է ենթադրել՝ թէ Պուտտհայութիւնը շատ աւելի խառնուած էր ընդ մազդէական օրինաց՝ քան զոր ինչ կարծել կու տան մեզ պատմական յիշատակարանք։

Սասանեանց ժամանակը Զանտի Վօ-խուման Եսանա վերնագրով պահլաւիկ գրութիւն մի կար՝ որոյ համառօտութիւն մ'ունինք այժմ Պահման Եաշդ (տես ի վերոյ, էջ 142), և որ հանդերձեալ կենաց և ընդհանուր յարութեան նկատմամբ յայտնութիւն մի է յԱհուրամազդայ առ Զրադաշտ։ Այդ զանդ՝ որ յերիս գիրս կամ գլուխս կը բաժանի, մազդէական դպրութեանց մէջ այն գիրքը բռնած է՝ ինչ գիրք որ ունի Յովհաննու Աւետարանչի Յայտնութիւնը Սուրբ Գրոց մէջ. կարելի է՝ թէ Եզնիկ այդ մատենից ակնարկէ, զոր աւելի դիւրաւ կրնար ընթերցած ըլլալ՝ քան Պուտտհայի բազմահատոր գրութիւնը, որոյ վարդապետութիւնը չի համաձայնիր մազդէական դպրութեանց։

Ըստ Աւեստայի, արարչագործութիւնը որոշ նպատակ մի ունի, այս է Որմզդայ հնար և միջոց պատրաստել առ ի խորտակել զԱրհմն։ Աշխարհս 9000 տարի պիտի տևէ։ Առաջին շրջանը Զրադաշտաւ կը փակի. առ դիւաց զօրութիւնը կոտրեց, բայց չկարողացաւ ընաջինջ ընել զնոսա, վասն որոյ կռիւը կը շարունակուի։ Ի սերմանէ Զրադաշտայ, զոր Անահիտ ժողոված պահած է, յետ ժամանակաց (1600 տարի ետքը, որ ըստ հաշուոյ մազդեզանց՝ յամի Տեառն 1193) Նոր մարգարէ մը պիտի ծնանի Խուրշը-Եէդար անուն, որ զարարածս իրենց պատշաճ վիճակին պիտի դարձնէ, և որում պիտի հնազանդին Թուրքք, Արաբացիք և Հռովմայեցիք։ Յայսմանէ (1593ին) երկրորդ մարգարէ մը պիտի

կը ջատագովէր։ Հեղինակին կենդանութեան ատենը այդ նոր աղանդը փայլեցաւ յոյժ և տարածեցաւ. բայց յետոյ թէ ուղղափառ մազդեզանց և թէ քրիստոնէից կողմանէ իբրև մոլորութիւն դատապարտուեցաւ [1]։

Սակայն մոգք կը մերժէին այդ բացարձակ վարդապետութիւնը. ու մեծ ատելութեամբ կը հալածէին զզանդիկս [2]։ Եւ աստուածութեան միութիւնը պաշտպանելու համար ձեռք առին հաւանօրէն հին աւանդութիւն մը, որ մազդէականութեան տկարացած և երեւէ ընկած ժամանա՛ները ձևացած էր, և ըստ որում Որմիզդ և Արհմն չէին ինքնագոյ, այլ ծնունդք աւելի հնագոյն էակի միոյ՝ զոր Զրուան կը կոչէին։ Արդի Փարսիք եւս կը նկատեն զԶրուան իբրև հիմնական և աներկրայելի դաւանութիւն հաւատոց իւրեանց [3]։ Բայց ասկէ յառաջ տեսանք, թէ ինչպէս Աւես-

ծնանի՝ Խորշեաման, որ ուրիշ բարեկարգութիւններ պիտի ընէ։ Հուսկ յետոյ երրորդ մը՝ Սոշիոս՝ «վեհագոյն քան զամենայն մարմնաւորս»։ Սա մեծ պատարագ մը պիտի նուիրէ երեսուն օրբակաց ընկերակցօք — տասնհինգն այր, և տասնհինգն կին, — որք անդստին ի սկզբանէ խաղաղական քնոյ մէջ կը սպասեն այդ հրաշափառ պաշտօնին. ամենայն մարդ պիտի վերածնի և նոր մարմին զգենու՝ հասուն և կատարեալ, այր՝ քառասուն տարեկան, իսկ մանկունք տասն և հինգ տարեկան հասակի մէջ. ամէնքը մազդեզն օրէնքը պիտի դաւանին, և այնուհետև բարի խորհուրդս, բարի խօսս և բարի գործս ևեթ պիտի ունենան։ Մեռելոց յարութեամբն չար ոգիք բնաջինջ պիտի ըլլան. Արհմն և Օձը (Ազհի-Տահաք Պիւրասբ) միայն պիտի մնան։ Քիչ մը վերջը Օձը հալեալ պղնձոյ մէջ պիտի այրի և սպառի։ Արհմն ալ պիտի դահավիժի դժոխոց անդունդը՝ որ բոցերու մէջ պիտի անհետանայ, և աշխարհս պիտի օրրի յամենայն պղծութենէ։

Այդ է անշուշտ Եզնկայ ակնարկած յարութիւնը, որ ըստ մազդեզն մատենից, յաջորդաբար երից մարգարէից ձեռօք պիտի կատարուի։ Գուցէ երեքմատեան գրչագրի վրիպակ է և փոխան սորա երեքմտեան կամ երեքմասնեան պարտ է ընթեռնուլ։

1. «Բայց զի Մանի կամեցաւ վերագոյն քան զնոցայն (մազդեզանց) կեղծեօք վարս ցուցանել՝ թէ ամենեւին իսկ աղաւ ի կարեաց զանկութեանց իցէ, և ոչ քան զնոցայն միայն՝ այլ և քան զամենայն քէշից, ուստի յանդիմանեալ յաղջկանց խաղաղելոց մարթաղերծ մահուամբ պակասեցաւ ի կենաց»։ Եզնիկ, 117։

2. Եզնիկ, էջ 116։

3. Հռչակաւոր արարացի մատենագիրն Շահրաստանի որ 1153ին մեռաւ ի Պաղտատ, իւր Յաղագս Ազգաց և Աղանդոց գրքին մէջ կ՚ըսէ՝ թէ Մոգք յայլևայլ հերձուածս բաժանեալ են. զոր օրինակ Մազտաքեանք՝ որ հոգեփոխութեան հաւատան Պրահմանաց և Պուտտահայեանց պէս. Քայոմարդեանք՝ որք կը հաւատան թէ աստուածային յայտնութիւն մը եղած է առաջին մարդոյ, զոր Փարսիք Կայոմարտ կը կոչեն. Զրուանեանք՝ որք կը դաւանին զԶրուան Արարիչ, այս է Անհուն Ժամանակ, իբրև Գերագոյն էակ։ Այդ երեք վարդապետութիւնքդ ալ հին մատեաններէ օտար ըլլալով, ուրիշ կրօններէ առնուած են։

դոյ երկու բառից քերականօրէն յայտնապէս սխալ մեկնութիւն մը գոյութիւն կամ հաստատութիւն տուեր էր այդ Էակին, որոյ յիշատակութիւնն անգամ կարելի չէ գտնել ի նախնի մատեանս։ Այսու ամենայնիւ տարակոյս չկայ՝ թէ այդ վարդապետութիւնը առհասարակ ընդունուած էր Սասանեանց օրերը, որուն մանրամասն բացատրութիւն մի ունինք Միհրներսեհի նամակին, և աւելի ևս երկարօրէն Եզնկայ Երկրորդ գրքին սկիզբը։ Այդ Զրուան կամ Զարուան, որոյ համար Եզնիկ կ'ըսէ թէ «բախտ՚» կամ «փառք» կը թարգմանի, և զոր՝ ըստ վկայութեան յոյն մատենագրին Դամասկիոսի, մոգուց մէկ մասը «միջոց, տարածութիւն», և միւսները «ժամանակ» կ'իմանային, այժմ ստուգապէս հաստատեալ է՝ թէ «ժամանակ» կը նշանակէ։ Սա յաշտ ահնէր դհազար ամ, որպէս թէ Որմիզդ (այս է ոգի ամէնիմաստ) ծնանի. բայց երբ հազար տարի անցաւ ու որդինք մը չերեւցաւ, սկսաւ տարակուսիլ՝ թէ արդեօք ի զո՞ւր յաշտ ահնէր. յայնժամ երկուս զաւակս յղացաւ՝ Որմիզդ և Արհմն, այս է Ահուրամազդա և Անկրօ-մայնեուշ. առաջինն՝ ի յաշտն ահնելոյ ծնունդ բարեպաշտութեան, և երկրորդն ի յերկուանալոյ անտի՝ ծնունդ թերահաւատութեան։ Եւ որոշեալ ուխտեր էր՝ թէ որ ոք ի նոցանէ առաջ գայ, զնա թագաւոր կարգէ, չկրցաւ ջրել զուխտն, և հակառակ կամացն ստիպուեցաւ տալու զթագաւորութիւնն ինն հազար տարի ցԱրհմն՝ որ նախ քան զՈրմիզդ պատառեր էր զարգանդն, կացուցեալ զՈրմիզդ ի վերայ նորա. և յետ ինն հազար տարւոյ Որմիզդ բացարձակ պիտի թագաւորէ, և ինչ որ կամենայ՝ ընէ [2]։

Թէպէտ Եզնիկ հաւատարապէս երկարմատեան կ'ուզէ համարել զադանդն Մանեայ և զքէշն մոգուց, դիւրին է ապացուցանել՝ թէ նոյն իսկ իւր առենը մազդեզն օրինաց մէջ Արհմնի կարողութիւնը

1. Այսպէս և Մոպսուեստայ եպիսկոպոսը Թէոդորոս (350–428) որ գիրք մը շարադրած էր Մոգական Օրինաց վրայ, և ուղղեր էր զայն հայազգի Մասթովիոս անուն մէկու մը՝ որ քորեպիսկոպոսի պաշտօն կը վարէր։ Սէն-Մարգէն իրաւամբ կը կարծէ՝ թէ Մասթովիոսը Մաշթոցն է. բայց դժբախտաբար Թէոդորեայ գրութիւնը կորուսեալ է, և միայն Բազմագէտն Փոտ քանի մը քաղուածներ պահած է մեզ։

2. Տես Եզնիկ, 115. — Միհրներսեհի նամակին մէջ փոխանակ 9000 տարւոյ, միայն 1000 տարի գրուած է՝ որ գրչագրի սխալ կը թուի. քանզի Պունտահիշն ևս (տես գլ. Ա. 18, 19, 20) 9000 տարի կը հաշուէ երկուց հոգւոց կռիւը, զատ համարելով անկէ առջի 3000 տարին՝ յորում արարածքն տակաւին անմարմին էին և անկերպարան։

հաւասար չէր Որմզդին։ Զոր Ոգին ոչ ամենագէտ է, ոչ ամենակարող[1]. մանաւանդ թէ տգէտ է յոյժ. քանզի Որմզդայ գոյութեան յայնժամ միայն տեղեակ եղև, երբ յանդնդոց ելնելով տեսաւ զլոյս[2]։ Կանխագէտ չէ՝ եթէ Որմիզդ չյայտնէ նմա զհանդերձեալս[3]։ Իւր արարածքն պիտի ոչնչանան յաւուր մեծի յարութեան[4]։ Եւ ինքն իսկ պիտի անկարողանայ և ոչնչանայ։ Զի կրնար երբէք միանգամայն երկու տեղ գտնուիլ. և զայն միայն կը տեսնէ որում ներկայ է։ Այդ տեսակէտօք Արհմն յոյժ ստորև կը գտնուի Սատանայէն՝ զոր շատ աւելի հանճարեղ և բազմուրեք էակ մը կ'երևակայեմք։ Քրիստոնէութեան Դիւապետին վրայ առաւելութիւն մի ունի, այն է կարողութիւն ստեղծելու զգեւս և զվնասակար արարածս. մէկ մ'ալ ինն հազար տարուան միջոցին մէջ Որմիզդ անզօր կ'երևի զայն խորտակելու, որով և ստիպեալ հանդուրժելու և կրելու նորա չարիքը և վնասները։ Մազդեզն Դենի չար էակը սակայն մշտատև չէ. մինչ քրիստոնէութեան մէջ յաւիտենա պիտի մնայ։ Արդ ուրեմն ընդդիմակաց էակի՝ այս է Արհմենի գոյութիւնը բաւական չէ երկարմատեան համարել տալու համար Յազկերտ Երկրորդի ժամանակի պարսկական դէնը, ինչպէս որ Սատանայի ներկայութիւնը չի կրնար երկարմատեան ընել զքրիստոնէութիւն։

Բայց Զրուանայ վարդապետութենէն զատ՝ են և ոչ սակաւ առասպելք և կարծատանք, որք բնաւ հիմունք չունին մատենից մէջ։ Արդէն տեսանք՝ թէ Աւեստայի վերջին գրեանք որքան հեռացեր էին սկզբնական գրոց պարզութենէն։ Այդ աղաւաղումը շարունակեր էր Պարթևաց՝ և նոյն ինքն Սասանեանց օրերը. Աւեստայի լեզուն բոլորովին անիմանալի եղած էր. պահլաւիկ թարգմանութիւնք, մեկնութիւնք և հեղինակութիւնքն ալ, սոցա գրութեան կնճռոտ եղանակին պատճառաւ՝ խիստ շատերուն համար անմատչելի էին. աւելցնենք ևս Պարսից անհանդարտ երևակայութիւնը, որ նորանոր աղանդներ և կրօններ հնարելու միշտ պատրաստական գտնուած է. ու այն ատեն կը հասկնամք՝ թէ ինչպէս ծնած ըլլալու են այն անհեթեթ և հակատական աղճատանքը, որք Եղիշէի մէջ համառօտիւ յիշատակուած են մերթ ընդ մերթ, և զորս Եզնիկ երկարօրէն կը պատմէ ու կը ծանակէ։ «Եւ քանզի ընդ գրով չեն կրօնքն, կ'ըսէ Եզնիկ, երբեմն զայն ասեն և այնու խաբեն, և երբեմն զայս՝ և այլին պատրեն զախմարս[5]»։

1. Բունտահիշ, գլ. Ա. 16։
2. Նոյն, գլ. Ա, 3, 9։
3. Նոյն, գլ. Ա, 21։
4. Նոյն, գլ. Ա. 3. գլ. Լ. 32։
5. Էջ 142։

Այսպէս Որմիզդ զերկին և զերկիր և զիւր արարածս ստեղծելէ ետքը՝ զանոնք խաւարի մէջ ձգեր էր։ Յայնժամ ի խորհուրդ կոչէ Արհմն զդեւս․ «Զի՞նչ օգուտ է Որմզդի, ասէ, զի այնպիսի գեղեցիկ արարածս արար, և ի խաւարի կան, զի լոյս ոչ գիտաց առնել․ արդ եթէ իմաստուն էր, ընդ մօրն մտանէր, և արեգակն որդի լինէր․ և ընդ քեռն անկանէր, և լուսին ծնանէր»․ և պատուէր տայր Արհմն զի մի ոք զխորհուրդն ի վեր հանցէ։

Փողովական դեւերէն մին՝ Մահմի, կը յաւելու Եզնիկ, այդ պատուէրից չանսար և կ'երթայ անմիջապէս յայտնելու զգաղտնի խորհուրդն առ Որմիզդ․ որով սա կարող կը լինի ստեղծել զարեգակն և զլուսին [1]։ Այդ բանդագուշանաց վրայ պարսիկ իմաստնոց մէկը աւելի կարևոր փաստաբանութիւն մը կը հիմնէ, ասելով թէ Միհր աստուած «մայրածին է ի մարդկանէ և թագաւոր աստուածազաւակ [2]»․ այս է «ի մայրենի ազականաց [3]»․ «իսկ զլուսին ի քեռական ազականաց արարեալ համարեցան, զի ընդ այն հայեցեալ ազգին՝ ի նոյն պղծութիւնս անխտիր լինիցին [4]»։

Մօտ ազգակցաց մէջ ամուսնութիւնը իբրև յոյժ գովելի և չահաւէտ գործ մը պատուիրեալ է արդարև Աւեստայի մէջ․ բայց արեգական և լուսնոյ այդ եղանակաւ ստեղծիլը օտար է ամենևին ի գրոցդ․ վասն որոյ Եզնիկ յանիրաւի կ'ընծայէ զառասպելը Զրադաշտայ։

Այլք սակայն տարբեր կ'ըմբռնէին արեգական արարչութիւնը․ Արհմն ճաշի հրաւիրեր էր զՈրմիզդ․ «Եկեալ Որմզդի՝ չկամեցաւ ճաշն ուտել, եթէ ոչ նախ որդիքն նոցա կռուիցեն․ և ի խեթկել որդւոյն Արհմենի զորդին Որմզդի, ի խնդիր եղեն դատաւորի և ոչ գտին․ ապա (երկոքին միանգամայն) առեալ արարին զարեգակն, զի լիցի նոցա դատաւոր [5]»։

1․ Մահմեայ այդ երախտեացը փոխարէն Պարսիկք տարին երիցս զօհս կը մատուցանէին նմա․ Եզնիկ, 140։— Եզնկայ Մահմի կոչած դեւն Ահուրամազդայ առաջին համհարզն և խորհրդականն է՝ Վօհումանօ, որ Աւեստայի մէջ երբեմն սոսկ Մանօ կամ Մայնու ալ կը կոչի․ չէ նա ընկեր և օգնական Արհմենի, այլ բարի միտքն Ահուրայ։ Տես ի վերայ՝ էջ 107։

2․ Եղիշէ․ Բ, 43։

3․ Եզնիկ․ էջ 122–123 և 141։ Տես և ծանօթ․ յԵղիշէ, Բ, 36։

4․ Եզնիկ․ «Դարձեալ և նոքա (Հեթանոսք Յունաց) ծնունդս աստուածոց բազմաց ասեն․ և սոքա (Մարկիոնք) յամուսնութենէ օրինացն աստուծոյ և հիւղեայ ասեն արարեալ զամենայն արարածս․ և զի՞նչ աւելի իցեն քան ըզմոգս որք յամուսնութենէ դնեն զաստուածս իւրեանց»․ էջ 252։

5․ Եզնիկ․ էջ 140։

Ուրիշ առասպել մ'ալ յառաջ կը բերէ մեզ Եզնիկ. «Դարձեալ և միւս ևս ասեն, թէ իբրև մեռանէր Որմիզդ՝ զսերմն իւր յաղբիւր մի արկ, և մօտ ի վախճան՝ յայն սերմանէ կոյս մի ծնանելոց է. և ի նմանէ որդի եղեալ՝ հարկանէ զբազումս ի զօրացն Արհմենի. և երկու ևս նոյնպիսիք նոյնգունակ եղեալք հարկանեն զնորա զօրսն և սպանեն[1]»:

## ԺԵ

### Պաշտամունք և դիք Մազդեզն Դենի:

Եթէ արդի Պարսկաստանի մէջ խուզարկելու ըլլայէինք՝ թէ ինչ էին այն պաշտամունքն և արարողութիւնքն զորս այնքան բռնութեամբ և յամառութեամբ կ'ուզէր կատարել տալ Յազկերտ Երկրորդ, մեր ակնկալութիւնը ի դերև կ'ելլէր: Այն դէնը՝ զոր ծաւալելու համար բանակներ քալեցին ի Հայս, ոչ միայն բնաջինջ եղած է Հայկական բարձրաւանդակէն, այլ և նոյն իսկ իւր բնագաւառին մէջ՝ անշքացեալ և մերկացեալ ի հանդերձանացն՝ անճանաչելի և անարգ կը մնայ: Եթէ ի մազդեզանց բազմամբոխ հատուած մը հետն առնելով զնախնի սրբազան և կրօնական մատեանս, գաղթած չլինէր ի Հնդիկս, ուր ազատօրէն կարողացաւ կանգնել կրակատունս, կամ որպէս ասի՝ դրունս կամ տաճարս Միհրայ, և կատարել զամենայն կրօնական կարգս որպէս ի ժամանակս Արտավիրաֆայ, մեք նոցա նկատմամբ յոյժ անօսր գիտութիւն մը պիտի ունենայինք: Հայ մատենագիրք — հաւանօրէն ամենուն գիտցածը և իրենց մոռցնել ուզածը չերկրորդելու համար — Պարսից կրօնական արարողութեանց վրայ գրեա թէ ոչինչ կը հաղորդեն մեզ: Են սակայն օտարազգի երեք ականատեսք և ժամանակաւ իրարմէ հեռի վկայք՝ Ստրաբոն, Անքըթիլ

1. Եզնիկ էջ 142: — Այդ երեք զաւակունքդ երեք մարգարէքն են, որ վերջին 2400 տարիներուն մէջ պիտի գան յաջորդաբար՝ վերանորոգել և սրբել զաշխարհ և յարութիւն տալ մեռելոց: Երեքն ալ՝ ըստ Տինքարտի Եօթներորդ Գրոց՝ Զրադաշտայ սերմանէն և ոչ Որմզդի (որպէս ասէ Եզնիկ) պիտի ծնանին: Այդ սերմդ Քասու անուն լըճակի մը մէջ կը մնայ. (Աւեստայի լեզուաւ՝ Անահիտ ջուրց աստուածուհին կը պահէ զայն). և Զրադաշտայ շրջանին լրման երեսուն տարի մնալով, կոյս մը լճակին մէջ լուացուելու ատեն ջրէն պիտի խմէ և պիտի յղանայ զառաջին մարգարէն զխոյշէդառար: Տես ի վերոյ ծն. 4, յէջ 144:

Տիւ Բէրոն և Հաւկ, որք հետազօտեցին և մանրամասն տեղեկութիւններ թողուցին։ Եւ որովհետև փարսինները քան զայլ հալածեալ կամ նուաճեալ ազգս նախանձախնդիր կ'երևին նախնի աւանդութեանց և պաշտամանց, և վերայգրեալ երից հեղինակաց վկայութիւնքը համաձայն են իրերաց, վասն որոյ որքան ալ աճագին հոլովմամբ դարուց բաժանեալ ըլլանք Եղիշեայ ժամանակէն, մարթ է արդի մազդեզանց սովորութիւնքը և արարողութեանց հանդէսը քննելով հանել ի ճշգրիտ գիտութիւն այն պաշտամանց՝ զոր եօթն հարիւր մօգք եկան հաստատել ի Հայս ի հինգերորդ դարուն՝ փոխան կարգաց եկեղեցւոյ։

Ինչպէս որ տեսանք, այսօրուան Աւեստան, ի բաց առնելով զՎենտիտատ որ նախնի Պարսից օրինագիրքն էր, կը պարունակէ զՎիսպարատ, զՅասնայս և զՅաշտս։ Այս վերջի երեք մատեանքս կը կազմեն փարսիներուն ժամասացութիւնքն և Ծիսարանը։

Վիսպարատն առանձին գիրք մը չէ. քան երեք գլուխքն կամ քարտէքն՝ յորս կը բաժնի, այլ և այլ Յասնայից վերջարան կամ աւարտի աղօթք կ'ըլլան։ Եթէ այդ երկու մատենից վրայ ամէն յառաջ զատ զատ ճառեցինք, պատճառն այն է՝ որ Յասնայք առանձին ալ կը գրուցուին՝ առանց ի Վիսպարատէ յաւելուածոց։

Յասնայքն Աւեստայի ամենէն կարևոր մասն են. զայսոսիկ Մազդեզունք պարտին ընթեռնուլ ամէպ։ Բաժանին ի 72 ճառս, յորոց 1–27 և 42–48 մազդէական արարողութեանց ծիսարանն են։ Երկրորդ մասը՝ 28–41, կը բաղկանայ ի Կաթայից կամ ի քարոզութեանց Զրադաշտայ։ Իսկ երրորդին (53–72) նպատակը որոշ չէ։ Երբեմն այդ երեք մասունքդ անընդհատ կը կարդացուին. երբեմն ալ՝ ինչպէս զոհագործութեան համար, առաջին մասը միայն հը գործածուի։

Ի Կաթայից զԱհիյա եասա աղօթն երկիցս ասել պարտ է. զԱշեմ վօհու՝ երիցս. զՅաթա ահու վաիրեօ՝ չորիցս. վասն որոյ աղօթքդ անուանեալ են՝ պիշամրուդաս, դրիշամրուդաս, գաթրու-շամրուդաս

Սորաբըն կ'ըսէ՝ թէ Պարսիկք զխաւարապէս կրակի և ջրոյ կը զոհեն. կրակին՝ չոր և առանց կեղևոյ չերտեր տալով ի ճարակ, որոց վերայ կը դնեն սակաւիկ մի ճարպ, կը սրսկեն իւղով. չեն ընչեր ի կրակն, այլ կը հողմահարեն։ Եթէ ոք բերնովը փչէ կամ մեռելոտիս և կամ ծիւս արկանէ ի կրակն՝ մահու մեռանի։

« Իսկ երբ ջրոյ զոհեն, ծովու կամ գետի մը եզերքը և կամ աղբերական մը քով կ'երթան, ու անդ փոս մը փորելով՝ կը դնեն

գապանդան, ուշ դնելով՝ որ չըլլայ թէ պղծի մերձակայ ջուրն առ֊րեան կայլակօք։ Ապա դնեն կարգաւ զմիս ի վերայ մրտենւոյ և դարնիի ոստոց, զորս մոգքն բարակ ստերու միջոցաւ կը վառեն. և մոգական աղօթներ կարդալով՝ կը հեղուն կաթով և մեղրաւ խառն իւղ, ոչ կրակին կամ ջրին վրայ՝ այլ ի վերայ հողոյ։ Այդ աղօթներդ կ'երկարաձգին յոյժ, բայց մոգքն հանապազ ունին ի ձեռին մրտենւոյ ոստոց խուրձ մը։

« Կապադովկիոյ մէջ (քանզի այս աշխարհս մեծ բազմութիւն մ'ունի մոգուց՝ որք Pyræthi (հրահաւաք) կոչեալ են, և բազմաթիւ մեհեանս նուիրեալս պարսկական դից), զանակաւ չեն փողոտեր զպատարուածս, այլ կարճ բրաւ՝ իբրև լախտիւ՝ զարնելով կը մեռցնեն։

« Զոհարար մոգը պատարուածակին միսը կը բաժնէ հանդիսականաց. մաս մի այլ իրեն կ'առնու և ապա կը հեռանայ՝ առանց ամենևին դից բան մը թողլոյ, քանզի, ասեն, միայն զոգին ա֊նասնոց կ'ուզեն դիք, և ոչ այլ ինչ։ Սակայն ըստ հեղինակաց ոմանց՝ ի թաղանդոյ մաս մ'ալ կրակը կը նետեն։

« Պարսկաստանի մէջ հոյակապ շէնքեր կան՝ որք ատրուշան (Pyrætheia) կը կոչին։ Սոցա մէջտեղը՝ առատ մոխրով ծածկուած սեղան մը կը գտնուի, որոյ վերայ մոգք զկրակ միշտ վառ կը պահեն։ Ցերեկները կը մտնեն անդր և ժամի մը չափ կ'աղօթեն՝ ոստոց խուրձն ի վեր բռնելով դէմ յանդիման կրակին։ Գլուխնին թաղեայ խոյրեր ունին, որ երկու կողմանէ վար կ'իջնեն ու կը ծածկեն զշրթունս և զծնօտս »։ Գիրք ԺԵ, գլ. Գ. 13–15։

Ստրաբոն կը յաւելու՝ թէ զայդոսիկ իւր աչօքը տեսեր էր, և թէ Անահտայ և Օմանոսի (այս է՝ Վօհումանայ կամ Պահմանայ) մեհենից մէջ կատարուած պաշտամունքը նոյն են. բայց չի յիշեր բնաւ զՀօմա։

Այդ տեղեկութիւնքդ համաձայն են Անքըթիլայ և Հաւկի ա֊ւելի մանրապատում նկարագրաց. վասն որոյ երից հեղինակացդ վկայութիւնքը առաւել ևս պարզելու համար կ'ամփոփենք ստորև, դասակարգելով ըստ նիւթոյն։

Մեհեան Մազդեզանց։ Շատ հին ժամանակաց մէջ պարսիկք իրենց ատրուշանները լերանց գագաթանց վրայ կը կանգնէին դերբկօք։ Տակաւ առ տակաւ կոփածոյ և Ֆոյուն ատրուշանք սո֊վորական եղան. յետոյ գնաստ յարկածածուկ շէնքերով փակեցին, որպէս պատմէ մեզ Ստրաբոն։ Անցեալ դարուն մէջ Անքըթիլ տեսածներն ալ ի Կիւճէրաթ զմբեթայարկ էին։

Մազգէական մեհեանը երեք գլխաւոր մասունս ունի. միջավայրն ընդարձակ գաւիթ մի է՝ ուր կը կենան հասարակ հաւատացեալք հանդիսի ատեն. սորա ձախակողմն է կրակատունն (աթաշկահ) և աջ կողմն Յաշտից տեղին (իզեշնէխանէ)։ Աթաշկահին մէջ է սրբազան կրակի ատրուշանն կամ բագինը և անոր վերաբերեալ սպասքն։ Ատրուշանը երեք ոտնաչափ բարձրութեամբ կճեայ անօթ մի է՝ մոխրով լցեալ, և հաստատեալ քառակուսի և կէս ոտնաչափ թանձրութեամբ խարսխի մը՝ վրայ՝ զոր ատօշդ կը կոչեն։ Ատրուշանին քովը կը գտնուի մոլպետին կճեայ բազմարանը, և յանկիւնս կրակատան դարաններ՝ յորս կէ պահեն զփայտ և զծըխանելիս։ Աթաշկահը վառական կրակն ունի՝ եթէ մեհեանդ անոր նուիրեալ է, և կամ զկրակն ատարան՝ եթէ սովորական կրակատուն է։ Անդ մի միայն քահանայից ներելի է մտնել, և այն ալ յետ թողլոյ ի դուրս զկօշիկս և զկրկնոցս։ Հասարակ ժողովուրդը փանդակեայ դռներու կանկէն միայն կրնայ դիտել անոր ներքնակողմը։ Երկու կամ երեք մոգք գիշեր ցերեկ կը պահեն զկրակն։ Օրուան իւրաքանչիւր պահուն (կահ) նոր փայտ կը յաւելուն՝ աղօթս ասելով. ու այդ գործողութեան ատեն պարտին զդէմս ծածկել փանդամաւ և զձեռս տապաղօք[1]։ Իզեշնէխանէին կամ զոհարանին մէջ կ'ըլլան պատարագն և զոհագործութիւնք։ Աս երկայն քառակուսի սալայատակ սրահ մի է, որ փոքրիկ ջրանցիւք կը բաժանի ի զանազան մասունս, որք արվիս[2] կը յորջորջին։ Որքան արվիս ըլլայ յիզէշնէխանէ՝ այնքան կրակաքուրմք կրնան զատ զատ պատարագս մատուցանել միանգամայն։ Իւրաքանչիւր արվիսոյ աջակողմն է նստարան մը զոհարար մոգին յատուկ. վիմատաշ սեղան մի՝ արվիս՝ որոյ վրայ կը դնեն զպատաս զոհից և զգործիս, և քարէ պատուանդան մը որ կը կրէ զԱւանն՝ այս է սրբուելու ջրոյ կոնքը։ Ի ձախակողմն՝ ատրուշան մի փոքրիկ՝ յաշտից սեփականացեալ, որ աթաշկահին կրակը կը ներկայացնէ՝ առանց անոր հաւասարազօր ըլլալու, և զոհագործութեան առթիւ միայն կը վառի։ Աւընթեր սմա՝ զոհարար մոգին և անոր սպասաւորին համար մէկ մէկ նստարան, և այլ վէմք՝ որոց վրայ կը դրուին պահեստի չերտերն և կնդրուկ։

Աշխարհիկ ֆարսիները՝ եթէ ազատ են ի պղծութենէ, կրնան մտնել յիզէշնէխանէ ի ժամ յաշտից։ Եթէ գիտութեամբ նուիրա-

1. Տապաղը քակի ձեւով թաթպան մի է։
2. Արվիս է եւ անուն սեղանոյն՝ որոյ վերայ դնէին զոհական պատարագն։ Կարծեմ թէ հայերէն «բագին» նոյն նշանակութիւնն ունէր, թէ իբրեւ յաշտից տեղի և թէ իբրեւ սեղան։

գործող քահանային պիղծ ոք ներկայ գտնուի, պաշտամունքն ոչինչ կ'ըլլան և հարկ է վերստին սկսանիլ։

Պաշտօնեայք կրօնի։ Նախնի Բակտրիոյ մէջ քահանայք առանձին դասակարգ մը չէին կազմեր, և ոչ իսկ քահանայութիւնը ժառանգական էր։ Իբրև Օրինաց վարդապետ՝ աէթրաբաիդի[1] և իբրև ստորահարկու պաշտամանց՝ աթրաւան կը կոչուէին։

Աթրաւանը իւր կատարած պաշտօնին համեմատ այլ և այլ անուն ունէր.

Ա. Զաօթար, որ կը հայցէ զգիս ու կ'ընթեռնու գաթաս. սա է հանգիստադիրն, մինչ հետևեալներն նորա օգնականներն են։

Բ. Հաւանան՝ որ պատրաստէր զՀօմա։

Գ. Աթրաւախշարէգա՝ որ լախտ մի կը կրէր (Աթրաւշայ գէնքը) զոհագործութեան ժամուն՝ առ ի վանել զդևս. գուցէ և ս ապաշխարանաց գործադրութեան կը հսկէր։

Դ. Աբերեդար՝ որ կը սրբէր և կը պահէր զսրբազան անօթս։

Ե. Ասնաթար՝ որ անշէջ կը պահէր զկրակ։

Զ. Ֆրաբերեդար՝ որ կը կրէր զանօթս։

Է. Ռաէթվիշքարէ՝ որ քաւութեանց վերաբերեալ արարողութեանց կ'առաջնորդէր։

Յետոյ երբ մոգութիւնը խառնուեցաւ Աւեստայի վարդապետութեանց հետ, քահանայութիւնն ալ Աւեստայի կարգաց և մե-

1. Աէթրաբաիդի՝ որ Սասանեանց ժամանակ ամփոփեցաւ ի հերպատ, և որ նոյն է ընդ Աստղատ—ունիք. կը բաղկանայ յերկուց բառից. բաիդի է «պետ» որպէս ի տանուտ—բաիդի՝ «դեհապետ»։ Թէպէտ սոսկ աէթրա՝ չիք Աւեստայի մէջ, բայց աէթրեա՝ որ առաջնոյն ածանցը կամ ածականը կ'երևի, սակայն գործածուած է, և բաժնելի թարգմանիչն զայն կը մեկնէ հաւէչիան բառով՝ որ կը նշանակէ «աշակերտ» կամ «այր աշխարհիկ». աէթրաբաիդի է ուրեմն աշակերտապետ կամ գլուխ աշխարհականաց։ Իւ արդի պարսկերէն բառագրոց մէջ՝ վիրտ ... որ նշանակէ «աշակերտ» (տես Պիւրնուֆի Գաթի և Iohnson), որ կարծել կու տայ թէ աէթրեա բառի կրճատումն և աղաւաղումն ըլլայ։ Ոմանք մեր «վարդապետ» բառի առաջին մասը Սանսքրիտ «վարդ» կամ գերմաներէն Wort բառի լծորդ կը համարին։ Աւելի հաւանական կը թուի մեզ՝ որ «վարդապետ» համանգամայն՝ նոյն ըլլայ ընդ Աէթրաբաիդի անուան, որոյ նշանակութիւններն ալ ամբողջապէս ունի։ Են և այլ օրինակներ՝ յորս զանդիկն աէ փոխուած է հայերէնի մէջ ի վա։ Եթէ «վարդապետ» և «աէթրաբաիդի» միևնոյն բարդեալ բառն են, մարթ է սակայն տարակուսիլ «աէթրաի» ստուգաբանութեան վրայ։ Պ. Հաւգ աւելի կ'ուզէ զաէթրա լծորդ համարել ատր «կրակ» բառի, որով աէթրաբաիդի կ'ըլլայ «կրակապետ» կամ քրմապետ, որպէս աթրաւան, առէ, է հասարակ քահանայ կրակի։ Ըստ այլոց՝ աէթրա՝ է doctrine, վարդապետութիւն։

դական մոգութեան խառնուրդ մը եղաւ։ Այժմ մազդեզն քահանայք յերիս աստիճանս բաժանին։

Ա. Ցեւզուրի (տաւզօտար), որք ոչ միայն պարտին բերնուց գիտնալ զԱւեստան, այլ և մեկնել զնա։ Սոքա են ուսուցիչք և վարդապետք օրինաց, սահմանողք ապաշխարութեանց և պատուիրողք քաւութեանց։

Բ. Մովպետք (մօպու-բաիդի), որք կ՚ընթեռնուն զաղօթս և արարողութեանց կը մասնակցին. բաւական է որ զսրբազան գիրս բերնուց զրուցեն, չի պահանջուիր որ հասկնան զայն։

Գ. Հերպետք (աէրբա-բաիդի) որ այժմ ստորնագոյն աստիճանը կը կազմեն. սոքա պէտք եղած ուսմունքը առնուած կամ նոր քահանաներ կամ քահանայութեան պատրաստուողներ են։

Իսկ սեղանոյ պաշտօնեայք յերկուս միայն կը վերածին.

Ա. Զաօդա՝ զոհարար կամ պատարագող։

Բ. Րաթվի՝ սպասաւորող։

Եղիշէի ժամանակ պարզ քահանային « մոգ » կ՚ըսուէր. « մոգպետը » (մովպետ) մեր եպիսկոպոսին կը համապատասխանէր։ Հերպատ կը կոչուէին վարդապետքն Օրինաց. և Մովպետան մովպետ՝ զենպետը կամ քահանայապետը։

Հերոդոտոսի պատմութենէն գիտենք՝ որ ո՛ և է զոհ կամ պաշտօն առանց մոգի կատարել սրբապղծութիւն էր. և ըստ վկայութեան Ամմիանոսի, մոգութիւնը Սասանեանց օրերն ալ յորդւոց որդիս ժառանգական էր[1]։ Մոգք՝ Ղեւտացոց նման՝ միացած ժողովրդեան քահանայքն, դատաւորքն և դատախազքն էին։ Այժմ փարսիներուն մէջ ևս քահանայութիւնը ժառանգական է. մոգական ցեղէ եղողն միայն կրնայ մոգ ըլլալ. բայց ազատ է ուրիշ վիճակ մը ընտրելու[2]։

Կարգ պաշտամանց։ Մազդեզն օրէնքն Աթարվանաց ծանր պարտականութիւններ կը դնեն և երկար աղօթներ կը պատուիրեն։ Մովպետը[3] կէս գիշերէն վերջը պէտք է ելլայ ու կրակատունը երթայ. անդ բարսմունքն ի ձեռին պէտք է կարդայ նախ զՎենտիտատ, և ի հաւանի պահուն՝ այս է ի ծագել արեւու՝ զՎիսպարատ և զԵասնա. այս վերջնոցս հետ կը կատարուին զոհից արարողութիւնքն։ Եաշդքն՝ միայն իւրաքանչիւր գից նուիրեալ օրե-

1. Տես գլ. ԽԴ։
2. Տես Hovelacque. L'Avesta, Zoroastre etc. էջ 449։
3. Աստ և առաջ « մովպետ » անունը փարսիներուն այժմ առած նշանակութեամբը կ՚իմանանք, որ Եղիշէի «մոգին» կը համապատասխանէ։

բան կը գրուցուին։ Հանապազօրեայ և պարտաւորիչ աղօթներէդ զատ կ'ընթեռնուն եւ զՎենտիտատ առ ի վանել զդեւս, կամ ի քաւութիւն յանցանաց Հանդիսադիր մոգպետին կամ այն աղաչաւորին՝ որ այդ ընթերցման համար վարձք հատուցած է։ Կաթայք, Եաշտան և Պիշամրութաքն ուրիշ զանազան առթից մէջ եւս կը գրուցեն ։

Մէն մի տօն ունի իւր յատուկ աղօթքը։

Յաշտ կամ Զոհագործութիւն, (իյաշնէ). — Բաթմիի պաշտօնը կատարող մոլպետը պարտի նախ սրբել զվէմս, պատրաստել զանօթս և զայլ սպաս, որոց գլխաւորներ են.

Ա. Բարսմունք (պարեսմա և այժմ պարսում), առանց որոյ անհնար է յաշտ առնել։ Բարսմունքն՝ զոր քահանայն ձախ ձեռքն ի վեր կը բռնէ, արմաւենւոյ, նռնենւոյ և մոշայի (tamarisque) ոստոց ուժգնապիրկ խուրձ մի էր։ Այժմ փարսիք ոչ եւս ծառի ճիւղերէ կը կազմեն, այլ անագապօծ պղնձի թելերէ՝ որոց թիւը հինգէն ցերեսուն և երեք կը տարբերի ըստ պաշտամանց. զոր օրինակ՝ սովորական յաշտից (եազիշն) բարսմունքն քսան և մի թել է, իսկ Վենտիտատի և Վիսպարատի ընթերցմամբ զոհագործութեանց բարսմունքն երեսուն և երեք թել։ Պարապոյ ատեն բարսմունքն մաշիկաձեւ կրկին յենարանաց վրայ պառկեցնել հարկ է։ Քահանայն որ նուիրագործէ զբարսմունս՝ յամենայն պղծութենէ պարտի ազատ լինել. ու սորա յատուկ արարողութիւններն և աղօթները կատարելով, նախ կը լուայ ջրով զոստս կամ զթելս, և ապա կը պրկէ գօտւով միով զոր քուստիք կը կոչեն, և որ յարմաւենւոյ տերեւէ ճեղքուած վեց բարակ ժապաւենէ կը բաղկանայ։ Այս գօտիս երկիցս թելերուն բոլորտիքը դարձնելէ ետքը կապ մը կ'ընէ, և ապա երրորդ անգամ մ'ալ դարձնելով՝ առաջին կապին ներհակ կողմը ուրիշ հանգուցիւ վերջնական կերպով կը պնդէ։ Ճիշտ այդ եղանակաւ կը կապուի եւս այն գօտին (քուստիք) զոր ամենայն այր հաւատացեալ և կին պարտի կրել ի մէջս իւր։

Բ. Զաօթրա՝ սրբազան ջուր, այժմ զօտր[1]։ Մոլպետը նախ կը սրբէ զանօթս յորս պիտի դրուի օրհնելու ջուրը, ասելով երիցս զաշէմ-վօհու. յետոյ կը լեցնէ զնոսա թակոյկին (աւանտ) ջրով և Արտվիսուրայ Նիյայիշին սկիզբը գրուցելով։ Ապա զանօթս յերկինս կը բարձրացնէ ու կը դնէ ի վերայ Այվիս վիմին. կը կար-

1. Անշուշտ մեր «ջուր» բառը. զ շատ անգամ կը փոխուի ի ձ կամ ի ջ։

կուէ զձեռս վրանին՝ առնլով երկիցս զԱհունա-Վաիրեօ և հուսկ յետոյ զվերջին մասն Արտավիստւրա աղօթից։

Գ. Հօմա և այդ հոյզգ քամելու համար պէտք եղած գործիները, որք են Սանդ (հաւանա) Սանդխառն (տաստա եօ սուրաք), և Անօթ մի (հոմ փիյալէ) յորում կը քամեն զհօյզն։

Դ. Սկուտեղք (դաշի), որոց մէջ կը դրուին նուէրքն կամ պատարագք. կաթի կոնք կամ տաշտք (դաշդա)։

Իսկ պաշտաւորին բերած գաւհամանքն են՝ Ա. խորված միս՝ զոր մոպետը կ'օրհնէ, և որոյ մէկ մասը կ'ուտեն արարողութեան միջոցին. Բ. Նուռն, արմաւ, բրինձ, կաթ, համաւէտ բոյսեր, ազգի ազգի անուշունք, Հօմայի ոստեր, և դրաօնա կոչուած հաց կամ նշխար։

Դրաօնա (այժմ դարուն) կը կոչի փոքրիկ, կլոր և տափակ նկանակներ։ Դիտելի է՝ որ Շարտէնի ի Պարսկաստան ճանապարհորդած ատեն սովորական ուտելու հացն ալ նոյն ձևով կը շինուէր։ Այժմ Փարսիք դարուն առանց հայսի կը շինեն, և սոցա մեծութիւնը հինգ ֆրանքնոց արծաթ դրամի չափ է։

Տարունի նուիրագործութիւնը մասնաւոր արարողութեամբք կը կատարուի. այս հացերէս չորս հատ սկուտեղի մը մէջ կը շարեն, և յայսցանէ միոյն վրայ կը դրուի խորված միսը[1]։ Երբեմն Տարունի նուիրագործութիւնը առանձին կը կատարուի. ու յայնժամ Յեսնայէն այլևայլ գլուխներ կ'ընթեռնուն։

Զոհելի Հօմայն ոսկեգոյն կամ դեղին բոյս մի է։

Զոհագործութիւնը հետագայ եղանակաւ կ'ըլլայ.

Ա. Հանդիսադիր մոպետը կը քարոզէ զիւր կատարելու գործը և կ'աղերսէ զդիս որոց կ'ուզէ նուիրել զպատարագն։

Բ. Մոպետը կ'առնու զբարսմունս, օրհնալ ջրով կը սրսկէ զայն ու կը կրկնէ զքարոզն և զաղօթս։

Գ. Մոպետը կը զետեղէ զբարսմունս և կ'օրհնէ զպատարագս՝ զմիս, զկաթ և զմիրգս։ Երեքկնէ զքարոզն և զաղօթս։

Դ. Այդ օրհնուած նիւթոց կը յաւելու զՀօմա և անոր հոյզը (բարահօմա), կրակի տրուելու փայտը և զանուշանս, և իւր մտացը մէջ կը միացնէ զնոսա ընդ ամենայն սուրբ խորհուրդս՝ բանս և գործս, զորս կը նուիրէ դից՝ չորրորդ անգամ առնլով զքարոզն և զաղօթս։

1. Այժմ մսոյ տեղ փարսիք կովու կաթ կը գործածեն. տես Hovelacque, l' Avesta, էջ 423։

Ը. Զոհագործութեան սկսելէն յառաջ մոլպետը կը գովաբանէ զԱհուրամազդա և զդիս. մինչև ցարդ խնդրած էր որ նպաստաւոր լինին զոհին, այժմ կը փառաբանէ զնոսա։

Թ. Յայնժամ կը մատուցանէ զպատարագս և կը կարդայ զա- նուանս դից որոց կը նուիրէ։

Ժ. Մոլպետը կը ճաշակէ մանաւորապէս ի խորոված մսոյ (միազդա, որ է Եղիշէի «միս յաղածոյ»), և կը հրաւիրէ զհան- գստականս որ անոնք ալ մասնակցին։ Ապա կ'օրհնէ զժողովուրդն, և Դիւաց և դիւապաշտից դէմ դիւթական խօսքեր կ'արտասանէ։

Այդ նախապատրաստական արարողութիւններէ ետքը կը սկսի բուն զոհը կամ պատարագը՝ որ է Հօմա։ Մոլպետը նախ կ'ըն- թեռնու զՀօմ-եաշդն, ապա գովաբանութիւն մը առ Հօմա, յո- րում ժամու նուիրագործողը կը քամէ զհօյզն թասակի մը մէջ, զոր կը զետեղէ արմիս վիմին վրայ։ Այնուհետև հօյզին մէկ մասը կ'ըմպէ և մնացածն ալ սպասաւորող քահանային կու տայ։ Ապա մոլպետը այլևայլ աղօթներ կը կարդայ, որոց մին հաւատարմու- թեան ուխտ մի է առ սուրբ հաւատս (ԺԲ Եասնա). երկրորդը՝ համդանակ մազդէական օրինաց (ԺԳ Եասնա). երրորդ՝ գովաբա- նութիւն առ Ահուրամազդա, Ամշասպանտս և այլ ոգւոց, որոց մե- ծարանս տալ պատուիրեն գիրք. չորրորդ՝ երեք օրհներգութիւնք, որք լուսաբանութիւնք են երից գլխաւոր աղօթից, այս է Ահունա- վաիրեօ, Աշէմ-վօհու, Ենհէ-հադամ (Եասնա ԺԲ–ԺԱ)։ Սոցա մէջտեղուանքն ալ Վիսպարատէ այլևայլ ընթերցուածք կը լինին։ Նուիրագործող քահանայն կը վերջացնէ՝ վերստին երկիցս մատու- ցանելով զդահամունս և հայցելով զօգնն զորս ադերսեր էր յա- ռաջագոյն (Եասնա ԻԲ, ԻԳ, ԻԴ և ԻԶ)։ Այս անգամ Ֆրաւա- շեաց մանաւոր գովութիւններ կ'ընէ։ Աւարտի աղօթքը մաղթանք մի է առ Ահուրամազդա, որպէս զի խորտակէ զչարս և յաղթա- նակ պարգևէ բարի արարածոց (Եասնա ԻԷ), ու զոհագործու- թիւնը կը լմննայ։ Այնուհետև զմազդեզանս ամրապնդելու համար ի հաւատս, ի Վենտիտատէ և ի Վիսպարատէ այլևայլ գլուխներ կ'ընթեռնուն, որոց մէջտեղուանքը կաթաներ ալ կ'երգեն։

Այդ երկայն աղօթներդ սոսկ ընթերցմամբ չէին ըլլար. Աւես- տան զանազան խազերով կը գրուցուէր, որ հին ատենը աւելի բազմաթիւ էին. միանգամայն և նուագարանօք, այս է ծնծղայիւք, թմբկօք և սրնգօք՝ զորս ունին մինչև ցայսօր փարսիք։

---

# ԵՂԻՇԷԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

# ՎԱՍՆ ՎԱՐԴԱՆԱՅ

## ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## ԵՂԻՇԷԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

# ՎԱՍՆ ՎԱՐԴԱՆԱՑ

### ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

#### ԴԱՒԹԻ ԵՐԻՑՈՒ ՄԱՄԻԿՈՆԻ[1] ՀԱՅՑԵԱԼ

1. *Բանն[2] վասն որոյ պատուիրեցեր՝ արարի, ով քաջ. վասն Հայոց պատերազմին հրամայեցեր, յորում բազումք առաքինացան քան զսակաւս: Ահա նշանագրեցի յայսմ եօթն յեղանակիս, առաջին զժամանակն, երկրորդ՝ զիբացն պատահումն յիշխանէն արեւելից, երրորդ, զմիաբանութիւն ուխտին եկեղեցւոյ, չորրորդ զերկպառակութիւն ոմանց բաժանելոց ի նմին ուխտէ, հինգերորդ՝ զյարձակումն արեւելայց, վեցերորդ՝ զընդդիմանալն Հայոց պատերազմաւ, եօթներորդ՝ զյերկարումն իրացն խռովութեան:*

2. *Յայսմ յեօթն գլուխս կարգադրեալ և եդեալ ծայրալիր պարապմամբ զսկիզբն և զմիջոցն և զկատարածն.*

1. Ցերիցանց, որք եպիսկոպոսաց և նախարարաց հետ ներկայ էին ի ժողովին որ գումարեցաւ յԱրտաշատ (Յ. Բ. 26) Միհրներսեհի նամակին պատասխանը որոշելու համար, Ղազար Փարպեցին երեքին անունը կուտայ. «Սուրբն Ղեւոնդ, Խորէն ի Մրենեայ և Դաւիթ», անշուշտ Մամիկոնեանը, որոյ հրամանաւ կը գրէ Եղիշէ այս պատմութիւնս, ինչպէս որ Մովսէս Խորենացին գրեր էր Հայոց Պատմութիւնը Սահակայ Բագրատունւոյ և Փարպեցին Վահանայ Մամիկոնւոյ խնդրանօք: Դաւիթ՝ Մամիկոնեան Տան մեծամեծներէն մէկն ըլլալու էր. բայց չգիտեմք թէ ինչ ազգականութիւն ունէր Վարդանայ հետ. գուցէ հօրեղբայրն կամ հօրեղբօրորդին էր:

2. Բանն. Մխիթ. այլ գրչագիրք և Թէոդոսիայ տպ. «Զբանն» կամ «Բանն զոր պատուիրեցեր»:

զի հանապազորդ ընթեռնուցուս, լսելով զառաքինեացն զքաջութիւն և զյետս կացելոցն զվատթարութիւն, ոչ յանձին կարօտութիւն երկրաւոր առատ գիտութեան լման, այլ այցելութիւն[1] երկնաւոր տնտեսութեանն՝ որ մատակարարէ յառաջգիտութեամբ զհատուցումն երկո-ցունց կողմանցն, որ երևելեօքս զաներևոյթն զուշակէ:

3. Այլ դու, ով մեծ ի գիտութեանն Աստուծոյ, առ ի՞նչ արդեօք հրամայեցեր, քան եթէ հրամայեցիր լա-ւագունացն[2]: Որպէս երևի ինձ և քեզ[3] և այնոցիկ որ դեգերեցին յիմաստութիւն՝ երկնաւոր սիրոյ է նշանակս այս, և ոչ երկրաւոր փառասիրութեանն. որպէս և ա-ռաջին ամենք ի քաջ պատմագրացն. Զուգութիւն է մայր բարեաց, անզուգութիւն ծնող չարեաց: Որպէս և մեր իսկ հայեցեալ ի սուրբ սէր քոյդ հրամանիդ, ոչ ինչ զանգատեալ վեհերեցաք հայեցեալ ի մեր տգիտութիւնս: Քանզի բազում ինչ է սրբութիւն՝ սատար լինել անօրու-թեան, որպէս աղօթք՝ գիտութեան, և սէր սուրբ՝ միա-բան օգտից:

1. Ուղերձիս մէջ այլևայլ աներ կան, որոց բացատրութիւնքն անզմեալ ու խըր-թին են: Ըստ մեզ հասկնալու է, «Ոչ յանձին կարօտութիւն երկրաւոր առատ գիտութեան լման, այլ իբրեւ այցելու-թիւն երկնաւոր տնտեսութեան՝ որ մա-տակարարէ յառաջգիտութեամբ զհատու-ցումն երկոցունց կողմանցն (յայսմ աշ-խարհի եւ փառաւորելով զառաքինիս և պատուհասելով զյետս կացեալս), և այդ երևելի հատուցմամբ զաներևոյթն ցու-ցանէ»: Նման բացատրութիւն մի «Հայր մերի» մեկնութեան մէջ. «Խօսի աղ-դակցաւն և ուսուցանէ զաներևոյթ աս-տուածութիւն յերևելիսս, զի երևելեօքս զաներևոյթ արքայութիւնն ծանիցես». Մատենագրութիւնք Եղիշէայ. էջ 202:

2. Ոմանք մեկնեցին. «Այլ դու, ով մեծ ի գիտութեան Աստուծոյ, ինչո՞ւ ինձ կը հրամայես գրել այդ պատմու-թիւնդ, մինչ այլք պէտք էին հրամայել քեզ գրել աւելի լաւերն»: — Ըստ մեզ՝ «առ ինչ արդեօք կը հրամայես ինձ գրել այս աստուածային հատուցմանց պատ-մութիւնը, եթէ ոչ անոր համար՝ որ այդպիսի հոգեշահ գործոյ մը պատճառ լինելովդ՝ երկնային վարձուց հրամայուիս կամ արժանանաս. քու խնդիրդ երկնա-ւոր սիրոյ նշանակ է և ոչ աշխարհային կամ տոհմային փառասիրութեան. (քան-զի Դուխթ Մամիկոնէից ցեղէն էր, և յԵղիշէէ ուզածը Մամիկոնեան Տանու-տեարց նահատակութեան պատմութիւն էր). դու այս պատմութիւնս գրել տա-լով կ'ուզես հասկնալ՝ թէ անմիաբանու-թիւնը Հայոց համար բիւր չարեաց պատ-ճառ եղև»:

3. Թէոդոսիոյ տպ. «Որպէս երևի ինձ և այնոցիկ որ դեգերեցին յիմաս-տասիրութիւն՝ երկնաւոր սիրոյ է ի քեզ այս նշանակ»:

4. Զոր և մեր ընդ հրամանին քում՝ ընկալեալ, յօժարութեամբ ձեռնարկեցաք զայս ինչ, որ է մխիթարութիւն սիրելեաց և յոյս յուսացելոց, քաջալերութիւն քաջաց, կամակարութեամբ յարձակեալ ի վերայ մահուան, առաջի տեսանելով զզօրագլուխն յաղթութեան՝ որ ոչ ումեք անհնար լինի թշնամութեամբ, այլ անդ ուսուցանէ զիւր անպարտելի զօրութիւնն: Եւ ահա և որք կամեսցի՝ ընդունի իբրև զնահատակ առաքինի: Եւ քանզի բազմադիմի է նահատակութեանդ անուն, և նա բազմադիմի շնորհս բաշխեաց ամենեցուն. զոր և մեծ ևս քան զամենայն՝ սէր սուրբ յանձնէնդ մտաց գիտեմք:

5. Այս պարզութիւն զվերինսն բերէ զնմանութիւն. զոր և մեր ի քեզ տեսեալ, մոռացաք զմեր բնութիւնս: Եւ ահա վերաբերիմք ընդ քեզ ճախրելով, և իբրև բարձրաթռիչս եղեալ՝ զամենայն փառաւոր մրրկածին օդովքս անցանիցեմք. և փոքր ի շատէ ծծելով յանապական վերին օդոյն՝ առնուցումք զգիտութիւն ի փրկութիւն անձանց և ի փառս[2] ամենայաղթ եկեղեցւոյ: Ուստի և բազում սուրբ պաշտօնեայքն զուարթութեամբ կատարեցին զսպաս վիճակին իւրեանց ի փառս Հօրն բոլորեցուն. ուր ընդ նմին սուրբ Երրորդութիւնն ցնծացեալ բերկրեսցի յանտրտմական յիւրում՝ էութեանն:

6. Արդ որովհետև ընկալաք զհրաման պատուիրանի յանձնախանձ[3] քոյոց բարուց բնութեանդ, սկսցուք ուստի արժան է սկսանել. թէպէտ և ոչ յօժարիցեմք զթըշուառութիւն մերոյ ազգիս ողբալ: Ահա ոչ ըստ կամաց արտօսրալիր ողբովք ճառագրեմք զբազում հարուածս, յորում պատահեցաք և մեք իսկ ականատեսք լինելով[4]:

1. Այս է Քրիստոս. քանի մը տող ի ստորև ընդունի բայը նմա կը վերաբերի:

2. Ի փառս, պարսկերէն ֆար:

3. Յանձնախանձ. այս է զերծ յաշխարհային կրից կամ ի փառասիրութենէ. այս առմունքս աւելցնել պարտ է կարծեմ մեր բառագրոց մէջ:

4. Եղիշէ Վարդանայ քարտուղար կամ զինուորակից ըլլալուն՝ ականատես վկայ և մասնակից եղած էր Հայաստանի գլխաւոր դիպաց: Պարսկաստան ալ գնացեր ու զՅազկերտ անձամբ տեսեր էր, բայց պատահմամբ հանդիսական որ մը կամ բանակաց դէմ ի Քուշանս խաղալու ատեն, և ոչ թէ իբրև ներկայացեր էր նախարարաց հետ (Տես Յ. Բ. 3): Իսկ թէ ե՞րբ գնացեր էր Եղիշէ ի Պարսկաստան, տես Յ. Ա. 11, ծն. 2:

# ԱՌԱՋԻՆ ՑԵՂԱՆԱԿ

## ԺԱՄԱՆԱԿՔՆ

### 1. *Քանզի ի բառնալ ազգին Արշակունեաց*[1]*, տիրեցին աշխարհիս Հայոց Ազգն Սասանայ*[2] *պարսկի, որ վարէր*

1. Արշակունիք ըսելով, Հռովմայեցի պատմագիրք՝ և անոնց հետևելով Եւրոպացիք՝ կը հասկնան զցեղ Պարթև թագաւորաց միանգամայն և այս վերջնոյս ազգակից զթագաւորս Հայոց: Բայց Եղիշէ զՊարթևս չիմանար աստ, որպէս Թարգմանիչք ոմանք կարծեցին, և որ պատմական մեծ անճշդութիւն մը կըլլար: Պարթևաց բառնալէն (յամի Տ. 226) ետքը Հայաստան Մեծին Խոսրովայ և Տրդատայ նման տակաւին անկախ և զօրաւոր արշակունի թագաւորներ ունեցեր էր. մնացածներն ալ աւելի Հռոմայ կայսերութեան պաշտպանութեան ներքև գտնուեր էին: Սասանեանք թէպէտ սակայն պատերազմեր էին Հայոց հետ, բայց շատ վերջը (յամի Տ. 384) յաջողեր էին տիրելու, և այն ալ միայն արևելեան մասին: Երբ Եղիշէ ի գիր առնոյր զպատմութիւնս (458ին՝) երկու հարիւր երեսուն և երկու տարի անցեր էր, յորմէ հետէ Պարթևաց պետութեան նահանգներէն բուն Պարսկաստանի կուսակալ – իշխանն Արտաշիր Սասանեան ապստամբելով՝ սպաններ էր վերջին պարթև – արշակունի թագաւորն, ու Պարսից ինքնակալութիւնը վերահաստատեր էր: Ագաթանգեղոս, Բուզանդ և Խորենացին ալ Արշակունիք ըսելով միայն զհայ Արշակունիս կ'իմանան, և միւսներուն միջա «Պարթև» անունը կու տան: «Եւ ինչ որ յետ Վաղարշակայ եղեն թագաւորք աշխարհիս մերոյ ի Նորին սերմանէ, որդի ի հօրէ առնելով զտէրութիւն՝ անուանեցան Արշակունիք յԱրշակայ». Խորեն. 153: — Ուրեմն «ի բառնալ ազգին Արշակունեաց» ըսելով կ'իմանայ Եղիշէ Արտաշէս Երրորդի մերժումը (յամի Տ. 428), յորմէ երեսուն տարի ետքը կը գրէր: Մինչև ցայդ թուական (384–428), Հայաստանի արևելեան՝ բայց կարևորագոյն մասը՝ թէպէտ հարկատու էր Պարսից, բայց ունէր իւր յատուկ թագաւորութիւնը. այնուհետև Սասանեանք մարզպանաց ձեռօք կառավարեցին զայն:

2. Արտաշրի հօրը նկատմամբ տարաձայնութիւն կայ պատմչաց մէջ. Ըստ Ագաթանգեղեայ, Խորենացւոյ, Եղնկայ, ինչպէս և բահլաւի ձեռագիր մատենից՝ է հայր Արտաշրի առաջնոյ:

Քարնամակի – Արտաշիրի – Փափաքան անուն գրուածոյն մէջ որ Արտաշրի առաջնոյ երկաթուղին կը համարուի, որու-

գիւր իշխանութիւնն օրինաց մոգուցն[1]. և բազում անգամ մարտնչէր ընդ այնոսիկ, որ ոչ ընդ նոյին օրինօք մնանէին, սկիզբն արարեալ յամացն Արշակայ արքայի որդւոյն Տիրանայ, և կռուէր մինչև յամն վեցերորդ Արտաշխի արքայի Հայոց, որդւոյն Վռամշապհոյ[2]: Եւ

չակի գրուցուած է՝ թէ Արտաշիր որդի է Սասանայ և դստեր Փափագայ. Փափագս իշխան էր նահանգին Պարսից և հարկատու յետին Աշքանեան արքային Արտաւանայ: Սակայն թէ Արտաշրի և թէ որդւոյն Շապհոյ առաջնոյ արձանագրութեանց մէջ «Արտաշիր որդի Փափագայ» կը յիշատակուի (Տես Նոլտեքի՝ Պատմութիւն Սասանեանց, էջ 32): Ըստ մահմետական պատմագրաց, Սասան էր պապ կամ մին ի նախահարց Արտաշրի, և թագադարդ կուսակալ Պարսք աշխարհին: Մասուտի երկու ճիւղագրութիւն կը դնէ. մին՝ որ համաձայն է Թապարիի տուածին, է այսպէս. Արտաշիր, որդի Պապէքայ, որդւոյ Սասանայ, որդւոյ Պապէքայ, որդւոյ Սասանայ, որդւոյ Պապէքայ, որդւոյ Միհրեմասայ, որդւոյ Սասանայ, որդւոյ Բահմանայ, որդւոյ Իսֆանտիարայ, որդւոյ Կիւշտասպայ, այս է հօրն Վշտասպեան Դարեհի: Միւճմէլ-ութ-թաւարիխի հեղինակը, որ մահմետական պատմչաց մէջ ամենէն աւելի քննադատողն է, այդ երկու աւանդութեանց զանազանութեան պատճառը մեզ կ'ուզէ բացատրել: Աքեմենեանն Բահման, կ'ըսէ. (այս է Արտաշէս Երկայնաձեռն), որդի մի ունէր Սասան անուն, որ տեսնելով որ Բահման իւր աղջկանը կ'ուզէ ձգել զաթոռն արքունի, թողուց գինադաւան հայրենի ու ի Հնդիկս գնաց. անդ գաղտնի պահելով զազգատոհմն, հովուութեամբ անցուց իւր օրերը. յետ նորա՝ որդին և սերունդն ալ Սասան յորջորջեցան մինչև ցհինգերորդ ազգ, և աղքատ հովիւներ էին. մինչև որ Ստախրի արքայն Պապէք երազներ տեսնելով բերել տուաւ զՍասան իւր լեռներէն, ու զմին ի դստերաց իւրոց տուաւ նմա ի կնութեան: Սասանս այս՝ որ էր թոռն թոռնորդւոյն համանուն նախահօր, որդի մի ունեցաւ Արտաշիր անուն՝ զոր Պապէք իբրև գիւր որդին կը հռչակէր: Արտաշիր և ոչ ոք ի յԱշքանեանց չէր համարձակեր յայտնել զծագումն իւր ի Բահմանայ՝ մինչև թագաւորեց (Journal Asiatique, 1841):

1. Այդ երկուց բառից ուշադրութիւն ընել պարտ է: Ո և է ազգի կրօնը քիչ շատ ազդեցութիւն կ'ունենայ անշուշտ նորա օրինաց վրայ. եկեղեցականք Միջին դարու՝ ջանացին ձեռուընին անցնել աշխարհական իրաց առաջնորդութիւնը. բայց քրիստոնէական պատուիրանքն ընդհանրապէս որիշ և անջատ մնացին ի քաղաքական օրինաց: Հելլէն, հռովմէական և հայկական հեթանոսութեան քուրմերն՝ ինչպէս և աւետարանական պաշտօնեայք՝ չեղեն միակ աւանդապահք Օրինաց, մինչդեռ մոգուց օրէնքը Շերիար մի էր, որ ոչ միայն կրօնական վարդապետութիւններ կը պարունակէր, այլ և աշխարհային կարգաց և ամուսնութեանց եղանակը կը սահմանէր ու կը պատուիրէր, և դատարանք և դպրոցք մոգուց ձեռքն էին:

2. Եղիշէ համառօտիւ կ'ուզէ պատմել մեզ նախնի Սասանեանց առ Հայս հասուցած աղէտները. բայց չփոթ եղանակաւ կը բացատրէ ու պատմական անճշդութիւններ կ'ընէ: Սասանեանք Մեծին Խոսրովայ օրէն ի վեր սկսեր էին մարտնչել Հայոց հետ՝ և ոչ Արշակայ Երկրորդի ատենէն միայն. այսչափ կրնանք

*իւր։ զնա ևս մերժեաց ի թագաւորութենէն, ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն. զի թէպէտ և գանձն[1] յարքունիս Պարսկաց երթայր, սակայն այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի։ վասն որոյ և աստուածպաշտութիւնն բարձրագլուխ կամակարութեամբ երևելի լինէր յաշխարհին Հայոց՝ ի սկզբան տէրութեանն Շապհոյ արքայից արքայի մինչև յամն յերկրորդ Յազկերտի[2] ար-*

յառաջ բերել ի նպաստ մեր հեղինակին, որ մինչև Արշակայ օրերը (341–364) Հայաստանի մէջ աւելի Հռովմայեցւոց ազդեցութիւնը երևելի էր քան Պարսիցը, մինչդեռ այնուհետև ներհակը եղաւ։ Իսկ աշխարհին՝ Հռոմոց և Պարսից մէջ բաժնուելէն (384ին) մինչև Յազկերտ Բի ատենը, արևելեան մասը որ Պարսիցն էր, աւելի խաղաղ քան յուզեալ վիճակ մ՚ունեցեր էր։ Եղիշեայ քիչ մը տարբեր բառն ալ այս միջոցիս համար է. «աստուածպաշտութիւն բարձրագլուխ կամակարութեամբ երևելի լինէր յաշխարհին Հայոց՝ ի սկզբան տէրութեան Շապհոյ արքայից արքայի (այս է Շապուհ Գ., որ թագաւորեց յամի Տ. 383) մինչև յամն երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ»։ — Ստահրաշապուհ՞ կամ որպէս այլ օրինակք դնեն՝ Վռամշապուհ։ Թէպէտ Խորենացին և Փարպեցին այս վերջինս միայն կը գործածեն, կրկին անուններդ ալ Պարսիկք դրած ըլլալու են վերջին Արտաշիրի հօրը, սորա Պարսկաստան պատանդ մնացած ժամանակ. Ստահր՝ ի յիշատակ բնակութեան նորա յոստանին Պարսից, քանզի այդ անուամբ կը յորջորջէին Պարսիկք դքաղաքն և գաւառն Պերսեպօլեայ, որ բնիկ էր Սասանեան ցեղին։ — Եւ Վռամ՞ բառ սովորութեան Պարսից, որք յառուկ անուանց կը յաւելուին ընդհանրապէս աստուածոց կամ հրեշտակաց միայն անունը, իբր պաշտպան դիք։ Վհռամ կամ Վռահռամ, այժմ Պեհրամ, էր հզօր հրեշտակն յաղթութեան. նոյնպէս կը կոչուէր ևս ամենէն սրբազան և մեծ կրակը՝ «Վռամական կրակ», Վհռամ արտաշ. մէկ քանի Սասանեան թագաւորք ալ Վռամ անունը կրեցին։ — Իսկ Շապուհ, որ արձանագրութեանց և հին մատենից մէջ շահփուհր կը գրուէր, նշանակէ «արքայորդի»։

1. Գանձն է հարկերէ հաւաքեալ ստակը. է ևս պարսկերէն՝ كنز Kanz. աւելի գործածական է այժմ گنج gandj։

2. Յազկերտ Բ, որդի Վռամայ Եի, որ Եղիշեայ նկարագրած իրաց ատենը Պարսից թագաւոր էր, գահակալեց յամի Տ. 438ին, Օգոստոսի կամ Սեպտեմբերի մէջ, (Փարպ. 103. Խորեն. Գ, կէ), այս է՝ Արշակունեաց բարձմանէ տասն տարի ետքը։ Քլինթըն, Սէն-Մարթէն և Ռօլինսըն դնեն յամի 440. Մօրթման՝ 444ին. Միխիթարեանք և Պ. Պատկանեան՝ յամի 438ին։ Ազգային պատմըչաց քննութենէն մեզ ալ այս վերջի թուականս ընտրելի թուեցաւ։ — Յազկերտ Բի դրամները Վռամայ Եի դրամոց պէս անարուեստ են. գլուխը՝ ատամնաւոր պարսպի ձևով թագ մը կը կրէ, որոյ մէջտեղէն կը բարձրանայ մահիկ մը և բոլորակ կամ գնդակ մը՝ ի նշան լուսնոյ և արեգական. վերստաքին ուրիշ Սասանեան դրամոց բաղդատմամբ կարճ են. երբեմն մազդեան քաջի Եզդաքերդի, երբեմն՝ քաջի Եզդաքերդի միայն.

քայից արքայի որդւոյ Վռամայ. զոր եգիտ սատանայ իւր գործակից, և զամենայն մթերեալ թոյնն թափեաց ի բաց, և ելից զնա իբրև զպատկանդարան[1] դեղեալ նետիւք: Եւ սկսաւ եղջիւր ածել անօրէնութեամբ, և զո-

զոր՝ կարծեմ՝ աւելի ուղղութեամբ պարտ է ընթեռնուլ քատայ Եազդքերդի, որպէս ի բազանս գիրս: Մազդեան՝ է մազդեզն՝ կամ Որմզդապաշտ. քատայ կամ խատայ կամ խօտայ, արդի պարսկ. خدا, خدای, թարգմանի «արքայ, տէր, տէր արքայ»: Հակառակ կողմը ատրուշանի կամ կրակարանի պատկերը տպեալ է, որ սովորական է Սասանեան դրամոց, հանդերձ պահապանօքն որ հսկեն ի վերայ կրակին: Յազկերտի դրամքը շատ առատ չեն, ու երկք փոխերանոցաց նշաններ կը կրեն, որ կը մեկնուին՝ Խուժաստան, Տիզբոն և Նէհաւէնտ: Դրամոց նայելով՝ Յազկերտ յաղթանդամ և անձնեայ էր կազմուածքով. աչերն և երեսացը գծագրութիւնն՝ խոշոր, խոյաքիթ և պակասամօրուս: Միւճմէլ–ուլ–Թավարիխի հեղինակը կը վկայէ՝ թէ Սասանեան արքայից «Պատկերաց գրքին» մէջ Յազկերտ Բ նկարեալ է կանաչ պատմուճանաւ (پیراهن փիրահէն) և ոսկեհուռ սեաւ վէշի անդրավարտեօք. (شلوار, շալվար. վէշին ընհեղեայ կերպաս մի էր, և այսպէս կը յորջորջէր յանուն Վէշ քաղաքին Թուրքաստանու՝ ուրանօր կը գործուէր). ունէր կապոյտ թագ ի գլուխ. բազմեալ էր յաթոռ և յեցեալ ի սուսեր: Մասուտի ալ կը պատմէ՝ թէ Հիճրէթի 303 թուականին Ստահրի մէջ տեսեր էր գիրք մը, որ Սասանեան թագաւորաց միոյ միոյ վարքը և գունաւոր պատկերը կը պարունակէր. թագաւորները նկարուած էին երիտասարդ կամ ծեր, իրենց մահուան ժամանակի կերպարանաց համեմատ. քսան և հինգ թագաւորս և երկու թագուհիս համրեր էր, և ամբողջ Սասանեան հարստութեան 433 տարուընէ եօթն օր պակաս տևողութիւն տրուած ըլլալը տեսեր էր: Մասուտի տեսածը սակայն բնագիրը չէր, այլ պարսկերէն բնագրին արաբերէն վերծանութիւնը, որ կատարուեր էր 113 թուականին Հիճրէթի վասն Հէշամայ, որդւոյ Աբտիւլ–Մէլիքայ, որդւոյ Մէրուանայ: Թարգմանիչն կը գրէր՝ թէ թագաւորաց պատկերքն ի սկզբանէ անտի արքունի գանձատան մէջ պահել սովոր էր, և թէ այդ գանձատան բնագրաց վրայէն յօրիներ էր իւր թարգմանութիւնը: Մասուդէ միայն Արտաշրի առաջնոյ և վերջին Յազկերտի դէմքը և ըզգեստուց տարազքը և գոյները մեզ կ'աւանդէ. բայց Միւճմէլ–ուլ–Թավարիխի հեղինակը մէն մի թագաւորաց նկարագիրն ալ կը դնէ: Տես Maçoudi. Prairies d'or. Հտ. 9, 331: — Եազդքերդ թարգմանի «Աստուածակերտ». արտաբերեալ ձեւն է Եազտճէրտ:

1. Ի հայ մատենագրաց ոմանք կը գտնեն յերկուս բառս՝ պատկան դարան, և իմանան պատշաճ դարան. ոմանք այլ իբրև մի բարդեալ բառ կը հոլովեն: Սեփհականեալ անուն մի է կապարճից՝ ուր դնին նետք. ստուգաբանութիւնը՝ անյայտ. է պրսկ. պատկան կամ պայկան پادكان պահապան, գանձապահ. և դիրան, որ հին ատենը պէտք էր կարդացուիլ դէրան՝ նետք: Ի եւ پیکان Բայքան նետ. և دارا տարա՝ ունող, որ նոյն կ'երևի ընդ «դարանի»: — Այլ ընթերցուած՝ «իբրև զպատկանդարան դեղովք», որ ընարելի չթուեցաւ մեզ, քանի որ քիչ մը տարբեր թէ թիւնից և թէ նետից խօսք կ'ըլլայ:

ռալով հող հանէր ընդ չորս կողմանս երկրի[1]. և թշնամի և հակառակորդ երևեցուցանէր իւր զհաւատացեալսն ի Քրիստոս, և ներկեալ տագնապէր անխաղաղաւէր կենօք:

2. Քանզի յոյժ սիրելի էր նմա խռովութիւն, արիւնհեղութիւն[2], վասն այնորիկ յանձն իւր տարաբերէր, եթէ յո՞ թափեսցէ զդառնութիւն թունից, կամ ո՞ւր բացարեսցէ զբազմութիւն նետից: Եւ առ յոյժ յիմարութեան իւրոյ զգայան մի կատաղի յարձակեցաւ ի վերայ աշխարհին Յունաց. եհար մինչ ի քաղաքն Մծբին[3] և զբազում գաւառս Հռոմոց աւերեաց տապատակաւ, և զամենայն եկեղեցիս հրձիգ արար. կոտորեաց զաւար և զգերի, և ահարեկ արար զամենայն զօրս աշխարհին:

1. Եղիշէ ցուլ կը նմանեցնէ զՅազկերտ. ինչ կենդանի նկարագրութիւն։ Այս գրչագիր որպէս և տպ. Թէոդոսիոյ՝ «սկսաւ եղջիւր ածել անօրէնութեամբ, զոռոզանայր, և գոռալով հող հանէր ընդ չորս կողմանս երկրի»։ Յաւելեալ բայը նկարագրութեան կորովը կը պակսեցնէ. և քանի որ ուրիշ գրչագիրք չեն դներ, անյարմար թուեցաւ մեզ։

2. Տես Յազկերտի բարուց վրայոք էջ 32–38։

3. Մծբին. լատ. Nisibis, արաբ. نصيبين Նիսիպին. քաղաք մեծամուր, 100 քիլոմեդրոք չափ յարեւմուտս Տիգրիսի, զոր Հռովմայեցիք դուռն կը համարէին Միջագետաց, և ուր առաջին հայ արշակունի թագաւորք հաստատած էին իրենց աթոռը, որպէս պատմէ Խորենացին։ Յետ երկար պատերազմաց Շապուհ Բ առած էր զնա (յամի Տ. 364) և տակաւին, Պարսից ձեռքն էր. Յազկերտի Հռոմոց դէմ խաղացած ատենը Եղիշէ դեռ Հայաստան չէր դարձած յաղթութենէն։ Պատերազմիս պատճառն Հայաստանի անհաստատ վիճակն էր. վասն որոյ Յազկերտ իւր գլխաւոր բանակը ի Միջագետս երթալու ատենը հրաման ըրեր էր Ատրպատականի զօրաց՝ որ Բագրեւանդ մնան։ Հռոմէ Մծբնայ մօտերը զօրք ժողովեր էին. ու եթէ յանկարծ քաղաքին տիրէին, կրնար նոցա ձեռքը երկրորդ Թէոդոսուպոլիս մի լինել, ու յայնժամ Պարսից կացութիւնը ի Հայաստան բոլորովին կը վըտանգէր։ — Եղիշէ ըսել կ'ուզէ ուրեմն՝ թէ Յազկերտ խաղաց գնաց մինչ ի քաղաքն ի Մծբին, եհար զզօրս Յունաց (Խորեն. Գ, ԿԷ) և աւերեաց զբազում գաւառս նոցա։ Ըստ Միրխոնդայ՝ Միհըրներսեհ հրամանատար էր բանակին. և Մարկելլինոս ալ կը յաւելու՝ թէ պարսկական զօրաց մէջ կը գտնուէին բազմաթիւ Արաբացիք, Tzanni (Ճանիւս Պոնտացիք կամ Խաղտիք՝ որք ինքնագլուխ ժողովուրդ մի էին, դաշնակից Պարսից), և բազում Հոնք՝ զորս Ճորայ պահակէն բերել տուած ըլլալու էին։ Իսկ Բագրեւանդ մնող զօրքը «եկեալ բանակեցան անկարգապէս հուպ առ Բագնացն աւանի»։ Անդ էր յայնժամ Սահակ Պարթեւ իւր մահուան անկողնոյն մէջ. աշակերտները զծերունի հայրապետը պարսիկ զօրաց տուած նեղութիւններէն ազատելու համար, Բլուր կոչուած գիւղ մը փոխադրեցին՝ ուրանօր վախճանեցաւ. (Խորեն. Գ, ԿԷ)։

3. Իսկ երանելին Թէոդոս կայսր, քանզի խաղաղասէր էր ի Թրակիա, ոչ կամեցաւ ելանել ընդ առաջ պատերազմաւ. այլ այր մի Անատոլ[1] անուն, որ էր նորա սպարապետ արեւելից, առաքեաց առ նա բազում գանձիւք: Եւ որք պարսիկք, որք փախուցեալ էին վասն քրիստոնէութեան և էին ի քաղաքին կայսեր, կալաւ և ետ ի ձեռս նորա[2]: Եւ զամենայն զոր ինչ ասաց ի Ժա-

1. Այս այն Անատոլ է որ շինեաց և ամրացոյց զքաղաքն Թէոդուպոլսոյ, և կնքեաց դաշինս ընդ Վռամայ Ե.ի յամի Տ. 422: Երբ Յազկերտի արշաւանաց լուրը հասաւ ի Բիւզանդիոն, հիւպատոսութենէ նոր կ'ելլէր ու պատրկութեամբ արեւելից սպարապետ եղած էր: Ըստ Պրոկոպիոսի, Անատոլ հրահանգ ունէր անմիջապէս խաղաղութիւն առաջարկելու. Յազկերտի վեհանձնութիւնն ալ գինելով իջաւ յերիվարէն, ու հետիոտն և միայնակ գնաց ի բանակն Պարսից: Թշնամւոյն այդքան խոնարհմանէն իջաւ Յազկերտի բարկութիւնը. բայց չուզեց օտար հողոյ վրայ դաշինս կնքել. ետ դարձաւ, ու երբ մտաւ ի սահմանս Պարսից պետութեան, տարուան մը համար զինադադար յանձն առաւ և ապա հաշտութիւն ըրաւ: Հռոմոց խաղաղութիւն հաստատելու այդ առթիւն շտապման պատճառն Ատտիլասայ յարձակումն և զկայսրութիւնը տակն ու վրայ ընելն էր. (տես յէջ 18): Բայց ինչու յաղթական արքայից արքայն այնքան շուտով հաւանեցաւ: Յունաց սպարապետին իր առջեւը նուաստանալը բաւական պատճառ չէր կրնար ըլլալ: Որովհետեւ եթէ, ինչպէս Հռոմ պատմագիրք կը գրուցեն, ամենեւին զինակալութիւն չէր տուեր, պէտք էր յառաջ երթալ. անշուշտ ինքն ալ իր տէրութեան մէջ շատ մը հոգեր ունէր. եթէ Ատտիլասայ Հոնք տագնապ հասուցեր էին կայսրութեան, Քուշանք ալ զՊարսիկս կը նեղէին շարաշար. ասկէ զատ՝ պատերազմին նպատակը ձեռք ձգուեր էր. հորբ՝ Վռամայ պատուել ուզած բայց չյաջողած գերիները ետ առեր էր, ու Անատոլայ ուրիշ ծանր պայմաններ ընդունել տուեր էր, զորս տես Յ. Ա. 9, ծն. 2:

2. Յազկերտ Ա. Յազկերտ Բի հայր, մոգուց բարեկամ չէր, ու նոցա զօրութիւնը և ազդեցութիւնը կոտրելու համար Քրիստոնէից աղէկ աչօք կը նայէր. մինչև անգամ հրաման ըրեր էր՝ որ եպիսկոպոսներ ունենան ի Միջագետս և ի Տիզբոն: Բայց թագաւորութեանը վերջի տարին (419) Տիզբոնի եպիսկոպոսը Աբդաս՝ վկայանալու անտեղի փափագու՝ քաղաքին մեծ կրակատունը հրձիգ ըրեր էր. մոլեռանդն մոգերը բռնանալով թագաւորին վրայ, սոսկալի հալածանք մը յարուցեր էին քրիստոնէից դէմ, յորոց բազումք ապաւիներ էին յաշխարհն Հռոմոց: Վռամ Ե. յաթոռն ելլելուն պէս՝ պահանջեր էր որ իրեն յանձնուին փախստականք. ու երբ խնդիրը չկատարուեցաւ, պատերազմ հրատարակեր էր՝ որ երկու տարի տեւած էր (420–422): Հռոմք կը պաշարէին զՄծբին և Պարսիկք զԹէոդուպոլիս. բայց ոչ մէկ կողմ կը յաջողէր միւսոյն բերդաքաղաքին տիրելու: Վերջապէս Վռամ, որոյ բանակները սաստկապէս վնասեալ էին, հաշտութիւն ըրաւ՝ յետս կասելով ի պահանջմանէն: Հաշտութիւնը հարիւր տարուան համար էր, տասն և եօթն տարի միայն տեւեց: Այն փախստականքը՝ զորս երկար պատերազմաւ չէր կրցեր Վռամ ձեռք ձգել, այժմ Յազկերտի կը յանձնուին:

*մանուկին՝ կատարեաց ըստ կամաց նորա, և արգել զնա ի բազում բարկութենէն. և դարձաւ անդրէն յիւր քաղաքն Տիգրոն*[1]*:*

4. *Եւ իբրև ետես անօրէն իշխանն, եթէ յաջողեցաւ չարութիւն նորա, սկսաւ այլ ևս խորհուրդ յաւելուլ, իբր որ զի ի հուր բորբոքեալ յաւելլով բազում նիւթս փայտից: Քանզի ուստի սակաւ մի կասկածոտն էր, անտի անհրկիւղ համարձակեցաւ. վասն այնորիկ դրդուեցոյց զբազումս ի սուրբ ուխտէն քրիստոնէից, էր՝ զոր բանիւք սպառնալեօք, էր՝ զոր կաշառօք և տանջանօք, և էր՝ զոր չարաչար մահուամբ վախճանէր: Յափշտակութիւն տանէր ընչից և արարոց, և մեծաւ անարգանօք տանջէր զամենեսեան*[2]*: Եւ իբրև ետես՝ եթէ վայրապար ցրուեցան ի*

1. Տիգրոն, պարսկ. Թիսֆոն. այժմեան Պաղտատէն 16 քիլոմեդրոք չափ ասդին, Տիգրիսի ձախակողմեան ափանցը վրայ՝ դէմ յանդիման Սելեւկիոյ, որուն անունն մէկ թաղն էր Սելեւկիացոց ժամանակը: Պայծառացաւ հետզհետէ Պարթեւաց օրերը. և երբ Հռովմայեցի զօրավարք առին և այրեցին զՍելեւկիա, այնուհետև Տիգրոն ոստան եղև Արևելից ու յաջորդեց Սելեւկիոյ և Բաբելոնի: Ըստ Մուճմալ-ուԹ-Թավարիխի, Տիգրոն Սասանեանց ալ մայրաքաղաքն և ձմերոցն էր, մանաւանդ Շապուհ Երկրորդէն ի վեր, մինչ նորա նախորդքը աւելի Ստահր հաստատած էին իրենց բնակութիւնը: Թախթի-Պօսթանի, Շափուրի և Գանձակայ հոյակապ պալատանց աւերակներէն ու Դաստակերտի ապարանից վրայօք պատմագրաց յիշատակութիւններէն պարտ է ևս հետևցնել, թէ Սասանեան թագաւորք ըստ քմաց՝ եղանակաց կամ պետական պահանջմանց՝ իրենց բնակութեան վայրը ստէպ կը փոփոխէին. ինչպէս և Եղիշէ ևս կ'ուսուցանէ մեզ թէ Յազկերտ Բ բազում տարիներ ի Նիւշապուհ անցուց:

Տիգրոն և Սելեւկիա՝ Մետաին կը կոչուին մինչև ցայժմ յԱրաբացոց: Տիգրոնի մէջ կանգուն մնացած է տակաւին Նուշիրէվան Խոսրովայ Թաքի-քեսրա անուանեալ պալատան վեցայարկ ճակատը, որոյ բարձրութիւնն է 30 մեդր, երկայնութիւնը 81: Շէնքին մէջտեղը ահագին դուռ մը կամ բացուած մը կայ կամարակապ, որ Սասանեան ճարտարապետութեան յատուկ է. կամարին լայնքն է $21\frac{1}{2}$ մեդր, խորութիւնը $34\frac{1}{2}$ և բարձրութիւնը բովանդակ շէնքին հաւասար: Այս վիթխարի ապարանէս զատ շինութիւնք մնացած չեն: Շրջակայ և հանդիպակաց եզերց վրայ մեծածաւալ տարածութիւն մը՝ աղիւսի, խեցւոյ, պարըսպաց և աւերակաց թանձր ծածկութով ծածկուած է. (Տես Baron Thielmann և Ռօլինսըն Պատմ. Սասանեանց):

2. Այս հալածանքս Հայոց՝ Վրաց և Աղուանից մէջ չէր գործադրուեր, այլ տէրութեան աւելի կեդրոնական նահանգաց մէջ, ուր ապստամբութեան երկիւղ չկար. ինչպէս Եղիշէ ևս կը վկայէ ասոր (Յ. Ա. 14). «Եւ ևս հրաման յափշտակել զքրիստոնէից զինչս և զստացուածս, որք էին ի մէջ Պարսկաց աշխարհին»: Այս քրիստոնեայքս պետութեան այլ և այլ նահանգաց մէջ ցրուած բազմաթիւ Ասորիքն էին, որոց մեծա-

բազում կողմանս, ի խորհուրդ կոչէր զպաշտօնեայս ձախակողմանն, որք կացեալ էին ի կռապաշտութեանն անլուծանելի հանգուցիւք, վառեալք և ջեռեալք իբրև զհնոց առ այրել զուխտ սուրբ եկեղեցւոյ:

5. Քանզի էին իսկ այնպիսիքն բնակեալ ի կեանս իւրեանց իբրև ի թանձրամած խաւարի, և ոգիքն արգելեալք ի մարմնի իբրև զկենդանի ի գերեզմանի, յորս ամենևին չծագէ նշոյլ սուրբ լուսոյն Քրիստոսի: Նա և արջք օրհասականք ընդ վախճանել չնչյն հզօրագոյնք կային. յորոց և իմաստունքն տեղի տուեալ փախչէին ի նոցանէն: Այսպիսի իմն եկեալ հասեալ է վախճան տէրութեանն[2]. եթէ հարկանին՝ չզգան, և եթէ հարկանեն՝ չխնայեն. և իբրև ոչ գտանի արտաքին թշնամի, ընդ անձինս իւրեանց մարտ եդեալ կային: Ի դէպ իսկ երանէ բան մարգարէին ի վերայ նոցա. «Այր, ասէ, առ քաղցի իւրում՝ շրջեսցի և կերիցէ զկէս անձին իւրոյ». Նման դմին և Տէրն ինքնին ասէ. «Ամենայն տուն և թագաւորութիւն՝ որ յանձն իւր բաժանի, ոչ կարէ կալ հաստատուն»:

6. Արդ զի՞ կոծիս, զի՞ մրցիս, զի՞ այրիս, զի՞ բորբոքիս, զի՞ շիջանիս[3], զի՞ կոչես ի խորհուրդ զայնոսիկ,

գոյն մասը Նեստորի հետևելով և ուղղափառ Եկեղեցւոյ հետ հաղորդակցութիւն չունենալով՝ վտանգաւոր չէին համարուեր: Յազկերտի յարուցած հալածանքը ոչ այնքան հերձուածողաց դէմ էր որքան ուղղափառաց: Մանաւանդ երբ Հօլվան գաւառին մօգը քրիստոնէութիւնը ընդունելով կրօնաւոր եղաւ ու զգաւառապետը և անոր աղջիկը քրիստոնէութեան դարձուց, Յազկերտի զայրոյթը վերջին ծայր հասաւ:

1. Կ՚իմանայ զմոգս՝ աւետարանական լեզուաւ: Կռապաշտ անուն անյարմար է. քանզի Պարսիկք Որմզդայ հետ ուրիշ անմարմին էակաց, ինչպէս և արեգական և տարերց պաշտօն կը մատուցանէին, բայց կուռք չունէին:

2. Անշուշտ ամբողջ այդ պարբերութիւնդ ակնարկութիւն մի է Յազկերտի որդւոց՝ Պերոզի և Որմզդայ՝ գահակալութեան համար իրարու դէմ յարուցած քաղաքական պատերազմին: Շարադրութենէս պարզ է հետևցնել, թէ Եղիշէ գիր այս երկասիրութիւնը՝ այս է զեօթն Ցեղանակս՝ ի գիր առաւ այդ պատերազմին տարին (458), կամ անմիջապէս ետքը. վասն զի Պերոզի միահեծան իշխանութեանը հաստատուելէն և երկրին խաղաղելէն վերջը չէր կրնար այդպէս մտածել և գրել. (Տես էջ 74): Այսու ամենայնիւ Սասանեանց ինքնակալութիւնը տակաւին պայծառ օրեր պիտի ունենար ու Արաբացոց զարհուրելի յարձակմամբը միայն պիտի խորտակէր յամին 651:

3. Թէոդոսիոյ և Մխիթարեանց վերջին տպագիրքը միայն գնեն՝ «զի՞ ոչ

որոց զոգին ձեր ի ձէնջ քաղեալ՝ հանեալ է զանապականդ յապականութիւն, և զապականելի մարմինդ դէշաքարշ արարեալ՝ իբրև զաղիր մեռելոտի ի բաց ընկեցեալ: Այսպէս զայդ կամիս, զի ծածկեսցի խորհուրդ ամբարշտութեանդ. տեսջիր յորժամ՝ յայտնեսցի, ապա գիտասցես զելս կատարածի դորա:

7. Ասեն միւսքն. Արքայ քաջ՝, աստուածքն ետուն քեզ զտէրութիւն և զյաղթութիւն, և ոչ ինչ կարօտեն նոքա մարմնաւոր մեծութեան, բայց եթէ ի մի օրէնս դարձուցանես զամենայն ազգս և ազինս, որ են ի տէրութեան քում. յայնժամ և աշխարհն Յունաց հնազանդեալ մնասցէ ընդ օրինօք քովք: Արդ զբանս զայսոսիկ վաղվաղակի կատարեա դու, արքայ. զօր գումարեա և գունդ կազմեա, խաղա գնա դու յաշխարհն Քուշանաց[2]. և զա-

չիջանիս ». որ անդէպ է, և այդ գեղեցիկ դիմանկարութեանդ իմաստը կ'աւրէ: Եղիշէ կը հարցնէ. ինչու ինքզինքդ, կը տանջես. մերթ կը բորբոքիս ու մերթ կը շիջանիս: Քանզի այդպէս էր Յազկերտ, խիստ հրամաններ կու տար, և երբ նոցա աշխարհակործան հետևանքը կը տեսնէր՝ կը զարհուրէր և առ ժամանակ մի աւելի խոհեմ ընթացք մը կը բռնէր, մինչև որ հպատակ ազգերը ի մի կրօն դարձնելու փափագը, որով միայն կարծէր ամրապնդել զպետութիւնն, վերստին բռնանայր իւր մտաց վրայ. ինչպէս որ պատմութեանս մէջ այսուհետև պիտի ցուցանէ մեզ Եղիշէ այլ և այլ անգամ. (Տես յեղ. Գ, 73. « Եւ անդէն շիջանէր ի բազմարոց բորբոքմանէն » և այլն, և 77 ի նոյն. « ունկն դնէին յեղյեղուկ լեզուի նորա »):

1. Մոգուց բերանը գրուած խօսքը վսեմ է յոյժ, միանգամայն մազդեզանց գաղափարաց համեմատ: Պիհիսթունի արձանագրութեանց մէջ Վշտասպեան Դարեհ զհամայն յաջողութիւնս իւր Աստուծոյ կ'ընծայէ (Քրիստոսէ 516 ամօք յառաջ). « Շնորհօք Աւրամազդայ եղէ թագաւոր. Աւրամազդա ետ ինձ զտէրութիւն. Աւրամազդա եհաս ինձ ի թիկունս » և այլն: (Տես Ռօլինսընի Herodotus, հատ. Բ. 592):

2. Քուշանք կը բնակէին յարևելս Խորասանու, մանաւորապէս այժմեան Պուխարայի և Բալխի աշխարհները. և ի սկզբանէ հինգերորդ դարու մինչև ցկէս վեցերորդին զօրացան յոյժ և այլ և այլ անգամ ի վտանգի դրին զպետութիւն Պարսից: Մերթ Խորազմի անապատին մէջէն Մերվի և Խորասանու վերայ, և մերթ Բալխի կողմէն Պարսից արևելեան նահանգաց վրայ կը յարձակէին: Պարսիկք և Արաբացի պատմիչք Հեյթալ կամ Հիթալ անունը կու տան նոցա, որ նոյն է մերայնոց ոմանց Հեփթաղք և Յունաց Էփթալիք և տեղ մի այլ Եղիշեայ (Յ. Բ, 8) « Խոաղական » կոչուածին հետ: Երբեմն ալ « Թուրք » կ'անուանեն զնոսա: Բայց այդ կրկին անուններդ անորոշ և ընդարձակ առմամբ գործածուած կ'երևին, որպէս երբեմն Սկիւթացի ի Հելլենս և ի Հռովմէացիս: Մէկ քանի յոյն պատմագիրք զնոսա Սպիտակ Հոնք ալ կը յորջորջեն, զանազանելու համար ի Սևաւ Հոնացն՝ որք արշաւեցին յԵւրոպա: Այս վերջիններս

*մենայն ազգս ժողովեա և անցս ըստ պահ դուռն՝ ի*

Քուշանաց արեւմտեան աշխարհաց, Կասբից ծովուն հիւսիսային և արեւմտեան եզերաց վրայ և անդր եւս մինչև ի Մաճառաստան բնակած էին։ Այսչափս յայտ է՝ թէ Քուշանք ֆիննա-թուրքային ցեղ մի էին, և Քրիստոսէ 200 տարի յառաջ սկսեր էին ահարկու լինել։ Ճենացի պատմագիրք Եուէ-չի անուն ազգ մը կը յիշատակեն, որ նոյն ժամանակները սկըսեր է յառաջ խաղալ Ասիոյ խորերէն դէպ ի հարաւ. մէկ մասն ի Թիպէթ անցեր ու անդ հաստատուեր է, մնացածը եկեր են յարեւելս Կասբից ու տիրեր են Ոքսոսի հիւսիսային կողմի աշխարհաց։ Ի Քուշանաց սերեալ էին Պարթեւք. (Խորեն. Բ. Բ և ԿԷ)։ Եղիշէ տեղ մը (Ց. Ա. 14) զՔուշանս «Հոնք» ալ կը կոչէ. այդ անուամբը կ'իմանայ անշուշտ որպէս յայն պատմագիրքն՝ առ հասարակ զամենայն խուժդուժ ազինս որք կը գըտնուէին քաղաքականացեալ աշխարհին հիւսիսակողմը, և ընդհանրապէս Խորասանու և Հիրաթի վրայ յարձակող ազգերը «Քուշան» կը յորջորջէ. իսկ Ճորայ պահակին և Կովկասու կռնակը գըտնուողները Խազիրք, Խայլնդուրք կամ Հոնք կ'անուանէ։ Քուշանք կամ Հեփթաղք ըստ նկարագրութեան Պրոկոպիոսի, որ նոցա ամենէն զօրացած ատենը կը գրէր (500-560), կը տարբերէին բոլորովին ի Հոնաց՝ որք Ատտիլասայ առաջնորդութեամբ վաղեցին յԵւրոպա։ Աւելի ճերմակի վրայ և վայելչադէմ էին. մինչ Հոնք թխամորթք և ժանտատեսիլ. հողագործութեամբ կը զբաղէին, խելացի օրինօք կը կառավարուէին ու քիչ շատ քաղաքականացեալ էին, քանի որ Հոնք վրանաբնակք էին և վայրենի։ — Մասուտի, որ Քրիստոսի 944 թուականին կը գրէր՝ կ'ըսէ. «... Թուրքերը, Խուզլուքները և Դաղազգայք կը բնակին յաշխարհն Քուշան՝ ի միջոյ Խորասանու և Ճենաստանի, և Դաղազգայք այժմ ամէն թուրք ցեղերէ և ազգերէ աւելի կորիճ, զօրաւոր և լաւ կառավարուած են։ Նոցա թագաւորը Իրխան կը կոչի, և այդ ազգաց մէջ անոնք միայն Մանեայ կրօնը կը դաւանին։ Իսկ Խուզլուքք նշանաւոր են իրենց վայելուչ և բարձր հասակաւը և դիմաց կանոնաւորութեամբ. սոցա ցեղէն էր Խաքանաց Խաքանն՝ որ կը հրամայէր երբեմն համօրէն թուրքաց»։ Այլուր ասէ. «Ճենաց պետութիւնը սահմանակից է ընդ Դաղազգայս, որք Մանիքեցի են և երկու սկզբունք կը ճանաչեն՝ լուսոյ և խաւարի, համագոյակիցք։ Նոքա եւս ուրիշ թուրք ազգաց պէս պարզութեամբ կ'ապրէին՝ երբ մէջերնին մէկ դև մը եկաւ որ երկուութեան վարդապետութիւն քարոզեց»։ — Ըստ Պիւրհանի Գաթիի՝ ճէյրայ՝ Պուխարացոց լեզուաւ կը նշանակէր «այր հուժկու, յաղթանդամ»։ Սոցա բնակած երկիրը Խիդլան ختلان կոչէին Պարսիկք. թէպէտ Քուշան անունը անծանօթ չէր նոցա. քանզի Պիւրհանի Գաթի եւս «Քուշան» كشان թուրանեայ աշխարհին մէկ նահանգին անունն է, կ'ըսէ։

1. Միայն Թէոդոսիոյ առ. «և անցս ըստ Պահլ դուռն ի Ներքս»։ — Այս պահ դուռս Կովկասային պահակ որմը չէ. վասն զի այդ կողմանէ կարելի չէր երթալ, ուր Հոնք բնակեր էին և ահագին գետեր անցնել հարկ էր. հնար և ըլլար, պատշաճ չէր. այդ ճանապարհը Քուշանաց կռնակը կը հանէր, որոց նպատակը արդէն դէպ ի հարաւ իջնալ էր, և անոնց ասպատակութենէն պարտ էր ազատել զտէրութիւնն։ Պահլ կամ Բալխ քաղաքն ալ չէր կրնար ըլլալ որ իր շրջակայ գաւառներով Քուշանաց գլխաւոր կեդրոնն էր յայնժամ։ Ամենէն բուռն ճակատամարտքն Մերվիրոտի (այժմեան

*ներքս. և դու անդէն արտ քեզ բնակութիւն: Յորժամ արգելուս և փակես զամենեսեան ի հեռաւոր օտարու-*

Միրզապի) մտաւորը տեղի ունեցան, որպէս վկայէ և փարպեցին: Անշուշտ այս պահ դուռս Հայաստանէն ի Նիւշապուր երթալու ճամբուն վրայ էր. և թէպէտ Եղիշէ նորա գիրքը և անունը չի յայտներ, հնար է մեզ աշխարհագրական հետազօտութեանցը ստուգել և հաստատել: Արտաշատէն Խորասան երթալու համար պէտք է Դավրէժէն անցնելով Միյանա իջնել. այնուհետև թէպէտ Սէֆիտ-ռուտի ձորը բռնելով կրնայ երթըցուիլ ի հարաւային յեզր Կասբից ծովու, զոր օրինակ ի Րէշդ, բայց ի հիւսիսակողմն Էլպուրզի, հեղեղատից դարևոր աշխատանքն անհամար խորաձորեր ճեղքած, և գերրկոք և ողմու ծածկած են ծովուն և լեռնագօտւոյն մէջտեղի նեղ տափարակ վայրերը. և Էլպուրզի բազուկներն ալ այնպէս կը կարկառին դէպ ի ծով՝ անվերջանալի դժուարութիւններ հանելով անցուդարձի, որ այդ կողմանէ ն՝ և է երթևեկութիւն անկարելի կը լինի. ուստի հարկ է փոխանակ ի Րէշդ իջանելու՝ թողուլ Սէֆիտ-ռուտի ձորը՝ երբ այդ գետը դէպ ի հիւսիսային արևելս կը խոտորի, Շահ-ռուտի ձորն առնուլ, ու հետևելով սմա՝ Էլպուրզի հարաւակողմն անցնիլ: Լեռնագօտւոյդ և պարսկական մեծ անապատին միջև նեղ և երկայն և յոյժ բարեբեր երկիր մի կայ, ուր էր ի հնուց Հատգա կամ Ռէյ քաղաքը. բայց այդ երիզաձև երկիրդ ալ կը լմնայ ի 52° 20′ աստիճանին երկայնութեան, ուր Էլպուրզ դէպ ի հարաւ կ'արձկէ ապառաժ բազուկ մը, որ յիսուն քիլոմեդրոք չափ անապատին մէջ կ'երկըննայ. և որովհետև այդ բազկին բոլորտիքը շրջել անհնար է բանակի կամ կարաւանի համար, այս կողմանէ ևս անանց կը լինէր ճանապարհը՝ եթէ բազուկը չունենար երկու կիրճք, որոց հարաւայինն և դիւրամատչելին այժմ Սիրդառա կոչի, և էր նախկին Դուռն Կասբից (Pylae Caspiae), ուսկից միայն հնար էր բանակաց երթալ յԱտրպատականէ ի Վրկանս կամ ի Վրկանաց յարևմուտս: Այս դուռս կամ անցքս մեծ կարևորութիւն ունէր, քանզի այդ էր միակ ճանապարհ ցամաքային՝ արևմտեան և արևելեան Ասիոյ մէջ, և զայն պաշտպանելու համար կառուցեալ էր Ռէյ քաղաքն: Յազկերտ ալ ուրիշ ճանապարհ չունէր Տիզբոնէ ի Վրկանս և յԱպար աշխարհ երթալու համար: Տարակոյս չունինք՝ որ այս է Եղիշէայ ակնարկածը՝ տես և Յեղ. Բ, 9 և 10. «պառապիղ ամուր և անել. չիք անդ տեղի փախուստի և թաքստի, վասն զի շուրջանակի թշնամիք են բնակեալ »: Պողիւբ՝ Մեծին Անտիոքոսի ի Վրկանս արշաւանաց պատմութիւնը գրած ատեն կ'ըսէ՝ թէ այդ կրճից մէջէն անցնող ճանապարհը յոյժ անձուկ է և զառ ի վեր, երեքհարիւր ասպարէզ երկայնութեամբ և շրջապատեալ զարհուրելի բազմութեամբ բարբարոսաց. (գիրք Ժ, 29, 30):

Պ. Կոստանեան սակայն կարծէ՝ թէ այդ պահ դուռդ Սէֆիտ-ռուտի և Շահ-ռուտի իրարու խառնուած տեղւոյն մօտ գտնուած նեղ և լեռնափակ կիրճն է, ուրանոր Ռուտպար անուն քաղաք մը և համանուն կամուրջ մի կայ. քիչ մ'ալ ի վերոյ՝ Սէֆիտի աջակողմեան ափանց վըրայ՝ աշտարակ մը կամ բերդ մը Տերպենտ կամ Կեաւուր-գուլէ կոչեցեալ: Յայտ է թէ արևելքի լեռնային գաւառաց մէջ գրեթէ մէն մի անցք կամ կիրճ ունի իր աշտարակը կամ Տերպենտը: Եթէ ի Հայաստանէ Պարսկաստան երթալու համար անհրաժեշտ ըլլար Սէֆիտ-ռուտի ձորով մինչև ցՌուտպար կամ ցԿեաւուր-գուլէ երթալ, Պ. Կոս-

թեան, կատարին խորհուրդք կամաց քոց. և որպէս երեւիս մեզ ի գենիս[1] մերում, տիրես դու և երկրին Քուշանաց, և Յոյնք իսկ ոչ եղանեն ընդ քոյ իշխանութեամբ: Բայց միայն զաղանդ քրիստոնէից բարձ ի միջոյ[2]:

8. Հաճոյ թուեցաւ խորհուրդն թագաւորին և մեծամեծացն, որ էին ի նմին բանի. հրովարտակս գրէր, ընդդադեալս առաքէր յամենայն տեղիս տէրութեան իւրոյ: Եւ այս է պատճէն հրովարտակին:

տանեանի կարծիքը մասամբ կը յարմարէր. բայց աւելի դիւրին և սովորական ճանապարհ մի կայ, որ Գազվինէն կը տանի ի Միյանա՝ առանց այդ ձորէն կամ Կեաւուր-գուլէի մօտերէն անցնելու. Ուստի Ոստաքարի կիրճը փակել տալով Յազկերտ, և ոչ իսկ գհայ փախստական զինուորս կրնար արգելուլ իրենց երկիրը դառնալէն: Մնաց որ մոգերը կ'առաջարկեն իրեն. «զամենայն ազգս ժողովեա և անցո ընդ պահ դուռն ի ներքս. և դու անցցես առա քեզ քննութեան»: Ուրիշ տեղ մը կ'ըսէ Եղիշէ. «Անցուցեալ ի ներքոյ պահ դրանն արգելոյր զբազմութիւնն այրուձիոյն Հայոց և Վրաց և Աղուանից, և զամենեցուն (քանզի ուրիշ ազգէ ալ բազում քրիստոնեայք կային Ասորեստանի և Պարսկաստանի մէջ), որ էին հաւատացեալ սուրբ աւետարանին. և հրաման տուեալ ի վերայ դռնապանացն առնէին, թէ որ յարեւելս առ մեզ (այս է յԱպար աշխարհ կամ ի Խորասան ուր հաստատուած էր Յազկերտ) գայցեն՝ թողցեն. իսկ յարեւելից յարեւմուտս անցից լիցի ճանապարհ»: Աւելորդ է ըսել՝ թէ այդ խօսքերը Սէֆիտ-ռուտի կիրճին և գլեկին չեն կրնար պատշաճիլ: — Խորասան, որ ըստ արաբացի մատենագրաց՝ գոնեա իններորդ դարէն ի վեր Ապար աշխարհի անունն է, նշանակէ պարսկերէն «արեւելք»:

1. Դէն, պարսկ. den, Աւեստայի մէջ daêno, է կրօնք, հաւատք, պաշտամունք, Օրէնք, որ ըստ Պարսից, մի միայն մազդեզն ուղիղ հաւատոց կը պատշաճի. մինչ քէշ (պրսկ. քէշ կամ քուշ) նշանակէ ո՛ և է կրօնք, հաւատք, աղանդ:

2. Մոգերն, որ իբրև երազահան և նշանագէտ կը մեծարուէին, և բարսմանց միջոցաւ տեսակ տեսակ գուշակութիւններ և պատգամախօսութիւններ կ'ընէին, խորհուրդ կու տան, որ պետութեան քրիստոնեայ ազգերը կրակապաշտութեան դարձնելու համար, թագաւորը առիթ առնելով զպատերազմ Քուշանաց՝ զօրք ուզէ ի նոցանէ ու իւր բանակին հետ տանի բոլոր նշանաւոր և կարիճ արեարը: Ջատրի քրիստոնեայս բացէ ի բաց հալածելով պետութեան վտանգ մը չէր կրնար գալ. բայց Հայք՝ որ Յունաց դրացի և մասամբ ևս նոցա հպատակ էին, Պարսից լուծը արդէն դժուարաւ կը տանէին. նոցա եկեղեցականք մեծ ազդեցութիւն ունէին և ուղղափառութեան ջերմ պաշտպան ձեւացեր էին. իսկ տանուտեարք պատրաստ էին մարտնչելու: Այդպիսի ժողովրդեան դէմ բռնութիւն բանեցնել ուրիշ հետեւանք չէր կրնար ունենալ, բայց միայն յայտնի ապստամբութիւն յարուցանել և դժուարաւ ձեռքէ հանել: Աւելի նենգաւոր և անուղղակի ձև մը կ'առաջարկեն մոգք. յօտարութեան՝ աւելի դիւրին պիտի ըլլար տկարել զնախարարս և զզօրականն. հայ ժողովուրդն ալ անառաջնորդ և անպաշտպան մնալով պիտի հնազանդէր. և անգամ մը որ Հայք պարսկական քէշը ընդունէին, Վիրք և Աղուանք նոցա պիտի հետեւէին:

9. « *Առ ամենայն ազգս տէրութեան իմոյ՝ Արեաց և Անարեաց*[1], *բազմասցի ի ձեզ ողջոյն խաղաղութեան մերոյ. դուք ողջ լերուք, և մեք մեզէն ողջ եմք դիցն օգնականութեամբ:*

« *Առանց զձեզ ինչ աշխատ առնելոյ խաղացաք գնացաք յերկիրն Յունաց, և առանց գործոյ պատերազմի սիրով խաղաղութեամբ նուաճեցաք զամենայն երկիրն նոց ի ծառայութիւն*[2]. *դուք զկարի զմտաւ ածէք, և անդադար լերուք յուրախութեան. բայց բան զայս կատարեցէք վաղվաղակի, զոր ասեմք:*

« *Մեք ի մտի եդաք անվրէպ խորհրդովք խաղալ*

1. Արիք և Անարիք, որոյ պարսկերէնն էր Եղիշէի ժամանակը՝ Էրան ու Անէրան, և որ Սասանեան դրամոց և արձանագրութեանց վրայ Այրան մէ Անիրան գրուած է. արդի պարսկերէն Իրան ու Թուրան: Անարիք կամ Թուրան կը կոչէին պարսիկք զՍկիւթացիս, զՀոնս, զՔուշանս և զԹուրքս, մինչ բանիւ զհամայն անդր-օքսոսեան ազինս. յորոց ոմանք ի հնուց հետէ եկեր հաստատուեր էին ի Վրկանս և ի Սագաստան (որ Սակա կամ Սկիւթ արմատէն բաղդեալ է) և նուաճեալ էին ի Պարսից: Վասն որոյ դրամոց և արձանագրութեանց վերայ Սասանեան թագաւորաց՝ մալքան մալքա Այրան մէ Անիրան պատուանունը դրուած է, զոր ընթեռնուին Շահանշահ Էրան ու Անէրան, այս է « Արքայից արքայ Արեաց ու Անարեաց »:

2. Պէտք չէ իմանալ թէ Յազկերտ տիրեց Հռոմոց երկրին. այլ թէ նոցա ծանր պայմաններ ընդունել տուաւ, ինչպէս ի վերոյ զրուցեց Եղիշէ. թէ « զամենայն զոր ինչ առաց Յազկերտ ի ժամանակին՝ կատարեաց Անատոլ ըստ կամաց նորա »: Ո՞րք էին այդ պայմանները: Յոյնք սովոր էին բերդաքաղաքներ կանգնելու իրենց սահմանաց վրայ, որով շրջակայ տեղեաց ալ կը տիրանային. այդ գիտմամբ ամրացուցեր էին զԹէոդոսուպօլիս քաղաքը և երկու տարի յառաջ, և վերջերս Մծբնայ մօտերը գալով՝ ուզեր էին զուցէ զայն ձեռք անցնել կամ ընդդիմակաց նոր բերդ մը շինել: Կ'երևի թէ Յազկերտ պահանջեց՝ որ այնուհետև իւր սահմանաց մօտ ամրութիւն չկառուցուի: Միանգամայն ըստ վկայութեան Բրիսկոս Բանիդէսի և Յովհաննէս Լիդոսի, որոց առաջինը 470ին և երկրորդը վեցերորդ դարուն սկիզբները գրեցին իրենց պատմութիւնը, Յազկերտ պայման դրած էր՝ որ Յոյնք յանձն առնուն վճարել Ճորայ պահակին (Բրիսկոս՝ Juroipach և Լիդոս Birapara:h կ'անուանէ) վերանորոգման և պահպանութեան ծախուց կէսը, յորմէ երկու կողմն ալ պիտի օգտուէր, արգելլով ինքնըս զհիւսիսային ազինս որ թէ Յունաց և թէ Պարսից գաւառաց վնաս կը հասուցանէին: Թէպէտ Յոյնք դրժելով զուխտն՝ չվճարեցին իրենց անկած դրամը, բայց Յազկերտ անյողդողդ յարատեւութեամբ և մեծամեծ ծախիւք ի գլուխ հանեց կապանին շինութիւնը, որպէս և կը հետևի Եղիշեայ մէկ քանի խօսքէն (Յեղ. Ա. 14. և Յեղ. Է. 18): Յազկերտի յաջորդները պահանջեցին դաշնադրութեան գործադրութիւնը և ծախուց կէսը, մինչև պատերազմ բանալու հարկադրեցան:

գնալ յաշխարհն արեւելից, աստուածոցն օգնականութեամբ դարձուցանել ի մեզ զտէրութիւնն Քուշանաց. Դուք իբրեւ զհրովարտակս զայս տեսանէք, անխափան վաղվաղակի այրուձի[1] գումարեցէք առաջի քան զիս, յանդիման լերուք ինձ յԱպար աշխարհին[2] »:

10. Ըստ այսմ պատճենի հրովարտակ եհաս յաշ-

1. Աւելի՝ ինչպէս և Եղիշեայ այլուր բանձներէն (Յ. Ա, 1. Յ. Բ, 15, 64. Յ. Է, 22) յայտ է, թէ Հայք՝ Վրաց, Աղուանից, Լփնաց և Ծօդէից պես այրուձի միայն կու տային Պարսից, « որ ի ձեռն Նախարարացն առաջնորդէր ի պատերազմի ». առցա կողմանէ խրկուած հետեւակ զօրաց կամ աղեղնաւորաց յիշատակութիւն չկայ ընաւ: Սասանեան այրուձին ապառաղէն էր, այսինքն թէ հեծեալը և թէ ձիուն առաջքը զրահաւորեալ էին. և որովհետև Հայոց գունդը կը կազմուէր յազատաց, յազատորդեաց եւ յորքոցնի տանէ յատանէի մարդկանց, բնական է կարծել՝ որ Հայոց ղրկած այրուձին ալ ապառաղէն էր: Բուզանդայ մէջ ալ կը տեսնենք. « փողովէր սպարապետն Հայոց Մեծաց Վաչէ զազատախումբ բանակ ճախապարակոյտ զօրացն ». (26): — « Եւ զամենայն ազատան Հայոց կայսերական թօշակօքն զինուորել ». (235): — Արշակ երբ կ'ուզէ զփախըստական Տիրիթն բռնել, « հրաման տայր ազատագունդ բանակին զհետ լինել Տիրիթայն ». (122): — « Առեալ ընդ իւր (փառանձեմ) մարդիկ իբրև մետասան հազար՝ ազատս ընտիրս սպառազէնս պատերազմօղս, և հանդերձ նոքօք դիմեալ եմուտ ի բերդն Արտագերից ». (169–170):

2. Ապար աշխարհ, կամ Ապրշահր, (Խորեն. Աշխարհ. էջ 40. բանդի « աշխարհ », շահր և սորա հնագոյն ձեն խշաթրա լծորդ են. առի և ایران شهر Իրան շահր՝ « Արեաց աշխարհ »), է այժմեան Խորասանու արեւելեան մասը. « և գնացեալ Յազկերտ ի Վրկանէ և եկեալ յԱպար աշխարհ… ի քաղաքն Նիւշապուհ ». Յ. Ը, 1: — « Ի մեծ անապատին յԱպար աշխարհի ի սահմանս Նիւշապուհ քաղաքի ». Յ. Ը, 101: — Եւպօւրղ լեռնագօտին Կասպից ծովուն հարաւային արեւելեան անկիւնը չրջելէն ետքը՝ զուգահեռական երեք թեւեր արձակելով յարեւելս, լեռնադաշտ մը կը ձեւացնէ շուրջ 500 քիլոմեդր երկայն և 200 քիլոմեդր լայն, որ ի հիւսիսոյ և ի հարաւոյ կը սահմանի Խորազմեան և Երանեան անապատօք: Այս անտառախիտ ջրարբի և բարեբեր նահանգս այժմիկ կոչի Խորասան, որ թարգմանի « արեւելք »: Սորա արեւմտեան մասը, այս է Եթրէք և Կուրկան գետոց ձորերը մինչև ցԴուռն Կասպից, Վրկանաց աշխարհ էր. իսկ արեւելեան մասը որ ի հնուց բուն Պարթեւստան կը յորջորջէր, Եղիշէի զարուն Ապար անունը կը կրէր, որ թարգմանի « վերին, բարձր ». Տես և Յ. Ը, 40: Հարաւային կողերէն իջնող գետերն՝ ոռոգած տեղերնին արգաւանդելով, անապատին մէջ կը խորասուզին: Տեղացիք ջրամբարներ շինած են. ու այժմ լերան ստորոտը երկու քիլոմեդր լայնութեամբ տեղ միայն մշակեալ է: Բայց հին քաղաքաց աւերակները կը ցուցանեն՝ թէ նախնիք աւելի օգուտ քաղել գիտէին ջրերէն, և թէ այդ Եթէք կոչուած երկիրդ առենօք քսան կամ քսան և հինգ քիլոմեդր լայնութիւն ունէր:

*խարհն Հայոց, ի Վրաց և յԱղուանից և ի Լփնաց[1], ի*

1. Հին Հայաստանի աշխարհացոյց տախտակաց վրայ Լփինք Դարբանդայ հիւսիսակողմը գրուած են, որ սխալ է. որովհետև Հայոց, Աղուանից և Վրաց պէս հարկատու էին պարսից և այրուձի կու տային. որ չէր կրնար ըլլալ՝ եթէ պահակին անդին կողմը գտնուէին: Դարձեալ՝ երբ Վասակ արգիլել կ'ուզէ զՀոնս՝ որպէս զի Վարդանայ օգնութեան չգան. « արգել և փակեաց զդրունս ելին նոցա. յղէր և կոչէր զգունդս բազումս ի պահակն Ճորայ և զՎրաց աշխարհին բովանդակ գումարէր, զզօրս Լփնաց և զՃղբայց և զՎատն և զԳաւն և զԳղուարն և զԽբրաանն և զՀեճմատակն, զՓասխն և զՓոսխն և զՓիւքոնան և զամենայն զօրսն Թուաապարանն զլեռնայինն և զդաշտայինն. էր զոր մեծաւ պարգևօք և էր զոր հրամանաւ թագաւորին սաստիւ տագնապէր ». (Ց. Դ, 15): Յայտ է թէ բոլոր այդ ազգերդ և ցեղերդ պահակին ասդին կողմն էին. ոմանք կատարեալ հպատակք, այլք պարգև ընդունելով կը հնազանդէին. քիչ շատ ամէնքն ալ Սասանեանց իշխանութեան ենթարկեալ էին: Այժմեան Թապասարանն՝ որ Դարբանդայ անմիջապէս հարաւային կողմն է, Թուաապարանն է անշուշտ: Տաղբտանի մէջ այսօր խել տեսակ տեսակ լեզուներ և ցեղեր կան. գուցէ Գուպա նոյն ըլլայ ընդ Գաւի. և Խրսանն՝ այժմեան Քիւրին, որ հինգ գիւղէ բաղկացեալ առանձին լեռնական ցեղ մի է Գուպայի մօտ:

Ալիշան վարդապետ զԼփինս և զՉողէացիս Շիրվանի Լահիջ և Քօթուն գաւառներուն մէջ կը դնէ, որ յայժ հաւանական է, թէպէտև մեր քննած տաճմային հեղինակաց մէջ չգտանք տեղեկութիւն մը՝ որ որոշ հաստատէր մեզ նոցա դիրքը: (Տես Տեղագիր, էջ 91): Լփինք ունէին առանձին թագաւոր մը (Ց. Գ, 59), և քրիստոնէութիւնը մէջերնին ծաւալեր էր որպէս ի Վիրս և յԱղուանս. (Ց. Բ, 82): — Պլինիոս՝ Լուպիէնի կը կոչէ զցեղդ և կը դնէ զնա Աղուանից մօտ, ի ստորոտս լերանց յորս բնակին Սիլվի կոչեցեալ խուժադուժ ազգքն, առընթեր Տիտուրայ և Սոտեայ (Ծոդէից):

Կորդուք. — «Ինքն Քիւրտիստան կայ ի հարաւոյ Մոկաց և գաւառին Վանայ. յարևելից ունի զՊարսից սահմանն. յարևմտից զԱղձնիս և զՏիգրիս ցկողմանս Մօսլայ. ի հարաւոյ զփոքր Զապ գետ. հիւսիսակողմն և արևմտակողմն երկիրս ի բուն ի մեծ Հայս է, աշխարհն Կորդուաց, յորմէ և Քիւրտիստան կոչեցաւ»: Տեղագիր, 97:

Աղձնեաց մէջ էին այժմեան Խարզան (Արզն), Մուֆարգին, Սասուն և Բաղէշ վիճակները և բուն Տիգրանակերտ: Ամիդ կամ Տիարպէքիր թէպէտ այդ նահանգիդ մէջ կ'իյնար, Յունաց իշխանութեան ներքև կը գտնուէր: Աղձնիք առանձին բդեշխութիւն (Principauté) մի ունէր: Է պահլաւերէն Բդախշ և հին պարսկերէն Բդեախշ. (Տես Ջանտո–Բահլաւի Glossary, էջ 182): — Մարթ է կրճատուած համարել զանուն՝ պաիդի–խշաթրա պարսկական բաղադրեալ բառի, որ է «պետ կամ տէր աշխարհի»: թագաւոր, փատիշահ, կամ լծորդ աւելի հին փարեսի կամ փարեսիք անուան, որ ի բևեռագիրս Քաղդէաստանու նշանակէ «կրօնական և քաղաքական գլուխ կամ իշխան»:

Մեծ Հայոց այդ կրկին նահանգացդ զատ զատ հրովարտակ կը խրկուէր, որովհետև իրրև առանձին իշխանութիւնս ճանչցուած էին Հայաստանի յերկուս բաժանելէն ի վեր: Երբ մէկ տէրութիւն մը դրացի ուրիշ ազգ մը կամ տէրութիւն մը ջնջելու կ'ելլայ, սովորութիւն է՝ որ նախ սահմանաց վրայ գտնուող գաւառները անջատէ և իրեն միացնէ.

Ծոփէից և ի Կորդուաց, յԱղձնեաց և բազում այլ ան-գեաց հեռաւորաց, որոց ոչ էին օրէնք երթալ զայն ճա-նապարհ յառաջ ժամանակաւ[1]: Գունդ կազմէր ի Հայոց մեծաց զազատ և զազատորդի, և յարքունի տանէ զոս-տանիկ մարդիկ[2]. ըստ նմին օրինակի ի Վրաց և յԱղուա-նից և յաշխարհէն Լփնաց, և որ այլ ես ի կողմանց կող-մանց հարաւոյ, մերձ ի սահմանս Տաճկաստանի[3] և ի Հո-

վասն զի այդ գաւառներդ ընդհանրապէս խառն ժողովուրդս կը պարունակեն, որ-դէն առանձնաշնորհումներ կամ մասնական անկախութիւն առացած կ'ըլլան, ու դիւ-րին կ'ըլլայ բաժնել զնոսա ի կեդրոնէ և խռովցնել: (Տես Բուզանդ, էջ 262): Այս-պէս և զնահանգն Գուգարաց, որ Վրաց աշխարհին մասն եղեր էր ժամանակէ մ'ի վեր. Պարսիկք առանձին բդեշխութիւն մը կազմելով կը զատեն Վրաց թագա-ւորութենէն, և ուղղակի Արեաց դրան հարկատու և հպատակ կ'ընեն:

1. Ոչ թէ ուրիշ ճանապարհ մը կար ի Հայաստանէ յԱպար աշխարհ երթալու համար, այլ թէ այս առաջին անգամն էր որ Հայք Քուշանաց դէմ պատերազ-մելու կը կոչուէին: Իսկ ճանապարհը Արտաշատէն ի Դավրէժ և ի Մխանա կ'իջնէր, ու անտի Գազպինի և Թէհրանի վրայէն կը յանգէր ի Նիւշափուր. շուրջ 1500 քիլոմեդր: Հայոց այրուձին Մար-վիռոտ կամ Հերատ գտնուած առենը իւր բնիկ երկրէն շուրջ 2000 քիլոմեդր հեռացած կ'ըլլար:

2. «Իւ զունդս և պահապանս դրան արքունի պատրաստէր Վաղարշակ ըզ-չորսս, զմի մի իւրաքանչիւր վաշտելովք, ի նոյն հին զարմից թագաւորացն՝ որ ի Հայկայ, որ ընդ ժամանակս ժամանակս ժառանգութիւն ի հարանց առացեալ զգեօղս և զաստակերտս: Իսկ առա ուրեմն Պարթից թագաւորութեանն, որպէս լսեմ, յայլոց յարուցեալ զունդս և Ոստան անուանեալ, ոչ գիտեմ թէ վասն այս-ռելոյ ազգին առաջնոյ, թէ վասն ընդ-դիմութեան իրիք լինելոյ՝ չկարեմ և ի բաց ընկեցեալ զազգն, զայլս ի տեղիս նոցա յարուցին զունդս անուամբ արքու-նի: Այլ առաջինն հաստատ ի զարմից թագաւորացն առաջնոց, որպէս և այժմ ի Վրաց աշխարհին, որ Սեփհականն կո-չի». Խորեն. Պատմ. Բ, Է: — Այլ ու-րեք ասէ Եղիշէ. «բազում և այլ ոստա-նիկ մարդիկ, զոր ոստանիկս անուանեն յար-քունի տանէ»: Ոսփծուղ է արքայազն, արքայորդի:

3. Տաճկաստան, այս է Ասորւոց ա-րևելակողմը՝ Միջագետաց մէջ բնակող Արաբացիք կամ Արուայիկք, որք Շա-պուհ երկրորդի առենը զՏիզբոն զարկեր ու զԲաբելաստան աւարառեր էին: Դոքա تازی պարսկերէն՝ նշանակէ «ա-րաբացի», միանգամայն և «վազուկ» (ձի կամ շուն), որպէս ի մեզ «տաճիկ». Դորա հնագոյն ձևն էր դազիք կամ դա-ճիք կամ դաժիք, յգն. դաժիքան, որ Պահլաւերէնի մէջ ալ Միջագետաց Արա-բացոց անունն է: Եղիշէն և Խորենացին՝ «տաճիկ» անունը կը գործածեն. մինչ Ս. Գրոց Թարգմանիչքն՝ «արուայիկ». «Զօրք բազումք կուտեալ են յայժ. և արուայիկս բազումս ածեալ է ի վարձու յօգնականութիւն իւրեանց»: Մակաբ. Ա. Ե, 39: — Օսմանեան Պետութեան Տաճկաստան առելը սխալ է ուրեմն. այդ անունդ Միջագետաց Արաբացոց կը պատկանի, որք ի հինգերորդ դարուն մահմետական ալ չէին: — Ըստ աւան-

առմոց աշխարհն և ի Կորդուաց և ի Գգացն[1] և ի Ծօդէից և յԱրզնարզին[2]. որք էին ամենեքեան հաւատացեալք ի մի կաթողիկէ առաքելական եկեղեցի:

11. Եւ անմեղութեամբ ոչ գիտացեալ զերկդիմի միտս թագաւորին, խաղացին գնացին յիւրաքանչիւր աշխարհաց լրջմտութեամբ և անտրտում խնդութեամբ և տիրասէր խորհրդովք, կատարեալք[3] զապաս զինուորութեան աներկիւղ փառաւորովք: Բարձին ևս ընդ իւրեանս զաստուածային սուրբ կտակարանս բազում պաշտօնէիւք և բազմագոյն քահանայիւք[4]: Բայց հրաման տուեալ աշխարհի՝ ոչ իբրեւ յակնկալութիւն կենաց, այլ իբրեւ ի վճարումն վախճանի. յանձն առնելով մխեանց զոգիս և զմարմինս: Զի թէպէտ և խորհուրդ թագաւորին չէր յայտնեալ նոցա, սակայն կարծիք ի մտի էին ամենեցուն. մանաւանդ իբրեւ բեկեալ տեսին զզօրութիւնն Յունաց առաջի նորա, յոյժ հարեալ խոցեցան ի խորհուրդս իւրեանց:

դութեան՝ զոր ի մէջ բերէ Մխճմէլ Խոթթամարիխի հեղինակը, այդպէս յորջորջեալ են Արաբացիքդ յանուն Դժա ججڤ նահապետին իւրեանց, որ հաստատեր է զինակութիւն իւր ի Բաբելոն, և որոյ թոռանը թոռն է եղեր Բիւրասպի Աժդահակ: — Դժմիկ՝ բառ արդի պարսիկ բառագրոց է այր արարացի անեալ ի Պարսկաստան:

1. Թէ Գութք կամ Գոթք մինչև Եփրատայ մօտերը եկեր ու գաղթականութիւններ հաստատեր էին, տես Կիպերթ, հատ. 3, էջ 191:

2. Է Աղձնեաց Արձն կամ Արզն գաւառ, յորմէ եկած կ՚երևի Աղնարզին. Arzanen․ կը յորջորջէին Յոյնք զԱղձնիս: Դիտելի է թէ Եղիշէ որ կը կրկնէ միւս աշխարհաց անունները, Աղնարզին կը դնէ փոխանակ Աղձնեաց:

3. Թէոդոսիայ տպ. կատարեալ. Կոստանդնուպօլսոյ Բը՝ կատարել:

4. Տարակոյս չկայ՝ թէ Վարդան այրուձիոյն հետ Քուշանաց դէմ գնացեր է ի Մարգխոտ մեծամեծ քաջութիւններ ըրեր էր. (տես Ց. Ե, 5. և փարպ. 233): Բայց չեմ կարծեր՝ թէ Եղիշէ այս անգամ ընկերացած ըլլայ նմա. վասն զի անշուշտ Վարդանայ արութեանց վրայ լռութեամբ չէր անցներ. և այն կողմերուն իրաց, ազգաց և տեղեաց վրայ կը հաղորդէր այնպիսի կենդանի՝ որոշ և մանրամասն տեղեկութիւններ, զորս կու տայ առհասարակ իւր ականատես եղածներուն: Մեզ կ՚երևի՝ թէ Եղիշէ գնաց ի Պարս երբ Վարդան ուրիշ նախարարաց հետ կոչեցաւ յարքունիս՝ կաթողիկոսին պատասխանէն ետքը. և թէ անդ էր նա նախարարաց արեգական պաշտամունք առած ատենը. տես Ց. Գ, 1, ծն. 1. «Թէպէտ և ոչ իցեմք բաւական ասել զամենայն չարիսն, որ անցք անցին անդէն ի կարաւանին ընդ գունդն Հայոց... այլ սակայն փոքր ի շատէ, զի ձայնակիցք լիցուք այնոցիկ՝ որք դառնապէս զմեզ ողբային», և այլն:

12. *Բայց քանզի պատուիրանապահք էին սուրբ կտակարանացն Աստուծոյ, համապատ յիշէին զպատուիրեալսն ի Պաւղոսէ, եթէ «Ծառայք հնազանդ լերուք տերանց ձերոց մարմնաւորաց, մի սուտակապաշտք[1] և առ աչս աչառելով, այլ սրտի մտօք ծառայել իբրեւ Աստուծոյ, և մի իբրեւ մարդկան. քանզի ի Տեառնէ է հատուցումն վարձուց ձերոց»։ Եւ ամենայնիւ այսու բարեմտութեամբ յուղարկեալք յաշխարհէ և յանձն եղեալք սուրբ Հոգւոյն, յանդիման լինէին, փութով կատարել զհրամանն, և զամենայն արարեալ ըստ կամաց նորա։ Յոյժ ուրախ լինէր թագաւորն, իբր այն եթէ կատարեցան կամք կարծեաց նորա. և ահա առնէր ընդ նոսա զայն ինչ, զոր պաշտօնեայքն ամբարշտութեան նորա խրատեցին։*

13. *Արդ իբրեւ ետես թագաւորն զամենայն կազմութիւն և զբազմութիւն գնդին բարբարոսաց[2], որք սրտի մտօք եկեալ էին ի վաստակ արքունի, առաւելապէս ուրախ եղեւ առաջի մեծամեծացն և ամենայն բազմութեան զօրաց իւրոց։ Ի վերին երեսս թաքուցանէր զկամս մտաց իւրոց, և ակամայ առատապէս պարգեւէր զնոսա։ Խաղաց գնաց միանգամայն ի վերայ տէրութեան Հոնաց աշխարհին, զոր Թուշանս անուանեն. և զերկեամ մի կռուեալ, ոչ ինչ կարաց ազդել նոցա։ Ապա արձակեաց զմարզիկսն[3] յիւրաքանչիւր տեղիս, և զայլս ի նոցա տեղիս փոխանակ առ իւր կոչեաց նովին պատրաստութեամբ։ Այսպէս ամ՝ յամէ փոփոխութիւն կարգեաց, և իւր անդէն քաղաք բնակութեան շինեաց, սկսեալ ի չորրորդ ամէ տէրութեանն իւրոյ մինչեւ յամն մետասաներորդ թագաւորութեանն։*

14. *Եւ իբրեւ ետես՝ եթէ հաստատուն կային Հոռոմք*

1. Թուղթ առ Կողոսացիս, Գ. 22։ Սուտակապաշտ կարծեմ ստանոր՝ ոչ ստոյգ ծառայութիւն, այլս մատուցող, այլ ստեա գովեստ բնոյ, շողոքորթ։ Սրտա՛ բազմաւ լեզուաւ, որպէս և սիրտս արդի պրակ. է գովեստ, գովութիւն, շնորհակալութիւն։ Շարադրութիւնս առբերեր է կտակարանի թարգմանութենէն։

2. Այսպէս Հելլէնք սովոր էին կոչել իրենցմէ ուրիշ ազգերն. Եղիշէ ալ Պարսից բերնէն խօսելով՝ իմանայ այդ բառովդ զոչ Պարսիկս։

3. Մխիթարեանց առաջին տպագիրքն զմարժիկսն կամ զմարզիկսն. միայն 1864ինը զմարզիկսն։

յուխային իւրեանց՝ զոր եդին ընդ Նմա, և դադարեցին Խայլընդուրք[1] ելանել ընդ պահակն Ճորայ[2], և յամե-

1. Խայլընդուրք և Մասքութք կը կոչէ Եղիշէ Կովկասու հիւսիսակողմը բնակող ազգերը։ Թէպէտ աստ զԽայլընդուրս Ճորայ մօտերը կը ցուցանէ, բայց Ը. յեղանակին 144 և 145 հատուածներուն մէջ աւելի որոշ կը գրուցէ մեզ՝ թէ Խայլընդուրք այժմեան Վլատիքաւքասի կամ Ալանաց դրան մօտերը, և Մասքութք Ճորայ պահակին հիւսիսային կողմը կը բնակէին։ – Մասքութք, կամ ըստ յոյն պատմագրաց Massageta, այն ազգն են՝ որոց դէմ գնաց Կիւրոս, և չկարելով յաղթել՝ պատերազմին մէջ մեռաւ (Քրիստոսէ 559 տարի յառաջ)։ Բայց այն ատեն Մասքութք Կասպից ծովուն արեւելակողմն էին՝ Ոքսոսի ափանց մօտ։ Եղիշէ, Խորենացին, Բուզանդ և Ագաթանգեղոս իրենց ժամանակակից դէպքը պատմած ատեններնին՝ կը դնեն զնոսա ի մուտս Կասպից և ի հիւսիսոյ Կովկասու, և չէին կրնար սխալած ըլլալ, որովհետև Հայք յաճախ յարաբերութիւն ունէին նոցա հետ։ Մասքութաց տեղափոխութիւնը հաւանօրէն Քրիստոսէ 200 տարի յառաջ Քուշանաց կամ ըստ Ճենացի պատմչաց՝ Եուչիներուն Ոքսոսի մօտերը արշաւած և հաստատուած ատենը եղած էր. մէկ մասը դէպ ի հարաւ իջեր էր մինչ ի Սագաստան, միւս մաս մ'ալ անցեր էր ի մուտս Կասպից։ Մասքութք և Ալանք Թուրքական կամ Ֆիննեան ցեղէ կը կարծուին ըլլալ։ Մասքութք անունը կը բաղկանայ յերկուց բառից մաս – քութք՝ «մեծ Գութք»։ Նոյն Թուրանեան ցեղէն էին և Պարթեւք. վասն որոյ փաւստոս Բուզանդ ազգակից կը համարէ Մասքթաց մեր Արշակունի թագաւորները (տես յէջ 14). և Բուզանդ չէր յանդգներ այդպիսի բան մը գրուցելու՝ եթէ իւր ժամանակին առհասարակ ընդունուած կարծիքը չըլլար։ Մասքութք, ըստ նկարագրոյ նոյն պատմագրին, առատակութեամբ և առաքինութեամբ ապրող ծիամարտիկ ազգ մի էին, ու թագաւոր ունէին։ «Զի ոչ յափշտակեսցուք, զի ոչ աւարեսցուք, զի ոչ առցուք զայլոյ, զի ոչ յերիվար հեծցուք ըստ բնութեան օրինաց սովորութեանց մերոց, իւ կեցցուք այսչափ անչափ զօրաց բազմութիւնք», կ'ըսէին, ու ամենի ծիու մը պոչին կապելով կը սպանանէին զԳրիգորիս՝ որ քրիստոնէութիւն կը քարոզէր նոցա։ Այդ նկարագիրդ կը համաձայնի Հերոդոտոսի՝ Կիւրոսի ժամանակակից Մասքթաց բարուց վրայօք ըսածին և այժմեան Թուրանեան ազգաց նկատմամբ լսածներնուս։

Յարեւմուտս Մասքթաց կը բնակէին Ալանք կամ Ալլանք. բայց ինչո՞ւ այս ազգիս Եղիշէ Խայլանդուրք կամ Խայլընդուրք կ'ըսէ. անուն մը որ մեր ուրիշ ժամանակակից պատմչաց մէջ չտեսանք. միթէ Ալան-թո՞ւրք կը նշանակէ։ Թուրքերն, ըստ վկայութեան Մասուտիի, բնակէին ի հիւսիսոյ Ալանաց և դրացի էին նոցա։ Օրբելեանց պատմութեան մէջ կը կարդամք. «Ի ժամանակս Քեքաւուսայ (Թագաւորին Պարսից) անկանէր աղմուկ խռովութեան մեծի ի մէջ Թագաւորութեան Ճենաստան աշխարհին, որ յարեւելս կոյս անդր է քան զաշխարհն Խալանդրաց՝ սահմանակից Խազրաց և Հոնաց». Ստեփ. Օրբելեան. հտ. Բ, էջ 115։ — «Յաշխարհն Խալանդրաց, ի դաշտին Խազրաց՝ զոր այժմ Խփչախք կոչեն». Նոյն, էջ 106։

Ի հիւսիսոյ Մասքթաց և Ալանաց, և Վօլկայի մօտերը կը բնակէին Խազիրք, ուստի և Կասպից ծովն յորջորջեցաւ «Խազրաց ծով», պարսիկ Խազար։ Այս Խազիրքս ևս Թուրքական ցեղէ կը կար-

*նոյն կողմանց խաղաղութեամբ բնակեաց աշխարհ նորա, և ի նեղ ևս էարկ զԹագաւորն Հոնաց, քանզի աւերեաց զբազում գաւառս նորա, և յաջողեցաւ տէրութիւն նո-րա, աւետաւորս առաքեաց ընդ ամենայն ատրուշանս*[1]

ծովին. ու ատեն ատեն Ճորայ պահակէն անցնելով դէպ ի հարաւ յարձակեցան. ինչպէս մեծին Խոսրովայ հօրը Վաղարշայ ատենը և հինգերորդ դարէն ետքը աւելի ստէպ:

2. Պահակ կամ կապան կամ պահակորմն Ճորայ կամ Ջողայ, յանուն Ջոլ կամ Ջոր հին մայրաքաղաքին Աղուանից, որոց աւերակքն նշմարելի են տակաւին յարևելս Գուպայ: Մեր ազգային պատմիչք կը յորջորջեն ևս « Դուռն Աղուանից՝ Հոնաց կամ Խազրաց »: Պարսիկք զայն կը կոչեն Տէրպէնտ, որ թարգմանի կապ-դուռն: Արաբացիք՝ Պապ-իւլ-Ապուապ: Ըստ արևելեան աւանդութեանց՝ շինեալ էր նախ ի Հրուդենայ դիւցազէն և յետոյ Աղեքսանդր երկաթի դռներ դնել տուած էր, (ուստի և անուանեցաւ երկաթի դուռն, պապ իւլ հատիտ, Տէմիր-գափու). առ ի արգելուլ զխուժդուժ ազգինս Եճուճ Մէճուճ. այս է Գոգ և Մագոգ, որք աւերելոց են զաշխարհ ի կատարած ժամանակաց:

Պահակս այս կը բաղկանայ՝ Ա, ի բերդաքաղաքէ մը Դարբանդ կամ Տէրպէնտ անուն, յեզր ծովուն Կասպից. Բ, երկայն պարսպէ մը որ Դարբանդէն սկսելով կը ձգուէր յարևմուտս, ու Կովկասու անմատչելի բարձրութեանց վրայ կը վերջանայր: Բերդաքաղաքդ և պարսպարդ կը փակէին այն անցքը՝ որ կը գտնուի Կովկասու հիւսիսային առաջքին և Կասպից ծովուն միջև: Ըստ Մասուտիի՝ Յազկերտ Բ կառոյց զպատուարս զայս աղիւսէ և հողէ (Տես հատ. Բ, էջ 193), և յետոյ Նուշիրւան վերստին շինեաց թէ զբերդաքաղաքն և թէ զպարիսպն (նոյն, էջ 2): Աւելի մանրամասն տեղեկութեանց համար տես Յաւելուած զկնի Ցեղանակիս:

Յազկերտ իւր թագաւորութեան երկոտասներորդ տարւոյն սկիզբը կընար զոհութեամբ աչքէ անցնել իւր խելացի կառավարութեան յառաջ բերած մեծամեծ արդիւնքը. ա, Առանց երկար պատերազմաց Յունաց զօրութիւնը կոտրեր էր. բ, Ճորայ պահակը ամրացուցեր էր, ու անդրկովկասեան ազգերը դադրեր էին այդ կողմանէ անցնելով իւր պետութիւնը աւրշտկելէ. գ, Տէրութեան արևելեան հիւսիսային սահմանները ազատեր էին Քուշանաց ասպատակութիւններէն: Առաջին և երրորդն պատմեց մեզ Եղիշէ՝ թէ ինչպէս կատարեցան. երկրորդին վրայ չխօսեցաւ. այս պարապս ջանացինք լեցնել յառաջաբանին մէջ (Տես էջ 33) և ի ծանօթութեան Յ. Բ, 9, 2:

1. Ատր կամ ատար կամ ադար պրակ, նշանակէ « կրակ ». ուշ՝ Աւեստայի ինչպէս և Սանսքրիտ լեզուաւ է « վառել », ուշանն՝ « արշալոյս »: Իսկ ատրուշան է սեղան որոյ վրայ կրակը կը վառէր. և որ ի հնուց յարկածածուկ չէր ու բարձր տեղեր կը կանգնուէր: Մեր մատենագիրք շատ անգամ զատրուշան՝ կրակատան իմաստով կը գործածեն, մասն ամբողջին տեղ առնելով: — Մեծ յաջողութիւնէ ետքը սպիտակ ցուլ և նոխազ զոհելու սովորութիւնը ի Հայաստան ալ կար հեթանոսութեան ատեն: Երբ մեծն Խոսրով յաղթական կը դառնայր ի Պարսից, « սպիտակ ցլուք և սպիտակ նոխազօք, սպիտակ ձիովք և սպիտակ ջորովք, ոսկեղէն և արծաթեղէն զարդուք ի վերջաւորս փողփողելոյ, նշանակաւ,

աշխարհին իւրոյ. ցլուք սպիտակօք և գիսաւոր նոխազօք առատացոյց զզոհս կրակին, և խիտ առ խիտ թանձրացոյց անդադար զպաշտօն պղծութեան իւրոյ. պատկօք[1] և պատուովք մեծարեաց զբազումս ի մոգաց և զբազմագոյնս ի մոգպետաց: Ետ ևս հրաման յափշտակել զքրիստոնէից զինչս և զստացուածս, որք էին ի մէջ Պարսկաց աշխարհին:

15. Եւ այսպէս հպարտացաւ բարձրացաւ ի միտս իւր, ի վեր քան զմարդկային բնութիւնս ընդվզեալ ապարթանէր[2], ոչ միայն յիւր մարմնական պատերազմացն, այլ մեծ ևս զինքն կարծէր քան զբնութիւն հայրենի կարգին. վասն այնորիկ կեղծաւորութեամբ թագուցանէր զինքն ըստ կարծեացն, և որպէս երևէր իմաստնոցն՝[3] յանմահից իմն կարգի դնէր զինքն: Եւ յայժ

պալարական մետաքսիւքն և ոսկով պատկօք և արծաթի զոհարանօք, յանօթս ցանկալիս ակամբք պատուականօք, ոսկւով և արծաթով, ի հանդերձս պայծառս և ի զարդս գեղեցիկս, զիւր ազգին Արշակունեաց զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր: Նա և հինգերորդ ևս հանէր յամենայն մեծամեծ աւարացն ածելոց և մեծամեծ պարգևս քրմացն շնորհէր». Ագաթանգ. էջ 34: Եղիշեայ գիսաւոր ըսած Նոխազն ալ անշուշտ սպիտակ էր. հաւանօրէն այն՝ զոր այժմ թիֆթիքի այծ կը կոչեմք, և որոյ գէսը Գաղատիոյ և Վանայ գլխաւոր և ընտիր բերքն է: — Այծ զոհելու սովորութիւնը Հնդկաստանէն եկած էր. նոյնպէս և ձիունը՝ որուն նուիրման եղանակը երկարօրէն կը նկարագրի ի Վէտա: — Նուխազ կամ նաճազ պարսկերէն՝ է արու այծ կորեալ՝ առաջնորդ հօտի. նոյն նշանակութիւնն ունի և հայ. «Նոխազ»:

1. Պատկօք պատուել կամ վարձատրել՝ յոյժ սովորական էր Պարսից մէջ: — «Մի՛ մոռանայք զեւղն և զպատկն և զուռն և զառատաձեռն պարգևսն որ շնորհի ձեզ յարքունուստ», կ՚ըսէ Մուշ-կան՝ զօրացը յորդոր կարդալու առենը. (ՑԶ. 2, ծն. 1): Է պարսկերէն պէսաք بساك, զոր Պիւրհանի-Գաթի կը սահմանէ. «թագ իմն զոր կը հիւսէին վարդիւք, ռեհանաւ և մրտենեաւ և այլօք գեղեցիկ և անուշահոտ ծաղկօք. իշխանք և մեծամեծք զայն գլուխնին կը դնէին տօնի և Նէվրուզի օրերը, և այլ մարդիկ՝ ամուսնացած առեննին. հին առենը Պարսկաստանի մէջ շատ կը գործածուէր»:

2. Թէոդոսիոյ տպագիրը միայն՝ ապարատանէր, որ ընթեռնլի չէ. ավար-թանի՝ բազանտ լեզուաւ է զոռոզութիւն, ժպրհութիւն, ամբարհաւաճութիւն, յորմէ արդի պարսկերէն՝ պարթանի برتنی (Տես Մայիօ-Խրատ, էջ 22): Ավար է «ի վերայ, ի վեր». թանէ «մարմին, անձն»: Ապարթանել է պէր թանի խօտ ֆախր քէրտէն, այսինքն հասակէն վեր՝ ի վեր քան զանձն յոխորտալ, հպարտանալ, խրոխտալ:

3. Իմա զՀերպէտս՝ զվարդապետս կամ զուսուցիչս օրինաց: Տես ի վերոյ յէջ 154 և ծն: Հերպէտք هربد բարձրագոյն դասն էին քահանայից. այդ անուամբ

էր ցատուցեալ ընդ անունն Քրիստոսի, յորժամ լսէր՝ թէ տանջեցաւ, խաչեցաւ, մեռաւ և թաղեցաւ:

16. Իբրև այսպէս օր ըստ օրէ ի սոյն միտս ցնորեալ գանգատէր, մի ոմն մանկագոյն ի նախարարացն Հայոց ընդդէմ բանս եդ և ասէ. «Արքայ քաջ, դու ուստի՞ գիտես այդպիսի բանս խօսել զՏեառնէ»: Ետ պատասխանի թագաւորն և ասէ. «Իմ իսկ առաջի ընթերցան զգիրս մոլորութեանն ձերոյ»: Ետ պատասխանի անդրէն պատանեակն և ասէ. «Ընդէ՞ր, արքայ, ցայդ վայր միայն ետուր ընթեռնուլ. այլ յառաջ ևս մատո՛ զկարգացումն, և լսես անդ զյարութիւնն, զյայտնութիւնն առ բազումս, զվերացումն յերկինս, զնստելն ընդ աջմէ հօր, զխոստումն երկրորդ գալստեանն՝ զհրաշակերտ[1] յարութիւնն ամենայն բոլորեցունց, զհամառօտ հատուցմունսն արդար դատաստանին»: Իբրև լուաւ զայս թագաւորն, ի խոր խոցեալ՝ վեր ի վերոյ ծիծաղեցաւ, ասէ. «Ամենայն այդ խաբէութիւն է»: Ետ պատասխանի զինուորն Քրիստոսի և ասէ. «Եթէ հաւատարիմ են քեզ մարմնաւոր չարչարանքն նորա, հաւատարմագոյն ևս լիցի քեզ երկրորդ ահաւոր գալուստն նորա»:

17. Եւ զայս լսելով թագաւորին՝ բորբոքեցաւ իբրև զհուր հնոցին ի Բաբելոն, մինչև իւրքն իսկ անդէն դեռ ևս իբրև զԲաղդէացիսն այրեցեալ լինէին: Յայնժամ զբոլոր բարկութիւն սրտմտութեանն եհեղ յայրն երանելի, որում անուն էր Գարեգին: Կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք զերկեամ մի տուաւ ի չարչարանս, և հանեալ ի բաց զտէրութիւնն[2] ի նմանէ, ընկալաւ զվճիռ մահու:

կ'իմանային ևս «այր խելացի, իմաստուն»: Տես Պիւրճանի–Գաթթի:

1. Դիտելի է՝ որ բաւական մատենից մէջ ֆրաշակերտ՝ գոյական անուն կը նշանակէ ընդհանուր յարութիւնն ի մեռելոց. ֆրա սկզբնական վանկը կը փոխի ի հրա հայերէնի մէջ. որպէս ֆիրիշթէ լինի հրեշտակ, ֆերման՝ հրաման. ֆերվարէ՝ հրապարակ: Ուստի և մեր «հրաշակերտ» գոյական անուն:

2. Այս է գաւառը կամ վիճակը որուն տէրն էր. նախարարական մէն մի ցեղին գլխաւորը «Տէր» կ'ըսուէր. Տէրն Սիւնեաց, Տէրն Մամիկոնէից, Տէրն Արծրունեաց և այլն: Միթէ տանեցին զԳարեգին, կամ միայն չարչրկեցին: Գարեգինդ հաւանօրէն Արուանցեանցն է՝ որ անկաւ ի դաշտին Աւարայրի ընդ Վարդանայ:

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Ա ՅԵՂԱՆԱԿԻՆ

## ԿՈՎԿԱՍ ԵՒ ԿՈՎԿԱՍԱՑԻՆ ԴՐՈՒՆՔ

Մեր պատմչաց մէջ Կովկասի անցից և դրանց յաճախ յիշատակութիւնք կը լինին: Լեռնագօտիդ Սեաւ ծովուն եզերքը Անապայի մօտերը փոքրիկ ելեւէջներով կը սկսի, հետզհետէ կը մեծնայ. երբ Գօտորի վերին ձորոյն կը հասնի՝ արդէն Պիւրենեանց կը հաւասարի, 1200 մեղր միջին բարձրութեամբ: Անոր դէպ յարեւելս մինչև ցՔազպէք, քան զԱլպեայս անգամ կը գերազանցէ ու Հիմալայայի միայն երկրորդ կ'ըլլայ. գրեա թէ համօրէն գագաթունք մշտնջենաւոր ձեամբ ծածկեալ են, որ այս լայնութեան սահմանին 4000 մեղր բարձրութեան կ'ըլլայ: Կովկասու այս մասը իւր չեչտակի և վիթխարի երևութով արարչագործութեան աճաւոր հրաշալիքներէն մէկն է: Տարածութեանը մէջտեղուանքը Թէրէք և Արակվի գետերն արձակելէն ետքը՝ յերկուս յատաջս կը բաժանի, որոց հիւսիսայինը կ'երկննայ մինչև Դարբանդայ մօտերը. իսկ հարաւայինը դեռ ծով չհասած կը ցածնու ու կը վերջանայ Զաւրանի դաշտին մէջ:

Ասիոյ խորերէն յԵւրոպա արշաւող ժողովրդոց հոսանքն կարգաւ եկան բաղխելու այս լեռնային պատուարին դէմ. անոր նեղ անցքերէն դժուարաւ կը յաջողէին ի հարաւ իջնելու. մեծագոյն մասը յարեւմուտս կը դիմէր. բայց այլ և այլ ցեղեր ալ Կովկասու կրճից և ձորերուն մէջ կը հաստատուէին ու կը մնային: Այսպէս լերանցամէջք հետզհետէ խռնեցան լեցուեցան զանազան ժողովրդօք, նորեկքն զհինս ընդհանրապէս յառաջ մղելով: Եւ որովհետև բնական անջրպետից պատճառաւ մէկ գաւառի կամ ձորոյ բնակիչք ուրիշ գաւառի բնակչաց հետ քիչ հաղորդակցութիւն կ'ունենային, իւրաքանչիւր ցեղ իւր յատուկ լեզուն և սովորութիւնները պահեց. որով չափազանցութիւն չըլլար՝ եթէ զրուցուի, թէ Կովկասու մէջ հարիւրաւոր ազգաց բեկորք կան մինչև ցայժմ:

Եղիշէ, Խորենացին ու Փաւստոս երեսնի չափ Կովկասեան ազգեր կը յիշեն. որոց մէկ մասը արևելեան կրկին առաջից մէջտեղերը կամ հարաւակողմը կը բնակէին. Յագածները միջին և հիւ-

սխայլին Կովկասու բնակիչք էին[1] . իսկ արեւմտեան ազգերն որ այսօր յերկս գլխաւոր ճիւղս կը բաժանին , Քապարթայք , բուն Չերքէզք կամ Ատիղէք և Ափխազք, ատոնք Կովկասի լեռներով արգէն զատուած ըլլալով Կուրայ դաշտէն, քիչ անգամ յարաբերութիւն ունեցած ըլլալու են Հայոց և Սասանեանց հետ:

Կովկասեան լեռնագօտւոյն երկայնութիւնը շուրջ 1000 քիլոմեդր է . մարթ է զայն նկատել իբրև բնական բարձրաբերձ պարիսպ մը՝ որ կ'որոշէ զԱսիա յԵւրոպիոյ: Բարձրագոյն գագաթն է Էլպուրզ (Սէրունեան կամ Խորենացւոյ Շանթային լեառն) . յետոյ Գազպէք՝ 16,533 ոտք: Արեւելեան բազկաց հիւսիսայինը , այսինքն այն որ կը յանգի ի Տէրպէնտ, անջրպետ համարեալ է այժմ Ռուսական Կովկասեան նահանգին յայսկոյս և յայնկոյս գաւառաց , թէպէտև հարաւային առաջքը աւելի երկայն , աւելի բարձր ու շարունակ է . ասանկով Տաղիստան որ երկուքին մէջտեղը կ'իյնայ , Անդր-Կովկասեան կամ ափական երկիր կ'ըլլայ: Նոյն էր և հին ատենը . Դարբանդեան առաջքին հարաւակողմը գտնուող լեռնականք Սասանեանց ինքնակալութեան ներքև էին, ու շատ անգամ ալ զօրք կու տային նոցա:

Երկու գլխաւոր անցք ունի Կովկաս . մին՝ որ մէջտեղունքը կ'իյնայ, Վլատիքաւքասէ Գազպէք երթող ու անկէ ալ ի Տփղիս իջնող շուրջ 120 քիլոմեդր երկայն կիրճ մի է, որ վերին Թէրէքի և Արակվիի ձորերէն կը բաղկանայ. այս կիրճին մէջն է Դուռն Ալանաց . միւսը արեւելեան հիւսիսային առաջքին և Կասպից ծովուն մէջտեղի ափափրակ հողն է, ուր կառուցեալ էր Դուռն Աղուանից կամ Պահակն Ճորայ:

## ԴՈՒՌՆ ԱԼԱՆԱՑ

Ռօսթօվէն դէպ ի Կովկաս եկող երկաթուղին կը յանգի ի բերդաքաղաքն Վլատիքաւքաս՝ որ թարգմանի « Զօրութիւն Կովկասու » . աս Սեաւ ծովուն երեսէն 2368 ոտնաչափ[2] բարձր է: Ի Վլատի-

1. Եղիշեայ յիշածները․ Վիրք, Աղուանք, Ալանք, Լփինք, Ծօդէք, Գաւատն, Ճիղբք, Կաս, Գաւ, Գդուար, Խրսան, Հեճմատակ, Փասխ, Փոսխ, Փիւքոնան, Թաւասպարան, Խիրխոլան, Մասքութք, Խայլանդուրք: — Յուզանդայ մէջ կը գտնեմք և՝ Խժմախք, Գաթք, Ճիլբք (որոց ի ձորաց զօրս առանձինն յիշէ), Բաղասճք, Եգերացիք (զուցէ այժմեան Սուանքն), Փոխք (Եղիշեայ Փո՞սխն) . Տես Յ, Դ, 15: — Խորենացին ալ կը յիշէ զԽազիրս և զԴեկս:

2. Ոտնաչափ արքունի (Pied du roi, Օ մեդր, 324․84) . իսկ վերստ է 1․067 մեդր:

քուքսուէ ցՏփղիս ռուսական կառավարութիւնը մաքսատամ՝ այս է խճայատակ ճանապարհ մի շինել տուաւ, որ ճարտարգիտութեան հոյակապ ձեռակերտներէն մին կրնայ սեպուիլ, երկաթուղին ի Տփղիս բերելը անհնարին կամ գոնեա Մօնըլնիի չափ մեծածախ և երկայն գետնափոր անցքի մը կարօտ ըլլալուն համար։ Այս ճանապարհս մինչև ցԳաղպէք շարունակ Թէրէքի ձորոյն մէջէն վեր կ'ելլէ։ Առաջին օթևանը կամ կայարանն է Պալթա յ12¼դ վերստ, ուր ուղւոյն երեսը 2454 ոտք բարձր է Սեւ ծովէն. երկրորդ օթևանն է Լարս, 17¼ վերստ հեռի ի Պալթայէ. սոտ սեպացեալ ժայռի մը վրայ հին պահակի մը աւերակները կեցած են, որոյ սև սև որմերն և աշտարակները կարծես կայծակնահար խամրեալ են։ Լարսէ և երրորդ օթևանէն՝ Գաղպէքէ հաւասար հեռաւորութեամբ կը գտնուի նորակառոյց կամուրջ մի, որով ճանապարհը գետոյն ձախ կողմէն յաջակողմն կ'անցնի, ուրանոր է այժմեան քառակուսի պահակը իւր գեղեցիկ կրկին աշտարակօք. անոր վրայ կը բարձրանայ գետոյն անդիի կողմը քարաժայռի մը գագաթը՝ հին դղեակը, որոյ որմերն ալ Լարսի պահակին պէս սևացեալ են. սա է Դուռն Ալանաց, զոր Վրացիք Տարի-ի-Ալան կը կոչեն ըստ պարսիկ յորջորջման دار آلان ։ Յայսմ վայրի Թէրէքի բարձրութիւնն է 3772 ոտնաչափ։ Լարսի և Գաղպէքի մէջտեղի կիրճը կարգէ դուրս նեղ է. ու բնութիւնը այնքան արհաւիրս կը ներկայացնէ, որ անոնց քով Ալպեան լեռներուն խաղալիկ կը դառնան։ Տարիալանէն վեր շարունակելով՝ գետին ձախ կողմը հետզհետէ ուրիշ հին բրգաձև աշտարակաց աւերակներ կ'երևան՝ այնպիսի չեշտակի ափափայից վրայ, որ կը զարմացուի թէ ինչպէս մարդիկ կրցեր են ելլել։ Գաղպէքի կայարանը անցնելէ ետքը՝ որ համանուն լերան ստորոտն է, 14 ու կէս վերստ հեռի ի Լարսայ, և ուր ուղին 6455 ոտնաչափ բարձրութիւն ունի, կիրճը կ'ընդլայնի. բայց տեղ մը երկու եղերաց ժայռերը իրարու կարգէ դուրս կը մօտենան. այս տեղս ալ երկու հին բերդեր կան դէմաղէմ կանգնեալ։

Չորրորդ օթևանն է Քօպի, ուրանոր ուղւոյն բարձրութիւնն է 6570 ոտնաչափ. Թէրէքի ձորը իւր մէջը կ'ընդունի զհեղեղատն Պայտար ու այնուհետև կը չեղի յարևմուտս. ճանապարհը Պայտարի ձորուն մէջէն վեր ելլելով՝ կը հասնի վերջապէս իւր բարձրագոյն կէտին՝ խաչի լերանց վրայ՝ 7957 ոտնաչափ։ Առանկով ի Վլատիքաւքասէ մինչև ցԽաչ լերան անցքը՝ 82 քիլօմեդր միջոց, ուղւոյն բովանդակ հակումն է 5589 ոտնաչափ։ Այնուհետև ճանապարհը Արակվիի ձորէն վար կ'իջնէ որ Թէրէքի ձորոյն ահաւորու-

թիւնը չունի. Թէպէտ աստ եւ պակաս չեն ձիւնապատ գագաթունք, 2-3000 ոտնաչափ խոր անդունդք և գահավէժք, որոց եզերքէն կ'անցնի ուղեւորը՝ մինչև որ հասնի յԱնանուր ուր կը դադարին բնութեան սքանչելի արհաւիրքը:

Վերին Թէրէքի շրջակայքը կը բնակին Օսիք կամ Օվսիք՝ որպէս յորջորջին ի Վրաց: Սոքա զինքեանս Իրք կամ Իրօնք կը կոչեն, որ նոյն ըլլայ գուցէ «Վիրք» անուան հետ: Ոմանք ի հնագիտաց զՕսիս Վրաց ազգին ցեղանց մէջ ապաւինեալ մասն կը համարին: Նոցա արեւելակողմն են Ինկուշք, ու հարաւային կողմը՝ Արակվիի ձորոյն մէջ՝ Խեւսուրք:

Օսիք, Ինկուշք և Խեւսուրք ատենօք քրիստոնեայ էին. այժմ կէս կռապաշտ՝ կէս քրիստոնեայ. սոցա բնակած ձորերուն մէջ շատ մը հին եկեղեցիներ կան, որոց մասնաւոր յարգ ունին: Խեւսուրք՝ որ մինչև ցայժմ վերտ հիւսկէն կը հագնին, վրանին յանկան խաչի նշաններ կը կրեն:

## ՊԱՀԱԿՆ ՃՈՐԱՑ ԿԱՄ ՏԷՐՊԷՆՏ

Վլատիքաւքասի կիրճը դիւրին անցք մը չէր կրնար ընծայել խուժադուժ հրոսակաց, որք իրենց խուռն բազմութեամբ միայն զօրաւոր էին. մանաւանդ որ բարբարոս ժողովուրդք չէին կրնար մաքրել կամ չինելու ձեռնարկել այժմեան ճարտարգիտութեան հնարած հարթայատակ և մեղմ ելեւէջօք պողոտայքը: Մէկ կամ երկու փոքրիկ զղեակք և մի քանի հարիւր զօրական բաւական էին այդ կրճին մէջ ահագին բանակաց ջանքը կամ բռնութիւնը ի դերև հանելու: Ոչ այնպէս սակայն Կովկասու արևելեան հիւսիսային բազկին և Կասբից ծովուն մէջի տափարակ երկիրը:

Աստանօր շատ աւելի ծախք, աշխատութիւն և անձանձիր հսկողութիւն պէտք էր: Լեռնագօտւոյն ծայրի կողերուն վրայէն մինչև ցծով՝ քաղաք մի շինուած էր Դարբանդ կամ Տէրպէնտ, որ մինչև ցայժմ կեցած է իւր հին ձևովը, կամ գոնէ որպէս Սասանեանք կանգնեցին կամ նորոգեցին զայն: Այս նշանաւոր և եզական բերդաքաղաքս զուգահեռական կրկին պարսպէ կը բաղկանայ, 3000 մետր երկայն և իրարմէ միայն չորս հարիւր մետր հեռաւորութեամբ: Բարձրութիւնն է 26 ոտնաչափ, թանձրութիւնը՝ ութ. «ի կարմիր քարանց զանգեալ և սպիտակ վիմօք արտաքուստ ագուցեալ. ճեմելիս լայնս ի վերայ ունելով՝ ելանելիս սանդխօք»: Մէն մի ի պարսպացդ մարտկոցս կամ աշտարակս ունի: Քաղաքին արևմտեան

ծայրն է Միջնաբերդը՝ Նարին-ղալա, որ բարձր դարաւանդի մը վրայ կառուցեալ կը դիտէ զքաղաքն և զպաշտակոյտն։ Միջնաղարեան ճանապարհորդք միայն կը վկայեն՝ թէ պարիսպքդ ծովուն մէջ ալ կը յառաջանային կէս մղոնի չափ, բայց այդ ջրատոյղ պատուարէզ այժմ հետք չկան, զուցէ յատակին բարձրացած ըլլալուն համար։ Եօթն դրունք են քաղաքին. չորք ընդ հարաւ և մի ընդ հիւսիս և մի ի միջնաբերդն հանելով, և միւսն է գերահռչակ դուռն Երկաթի[1]։ Միջնաբերդէն սկսելով կը ձգի յարևմուտս՝ տեղ տեղ մեծամեծ մարտկոցիւք ամրացեալ՝ Պահակորմը՝ որ լերանց կատարներուն վրայէն անցնելով՝ կ'իջնէ խորաձորոց մէջ ու կը յանգէր անշուշտ յանմատչելի ու յանծանօթ գագաթ մի հեռաւոր։ Տեղական աւանդութիւն մի կայ, ըստ որում պահակորմդ մինչև ցՍեաւ ծով կ'երկննար։ Այս չափս յայտնի է՝ թէ այդ պարիսպդ կը փակէր արևելեան Կովկասու ստորոտը գտնուող համօրէն դաշտերը. վասն զի սորա աւերակները կամ հետքը ծովեզերքէն 30 քիլօմեդր աւելի դէպ ի ներս տեսնուած են. վասն որոյ յետ Չենաց պարսպին՝ մեծագոյնն էր։ Դարբանդ, որ 1825ին 26,000 բնակիչս ունէր կ'ըսեն, այժմ միայն 13,775 ունի։ Ի հարաւոյ սորա են հազար հինգ հարիւրի չափ այգեստանք և պարտէզք, յորս մշակին զանազան պտղատու ծառք, քրքում, բամբակ, ծխախոտ և տորոն, և ուր Բուպաս գետի ջուրը բերելու համար 17 քիլօմեդր երկայնութեամբ ջրուղի մի շինուած է։ Նաւահանգիստ մի ունի ձեռակերտ ամբարտակօք փակեալ, որ երբեմն կը սառի ձմեռը։ (Տես Տեղագիր Ախչան Վարդապետի. էջ 95. — Asie Russe par Elisée Reclus. – Le Caucase par Alex. Dumas. – Lettres sur le Caucase par le général Gille).

Անցեալ դարու մէջ Տիմիդրի Քանթէմիր որ Մեծին Պետրոսի հետ ընկերացեր էր ի Դարբանդ, արձանագիր մը գտեր էր անդ սեպաձև՝ զոր օրինակեր էր։ Քանթէմիրի երկասիրութիւնքը տպագրեալ են յամին 1807, և ունին արձանագրութեանս օրինակը՝ որ կը բաղկանայ յերից տողից։ Վերջին տարիներս Կասսովիչ անուն հնագէտ մը զայն ընթերցած ըլլալը և Արշակ Թագաւորի մը արձան յաղթութեան լինելը հրատարակեց։ Քարը կորուսեալ է այժմ, թէպէտ բևեռագրոյդ օրինակը պահուած է։

1. Երկաթի դրանս մէկ փեղկը կը կարծուի Վրաց Կելաթի վանքը պահուածը. որոյ վրայի գրութիւնը կ'ըսէ՝ թէ Ապուլասւար (ամիրային Դունայ) շինեաց զայն յամին 1063։ Դաւիթ Թագաւորն Վրաց հանել տարեր էր ի Դարբանդայ ի սկիզբն ԺԲ դարու։

# ԵՐԿՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

## ԻՐԱՑՆ ՊԱՏԱՀՈՒՄՆ ՅԻՇԽԱՆԷՆ ԱՐԵԻԵԼԻՑ

1. *Որոց ոգիքն թուլացեալ են յերկնաւոր առաքինութենէն, յայժ ընդ ահիւ անկեալ է բնութիւն մարմնոյ. յամենայն հողմոյ շարժի և յամենայն բանէ խռովի և յամենայն իրաց դողայ. երազագէտ*[1] *է այնպիսին ի կեանս իւրում, և յանգիտս կորուսան յուղարկի ի մահուան իւրում: Որպէս և ասաց ոմն ի հնումն, մահ ոչ իմացեալ՝ մահ է, մահ իմացեալ՝ անմահութիւն է: Որ զմահ ոչ գիտէ, երկնչի ի մահուանէ. իսկ որ գիտէ ըզմահ, ոչ երկնչի ի նմանէ:*

2. *Եւ այս ամենայն չարիք մտանեն ի միտս մարդոյ յանուսմնութենէ: Կոյր զրկի ի ճառագայթից արեգական, և տգիտութիւն զրկէ ի կատարեալ կենաց. լաւ է կոյր աչօք քան կոյր մտօք*[2]*: Որպէս մեծ է հոգի քան զմարմին, այսպէս մեծ է տեսաւորութիւն մտաց քան զմարմնոյ: Եթէ կարի ոք առաւելեալ իցէ աշխարհական մեծութեամբ՝ և մտօքն աղքատագոյն, այնպիսին ողորմելի է քան զաղքատն. որպէս և տեսանեմք իսկ, ոչ միայն ի չափաւոր մարդիկ, այլ և յոր մեծն է քան զամենայն: Թագաւոր եթէ ոչ ունի զիմաստութիւն աթոռակից իւր, ոչ կարէ ի վիճակին իւրում փայլելոյ գոլ: Իսկ եթէ առ մարմնաւորս այսպէս, որչափ ևս առաւել առ հոգևորն: Բոլոր մարմնոյս հոգի է կենդանութիւն, իսկ մարմնոյ և հոգւոյ միտք են կառավար. և որպէս առ մի մարդ՝ այս-*

1. Որ ունայն և անհիմն բաներով կը զբաղի որպէս երազահանը:

2. Այդ առածը Պարսիկք ալ ունէին. քօր տիլ եզիշա քօր չըշմ փաթար. բառ առ բառ՝ կոյր միտք քան զկոյր աչս վատթար. Մաչեռ—խրատ, ԽԸ:

պէս առ բոլոր աշխարհս: Թագաւոր ոչ գիւրն միայն տայց պարտիս, այլ և որոց եղև պատճառք ի կորուստ:

3. Բայց մեք թէպէտ և չունիմք հրաման բամբասել գիշխանս, և ոչ գովողք կարեմք լինել այնմիկ՝ որ աստուածամարտն լինին: Այլ զանցս իւրացն պատմեմ, որ ի նմանէ ընդ սուրբ եկեղեցին էանց, և ոչ զանգաղիմ: ոչ բամբասասէր մտօք, այլ ճշմարտութեամբ զելս իւրացն առեալ ոչ լռեցից. ոչ ի կարծ ընդոստուցեալ, և ոչ ի լուր զարթուցեալ. այլ ես ինքնին անձամբ անդէն ի տեղւոջն պատահեցի և տեսի, և լուայ զձայն բարբառոյ յանդգնաբար խօսելով. իբրև զհողմ սաստիկ՝ զի բախիցէ զծով մեծ, այնպէս շարժէր և տատանէր զամենայն բազմութիւն զօրաց իւրոց: Եւ հանդէս առնէր ամենայն ուսմանց, և ընդաճէր[1] զամենայն մոգութիւնն և զքաղդէու-

1. Ընդաճել կամ անդաճել՝ խորհրդածել, խորհել, քննել, փայթ տանիլ. որպէս պարսկերէն անտաշիտան اندشيدن: է և զանտ և բազանտ լեզուաւ اندا‌چه անտաչա՝ խորհրդածութիւն, մտածութիւն: Յազկերտ քննել կու տայ տէրութեան մէջի այլ և այլ կրօնքը. մոգութիւնը, քրիստոնէութիւնը, հրէութիւնը, մանիքեցոց աղանդը, ինչպէս և ուրիշ դաւանութիւններ՝ որք յանուանէ չեն յիշատակիր Եղիշէէ. զոր օրինակ պրահմանութիւնը և պուտտհայութիւնը, որովհետև պետութիւնը սահմանակից էր Հնդկաց և առևտուր ու երթևեկութիւն անպակաս էր: — Յունական և պարթևական դիցապաշտութեան դրդած արհամարհանքը, զրադաշտականութեան վերականգնիլը, Քրիստոնէութեան յարեմուտս տիրանալը և արևելից մէջ ալ ծաւալիլը՝ մըտաց մէջ առ հասարակ տարտամութիւն մը յառաջ բերած էին. միանգամայն տենչ և փափագ զայնս հետազօտելու և զլաւագոյնն ընտրելու: Այդպիսի քննութիւններ պաշտօնական եղանակաւ կատարուած էին Յազկերտի հօրը Վռամայ Եի ժամանակն ալ, (Տես Յ. Գ., 75 և ծն. Յ. Գ., 18), և աւելի ևս յառաջ Շապուհ Բի օրերը: Բայց այժմ աւելի յարմար ատեն էր. աշխարհն՝ օտար թշնամեաց յարձակմանէն ապահովեալ՝ բազմամեայ խաղաղութիւն մի կը վայելէր: Կրօնից բաղդատման ձեռնարկութիւնը մտաւորական զարգացման նշան է, գուցէ ևս արուեստից և ընդհանուր բարօրութեան. վասն որոյ Յազկերտի կառավարութեան պատիւ կը բերէ: Եթէ մանրամասն տեղեկութիւնս աւանդած ըլլար մեզ պատմութիւնը, անշուշտ աւելի կարևոր և հետաքրքրական պիտի համարէինք զնոսա այսօր, քան ԺԶ դարու վերջի կիսուն մէջ Սուլթան Աքպարի հնդկական արքունեաց մէջ եղած բանախօսութիւնքը, զորս բաղդատական կրօնագիտութեան հնագոյն փորձը կը նկատէ Մաքս Միւլէր. (Տես Introduction to the Science of Religion, յաւելուած առաջին դասախօսութեան): Եղնկայ « Եղծ Աղանդոցը » այն դարուն մէջ տիրող պէտքը յագեցնելու համար գրուած երկասիրութիւն մի է: Յայսմանէ կը քաղեմք հետագայ տեղեկութիւնը. « Քաւ-

թիւնն և զամենայն ուսմանս աշխարհին իւրոյ: Արկանէր ի ներքս և զքրիստոնէութիւն կեղծաւորութեամբ, և ասէր զայրացեալ միոք. «Հարցէք, քննեցէք, տեսէք. թող որ լաւն է՝ ընտրեալ կալցուք»: Եւ փութայր՝ որ ինչ ի միոյն էր՝ զի փաղփաղակի կատարեսցէ:

4. Իսկ ի կողմանց կողմանց քրիստոնեայքն որ ի զօրուն էին, խմբեցան զհուրն[1] որ ի ծածուկն վառեալ բորբոքէր, և կամէր հրդեհել զերկիրս և զգաղտս առ հասարակ: Զեռան և նոքա անծախական հրովն, և սաստկապէս պատրաստեցան ի փորձութիւն գաղտնի մեքենայից: Սկսան այնուհետև բարձր բարբառով, սաղմոսիւք և երգովք հոգևորօք և մեծապայծառ վարդապետութեամբ յայտ յանդիման մեծի բանակին զպաշտօնն ցուցանէին, և աներկիւղ առանց զանգիտելոյ՝ ո՛ ոք և երթայր առ նոսա՝ ուսուցանէին կամակար: Եւ Տէր յաջողէր նոցա նշանօք և արուեստիւք. քանզի բազում հիւանդք ընդունէին զբժշկութիւն ի հեթանոսական զօրուէն:

5. Իսկ անօրէն իշխանն իբրև գիտաց, եթէ յայտնեցաւ խորամանկութիւն խորհրդոյն, և պատրաստեալ հուրն՝ մինչ չև ուրուք ի նա փչեալ, վառումն նորա յայտնի

դեայքն աստեղանշմարք, որ և զծննդոց պատճառս և զմահուանց՝ յաստեղաց իբրև ի կենդանեաց դնեն: Որպէս թէ յորժամ ծնանիցին, անդէն և մահուանքն իւրաքանչիւր ուրուք անվրէպ սահմանիցին, և զատ այն ոչ յառաջել ումեք մեռանել հնար իցէ, և ոչ յամենալ». էջ 154.

— Մասուտիի ժամանակները (յամի Տ. 955) հին քաղդէացի ժողովուրդ մը մնացեր էր տակաւին, որ Պարսայի և Վասիթի մէջտեղուանքը քանի մը գիւղեր կը բնակէր. անհաւանելի սոցա վարդապետութիւնը բառ արաբացի պատմըչին.

«Աստղերուն ամենայն ազնուութեան, բացարձակ բարին և ակզբնապատճառն կենդանութեան յերկինս են. և աստեղք երևալով կամ աներևութանալով այս աշխարհիս գործերը կը սահմանեն: Աստղի մը իւր քալաքէն դուրս ելլելովը, տարածութեան մէջ ընթանալովը, կամ համապատասխան երկնագնդին մէկ կէտին վրայ այլեայլ աստեղաց միանալովը կամ իրարմէ զատուելով՝ կ'որոշուին ամենայն պատահարք աշխարհիս, տևողութիւն կենաց, բաղադրութիւնք կամ քայքայմունք նախնական տարերաց. նոքօք արտաքին կերպարանքն կազմուորին, ծովք յերևան գան կամ կը կորսուին». Prairies d'or. հատ. Բ, 111–112 և հատ. Թ, 342: Մեհեաններ ալ ունէին նուիրեալ Արեգական, Լուսնոյ, Երևակի, Լուսնթագոյ, Հրատոյ, Փայլածուի և այլն. Նիւթոյ, Հոգւոյ, Իմացական զօրութեանց, Նախնական պատճառին:

1. Թէոդոսիոյ առ. զհուրն[illegible], որ ընտրելի չերևեր:

խնայու երկիւղածացն Աստուծոյ, սկսաւ ծածուկ նետիւք խոցանել զմիտս իւրոյ չարութեանն. և անբժշկական վէրս յոգւոց և ի մարմինն տեառնէր։ Մերթ չանթէր գալարէր իբրև զօձ թիւնաւոր, մերթ պարզէր գոչէր իբրև զառիւծ զայրացեալ. գեղյր, գլորէր, տապալէր երկդիմի մտօք, զխորհուրդս կամացն կամէր կատարել։ Քանզի ձեռն արկանել և ունել ոչ կարէր, վասն զի ոչ էին համագունդ ի միում վայրի առ նմա, սկսաւ այնուհետև յառաջ կոչել զկրսերս յաւագաց և զանարգս ի պատուականաց և զագէտս ի գիտնոց և զանարիս ի քաջ արանց. և զի՞ մի մի թուիցեմ. այլ զամենայն զանարժանն յառաջ մատուցանէր, և զամենայն զարժանաւորն յետս տանէր. մինչև զհայր և զորդի քակէր ի միմեանց։

6. Թէպէտ և ընդ ամենայն ազգս առնէր զանկարգութիւնս զայս, առաւել ընդ Հայոց աշխարհին[1] մարտընչէր. քանզի տեսանէր զնոսա ջերմագոյնս յաստուածպաշտութեանն. մանաւանդ որք էին յազգէ նախարարացն Հայոց, և անմեղութեամբ ունէին զսուրբ քարոզութիւն առաքելոցն և զմարգարէից։ Պատրէր զոմանս ի նոցանէ ոսկւով և արծաթով, և զբազումս այլով ևս առատ պարգևօք. իսկ զոմանս ագարակօք և մեծամեծ գեղօք, և զոմանս պատուովք և իշխանութեամբք մեծամեծօք. և այլ ևս մեծի յոյս ոգւոյն առաջի դնէր։ Եւ այսպէս հրապուրէր և յորդորէր հանապազ. «Եթէ միայն, ասէ, զօրէնս մոգութեան յանձին կալջիք, և զձեր մոլորութիւնդ սրտի մտօք դարձուջիք ի ճշմարտութիւն երևելի մերոյ դիւցազնական օրինացս, ի մեծութիւնս և յաւագութիւնս հասուցից հաւասար ընդ սիրելի նախարարացս, առաւել ևս զանցուցից»։ Եւ այսպէս կեղծաւորութեամբ խոնարհեցուցանէր զինքն առ ամենեսեան, խօսելով ընդ նոսա ի պատճառս սիրոյ. զի խորամանկութեամբ որսայ մարթասցէ ըստ առաջին խորհրդեան խրատտուացն։ Եւ զայս առնէր սկսեալ ի չորրորդ ամէն մինչև ի մետասան ամն[2] իւրոյ տէրութեանն։

1. Խմա՛ ոչ իբրպէս զաշխարհն, այլ այն Հայերը՝ նախարարք, սեպուհք, ազատք, որք ի զօրուն էին յԱպար աշխարհի կամ ի Դրան Պարսից. որովհետև Հայաստանի մէջ կրօնական հալածանքը Դենշապհոյ գալէն վերջը սկսաւ։

2. Ցազկերտ մինչև ցմետասաներորդ տարին՝ ողոքանօք, պարգևօք, փաղա-

7. Եւ իբրև ետես, եթէ ոչ ինչ յարգեցաւ ծածուկ հնարագիտութիւնն, այլ ընդդէմքն յոլովագոյն զօրծէին, քանզի տեսանէր զքրիստոնէութիւն՝ որ օր քան զօր յորդորեալ տարածանէր ընդ ամենայն կողմանս հեռաւոր ճանապարհին[1] ընդ որ ինքն անցանէր, սկսաւ հալածել և մաշել և հառաչելով յոգւոց հանել: Յայտնեաց ակամայ զծածուկ խորհուրդն, եւ հրաման բարձր բարբառով և ասէ. «Ամենայն ազգ և լեզուք[2] որ են ընդ իմով իշխանութեամբ՝ դադարեսցեն յիւրաքանչիւր մոլար օրինացն, և միայնոյ եկեսցեն յերկրպագութիւն արեգական, զոհս մատուցանելով և աստուած անուանելով, և սպաս ունելով կրակի. և ի վերայ այսր ամենայնի և զմոգութեան ևս օրէնս կատարելով, զի մի ինչ ամենեւին պակաս առնիցեն»: Զայս ասելով քարոզ կարգայր ի մեծի կարաւանին[3], և պատուէր սաստիւ ի վերայ դնէր ամենեցուն, և

Կախարդութեամբը միայն կը ջանայր զՀայս մոգութեան դարձնել. զայս ալ աւելի իր քով գտնուող նախարարաց՝ զօրաց կ'ընէր. և կը յուսար՝ որ եթէ զասոնք համոզէր, մնացածն ալ նոցա կը հետեւէին:

1. Այս է մինչև ցԱպար աշխարհ և ցՔուշանս:

2. Հրէական աւանդութիւնքն ալ կը պատմէին՝ թէ մոգական մոլեռանդութիւնը հաւասարապէս նեղեր և հալածեր էր զքրիստոնեայս և զՀրեայս, սկսեալ Յազկերտի օրերէն մինչև ցԿաւատ, և թէ շաբաթապահութիւնն ալ արգելուած էր: (Տես Milman, Պատմութիւն Հրէից. Գլ. ԽԱ):

3. Քարւան كاروان կամ քարւան كاربان, Բազմաթիւ մասեններից մէջ ես քարւանական كاردهكان, է այժմ «բազմաթիւ խումբ ճանապարհորդաց և վաճառականաց»: Բայց ի հնագոյն դարու աւելի ընդարձակ իմաստ մ'ունէր և Եղիշէ կը գործածէ իբրև Corps expéditionnaire, որով կ'իմանայ Յազկերտի հետ ուղեւորեալ արքունիքը, բանակը և պաշտօնեայքը, բազմութիւն մոգուց և մինչև անգամ շարժուն տաճար մը, եթէ ոչ նոյն իսկ Վռամական կրակը՝ «յօգնականութիւն թագաւորին». Տես Սերէոս, յէջ 50:

Արդէն գիտեմք՝ որ Պարթև թագաւորք եւ Հնդկաստանի Մողոլ ինքնակալաց պէս, իրենց Սկիւթ նախահարց հովուական բարքը պահած էին. արքունական վրանը տեղէ տեղ կը փոխադրուէր, և անոր ետևէն կ'երթային բազմապիսի ճոխութեանց և զեղխութեանց հայթայթիչքն և իշխանութեան սպասաւորքն: Պէռնիէ, որ Աւրէնկզիպայ Տէլհիէ ի Քաշմիր գնացած ատենը ընկերացած էր արքունի կարաւանին, մանրամասն կը նկարագրէ այդ ահագին շարժուն քաղաքը: Թուով համարով 150,000 ձի, ջորի և փիղք էին ի կարաւանին. 50,000 ուղտք, նոյնքան եզինք, երեք չորս հարիւր հազար մարդիկ. գրեթէ համօրէն Տէլհի քաղաքը զհետ երթայր արքունեաց որոց շայլութիւնքը գործ և վաստակ կը մատակարարէին ճարտարաց:

զեսպանս ստիպաւ արձակէր յամենայն ազգս հեռաւորս. զդոյն պատուէր հրամանի առ ամենեսեան արկանէր:

8. Արդ ի սկզբան երկրորդ ամի թագաւորութեանն իւրոյ գունդ կազմէր անհամար բազմութեամբ, յարձակեալ հասանէր յերկիրն խաղտական[1]: Զայս տեսեալ թագաւորին Քուշանաց, ոչ համարձակէր ելանել ընդ առաջ նորա պատերազմաւ. այլ խոյս տուեալ ի կողմանս ամուր անապատին[2], թագստեամբ ապրէր հանդերձ ամենայն զօրօքն իւրովք: Իսկ սա ասպատակ արձակէր գաւառաց, տեղեաց, վայրաց. առնոյր զբազում բերդս և զքաղաքս, կոտէր զգերին, զառ և զապուռ և զաւար, ածէր հասուցանէր յերկիր իւրոյ տէրութեանն: Եւ անդ այնուհետև յընդունայն եղեալ ի նոյն խորհուրդս, հատանէր ի կարծիս մոլորութեանն, տեսեալ զպաշտօնեայս ամբարշտութեանն. « Զի՞նչ հատուցուք մեք աստուածոյն փոխարէնս այս մեծի յաղթութեանս, որ ոչ ոք կարաց ելանել ընդդէմ մեր պատերազմաւ »:

9. Յայնմ ժամանակի առ հասարակ միաբան մոգք և քաւդեայք[3] բարձին զձայնս իւրեանց և ասեն. « Ա-

1. Այս է Հեփթաղաց՝ Հիբալաց կամ Քուշանաց երկիրը. Տես Յ. Ա. 7, ծն. 2։ Ոմանք կ'ուզեն կարդալ յերկիրն ի Տաղական, որ ընդունելի չէ. քանզի Տաղական արդէն. Թովմայեան طالقان քաղաք մի էր ի Քուշանս, զոր թագաւորն Խօշնեւազ տուաւ յետ մահուան Յազկերտի՝ ի բնակութիւն որդւոյ նորա Պերոզի, երբ սա հալածեալ յեղբօրէն Որմզդայ, կ'ապաւինէր առ նա. (Տես Թաբարի)։ — «Դիմեալ գայր Սմբատ ի վերայ ազգին Քուշանաց և արքային Հեփթաղեայ.... և սորա (զօրք Սմբատայ) զհետ արշաւեալ՝ հասին աստանօր մինչև ի Բահլ շահաստան Քուշանաց, և աւար հարեալ զերկիրն ամենայն զՀար և զՎատագէս (այժմ՝ Պատկէս), զՏոխարաստան ամենայն (գուցէ Մասուտիի Դաղաղգաղն) և զՏաղական». Սեբէոս, էջ 106–107։ — Թէոդոսեան ալ. գրէ Թետալական (Thétalie), բայց այդ փոփոխման հարկ չկայ. քանզի Եղիշեայ «խաղտականը» աւելի մօտ է պարսկերէն Հիթալ անուան քան զԹետալիա՝ որով յորջորջէին յոյնք զաշխարհն Հեփթաղաց, պարսկերէն Խատլան خطلان։

2. Այս է Խորազմի անապատը։ Քուշանք հաւանօրէն յառաջ խաղացեր էին ու բանացեր մինչև Մերվի և Հերադայ մօտերը, այդ կարևոր քաղաքներդ ձեռք անցնելու համար։

3. Աստ իմանալ պարտ է կարծեմ ոչ զքաւդեայս՝ զհետևողս քաւդէութեան որ տարբեր էր ի մոգութենէ, վասն որոյ և չէին կրնար խորհրդական լինել թագաւորին, այլ « աստեղագէտք »։ — Միւսմէլ իւթ-Թավարիխի հեղինակը Սասանեան արքայից այլևայլ պաշտօնէից տիտղոսները յիշատակած ատենը կ'ըսէ՝ թէ սիրարկչինաս կը կոչուէին մունեճ-ճիմքն, այս է « աստեղագէտք »։

տուածքն՝ որ ետուն քեզ զտէրութիւնդ և զյաղթութիւն ի վերայ թշնամեաց քոց, ոչ ինչ են կարօտ խնդրել ի քէն յերեւելի պատուականաց, այլ զի բարձցես զամենայն ումեմնս մոլորութեան մարդկան, և ի մի դարձուսցես օրէնս զրադաշտական պատուիրանին»: Հաճոյ թուեցաւ բանն առաջի թագաւորին և ամենայն մեծամեծացն, և մանաւանդ որ էին առաջնկայք օրինացն: Խորհուրդ ի մէջ առեալ, յաղթէր խրատն: Անդէն ի ներքոյ պահ դրանն[1] արգելոյր զբազմութիւն այրուձիոյն Հայոց և զՎրաց և զԱղուանից, և զամենեցուն որ էին հաւատացեալ ի սուրբ աւետարանն Քրիստոսի: Եւ հրամանն սաստիւ ի վերայ գանձապանացն առնէին, թէ որ յարեւելս առ մեզ[2] գայցէ՝ թողցեն, իսկ յարեւելից յարեւմուտ՝ անանց լիցի ճանապարհ:

10. Եւ իբրև արգել և փակեաց զնոսա յամուր յանել գաւագիղն, որ յիրաւի ասացի ամուր և անել, քանզի չիք անդ տեղի փախուստի և թաքստի, վասն զի չուրջանակի թշնամիք են բնակեալ, յայնմ ժամանակի ձեռն արկանէր ի նոսա, և մեծաւ չարչարանօք և պէսպէս տանջանօք վաստակէր զբազումս ի նոցանէ, և ստիպէր ուրանալ զճշմարիտն Աստուած և խոստովանել զերեւելի տարերսս: Իսկ զօրականքն առ հասարակ զեղեցիկ խորհրդով, քաջապէս զօրութեամբ միաբան աղաղակէին և ասէին. «վկայ են մեզ երկինք և երկիր, ոչ երբեք հեղգացեալ եմք յարքունի վաստակս, և ոչ խառնեալ վատութիւն ընդ արութիւն քաջութեան. ի զուր անողորմ են հարուածքս ի վերայ մեր»: Եւ բազմանայր դոչումն աղաղակի նոցա, մինչև ինքնին թագաւորն ականատես լինէր իրացն յանդիմանութեան, և անդէն վաղվաղակի երդմամբ հաստատէր և ասէր. «Ոչ թողա-

1. Այս է դուռն կայսրից կամ Իւպուրդի հարաւային բազկին վրայի կիրճը. (Տես Յ. Ա., 7, էջ 185. ծն. 1): Թէոդոսիոյ տպագիրն ասա եւ զնէ Պահլ դուռն որ անընդունելի է, քանզի Յազկերտ եւ դարձեր էր յԱպար աշխարհ: Ի Բալխ ու Բլլար, դժուարին է կարծել, թէ անդ՝ թշնամի ազգաց մէջ ահագին անապատներ իւր եւեր թողլով, համարձակած ըլլայ նեղել և տհաճեցնել զօրացը կարեւոր մէկ մասը:

2. Այս է յԱպար աշխարհ կամ Խորասան, որ թարգմանի «արեւելք»: Բացանու՝ սագա, լծորդ հայերէն «սասա»ի:

ցուցից ձեզ, մինչև կատարեսջիք զամենայն կամս հրամանաց իմոց »:

11. Եւ ահա իշխանութիւն առեալ չարաչար սպառուրացն, զի զչորս զինուորան ի բուն աւագացն մատուցեն ի փորձութիւն տանջանացն: Եւ զառաջեաւ դատեալ[1] բազում հարուածովք՝ նովին կապանօք անցուցին ի տեղիս արգելանին: Իսկ այլոցն խաբէութեամբ առժամանակ մի թողութիւն արարեալ, և զամենայն ջնաւուն պատճառս արկանէր զկապելովքն. և զայս առնէր սատանայական խրատուն :

12. Եւ յետ երկոտասան աւուր հրաման տայր ընթրիս գործել[2] առատութեամբ և աւելի քան զաւուրց սովորութիւն, և կոչէր զբազումս ի զինուորական քրիստոնէիցն: Եւ ի ժամ գահուն պատրաստութեան[3] զիւրաքանչիւր տեղիս շնորհէր նոցա զբազմականին[4]: Եւ սիրով խոնարհութեամբ խօսէր ընդ նոսա ըստ առաջնում կարգին, զի թերևս հաւանեսցին ուտել զմիս զոհեալ,[5] զոր ոչ երբեք էր օրէն ուտել քրիստոնէից: Իր-

1. Եղիշէ չգրուցեր մեզ՝ թէ ինչ ամբաստանութիւնք եղան այդ չորս անձանց դէմ. հաւանօրէն Արեգական կամ աստուածոց դէմ նախատալից խօսք մը ըրած ըլլալու էին: Գիտելի է սակայն՝ որ Պարսիկք նախ քան զպատժելն՝ օրինական ձևով կը դատէին միշտ:

2. Հին աշխարհին ժողովուրդք առհասարակ դիտած էին՝ որ անկեղծ ընկերակցութիւն մի միայն անոնց մէջ կրնայ գոյանալ՝ որք ի միասին կ'ուտեն և կ'ըմպեն: Իբրև նշանակ այդ միութեան հաստատեալ էին զոհագործութիւնքն, որք ոչ միայն գերդաստանաց՝ այլ և քաղաքաց և ամբողջ ազգաց համար կը կատարուէին, և յորս ամէն կարգի մարդիկ սեղանակից կ'ըլլային: Այդպէս էր նաև խաղաղութեան կամ նիզակակցութեան դաշինս կռելու առեններն:

3. Մխիթ. 1864ի և Թէոդոսիոյ տպ. պատրաստութեան. առջի Մխիթ. տպագիրք՝ պատրաստութեամբ: Զգիտեմք առկայն՝ թէ փոփոխութիւնդ գրչագրա՞ց վրայ հիմնեալ է, թէ սոսկ սրբագրութիւն մի է: — Ի ժամ գահուն, այլուր՝ ի ժամ բազմականացն (Ց. Ը, 27). գահ, որպէս և գահ, گاه պարսկ. է աթոռ արքայական, իշխանութիւն. այս է թագաւորին և իշխանաց սեղանի նստած առենը:

4. Պարսկերէն պազմ بزم նշանակէ հացկերոյթ, խրախունք, ժողովականք սեղանոյ, ժողով: Ցոյն. պազմագահ. է և պազմկահ بزمگاه, տեղի խրախութեան. և խրախակցաց ընկերութիւնք:

5. Զմիս զոհելոյ. (Տես էջ 114, ծն. 2 և էջ 170). « պատրուճակք մի մեացին անյաղ ». Ց. Բ, 85: Ըստ Պարսից՝ ապանանել զբարի արարածս Որմզդայ առանց կանխաւ հաշտ առնելոյ զդիս աղօթիւք և արարողութեամբք, մեղք էր: Աւելորդ զայրոյթ գրգռել էր ուրեմն քրիստոնէից կողմանէ Արքայից արքային հետ սեղանակից եղած առեններն յաղա-

ըստ ոչ կալան յանձին ամենքին, ոչ ինչ կարի ատիպեաց. այլ հրամայեաց՝ նոցա մատուցանել զամոլորական կերակուրն. այլ տալ գինեօքն [1] յաւելուլ ի տաճարին զխրախութիւն: Եւ անտի ի դուրս ելեալ ի սրահն արքունի, արգելին զոմանս ի նոցանէ ձեռս յետս կապելով, և զխանջանունան [2] կնքելով, և զգուշութեամբ պա-

ծոյ մէս չուտելնին. քանի որ Քրիստոս պատուիրեր էր՝ թէ «որ ինչ մտանէ ընդ բերան ոչ պղծէ զմարդ» (Մատ. ԺԵ, 11), և Պօղոս առաքեալն ալ զնոյն քարոզած էր։ Բայց որովհետև այդ ընթացքը մեծ գայթակղութիւն կը պատճառէր հրէամիտ քրիստոնէից մէջ, առաքեալքն Պետրոս և Պօղոս երթալով յԵրուսաղէմ, անդ որոշեր էին Յակոբայ հետ՝ զգուշացուցանել զհաւատացեալս ի կերակրոց կռոց (կամ ի զոհելոց կռոց), ի յարենէ և ի հեղձուցելոյ (Գործք Առ. ԺԵ). վասն որոյ և հայք ալ հետևելով ընդհանուր եկեղեցւոյ վարդապետութեան, աւանդած էին՝ «Զոր ինչ ընդ յաղուգ պղծութեան խրեանց չիցէ անցուցեալ, զհաց, զգինի, զկենդանի անասուն, համարձակ լիցի»։ Կանոնաց Գիրք։

1. Թէոդոսիոյ՝ ինչպէս և Վենետկոյ 1852ի տպագիրքն՝ այլ տաւանել գինեօքն, որպէս եդաք. Մխիթարեանց 1864ի տպ. այլ տանել գինեօքն, որ անշուշտ աչքէ փախած սխալ մի է. — Գալով գինւոյ գործածութեան, Հերոդոտոս կ՚ըսէ՝ թէ Պարսիկք գինին շատ կը սիրեն և առատօրէն կը խմեն, մանաւանդ կարևոր գործոց վրայ արբեցութեան վիճակի մէջ սովոր են միշտ խորհելու։ Երբ հետևեալ աւուրն սթափին ի թմրութենէ, հացտուն՝ բազմականաց առջևը կը դնէ առջի գիշեր ըրած որոշողութիւնները, և եթէ վերստին հաստատեն զայն, ըստ այնմ կը գործեն. եթէ չհաստատեն՝ մէկդի կը թողուն։ Երբեմն առաջին խորհուրդը զգաստութեան մէջ կ՚ընեն. բայց յայնժամ պէտք է՝ որ խնդիրը գինւոյ ազդեցութեան ներքև վերստին քննեն։

Հերոդոտոս Յազկերտ Երկրորդէն 900 տարի յառաջ նկարագրած էր այդ սովորութիւնդ։ Բարեկեցիկ Պարսիկք այժմ իսկ կը նստին երեք չորս ժամ սեղանի վրայ։ Բազմապիսի աղանդերօք և համադամօք կ՚անցունեն ժամանակնին, այնպէս որ երբ հուսկ յետոյ սննդարար և հաստատուն կերակրոց կարգը գայ, ալ ախորժակ չեն ունենար բան մ՚ուտելու։ Հակառակ պատուիրանացն իսլամայ Մարգարէին, Պարսիկք այնքան գինեպաշտ են այժմ որքան էին Հերոդոտոսի օրերը։

Տակիտոս կը պատմէ՝ թէ նախնի Գերմանք իւրեանց առաջնորդաց ընտրութիւնը, ինչպէս և ամուսնութեանց և մինչև անգամ պատերազմի կամ խաղաղութեան որոշողութիւնքը խնճոյից ատեն կ՚ընէին։ Այս յարմարագոյն ժամանակ կ՚երևէր նոցա՝ անկեղծ և արիական զգացմանց արտադրութեան համար։ Բազմականք սրահէնուն մէջ եղածը գինւոյ գուարթութեամբ կը հօլանէին և ի վաղորդայն կը վերաքննէին առջի օրուան որոշողութիւնքը (Յղ. Բարուց Գերմանաց, ԻԱ)։

2. Խանջանունք՝ կամ վարտեաց կամ անդրավարտեաց, զորս կը կնքէին օրերով, որպէս զի յանցաւորը իր աղտեղութեանց մէջ մնայ և տանջուի։ Այլանդակ չարչարանք՝ որ անհաւատից յատկացեալ կ՚երևի։ Արտավիրաֆ՝ դժոխոց մէջ բազում հոգիներ տեսեր էր, որ իրենց կղկղանքը չարունակ կը կլա-

հերով, էր որ զերկուս ասուրս և էր որ զերիս։ Եւ բազում այլ ևս յանարժան հարուածս չարչարէին. զոր և ոչ ընդ գրով իսկ արժանի համարեցաք արկանել։ Եւ զամենս ի նոցանէ հեռացուցին, և քարշեցին յազնուական պատուոյն անարգեալ։

13. Եւ գունդս գունդս դարձեալ գումարէին ի նոցանէ յերկիր հեռաւոր, յամուրս անապատին ի մարտ պատերազմի թշնամեացն արքայի. և բազմաց իսկ և իսկ անդէն հասանէր վախճան մահու սրով։ Եւ զամենեցուն զկարգեալ թոշակն նուազեցուցանէին, և քաղցիւ և ծարաւով տառապեցուցանէին զնոսա, և ձմերոցի տեղիս՝ զգժնեայ վայրան հրամայէին նոցա, և անարգս և վատթարս յաչս ամենեցուն զնոսա ցուցանէին։ Իսկ նոքա առ սէրն Քրիստոսի յոյժ խնդութեամբ ընդունէին զամենայն չարչարանսն վասն մեծի յուսոյն՝ որ առաջի պատրաստեալն կայ պատուիրանապահ համբերողացն։ Որչափ չարութիւն զանարգութիւն բազմացուցանէր, նոքա ևս քան զևս զօրանային ի սէր Քրիստոսի. մանաւանդ զի բազումք ի նոցանէ զգիրս սուրբս ուսեալք էին ի մանկութենէ, զանձինս մխիթարէին, և զընկերան քաջալերէին, և աշկարայ[1] զպաշտօնն ունէին և բազմացուցանէին։ Վասն որոյ և բազումք ի հեթանոսաց՝ որոց հեշտ և ցանկալի ձայնքն թուէին, քաջալերէին զնոսա, և առէին բանս մխիթարութեան, իբրև թէ լաւ իցէ մարդոյ մահուչափ ճգնել, քան յայդպիսի օրինաց ուրանալ։

14. Բայց սակայն թէպէտ և նոքա առ սէրն Քրիստոսի յոյժ զուարթութեամբ խնդային ընդ ներքին մարդոյն, արտաքին տեսիլն կարի ողորմ էր յօտարութեանն։ Այնպիսի պատուական զինուորութիւն հասեալ էր ի չարաչուք անարգութիւն, և հայրենի ազատութիւնն չարաչար կայր ի ծառայութեան մարդախոշոշ բռնաւորին,

նէին, յետոյ դուրս կը թափէին. ապա վերստին կը կլանէին և դուրս կը հանէին։ Սոքա էին ոգիք անզգամաց՝ որք չէին հաւատացեր Ահուրամազդեան կրօնից, հանդերձեալ կենաց և ընդհանուր յարութեան մարմնոց. The Book of Ardaviraf. Ch. 61.

1. Բառս պարսիկ՝ աշկարա اشكارا կամ աշկար اشكار յայտնի, յայտնապէս.

որ և ըստ հեթանոսաց օրէնս անցանէր արիւնահեղութեամբ. և ամենևին չկարծէր՝ թէ գուցէ այսր ամենայնի վրէժխնդիր յերկինս: Նա և ոչ զերկրաւոր վաստակս ուրուք յիշէր. և որ մեծն քան զամենայն է ըստ մարմնաւոր կարգի, քանզի գտյին ոմանք ի նախարարացն Հայոց, որոց զեղբարս նորա սնուցեալ էր մայրենի կաթամբ իւրեանց [1], առաւել ևս քան զամենեսեան զնոսա դատէր :

1. Աստանօր բացատրութեան անճշդութիւն մը կորով և գեղեցկութիւն տուած է իմաստին. Եղիշէ ըսել կ'ուզէ՝ թէ գտյին ոմանք ի նախարարացն Հայոց, որոց մարքն սնուցեալ էին կաթամբ իւրեանց զեղբարս Յազկերտի: Այդ կերպով եթէ խօսած ըլլար Եղիշէ՝ բացատրութիւնը սովորական և հասարակ կը լլինէր: Բայց պէտք չէ կարծել՝ թէ Հայ Տիկնայք Սասանեանց արքունիքը գնացեր ու անդ բնակեր էին դայեկութեան համար. այլ թէ պարսիկ արքայորդիք յանձնուեր էին հայ նախարարաց, որոց կանայք իրենց պալատին հետ անոնց ալ կաթ տուած էին: — «Այն ժամանակները, կ'ըսէ Թապարի՝ Յազկերտի երկրորդի հօրը Վռամայ վրայ խօսած ատենը, թագաւորաց սովորութիւնն էր, որ երբ արքայորդի մը ծնանէր՝ բանիբուն դայեկի մը կը յանձնուէր, ու յարքունեաց հեռի տեղեր կը խնամուէր. և մինչև որ ձի հեծնել, զէնք գործածել չի գիտնար, ու գործոց խելահաս չըլլար, յարքունիս չէր կոչուէր »: Յազկերտ երկրորդի նախորդը Վռամ Ե ծնելուն պէս՝ հայրը Յազկերտ Ա զայն յանձնեց Նուման-իպն-էլ Գայսի՝ իշխանին Տաճկաց կամ Արաբացւոց, որք բնակէին յարեմուտս Բաբելաստանի: Նուման առաւ զմանուկն ու իր երկիրը տարաւ ի Հիրա (այժմեան Նէճէֆ կամ Մէշէ՚տը Ալիի մօտերը): Յետոյ Դամասկոսէն յոյն ճարտարապետ մը բերել տալով, Վռամայ բնակութեան համար Եփրատայ մօտերը քաղցրասիգ տեղւոյ մը վրայ բարձրաբերձ և գեղեցիկ դղեակ մը շինել տուաւ, որ Խավառնակ ըսուեցաւ: Նումանի որդին և յաջորդը Մունզիր՝ Պարսկաստանէն ուսուցիչներ բերել տալով, Վռամայ ուսմունք սովրեցուց, նոյնպէս նաև նիզակ, աղեղն ու ամէն կերպ զէնք գործածել, քաջ ձիավարել, նարտ և ճատրակ խաղալ. (տես Թապարի, Միրխօնտ և Մասուտի): Վռամ Արաբացւոց քով մնաց մինչև ցմահ հօրն իւրոյ:

Այդ սովորութիւնդ Արշակունեան Պարսից ժամանակէն մնացեր էր. Պղատոն առաջին Աղկիբիադայ մէջ կ'ըսէ, թէ «Արքայորդիք կը յանձնուէին այլ և այլ իշխանաց կամ դայեկաց, որոց մին կ'ուսուցանէր զմոգութիւնն Զրադաշտայ, որդւոյ Որոմազդեայ, այս է զկրօնս և զպաշտամունս դից »: — Հայոց մէջ ալ կար: Արտաշէս առաջին տայ զՏիգրան որդի իւր ցպատանի ոմն Վարաժ անուն, որդի Դատայ, որ ի զաւակէ Գառնկայ՝ որ ի Գեղամայ, քանզի էր պատանին նշաւակ ի նետաձգութիւն կորովութեան, ուսուցանել զՏիգրան. (Խորենացի, 180): — «Բատ՝ որ նահապետ էր ազգին Սահառունեաց տոհմին, դայեակ սնուցիչ թագաւորին Վարազդատայ ». (Բուզ. Ե, 35): — Հմայեակ Մամիկոնէի կրսեր որդին Վարդ մնացեալ էր տղայ ի դայեակս իւր ի Տայս, մինչդեռ եղբարքն կը խնամուէին մօրերնուն քով յաշխարհին Վրաց. (Փարպ. էջ 335): — Երբ Վարդան Ճորայ պահակին վրայ պատերազմի գնացեր էր,

15. Եւ յայսր ամենայնի վերայ այլ ևս չարութիւն խորամանկեաց: Զմի ոմն ի հաւատարիմ ծառայից իւրոց ի գործ առաքէր յերկիրն Հայոց, որում անուն էր Դենշապուհ[1], որ եկեալ հանեալ հրամանաւ արքունի,

Վասակ «զօրդիս տոհմին Մամիկոնէից և կամսարականաց և զայլոց տանուտերացն ժողովեալ յիւրաքանչիւր դայեկաց, յամուրս բերդից իշխանութեան Սիւնեաց ետ անցուցանել» (նոյն, 195): — Վրաց պատմիչն Վախուշտ կը պատմէ՝ թէ Արծիլայ յաջորդը Միհրդատ՝ որ թագաւորեր էր Վրաց 434էն ց446, յորժամ ծնաւ որդին իւր Վախթանգ, հաճեցաւ ի թախանձանաց սպասալարին Սուրմակայ՝ յանձնելու նմա իւր զաւակին դաստիարակութիւնը. քանզի սովորութիւն էր՝ որ արքայորդիք մեծամեծաց քով մեծնան: Վեց տարի ետքը Միհրդատ աղջիկ մ'ալ ունեցաւ, զոր Կասրի սպասալարին խնդրանօք յանձնեց նմա, և նա տարաւ զաղջիկն եւ իւր քաղաքը ի Կասրտարաւ ու անդ սնոյց. Brosst. Hist. de la Géorgie, էջ 148:

Մինչև ցայժմ կովկասարնակ Չէրքէզաց մէջ ազնուական ընտանեաց մանկունք մէկ մէկ նշանաւոր և փորձառու մարդոյ կը յանձնուին՝ որ աթալըղ կը կոչուի. սա կ'առնու զերեխայն իւր տունը կը տանի, հայրութիւն կ'ընէ, կը կրթէ ու կը խնամէ. և երբ ըլլայ այր չափահաս և կատարեալ՝ կը բերէ իւր ծնողաց կը դարձունէ, Lettres sur le Caucase, par le Géneral Gille; էջ 132: —

Տայս պարսկերէն՝ հայերէն դայեակ անուան պէս կրկին նշանակութիւն ունի, 1 ծծմայր. 2 այր խնամակալ, դաստիարակ: Տայեակն կը կազմուի Տայէկի՝ որ է դայեկութիւն: Տես Յ. Բ, 62, ծն. 2:

1. Այս այն Դենշապուհ է, համբարակապետ արքայից արքային, որոյ ձեռօք մեղցնել տուաւ Յազկերտ զեպիսկոպոսունս յԱպար աշխարհի: Դենշապուհ, որ ոչ իբրև մարզպան կարգուած էր, այլ իբրև haut commissaire, տասն և ութ ամիս շրջեցաւ ի Հայս, աշխարհագիրը կատարելու համար, (Տես Յ. Ը, 67): Այս աշխարհագրոյս նպատակն անշուշտ՝ միայն զեկեղեցականս նեղել չէր. Սասանեանց գանձուն սովորական հասոյթքն պատերազմաց ծախուց անբաւական եղած ըլլալու էին: Հայոց թագաւորութեան վերջանալէն ի վեր (428) քսան և հինգ տարի անցեր էր և այդ երկար միջոցին մէջ Հայաստան կատարեալ խաղաղութիւն վայելեր էր: Հարստութեան՝ բարօրութեան առհասարակ աւելցած ըլլալն անկէ ալ յայտնի է, որ թէպէտ տուրքերը կրկնապատկեցան, ժողովուրդը կրցաւ վճարել, և չէր ալ պատասխաներ եթէ կրօնից չդպչէին: — Նոյնպէս կանանց և ազատաց տանուին կենաց վրայօք Եղիշէի տուած տեղեկութիւններէն կը հասկցուի՝ թէ վայելուչ ճոխութիւն մը ընդհանրացեր էր Հայոց մէջ: Իսկ վանորայից հարստութեանցը վրայօք՝ տես զՃառն միաբանից, 12-17: — Դենշապհոյ գալէն յառաջ Եկեղեցականք և միայնակեացք ոչ միայն զլխահարկէ ազատ էին, այլ և կրօնական հիմնարկութեանց յատկացեալ կալուածքն ամենևին տուրք չէին վճարեր: Վանքերը՝ «ազատ յամենայն հարկապահանջ իշխանաց՝ սահմանս ընկալան և անդս, և զերիցագոյն պատիւ ժառանգեցին յուխտի արքունեան». Սոփ. հայկ. հատ. Բ, էջ 109: — Դենշապուհ կը բաղկանայ յերկուց յատուկ անուանց. Դեն՝ դէն, օրէնք, այս է Դենիմազդեան. և է անուն հրեշտակի՝ որ կ'անձնաւորէր զՋրադաշտ-

*զողջոյն բերեալ զանձ թագաւորին, և խաղաղասէր կեղծաւորութեամբ աշխարհագիր[1] առնել ամենայն երկրին*

տական հաւատս, որոյ համար ալ յատուկ նշան մը կայ. իսկ չափաւ նշանակէ արքայորդի։

1. Այս աշխարհագրիս վրայօք Եղիշէի տուած տեղեկութիւնքը յայտ պիտանի են, թէպէտ մեր հետաքրքրութիւնը աւելի կը շարժեն քան կը յագեցնեն։ — Ի՞նչ հարկ էր սակայն աշխարհագիր առնել այրուձին թեթեւցնելու համար։ Եղիշէ կամ Ղազար Փարպեցի մեզի չեն գրուցեր՝ թէ որչափ հեծեալս կու տային Հայք Սասանեանց. բայց ինչ որ ալ ըլլայ սոցա թիւը, եթէ նուազեցնել հարկ ըլլար, կրնային օրինակ իւր մէկ երրորդը կամ քառորդը պակաս ուղելով գոհանալ. ու այդ պակսած մասը կը բաժնուէր նախարարաց մէջ համեմատաբար իւրաքանչիւրին տուածին. «համագունդ ամենայն զօրօք նախարարացն յիւրաքանչիւր տանէ ի մի վայր գային հասանէին» և այլն. Ց. Գ., 53։ Այսչափս մարթ է հետեւցնել թէ այրուձիոյն քանակութիւնը, զոր մէն մի տանուտէր պարտական էր կազմել՝ հանդերձել և կերակրել, անոր հպատակաց թուոյն կամ ունեցած եկամուտին համեմատութեամբ որոշուած էր ի հնուց անտի, և թէ ժամանակ անցնելով այդ համեմատութիւնդ խանգարած էր. վասն որոյ հաւասարապէս թեթեւցնելու համար իւրաքանչիւրին բաժինը՝ նոր աշխարհագիր մը հարկաւոր էր։ Բայց թէ ինչ համեմատութեամբ և ինչ հիման վրայ կ'որոշուէին այդ զօրաբաժինքդ, հայոց գիւղորութեան կանոնաց վրայ մեր ունեցած անոր տեղեկութիւնքս չներեն մեզ հաստատել։

Իսկ հարկերը թեթեւցնելու կամ ծանրացնելու նկատմամբ եղած աշխարհագիրը ընական է. որովհետեւ անձնական տուրք մը կամ գլխահարկ մը հաստատելու համար ազգահամարն անհրաժեշտ է. բայց որովհետեւ լերանց՝ դաշտաց և անտառաց և շինից և աւերակաց վրայ այլ և այլ տուրքեր դրուեցան կամ եղածներն աւելցան, պէտք է հետեւցնել՝ թէ այդ աշխարհագիրդ Cadastre մի էր և ոչ պարզ ազգահամար։

Թապարի կ'ըսէ՝ թէ Յազկերտ Բի յաջորդին և որդւոյն՝ Պերոզի օրերը խարաճ չկար ի Պարսկաստան. (խարաճ կամ հարկ ըսելով իմանալ «որոշեալ տուրք» = impôt fixe). Թագաւորք արտերէն և այգիներէն խարաճ չէին առնուր. այլ ոմանց բերքին տասանորդը, ոմանց՝ հինգերորդը կամ քառորդը, մինչեւ անգամ կէսը, ըստ բեղնաւորութեան հողոյ, կամ ըստ որում արտը կ'ոռոգուէր ջրանցիւք՝ դուլիւ կամ անուով։ Այդ խարաճին հաստատութիւնը Նուշիրեւանայ հօրը՝ Կաւատայ օրերը (487–531) ձեռնարկեցաւ։ Օր մը Կաւատ որսի ելած ատենը տեսաւ՝ որ չինական կին մը կը ծեծէր զիւր տղայն՝ քովի այգիէն ողկոյզ մը փրցնելուն համար. և խաղողը ձեռքէն առնելով այգւոյն մէջ նետեց։ Երբ պատճառը հարցուց, կինը՝ որ չէր ճանչեր իրեն հետ խօսողը, պատասխանեց՝ թէ չգիտե՞ս որ մինչեւ որ թագաւորը իւր գործակալները չխրկէ ու չառնէ զիրաւունս իւր, ոչ ոք կրնայ վայելել իւր այգւոյն պտղէն։ Զարմացաւ արքայն տրոց հաւաքման այդ անիրաւ եղանակը տեսնելով. ի ժողով գումարեց զխորհրդականս և հրամայեց՝ որ հնար մը մտածեն, որպէս զի գանձին եկամուտը առանց պակասելու՝ ամէն մարդ իւր հողոյն և բարեաց ազատ տէր ըլլայ։ Յայնժամ մեծ հազարապետը առաջարկեց՝ որ ամէն տեղ պահականոցներ հաստատուին, և իւրաքանչիւր հողէն առնուած տասանորդի, հինգերորդի, քառորդի են. փոխարէն որո-

*Հայոց ի թագաւորին հարկաց և ի թեթևութիւն ծանրութեան այրեձիոյ:*

16. *Թէպէտ և ի վերին երեսս կեղծաւորէր, այլ ի ներքոյ խորհուրդ չարագոյն ցուցանէին: Առաջին, զազատութիւն եկեղեցւոյն արկանէր ի ծառայութիւն* [1].

չեալ քանակութեամբ հարկ մը առնուի։ Հաճեցաւ թագաւորը· բայց երբ ամէն կողմ պաշտօնեաներ կը ղրկէր արտերը՝ այգիները, պարտէզները չափելու և այդ որոշողութիւնդ ի գլուխ հանելու համար, մահը վրայ հասաւ։ Որդին Խոսրով անուանեալն Նուշիրվան գործադրեց հօրը կամքը· համօրէն Բաբելաստանի և Ասորեստանի աշխարհագիր առնել տուաւ, չափել տալով զամենայն անդս և զայգիս և զգեօղս, որք յատուկ մատեններից մէջ արձանագրեցան։

Բայց կ'երևի թէ Նուշիրվան շատ խմացաւ՝ թէ մեծ դժգոհութիւն կը յարուցանէ, եթէ նախկին հարկը հաւասար՝ անշարժ սակ մի պահանջէ. ուստի առհասարակ մէկ արտավարի՝ մէկ արծաթի տիրհեմ կամ դրամ (65–70 հարիւրորդ ֆրանքի՝ ըստ Պարպիէ տը Մէնարի) և միանգամայն մէկ ջիրի կամ չափ արմաւի որոշեց։ Բայց այդ կրկին տուրքը վճարելի էին՝ միայն եթէ երկիրը ցանուած և բերք տուած ըլլար։ Պտղատու ծառոց համար ալ, որք մի առ մի համրուեցան, որոշեալ թեթև տուրք մի յատկացաւ. օրինակ իւր 6 ձիթենի կամ արմաւենի մէկ տիրհեմ տրոց ենթարկուած էին։ Այլազգեն ազգաց՝ Քրիստոնեայից և Հրէից գլխահարկ մը հաստատուեցաւ, որ այլ քաղաքաց կարողութեանը համեմատեալ էր, և բարեկեցիկներու համար վեցէն մինչև ցերկոտասան դրամն կը տարբերէր։ Կանայք ազատ էին ի գլխահարկէ։

Այս նոր գրութիւնն անշուշտ դժուարին էր կանոնաւոր կերպով գործադրել, որովհետև ամէն տարի աշխարհագիր ընելու կը կարօտէր. այսու ամենայնիւ տասանորդի դրութենէն շատ աւելի քիչ ճնշակար էր, և մեծ բարենորոգում մի էր նախնի իրաց բաղդատմամբ։

Ցազկերտի օրով Հայաստանի մէջ գործադրուածն ալ մարթ է միացնել Կաւատի ձեռնարկածին հետ. քանզի ներելի չէ՝ արևելեան պատմչաց պէս՝ աշխարհապարփակ յեղափոխութեան մը սկըզբնապատճառ դնել ողբական դէպ մը կամ չինծու մանրավէպ մը։ Պարսիկք տասանորդաց մեծամեծ անպատեհութիւնները տեսած էին. բայց որովհետև դժուարին է կարգէ դուրս նոցա տուած հասոյթը մէկէն ի մէկ անշարժ սակի մը վերածել, առաջին փորձը Հայաստան փորձել ուզեցին՝ իբրև Յացնեալ նահանգներէն աւելի բարգաւաճ և հարուստ երկիր։ Գուցէ ևս վասն զի այդ նոր դրութեան մասամբ կը գործադրուէր անդ ի հնուց անտի, ինչպէս Հռոմէական պետութեան մերձակայ քանի մը նահանգաց մէջ։ Նոր տրոց սաստկութենէն եղած գանգատներէն ալ մարթ է կարծել՝ թէ Դենշապհոյ պահանջածն շատ աւելի ծանր էր քան զոր ինչ Նուշիրվան հաստատեց աւելի վերջը ի Միջագետս։ Զարմանալու չէ՝ թէ ինչո՞ւ այդ նոր դրութեանդ 60–80 տարւոյ կարօտացաւ ընդհանրանալու համար։ Արևելից մէջ գաղափարաց դանդաղ յառաջացումը եթէ ի յուշ ածեմք, այդպիսի ժամանակի միջոց մը չափազանց չերևիր կարեւոր և ընդարձակ բարենորոգութեան մը համար։

1. Ազատութիւն եկեղեցւոյ, այս է տուրքէ ազատ ըլլալը. վասն զի ծառայութիւն կը համարուէր հարկ վճա-

երկրորդ, միայնակեաց քրիստոնեայք՝ որ բնակեալ էին ի վանորայս, ընդ նոյնն աշխարհագրաւ էարկ. երրորդ, զհարկ աշխարհին տասնել ծանրացոյց. չորրորդ, բանտարկութեամբ զնախարարեանն էարկ ընդ միմեանս, և յամենայն տան արար խռովութիւն: Եւ զայս ամենայն առնէր, թերևս զմիաբանութիւնն քակեսցէ, և զուխտն եկեղեցւոյն ցրուեսցէ, և զմիայնակեացսն փախուսցէ, և զշինականսն վատնեսցէ. և առ յոյժ աղքատութեանն՝ ակամայ դիմեսցեն յօրէնս մոգուց: Եւ ևս չարագոյն հինգերորդն. քանզի որ հազարապետ[1] աշխարհին էր՝ իբրև զհայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից, գրգռեաց յարոյց զամբաստանութիւն ի վերայ նորա, և հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն, և միւս ևս մոգպետ դատաւոր աշխարհին, զի զեկեղեցւոյն փառսն աղաւաղեսցեն:

17. Բայց սակայն թէպէտ և ամենայն գործքս այս դժնեայ էին. չև էր ուրուք ձեռնարկեալ յայտնի յեկեղեցին. վասն այնորիկ և ոչ ոք ընդդիմացաւ նմա, թէպէտ և էր ծանրութիւն հարկացն: Քանզի ուստի արժանն էր առնուլ հարիւր դահեկանս[2] չափ, կրկին առ-

բեղն: «Աղաւաղեցի անկաւ ի ծառայութիւն հեթանոսաց. և սուրբ քահանայք նորա կափին չարչարին յանօրէն հարկահանաց»: Յղ. Միանձանց, 16. և Յ. Բ. 69. ծն. 2:

1. Այս է Վահան Ամատունի, որ Հմայեկայ Մամիկոնէի հետ դաստիարակեալ և աշակերտեալ էր ի Մեսրոպայ (Կորիւն, 27), զոր Վռամ Ե՛ հազարապետ կամ ներքին ընդհանուր վերակացու և բարձրագոյն դատաւոր և կառավարիչ անուանեց էր Հայաստանի, յորժամ առաջին անգամ մարզպան կը ղրկէր ըղ-Միհրշապուհ: Զնա Դենշապուհ գործէն հանեց ու տեղը Մշկան անուն պարսիկ մը բերաւ, օգնական տալով այս վերջնոյս մոգպետ մը. (Չամչեան, Պատմ. Հայոց): Դիտելի է որ Դենշապուհ պաշտօնանկ չըրած՝ օրինաւոր կերպարանք մը կ'ուզէ տալ իւր գործառնութեան. վասն որոյ ամբաստանութիւնս կը յարուցանէ: Բայց Եղիշէ Վահանայ պաշտօնանկութիւնը Դենշապհոյ ըրած չարեաց մեծագոյնը նկատելով՝ փառաւոր գովեստ և ջատագովութիւն մը կ'ընէ նմա:

2. Դահեկան, բաղադրեալ ի տաճ. دا بառէ՝ որ է պարսկերէն տասն, և ի կան نک մանկէ կամ վերջահոլովէ, համանգամայն նշանակէ «տասնից»: Նոյն նշանակութիւնն ունի և լատին դենար՝ denarius, որ տասն as բաւ է. և սա էր պղնձի դրամ Հռոմայեցւոց: Արծաթի դենարը մէկ ֆրանգ կ'արժէր, իսկ մէկ ոսկի դենար հաւասար էր 25 արծաթ դենարաց, կամ աւելի ճշդիւ՝ 26 1/2 ֆրանքի: Պարսկերէն տանկան և տինար (denarius) ոսկի դրամի անուն են. ու այդ իմաստով կը գործածէ Եղիշէ աստ և ի Յ. Ը. 118. քանզի պարսիկ հարկապահանջաց կեղեքած սակին մեծ քա-

նուխն. այնպէս և եպիսկոպոսաց և երիցանց գնէին, ոչ միայն շինաց, այլ և աւերակաց: Նա բնաւ ոչ իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մաքսից և սակից, բաժից և հասից և հարկաց[1] լերանց և դաշտաց և մայրեաց: Ոչ բառ արքունի արժանաւորութեանն առնուին, այլ հինաբար յափշտակելով. մինչև ինքեանք իսկ մեծապէս զարմանային, թէ ուստի այս ամենայն գանձ ելանէ, զիա՞րդ շէն կայցէ աշխարհն:

18. *Եւ իբրև տեսին, թէ այսու ամենայնիւ չկարացաք ձանձրացուցանել, յայնժամ յայտնապէս հրաման ետուն մոգաց և մոգպետաց նամակ մի գրել ըստ ձախողակի գենին իւրեանց: Եւ է պատճէն նամակին այս:*

19. *Միհրներսեհ վզուրկ հրամատար Երան և Աներան[2], Հայոց մեծաց ողջոյն շատ:*

նակութիւնը կ'ուզէ ցուցանել: Պարսկական արծաթ ստակն էր տիրհամ درهم կամ տրամ درم, հայերէն «դրամ»: Շահապիվանի ժողովոյն մէջ հաստատեալ տուգանաց կանոնին մէջ (յամի Տ. 445) միայն «դրամ» անունը ի կիր առած են մեր եկեղեցւոյ հարք: Տես և Ց. Ը. 118:

1. Եղիշէ տրոց այլ և այլ անուններ կու տայ՝ որոց նշանակութիւնը ճշդելը շատ դիւրին չէ. որովհետև միևնոյն բառը երբեմն մասնական, երբեմն ընդհանուր առումը կը գործածուի: — Մաքս՝ հողէ մը կամ շէնքէ մը առնուած այն տուրքն է, որոյ քանակը կանխաւ որոշեալ է ու չփոփոխիր բերոց կամ եկամտից շատնալովը կամ նուազելովը: — Բաժ՝ է Պարսից և Օսմանեանց պաժը կամ պայը, և ուստի Péage, որ կը հատուցուէր մերթ վաճառօք կամ բերօք, en nature, և մերթ դրամաւ: Հաս՝ հողի բերքէն առնուած մասն է կամ տասանորդ մի, որ հարիւրին հինգէն մինչև ցյիսուն կը զանազանէր: Բաժին և հասին տարբերութիւնը յայտ է, թէ առաջինը աւելի փոխադրութեան (circulation) տուրք մի էր՝ որ ի մուտս քաղաքաց կամ ճանապարհի, կրճի կամ անցքի մը վրայ կը վճարուէր. մինչ վերջինը աւելի արտերու և ագարակներու մէջ կ'առնուէր, ինչպէս տասանորդը մինչև ցայսօր: — Հարկը (պրսկ. խարաճ) աւելի ընդարձակ և զանազանեալ իմաստ ունի. մերթ նշանակէ որոշեալ գումար մը, որ երբ մարդ գլուխ դրուած ըլլայ՝ «գլխահարկ» (խարա'ճի սէր) կը կոչի. մերթ մէկ գիւղի՝ բովանդակ գաւառի կամ աշխարհի սահմանեալ հաւաքական տուրք, ինչ կերպով որ ալ հատուցուի, բերօք կամ դրամով:

2. Միհրներսեհի տիտղոսն է՝ Վզուրկ հրամանատար Երան ու Անէրան: Շապուհ առաջնոյ ժամանակի հաստուկաքիր գրուածոց մէջ վազարք, վազարքան՝ է «աւագ, աւագանի», վզուրկք. աւելի վերջերս կը հնչուէր վուզուրք կամ պիւզիւրք, որ է մեծ, աւագ: Մեր գրչագրաց մէջ վզուրկ, վզըրկ կամ վզրուկ գրուած է, բայց ընտրելին «վզուրկ» է: Վէզիր՝ վուզուրքի արաբացեալն է: — Մատուտի

Դուք գիտասջիք, ամենայն մարդ որ բնակեալ է ի ներքոյ երկնի, և ոչ ունի զօրէնս դենիմազդեզն[1], նա

ասէ՝ թէ Մովպետան մովպետէն ետքը բարձրագոյն պաշտօնեայն պարսից պետութեան՝ պիւզիւրգ ֆերմատարն է, որ թարգմանի աւագ հրամանատար։ Հաւ. թ. 355։ Է և ի գրչագիրս Վզուրկ հրամատար։

Երան ու Աներան. այս է Արիք և Անարիք, կամ Արեաց և Անարեաց, որովհետև յոգնակի սեռականը ուղղականին նման է։ Սասանեան արձանագրութեանց և դրամոց վերայ այրան վէ անիրան կը գրուի. Բազմաթիւ մատենից մէջ ایران و انیران զոր պարտ է ընթեռնուլ էրան ու անէրան, որպէս دیو և نیو «դև, կարիճ» կը հնչուին այժմ իսկ տեվ և նէվ։ Վասն որոյ թէպէտ Սասանեանք այրան վէ անիրան կը գրէին, բայց Էրան ու Անէրան կը կարդային, ինչպէս որ մեկնեցինք մեր «Ցաղագս լեզուին պարսից» մակագրեալ քննախօսութեան մէջ (տես յէջ 101–109)։ Եղիշեայ համօրէն տպագրաց մէջ, ի բաց առնելով զԱնձևացեացն, Տանէրան գըրուած է, որ անշուշտ գրչագրի վրիպակ մի է, զոր ժամ է արդ ուղղել։ Հաւանական է՝ թէ Ու շաղկապը Տ կարդացուած է յօրինակողաց։ Մնաց որ այդ բաղաձայնդ բացասական մասնիկ համարել՝ որպէս ի «ադեղ, ադէտ», անհնար է, քանզի անէրան արդէն ունի իւր բացասական մասնիկն՝ որ է ան։ Եղիշէ աստանօր Միհրներսեհի պաշտօնական տիտղոսը գրեթէ պարսկերէն բառերով և քերականութեամբ կը դնէ։ Միհրներսեհի վիւզիւրգ ֆարմատար Էրան ու Անէրան, որոյ հայերէնն է՝ Միհրներսեհ աւագ հրամանատար Արեաց և Անարեաց։ Սասանեան արձանագրութեանց, դրամոց, մատենից մէջ չկայ բնաւ Տանէրան։ Եպիսկոպոսունք ալ իրենց պատասխանւոյն մէջ Միհրներսեհի «մեծ հազարապետ Արեաց և Անարեաց» պատասխանը կու տան, որ նոյնպէս պաշտօնական էր։

Նամակիս Միհրներսեհի կողմանէ գըրուելուն երկու պատճառ կրնայ տրուիլ. նախ՝ Յազկերտ ի Նիւշափուր, զուցէ եւս աւելի հեռաւոր տեղեր՝ պատերազմի զբաղած էր ու տեղական կարգեր էր գնա. երկրորդ՝ աւելի հաւանական էր որ Հայք պիտի մերժէին Դիւան առաջարկութիւնը. որ եթէ թագաւորին կողմանէ եղած ըլլար, անարգանքը աւելի ծանր և անմիջապէս խիստ միջոցներու ձեռնարկել հարկաւոր կ'ըլլար։

1. Այլ ընթերցուած՝ զօրէնս դենիմազդէն, զօրէնս մազդեզանց, զօրէնս դենի մազդեզանց։ Աւեստայի մէջ տաէնօ–մազտայասնի նշանակէ մազդէական օրէնք. տաէնօ՝ որ Սասանեանց օրերը տէն կը հնչուէր, յորմէ Արաբացիք տին دین կազմեցին, ի սկզբան նշանակէր օրէնք կամ պատուիրանք Ահուրամազդայ կամ Որմզդի. իսկ մազդայասն կը բաղկանայ ի մազդա և ի եասն բառից։ Մազդա, «իմաստուն», կը գործածուի շատ անգամ փոխանակ Ահուրամազդայ. եասն է պաշտել, յազել. ապա ուրեմն մազդայասն է Որմզդապաշտ կամ հետեւող վեհ դենի (պան–տին, ի հնումն վեհ–տէն, որպէս Արաբացիք ասեն Շէ'ր–ի–շէրիֆ), զոր ուսուցին Զրադաշտն Սրիդամա և նմա յաջորդող քահանայապետք։ Վերջերս այդ բարդ բառդ ամփոփուելով կը գրուէր ու կը հնչուէր մազդեան կամ մազդեզն, և հայ մատենից մէջ «մազդեզն». որով «դենիմազդեզն» պարսկական Օրինաց անունն է։ Մենք «մազդեզն» գրենք ըստ սովորական ուղղագրութեան, թէպէտ Եղիշեայ գրչագրաց ոմանց մէջ ս տառով ալ կը գտնեմք մազդեսն, որ աւելի ուղիղ է. (տես այլ.

խուլ է և կոյր, և գիտաց Հարամանայ[1] խաբեալ: Քանզի մինչ չև էին երկինք և երկիր, Զրուան[2] մեծն աստուած յաշտ տանէր զհազար ամ, և ասէր. Թերևս լիցի իմ որդի մի Որմիզդ[3] անուն, որ արասցէ զերկին և զերկիր: Եւ յղացաւ երկուս յորովայնի, մի վասն յաշտ

ՈՄՀԼ վէնետիկ, էջ 232, 287): «Զօրէնս գենի մազդեզանց» ալ սխալ չէր ըլլար, բայց անշուշտ Միհրներսեհ պաշտօնական գրութեան մը մէջ յատուկ և հանրածանօթ անունը գործածած է: Մեր ընդունած ընթերցմամբ՝ դենիմազդեզն բացայայտիչ կ'ըլլայ օրինաց: Աւեստայի մէջ յատուկ եաշդ մի կայ (Տին-եաշդ) նուիրեալ մազդեզն կրօնի, որ կը նկատուի իբրև Ահուրամազդայ իմաստութիւնը անձնաւորող հրեշտակ մը: — Բագրատունին իւր Իլիականին հրաշալի թարգմանութեան մէջ «մազդեզն Լայերտեան» կը կոչէ զՈդիսեւս, «դիւցազնի» համանիշ կարծելով, որ անպատշաճ է:

1. Հարաման, Խարաման, Արհմն՝ է անուն չար Ոգւոյն. կրճատեալ յԱհրիմոմայնուշէ. (տես յէջ 119, 121, 156): Արիստոտէլ Արէիմանիոս կը կոչէ զՈգին չարութեան: Բազանտ մատենից մէջ այլ և այլ ձևով կը գրուի, Ահարման, Ահարաման, Ահրման, Ահրմն. պահլաւիկ ձեռագրաց մէջ Ախարման:

2. Զէր՝ արդի պարսկերէն է ծեր. զերվան, զերուան՝ ծեր զառամեալ. այս վերջին անունս Աբրահամու ալ կը տըրուի: Աւեստայի և Բազանտ գրոց մէջ Զրուան կամ Զրուանա նշանակէ «ժամանակ». Տես յէջ 158–159: — Յաշտ (Եաշդի), ուստի և այժմեան պարսկերէն եաշդեն, է պաշտել աղօթիւք և զոհագործութեամբ. (Haug Essays. 194): Ճիշդ այս իմաստ կու տայ Եզնիկ (էջ 119): — «Յաշտից տեղիք Թագաւորացն Հայոց Մեծաց», Յաշտիշատ Տարօնոյ. (Ագաթանգեղոս): Այլ է հաշտ, հաշտութիւն, որ բազանտ լեզուաւ է աշդի, և զանդ՝ ախշդի. ուստի և անաշդի՝ անհաշտութիւն:

3. Որմիզդ է անուն բարի աստուածոյ. Աւեստայի մէջ սորա հնագոյն ձևն է Ահուրա-Մազդա կամ շատ անգամ սոսկ Մազդա: Ահուրա՝ սանսքրիտ ասուրա՝ կը թարգմանի հոգի, զուցէ եւ ձուր կամ աւր արմատէ եկած. իսկ մազդա՝ իմաստութիւն կամ իմաստուն, (Մազտâօ, մազ՝ մեծ, տâօ՝ գիտող, մեծագէտ, ամենագէտ): Աքեմենեան արձանագրութեանց մէջ (Քրիստոսէ 500 ամօք յառաջ) այդ անձնաւորական և հոգեղէն էակին անունն է Աւրամազդա, որ անշուշտ կրճատեալ յԱհուրա-մազդայ, ու կը մերձենայ յայժմ Արիստոտէլի յիշատակած Օրոմազդէսի և քիչ կը տարբերի ի հայկական «Արամազդէ»: Վշտասպեան Պարսից սեպագրաց մէջ տեղ մը անունդ սեռական գործածուած տանեն, փոխանակ միոյ բառի՝ կը տեսնեմք զայն յերկուս նախնական մասունս բաժանեալ, իւրաքանչիւր մասն ունելով զիւր վերջաւորովը, աւրաճիյա մազդահա. որով Պարսից Աստուծոյն Աւեստայի Ահուրամազդան ըլլալուն տարակոյս չմնար: Սասանեանց ժամանակը այդ անունդ դարձեալ սեղմուելով՝ Հորմիզդ هرمزد կամ Որմիզդ եղած էր, և աւելի ի վերջոյ՝ Հուրմիզ هرمز:

Մեր նախնիքն ալ ուրեմն պաշտած են Զրադաշտայ Ահուրամազդան, թէպէտ յետոյ Արշակունեաց տանը Արամազդ անունդ յունական Դիոսի պատկանեցաւ:

տանելոյ, և զմիւսն ևս ի թերևս տանելոյ[1]: Իբրև գիտաց, եթէ երկու են յորովայնին, Որ վաղ եկեսցէ, ասէ, նմա տաց զթագաւորութիւնս: Իսկ որ էր ի թերահաւատութենէն յղացեալ, պատառեաց զորովայնն, և ել ի դուրս: Ասէ ցնա Զրուանն. Ո՞վ ես դու: Ասէ. Որդին քո Որմիզդ: Ասէ ցնա Զրուանն. Իմ որդին լուսաւոր է և անուշահոտ, դու խաւարային ես և չարասէր: Եւ իբրև կարի դառնապէս ելաց, ետ ցնա զթագաւորութիւնն հազար ամ[2]:

20. Իբրև ծնաւ զմիւս ևս որդին, անուանեաց զնա Որմիզդ. եհան զթագաւորութիւնն յԱրհմնէ. և ետ ցՈրմիզդն. և ասէ ցնա. Ցայժմ ես քեզ յաշտ արարի, արդ դու ինձ արա: Եւ Որմիզդ արար զերկին և զերկիր. իսկ Արհմն ընդդէմ չար գործեաց: Եւ այսպէս բաժանին արարածքս. հրեշտակք Որմզդի են, իսկ դևքն Արհմնոյն. և ամենայն բարիք որ յերկնից և աստ լինին՝ Որմզդի են, և ամենայն վնասք որ անտի և աստ գործին՝ զայն Արհմն արար: Սոյնպէս և յերկրի որ ինչ բարի է՝ զայն Որմիզդն արար. և որ ոչն է բարի՝ զայն Արհմն արար, որպէս զմարդ Որմիզդ արար, և զախտս և զհիւանդութիւնս և զմահ Արհմն արար: Եւ ամենայն թշուառութիւնք և պատահարք որ լինին, և պատերազմունք դառնութեան՝ չարին մասին արարածք են: Իսկ յաջողութիւնք և տէրութիւնք և փառք և պատիւք և առողջութիւնք մարմնոյ, գեղեցկութիւնք դիմաց և ճարտարութիւնք բանից և երկայնակեցութիւնք ամաց, այդք ի բարւոյն առնուն զգոյացութիւն. և ամենայն որ ոչ այդպէս է, ի նա չարին արարած խառնեալ է[3]:

1. Բարեպաշտութիւնը և հաւատքը զՈրմիզդ յառաջ բերին. տարակոյսը և անհաւատութիւնը՝ զԱրհմն։

2. «Ինն հազար» պարտ է ընթեռնուլ. տես ծանօթ. 2, յէջ 159. և Նըգնիկ 115։

3. Աստ կը լմննայ պարսկական դենին յայտարարութիւնը. ասկէ ետքի մասը քրիստոնէութեան դէմ առարկութիւններ են. Զարմանալի է սակայն՝ որ Միհրներսեհ մի միայն բարւոյ և չարի երկուութեան վրայ կը հիմնէ պարսկական քէշը. և ոչ զարեգակ կը յիշէ, ոչ ըզպաշտամունս տարերաց և ոչ զայլ մոգական կարգս։ Այդ էր անշուշտ աւելի հին ժամանակի պարսից կրօնքը, որ կռապաշտութենէ և նոյն ինքն բազմաստուածութենէն զերծ էր։ Բայց հետզհետէ շատ մը երկրորդական և նիւթական աստուածութիւններ աւելցեր էին։ Արտաշիր ա-

21. Եւ ամենայն մարդիկ մոլորեալ են, որ ասեն եթէ զմահ Աստուած արար, և չար և բարի ի նմանէ լինին. մանաւանդ որպէս քրիստոնեայքդ ասեն՝ թէ Աստուած նախանձոտ է, վասն թզի միոյ ուտելոյ ի ծառոյն Աստուած զմահ արար, և զմարդն եարկ ընդ այնու պատուհասիւ։ Զայդպիսի նախանձ և ոչ մարդ առ մարդ ունի, թող թէ Աստուած առ մարդիկ. զի որ զայս ասէ՝ նա խուլ է և կոյր և ի դիւաց հարամանոյ խաբեալ։

22. Դարձեալ միւս ևս այլ մոլորութիւն ասեն. Աստուած, ասեն, որ զերկինս և զերկիր արար, եկն և ի կնոջէ ումեմնէ ծնաւ, որում անուն էր Մարիամ, և աճն նորա Յովսէփ[1]։ Եւ զհետ այսպիսի մարդոյ մոլորեալ են բազումք։ Եթէ աշխարհն Հոռոմոց առ յոյժ յիմարութեան ադխտաբար մոլորեալ են, և զրկեալ են ի կատարեալ դենէս մերմէ, յանձանց պարմայեն[2] զվնասն խ-

ռաջնոյ ինչպէս և Ցագկերտի ժամանակ կատարուած կրօնական քննութիւններն՝ պարսկական դենին այլ և այլ ձևերն յերևան հանած էին. Միհրներսեհի շատ պատիւ կը բերէ, որ սոցա մէջէն ամենէն խելքի յարմարը և աննիւթականը ընդունած և պատշաճ դատած ըլլայ քրիստոնէից առաջարկելու։ — Այս նամակիս և ասոր տրուած պատասխանոյն վաւերական ըլլալուն տարակոյս չկրնար ըլլալ. սոր ապացոյց են ոչ միայն գրութեանցդ ձևը և Եղիշեայ ճշմարտախօսութիւնը, այլ մանաւանդ նոցա հիւսուածքը, պարունակած խմատները և իրարու հետ ունեցած կապակցութիւնը։ Միհրներսեհի թղթին մէջ պարսկական կրօնը իր ամենէն աւելի փայլուն և բանաւոր կերպարանօք կը ներկայանայ. իսկ քրիստոնէութեան դէմ եղած առարկութիւնքն մի առ մի համաձայն են մազդեզն վարդապետութեանց և մատեններց։

1. Աստանօր անչուշտ պակաս մը՝ Քրիստոսի համար նախատական խօսք մ'ըլլալու է, զոր գրչագիրք առհասարակ, գուցէ Եղիշէ ևս, պատշաճ դատեր են ջնջել. բաղդատէ Եզնիկայ պատասխանոյն մէջ այս պարբերութեանս հերքումը. «այն է ճշմարիտ Աստուած... զոր դու անհրատանակ արժակ քերտանով անձամ անհրկիւղ ճամարձակ ճայնոյես. թողեալ զՅիսուս Քրիստոս զփրկական անունն, փանդուշտակոյ որդի անուանես։» ... Այս պակասս կը լեցնէ Թէոդոսիոյ ապագիրը. յորում կը գտնեմք... «և աճն նորա Յովսէփ. այլ ճշմարտութեամբ Պանթերայ ուրումն եղեալ նա որդի յանկարծ խառնակութենէ։ Եւ զհետ այդպիսի» են։ Բայց քանի որ Թէոդոսիոյ ապագրին հրատարակիչը չգրուցեր մեզ՝ թէ ո՞վ է այն հնաւէր պատուական անձը՝ Սըր Զարուայթ անուն, որոյ քով տեսեր էր Անձևացեաց օրինակը, և ո՞ւր պահուած է այժմ այդ ձեռագիրը, չհամարձակեցանք փոփոխել առհասարակ ընդունուած ընթերցուածը։

2. Այլ ընթերց. պայմանեն. պարմանիտան կամ պարմայիտան պրս. է զգալ, շօշափել, զփորձ առնուլ. վասն որոյ պարմայեն ընտրելի թուեցաւ մեզ։

բեանց. դուք եւ ընդէ՞ր զհետ նոցա մոլորութեանն ցնորէք: Այլ զոր օրէնս տէրս ձեր ունի, զնոյն և դուք կալարուք. մանաւանդ զի և առաջի Աստուծոյ վասն ձեր համարս ունիմք տալ:

23. Մի՛ հաւատայք առաջնորդացն ձերոց, որ նածրացիոց[1] անուանէք, քանզի յոյժ են խաբեբայք. զոր բանիւքն ուսուցանեն, գործովք ոչ կարեն յանձն առնուլ: Միս ուտել, ասեն, ոչ են մեղք, և ինքեանք ուտել ոչ կամին. կին առնել արժան է, բայց ինքեանք և հայել ի նա ոչ կամին. կարասի որ ժողովէ, ասեն, յոյժ մեղք են, բայց զաղքատութիւն առաւել քան զյոյժ գովեն. յարգեն զժլատութիւն, և պարսաւեն զյաջողուածս, ծայր

1. Նածրացի կամ Նածարացի՝ է Նազովրեցի, Nazaréen:

Ի սկզբան Քրիստոսի հաւատացողներն ամենէն աւելի Պաղեստինու և հեթանոս աշխարհաց մէջ գտնուող հրէայք եղան: Մինչ սոքա իրարու «եղբայր», «աշակերտ» կամ «հաւատացեալ» կ՚ըսէին, բուն Հրէայք արհամարհանօք Նազովրեցիս կը յորջորջէին զնոսա: Քրիստոնեայ անունը առաջին անգամ Անտիոքացիք տուին, երբ տեսան որ կարելի պիտի չըլլայ համաձայնութիւն գոյացնել Պաղեստինու և Անտիոքայ հրէաներ հաւատացելոց հետ, որք զՄովսիսական օրէնսն անայլայլակ պահել ուզելով՝ խոզի միս ուտելէ կը խորշէին, թլփատութիւն կը պահանջէին, և միութեան Աստուծոյ հնաւանդ գաղափարը փոփոխել յանձն չառնելով զՔրիստոս սոսկ Մեսիա—մարգարէ կը ճանաչէին: Այսանկով Նազովրեցի յորջորջումը Քրիստոնէից մէջ տակաւ առ տակաւ յատկացաւ հրէամիտ (judaïsants) հաւատացելոց: Այս յետինքս այլ ինքզինքնին «Էբիոնեանք» այս է «աղքատք» կ՚անուանէին, անշուշտ Քրիստոսի երանի տալուն համար աղքատաց (Մատթէոս, Ե. 3): Եւ յիրաւի այնքան խեղճ և աղքատիկք էին, որ շատ անգամ ուրիշ աշխարհաց քրիստոնէից խրկած պարգևներով և հանգանակութեամբք կ՚ապրէին: Բայց հինգերորդ դարու սկիզբները իբրև հերձուած մերժուեցան, և հետզհետէ նուազելով մէկ մասն հրէութեան և միւսն ուղղափառ Եկեղեցւոյ խառնուեցան, և յէ դարու ոչ ոք մնաց ի նոցանէ:

Միհրներսեհ սակայն Նազովրեցի ըսելով կ՚իմանայ զքրիստոնեայս առհասարակ: Հրէից անարգական մտօք ամփոփուցած անունը փոխելու պատճառ մի չունէին պարսիկք, ինչպէս որ մինչև ցայժմ Արաբացիք ալ Նասրանի կ՚ըսեն Քրիստոնէից: Արեւաց մեծ հազարապետը Նածրացի կամ քրիստոնեայ՝ զեկեղեցականս միայն կ՚ուզէ համարել, որպէս զի զնոսա միայն մեղապարտ և պատժելի ցուցանելով, ժողովուրդը իրեն ձգէ. այդ վարմունքդ համաձայն ալ էր պարսկական մտաց. քանզի մոգերն միակ աւանդապահ ըլլալով դենին, ժողովուրդը անոնց մէ կ՚ուսանէր իւր հաւատալիքը: Վերջին ժամանակի պատմագրաց մէջ բերուս ترسا աւելի ի կիր առեալ է «քրիստոնեայ» ըսելու համար: Պաշման եաշդի մէջ ալ կը գտնենք քալասայիկ՝ եկեղեցական, և քալասայիկի՝ եկեղեցականութիւն, ուխտ եկեղեցւոյ:

առնեն զանուն բախտի, և զփառաւորան յոյժ պահպանեն. սիրեն զանչքութիւն հանդերձից, և յարգեն զանարգս քան զպատուականս. գովեն զմահ, և պարսաւեն զկեանս. անարգեն զծնունդս մարդոյ, և գովեն զանորդութիւն: Եւ եթէ լաւ ոք գոյս և ի կանայս ոչ մերձենայ, աշխարհի վախճան փափագակի հասանէ[1]:

24. Այլ ես ոչ կամեցայ զամենայն բառ մասանց ընդգրով արկանել առ ձեզ. զի բազում՝ այն ինչ է, զոր

1. Ինչ որ մնաց, սրտի և մարմնոյ զօրութիւն, հանդիստ և շքեղութիւն կու տայ, որպէս գիտութիւն, հարստութիւն, յաջողութիւնք, սննդարար կերակուր, Որմզդայ ստեղծածքն էին, որով և յարգելի. մահ, աղքատութիւն, անորդութիւն՝ Հարամանայ գործերն ըլլալով, պիղծ էին և խորշելի: Աւեստան կը պատուիրէ մազդեզանց ի բաց կալ ո՛ և է կրթութենէ կամ ճգնութենէ՝ որ զմարմինը կը տկարացնէ. կը դատապարտէ այդպիսի վարդապետութիւն ընողները: «Մսեղէն կերակուրը, կ'ըսէ, կը սնուցանէ և կազդուրէ զմարմին և կը պահէ ի նա զօգին սրբութեան. կը հեռացնէ զգեն մահու և զգեն ձմերան: Այդպիսի օգտակար սննդեամբ մարդս ձմերան սաստկութենէն չզարհուրիր, և օրինացս հետևելով կը մերժէ այն պիղծ, չարանախանձ և դժնդակ դաւանութիւնքը՝ որք կ'արգելուն խնամ տանելու մարմնոյ»: Այդ չափով ևս չգոհանալով, սոսկալի պատուհաններ կը սահմանէ նոցա դէմ՝ որք մահացուցմունս պատուիրելով հիմնայատակ կործանելու կը նկրտին զերկարմատեան դրութիւնը:

Այլուր ասէ Աւհուրամազդա. «Քեզ ասեմ, ո՛վ սրբակացդ Զրադաշտ, որ ամուսին մի ունիս. վեհ է կանամբին քան զամուրի, տանուտէրն քան զայր անգերդաստան, զաւակաց հայրն քան զանորդի, կալուածատէրն քան զոք անստացուած». Վէնտիտատ գլ. Դ:

Ճակատագրի կամ բախտի վարդապետութիւնը չկայ ընաւ յԱւեստա. կայր և անդիմադրելի զօրութիւն մը և կապեալ հրամանք՝ որոց պարտին հնազանդիլ աստուածքն ինքնին, հակառակ էր ամենևին Զրադաշտայ աստուածաբանութեան և բարոյական քարոզութեանց: Բայց վերջերս բախտի հաւատքը մուտ և հաստատութիւն գտաւ Պարսից մէջ, ինչպէս որ Մայնօ-խրատի այլ և այլ գլուխներէն կը հետևի. «Երբ 9000 ամք լրանան, Արհմն պիտի ոչնչանայ. և բարեպաշտն Սրօշ պիտի խորտակէ զբարկութիւն. և Միհր և Ժամանակն անսահման (Զրուանի ակարանա) և ոգին արդարութեան՝ որ ոչ երբէք դրժէ ումեք, և Բախտն և Բաշխք բախդի (պակօ-պախդ, որ շատ անգամ մատնաւոր հրեշտակի անձնաւորութիւն կ'առնու) պիտի խորտակեն զհամայն արարածս Արհմնի»: — «Ոչ իմաստից և ոչ իսկ գիտութեան ուժով մարթ է յաղթել բախտի. երբ կապեալ հրամանն հասանի, իմաստունը կը խեղագարի, ագէտը խելահաս կ'ըլլայ, վատասիրտը՝ կորիճ, կորիճը՝ վատասիրտ, յեղգաբարոյն՝ աշխատասէր, և աշխատասէրն՝ ծոյլ»: — «Բախտն անդստին ի սկզբանէ հրամայեալն է. իսկ Բաշխք բախդի, այն զոր Եզդաք կը հայթհայթեն մարդկան՝ երբ սոքա հայցեն աղօթիւք և բարի գործօք (քիրփա)»: — «Լաւ է իմաստութիւն քան զամենայն ինչս և զբարիս. իսկ բախտն իշխէ ի վերայ ամենայնի». գլ. 8, 23, 24, 27:

խօսին դղբա, որ չարադոյն ևս է քան զոր գրեցաքդ[1]. զԱստուած ի խաչ ելեալ ի մարդկանէ քարոզեն, և զնոյն մեռեալ և թաղեալ, և ապա յարուցեալ և վերացեալ յերկինս: Ո՞չ ահա ձեզէն իսկ արժան էր անդրէն դատապարտել վասն այդպիսի անարժան ուսմանց: Դեւք որ չարք են, ոչ ըմբռնին և տանջին ի մարդկանէ, թող թէ Աստուած արարիչ ամենայն արարածոց. զոր ձեզ ամօթ է ասել, և մեզ կարի անհաւատալի բանք:

25. Արդ երկու իրք կան առաջի ձեր. կամ արարէք բան առ բան նամակիդ պատասխանի, և կամ արիք ի դուռն եկայք, յանդիման լերուք մեծի հրապարակին[2]:

## ԱՆՈՒԱՆՔ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑՆ, ՈՐՔ ՊԱՏԱՍԽԱՆԵՑԻՆ ՆԱՄԱԿԻՆ[3]

26. Յովսէփ[4] եպիսկոպոս Այրարատոյ, Սահակ եպիսկոպոս Տարօնոյ, Մելէտ եպիսկոպոս Մանազկերտոյ,

1. Մարդացեալ Աստուծոյ խաչելութիւնը և մեռնիլը (որ է ըսել Մազդեզանց ըմբռնմամբ՝ Հարամանոյ յաղթող եղնիլը Որմզդայ վրայ և զԱմենատուրբը մահուամբ պղծելը) մազդեզանց համար բոլորովին անիմանալի էր:

2. Այլադենից դէմ խիստ միջոցներու ձեռնարկելէ յառաջ հրովարտակ մը գրկել և այլ և այլ կրօնական հարցմանց պատասխան մը պահանջելը՝ Սասանեանց ժամանակ պետական սովորութիւն մը եղած կ'երևի: Պահման Եաշդի պարսկերէն օրինակին մէջ կը տեսնենք, թէ Խոսրով Նուշրէվան՝ Մազդաքեցոց աղանդը բառնալու համար՝ ի ժողով գումարեց զառաջնորդս մոգպետաց և զխնդիր: Յետոյ նամակ մը գրուեցաւ առ աղանդապետն Մազդակ, յորում մահ կը սպառնայր նմա թագաւորը՝ եթէ չհաւանէր պատասխանել հարցուածոց ժողովոյն: Մազդակ յանձն առաւ. տասն կրօնական խնդիրք առաջարկուեցան նմա. բայց նա չկարողանալով և ոչ միոյն պատասխանը տալ անմիջապէս, դատապարտուեցաւ ի մահ: Pahlavi texts by West. էջ 194, ծն. 2:

3. Միհրներսեհի նամակը Հայոց Մեծաց ուղղեալ էր. պատասխանը կաթողիկոսը կը գրէ. խնդիրը կրօնական ըլլալուն՝ աւելի եկեղեցականաց կը վերաբերէր. բայց այդպիսի պատասխան մը գրելն ալ համարձակութեան և անձնուիրութեան կը կարօտէր, որ այն ժամանակի եկեղեցականաց քով պակաս չէր:

4. Անուանքս այս, թէպէտ տարբեր կարգաւ, գտանին և ի Փարպեցի. ի բաց առեալ զեպիսկոպոսն Մարդաղւոյ՝ Նողայ, փոխան որոյ Փարպեցին դնէ «Զաւէն եպիսկոպոս Մանանաղւոյ»: Մանանաղի գաւառ է Բարձր Հայոց ի հիւսիսոյ Տէրսիմ լերանց, ուր Թէքմանայ վիճակին մէջ այժմ իսկ գիւղ մի կայ Մանանաղի անուն: Ըստ Ալիշան վարդապետի՝ գաւառդ բաղկացեալ էր արդի Թէքման և Շուշար վիճակներէ. իսկ Մարդաղի կամ Մարդոյ աղի, այժմ

***Եղնիկ եպիսկոպոս Բագրեւանդայ, Սուրմակ եպիսկոպոս Բզնունեաց, Տաճատ եպիսկոպոս Տայոց, Թաթիկ եպիս-***

վարդօ, է գաւառ Տուրուբերանի, ի հարաւոյ Տէրոնի լերանց՝ որք բաժանեն զնա ի Մանանաղւոյ։ Հաւանական է՝ թէ Մանանաղի Յունաց բաժնոյն մէջ էր. վասն որոյ Եղիշեայ յիշածը աւելի ուղիղ կը թուի։

ՅՈՎՍԷՓ. ծնած էր Վայոց Ձորոյ գաւառին Խողոցիմք անուն գիւղը. Կաթողիկոս էր Հայոց (441էն ց452), թէպէտ երէց ըստ ձեռնադրութեան, և նախագահ ժողովոյս. (փարպեցի 106, 124, 207. Եղիշէ Ց. Ը, 67. տես և Դեռչաղեան ըրած գովասանքը)։

ՄԵՂԵՏ կամ Մելիտէս՝ կաթողիկոս եղաւ Հայոց յամի Տ. 452. յետ նահատակութեան Յովսեփայ. (փարպ. 333)։ Երկու Մանազկերտ կան, երկուքն ալ երբեմն քաղաք եպիսկոպոսանիստ։ Ա. Մանազկերտ կամ Մծեկերտ ի ստորին Բասեան, յարեւելս հիւսիսոյ Խորասանոյ. Բ. Մանազկերտ կամ Մանաւազակերտ, այժմ Մելազկերտ, յահեկէ Արածանւոյ և ի հիւսիսոյ Վանայ ծովու, հին քաղաք Մանաւազեան ցեղի։ Երբ այդ ցեղդ բնաջինջ եղաւ, Տրդատայ որդին Խոսրով Բ տուաւ զքաղաքս զայս (343ին) Աղբիանոսի «մեծի եպիսկոպոսին, ամենայն սահմանօքն և գաւառականւն հանդերձ». (Բուզանդ)։ Ի ԺԱ դարու պաշարեցաւ ի Տուղրիլայ վայրապար և առաւ ապա յԱրփասլանայ և աւերեցաւ։ Այնուհետև չկրցաւ վերստին կանգնիլ։ Դարերէ սեւցած թանձր և հզօր պարիսպները՝ իրենց աշտարակօք և միջնաբերդաւը՝ թէպէտ կիսակործան, և կոփածոյ քարերու ահագին շեղջերն կը վկայեն տակաւին թէ հոյակապ և մեծատարած ոստան մի եղած էր առենօք։ Բեւեռաձև և արաբացի արձանագիրք, խաչաձև քանդակեալ վէմք որ պատերուն մէջ ագուցեալ կը մնան, և շատ մը մարմարեայ գեղեցիկ շիրիմներ հայկական արձանագրութեամբք, նշանաւոր կ'ընեն զքաղաքս հնագիտաց համար։ Յերզրումայ ի Վան գնացող ճանապարհին վրայ գտնուելովն՝ վաճառաշահ կեդրոն մի եղած ըլլալու էր. գուցէ պատուհասն ևս ըլլայ։ Բնագրոյս Մանազկերտը՝ Մանաւազեանց նախնի Ոստանն է, որոյ եպիսկոպոսը ժառանգական տանուտէր ալ եղած ըլլալու է քաղաքին։

Բագրեւանդ գաւառն՝ որ կը պարունակէ արդի Ալաշկերտ և Դիատինէ վիճակները, այն ահագին հրաբխային բաժակն է, որուն բոլորաձև կողերէն իջնող հոսանքն ի մի խառնուելով կազմեն զԱրածանի. ի հնուց հետէ նշանաւոր եղած էր կրօնական յիշատակօք։ Անդ էր մեհենաշատն Բագաւան, հեթանոսութեան մեծ սրբավայրն, ուր կատարուէին և Նաւասարդի հանդէսք։ Անդանօր ծագեցաւ քրիստոնէական լոյսն այլ ձեռամբ Ոսկեանց. ի նմա բնակեցան Սուքիասեանք և վկայեցին. անդ առաջին անգամ մկրտեցաւ արքայն Տրդատ և հայ ազգն. անդ կատարուէր Յովհ. Մկրտչի մեծահանդէս տօնախմբութիւնը ի Նաւասարդի, որ փոխանակեց զնախկին հեթանոս հանդէսն։ Վասն որոյ երրորդ աթոռ էր Բագրեւանդ. Եպիսկոպոսն է անուանին Եղնիկ, որ վարժեալ քաջ հելլէն դպրութեամբ (Խորենացի Գ. Կ) և ճոխացեալ ասորերէն, եբրայեցերէն և պարսկերէն լեզուաց գիտութեամբ (Բազմավէպ, 1893), գործակցեր էր Սահակայ ի թարգմանութեան Սուրբ գրոց և այլ և այլ մատենագրաց։ Ժողովոյս գումարման տարին 60–64 տարեկան ըլլալու էր։ Անկէ ետքը շարադրեց «Եղծն Աղանդոց»։

ՍՈՒՐՄԱԿ՝ Բզնունեաց Եպիսկոպոս— Տանուտէրն, զոր Խորենացին՝ «արժ-

*կոպոս Բասենոյ, Բասու եպիսկոպոս Տարուբերանոյ, Եւրեմիա եպիսկոպոս Մարդաստանի, Եւղալ եպիսկոպոս*

կեացի փառամոլ երէց» կը կոչէ. սա գնացեր էր ընդ նախարարս յարքունիս Վռամայ, չարախօսել «աղտեղի բանիւք» զարքայէն Արտաշրէ և զմեծէն Սահակայ. և ի կենդանութեան իսկ հայրապետիս կաթողիկոս կարգուեր էր յարքայից արքայէն (428ին). տարի մը այդ պաշտօնը վարելէ յետոյ վռնտուեր էր յաթոռէն նոյն ինքն նախարարաց ձեռօք՝ որք բարձրացուցեր էին զնա յայն բարձր աստիճան: Անուհետև «զիւրոյ գաւառին Բզնունեաց Եպիսկոպոսութիւնն ի Պարսից արքայէն եգիտ ունել ազգաւ», այսինքն իբրև սեփականութիւն իւր ցեղին, քանզի Բզնունեաց նախարարութիւնը ջնջուած էր հարիւր տարուընէ ի վեր: Շմուելի ժամանակն ալ աւելի դեր մը խաղաց (432–439), ու Մեսրոպայ մահուընէն ետքը (441ին) վերստին կաթողիկոս անուանեցաւ ի Յազկերտէ, ու այդ պաշտօնը անուանապէս վեց տարի վարելէ յետոյ, — քանզի Վռամ հաստատեր էր որ Եկեղեցւոյ ընտրեալն իշխանութիւն ունենայ վարդապետութեան, բայց զայնս միայն կարենայ ձեռնադրել՝ որոց համար հաւանի պարսից դրան կարգած կաթողիկոսն, — թողուց զայն Յովսեփայ, որ արդեամբք հայրապետ էր Հայոց: — Բզնունեաց մայրաքաղաքն էր Խլաթ:

Տայք՝ նահանգ յարևմուտս Սողանլու լերանց, ոռոգի Օլթի–սուի և Ճորոխի ջրերով. Տայք և Տարօն սեփականութիւն էին Մամիկոնեանց:

Բասեան, որ ի հնումն ոստէս և այժմ բաժանի ի Վերին և ի Ստորին, է հովիտ Երասխայ՝ սկսեալ ի Տէվէ–Պոյնու լերանց ցկաղզուան: Որդ կամ Որդորու՝ երբեմն ոստան Որդունեաց (Վերին Բասեան) ի հիւսիսոյ Հասան Գալայի, եպիսկոպոսանիստ էր Խոսրովայ երկրորդէն ի վեր: Կարելի ալ է սակայն՝ որ ի հինգերորդ դարու Բասենոյ եպիսկոպոսին աթոռը ի Մանծկերտ (Ստորին Բասեան) եղած ըլլայ, այս վերջնոյս աւելի նոր ըլլալուն ապացոյց մի չունինք: — ԹԱԴԻԿ՝ Մեսրոպայ մահուանէն ետքը անոր տեղապահութեան պաշտօնը վարեր էր:

Տարուբերան է նահանգ՝ որ Վանայ ծովուն հիւսիսային և արևմտեան կողմերը կը պարունակէր և կը ձգէր ցՏէրսիմ լեառն, յորում են Տարօն, Հարք, Բզնունիք, Ապահունիք, Աղիովիտ, և այլն: Բայց որովհետև Տարօն՝ Բզնունիք՝ Ապահունիք և Մարդաղի առանձին եպիսկոպոսներ ունէին, Տարուբերանի եպիսկոպոսութիւնը մնացած գաւառները միայն ունէր:

Մարդաստան՝ գաւառ Վասպուրականի, զոր Ալիշան Վ. այժմեան Սեհմանապատն համարէ, ի հարաւոյ Արտազու: Արծրունեաց եպիսկոպոսը Մուշէ՝ աղբակացի էր. Եղիշէ զնա «երէց» ալ կ'անուանէ, նոյնպէս և փարպեցին. (Տես Յ. Ը, 19, ծն. 3): Պէտք չէ շփոթել զնա ընդ Մուշէի տարօնեցւոյ՝ որ աշակերտ էր Մեսրոպայ և ընկերացեր էր իւր վարդապետին ի Գողթան, յորժամ սա յետ հնարելոյ զնշանագիրս, երկրորդ անգամ գնաց անդ ուսուցանել զբնակիչս գաւառին. (Կորիւն, 14): Արծրունիք Վասպուրական նահանգին մեծի մասին տէրն էին:

Ռշտունիք՝ Վանայ ծովուն արևելեան հարաւային կողմը:

Մոկք՝ լեռնոտ գաւառ Կորճայք, ի հարաւոյ ծովակին Վանայ:

Վանանդ՝ այժմեան Կարսի գաւառը՝ Սողանլու ի արևելեան կողերով:

Ամատունեաց բնակութեան տեղին էր Արագածոտն գաւառը:

Անձևացիք՝ գաւառ Վասպուրականի ի

Մարդաղւոյ, Անանիա եպիսկոպոս Սիւնեաց, Մուշէ եպիսկոպոս Արծրունեաց, Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց, Բասիլ եպիսկոպոս Մոկաց, Գադ եպիսկոպոս Վանանդայ, Եղիշայ եպիսկոպոս Ամատունեաց, Եզրայր եպիսկոպոս Անձեւացւոց, Երեմիաս եպիսկոպոս Ապահունեաց :

27. Այս ամենայն եպիսկոպոսք և բազում քորեպիսկոպոսք[1] և պատուական երիցունք[2] ի տեղեաց տեղեաց հանդերձ սուրբ ուխտիւ եկեղեցւոյ միաբանք և միահաւանք, միահամուռ ժողովեալք ի Թագաւորանիստ

հարաւոյ խօշաւ գետոյ, այժմեան Քարպաճ վիճակ. յորում անուանի և հին ուխտատեղիք, Հայոց վանք: Ազգականութեան անուններ, որպէս Եզրայր, Դատրիկ, Թոռնիկ, իբրև յատուկ անուն կը գործածուէին ի հայս, ինչպէս որ սովոր էր ալ Պարսից և Սեմականաց մէջ: — Յեպիսկոպոսացդ՝ Յովսէփ, Մուշէ, Եզնիկ, Թաթիկ, Երեմիաներէն մին՝ գիտեմք որ յառաջին աշակերտացն էին Սահակայ և Մեսրոպայ:

1. Քորեպիսկոպոս է գաւառատեսուչ, այցելու գիւղից և գաւառաց. եթէ եպիսկոպոս իցէ և եթէ լոկ քահանայ՝ փոխանակ առաջնորդի. Chorepiscopus, regionis inspector. Քրիստոնէութեան առջի դարերուն մէջ երբ մեծամեծ քաղաքներէ հեռի գիւղից և աւանից մէջ նոր ժողով մը հաւատացելոց կազմուէր, այն տեղի քահանայն քորեպիսկոպոս անունը կ'առնէր, որ յունարէն ըսել է «գիւղական եպիսկոպոս»: Սա բազմամարդ քաղաքաց եպիսկոպոսին նման՝ անկախ տեսուչ էր իր վիճակին հաւատացելոց:

Բայց երբ քրիստոնէութեան տարածուելովն և ընդհանրանալովն՝ եպիսկոպական թեմը հաստատուեցաւ, որ այլ և այլ ժողովրդապետութիւնս (paroisses) և ամբողջ գաւառս կը պարունակէր, եպիսկոպոսին իշխանութիւնը ամրացնել և քորեպիսկոպոսինը սեղմել հարկ եղաւ: Վասն որոյ 314էն ի վեր այլ և այլ ժողովոց մէջ հետզհետէ որոշուեր էր՝ որ գիւղական եպիսկոպոսունք քահանայ և սարկաւագ չկարենան ձեռնադրել. վերջապէս Լաւոդիկէի ժողովը սահմաներ էր՝ որ այնուհետև քորեպիսկոպոս չձեռնադրուի բնաւ, և անոնց տեղ περιοδευταί անուամբ նուիրակք կարգուին, որք ի դիմաց եպիսկոպոսին անոր պատկանող վիճակաց այցելութիւն ընեն: Այս պատճառաւ հինգերորդ դարուն մէջ քորեպիսկոպոսութիւն չէր մնացեր յԱրևելս: Գ. Յեղանակին Ը. տնէն այլ յայտ է՝ որ թէպէտ անունդ պահուեր էր ի Հայս, քորեպիսկոպոսք եպիսկոպոսին հրամանին ներքև պաշտօնեայք էին, զորս եպիսկոպոսը կ'անուանէր կամ կ'առաքէր ի տեսչութիւն ուր որ պատշաճ դատէր: Տես և կանոնք Սահակայ ի Սոփերս հյկ. Բ, էջ 71, 82:

2. Երիցանցս փարպեցին յանուանէ յիշէ զՍ. Ղևոնդ, զխորէն ի Մրենեայ, և զԴաւիթ, (տես ծն. 1 յէջ 173), և զպաճէշկեյի եւ զհրեշտակակրօն զՏէրն Ազան՝ վարդապետ Փարպեցւոյ և վանահայր Արծրունեաց և քեռի մեծին Վահանայ Մամիկոնէի: Երէց է քահանայ՝ որ կայ ի պալատան նախարարի, կամ յեպիսկոպոսարանի իբր խորհրդական եպիսկոպոսին՝ որուն փոխանորդ ալ կ'ըլլայ ի բացակայութեան նորա. Presbyter.

քաղաքն յԱրտաշատ, հաւանութեամբ մեծամեծ նախարարացն[1] և ամենայն բազմութեամբ աշխարհին արարին նամակին պատասխանի:

28. Յովսէփ եպիսկոպոս հանդերձ ամենայն միաբանելովքն ի մեծամեծաց մինչև ցփոքունս, Միհրներսեհի մեծի հազարապետի[2] Արեաց և Անարեաց՝ բազում խաղաղասէր մոգք բազմասցի ողջոյն առ քեզ և ամենայն մեծի սպահիդ[3] Արեաց:

1. Թէպէտ Եղիշէ հաւանութեամբ նախարարաց ըսելով կը շարանայ, բայց փարպեցւոյ կը գտնուէին ի ժողովին՝ Տէրն Սիւնեաց Վասակ, Տէրն Արծրունեաց Ներշապուհ, Վրէն Մաղխազ, Տէրն Մամիկոնէից և սպարապետն Հայոց Վարդան, Տէրն Վահեւունեաց Գիւտ, Տէրն Մոկաց Արտակ, Տէրն Անձեւացեաց Շմաւոն, Տէրն Ապահունեաց Մանէճ, Տէրն Վանանդեայ Առաւան, Տէրն Արշարունեաց Արշաւիր, Տէրն Ամատունեաց Վահան, Տէրն Գնունեաց Ատոմ, Տէրն Պալունեաց Վարազշապուհ, Տէրն Աշոցայ Հրահատ, Տէրն Դիմաքսենից Համայեակ, Տէրն Աբեղենից Գադրիկ, Տէրն Առաւեղենից Փափագ, Վրէն Ձիւնական: — Ի սոցանէ Վասակ, Գիւտ, Մանէճ, Վարազշապուհ՝ յետոյ քրիստոնէութեան դէմ զէնք վերուցին: Իսկ Վասակայ նիզակակիցներէն՝ Արտաշատայ ժողովոյն ներկայ գտնուիլ չուզեցին կամ չկրցան՝ Տէրն Ռշտունեաց Արտակ, Տէրն Խորխոռունեաց Գադիշոյ, Տէրն Բագրատունեաց Տիրոց, Տէրն Գաբեղենից Արտէն, Իշխանն Ակէոյ Ընջուղ, Տէրն Ուրծայ Ներսեհ: Ուրեմն ներկայ էին յԱրտաշատ 18 եպիսկոպոսունք. 18 ալ Տանուտէրք, բազում սեպուհք, քորեպիսկոպոսք, երէցք և աւագ վանականք:

2. Հեսիքիոս կ'ըսէ՝ թէ Պարսից արքունեաց մէջ պաշտօնեայք կային որոց αζαραπατεῖς անունը կը տրուէր. Կսենոփոն ալ ἀζαβαρίτης կը դնէ: Բայց ընդհանրապէս Յոյն և Լատին Մատենագիրք սորա թարգմանութիւնը՝ Χιλίαρχος, chiliarque կը գործածեն, որ նշանակէ Գլուխ Հազարաց: Թէպէտ այդ անունդ զինուորական աստիճան մը կը ցուցանէ, բայց մեր պատմիչներէ յայտնի է՝ թէ քաղաքական աւագագոյն պաշտօնն էր, և հազարապետը ամենայն իշխանութիւն կը վարէր յանուն արքային. Chiliarchum qui secundum imperii gradum tenebat. Կոռն. Նեպոս, Կոնոն, գլ. Գ: Թապարի ալ կ'ըսէ՝ թէ Միհրներսեհի Պարսից մէջ ամենէն աւելի հանրածանօթ պատուանունը հազարպետ էր (անշուշտ գրչագրի սխալ մի փոխան հազարապետի), զոր կը մեկնէ իբրև բազմաթիւ ծառայից Տէր:

3. Պրսկ. Սիբահ سپاه, բանակ, զօրք, հեծելազօրք. սիբահսալար, սիբահպետ سپهبد սպասալար, սպայապետ կամ սպարապետ: — Սեպուհ ալ նոյն բառէն եկած է. պարսկերէն սիբահի سپاهی է զօրական, ձիաւոր, ասպետ, տանուտէր քաղաքի կամ աւանի: Բայց սեպուհ անունդ հայերէն՝ իշխանէն զատ տանուտէրական ցեղէ պայազատաց կը տրուէր: Այդ միևնոյն արմատոյ այլևայլ ձևերդ Բահլաւի ասօար կամ ասվար «ձիաւոր» բառէն եկած են, որ պարսկերէնի մէջ ասվար اسوار կամ սիւվար سوار և Հայոց մէջ ասպարապետ կամ սպարապետ եղաւ: Ինչ որ ի սկզբան միայն

Մարդպետաց, Անանիա եպիսկոպոս Սիւնեաց, Մուշէ եպիսկոպոս Արծրունեաց, Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց, Բասիլ եպիսկոպոս Մոկաց, Գադ եպիսկոպոս Վանանդայ, Եղիշայ եպիսկոպոս Ամատունեաց, Եզրայր եպիսկոպոս Անձեւացեաց, Երեմիա եպիսկոպոս Ապահունեաց:

27. Այս ամենայն եպիսկոպոսք և բազում քորեպիսկոպոսք[1] և պատուական երիցունք[2] ի տեղեաց տեղեաց հանդերձ սուրբ ուխտիւ եկեղեցւոյ միաբանք և միահաւանք, միահամուռ ժողովեալք ի Թագաւորանիստ

հարուոյ Խօշաղ գետոյ, այժմեան Քարպած վիճակ. յորում անուանի և հին ուխտատեղիք, Հայոց վանք: Ազգականութեան անուններ, որպէս Եղբայր, Դատրիկ, Թոռնիկ, իբրև յատուկ անուն կը գործածուէին ի հայս, ինչպէս որ սովոր էր ալ Պարսից և Սեմականաց մէջ: — Ցեպիսկոպոսացդ՝ Յովսէփ, Մուշէ, Եղնիկ, Թաթիկ, Երեմիաներէն մին՝ գիտեմք որ յառաջին աշակերտացն էին Սահակայ և Մեսրոպայ:

1. Քորեպիսկոպոս է գաւառատեսուչ, այցելու գիւղից և գաւառաց. եթէ եպիսկոպոս իցէ և եթէ լոկ քահանայ՝ փոխանակ առաջնորդի. Chorepiscopus, regionis inspector. Քրիստոնէութեան առջի դարերուն մէջ երբ մեծամեծ քաղաքներէ հեռի գիւղից և աւանից մէջ նոր ժողով մը հաւատացելոց կազմուէր, այն տեղի քահանայն քորեպիսկոպոս անունը կ'առնէր, որ յունարէն ըսել է «գիւղական եպիսկոպոս»: Սա բազմամարդ քաղաքաց եպիսկոպոսին նման՝ անկախ տեսուչ էր իր վիճակին հաւատացելոց:

Բայց երբ քրիստոնէութեան տարածուելովն և ընդհանրանալովն՝ եպիսկոպոսական Թեմը հաստատուեցաւ, որ այլ և այլ ժողովրդապետութիւնս (paroisses) և ամբողջ գաւառս կը պարունակէր, եպիսկոպոսին իշխանութիւնը ամբարձնել և քորեպիսկոպոսինը սեղմել հարկ եղաւ: Վասն որոյ 314էն ի վեր այլ և այլ ժողովոց մէջ հետզհետէ որոշուեր էր՝ որ գիւղական եպիսկոպոսունք քահանայ և սարկաւագ չկարենան ձեռնադրել. վերջապէս Լաւոդիկէի ժողովը սահմաներ էր՝ որ այնուհետև քորեպիսկոպոս չձեռնադրուի բնաւ, և անոնց տեղ περιοδευταί անուամբ նուիրակք կարգուին, որք ի դիմաց եպիսկոպոսին անոր պատկանող վիճակաց այցելութիւն ընեն: Այս պատճառաւ հինգերորդ դարուն մէջ քորեպիսկոպոսութիւն չէր մնացեր յԱրեւելս: Գ. Ցեղանակին Ը. տնէն այլ յայտ է՝ որ թէպէտ անունք պահուեր էր ի Հայս, քորեպիսկոպոսք եպիսկոպոսին հրամանին ներքև պաշտօնեայք էին, զորս եպիսկոպոսը կ'անուանէր կամ կ'առաքէր ի տեսչութիւն ուր որ պատշաճ դատէր: Տես և կանոնք Սահակայ ի Սոփերս հյկ. Բ, էջ 71, 82:

2. Յերիցանցս փարպեցին յանուանէ յիշէ զՍ. Ղեւոնդ, զԽորէն ի Մրենեայ, և զԴաւիթ, (տես ծն. 1 յէջ 173), և զաքանչելին եւ զհրեշտակակրօն զՏէրն Աղան՝ վարդապետ փարպեցւոյ և վանահայր Արծրունեաց և քեռի մեծին Վահանայ Մամիկոնէի: Երէց է քահանայ՝ որ կայ ի պալատան նախարարի, կամ յեպիսկոպոսարանի իբր խորհրդական եպիսկոպոսին՝ որուն փոխանորդ ալ կ'ըլլայ ի բացակայութեան նորա. Presbyter.

քաղաքն յԱրտաշատ, հաւանութեամբ մեծամեծ նախարարացն[1] և ամենայն բազմութեամբ աշխարհին արարին նամակին պատասխանի:

28. Յովսէփ եպիսկոպոս հանդերձ ամենայն միաբանելովքս ի մեծամեծաց մինչև ցփոքունս, Միհրներսեհի մեծի հազարապետիդ[2] Արեաց և Անարեաց՝ բազում խաղաղասէր մտօք բազմասցի ողջոյն առ քեզ և ամենայն մեծի սպահիդ[3] Արեաց:

1. Թէպէտ Եղիշէ հատուածաբար նախարար, ըսելով կը շատանայ, բայց փարպեցիս կը գտնուէին ի ժողովին՝ Տէրն Սիւնեաց Վասակ, Տէրն Արծրունեաց Ներշապուհ, Վրէն Մաղխազ, Տէրն Մամիկոնէից և սպարապետն Հայոց Վարդան, Տէրն Վահեւունեաց Գիւտ, Տէրն Մոկաց Արտակ, Տէրն Անձեւացեաց Շմաւոն, Տէրն Ապահունեաց Մանէճ, Տէրն Վանանդեայ Առաւան, Տէրն Արշարունեաց Արշաւիր, Տէրն Ամատունեաց Վահան, Տէրն Գնունեաց Ատոմ, Տէրն Պալունեաց Վարազշապուհ, Տէրն Աշոցայ Հրահատ, Տէրն Դիմաքսենից Հմայեակ, Տէրն Արեղենից Գադրիկ, Տէրն Առաւեղենից Փափագ, Վրէն Ջիւնական։ — Ի սոցանէ Վասակ, Գիւտ, Մանէճ, Վարազշապուհ՝ յետոյ քրիստոնէութեան դէմ զէնք վերուցին։ Իսկ Վասակայ նիզակակիցներէն՝ Արտաշատայ ժողովոյն ներկայ գտնուիլ չուզեցին կամ չկրցան՝ Տէրն Ռշտունեաց Արտակ, Տէրն Խորխոռունեաց Գադիշոյ, Տէրն Բագրատունեաց Տիրոց, Տէրն Գաբեղենից Արտէն, Իշխանն Ակէոյ Ընջուղ, Տէրն Ուրծայ Ներսեհ։ Ուրեմն ներկայ էին յԱրտաշատ 18 եպիսկոպոսունք. 18 ալ տանուտերք, բազում սեպուհք, քորեպիսկոպոսք, երէցք և աւագ վանականք։

2. Հեսիքիոս կ'ըսէ՝ թէ Պարսից արքունեաց մէջ պաշտօնեայք կային որոց αζαραπατεῖς անունը կը տրուէր. կամ [illegible] ալ ἀζαβαρίτης կը գնէ։ Բայց ընդհանրապէս Յոյն և Լատին Մատենագիրք սորա թարգմանութիւնը՝ Χιλιαρχός, chiliarque կը գործածեն, որ նշանակէ Գլուխ Հազարաց։ Թէպէտ այդ անունը զինուորական աստիճան մը կը ցուցանէ, բայց մեր պատմիչներէ յայտնի է՝ թէ քաղաքական աւագագոյն պաշտօնն էր, և հազարապետը ամենայն իշխանութիւն կը վարէր յանուն արքային. Chiliarchum qui secundum imperii gradum tenebat. Կոռն. Նեպոս, Կոնոն, գլ. Գ։ Թապարի ալ կ'ըսէ՝ թէ Միհրներսեհի Պարսից մէջ ամենէն աւելի հանրածանօթ պատուանունը հազարպետ էր (անշուշտ գրչագրի սխալ մի փոխան հազարապետի), զոր կը մեկնէ իբրև բազմաթիւ ծառայից Տէր։

3. Պարս. Սիպահ سپاه, բանակ, զօրք, հեծելազօրք. սիպահսալար, սիպահպետ سپهبد սպասալար, սպայապետ կամ սպարապետ։ — Սեպուհ ալ նոյն բառէն եկած է. պարսկերէն սիպահի سپاهی է զօրական, ձիաւոր, սպետ, տանուտէր քաղաքի կամ աւանի։ Բայց սեպուհ անունը հայերէն՝ իշխանէն վար տանուտէրական ցեղէ պայազատաց կը տրուէր։ Այդ միևնոյն արմատոյ այլևայլ ձևերը Բահլաւի ասօպար կամ ասվար «ձիաւոր» բառէն եկած են, որ պարսկերէնի մէջ ասվար اسوار կամ սըւվար سوار և Հայոց մէջ ասպարապետ կամ սպարապետ եղաւ։ Ինչ որ ի սկզբան միայն

29. Ի Նախնեաց ունիմք ավրութիւն աստուածատուր պատուիրանաւ՝ աղօթս առնել ի վերայ կենաց թագաւորի, և անձանձրոյթ խնդրել յԱստուծոյ վասն երկայն ժամանակաց գորա, զի խաղաղութեամբ վարեսցէ զտիեզերական իշխանութիւնդ, զոր աւանդեալ է զմա յԱստուծոյ. զի ի գորա յերկար խաղաղութեանն և մեք առողջութեամբ և աստուածպաշտութեամբ կատարեսցուք զկեանս մեր:

30. Վասն Նամակին, որ քո ի մեր աշխարհս առաքեալ էր, յառաջ ժամանակաւ մի ոմն ի Մոգպետաց, որ կատարելագոյն էր ի գենիդ ձերում, և դուք առաւել քան զընութիւն մարդկան ի վեր համարէիք զնա, հաւատաց նա յԱստուած կենդանի յարարիչն երկնի և երկրի, և բան առ բան եղյծ և խմացոյց ձեզ զօրէնս ձեր: Եւ երբև ոչ կարացին բանիւ զդէմ ունել Նորա, քարկոծեալ մեռաւ յՈրմզդէ արքայէ[1]: Եւ եթէ հաւատարիմ համարիցիս զմեր բանս լսել, ի բաղում տեղիս այդրէն յաշխարհիդ ձերում գտանիցին գիրք Նորա, ընթերցիր, և անտի տեղեկանաս:

31. Այլ վասն օրինացս մերոց, ոչ ինչ աներևոյթ են, և ոչ յանկեան ուրեք աշխարհիս քարոզին. այլ համատարած ընդ ամենայն երկիր, ընդ ծով և ընդ ցամաք և ընդ կղզիս. ոչ միայն ընդ արևմուտս, այլ և ընդ արևելս, այլ և ընդ հիւսիս և ընդ հարաւ և ի միջոցս[2] լի է հոծութեամբ: Ոչ ի մարդ ապաստան[3], եթէ վերակացուաւ տարածեսցի ընդ աշխարհս, այլ ինքն յինքնէ ունի զհաստատութիւն: Ոչ առ այլովք վատթարօքն վեհ երևի, այլ ի վերուստ յերկնուստ ունի զանուստ օրէնադրութիւնն. ոչ միջնորդաւ, զի մի է Աստուած, և

« հեծեալ » կը նշանակէր, վերջերը աւելի ընդարձակ առումը ամենայն տեսակ զօրք կ'իմացնէր:

1. Երկու Որմիզդք կան Յազկերտ Երկրորդէ յառաջ. մին յաջորդեց Շապուհ Առաջնոյ՝ 271ին և թագաւորեց մէկ տարի միայն: Որմիզդ երկրորդ՝ որ Երկայնակեաց Շապուհ Երկրորդի հայրն է, թագաւորեց 301-309: Բայց թէ ո՞վ էր այդ մոգպետը՝ որոյ գրութիւնքն մնացեր էին 450ին, օտար պատմագիրք չեն ինչ հաւաստել:

2. Հին ատենը իւրաքանչիւր ազգ զիւր բնակած աշխարհը կեդրոն կը համարէր երկրի:

3. Բազանեա՝ ավաստամ. արդի պարս. اوستام կամ اوستان զոր այժմ հնչեն օստամ, օստան, ավա + ստա:

չէք այլ ոք բայց ի նմանէ, ոչ երիցագոյն և ոչ կրտսերագոյն: Ոչ սկիզբն առեալ յումեքէ լինել Աստուած, այլ ինքն ինքեամբ մշտնջենաւոր. ոչ ի տեղւոջ ուրեք, այլ ինքն ինքեան տեղի. և ոչ ի ժամանակի իմիք, այլ ժամանակք ի նմանէ գոյացան. ոչ միայն քան զերկինս երիցագոյն, այլ և քան զկարծիս մտաց մարդկան և հրեշտակաց: Ոչ ձևանայ ի տեսիլ տարրեղէն, և ոչ անկանի ընդ տեսլեամբ ական. և ոչ միայն ձեռին չզննի, այլ և ոչ ընդ միտս ուրուք հարկանի, ոչ միայն ընդ մարմնականաց, այլ և ոչ ընդ անմարմին հրեշտակաց. բայց եթէ ինքն կամի՝ իւրոց արժանաւորացն մտաց իմանի, այլ ոչ աչաց տեսանի. և մտաց՝ ոչ երկրաւորացս, այլ որ յԱստուածն են հաստատեալ ճշմարտիւ:

32. Եւ անուն նորա Արարիչ երկնի և երկրի. իսկ յառաջ քան զերկին և զերկիր, որպէս ինքնագոյ՝ ինքնանուն է: Ինքն անժամանակ է, իսկ արարածոյս յորժամ՝ կամեցաւ սկիզբն արար լինելոյ, ոչ յընչէ, այլ յոչընչէ. զի ինչ՝ նա միայն է, և այլս ամենայն ի նմանէ ընչացաւ: Ոչ եթէ իբրև յետոյ իմացաւ և արար, այլ մինչ չեւ արարեալ էր նորա՝ ի կանուխ գիտութեանն իւրում տեսանէր զարարածս. որպէս և այժմ մինչ չեւ է գործեալ մարդոյ բարի ինչ կամ չար, Աստուծոյ յայտնի են անգործք մարդոյն: Սոյնպէս և յայնժամ, մինչ չև էր արարեալ. ոչ խառն ի խուռն ինչ ճանաչէր զանեղսն, այլ կարգեալ և յարմարեալ կային առաջի նորա իւրաքանչիւր մտացն տեսակքն. իսկ մարդկան և հրեշտակաց՝ և տեսակքն և որ ի տեսակին լինելոց էին:

33. Եւ քանզի արարող զօրութիւն է, ոչ կարէր խափանել զնորա բարերարութիւնն մեր չարութիւնս. որպէս և եղև իսկ. և ունիմք դատաւոր զաջն արարչին: Ձեռք, որ զերկինս և զերկիր հաստատեցին, նոյնք և տախտակս քարեղէնս փորագրեցին և ետուն մեզ զդպրութիւն՝ որ ունի զօրէնս խաղաղականս և փրկականս. զի գիտասցուք զմի Աստուած արարիչ երևելեաց և աներևութից. ոչ այլ և այլ, իբրև թէ մին բարի և մին չար, այլ մի և նոյն և համակ բարի:

34. Բայց եթէ թուիցի քեզ չար ինչ գոլ յարարածս Աստուծոյ, առ համարձակ. զի թերևս ուսցիս զճշմա-

րեան բարի: Զդեռ չար տայցեր. զոր և զեւք բարի, զոր և զու.ք և մեք Հրեշտակս[1] անուանեմք. եթէ կամին՝ և զեւք բարի լինին, և եթէ կամին՝ և Հրեշտակք չար լինին: Այդ և ի մարդիկ երևի, և տաւել ի միոյ Հօր որդիս. է որ Հնազանդ և Հպատակ է Հօրն, և է որ չարագոյն քան զատանայ: Նա և ինքն իսկ մարդն առանձինն յերկուս բաժանեալ տեսանի, երբեմն չար և երբեմն բարի. և որ բարին էր՝ նոյն և չարացաւ, դէպ եղև՝ զի դարձեալ անդրէն ի բարի շրջեցաւ, և բնութիւն մի է:

35. Բայց այն որ ասեն, եթէ վասն թզոյ միոյ մահ արար Աստուած, փառթարագոյն[2] է պատառ մի մազաղաթ քան զթուզ. ապա եթէ բան թագաւորին նկարի ի Նմա, ո պատառէ զնա՝ մահու ընդունի զպատուհաս. իսկ արդ չար արժան է ասել թագաւորին. քաւ, եւ ոչ ասեմ: այլ խրատ ի գործ արկեալ զայլս ուսուցանեմ: Յայնժամ էր Աստուած նախանձոտ, թէ չէր պատուիրեալ չուտել ի ծառոյ անտի. ապա եթէ յառաջագոյն զգուշացաւ, զգութ բնական սիրոյն իւրոյ յայտնեաց Նմա: իսկ արհամարհելով մարդն՝ ընկալաւ զպատիժս մահուն:

36. Բայց այն զոր ասացեր, եթէ Աստուած ի կնոջէ ծնաւ, յայդմ չէր արժան քեզ խորշել և փախչել. զի աՀաւասիկ Արհմն և Որմիզդ ի Հօրէ ծնան և ոչ ի մօրէ. որում եթէ քաջ միտ դնես, և ոչ դու յանձն առնուս: Եւ միւս և այլ ծաղրագոյն քան զայդ. Միհր աստուած ի կնոջէ ծնանի, եթէ ոք ընդ իւրում ծնողին անկցի[3]:

1. Պրոկ. ֆիրիշդա فرشته Տես Ֆրավարտին Եշդ, յէջ 138:

2. Արդի պարկ. պատրար՝ է աւելի վառ, յունի. ուստի արդէն բաղդատական ըլլալուն վառթարագոյն աւելորդ գրութիւն մի է. բայց թէ Հայ Հեղինակաց և թէ բաղանտ մատենից մէջ վառթար իբր սոսկ ածական գործածուած է: Վասն որոյ Միջնադարեան Պարսիկք եւ առէին՝ վառ, վարթար, վարթարիմ, որ է վառթարագոյն. է և վատարանը մեանել, անցանել, վատանալ. վատոր՝ վատաւրիր:

3. Արդի Համօրէն տպագիրքն դնեն. «Միհր աստուած ի կնոջէ ծնաւ, եթէ ոք ընդ իւրում ծնողին անկցի». որ կը մեկնուի՝ երե ճերեկի է որ մէկը ընդ իւրում ծնողին անկցի: Պ. Լանկլուա կը թարգմանէ. Comme si quelqu'un pouvait avoir commerce avec sa propre mère. Այդ մեկնութեամբ ծնողդ Ջրուանը կ'ըլլայ, ընդ որում մտանելով

37. *Այլ տակաւին մի եթէ ի բաց թողացուցանէիր զփքումն տէրութեանդ, և ընկերաբար գայիր ի պայ-*

Որմիզդ՝ ունեցած էր զարեգակն, ինչպէս որ կը գրուցէ Եզնիկ (Տես ի վերայ 161, և Եզնիկ էջ 138-142)։ Բայց մեր կարծեօք այդ իմաստ չկրնար տրուիլ սոսկ թէականով կցեալ պարբերութեանդ։ Մնաց որ ծնունդն ի կնոջէ է. Զրուանայ կարելի էր հայր կամ առ առաւելն մայր գրուցուիլ՝ իբր ծնող Որմզդայ և Արհմենի. բայց կին անունը չէր կրնար պատշաճիլ նմա. և երբեք չէ նկատուած իբրև իգական էակ. մանաւանդ որ իբրև արու և հայր կը նկատուի միշտ, ինչպէս և ստանոր։ Արդ հօր մը յղութեամբ զաւակի ծնունդ տալը որքան ալ ծաղրելի է, Եպիսկոպոսունք աւելի ծաղրելի վարդապետութիւն մը ի մէջ բերած ատեննին չէին կրնար ըսել՝ թէ Միհր աստուած ի կնոջէ ծնաւ, այս ինքն ի Զրուանայ՝ որ էր կին և ոչ այր։

Կոստանդնուպոլսոյ 1823ի տպագիրը գնէ. «Միհր աստուած ի կնոջէ ծնանի, եթէ ոք ընդ կուրում ծնողին անկցի». որ քերականաբար ուղիղ և հասկանալի է. և ասել է՝ թէ Միհր աստուած որ ըստ մազդեզն դենի որդի է Որմզդայ, միջնորդ ընդ հայրն և ընդ մարդիկ, և բարեկամ՝ որ անդուլ և անքուն հսկէ վասն երջանկութեան արարածոց, և որ ամենուրեք գտանի, ամէն մայրենի առականոք վերաբին կը ծնանի կամ յաշխարհ կու գայ և մարդկան ընակակից և ազգակից կ'ըլլայ։ Կարելի չէ աւելի վսեմ գաղափար մը աւելի քաղցրելի պղծութեամբ խանգարել։ Զարմանայ ոք սակայն՝ թէ զիա՞րդ պարսիկք այդքան հակառակ տարերոք կազմեցին այդ վարդապետութիւնդ. վասն զի արեանատու մերձաւորաց—մինչև անգամ մօր և որդւոյ, հօր և դստեր, եղբօր և քեռ, հաւու և թոռին—զուգութիւնք ամենաբարի՝ հաճելի և սուրբ համարեալ էին ի մազդեզանց, և այդպիսի խնամութեանց արգելք ըլլալը աւելի մեծ մեղք էր քան զվնասմայ կրակն սպաննել։ Տես Մայնո-խրատ, Գլ. ԼԶ։

Եզնիկ իւր «Եղծ Աղանդոց» մէջ կ'ակնարկէ զվարդապետութիւնդ. (տես էջ 161)։ Դիւրին է տարբեր փաստերով ալ հաստատել մեր ընտրած ընթերցուածը։

Նախ ուշ դնենք, որ Եպիսկոպոսունք Միհրներսեհի կ'ըսեն՝ թէ Աստուծոյ (Քրիստոսի) ի կնոջէ՝ այս է ի Մարեմայ ծնանելուն պէտք չէ զարմանայ, քանի որ Պարսիկք ալ Միհր աստուծոյ համար զնոյն ասեն։ Երկրորդ՝ երբ նիւթական արարածոց համար Աստուծոյ տարած հոգը և խնամքը բացատրելէ ետքը, առ մարդս ունեցած սիրոյն, այսինքն Քրիստոսի յաշխարհ գալուն և մարդկան հետ ապրելուն և նոցա համար չարչարուելուն կ'ուզեն պատրաստել զՄիհրներսեհ, Պարսից մեծ իմաստնոց միոյն խօսքը ի մէջ կը բերեն՝ թէ «Միհրն աստուած մայրածին է ի մարդկանէ և թագաւոր աստուածազաւակ»։ Մայրածին՝ չէ սոսկ «կանանցածին», այլ ի մայրենի առականաց ծնեալ. և աստուածազաւակ՝ քանզի ըստ Աւեստայի՝ Միհր աստուած Որմզդայ ըստեղծած զաւակն էր, ինչպէս ի Հայս՝ «Որդի Արամազդայ»։ Ասելն ընդ Պ. Լանկլուայի. Le Dieu Mihr était né d'une mère *parmi les hommes*, թարգմանութիւն չըլլար։

Չերևիր և՛ որ Միհրայ մարդեղութեան վարդապետութիւնդ քրիստոնէութեան ժամանակ հնարուած ըլլայ Պարսից մէջ։ «Պարսից մեծամեծները, կ'ըսէ Փիլոն Եբրայեցին (որ Քրիստոսէ 20-30 տարի յառաջ ծնած էր, և իբր իւր ազգակցաց կողմանէ դեսպան կ'երթար առ Կալիգուլա կայսրն Հռովմայ, 40ին եօթանասնամենի էր), մոգերնուն հետ կ'ա-

քար, գիտեմ՝ զի իբրև այլովք ամենայնիւ յոյժ իմաստուն ես[1], և վասն ծննդեան Տեառն մերոյ ի սուրբ կուսէն՝ ոչ անկարանութիւն համարէիր, այլ սաստիկ քան զարարչութիւն յոչընչէ զաշխարհս՝ մեծագոյն զվերջին փրկութիւնն իմանայիր, ազատութեան մարդոյն զյանցաւորութիւնն գնէիր, և բարերարութեանն Աստուծոյ՝ զազատութիւնն ի ծառայութենէ:

38. Քանզի յորժամ լսես՝ եթէ յոչընչէ արար Աստուած զամենայն աշխարհս, բանիւ ծնունդ իմաջիր զարարածս: Իսկ քանզի Աստուած որ զայս մեծ մարմին սասնց չարչարանաց ծնաւ, ապաքէն իբրև զհայր զութ ունի ընդ սմա: Զի որ ինքն անապական է, և զարարածս սասնց ապականութեան ծնաւ. Իսկ սա կամօք զլորեալ ապականեցաւ, և անձամբ ես ոչ կարէր կանգնել կալ ի վերայ ոտից: Վասն զի էր ի հողոյ, անձամբ անձին արարեալ՝ անդրէն ի նոյն բնութիւն դարձաւ. Իբրեւ ոչ եթէ յօտար զօրութենէ չարի ինչ ընկալաւ ուրուք զպատիժս պատուհասին, այլ ի յիւրմէ հեղգութենէն չլսել բարերար պատուիրանին, խրատեցաւ ծառայական մահն մահուամբն՝ զոր կրեաց յանձն իւր:

մուտնաեան, և այսպիսի ամուսնութենէ ծնած զաւակները աւելի ազնուատոհմ կը համարին քան զայլ համօրէն մարդիկ. նա մանաւանդ կը մեծարեն զնոսա, որպէս սուրբ, իբրև արժանաւորս վեհագոյն բազաւորական պատուոյ (digne de la plus haute autorité souveraine). Յաղագս Մազդեական օրինաց, Գ։

Մայնօ-Խրատի մէջ խոհական Այրն կը հարցնէ իմաստութեան Ոգւոյն. « Բարի գործոց ո՞րն ամենէն մեծ է և ամենէն լաւն (վեհ) »։ — « Մեծագոյնն ի բարի գործս (քէրպա), կը պատասխանէ Ոգին, Առատաձեռնութիւն (ռատի). երկրորդ՝ ճշմարտախօսութիւն (րաստի) և մօտ ազգականաց խնամութիւնք (քսաեդվոդաթ). երրորդ՝ Նշանակային տօնք (Կահանբար). չորրորդ՝ զհամայն կարգս պաշտամանց կատարել (համա տին եաշթա). հինգերորդ՝ » և այլն։ Գիտելի է՝ թէ ճշմարտախօսութիւնը որ ի Միհր աստուած կ'անձնաւորի, ազգակից ամուսնութեանց հետ ի միասին կը յիշատակի իբրև երկրորդ առաքինութիւն։ Տես և զՄիհր-Եաշդ յէջ 136–138։

1. Այս գովասանքս շողոքորթութեան համար ձրիապէս տրուած չեն. Թագաւորի կ'ըսէ՝ թէ Միհրներսեհի կարգէ դուրս իմաստուն ըլլալուն համար զնա « հերպետան հերպետ » կոչեցին. վասն զի հերպետ խելացի մարդոց կը զրուցուի. հատ. Բ, 194։ — Հերպետ է հմուտ ի գիրս Օրինաց։ Կրճատեալ է սա ի հնագոյն աէրպատաիդի (բառ Պ. Հարլէզի՝ աէրպա՝ doctrine + Բաիդի՝ maître, պետ) անուանէ. և սոցա լծորդ կը թուին մեզ մեր « վարպետ և վարդապետ » բառերը։ — Պայքար, պրսկ. փոյկար بيكار մարտ, պատերազմ, կռիւ։

39. *Արդ եթէ զմահ չար աստուածն արար, զի՞նչ գոյացութիւն երևի մահու ի միջի. և ոչ ինչ. բայց զբարի Աստուծոյ զարարածն խանգարեաց: Եթէ այդ այդպէս է, նմա և բարի իսկ առնել ոչ մարթի, այլ կիսագործ ապականացու: Եւ որոյ աստուծոյ արարածքն ապականելիք են և եղծանելիք, նմա անեղծ Աստուած չմարթի առնել: Տի՛ օ՛ն անդր թողէք զյիմարութեան զբարբանջմունս: Միոյ աշխարհի երկու դեհապետք*[1] *ոչ լինին, և ոչ միոյ արարածոյ երկու աստուածք: Եթէ ժպրհեսցին և լինիցին երկու թագաւորք միոյ աշխարհի, աշխարհն եղծանի և թագաւորութիւնքն խանգարին:*

40. *Աշխարհս նիւթեղէն է, և նիւթքս որիչ որիչ են և ընդ միմեանց հակառակ. մի է արարիչ հակառակորդացս, որ ածէ զսոսա ի սիրելութիւն հաւանութեամբ. որպէս մարեալ կակղէ զջերմութիւն հրոյն՝ օդոյս հովութեամբ*[2] *և զպաղասնամ բրտութիւն օդոյն՝ հրոյն եռանդմամբ, այնպէս և զմանրամաղ փոշիացեալ հողս՝ ջրոյն ապայատակ արամացեալ հողոյն կափմամբ:*

1. Դեհապետ. տէհ دِه կամ տէհա [illegible] պարսկ. նշանակէ քաղաք, գիւղ. ուստի տէհգան կամ տէհքան՝ գիւղապետ, կալուածատէր: Բայց Աւեստայի մէջ տանհու, որոյ կրճատումն է տէհ, նշանակէ «Երկիր, աշխարհ, նահանգ». տանհու-բաիդի՝ «դեհապետ»: Յոհլաւի-Յազդան բառարանին շինուած առանց այդ վերջին բառդեալ բառդ սեղմուեր ու տանհու-բաս եղեր էր, իսկ Յազդան մատեաններից մէջ՝ տանէ վատ, զոր Պիւրնուֆ-Գաթի կը սահմանէ. ինքնակալ իշխան վեհագոյն ջան զայլ իշխանս: Եղիշէ ալ այն իմաստով գործածած է. որովհետև քիչ մը առաջ դեհապետ բառի տեղ թագաւոր անունը կը դնէ: Յաղթած դարձեալ «միոյ իշխանութեան երկու թագաւորք ոչ լինին». Յ. Ը, 61:

2. Թէոդորոսյ ազ. «օդոյս հովութեամբ և զպաղասնամ բրտութիւն օդոյն». այլ ապագիրք՝ «օդոյս հաւանութեամբ, զպաղասնամ բրտութեան օդոյն»: Յազդան ամբարուն՝ որպէս հայերէն «ապաստում» է ածական. և նշանակէ՝ անյարմար, անկարգ, ապօրէն, չար, դժնդակ, և սորա հակառակն ֆրարուն կամ ֆրարում՝ պատուական, բարի, օրինաւոր. առ՛ տառ ու այինի ամբարուն՝ օրէնք և սովորք դժնդակք. վարո՛ւնի ամբարուն՝ անկարգ ցանկութիւն. ամբարում դրէճչէչնի՝ ապառում խօսք, բանք: Ի՛ եւ ամբարունի գոյական՝ անկարգութիւն, անօրէնութիւն (տես Մայնօ-խրատ Glossaire)։ — Ձեռք զայդ խորհրդածութիւնքդ կը գըտնես յԵզնիկ. «Իբրև զկառս իմն լծեալ ի չորից երիվարաց զաշխարհս տեսանեմք, ի ջերմութենէ, ի ցրտութենէ, ի ցամաքութենէ և ի խոնաւութենէ. և զօրութիւն իմն ծածուկ կառավար, որ զչորս կապեցողն ընդ միմեանս ի հաշտութեան և ի հաւանութեան պահեալ նուաճէր». Եզ 17:

41. Զի եթէ միաբանէին տարերքս, գուցէ ոք ի կարծամտաց և Աստուած անապական զսոսա կարծէր. և թողեալ զարարիչն՝ արարածոյս զերկրպագութիւն մատուցանէր. վասն այնորիկ որ արար զսա, զգուշացաւ յառաջագոյն. զի հայեցեալ մարդիկ ի յանդիմանութիւն ապականացու տարերացս, անապական միայն զկառավար որս իմասցին, զմի և ոչ զերկուս. զնոյն արարիչ չորեքկին նիւթոյս[1], յորմ; ամենայնքս ծննդագործին հրամանաւ արարողին իւրեանց: Եւ շրջագայութեամբ՝ չորիւք յեղանակօք կատարեալ գործեն զտարեւոր սպասաւորութիւնն[2]. և չորեքեան հային կամաց ակնարկելոյ արարչին իւրեանց. և անզգայութեամբ լծեալ են ի գործ հարկաւորութեանն՝ չյափշտակելով զկարգ պատույն ի միմեանց :

42. Եւ ահա պարզաբար տացեալ գիտատար լուսաւորութիւն յականջս ամենեցուն: Զի այն որ հուրն է, գոյացութեամբ և զօրութեամբ խառնեալ է յերկին եւս միասունս. իբրև գտանի ջերմութիւնն յոլովագոյն ի քարինս և յերկաթս, և սակաւագոյն յօդ և ի ջուր, և ինքն առանձին ուրեք ոչ երեւի: Իսկ ջրոյն բնութիւն գոյ առանձինն, գոյ և ի խառնուածսն երկուց եւս մասանցն. յոլովագոյն հողաբոյս և սակաւագոյն յօդ և ի հուր: Իսկ օդն թափանցանց է ընդ հուրն և ընդ ջուրն, և ի ձեռն ջրոյն ընդ կերակուրս աճեցականս[3]:

43. Եւ այսպէս խառնեալ են տարերքս այս, և գոյա-

1. Այս է հող, ջուր, օդ, հուր:

2. Մխիթարեանց և Թէոդոսեան տպագիրքն ունին. «Եւ շրջագայութեամբք չորեք յեղանակք կատարեալք՝ գործեն զտարեւոր սպասաւորութիւնն». որ անշուշտ գրչագրի սխալ է. խօսքը չորից տարերց վրայ է և ոչ եղանակաց: Հեղինակը ըսել կ'ուզէ, թէ տարերք շրջագայութեամբ՝ չորից յեղանակաց միջոցաւ կատարեալ գործեն զտարեւոր սպասաւորութիւնն, այս է՝ թէ գարնան ծաղիկ կ'ըլլան, յետոյ տերև՝ պտուղ՝ հող և այլն: Անմիջապէս ետքը դրուած «և չորեքեան» ալ տարերց կը պատկանի: Կոստանդնուպօլսոյ տպագիրը ունի՝ «և շրջագայութեամբ չորիւք յեղանակօք կատարելագործեն զտարեւոր սպասաւորութիւնն»: Մխիթարեանց մէկ գրչագիրն ալ ունէ՝ «չորիւք յեղանակօք»: Այս զանազան ընթերցուածքդ բաղդատելով և ասանց մեր կողմանէ բան մ'աւելցնելու՝ ուղղեցինք որպէս ի վերոյ:

3. Այս և ասկէ առջի պարբերութիւնը գեղեցիկ ապացոյց մը կրնան ըլլալ, որ մեր Եկեղեցւոյ Հարք այն ժամանակի բնական իմաստասիրութեամբն ալ պարապեր էին ու քաջ մշակեալ մըտաց տէր էին:

ցեալ իբրև զմի մարմին, և ոչ կորուսեալ զիւրաքանչիւր բնութիւնս, և ոչ երբէք զկայան առեալ հակառակութեամբ, հայելով ի մի իշխանն՝ միախառնն[1], որ զխառնուածսն յարմարեալ կազմէ առ ի բնակութիւն կենդանեաց ամենեցուն, և անդողութիւն յարակայութեան բոլոր աշխարհիս:

44. Իսկ եթէ առ անբան աշխարհս այսպէս հոգտանի Աստուած, որչափ ևս առաւել առ բանաւոր աշխարհս՝ մարդս: Զոր և ձեր ամենաքաջ յիմաստնոցն ասաց, Եթէ Միհրն աստուած մայրածին[2] է ի մարդկանէ, և թագաւոր աստուածապատակ է և համհարդ քաջ եօթներորդաց աստուածոց: Եթէ հաւատալ արժան է առասպելաբանութեանդ, զոր դուք և գործովք իսկ կատարեալ ցուցանէք ի գենիդ ձերում, մեք ոչ ևս առասպելացն հաւատամք. այլ աշակերտք եմք մեծին Մովսէսի մարգարէին, ընդ որում Աստուած խօսեցաւ ի մորենւոյն ի Սինէ և դէմ յանդիման օրէնս գրեաց և ետ նմա. և ծանոյց զնիւթեղէն աշխարհն իբրև զարարած, և զիւր աննիւթ էութիւնն՝ արարիչ նիւթոյս յոչընչէ. և զերկիրս երկրաւորօքս և զերկինս երկնաւորօք ծանոյց նմա, զի գործք ձեռաց նորա են: Բնակիչք երկնի՝ հրեշտակք, և բնակիչք երկրի՝ մարդիկ. բանաւոր՝ մարդ և հրեշտակ միայն և Աստուած ի վեր քան զերկինս և զերկիր:

45. Եւ ամենայն արարածքն անբանութեամբ կատարեն զհրամանս պատուիրանի նորա, ոչ երբեք անցանեն ըստ եդեալ սահմանն իւրեանց. բայց մարդ և հրեշտակ ազատ թողեալ ի կամս անձին իւրոյ, քանզի մտաւորք են, եթէ կայցեն ի հրամանի նորա՝ անմահք են և որ-

1. Կ. Պօլսոյ տպ. միախառնն. իմա՝ ամենայն տարերք միատեղ՝ իրարու խառնուած: Թէոդոսիոյ տպ. գնէ՝ «ի մի իշխանն յանխառն», իբրև բացայայտիչ իշխանի՝ այս է Աստուծոյ: Տես Եղնիկ 17-18:

2. Տես յէջ 232. ծն. 3: — Համճարդ քաջ եօթներորդաց աստուածոց. այս է Որմզդայ և նորա վեց խորհրդակցաց կամ ամէշասպանդաց. (Տես յէջ 121-123, 131, 136): Կարգի թուականդ եօթներորդ՝ գործածուած է աստ իբր պարզ թուական անուն եօթն. Տես Քերակ. հայ. Բագրատունւոյ, 151: — Համրազ همراز է իրարու գաղտնիքը գիտցող, խորհրդակից, մտերիմ: Րազ է գաղտնիք: Եղիշէ կը գործածէ ևս իբրև նիզակակից, արբանեակ, թիկնապահ:

դէք Աստուծոյ: Զբոլոր արարածս ունել է ի ծառայութիւն, զերկիրս մարդկան և զերկինս հրեշտակաց. ապա եթէ ստուգանիցեն և անցանիցեն ըստ հրամանաւ, զընդդէմն գործեսցեն Աստուծոյ, յիւրաքանչիւր պատուոյն զանարգանս ընկալցին. զի երևեսցի տէրութիւնն անբամբաս. և յանցաւորքն ամօթալից յանցանացն :

46. Իսկ եթէ դու ի ադխութեան վրիպեալ ես, ես որ հաստատունս գիտեմ՝՝ ոչ կարեմ գալ զկնի քո մաքրութեանդ: Եթէ աշակերտիմ՝ անուսումնութեանդ, երկրքինս յանդիւս կորուսան մատնիմք, թերևս ես չարագոյն քան զքեզ. քանզի վկայ ունիմ ինձ զինքնասաց ձայնն Աստուծոյ. Ծառայ, ասէ, որ ոչ գիտէ զկամս տեառն իւրոյ, և արժանի գանի ինչ գործ գործէ, ըմպել ըմպէ գան, այլ սակաւագոյն. իսկ որ տեղեկագոյն է կամաց թագաւորին, և յանցանէ ինչ առաջի նորա, առանց բարեխօսի բազմապատիկ տանջի:

47. Արդ աղաչեմ զքեզ և զամենեսեան՝ որ ընդ քոյով իշխանութեամբ են, մի դու ընդ իս բազմապատիկ տանջիր, և ոչ ես ընդ քեզ սակաւագոյն. այլ ես և դու և ամենայն բազմութիւնդ հանդերձ արի թագաւորաւդ այնպէս աշակերտեսցուք աստուածային գրոց, զի ի տանջանացն ապրեսցուք, և զդժոխս արհամարհեսցուք, և յանշէջ հրոյն զերծանիցիմք, և զարքայութիւնն ժառանգիցեմք, և անցաւոր կենօք զանանց մեծութիւնն անփոխման ունիցիմք: Բայց յորմէ դուդ զարհուրեալ ես՝ դիւրահաւան լեր, և փափագակի աշակերտիս ճշմարտութեանն :

48. Ոմն ի հրեշտակաց յանմահիցն գնդէն սամբակեալ և ի բաց գնաց յերկնից. ի մեր աշխարհս եկեալ՝ պատիր բանիւք և ստա խոստմամբ զանկլանելի յոյն առաջի դնէր, իբրև ազայ մանկան, անփորձ և անկիրթ նորաթեք մարդոյն, ի վեր հայեցուցանելով զմիտս նորա ուտելով ի պտղոյ ծառոյն, յոր հուպն չհրամայեաց երթալ, զի լիցի աստուած: Իսկ նորա մոռացեալ զպատուիրանն Աստուծոյ, խաբեցաւ զկնի մոլար խաբէութեանն. կորոյս զոր ունէր զփառս անմահութեանն, և չեհաս երազոյս կարծեացն: Վասն որոյ և մերժեալ

ի կենաց տեղւոյն, ընկեցաւ յարտաքանսն աշխարհս՝ յա-
րում և դուք էք բնակեալ այժմ, և ցնորեալ մոլորիք
զկնի նորին խրատուն. ոչ ևս ունելով ի պատուիրեալ
ծառոյն, այլ զարարածս աստուած անելով, և անխօս
տարերցս երկիր պագանելով, և անորոշայն դիւաց կե-
րակուր մատուցանելով և յարարչէն բոլորեցունց ի բաց
լինելով:

49. Ոչ յաղթի չար խրատուն, այլ կամի՝ զի քան
զինքն չարագոյնս արասցէ: Քանզի դիւքն ոչ եթէ բռ-
նաբար զգք վարեն ի կորուստ, այլ զմեղսն քաղցրացու-
ցանեն ի կամս մարդոյն, և ոդոքանոք որսան զանսո-
մանս ի խաբէութիւն, որպէս բազում մարդիկ զընկերս
իւրեանց ի գողութիւն և յաւազակութիւն. իբր ոչ եթէ
բռնի ինչ վարելով, այլ պատիր խաբէութեամբ տան
գործել բազում չարիս, զոմանս ի կախարդութիւն և
զոմանս ի պոռնկութիւն և զոմանս յանթիւ ի բազում
յայլ իրս ապականութեան: Եւ արդար դատաւորք[1] մեծ
տանուն մահու չափ. իբր ոչ եթէ բարի աստուծոյ դա-
տաւորք իցեն բարեգործ, և չարին՝ չարագործ. զի բա-
զում անգամ է՝ զի ի բարի մարդկանէ չարք լինին, և
յետոյ ի չարագունից անտի կատարելագոյն բարիք:

50. Եւ դատաւորք տոյգ, որք դատին զչարագործս՝
ոչ եթէ չարք անուանին և չարչարիչք, այլ յոյժ բարիք
և բարեգործք. և բնութիւն մի է, և ոչ երկու. իսկ ի
միջէ անտի գործք երկուութեան երևին. ոմանց դատա-
կիչք, և ոմանց պարգևատուք: Եւ եթէ առ մարդիկ
այս պաշտի ի ձեռն թագաւորական վճռակին խրատու
խնամ՝ տանել իւրում իշխանութեանն, որչափ ևս ա-
ռաւել Աստուծոյ բոլոր աշխարհս, որ ընդ ամենեցուն
կեանս կամի, և ոչ զմահ: Իսկ ուր բազմացաւ յանցաւո-
րութիւն, առնջեաց զամենեսեան մահուամբ. իսկ ուր
եղև ունկնդրութիւն հնազանդութեան, շնորհեաց պար-
գևս անմահութեան:

51. Այն է ճշմարիտ Աստուած՝ բոլորեցունց մեր ա-
րարիչ, զոր դու աներևանակ արձակ բերանով՝ անաշ

1. Դատաւոր, պահլաւերէն՝ դադվար. բաղադրեալ ի դադի դրոյ. տաճկ. داور

աներկիւղ համարձակ հայհոյես. Թողեալ զՅիսուս Քրիստոս զփրկական անունն, փանդուրակայ[1] որդի անուանես և մարդ մոլորեցուցիչ կարծես, և զերկնաւոր փրրկութիւնն ապականես և անարգես ի կորուստ անձին և բոլոր աշխարհիս: Զոր տալոց և հատուցանելոց ես զանանցական վրէժ տանջանացն յանշէջ հուրն սպառնացեալ գեհեննին, հանդերձ ամենայն գործակցօք քոյովք,

1. Հայկազեան բառարանը հին բառարանէն առնելով կ'ըսէ թէ փանդուրակ նշանակէ «հիւսն»: Բայց այդ մեկնութիւնդ ուրիշ փաստ մը չունի, բայց եթէ այն՝ որ Ս. Յովսէփ հիւսնութեամբ կը պարապէր: Պ. Էռնէստ Ռընանի առ Պ. Լանկլուա հաղորդած տեղեկութեանց նայելով Հրէից մէջ հին աւանդութիւն մը կար, որոյ ակիզբը մինչև երկրորդ դարը կ'ելլէ, ըստ որում զՅիսուս Քրիստոս Panthéros անուն մարդոյ միոյ զաւակը կը համարէին: Կելսոս առաջին եղաւ՝ որ այդ բաջաղանքն ի գիր առաւ. (Որոգինէս «ընդդէմ Կելսեայ» 1, 28, 32): Այս Բանթերոսի առասպելախառն պատմութեան վրայ հիւսեալ են Թալմուտի Քրիստոսի վրայօք կցկցած խօսքերը, միանգամայն Սէֆէր Թօլէտօթ Իշու անուն հռչակաւոր առասպելախառն գրութիւնը՝ որ Թալմուտէն վերջը շարադրեցաւ: ԺԷ դարու գերմանացի գիտնականներէն Վակէնսայլ՝ Սէֆէր Թօլէտօթի թարգմանութիւն մի հրատարակած է հանդերձ բնագրով, յորում առանձին բանախօսութեամբ կը հերքէ անոր մէջ գտնուած զրպարտութիւնքը: Վոլթէր ալ կը ծաղրէ այդ անիմաստ առասպելաբանութիւնդ իւր Epître sur la Calomnie անուն քերթուածոյն մէջ. Տես և Պայլի Բառարանը Schomberg. ծանօթ. A.

Բայց զարմանալի է՝ թէ պարսկերէն բառագրոց ոմանց մէջ է փանճուրա կամ փանճարա پندورا որ երկու նշանակութիւն ունի. Ա. այր ախմար. Բ. սուտ՝ կեղծեալ որդի, enfant supposé. Ի՛ և փինճարա پندارا զոր մարթ է եւ ընթեռնուլ փանտարա՛ կարծիք, ցնորք, երևակայութիւն: — Պարսկերէնի և հայերէնի հասարակ՝ նոյնանիշ և նմանաձայն բառից մէջ, անոնք որոց պարսկերէնը ա, է, ի, ու ձայնաւորով կը վերջանայ, հայերէնի մէջ շատ անգամ ակ, իկ, ուկ վերջաւորութիւնը կ'առնուն. ճեմա, ճիզա, բարի, կուճա, բարսի, ճիճտի՝ կ'ըլլան համակ, նիզակ, պարիկ, զունակ, պարսիկ, հնդիկ: Հայկական ձևից քան զարդի պարսկականը հնագոյն ըլլալը անկէ ալ յայտ է՝ թէ Բահլաւի մատեններից մէջ այդ բառերդ քով կը վերջանան. ասկէ զատ նոյն ինքն արդի պարսկերէնի մէջ կան այլ և այլ բառեր՝ որ տակաւին այդ ձևդ կը կրեն, թէպէտ շատ գործածական չեն. այսպէս զազիք կամ զամիք՝ տաճիկ, զաճուիք՝ զանդիկ, սիփրաք՝ սպիտակ, որոց աւելի գործածուած ձևն է զազի, զաճուի, սէֆիտ: Ծայրի կէնդ՝ որ մերթ Աւեստայի աքա վերջաւորութեան կրճատումն է, երբեմն ալ եղակիի նշան սեմական լեզուէ մըտած, այսպէս մեկնուելէ յետոյ, փանտուրա և «փանդուրակ» մի և նոյն բառն ըլլալուն տարակոյս չմնար: Հրէից Panthéros հինգերորդ դարուն պարսկերէնի մէջ՝ կեղծիք, ստութիւն, այր ախմա՞ր նշանակեց. կամ պարսկական անունդ Հրէայք երկրորդ դարէն ի վեր իբրև յատուկ անո՞ւն գործածեցին, կարելի չեղաւ մեզ ստուգել:

առաջնովք և միջնովք և վերջնովք[1]։ Այլ մեք այսպէս գիտեմք զԱստուած, և ի սոյն հաւատամք յաներկբայս։

52. Եւ որ արար զաշխարհս, նոյն եկն և ծնաւ ի սուրբ կուսէն Մարիամայ, յառաջագոյն նկատելով մարգարէիցն, առանց իրիք պատճառանաց մարմնաւոր կարգի։ Որպէս յոչընչէ արար զայս մեծամարմին աշխարհս, այնպէս առանց իրիք մարմնական միջնորդի առ զմարմինն յանփորձ կուսէն ճշմարտիւ, և ոչ առ ստուերագիր[2] երևմամբ։ Էր Աստուած ճշմարտիւ, և եղև մարդ ճշմարտիւ. ոչ ի լինելն մարդ՝ կորոյս զաստուածութիւնն, և ոչ ի կալ մնալ Աստուած՝ աղաւաղեաց զմարդկութիւնն, այլ նոյն և մի։ Այլ քանզի ոչ կարէաք տեսանել զանտեսանելին և մերձենալ յանմերձենալին, եկն եմուտ ընդ մերով մարդկութեամբս, զի և մեք մոյցուք ընդ նորա աստուածութեամբն։ Ոչ անարգանս ինչ համարեցաւ զգենուլ զկուր ստեղծուած մարմինս, այլ մեծարեաց իբրև աստուածաստեղծ զկուր գործ։ Ոչ առ սակաւ սակաւ շնորհեաց ինչ սմա զանմահութեան պատիւն, իբրև զանմարմին հրեշտակաց[3], այլ միանգամայն զբոլոր բնութիւնն մարմնով՝ շնչով և հոգւով զգեցաւ, և միաւորեաց ընդ աստուածութեանն. միութիւն, և ոչ երկուութիւն. և այսուհետև մի գիտեմք զաստուածութիւնն, որ յառաջ էր քան զաշխարհս, նոյն և այսօր։

53. Այս Յիսուս Քրիստոս՝ որ յիւր մարմինն փրկեաց զբոլոր աշխարհս, սա եկն կամաւ ի մահ. և որպէս ինքն աստուածութիւնն գիտէ, թանձրացաւ յանարատ կուսէն և ծնաւ և պատեցաւ ի խանձարուրս և եղաւ ի մսուր, և շարժեաց ած զմոգսն յարևելից[4] յերկրպագութիւն. սնաւ իբրև զողայ կաթամբ, աճեաց և մեծացաւ ամս

1. Այդպիսի խօսք յանդիմանութեան պատճառ մը տուած չըլլար Միհրներսեհ իր նամակին մէջ, եթէ տպագրոց մէջ պակաս մը չենթադրենք։ Տես ի վերոյ 22, ծն. 1։

2. Միխթ՝ ստուերագիր, մէկ բառ. Կ. պոլսոյ տպ. առ ստուերագիր՝ որպէս եղաք. Թէոդ. տպ՝ միայն ստուերագիր։ Առ մեզի սովկ նախդիր երևցաւ, որպէս «առ աչօք»։ Տես Բագրատունւոյ քերակ. էջ 106։

3. Մութ է բացատրութիւնդ. իմանալի է կարծեմ՝ թէ ստեղծուած մարմինը հրեշտակաց անմահութեան չարժանացաւ, այլ աստուածային անմահութեան կամ աստուածութեան։

4. Թէոդոսեայ տպ. «յարևելից կողմանցս յերկրպագութիւն»։

երեսուն, մկրտեցաւ ի Յովհաննէ ի յամբորդւոյն ի Յոր-դանան գետ: Արար նշանս մեծամեծս և արուեստս ի մէջ Հրէից, մատնեցաւ ի քահանայից, դատապարտե-ցաւ ի Պիղատոսէ պոնտացւոյ: Խաչեցաւ, մեռաւ, թա-ղեցաւ, յարեաւ յաւուր երրորդի, երեւեցաւ երկոտա-սան աշակերտացն և այլոց բազմաց աւելի քան զհինգ հարիւրոցն: Եւ շրջելով ընդ նոսա զաւուրս քառասուն՝ վերացաւ յերկինս ի լեառնէն Ձիթենեաց յանդիման իւ-րոց աշակերտացն, ել և նստաւ ի հայրենի աթոռն: Խոստացաւ երկրորդ անգամ՝ գալ ահաւոր զօրութեամբ յարուցանել զմեռեալս, նորոգել զբոլոր աշխարհս, ատ-նել զատաստան արդար ի մէջ արդարոց և մեղաւորաց, տալ զպարգեւս արժանաւորաց. և հատուցանել զպատիժս չարագործաց՝ որ այժմ ամենայնի բարերարութեանց ոչ հաւատան :

54. Յայժմ հաւատոց զմեզ ոչ ոք կարէ խախտել, ոչ հրեշտակք և ոչ մարդիկ, ոչ սուր, ոչ հուր, ոչ ջուր, ոչ ամենայն զինչ և են դառն հարուածք: Ամենայն ինչք և ստացուածք մեր ի ձեռս քո, և մարմինք մեր առաջի քո կան, ըստ կամաց քոց արա զինչ և կամիս: Եթէ ովլին հաւատովք թողուս. ոչ յերկրի այլ տէր փոխա-նակեմք ընդ քեզ[1], և ոչ յերկինս այլ Աստուած փոխա-նակեմք ընդ Յիսուսի Քրիստոսի, որ չէք այլ Աստուած բայց ի նմանէ: Ապա եթէ յետ այսր մեծի վկայութեան այլ ինչ հարցանես, աւասիկ կամք, զբոլոր մարմին տուեալ ի ձեռս քո. վաղվաղակի արա զինչ և կամիս: Ի քէն տանջանք, և ի մէնջ յանձնառութիւնք. սուր քո, և պա-րանոցք մեր: Չեմք ինչ լաւ մեք քան զառաջինսն, որ յայսր վկայութեան վերայ եդին զինչս և զստացուածս և զմարմինս իւրեանց:

55. Զի եթէ անմահք իսկ էաք, և մարթ էր մեզ

1. Պարսից դրան և մանաւանդ Միհր-ներսեհի համոզումն էր՝ թէ Հայք քանի որ քրիստոնեայ մնան, պիտի հակառա-կին Սասանեան իշխանութեան և միա-նան իրենց կրօնակցացը՝ Հոռոմոց հետ: Ասոր երկիւղն էր գլխաւորապէս որ զՀայս կրակապաշտ ընելու ձեռնարկել տուեր էր: Եպիսկոպոսունք միաբերան և բա-ցարձակ խոստմունք մը կ'ընեն աստ, որ իրենց պատասխանւոյն ամենէն նշանա-ւոր և կարեւոր կէտն է. քանզի այդ պայմանաւ միայն մարթ էր ի հաւան ածել զԴուռն Պարսից:

մեռանել վասն սիրոյն Քրիստոսի, արժան էր. քանզի և նա անմահ էր, և այնչափ սիրեաց զմեզ, մինչև մահ ի յանձն էառ. զի և մեք նորա մահուամբն յաւիտենական մահուանէն ապրեսցուք։ Եւ եթէ նա յիւր յանմահութիւնն ոչ խնայեաց, մեք զի կամաւ եղաք մահկանացուք, կամաւ մեռցուք վասն սիրոյ նորա, զի կամաւ յանձն առցէ զմեզ յիւր յանմահութիւնն. մեռցուք իբրև զմահկանացուս, զի ընկալցի զմեր մահն իբրև զանմահից։

56. Այլ դու յայսր ամենայնի այլ զմեզ մի հարցաներ. զի ոչ եթէ ընդ մարդոյ է ուխտ հաւատոց մերոց, եթէ պատրեցինք իբրև զտղայս. այլ անլուծութեամբ ընդ Աստուծոյ, որում չիք հնար քակել և ի բաց ելանել, ոչ այժմ և ոչ յապա և ոչ յաւիտեանս և ոչ յաւիտենից յաւիտեանս [1]։

1. Աւեստայի մէջ մերթ ընդ մերթ կը հանդիպի՝ yavaê yavaêtâitê, որ է «յապայս յաւիտենից» կամ «յաւիտեանս յաւիտենից»։

Այս պատասխանւոյս նկատմամբ այլեւայլ խնդիրներ կը ծագին.

Ա. Փարպեցին իւր պատմութեան մէջ հրովարտակ մը և անոր տրուած պատասխան մը յառաջ կը բերէ՝ որ տարբեր են Եղիշէիններէն։ Ո՞րն է վաւերականը։ Փարպեցին Եղիշէէ գոնէ երեսուն տարի ետքը կը գրէր. մեր հեղինակը ականատես վկայ է. մինչ Փարպեցին ուրիշներէ լսածը կամ ստուգածը կ'երկրորդէ։ Եղիշէ իբրև պատճէն ի մէջ կը բերէ. մինչ Փարպեցին այդպիսի կերպարանք չտար։ Անկէ յառաջ տեսանք՝ որ Միհրներսեհի նամակին պաշտօնական և հարազատ գրութիւն մ'ըլլալուն կարելի չէ երկբայիլ։ Կաթողիկոսին կողմանէ գրուած պատասխանը ալ իւր վերնագրովը, ընդհանրական և փիլիսոփայական խորհրդածութեամբքը, աշխատեալ և խնամեալ ոճովը պաշտօնական գրութեան ամենայն արտաքին և ներքին հանգամանքն ունի. մինչ Փարպեցւոյնը այնքան զուրկ է այդ յատկութիւններէդ, որ կարելի չէ մեզ կարծել՝ թէ Եղիսկոպոսաց և աւագ Տանուտերց ժողովը, յորում Եղնկայ պէս նշանաւոր մատենագիր մը և Սահակայ և Մեսրոպայ երիցագոյն աշակերտներէն առ նուազն հինգն բազմել էին, ազգութեան և հաւատոց ամենակարևոր խնդրոյ վրայ Փարպեցւոյն տուածին պէս գրութիւն մի զրկէր ի Դուռն Պարսից։ Զամչեան վարդապետը երկուքին գրածն ալ վաւերական կ'ուզէ համարել. կարծելով թէ Հայք երկու գրութիւն ընդունեցան ի դրանէն, որոց մին հրովարտակ էր Յազկերտի կողմանէ, և միւսն Յայտարարութիւն մի պարսկական Դենին՝ շարադրեալ ի Մոգուց. և թէ այս երկքին գրութեանցս երկքին ալ պատասխան գրուեցաւ։ Նորա կարծեօք Փարպեցին զհրովարտակը և սորա պատասխանը միայն կու տայ, մինչ Եղիշէն՝ Մոգուց գրածը և անոր հերքումը։ Թէ Միհրներսեհի նամակը Մոգաց շարադրութիւնն է և Փարպեցւոյն Յազկերտի ընծայած հրովարտակը վաւերական է, մինչև մէկ աստիճան մը կարելի ըլլայ ընդունիլ, բայց սոսկ ընթերցում մը բաւական է համոզելու՝ թէ Փարպեցւոյ յանուն ժողովոյ Արտաշատայ յառաջ բե-

57. Ի սմին մեծի հաւանութեան ամենայն բազմու֊թիւնն միաբանեաց ի մեծամեծաց մինչ ցփոքունս. ան֊սասս երդմամբ եդին վկայութիւն՝ կենօք և մահու ի նմին կալ հաստատուն:

58. Եւ իբրև եհաս նամակն յարքունիս, և ընթեր֊ցան ի մեծի խոնաստանի յանդիման ամենայն բազմու֊թեան կարաւանին [1], բազումք այնոքիկ էին՝ որ իբրև լսէին՝ գովէին զպատասխանիսն: Թէպէտ և երկնչէին յահէ տէրութեանն, սակայն ի ծածուկ առ միմեանս զնոյն վկայութիւնս գովութեանց տային. առաւել քան ընդ ճարտարաբանութիւնն, ընդ համարձակութիւն ան֊երկիւղութեանն զարմանային: Եւ բազումք ահաբեկեալք սկսան զրահել անդստին. և զնոյն չշնչին լսէին յամե֊նայն շրթանց:

59. Իսկ չարաչէր մոգպետն հանդերձ մեծ հազարա֊

բած գիրք և ոչ իսկ Երուսաղէմի վաւե֊րական պատասխանը կարելի է համարել:

Բ. Որովհետև ըստ մեզ տարակոյս չմնար Եղիշէի ի մէջ բերած պատաս֊խանւոյն պաշտօնական և հարազատ ըլ֊լալուն, խնդիր մի կը ծագի՝ թէ ո՞վ ի գիր առաւ զայն: Կրնայ նոյն ինքն Եղի֊շէն ըլլալ նորա շարադրողն իբրև քար֊տուղար կաճառոյն. բայց այդ գրու֊թեանդ ոճը այնքան կը տարբերի Եղի֊շեայ ոճէն՝ որ հարկ է զայն ուրիշ հեղի֊նակութեան նուիրել: Բնազանցական և աստուածաբանական խնդիրները կարգէ դուրս յստակութեամբ բացատրուած են. մինչ Եղիշէ երբ այդպիսի խորհրդածու֊թեանց կը ձեռնարկէ, կը սեղմէ ու կը մթնցնէ իւր իմաստները: Պատճառաբա֊նութիւնքը, յստակ, շարունակ և իրա֊րու սերտ կապուած են ու փիլիսոփայա֊կան խնդրոց վարժ միտք մը կը յայտ֊նեն. քանի որ Եղիշեայ գրութիւնքը կրօնից աւելի բարոյական և սիրոյ նշանը կը կրեն քան նորա բնազանցական վար֊դապետութեանց: Որ ոք Եզնկայ Հեթա֊նոսաց Աղանդոց առաջին երեք գիրքը կը բաղդատէ այդ պատասխանւոյդ հետ, կարելի չէ՝ որ մի և նոյն մտածութիւն֊ները չտեսնէ երկուքին մէջ, շատ ան֊գամ մի և նոյն բառերով բացատրեալ, ու մեղի հետ չկարծէ՝ թէ Արտաշատայ մէջ խմբագրեալ թուղթը շարադրութիւն է գլխաւորապէս Եզնկայ՝ որ իւր մատե֊նին ճակատը կը դնէ այս խօսքս. «Յոր֊ժամ զաներևութէն և զնորին զմշտնջե֊նաւոր զօրութենէն ճառիցէ ոք, քանզի մարմնաւոր լեալ է, պարտի զմիտս՝ յստա֊կել եւ զխորհուրդս սրբել, զլեզու շարժ֊մանց պարզել, զի զայն՝ զոր առաջի եդ՝ հասանել կարասցէ»:

1. ՅԱպար աշխարհի ուր կը գտնուէր Ցազկերտ՝ Խոտանստան իբրև պալատ գոր֊ծածուած կ'երևի. է պարսկերէն Խոտենիս֊տան ختان ածական որ նշանակէ եր֊ջանիկ, բարեբաստիկ, որպէս Խութենշահ և Խութենշա՝ որ հաւանօրէն արքայական պալա֊տանից անուն էր, ինչպէս տար-իւս֊սատե دار السعادة «տուն երջանկու֊թեան» կոչի Օսմանեան Թագաւորաց պալատը. Խոտանստան նոյն կ'երևի ընդ Աւեստայի Խշէնութա բառի, որոյ արդի պարսկերէնն է Խօշնուտ, Խուշնուտ:

պետութիւն չնչեաց չարախօսութիւն, և բորբոքեաց զԹագաւորն իբրև զհուր անշիջանելի։ Եւ սկսաւ կրճտել զատամունսն իբրև զօրհասական վիրաւոր. և յայս յանդիման ձայնարկեաց առ մեծ հրապարակին[1] և ասէ. Գիտեմ ես զչարութիւն բազմութեան մարդկանս, որ թերահաւատեն ի մերոց օրինացս, և զկնի կախարդութեան մոլորեալ են անդարձութեամբ։ Եւ իմ եղեալ է ի մտի, թէ ոչ ումեք թողացուցից ի մեծամեծ հարուածոյն, մինչև ակամայ ի բաց կացցեն յայնպիսի վրիպական օրինաց. եթէ ոք կարի ի մերձաւորաց իցէ, զնոյն անցս և ընդ նոսա անցուցից։

60. Յայնժամ ծերն[2] գառնացեալ բանս ի ներքս ընկէց, և ասէ ցԹագաւորն. Առ ի՞նչ է քոյ այդ մեծ տրամութիւնդ. զի եթէ կայսր չելանէ ըստ քո հրամանն, և Հոնք կան քեզ ի ծառայութեան, ո՞ր մարդ է յերկրի՝ եթէ կարող է ընդդէմ դառնալ քում հրամանիդ։ Տիրաբար հրաման տուր ի ներքս, և ամենայն որ զինչ և ասես՝ վաղվաղակի կատարի։

61. Եւ անդէն Թագաւորն ի ներքս կոչեալ զդպրապետն[3], հրամայէր գրել հրովարտակ. և ոչ ես ըստ սովորութեանն, այլ բանս զայրագինս իբր առ ատելիս և անպիտանս, չյիշելով ամենևին զմեծամեծ վաստակս տիրասէր մարդկանն[4]. այլ միայն կոչոյ հրաման տուեալ յակամէ յանուանէ զարս՝ զոր ինքն ճանաչէր, որոց անուանքն են այս. ի տոհմէն Սիւնեաց վասակ անուն[5],

1. Խմա՛ զընդարձակ դաշլիճն ուր ժողոված էին։ Ակռայները կրճտողն և ձայնարկողը Մովպետան Մովպետը կամ Վենպետը չէ, որպէս կարծեցին Թարգմանիչք ոմանք, այլ Թագաւորը. այդ սպառնալիքը՝ ի ներկայութեան արքային ուրիշ մը չէր կրնար ընել։

2. Այս է Միհրներսեհ։ — « Հրաման տուր ի ներքս », այսինքն ի ներքս ի պալատն Սենեկուան, ուր էին դպիրք և այլ գործադիր պաշտօնեայք։

3. Տաղիր կամ տիպիր دبیر է դպիր. տիպիրիսգամ՝ դպրապետն։

4. Վարդանայ նշանաւոր ծառայութիւնքը ի Քուշանս՝ տես ստորև 69 և ծն. 1։

5. Վասակ՝ որ ի ժամուն մարզպան էր Հայոց (փարպ. էջ 131)։ — Տոհմ, բազմաց՝ գոլով, որ կրկին նշանակութիւն ունի. 1 Սերմն. 2 Սերունդ։

Առաջին մարզպանն որ առաքեցաւ ի Հայս՝

Վեհմիհրշապուհ Պարսիկ, 428–441։
Բ. Վասակ Սիւնի, 441–453.
Գ. Ատրորմիզդ Արշական, 453–464.
Դ. Ատրվշնասպ Յոզմանդեան, 464–483.
Ե. Սահակ Բագրատունի, 483–484.
Զ. Անդեկան, 486–486.

ի տոհմէն Արծրունեաց Ներշապուհ անուն, ի տոհմէն Ռշտունեաց Արտակ անուն, ի տոհմէն Խորխոռունեաց Գադեշոյ անուն, ի տոհմէն Մամիկոնենից Վարդան անուն, ի տոհմէն Մոկաց Արտակ անուն, ի տոհմէն Ապահունեաց Մանեճ անուն, ի տոհմէն Ամատունեաց Վահան անուն, ի տոհմէն Վահեւունեաց Գիւտ անուն, ի տոհմէն Անձեւացւոց Շմաւոն անուն: Զայս նախարարքս յականէ յանուանէ կոչեցին ի դուռն արքունի. և կէսքն առ նմա խակ էին ի կարաւանին, և այլք ի կողմանց հիւսիսոյ ի Հոնաց պահակին. թողեալ էր զամենս ի նախարարացն անդէն յաշխարհին Հայոց[1]:

62. Արդ թէպէտ և ոչ համագունդ ի միոջ վայրի դիպեցան ամենեքեան, սակայն յառաջագոյն դիտացեալ զխորհուրդն չարաբարոյ բանաւորին, և զհեռաւորսն ևս իբրև զմերձաւորսն ի միոջ վայրի առ միմեանս համարէին: Եւ ի ձեռն Յովսեփու եպիսկոպոսի նորին ուխտի[2] հաստատեալ՝ խաղացին գնացին յիւրաքանչիւր տեղեաց ի դուռն արքունի: Եւ յոյժ փութային վասն եղբարց և որդեաց և սիրելի դայեկամանունդ բնակացն[3],

1. Պարբերութիւնս քիչ մը խառնակ է։ Փարպեցւոյ նայելով Յազկերտ երեք տասնմէն հրովարտակ խրկեր էր՝ Հայոց, Վրաց և Աղուանից. հրաման ընելով որ ամենայն տանուտէրք և սեպուհք երեցունց աշխարհաց փութով և անխափան ի դուռն գան։ Եղիշէ միայն իր ազգակիցներուն խօսքը կ՚ընէ։ Այն նախարարք՝ որ կը յիշատակէն աստ, յականէ յանուանէ կոչեցան յարքունիս։ Հրովարտակին մէջ սոցա տանց տիտղոսի և իբրև սոսկ անհատ յիշուիլը՝ տանուտէրութենէ անկած ըլլալնին կը յայտնէր։ Մնացած հայ նախարարաց մէկ մասը արդէն Յազկերտի քով էին ի կարաւանին. մէկ մասն ալ ի պահակին Հոնաց (տես Փարպ. 131–134). մէկ երրորդ մասն ալ ի Հայս մնացին։ Հայաստանէն գնացող նախարարաց ընկերացեր էր Աշուշա բդեաշխն Վրաց (Փարպեցի 148)։

2. Այս է Արտաշատայ ժողովյն մէջ եղած ուխտը։

3. Դայեկամանունդ բնակք, այս է մէկ տան մէջ մէկ խնամակալի ձեռօք մեծցած կամ մէկ կնոջէ շարունակաբար՝ երբեմն ևս միանգամ կաթ կերած անձինք, որք իրերաց՝ հարազատ եղբարց և ազգականաց չափ ընտանի և կապեալ կը համարուին։ Այդ սովորութեանց անսոր նշմարքն մնացած են տակաւին Հայոց մէջ. բայց մեծ կարևորութիւն ունէր երբեմն, ինչպէս և դրացի Վրաց և Պարսից մէջ. տես Ծն. 1, Յ. Բ, 14։ – Այլ ուրեք ասէ Եղիշէ «Զյիշեցան Տիկնանց Հայոց՝ թէ զուցէ ոք ամենեւին ի բնակամունդ դայեկաց եւ կամ բնաւ ի սիրելի հարազատաց. Յ. Ը, 152։ Յայտնի է՝ թէ արիւնակցութենէ և խնամութենէ զատ և նոյնչափ զօրաւոր և ազգային բարուց և կարգաց մէջ անցած ուրիշ կապեր կային, որով կը միանային և կը

որ չարաչար կային ի մեծի նեղութեանն: Վասն որոյ և նոքա զանձինս ի մահ մատնեցին, ոչ ինչ զանգիտելով

դաշնակցէին հին ատենը իրերաց հետ հայ գերդաստանք:

Ա. Դայեկութիւն. ընդհանրապէս արքայորդիք և նախարարազունք իրենց հօրը ապարանից մէջ չէին մեծնար. (տե՛ս Յ. Ա, 14, ծն. 1): Թագաւորին հետ սերտ կապակցութիւն հաստատել ուզող նախարարք արքայորդւոց դաստիարակութիւն կը ստանձնէին, և իրենց հեռաւոր գաւառները տանելով՝ անդ կը սնուցանէին ու կը խնամէին զնոսա: Ստորին գերդաստանաց տէարք ալ զնոյն առնէին աւելի հզօր և ազդեցիկ տանուտերաց զաւակաց համար, հօրերնուն պաշտպանութիւնը ապահովելու նպատակաւ:

Բ. Կաթնակցութիւն, սննդակցութիւն. Դայեկին և դայեկորդւոյն, ինչպէս և սոցա երկոցունց գերդաստանաց մէջ, հանգոյցը աւելի զօրաւոր կ'ըլլար՝ եթէ դայեակը կամ դաստիարակիչը իւր ակնոյ կամ ազգակից կնոջ կաթամբ սնուցած ըլլար զմանուկն:

Այդ կրկին զօդիւք՝ մասամբ կ'ամոքէին և կը նուազէին տանուտէրական դրութեան աղէտները, ու սերտ բարեկամութիւն և նիզակակցութիւն մը կը գոյանայր ինքնագլուխ և զատոց նախարարութեանց մէջ, որոց թիւը երբեմն հարիւրը անցեր էր: Եթէ այդպիսի կարգ և սովորութիւն մը չըլլար, հզօրագոյնքն զտկարսն անարգել պիտի խորտակէին և կռիւք և պատերազմք աւելի յաճախ պիտի ըլլային:

Այդ բարքդ յոյժ զօրաւոր են տակաւին Չէրքէզաց մէջ, մէկ կնոջէ կաթ կերած տղուն և աղջկան մէջ ամուսնութիւնը արգելեալ է: Դայեկութիւնը և կաթնակցութիւնը ոչ միայն երկու ընտանիս, այլ այդ ընտանեաց ցեղերը իրարու կը զօդէ ու կը միացնէ: Եթէ դայեկին ցեղին վրայ յարձակում մի ըլլայ, խնամեալ տըղուն հայրը իւր ցեղովը զայն պաշտպանելու պարտաւոր է. ինչպէս և այս վերջինս եթէ վտանգի մը հանդիպի, պէտք է որ իւր զաւակաց դայեակ եղող համօրէն ցեղերն իրեն օգնութեան վազեն: Այդ դաշնակից ցեղերդ զաւակաց թիւէն շատ աւելի կրնան ըլլալ. վասն զի որչափ հռչակաւոր և զօրաւոր ըլլայ ցեղապետ մը, անոր հետ բարեկամութիւն հաստատելու նպատակաւ զաւակը խնամել ուզող ցեղերն ալ նոյնչափ բազում կ'ըլլան. վասն որոյ տղան մէկ երկու տարի կամ մի քանի ամիս մէկ ցեղի մը հիւր մնալէն ետքը, ուրիշ ցեղի մը քով կը փոխադրուի հաճութեամբ հօրն, և որքան ցեղերու քով բնակած ըլլայ, նոցա ամենուն հետ սննդակից և եղբայր կը համարի: Այդ եղբայրակցութեամբ արեան վրէժխնդրութիւնը (vendetta) պարտաւորիչ կ'ըլլայ համօրէն դաշնակից ցեղերու մէջ. անանկ որ եթէ մէկ ցեղէ մարդ մը սպաննուի, միւսները պարտական են նորա վրէժը լուծանելու: Այսու ամենայնիւ կաթնակցութիւնը այնքան յարգելի է, որ եթէ մէկը իւր թշնամիներէն հալածուելով՝ անճարին վըտանգի հանդիպի, բաւական է որ անգամ մը այդ թշնամեաց միոյն մօրը կամ նորա ցեղակից մէկ կնոջ դիրկը ապաւինի և նորա ծոցը համբուրէ, այնուհետև կաթնակից կը համարուի և ոչ ոք կը վնասէ նմա: — Թէպէտ կան երբեմն զաւակունք՝ որք իրենց հօրը տունը կը մնան, բայց ընդհանրապէս ցեղապետի մը համար անվայել և ամօթ սեպուած է՝ որ զիւր որդին քովը պահէ, գիրկը առնէ կամ գգուէ զայն. նա մանաւանդ պէտք չէ անգամ որ ճանչնայ զնա, այլ յանձնէ օտարաց և իրմէ հեռու խնամել տայ: Իսկ դայեակը իրեն յանձնուած տղան՝ սովորաբար մինչև որ 14 կամ 15 տա-

երբև զանարի փառաւորս, այլ յոյժ քաջութեամբ պնդէին զանձինս, զի թերևս կարասցեն փրկել զնոսա ի մեծամեծ հարուածոյն:

449 63. Եւ երբ հասին ի դուռն արքունի[1], և ի մեծի
գարուն չարաթու զաւկին յանդիման լինէին մեծի թագաւո-
րին: Բայց թէպէտ և տեսանէին զեղբարս իւրեանց ի
մեծամեծ վիշտս տառապանաց, որ վասն անուանն Քրիս-
տոսի ճգնեալք էին ընդդպէս, ոչ ինչ արտում և տխուր
զերեսս ցուցանէին հրապարակին: Եւ որչափ նոքա
զուարթագին երևէին ամենեցուն, առաւել զարմանային
չարատէրքն:

64. Եւ զի օրէնք էին յառաջ ժամանակաւ, յորժամ ի Հայոց աշխարհէ ի դուռն երթայր ի ձեռն պատուաւորի զօրագլխի ուրուք, այր ընդ յառաջ յղէր, և հարցանէր զողջոյն և զխաղաղութիւն Հայոց աշխարհին. և երկիցս և երիցս անգամ զնոյն առնէր, և զհանդէս զնդին ինքնին տեսանէր[2]: Եւ յառաջ քան ի գործ պատերազմին հասանել, զգալն իւր առ նա՝ մեծ շնորհակալութիւն համարէր, և առաջի աթոռակցացն իւրոց և ամենայն մեծամեծացն՝ ամենեցուն գովութիւն մատուցանէր. և յիշէր զնախնեացն զվաստակս, և զառն առն քաջութիւն պատմէր նոցա:

65. Իսկ այն օր և ոչ մի ինչ յայսցանէ ամենեին ինչ ոչ յիշեաց. այլ երբև զչարադև մի՝ ոչ ևս դադարէր յուզել և չարժել զբուք ձմերայնոյ. որպէս և նմանեալ իսկ էր ծովածուփ ալէկոծ խռովութեան. և ոչ դուզնաքեայ վեր ի վերոյ, այլ անդստին յանդնդոց բարձրանայ փրփրել կուտակել՝ վիշապաձայն որոտալով, գազանաբար գոչելով առ հասարակ դողացուցանէր զանեզերական իշխանութիւնն, որպէս փլեալ տարածանիցի համատարած ամենայն ի վերայ լերանց, խորոց, ձորոց, ապականեալ միանգամայն զլայնութիւն դաշտացն փայլչութեան[3]:

ընկան ըլլայ, ծխավարութեան և զինաչարժութեան հրահանգաց և խաղերու կատարելապէս կը վարժեցնէ, կովկասային լեռնաձորոց և ռուսական տափերուն (steppes) արկածալից արշաւանացը կ'ընդելացնէ, ու այնուհետև կը տանի իւր հօրը կը վերադարձնէ:

1. Յամի 449. գարուն:

2. Զօրահանդէս՝ Revue կ'ըլլար, յորում թագաւորը ներկայ կը գտնուէր:

3. Վսեմ և աճուոր նկարագրութիւն Հայաստանի ձմերան և բուքին:

66. *Մանչելով բարբառ արձակեաց և ասէ. «Երդուեալ իցէ իմ՝ յարեգակն ի մեծ աստուածն, որ ճառագայթիւքն իւրովք լուսաւորէ զամենայն տիեզերս, և ջերմութեամբն կենդանածնէ զամենայն գոյացեալսն՝ եթէ վաղիւ ընդ առաւօտն, ընդ երևումն պանծալւոյն, ընդ իս իւրաքանչիւր ծունր նմա ոչ կրկնեսջիք՝ խոստովանելով զնա աստուած*[1]*, ոչ ինչ թողացուցից ձեզ՝ զամենայն նեղութիւնս չարչարանաց ի վերայ ածելով, մինչև ակամայ կատարեսջիք զկամս հրամանաց իմոց»:*

67. *Իսկ հաւատացեալքն հաստատեալք ի Քրիստոս, ոչ ի սառնամանեաց ձմերանւոյն հովանային, և ոչ ի տապոյ խորշակին ջեռնուին, և ոչ յահագին ձայնէն սարսէին, և ոչ ի սպառնալեաց տանջանացն զանգիտէին. այլ ի վեր հայեցեալք՝ զզօրութիւնն Քրիստոսի յօգնականութիւն եկեալ տեսանէին. և զուարթագին դիմօք և համեստ բանիւք յառաջ մատուցեալ՝ տային պատասխանի թագաւորին:*

68. *«Խնդրեմք ի քէն, արքայ քաջ, ունկն դիր սակաւ բանից մերոց, և քաղցրութեամբ լուր զոր ասելոցս եմք: Քանզի յիշեցուցանեմք քեզ զժամանակն Շապհոյ արքայից արքայի, որ էր հայր հաւուն քո Յազկերտի*[2].

1. Յազկերտի պահանջած խոստովանութիւնը Խորշետայ Նիյայիշն կամ աղօթքն է՝ զոր Բարսիք մինչև ցայժմ կ'ընեն օրը երիցս, առաւօտը, օրհասարակի և իրիկուան, որպէս և պատուիրեալ է ի Մայնօ-Խրատ:

«Երկրպագեմք պերճապայծառ և քաջածի Արեգական. երկրպագեմք լայնածաւալ արօտրէից աստուածոյն՝ Միհրի ճշմարտախօսի և իմաստնոյ, որ հազար ականջս ունի, բիւր աչկունս. բարեկամ է և գերագոյ, ամենադէտ, հզօր, անքուն և միշտ հսկող: Երկրպագեմք Միհր աստուածոյ տեառն ամենայն աշխարհաց, որ Ահուրամազդա արար պայծառ քան զամենայն Եազատս երկնայինս: Մեզ զօրավիգն ըլլան Միհր և Ահուրա» և այլն: Երգուածս յանուն Միհր դից կ'ըլլայ. (տես Քսենոփոնի Կիւրամարդին մէջ Արտաւազդայ ընդ Կիւրոսի խօսակցութիւնը և յեղիշէ Յ. Ը 108): Բայց Միհր՝ որ ի սկզբան տարբեր էր ի նիւթական արեգակէն, խառնուեցաւ այս վերջնոյս հետ. Տես զՄիհր-եաշդ յէջ 136:

2. Յազկերտ Բ էր որդի Վռամայ Եի, որդւոյ Յազկերտի Առաջնոյ: Յազկերտ Ա է ուրեմն հաւ Յազկերտ Բի: Արդ Յազկերտ Ա ըստ ոմանց էր որդի և ըստ այլոց եղբայր Վռամայ Դի որում և յաջորդեց: Վռամ Դ ալ ըստ ոմանց որդի էր Շապուհ երրորդի և ըստ այլոց՝ եղբայր նորա: Այս վերջնոյս առենը Հայաստանը բաժանեցաւ ընդ մէջ Հռոմոց և Պարսից: Նախարարաց ակնարկածը Շապուհ երրորդն է, որ ըստ Եղիշեայ է հայր Յազկերտի առաջնոյ: Շապուհ երկրորդի մահուան թուականն է 379–380. անոր յաջորդեց որդին Արտաշիր Բ 379

և ևս նմա Աստուած զերկիրն Հայոց ի ժառանգութիւն տուին օրինօք, որով և մեք իսկ վարիմք այժմ; և հարքն մեր և հաւքն հարցն մերոց կացին նմա ի ծառայութեան վաստակս. և սիրով կատարէին զամենայն հրաման բանի նորա, և բազում անգամ ի նմանէ մեծապարգևք լինէին: Եւ յայնց ժամանակաց մինչև ի քո հայրենի աթոռդ և մեք զնոյն ծառայութիւն ծառայեցաք. բայց թերևս քեզ լաւագոյն քան զառաջնոցն »:

69. Զայս ասելով ցուցանէին զքաջութիւն արութեանցն լաւագոյն քան զառաջնոցն ըստ զինուորութեան կարգի[1]: Իսկ զմնից և զամկից, և որ այլ ևս էին հարկք աշխարհին, բազմագոյն քան առ հարքն նորա երթայր յարքունիս. «Նա և ի սուրբ եկեղեցւոյն, որ էր ազատ[2] ի Քրիստոս ըստ կարգի նախնեաց մերոց ի սկզբանէ, և դու ընդ հարկաւ եդիր. և մեք առ

383. ամս յաջորդեց եղբայրն Շապուհ Գ. 383–388. Շապուհ երրորդի՝ որդին կամ եղբայրն Վռամ Դ. 388–399. այս վերջնոյս յաջորդեց Շապուհ երրորդի որդին Յազկերտ առաջին 399–420:

1. Այս քաջութեան գործերս Փուշանաց պատերազմին մէջ եղած էին Մերվի մօտերը, որոյ արեւմտեան հիւսիսային կողմերը կը գտնուին այժմ Թէքէ Թիւրքմէնք՝ որք այնքան յողնեցուցին զբանակս Ռուսաց: — «Լուեալ արքային Յազկերտի զմահ առն Վարդանայ, յահաւոր սուգ ընկղմեալ խռովէր, յիշելով զքաջութիւն առնն, և զլաւութիւնն՝ զոր արարեալ էր ընդ Թշնամիս բազում անգամ ի վերայ աշխարհին Արեաց՝ եցոյց». Փարպ. 215:

Զվեհնդեանս ամբաստանած ատենը դատաւորը այսպէս կը յանդիմանէր զնոսա. «Մոռանէք զմոգեանն, կորուսէք ձերով կախարդութեամբ զայնպիսի քաջ այր զՎարդան, զի օգտակարութիւն էր Արեաց Տէրութեան. և զմեծամեծ գործոց նորա յիշումն առ Արեաց աշխարհին, զոր բազում զօրագլուխք և այլ Արիք յիշեն, ընդ որս և նորա կռիւ եղեալ էր. այլ և զոր իսկ աստուածանման անուան խրովք աչօք տեսեալ էր ի Մարվիրոտ՝ զնորա քաջարութիւնն». Նոյն, 233: — Դժբաղդաբար ժամանակակից պատմագիրք աւելի մանրամասն տեղեկութիւնս չտան մեզ այդ հեռաւոր և դժուարին տեղեաց մէջ Վարդանայ կանգնած յաղթանակաց վրայ. ինչպէս և ցաւալի է որ տասն և չորս դար եւքը հիւսիսային մեծ տէրութեան մը կողմանէ նոյն վայրերը զրկուած երկու հայ զօրավարաց՝ Լազարէֆ և Տէր Ղուկասօֆ, մին կանխահաս մահուամբն, միւսը պաշտօնական դժուարութեանց հանդիպելով, արդիւնաւորեցան իւրեանց պատերազմական հանճարը անդ ևս հանդիսացնելէ:

2. Եղիշէայ այս խօսքէս մարթ է հետևցնել՝ թէ զազատս ի շինականաց որոշող գլխաւոր հանգամանաց մին՝ հարկ չվճարելնին էր: Միանձանց ճառին մէջ կ'ըսէ. «Ազատ եկեղեցի անկաւ ի ծառայութիւն հեթանոսաց և սուրբ քահանայք նորա կոփին չարչարին յանօրէն հարկահանաց »: Ազատաց ուրիշ արտօնութեանց վրայ տես եր. 189. ծն. 1. և այլն:

սէր քոյդ տէրութեանդ ոչ ինչ ընդդիմացաք քեզ: Արդ վասն է՞ր յուղեալ իցէ ցասումն այս ի վերայ մեր. ասա դու մեզ զպատճառս վնասուն. եթէ օրէ՞նքն մեր պատճառք իցեն անխառնակ լինելոյ առաջի քո»:

70. Իսկ չարադէն լի ամենայն նենգութեամբ՝ գրեաց ի մի կոյս դարձուցեալ, և ասէ. «Վնաս[1] համարիմ՝ ընդունել ի գանձ արքունի զհարկս աշխարհին ձերոյ, և անօգուտ զքաջութիւն արութեան ձերոյ. քանզի ագիտաբար մոլորեալ էք ի ճշմարիտ օրինացս մերոց, և զաստուածս անարգէք և զկրակ սպանանէք[2] և զջուրս պղծ-

1. Բահլաւ վնաս, զոր մարթ է եւ ընթեռնուլ վճաս, յորմէ վնասաքար կամ վնասքար՝ վնասակար, չարագործ. ավանաս՝ անմեղ։ Արդի պարսկերէն կիւնահ, կիւնահքար, որ լծորդ է առաջնոյն. քանզի վ յաճախ կը փոխուի ի կ։

2. Սպանանել կ'ըսէին Պարսիկք փոխանակ մարել ըսելու. որովհետեւ կրակը շնչաւոր հոգի մի համարեալ էր։ Ահաւասիկ կայսեալ քահանայից դէմ եղած ամբաստանութիւնը յանենի արքային. «Աւերեցէք զատրուշանն, սպանեցէք զանշիջանելի հուր կրակն, որ յաստուածոց շնորհեալ Արեաց աշխարհիս ի պահպանութիւն վառ եւ վնասակար իրաց, որ ի թշնամեաց ուսուք յարձակէին ի վերայ մեր եւ յամենայն կողմանց, այն կրականւոյն անմեղաս պահեալ էր զմեզ եւ պահէին»։ Փարպեցի. 233։ — Շայաստ-լա-Շայաստ անուն Բահլաւի գրութեան մէջ կը գտնեմք հետագայ պատուիրանքը. «Պարտ է տան մէջ պատշաճ եղանակաւ պահել զկրակ, որպէս զի կանանց բեղմնաւորութիւնը չպակասի եւ արանց կորովը չտկարանայ։ Եթէ պաղած ածուխները հեռացնես, այնքան հանգստութիւն կ'ունենայ կրակը, որքան երբ մէկուն հանդերձները մաքրուի։ Երբ մանուկ մի ծնանի, պարտ է տանը մէջ երեք գիշեր կրակ պահել, առ ի պաշտպանել զերախայն ի դիւաց, ի կախարդաց եւ ի վհկաց»։ — «Եթէ ոք սպանանէ (մարէ) զկրակ, նա պարտի տասն կրակս ի մի վայր ժողովել, տասն պատիժս կրել, տասն մրջիւնս մեռցնել եւ օրհնեալ ջուր նուիրել Վռամական հրոյ»։ Շայ. լա Շայ. գլ. Ժ. 9։ — Հինգ տեսակ կրակ կայ. Ա. Պերեզիսավան, որ երկրիս եւ լերանց ծոցն է, զոր Ահուրամազդա ստեղծեց իբրեւ երեք շնչաւոր հոգիս. աշխարհիս զարգացման համար պարտ է հսկել ի վերայ նորա եւ պաշտպանել զնա։ Սովաւ կ'իմանային հրաբըխային ոյժը, եւ յերկրէ բխած կրակները որպէս ի Պաքու։ Բ. Վօհուֆրիան, «բարերաշխ», որ մարդուս եւ կենդանեաց մարմնոյն մէջն է։ Գ. Ուրվազիշդ, «կենսատու», ծառոց եւ բուսոց մէջ է։ Դ. Վազիշդ, «հարկանող», ամպերուն մէջինը, այս է կայծակն։ Ե. Սպենիշդ, որ կը ծառայէ ի պէտս մարդկան. ինչպէս եւ կրակն Վռամական՝ այս է սրբազան կրակն պաշտամանց։ Յայտնանէ՝ մարմնոյ մէջ գտնուածը ջրով եւ կերակրով կը սնանի. բուսոյն՝ միայն ջրով. մարդկանց գործածածը, ինչպէս եւ Վռամականը, մի միայն կերակրով կը ճարակի. իսկ վազիշդը ոչ կարօտ է կերակրոյ եւ ոչ ջրոյ։

Հերոդոտոս կ'ըսէ՝ թէ Պարսիկք երբէք չեն պղծեր զգետս մարմնոյ կարեօք, եւ ոչ իսկ ձեռուընին կը լուանան անոնց

ծէք և զմեռեալս ի հող թաղելով զերկիր ապականէք, և քրպիկար՝ չառնելով այժ տայք Հարամանոյ, և որ մեծ

մէջ, ուրիշներու ալ թող չեն տար որ ընեն. վասն զի գետոց մեծ յարգանք ունին: Ըստ Մազդէական Մատենից, Որմիզդ ստեղծեց աշխարհիս գետերը Ալպուրզ լերան կողերէն, ի պահպանութիւն և յաճեցումն իւր արարածոց և արարչութեան: Իսկ թէ ո՛ւր պարտ է դնել զմեռեալս, տես յէջ 125–127:

1. Համօրէն ապագիրք՝ քրտիկար. միայն Թէոդոսիոյ ապագիրը՝ քրտար: Երկու տեղ գործածած է Եղիշէ գրաւոր. «Եւ տպանանել Վասակ զհօրեղբայր իւր զՎաղինակ, և ինքն տարաւ զտէրութիւն իւրև քրտիկար յարքունիս» Յ. Է. 37: — Ի հայկազեան բառարանի՝ քրտիկար «բառ անյայտ. որպէս պաշտօն և պատիւ երկասիրութեամբ և ընտրողութեամբ, և պաշտօնեայ երկասէր, հաւատարիմ, երախտաւոր». մեկնութիւն մը՝ որ ստուգաբանութեան վրայ չէ հիմնեալ, այլ միայն իմաստին և տեղւոյն համեմատ ըստ կարի յարմարցուած: Արդի պարսկերէն քիրտիկար کردکار, է ածական, «արարչագործ», «ամենակարող» (Աստուած). և մակբայ՝ «կամովին», «գիտութեամբ»: Իսկ քրտար کردار է «գործ. աշխատութիւն, արուեստ, վիճակ, զբաղմունք, գործ (բարի կամ չար)»: Արդի պարսկերէնով կարելի չէ ուրեմն գոհացուցիչ մեկնութիւն մի տալ: Յազկերտ ի Նախարարաց ոչ սակ կ'ուզէ և ոչ քաջութիւն, «զաստուածս անարգէք, ասէ, զկրակ սպանանէք, զջուրս պղծէք և զերկիր ապականէք». սոքա ոճիրներ են. յորոց պարտէին խորշիլ Հայք. Ի՞նչ է այն հինգերորդը կամ գովելի բանը՝ որոց չկատարուելովն այժ կ'առնուր Հարաման:

Անշուշտ պարսկական դենին պատուիրած մէկ գործն էր: Արդ բաղանտ և փահլաւի մատենից մէջ յաճախ կը տեսնեմք քրպա, որ կը գրուի և կը հնչուի եւ քրպի (տես Մայնոխրատ. West, յէջ 121) յոգնակի՝ քրպիկան. այս է «գործք բարիք, արդիւնականք արժանի վարձուց, պատուիրեալ ի Մազդեզն դենէ». Սոքա երեսուն և երեք տեսակ են և մի առ մի նշանակեալ են Մայնոխրատի Լէ գլխոյն մէջ. գլխաւորներն առանձինն եւս եդեալ են ի գլուխ Դ, որոյ թարգմանութիւնը կը դնեմք ըստորև:

«Մեծ քան զամենայն բարի գործս (քրպա) առատաձեռնութիւն. երկրորդ՝ ճշմարտախօսութիւն և մօտ ազգականաց խնամութիւնն. երրորդ՝ եղանակային տօնք. չորրորդ՝ զհամայն կարգս պաշտամանց կատարել. հինգերորդ՝ աստուածպաշտութիւն (եազէշնի Եազատ) և օթեւանս կարաւանաց կանգնել. վեցերորդ՝ ամենուն բարիք ուղել. եօթներորդ՝ յարգել զբարին (հուշայիմ՝ որ թարգմանի ազէկ աչօք նայիլ)»: Վնասակար ճճիները սպանանելն ալ յոյժ արդիւնական գործ մի է:

Է և քրպիկար ածական, քրպիկար մարդ՝ մարդ որ առնէ գործս արդիւնականս:

Բայց ամենէն աւելի գործածուած է՝ քրպա ուքար «բարի գործք և պաշտաւք», կամ քար ու քրպա՝ «պաշտաւք և բարի գործք». ասի եւ առանց շաղկապի քրպաքար կամ քրպիքար. փաքըրպաքար թուխշա պաշտօն՝ «ի բարի գործս փութաջան լինել»:

Արդ՝ «քրպիկար չառնելով այժ տայք Հարամանոյ», ըսել է թէ զպատուիրանս Մազդեզն դենի (գործիւնական և գրաւոր գործս) չկատարելով՝ կը զօրացնէք զԱրհմն. քանզի այս վերջնոյս զօրութիւնը ամենայն չարեաց կ'աւելնար

71. Յայնժամ երանելի նախարարքն առ հասարակ զձայնս իւրեանց բարձին և ասեն յանդիմանն ամենեցուն. «Մի՛ դու, արքայ, և մի՛ զայդ այլ առ մեզ ասեր. քանզի ոչ է եկեղեցի[1] շինուած մարդոյ, և ոչ տուրք արեգական, որպէս դուդ այդ ընդ այդր կարծես՝ թէ աստուած իցէ. ոչ միայն զի աստուած չէ, այլ և կենդանի չէ: Այլ եկեղեցիք ոչ են պարգևք թագաւորաց, և ոչ արուեստ ճարտարութեանց. և ոչ գիւտք իմաստնոց, և ոչ աւար քաջութեան զինուորաց, և ոչ պատիր խաբէութիւնք դիւաց. նա և բնաւ իսկ ամենևին զինչ և ասասցես յերկրաւորացն, կամ ի վեհից կամ ի վատթարաց, բնաւ ուրեք եկեղեցի ի նոցանէ ոչ գտցի: Այլ շնորհք են մեծին Աստուծոյ, ոչ միում ումեք ի մարդկանէ տուեալ, այլ ամենայն բանաւոր ազգաց, որք վիճակեալք են ի բնակութիւն ի ներքոյ արեգականս: Հիմունք նորա եդեալ են ի վերայ հաստատուն վիմի. ոչ ներքինք շարժել կարեն, և ոչ վերինք դղրդեցուցանել: Եւ զոր երկինք և երկիր ոչ դողացուցանէ, մի՛ ոք ի մարդկանէ խորհեսցի յաղթել նմա: Հա՛պա, որով օրինակաւ զինչ կամիս առնել՝ կատարեա. պատրաստ եմք ամենեքեան առ ամենայն մեքենայս հարուածոյն տանջանաց՝ զոր սպառնացար, ոչ միայն ի չարչարել, այլ և ի մեռանել: Եւ եթէ դարձեալ ես զնոյն բանս հարցանես, ի միջէ միջէ լուիցես առաւել քան զդոյն պատասխանի»:

72. Յայնժամ դառնացեալ քան զլեղի թագաւորն, փլուզանէր անդէն ի փորին զծով կամաւոր մաղձոյն իւրոյ. և ընդ քիթմն և ընդ բերանն առ հասարակ զոլորշի ջերմախառն ելանէր, իբրև ի սաստիկ հնոցէ ծուխ թանձրացեալ: Եւ առ չհանդարտել սրտին իւրոյ՝ կատարէր զզօրութիւն մարմնոյն, և ծակատէր զբազմամթեր աման խորհրդոյն. ցրուէր և վատնէր զամենայն խորհուրդս նենգութեան: Եւ զոր ոչ երբեք կամէր իւրոց սիրելեացն յայտնել, ակամայ առաջի ծառայիցն Քրիստոսի մերկանայր և դնէր զամենայն կարգաւ:

1. Իմա՛ ոչ տաճար և ոչ իսկ ժողով հաւատացելոց, այլ հաւատք եկեղեցւոյ, քրիստոնէութիւն, ինչպէս որ քիչ մը առջև յայտնի կ'ըլլայ: — Պահման Նշղի մէջ ալ նոյն իմաստով գործածուած է բնիւթակի:

73. Երեքկնէր և չորեքկնէր զանսուտ երդումն յարեգակն, և տայր այսպէս. «Ոչ կարէք աւերել զանխառ ամուրս իմ. և ոչ որում ցանկացեալդ էք՝ փափագակի տամ՝ գտանել ձեզ. այլ զամենեսեան զձեզ և որ ի գընդիս են՝ չարաչար կապանօք ի Սակաստան[1] տամ՝ անցուցանել ընդ անճանապարհ տեղիս, որ և բազումք ի ձէնջ ի խորշակէ յերթալն սատակիցին, և մնացեալքն անկցին ի բերդս ամուրս և ի բանդս անելս: Եւ ի ձեր աշխարհն առաքեցից զօրս անթիւս հանդերձ փղօք, և զկին և զորդիս ի Խուժաստան[2] տամ՝ խաղացուցանել. և զեկեղեցիս՝ և զոր անուանէք վկայարանս՝[3] քակեցից,

1. Սակաստան, որ է Սակա-ստան, բաղանդ՝ Սակաստանն, երկիր Սակաց կամ Սկիւթաց. այսպէս կը յորջորջէր Պարսից պետութեան արեւելեան նահանգներէն մին՝ որ սահմանակից էր Հնդկաց, և որ այժմ Աֆղանիստանի մէջ կ՚իյնայ ու կը կրէ տակաւին իւր հին անունը «Սէիստան»: Անդր-Օքսոսեան խուժդուժ ազինք՝ Մասագէթք (Մասքութք) կամ Սկիւթք, որոց դէմ Կիւրոս պատերազմի գնացեր էր (559 նախ քան զՔրիստոս), վանեալ վերջերս ի Քուշանաց, խաղացեր էին դէպ ի հարաւ ու եկեր հաստատուեր էին այն մեծ լճին բոլորտիքը՝ որուն մէջ կը թափի Հէլմէնտ գետը. վասն որոյ և այդ կողմերդ նորա անուամբ Սագաստան կոչուեր էր. քանզի Պարսիկք՝ Սակ կ՚անուանէին զՍկիւթս: Մէկ մասն ալ աւելի դէպ յարեւելս գնացեր էին ի Գաւղուլ, մինչեւ իսկ Հնդուի հարաւային դաշտավայրը, որ այս պատճառաւ Հնդկային Սկիւթիա անուանեցաւ: Բուն Պարսկաստանէ ի Սագաստան երթալու համար ահագին անապատներէ անցնելու է: Մասուտի կը նկարագրէ զերկիրդ իբրեւ աւազուտ յոյժ, ուր իժք և այլ զանազան օձք կը վխտան:

2. Խուժաստան կամ Ելիմացիք (Susiana ըստ Յունաց և այժմ Խուզիստան) «յելից կողմ Դկլաթայ և ի մըտից Պարսից» (Խորեն. Աշխ. Լէ), բուն Պարսկաստանի մասն համարեալ էր: Խուժաստանի մէկ մասը լեռնոտ է, մնացածը ջրատական հողերէ բաղկացեալ գած տեղեր են՝ որ Բաբելաստանի հաւասար բարեբեր են: Յանցաւորը Սագաստան կը խրկէին որ անդ մեռնի. իսկ կինը և որդիքը Խուժաստան փոխադրուելով, ուրանոր արքունի կալուածոց մէջ աշխատելու պիտի դատապարտուէին, պիտի կորանցնէին իրենց ազգութիւնը և ընտանիքը պիտի ջնջուէր: Մահապարտին պատժուելովը՝ այն ատենուան օրէնքը չէին յագենար, այլ պարտ էր նորա զերդաստանն ալ ջնջել: Տես Յ. Գ, 44. և Յ. Զ, 3. «Եւ եթէ սատակեալ ոք ընդդէմ դարձցի, ինքն մահու պատուհաս ընդունի, և կին և որդիք այնպիսւոյն անաշխարհիկ եղեալ՝ յարքունիս երթիցեն»: — «Որով ընկալան զվճիռ մահուն իւրեանց. ուստերք և դստերք և ամենայն ընտանիք իւրեանց յանաշխարհիկս գրեցան, և ամենայն հայրենի գաւառք հատան ի նոցանէ»: — «Դժնդակ օրէնք մ՚ունէին Պարսիկք, կ՚ըսէ Ամմիանոս Մարկեղինոս, ըստ որում մէկ մարդոյ յանցանաց համար բովանդակ զերդաստանը կը ջնջէին». ԻԳ, 6:

3. Վկայարան յն. μαρτύριον, է մար-

քանդեցից և յապականութիւն դարձուցից. և եթէ ոք ընդդէմ դարձեալ գայցէ, կոխան եղեալ գազանաց՝ անողորմ մեռանիցի[1]: Եւ զամենայն աւացեալս որարից և կատարեցից առ մնացորդս աշխարհին »:

74. Եւ փագփագակի հրամայէր զպատուական Նախարարսն հանել մեծաւ անարգանօք յերեսաց իւրոց. և զզուշութեամբ հրաման տուեալ դահճապետին՝ առանց կապանաց յիւրաքանչիւր վանս պահել, և ինքն զառածեալ անդրէն դառնայր անխիթար տրամութեամբ յօթեանս ագանէր[2]: Իսկ հաւատացեալքն ճշմարտութեամբ ի Քրիստոս ոչ ինչ երկմտութեամբ թերահաւատէին յառաջին խրատուէն ի սուրբ վարդապետացն իւրեանց. այլ առաւելին խնդրէին հնարս իւրացն, թէ որպէս զանձինս

տիրոաց կատարման կամ թաղման տեղւոյն վրայ չինեալ տաճարն կամ մատուռն, յորում ամփոփին երևելի նըշխարք: Վիքայա՝ հին պարսկերէն է վկայ:

1. Փղերու կոխկռտել տալու պատժալիքդ սովկ յոխորտանք մի չէ, այլ անգթութիւն մը՝ զոր առիական ինքնակալք չէին խորշեր գործադրելէ: Անտիոքոս Եպիփան, որ թագաւորէր ի վերայ Ասորւոց և Եգիպտոսի 170 տարի յառաջ քան զՔրիստոս, և բազմաթիւ Հրէայս գերի տարեր էր յԵգիպտոս, երբ չկրցաւ սոցա ընդունել տալ զպաշտամունս կռոց, « կոչէր զՀերման փղապետ մեծաւ սաստկութեամբ, վառել զփիղսն ի վաղիւ անդր, զի առանց յապաղելոյ պատրաստեսցէ զնետզէնս խնկալիցն՝ զայրացուցեալս կնդրկաւ՝ զազանացուցեալս անապակաւ, ի հրապարակ ածել թուով իբր 700, ածել պատրաստել յահազին պատուհաս ազգին Եբրայեցւոց: Իսկ փղապետն իբրև լուաւ զհրամանն սաստկութեամբ, կատարէր և ի ժամ անդր զփիղսն պատրաստէր, և այլ սպասաւորքն ելանէին կայէին զտառապելոցն զօրս և զձեռն, և զայլ պահ գիշերապահ շուրջ զնոքօք զգուշութեամբ բիւր ազգի ածէին. ընդ այգն ընդ առաւօտն վախճան սատակման ածեալ ի վերայ ազգին տեսանէին ». Մակաբայեցւոց Գիրք Գ. գլ. Ե:

Երբ Մերուժան պարսկական բանակաւ զՀայաստան կ'աւերէր, « զարանց բազմութիւնն տայրն ի կոխումն փըղաց ». Բուզանդ, 14 : — « Իբրև էր բանակն Շապհոյ ի Զարեհաւան Բագրևանդայ, ածին ժողովեցին առաջի թագաւորին Պարսից զամենայն գերին մնացորդաց աշխարհին Հայոց, տալ հրաման տայր թագաւորն զամենայն այր ի չափ հասեալ կոխան արարեալ փղաց, և զամենայն զկին և զմանուկ հանել ընդ ցից սայլից ». Նոյն 176:

Մինչև ցայժմ սովորութիւն է ի Նահանգն Պարոտայ Հնդկաց՝ մահապարտները պառկեցնել ու գլուխներուն վրայ կոխել տալ փղաց. որք կատարեալ վարժութեամբ կը կատարեն այդ դահճական պաշտօնը:

Սասանեանց պետութիւնը սահմանակից էր Հնդկաց. փղերը՝ փղապանները ալ Հնդկաստանէ կը բերէին:

2. Թէոդոսիոյ տպ. յօրէտանն տեկանէր. Մխիթ. տպ. զօրէտանս ագանէր. Կ. Պոլսոյ տպ. յօրէտանս ագանէր, որ ընտրելագոյն թուեցաւ մեզ:

և զփրկչին հանգեան ի նեղութենէն: Եւ բազում անգամ ջանալով, և մեծամեծացն՝ որ օգնականք էին նոցա ի դրանն արքունի, խոստմունս մեծամեծս տային դնէին նոցա առ ի յոյս կարասւոյ, և ոչ սակաւ գանձս առ ժամայն ծախէին նոցա:

75. Եւ իբրև յամենայն կողմանց եկն փակեցաւ անել արգելան նոցա, յայնժամ զխորհուրդն Աբրահամու ի մէջ առեալ՝ ապաւինէին և ասէին ի սիրտս իւրեանց. «Ամենեցուն մեր նուիրեալ և եդեալ զեղբարս և զորդիս և զամենայն սիրելիս ընդ կապանօք իբրև զԻսահակ ի վերայ սուրբ սեղանոյն, ընկալ Տէր զկամաւոր պատարագս մեր, և մի տար զեկեղեցի քո յայպն կատականաց անօրէն իշխանիս այսորիկ»:

76. Մի ոմն ի նորքին խորհրդակցացն[1] արքայի ի ծածուկ ունէր զանքակ սէրն ի Քրիստոս, քանզի մկրտեալ իսկ էր յաւազանն կենդանի. և մեծապէս հոգ տանէր հնարից կենաց վշտացելոցն: Եւ իբրև տուգեաց ճշգրտիւ, եթէ զոր բազում պատանացաւ թագաւորն՝ զամենայն չարիսն կամի անցուցանել ընդ աշխարհն Հայոց, թէպէտ և ոչ ամենեցուն՝ այլ սակաւուց ի նոցանէ ուսոյց զխրատ հնարից, զի առ անգամ մի ի նեղութենէ անտի զանձինս ապրեցուսցեն:

77. Եւ մինչ դեռ գունդ կազմէին՝ որ զնոսա չկոթակ արասցեն[2] յանդարձ օտարութիւն, որպէս զբազում նախարարսն ի Վրաց աշխարհէն արարին, ի նմին ժամանակի զուժկան հասանէր ի կողմանցն Քուշանաց, եթէ գունդ հասաւ ի թշնամեացն, որ եկին աւերեցին զգաւառս բազումս արքունի: Եւ այս լինէր մեծ օգնականութիւն նոցա յերկնից: Եւ անօրէնն ճեպեալ տագնապէր զայրուձին յառաջ արձակել. և ինքն փութով տէպ զհետ երթայր. և ի խոր խոցեալ զխորհուրդսն՝[3] ցրուէր զառաջին հաստատուն երդումն:

1. Մխիթ. այլ ձեռագիր, որպէս և Թէոդորոյ առ. «մի ոմն ներքինի ի խորհրդակցացն»:

2. Չկոթակ անել՝ տարագիր անել վարել յօտարութիւն: Հայկազեան բառարանը նոյն կը համարէ զբառս ընդ յն. էքսօրիա՛, և լատ. էքսօ՛րիզիւս բառից, որք նշանակեն օտար, տարաշխարհիկ:

3. Այսպէս Մխիթ. և Կ. Պոլսոյ

78. Իսկ երկիւղածայն Տեառն զայս տեսեալ, մեծաւ յուսով աղօթելով ասէին միաբան. «Դու Տէր ամենայնի, որ գիտես զծածկեալս սրտից մարդկան, և յայտնի են առաջի քո ամենայն աներևոյթք խորհրդոց, և ոչ ինչ խնդրես վկայութիւն յերևելեաց, որպէս զի և զանգործս մեր տեսին աչք քո. արդ առաջի քո հեղումք զխնդրուածս մեր: Ընկալ, Տէր, զծածկութիւն աղօթից մերոց, և կատարեա զմեզ ի հաճոյս պատուիրանաց քոց. զի ամաչեսցէ չարն, որ խրոխտացեալ մարտնչի ընդ մեզ իշխանութեամբ անօրինին: Շարժեա, Տէր, զկամակոր խորհուրդն նենգաւորին, և խափանեսցի զկամս ամբարշտութեան նորա, և դարձո զմեզ խաղաղութեամբ խորհրդոցն անդրէն ի սուրբ եկեղեցին. զի մի յանկարծակի յափշտակեալ աւերեսցի չարաչար ի թշնամեաց»:

79. Եւ անձամբք իւրեանց զայս ուխտ եդեալ անքակութեամբ ընդ Աստուծոյ, զի հաստատուն կայցեն ըստ առաջին խորհրդոցն, պատգամ ի ներքս յղէին զնոյն խրատուն իւրեանց, իբր թէ կատարեսցին կամք անօրէնութեան նորա:

80. Զայն իբրև լուաւ թագաւորն, յոյժ ցնծացեալ բերկրեցաւ, կարծեալ զդին հասանել նմա յօգնականութիւն, շրջեալ և աւերեալ զհաստատուն խորհուրդս ծառայիցն Աստուծոյ, և ահա մատուցանեն երկրպագութիւն արեգական, պատուեալ զնա զոհիւք և ամենայն օրինօք մոգութեանն[1]: Եւ զայն ոչ կարաց իմանալ ցնորեալն, եթէ անստուեր լոյսն արեգականն արդարութեան՝ սպառէր և մաշէր զխաւարային խորհուրդս նորա, և եղծեալ ապականէին զամենայն խեղաթիւր կամս նորա: Եւ կուրացեալ ի ճշմարիտ յայտնութենէն՝ ոչ ինչ իմացաւ զպատրանս խաբէութեանն, որով վրիպեցան: Հեղոյր արկանէր առաջի նոցա զպարգևս երկրաւորս, և վերըստին ամենեցուն զպատիւս և զգահս նորոգէր[2], յառաջ

տպագիրք. Թէոդոսեայ ապ. «խոր խոցեալ ի խորհուրդն». որ աւելի յստակ և ուղիղ է: Տես Յ. Ա. 11. «Յոյժ հարեալ խոցեցան ի խորհուրդս իւրեանց»:

1. Թէ ինչ արարողութեամբք կատարուած է այդ զոհդ, տես Զոհագործութիւն, յէջ 168–170, և Յ. Բ. 66. Ծն. 1:

2. Զտանուտեարս իրենց բարձից մէջ կը հաստատէր. քանզի պաշտօնանն ե-

մատուցանելով և երևելի առնելով ընդ ամենայն տիեզերական իշխանութիւնն: Եւ անբաւ առատութեամբ ագարակս և աւանս միում միում նոցա յարքունուստ շնորհէր, ոսկեղէն և բարեկամն կարգայր զնոսա. և առ հպարտ յանդգնութեան միոյն կամակորութեան՝ կարծէր եթէ փոխանակիցի ճշմարտութիւնն ընդ ստութեանն:

81. Եւ զայս արարեալ, բազում այրուձի գումարէր ընդ նոսա, և ի մոգացն ոչ սակաւս, աւելի քան զեօթն հարիւր վարդապետս յղէր ընդ նոսա, և զմեծ ոմն իշխան մոգպետ կացուցանէր ի վերայ նոցա: Խոնարհէր և աղաչէր պատուիրելով, թէ մինչ ես ի պատերազմէս դարձեալ գայցեմ խաղաղութեամբ, ձեր արարեալ և կատարեալ իցէք զամենայն բան կամաց իմոց: Եւ այսպէս չքով և պատուով առաջնորդէր նոցա զերկարութիւն ճանապարհին մինչև յերկիրն Հայոց[1]: Եւ ինքն աւետիս խնդալից առաքէր յատրուշանս բազումս, գրէր և ցուցանէր մոգաց և մոգպետաց և ամենայն մեծամեծաց կողմանց աշխարհաց, որպէս դիցն օգնականութեամբ զգործ քաջութեան իմոյ յառաջ մատուցեալ:

82. Իսկ խոհերականքն այնուհետև յարուցեալ յիւրաքանչիւր խաւարային դարմանոց՝ իղձք լինէին վաղվաղակի զհրամանն կատարել. ձայն արարեալ յաշխարհս հեռաւորս՝ միանգամայն խաղալ գնալ յերկիրն արևմտից: Եւ մինչ չև հասեալ էին յերկիրն Հայոց, փայտ ընկենուին[2] և վիճակս արկանէին, թէ ո՛ր լեզու որո՛ւմ գա-

գած էին և պատիւնին ի բաց հանեալ էր, երբ կոչեցան ի դուռն. Տես ի վերոյ 61. ծն. 4: Դաստակերտութիւն մը կար Նախարարաց մէջ որ ամենայն նախանձաւորութեամբ կը պահուէր: Հայոց իշխանութեան տկար ատենները Պարսից Թագաւորք երբեմն զիրենք տհաճեցնող տանուտերց աթոռը իջուցեր և զոմանս ալ վարձատրելու համար՝ աւելի վեր պատուողներէն յառաջ անցուցեր էին: Տես զԳահնամակն. Սոփերք Հայկ. Պատմ. Ս. Ներսիսի, էջ 32. և ծն. 111:

1 «Յազկերտ ոչ արձակեաց զդեշխն Վրաց զԱշուշա և զերկուս որդիս Վաչակայ, զԲաբիկ և զԱտրներսեհ (տպագրին մէջ սխալմամբ՝ Ամիրներսեհ. տես Օրբելեան էջ 99), հայելով ի յառաջիկայ իրացն անյայտութիւն, կասկածեալ զգուշացաւ» Փարպ. 159:

2. Փայտով վիճակ ձգէին. որպէս վէգ կամ ուլն (տճկ. աշըգ) ընկենուլ: Մինչև ցայսօր Պարսկաստանի մէջ ամէն տարի վիճակարկութեամբ կ'որոշուի թէ ո՛ր մօպետն (այս է մոգն) ո՛ր գիւղը պիտի երթայ: Մոգական պաշտամունքն ալ

սու հասցէ յաշակերտութիւն: Զի առ հասարակ հրամանն առեալ էր յարքունուստ, որպէս աշխարհին Հայոց՝ նոյնպէս և Վրաց և Աղուանից և Լփնաց, Աղձնեաց և Կորդուաց և Ծօդէից և Դասան[1], և որ այլ ևս ուրեք ուրեք ի ծածուկ յիշխանութեանն Պարսից ունէին զքրիստոնէութիւն: Եւ յանզգայ յարձակմամբ յաւարի առնուլ փութային զգանձս սուրբ եկեղեցեացն. և իբրև զգես այնուհետև մխեանց պատահէին: Եւ լինէր գունդ զօրաց բազմաց, և չարաչարն սատանայ իբրև զօրավար ի մէջ նոցա երևէր. և անդադար յորդորելով զամենեսեան ճեպեալ փութացուցանէր: Կէտ եդեալ զժամանակն՝ զամիսն վեցերորդ[2], տագնապէին և ստիպէին արքունի հրամանաւ:

չահու աղբիւր են պաշտօնէին համար. և ամէն գիւղ հաւատարապէս օգտաբեր չըլլալուն՝ այս կերպով վիճից անդի չըրբուիր: Որո՛չմ դասուս, այս է ո՛ր խմբին, քանզի մոգերն յայլևայլ կողմանց խումբ խումբ համբայ եկած ըլլալու էին. և որովհետև քահանայութիւնը յորդւոց յորդիս ժառանգական էր, ի ցեղս ցեղս ալ բաժանեալ էին:

1. Որոյ ուղղականը Դասն: Թէոդոսիոյ ապ. Դարասն: Անունդ ստուգաբանութեան կը կարօտի: Պ. Լանկլուա կարծէ թէ Tzanni կոչեալ լեռնային ժողովուրդն են, զոր կը յիշեն Մարկեղինոս և Պրոկոպիոս: Պրոկոպեայ տուած մանրամասն աշխարհագրական տեղեկութիւններէն յայտ է թէ Ջանճիքդ կը բընակէին լեռնոտ երկիր մը հեռի ի ծովէ, որ սահմանակից էր Յունաց կայսրութեան (որ կը յանգէր յայնժամ ի Րիզէ Պոնտացւոց) Լազերու աշխարհին, Հայոց և Տրապիզոնի գաւառին. այս է ուրեմն խաղտիք կամ Ճանիք, զոր Յոյնք կը գրէին Ջանճի կամ Սանճի: Մինչև Յուստինիանոսի օրերը, Յոյնք չէին նուաճած զխաղտիս, որք ինքնագլուխ էին և ընդհանրապէս դաշնակից Պարսից: Պլինիոս մեծ Հայոց հիւսիսային սահմանաց վրայ գտնուող ազգաց վրայ խօսած ատենը, յետ Աղուանից և Վրաց, կը յիշէ Thasie և Triare անուն երկիրն որ կը տարածուէր ցլերինս «Paryadres» (Պարխար):

2. Այս է Շահրէվար: Պարսիկք ի հնուց հետէ արեգակնային տարի կը գործածէին, որ 12 ամիս ունի և մէն մի ամիս 30 օր. ութերորդ ամսոյ վերջն ալ կը դնէին հինգ օր, Աւելեաց (Փէրվարտէկան) որով տարին կ'ըլլար 365 օր: Նահանջ չունէին, որովհետև եթէ ամէն չորս տարի օր մը աւելցնէին, այդ օրդ անուն պիտի չունենար. մինչդեռ ամսոյ իւրաքանչիւր օրը մէկ մէկ դից նուիրեալ էր. փոխան սորա 120 տարին մէյմը 30 օր կ'աւելցնէին, որով այն տարին 13 ամիս կ'ըլլար: Յաւելեալ ամիսդ Պինէզէք կը կոչուէր և ամբողջ տօնախմբութեամբք կ'անցնէր: Պարսկական տարեմուտը, ինչպէս եգիպտացւոցը, գարնանային գիշերահաւասարի կը հանդիպէր, որ Նէվրուզ կ'ըսուի, որ է Նոր Օր: Ամիսները յաջորդութեան կարգաւ՝ առաջին, երկրորդ, երրորդ և այլն յորջորջեալ էին, և իւրաքանչիւր ամիս մէկ մէկ դից ալ անունը կը կրէր որում նուիրեալ էր, 1. Ֆերվերտին.

83. « *Մինչև ի Նաւասարդէ Նաւասարդ, ասէ, յամենայն տեղիս՝ ուր իցեն ընդ իշխանութեամբ թագաւորին մեծի, բարձցին կարգք եկեղեցւոյ, փակեսցին և կնքեսցին դրունք սուրբ տաճարացն, գրով համարով*

2. Արտախպէհէշդ. 3. Խորտատ. 4. Դիր. 5. Միւրտատ. 6. Շահրեվար. 7. Միհր. 8. Ապան. 9. Ադէր. 10. Տայ. 11. Պահման. 12. Իսփանտարմատ։ Ամսուան իւրաքանչիւր օրն ալ մէկմէկ դից կամ հրեշտակի նուիրեալ էր, որում անունն ալ ունէր. Յորմիզդ, Պահման, Արտախպիհէշդ, Շահրեվար, և այլն. և ամսուան համանուն օրը բարեբաստիկ համարեալ էր։ Ամսոյ Ա. Ըդ. ԺԵդ. և ԻԳդ օրերն մեծագոյն էակին նուիրեալ էին. առաջին օրն Որմիզդ կը կոչուէր, միւս երեքն Տայ որ է « Արարիչ » առանկով ամիսը կը բաժնուէր ի չորս շաբաթս, որոց առաջին երկուքը եօթնական, իսկ վերջիններն ութական օր էին։ Մասուտի կը պատմէ որ Սասանեանց բառնալէն եաքը, որովհետև Պարթիկք չունէին թագաւոր մը կամ իշխան մը որ 120 տարին մէյմը Պիճկզկ ամսին հաստատէ, Հիճրէթի 250 թուականին Նէվրուզը երկու ամիս յառաջ գնացեր էր, անանկ որ ելեւմտական տարին կը սկսէր և հարկերու և երկրին հասից հաւաքման կը ձեռնարկուէր, մինչ բերքն տակաւին հասած չէին։ Ժամանակին խալիֆայն Մութաղէտ զՆէվրուզը երկու ամսօք չափ յետաձգեց (ց11 Հազիրան) և Աւելեաց հաստատեց ըստ աստղի տարւոյ, որպէս զի ելևմտական տարին անշարժ մնայ. բայց կ'երևի թէ կրակապաշտ Պարսիկք իրենց տօնացուցին մէջ չընդունեցան Մութաղէտի այդ կարգադրութիւնը. որով տօներնին ամէն 120 տարի 30 օր յառաջ կ'երթային. Նէվրուզը ամառուան մէջտեղը, իսկ Միհրականն ալ ձմեռուան սկիզբը կ'իյնար. հատ. 9 էջ 346։ Վերջապէս Սելճուքեան Մէլէք Շահ Սուլթանը 1089ին՝ Պինէզէք ամիսը վերցուց, ու անոր տեղ նահանջ հաստատեց, և որովհետև տարին ճիշդ 365 օր և 6 ժամ հաշուելով չեղեր էին ճշմարիտ հաշուէն, Ֆէրվէրտինի առաջին օրը դարձեալ գարնանային գիշերահաւասարին բերաւ։ (Տես Նէվրուզ և զանուանս ամսոց ի Պիւրհանի Գաթի)։

Ուրեմն նախարարք և մոգք պիտի ժողովէին ի Հայաստան Օգոստոսի կամ Նաւասարդի մէջ։ Նաւասարդը առաջին ամիս հայկական տարւոյ, որ ունէր 12 ամիս, ամէն մէկ ամիսը 30 օր և ի վերջոյ 5 օր ալ Աւելեաց, որով տարին կ'ըլլար 365 օր։ Եւ որովհետև նահանջ տարի չկար, ամէն չորս տարին մէկ օր, և 1461 աննահանջ տարւոց միջոցին մէջ, ամբողջ մէկ տարի կը յառաջանայր։ Հայկական տարեմուտը ի սկզբան հաստատուած էր $^{11}/_{23}$ Օգոստոսի. և Քրիստոսի 428 թուականին կամ զարմանալի զուգադիպութեամբ, Արշակունեաց հարստութեան վերջացած տարին, աննահանջ տարւոյ Նաւասարդի առաջին օրը Օգոստոսի $^{11}/_{23}$ին, այս է աշնանային գիշերահաւասարին էր հանդիպեր վերստին։ Արդ որովհետև մոգուց ի Հայաստան խրկուիլը Թէոդոս Բի մահուանէն մէկ երկու ամիս յառաջ կ'իյնայ, այս է 450ին, ուրեմն Նաւասարդի առաջին օրն ալ Օգոստոսի $^{6}/_{18}$ին էր. (Տես Ալիշան վարդապետի Հայկայ Շըրջանն ի Բազմավէպն 1860. և Dulaurier գաղղիացւոյ Recherches sur la Chronologie arménienne, technique et historique, 1 vol. 1859. Impr. Impér.)։

տացին նուիրեալ սպասքն յաղթանիս, լռեսցեն ձայնք սաղմոսացն և դադարեսցեն ընթերցուածք անուշ մարգարէիցն: Քահանայք մի՛ իշխեսցեն ի տունս իւրեանց ուսուցանել զժողովուրդս, և հաւատացեալքն ի Քրիստոս արք և կանայք որ բնակեալ են յիւրաքանչիւր մենանոցս[1], փոխեսցեն զհանդերձս իւրեանց ըստ աշխարհական կարգաց:

84. «Դարձեալ և կանայք նախարարացն կալցեն զսուտ վարդապետութեան մոգացն: Ուստերք և դըստերք ազատաց և շինականաց կրթեսցին ի հրապարակս[2] նոցուն մոգաց: Կարճեսցին և արգելցին օրէնք սուրբ ամուսնութեան, զոր ունէին ի նախնեաց ըստ կարգի քրիստոնէութեանն. այլ փոխանակ ընդ կնոջ միոյ բազում կանայս արասցեն[3], զի աճեսցեալ բազմասցին ազգք Հայոց: Դստերք հարանց լինիցին[4], և քորք՝ եղբարց.

1. Այս խօսքէս հետեւցնել պարտ է, թէ Եղիշեայ ատենը կուսանաց վանքերը կարեւորութիւն ունենալու չափ բազմաթիւ էին: Զգեստնին ալ կը տարբերէր սովորական զգեստէն. Տես և Ց. Գ. 28. Հաւատացեալ է աստ որպէս հաւատաւոր, այս է «Ուխտաւոր», «Միանձըն» կամ «Միանձնուհի»:

2. Դիտելու արժանի բան մը. պարսկական կառավարութիւնը զրադաշտական օրէնքը ապահովելու համար ի Հայս, կ'ուզէ ուսուցանել զկանայս, մինչդամայն և ձեռք առնուլ առհասարակ տըղայոց դաստիարակութիւնը: Հրապարակ է ոչ միայն արձակավայր ի մէջ քաղաքի, այլ և յարկածածուկ տեղի, ուր ժողովի բազմութիւնն: «Արքունիքն հրապարակ կոչէին». Հայկ. բառ: Կամ իբրև մեծ սրահ ատենի, դիւան, անդր. Hall. «Եւ նստաւ Վասակ ի ներքին դահլիճն, որ էր հրապարակ մեծամեծացն». Եղիշէ Ց. Է, 37: Պարսկ. Ֆէրվարէ ալ նշանակէ յարտաք, վերնատուն, չորս կողմը պատուհաններով ամառնատուն, ինչպէս և ձմերուան յարմար բնակարան. (Տես Պիւրճ. Գաթի):

3. Աւեստայի մէջ բազմակնութիւն թոյլ տրուած չէ, բայց միայն յորժամ առաջին ամուսնութիւնը անորդի մնայ. (Տես Հարլէզի Աւեստան էջ 67): Սակայն տարակոյս չկայ թէ Սասանեանց ժամանակը բազմակնութիւնը յառաջացեր էր մանաւանդ արքունեաց և մեծամեծաց մէջ. Տես եր. 253. ծն. 1:

4. Զրադաշտականութեան ամենէն տարօրինակ վարդապետութիւններէն մէկն է ոչ միայն ներել, այլ և պատուիրել մօտ ազգականաց մէջ եղած խնամութիւնքը (քաէդվօտաթ ըստ Աւեստայի և խվէտուք-տաս՝ միջնադարեան պարսկերէն): Սա այնքան հոգեշահ և արդիւնական գործ մի է (քրպա կամ քրպի) որ դիւաց բոլոր ոյժը կը խորտակէ, մարդուս մահացու (մարկ-արժանան) մեղքը կը ջնջէ և կը տանի նորա հոգին ի Համիստագանս կամ ի Մշտնջենակեացս, (այս է հոգիք, որոց առաքինութիւնը մեղացը հաւասար ըլլալուն համար դըժոխոց և երկնից մէջտեղը կը կենան անշարժ մինչև ցյարութիւն մեռելոց)

մարք մի եղեն յորդւոց, այլ և խառնք եղեն յան-կողինս հաւուց:

85. «Պատրուճակք մի մեղցին անյաղ[1], եթէ յօ-դեաց իցէ և եթէ յայծեաց և եթէ յարջառոց և եթէ ի հաւուց և եթէ ի խոզաց: Հայք առանց փանդամի[2] մի ղանդցին, ծիւղք և քակորք[3] ի կրակ մի եկեսցեն,

եթէ գժոխոց արժանի է, և յարքայու-թիւն՝ եթէ ի ճամփադաքանաց է: Եթէ որ իւր ազգականին հետ նշանուելէ ետ-քը, նշանը աւրէ, մահու արժանի կ'ըլ-լայ. (Տես Պահմ. Եաշգ Բ. 57. 61: — Շայ. Լա–Շայ. Ը. 18. ԺԸ 3. 4): Այժմ Բարսեղ, Բահլաւի գրոց ընթացքոսեալ մեկնութիւն մի տալով, կը ջանան ա-պացուցանել թէ պատուիրեալ ամուս-նութիւնքն եղբարց և քերց զաւակաց մէջ եղածն է, զորս իրենք ալ յայժ կը յարգեն և ոչ աւելի մերձաւոր արենակ-ցաց մէջ: Բայց մազդէական մատենից, ինչպէս և մեր տոհմային և օտար պատ-մագրաց որոշ բացատրութեանց առջև կարելի չէ գժբախտաբար ընդունիլ նո-ցա տուած մեկնութիւնը, որչափ ալ գովելի ըլլայ ջանքերնին: Ազգապիղծ ամուսնութիւնք Աքեմենեանց ժամանակն ալ սովորական էին. Քսանթոս Սարդի-կեցին որ Քրիստոսէ գրեթէ 450 ամօք յառաջ գրած էր, կ'ըսէ թէ «մոգք կ'ա-մուսնանան իրենց մարց և դստերց հետ. օրինաւոր եւս կը համարին ամուսնանալ ընդ քերց: Կանայք հասարակաց ստա-ցուածքն են. և եթէ որ ուզենայ ու-րիշի կինն առնուլ, խորամանկութիւն կամ բռնութիւն բանեցնելու հարկ չըլ-լայ. հաւանութեամբ առնն կրնայ ը-նել»: — Եղիշէ այլուր առէ. «Եւ օրէնք պարսկականք անխտիր տալով զանձինս յանառակ պոռնկութիւն»: Զար-չարանաց՝ էջ 346: Տես 44. ծն. 2:

1. «Այս յայտ են պատճառքն ուս-տի Պիւթագորաս զմիսն շնչաւորաց հրամայէր չուտել. որպէս թէ հոգի տո-տուածեղէն իցէ ի մնեղին, և վասն այնորիկ չիցէ պարտ ուտել զմիս կեն-դանեացն: Վասն որոյ և մոգքն նախ յաղեն, և ապա սպանանեն զանասունսն, զի յանդգայ եղանիցեն շունչքն ի մար-մնոց անտի: Եւ զայն ոչ գիտեն՝ թէ երկոքեան մահ սպանանեն. մի յաղելովն և միւս եւս փողոտելովն». Եզնիկ, 222: Զպատրուճակս առանց յաղելոյ մեզցը-նելը մեղք էր, որովհետև Որմզդայ ա-րարածքն էին: Իսկ յաղել՝ չէ մորթել, այլ «նուիրել գից» հանդերձ պէսպէս արարողութեամբք յառաջ քան զզենուլն. տես էջ 114, 168:

2. Թէոդոսիոյ ոտղ, փանամ: փան-դամ կամ փադամ, արդի պարսկ. բա-ռագրոց մէջ պատամէ پادام, նշանակէ տպեալ լաթ կամ կտաւ: Աւեստայի լե-զուաւ թաիդիտանա. Բահլաւի՝ թատամ. բիւզանդ գրութեանց մէջ բէնօմ: — փա-դամն՝ բամբակեայ երկու կտոր ճերմակ լաթէ քող մի է, զոր ունչաց կամարին վրայէն թոյլ կերպով կը կախեն, և կ'իջ-նէ առ նուազն երկու ըթաչափ ստորև և կրկին լարիւք գլխուն ետևը կը կա-պուի: Մոգերն երեսնին կը ծածկեն այդ քօղով կրակին մերձեցած ատեննին. ո-րովհետև արտաշնչութիւնը անսուրբ է և կրնայ պղծել զհուրն: Այլևայլ հան-գամանաց մէջ աշխարհիկք ալ պարտա-կան են փադամ գործածել, կամ փա-դամի տեղ բերաննին և ռնգունքնին ծածկել շապկին ծայրովը:

3. Ծիւղք և քակորք պիղծ են, ո-րովհետև փտութիւնը և աղտեղութիւնը դիւաց գործն են. ուստի զայդոսիկ կը-

ձեռք առանց գամփռդ[1] մի լուսոյցին. շնձրիկք և ադուէսք և Նապաստակք[2] մի մտուսցին: Օձք և մողէզք, գորտք և մրջմունք, և որ այլ ևս խառնաժնդոր բազմաճճիք են, մի կայցեն. այլ փաղ թուով համարով ի մէջ բերցեն ըստ աշխարհի չափոյն[3]: Եւ որ այլ ևս ինչ սպառք իցեն,

րակի մերձեցնել կամ դպցնելը կրակը անարգել ու պղծել է: Այս պատուէրս դժուարին էր պահել տալ ի Հայս. վասն զի այն առեն ալ ինչպէս այժմ, ինչպէս և ուրիշ լեռնային և անփայտ տեղուանք, քակոր կը վառէին գիւղացիք կերակուրնին եփելու կամ տաքնալու համար:

1. Գումէզ՝ արդի պարսկ. քումիզ մէզ. բայց աւեստայի և բահլաւի գրոց մէջ Gomez է կովու մէզ, և այդ նշանակութեամբ իմանալի է աստ: Բարսիք մինչև ցայսօր կովու ջրվաթ կը գործածեն: Աղտեղութիւնը կամ պղծութիւնը նախ պէտք է գմիզաւ լուանալ ապա ջրով: Եթէ սրբելու նիւթը կաշեայ կամ մետաղեայ է, հարկ է երիցս կովու միզաւ լուանալ և աւազով շորցնել և յետոյ երիցս ջուր արկանել (տես Շայ-Լա-Շայ գլ. Բ, Գ): Պրահմանք ալ ներքին աղտը մաքրելու համար կովուն հինգ տեսակ արտաձգութիւնքը կը գործածեն, որոց մին է մէզ: Այդ սովորութիւնդ ձեռացած է անշուշտ այնպիսի հին ժամանակէ՝ յորում կովու մէզը հիւանդութեանց մէկ հատիկ դեղ համարեալ էր: Մինչև ցայժմ Եւրոպիոյ մէջ անգամ գիւղացի բժիշկներ կովու թրիք և մէզ կը մատակարարեն հիւանդաց (Տես Պ. Հաւկի, Essays, էջ 285): Գումէզը սակայն այն աղտեղութիւնը մաքրելու համար է, որ մարդուս մարմինը, զգեստները և գործածած անօթները կը պղծեն, զոր օրինակ մեռելատիք կամ տեսատեսութիւն:

2. Շնձրիկք և ադուէսք և Նապաստակք և ուրիշ օգտակար կենդանիք Որմզդայ արարածքն են, Շնձրի՝ գաղղ. Loutre, է չորքոտանի շատակեր՝ որ գետերու և լճակներու եզերքէն չբաժնուիր. և այնքան կը սիրէ ձուկ՝ գորտ և գայլ ջրային բազմաճճիս, որ երբեմն լճերու մէջ կենդանի չթողուր՝ կը մաքրէ բոլորովին: Շատ արագ և դիւրութեամբ կը լողայ: Երբ ձուկ, խեցգետին, գորտ կամ ջրային մուկ և առանց նման անասուն չգտնէ ուտելու համար, ջրային ծառերով և խոտերով կը ճարակի: Շնձրին ուրեմն մեծ ծառայութիւն կը մատուցանէ բարի արարչութեան:

Ադուէսն հաւանօրէն շան ցեղէն ըլլալուն համար բարի սեպուած էր:

Նապաստակն է գլուխ (Իստ) երէից և վայրի անասնոց, որպէս ցորենն՝ արմտեաց, սպիտակ ձին՝ ձիոց, այր իմաստուն, կրօնաւորեաց, շնորհապարտ և ճշմարտախօս է գլուխ նմանեացն և այլն. Տես Մայնօխրատ ԿԱ:

Իսկ մուկն, մողէզք, օձք, կրիայ, ձուկն, խեցգետին, գորտ և առհասարակ ամենայն կենդանիք որ զջուրս պղծեն, ինչպէս և այլ բազմաճճիք (խարֆաստր) Արհմենի կը պատկանին: Խեղճ մրջիւնն ալ այս վերջնոց կարգէն էր, որովհետև ցորենի հատիկները կը վերցնէ: Մկանց ոխերիմ թշնամին՝ կատուն ալ պիղծ էր, վասն որոյ մազդեզանց տանց մէջ կատու չէր պահուեր. թէպէտ մըկները ջարդելու համար ուրիշ ամենայն միջոց անպակաս կը գործածուէր: Մեռելոց հոգւոց համար՝ մեծագումար վըճարմամբ կը գնէին այդ չար սեպուած կենդանիներէն ու կը սպաննէին. Տես ի վերոյ էջ 145, 146:

3. Այդ սողունները և այլ ճիւա-

կամ՝ զոհից կամ՝ պատմողից, ըստ տօնական կարգին՝ տարեւոր թուականին, եւ ըստ կազճաթիւ մնխրաշափ. կարգին[1]:

86. «Զայս ամենայն որ ասացաք, առ ժամանակ մի մինչեւ ի գլուխ տարւոյ կատարեսցեն ամենեքեան. եւ զայլն ամենայն առ յապա պատրաստեսցեն»:

կար կենդանիները ժողովել կու տային, որը թուով համարով, ո՛րը ընդունակութեան չափով: Եւ որովհետեւ այդ չափերդ (քիլէ) զանազան մեծութեամբ էին, ինչպէս այսօր Օսմանեան Պետութեան մէջ, Եղիշէ կ'ըսէ՝ թէ ըստ արքունի չափոյն պիտի պահանջուէր. ի՞նչ է սորա ընդունակութիւնը. կարելի չեղաւ մեզ ստուգել. գուցէ քիչ մը ըստորեւ գրուած կապինն ըլլայ:

1. Եւ ուրիշ ինչ սպասք, այս է ծառայութիւնք եւ պարտականութիւնք որ կային, կամ զոհք եւ սպանդք, խմնարին կամ արիւնաւոր զենմունք եւ պատարագք՝ անոնք ալ ըստ տօնական կարգին պիտի կատարուէին եւ ըստ տարեւոր թուականին, այս է ըստ արեգակնային հաստատ տարւոյ: — Տօներուն գլխաւորներն էին վեց Կահանբարք, Աւեստայի լեզուաւ Եայրիա, որ է «տարեկան տօնք»: Բայց զգոյշ ճիշդ օրը որին պարտէին պահել. ժամանակի չփոթութիւն մը ի դերեւ կը հանէր թէ զհանդէսն եւ թէ զզոհ: Տումարի խնդիր մը մեծ երկպառակութեան եւ հերձուածոց պատճառ եղած է Հնդկաստանի փարսիներուն մէջ. (տես Հաւկ՝ Essays. 57): Որմիզդ մէկ տարուան մէջ ի վեց արարուածս ստեղծեր էր զաշխարհ. առաջին Կահանպարը՝ Մայտեօ-զարամայա՝ յորում արար զերկինս, Արտիպահիշտ ամսոյ 15ին այս է տարւոյ 45դ օրը կ'իյնայ կամ լաւ եւս 40էն ց45, որովհետեւ Կահանպարք՝ հինգ օր կը տեւեն, բայց վերջին օրն ամենէն մեծն է: Երկրորդ Կահանպարը՝ Մայտեօ-շեմա, տարւոյն 105դ օրը. Փայրիշահիյա՝ յիշատակ ստեղծագործութեան ջուրց: Երրորդ՝ Շահրեվար ամսոյ 30դ եւ տարւոյ 180դ օրը, ի յիշատակ արարչութեան երկրի: Չորրորդ՝ Այաթրիմա յ210դ աւուր, ի յիշատակ արարչութեան բուսոց: Հինգերորդ՝ Մայտեարեա յ290դ աւուր, յորում ստեղծան հօտք եւ անդեայք: Վեցերորդ՝ Համասպաթմէտայա, յ365 աւուր տարւոյն ի յիշատակ ստեղծման մարդոյ: Իսկ մոխրոյ գալով՝ ամենայն տան կապինով չափել քանակութիւն մը պարտական էր բերել. այդ կանոնդ հաստատեր էին մոգք, որպէս զի գիտնան՝ թէ Հայք ճշդիւ կը կատարեն թէ ոչ կրօնական պարտականութիւնները: Պարըսկաստան ալ կայր այդ սովորութիւնդ: Ամէն գիւղի կամ աւանի մէջ յարկածածուկ կրակ մը պիտի ըլլայ, որ Ատերան կը կոչի: Երբ խոհանոցի մէջ կրակ մը երեք անգամ ծառայէ, փարսիք զայն յԱտէրան կը տանին, նոյնպէս եւ տան մէջ գտնուած ուրիշ կրակները եւ մոխիրները յետ եօթն աւուրց: Ժամանակէ մը ետքը արտերուն մէջ կը սփռեն ի պարարտութիւն հողոյ: Բազմոտ լեզուաւ քաբիզ, արդի պարսկերէն քաֆիզ, որ անշուշտ մեր կապինն է, է չափ ընդունակութեան արմտեաց, շուրջ 30 լիտր. (Journ. Asiat. 1865, էջ 236). Յուն. քա՛փսս. Լատ. քապսուս. (Տես Pahlavi-Pazand Glossary եւ Johnsonի պարսկերէն բառարանը):

87. *Իսկ զայս ամենայն հրաման պատուիրանաց առեալ մոգուց և մոգպետաց, զտիւ և զգիշեր փութային հասանել յաշխարհն Հայոց. և առ յոյժ խնդութեանն ոչ երբէք յագէին երկայնութեամբ ճանապարհին։*



# ԵՐՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

## ՎԱՍՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

## ՍՈՒՐԲ ՈՒԽՏԻՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ[1]

1. *Թէպէտ և ոչ իցեմք բաւական տալ զամենայն չարիսն, որ անցք անցին անդէն ի կարաւանին ընդ-գունդն Հայոց, սակայն և ոչ լռել կամիմք ծածկելով*

1. Ուխտ եկեղեցւոյ ուխտ քահանայու-թեան կամ սոսկ ուխտ ըսելով կ'իմանայ եկեղեցականս, «Սուրբն Ղևոնդ բա-զում ուխտիւ ի տեղւոջ անդ դիպեցաւ և ոչ թոյլ ետ»․ Ց. Գ. 12։ — Աւեա-դայի լեզուաւ՝ հոգևոր, բազանոս՝ հոգևոր, պաշտօներէն ուխտ է բառ կամ խօսք բարբի։ Արդ ինչ էր հայ եկեղեցւոյ դա-սակարգութիւնը։ Զարմանալի է յայտ այս գրութեանս մէջ տեսնուածը։ Եղիշէ կաթողիկոս անունը չիտար Յովսէփայ։ Եկեղեցւոյ աւագանին յեպիսկոպոսաց կը բաղկանայ․ և այդ տիտղոսը ալ ոչ ըստ ձեռնադրութեան է այլ ըստ պաշ-տօնի։ Յովսէփ ընտրեալն Եկեղեցւոյ ի կաթողիկոսութիւն, որ յերիցութենէ անմիջապէս բարձրացեր էր յաթոռ Լու-սաւորչայ և զոր Պարսից դուռը չէր ուզած հաստատել, սոսկ եպիսկոպոս կը յիշատակի, որպէս Սուրմակ որ տա-կաւին արքայից արքային կարգած կա-թողիկոսն էր, և այլ դէտք և գլուխք գաւառաց և նահանգաց, յորոց ես ո-մանք երէցք են ըստ ձեռնադրութեան։ Ըստ Եղիշեայ՝ եպիսկոպոսութիւնը իշ-խանութիւն մի է, զոր կրնայ վարել եւ սոսկական քահանայն եթէ արժանաւոր և կարող դատուի այնմ։ Այդ էր ար-դարև ընդհանուր Եկեղեցւոյ հին սովո-րութիւնը։ Բայց այդ սակաւապետական ձեւը շատ այլայլութիւններ կրած էր ի Հայս Լուսաւորչէն ի վեր, ինչպէս և յայլ Եկեղեցիս՝ արևելեան կամ արևմը-տեան։ Հին կարգաց նորէն դառնալ պէտք եղաւ անշուշտ պատմութեան ժամանակ, քանզի հաւասարական գրու-թեամբ միայն կրնար միութիւնը զօրա-ւոր ըլլալ․ և ամէն բանէ աւելի յա-ռաջադասութեան կամ առաջնադասու-թեան վէճ և խնդիրներէ պարտ էր զգուշ կալ։

Եպիսկոպոսէն ետքը կու գայ քորե-պիսկոպոսը, որ ինչպէս տեսանք՝ եպիս-կոպոսին հրամանէն կախեալ տեսուչք (inspecteurs) էին։ Ապա գան երէցք, այս է ծերագոյնքն, կամ արժանաւորա-գոյնքն ի քահանայից․ որք կամ եպիս-կոպոսական աթոռոյն խորհրդականքն

զվիշտս նեղութեանն . այլ տասցուք փոքր ի շատէ, զի ձայնակիցք լիցուք այնոցիկ, որք դառնապէս զմեզ[1] ողբային. զի և դու[2] իբրև լուիցես, ոչ սակաւ արտասուս հեղուցուս ի վերայ ազգին թշուառութեան:

2. Զի ահա անդէն ի մեծ բանակին Պարսից՝ յաղգաց ազգաց, որք էն հաւատացեալ ի սուրբ աւետարանն Քրիստոսի, իբրև տեսին զչար յանձնառութիւնն Հայոց, յոյժ հարան ի միտս իւրեանց, և կործանեցան անկան ի վերայ դիմաց իւրեանց[3]: Բազումք ի նոցանէ թախծեալք ի սուգ ծանրութեան, հարեալ յոգիս և դառնացեալ յարտասուս, եկին և յանդիմանեցին զնախարարսն, և յոյժ դարավեցին զուխտ քահանայութեանն: Զզուէին զամենեսեան և ասէին. «Զի՞ առնիցէք զսուրբ կտակարանդ, և կամ յո՞ տանիցէք զսպաս տէրունեան սեղանոյն. մոռանայցէ՞ք արդեօք զհոգևոր օրհնութիւնդ, և կամ լռեալ դադարիցէ՞ք ի մարգարէական ձայնիցդ: Կափուցէք զաչս

էին, և կամ Նախարարական տանց մէջ ուսագ քահանայ: Ցետ նոցա՝ քահանայք. յետոյ ապա՝ սարկաւագունք. մենակեացք:

Կանանց մէջ ալ կային հաւատաւորք (Religieuses), որք բնակէին ի կուսանոցս: Սակայն կրօնական գործունէութիւնը սեփականութիւն մի չէ վերայ գրեալ դասուց և ոչ իսկ առհասարակ արանց. ամուսնացեալ կանայք ևս կը մասնակցին ոչ միայն յայտնի կամ լռելեայն հաւանութեամբ այլ և արդեամբք՝ զինուք և սաղաւարտօք, սուր ընդ մէջ և վահան ի ձեռին:

1. Եղիշէ Նախարարաց հետ Պարսկաստան գնացեր էր, անոնց արեգական պաշտօն մատուցած ատենը: Հայ քահանայք ալ կային, որ հաւաներ կամ մասնակցեր էին այդ ուրացութեան, ինչպէս որ ընթերցողը պիտի տեսնէ սոորև. թէպէտ շատ չանցաւ՝ անջատեցան սոքա ի նախարարացն: Սակայն եթէ տանուտէրց գլխաւորները, ինչպէս և սոցա աւելի մտերիմ եղող եկեղեցականք, որոշեր էին մերժել անմիջապէս զկրակապաշտութիւն, երբ ի Հայաստան դառնային, այդ գաղտնի մտածութիւննին չէին կրնար ամենուն հաղորդել. ուրվհետև բազմութեան մէջէն մէկը կրնար մատնել զիրենք և աւելի մեծ վըտանգաց ենթարկել. ուստի շատերը անշուշտ առանց թաքուն խորհրդոյ՝ գլխաւորաց հետևելով կամ թագաւորին սաստկութենէն վախնալով ուրացեր էին ըզքրիստոնէութիւն:

2. Այս է Դաւիթ երէցն Մամիկոնեան, որում ուղղեալ է գիրքս:

3. Չափէ դուրս տխրութեան ատեն՝ երեսի վրայ իյնալ կամ գլուխը գետին զարնել (տես Յ. Գ. 31) և կամ զճակատ հարկանել և զօձիս պատառել (տես Յ. Գ. 64), հնաւուրց ունակութիւն մի է, զոր Սուրբ Գրոց մէջ ալ շատ կը տեսնենք: Չեմ կարծեր թէ աստ սոսկ փոխաբերութիւն մը ըրած ըլլայ Եղիշէ յԱստուածաշնչէ, որով իւր միտքը և գրութիւնը տոգորուած են, այլ իրական նկարագիր. արևելից համար ըսուած է թէ անփոփոխ կը մնայ:

յընթերցուածոց, և խցէք զականջս ի լսելոյ. միթէ զմտացդ անմտութիւն ո՞չ յիշիցէք. զի՞նչ ասիցէք զպատուիրեալն ի Տեառնէ. Որ ուրացի զիս առաջի մարդկան, ուրացեալ եղէց և ես առաջի Հօր իմոյ, որ յերկինս է, և հրեշտակաց սրբոց:

3. «Վարդապետք էիք առաքելական քարոզութեանցն, արդ աշակերտք[1] լինիցիք մոլար խաբէութեանն: Ուսուցիչք էիք ճշմարտութեանն, արդ ուսուցանէք զպատիր խաբէութիւն մոգաց: Քարոզք էիք արարչական զօրութեանցն, արդ զտարերս աստուածս խոստովանիք: Յանդիմանիչք էիք ստութեան, արդ և քան զստութն ստագոյնք լինիցիք: Ի հուր և ի ջուր[2] էիք մկրտեալք, արդ ի մոխիր և յաճիւն թաթաւիցիք. կենդանի Մարմնով և անմահ Արեամբ էիք սնեալ, արդ ի ճենճեր զոհից և ի շարաւս աղտեղի մրճոտիցիք: Տաճար էիք Հոգւոյն սրբոյ, արդ զոհարան դիւաց լինիցիք. քրիստոսազգեացք էիք ի մանկութենէ, արդ մերկացեալք ի փառացն դիւարար արեգական կաքաւիցէք[3]. ժառանգ էիք արքայութեանն, արդ անձամբ զանձինս արկէք ի ժառանգ գեհենին: Նոցա է պատրաստեալ հուրն անշէջ, ընդէ՞ր դուք ընդ նոսա այրեցեալ տոչորեցայք. նոցա պարարի որդն անմահ, իսկ արդ դուք պարարիցէք զմարմինս ձեր նմա ի կերակուր. խաւարն արտաքին[4] նոցա թանձրացեալ պահի, դուք յուսադրեալք ընդէ՞ր յաղարկեցայք ընդ նոսա ի նոյն խաւար: Նոքա ի վաղնջուց հետէ էին իսկ կուրացեալք, դուք զկնի կուրացն կուրացարուք. նոցա էր փորեալ զխորխորատն, դուք ընդէ՞ր լցէք յառաջագոյն: Ե՞րր ու-

1. Բառացի՝ աշակերտ, մինչ արդի պարսկերէն՝ շակերտ:

2. «Ես մկրտեմ զձեզ ջրով, ասէր Յովհաննէս Մկրտիչ, բայց որ զկնի իմ գայ նա մկրտեսցէ զձեզ Հոգւով սրբով և հրով»:

3. Մինչև ցայժմ զոհական արարողութիւնքն նուագարանօք կը կատարուին ի Բարսիս: Հին ժամանակաց մէջ Միհր աստուծոյ տօնին օրը Թագաւորն ինքնին կը կաքաւէր. Տես էջ 136–137:

4. Սուրբ Գրոց բացատրութիւն մի է ինչպէս և Աւետարանի. որովհետև Պարսիկք զդժոխս յերկնից և յերկրէ դուրս և մեկուսի կը համարէին: — Պունտահիշի դժոխոց նկարագրութեան մէջ կը գտնենք՝ «խաւար որ ձեռօք կը բռնուի» և «ժանտահոտ որ դանակով կը կըտրուի». (Pahlavi texts, էջ 114) որպէս և յաստուածաշունչ գիրս՝ «խաւար շօշափելի»:

անիցէք զբազմութիւն անուանս աստուածոցն նոցա, այն՝ որ չէք ուրեք ի միջի և ոչ մի: Թեթևացեալք ի ծանր բեռանց՝ անձին անձամբ առէք զբեռն ծառայութեան. ազատեալք ի մանկութենէ՝ չարաչար մտէք յանազատելի ծառայութիւնն:

4. « Եթէ գիտէիք և երևէր ձեզ յայտնի, սուգ առին երկինք ի վերայ ձեր, և թախծեցաւ երկիրս ի ներքոյ ոտից ձերոց: Հրեշտակք ի վերուստ կան ձեզ բարկացեալք, և ի յերկրէս մարտիրոսքն են ձեզ ցասուցեալք: Ողորմիմ ողորմիմ սիրելեաց ձերոց, և բազում անգամ ողորմիմ անձանց ձերոց: Զի թէ մարդոյ փրկեալ էր զձեզ ի ծառայութենէ, և դուք անձամբ զանձինս այլում ի ծառայութիւն[1] արկանէիք, ի մեծ բարկութիւն բորգէիք զառաջին տէրն ձեր: Իսկ արդ զի՞նչ անիցէք զաստուածատուր հրամանն. Ես եմ Աստուած, և չէք այլ ոք բայց յինէն, և ոչ գիտի իմ այլ ոք լեցի Աստուած. Աստուած նախանձոտ եմ ես, հատուցանեմ զմեղս հարց յորդիս, մինչև յեօթն դար: Իսկ եթէ որդիքն արդարք վասն հարցն մեղաց ընդունին զատակումն, յորժամ ինքեանք որդիքն իսկ մեղիցեն, ո՞չ ահա միանգամայն զանձանց և զհարցն տայցեն ի միասին:

5. « Դուք էիք մեր ամուր պարիսպ ապաստանի. յորժամ ամի վտանգ հասանէր, առ ձեզ յանդորր եղանէաք. արդ մեծ ամուրդ այդ հիմն ի վեր տապալեցաւ: Դուք էիք մեր պարծանս առ թշնամիսն ճշմարտութեան, արդ դուք էք մեր նախատինք առ նոյն թշնամիս: Ցայժմ վասն ձերոյ ճշմարիտ հաւատոյն և ի մեզ փոքր ի շատէ խնայէին. և արդ ի պատճառս ձեր և զմեզ անողորմ դատին: Ոչ միայն զանձանց դատաստան[2] տալոց էք առաջի ահեղ ատենին Աստուծոյ, այլ և բազմաց ամենեցուն՝ որ ի ձեր պատճառս և զնոսա ես չարչարեսցեն »:

6. Զայս և առաւել քան զայն խօսեցան ընդ մեծամեծս աւագանւոյն, և յաւելին ցաւս ի վերայ ցաւոց: Ցայտնել և ցուցանել նոցա զխորհուրդն ոչ կամէին, լռել և չառնել պատասխանի անհնար էր. հեղձամղձուկ եղեալ

1. Ծառայութիւն՝ ստրկութիւն, գերութիւն. esclavage.

2. Դատաստան՝ ատենադատ:

մեծապէս յարտասուս հարկանէին: Ընդ նոսին դասնա-ցեալ լսողք և տեսողք յանմխիթար սուգ լինէին ամե-նեքեան:

7. Յայնժամ ժամանակի քահանայքն՝ որ էին անդէն ի գործն, առ չժուժալ սրտից բարկութեան քակեալ որո-շեցան ի նախարարացն և յամենայն բազմութենէն. և զմի ոմն[1] դեսպան ձիով առաքեցին փութապէս յաշ-խարհն Հայոց: Գայժ ի բերան առեալ և զօձիս պատա-ռեալ[2], հասեալ ի ժողովս եպիսկոպոսացն, մեծապէս յար-տասուս հարեալ կայր և պատմէր զամենայն անցս չարչա-րանացն. այլ ոչ յայտնէր նոցա զծածկութիւն խորհրդոցն:

8. Յայնժամ ժամանակի սփռեցան եպիսկոպոսքն յիւրա-քանչիւր իշխանութիւնս, և առաքեցին զքորեպիսկոպոսս ի գեօղս և յագարակս և ի բազում ամուրս լեռնային գաւառացն: Գրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց և կանանց, շինականաց և ազատաց, զքահանայից և զմե-նակեցաց. խրատ եդին, պնդեցին և արարին զամենե-սեան զինուորս Քրիստոսի:

9. Եւ յառաջին բան խորհրդին այս հաստատեցաւ. Ձեռն եղբօր հարազատի ի մերձաւոր իւր լիցի՝ որ ան-ցեալ իցէ ըստ ուխտ պատուիրանին Աստուծոյ. և մի խնայեսցէ հայր յորդի, և մի ակն առնուցու որդի հօր պատուոյն: Կին կռուեսցի ընդ առն ամուսնոյ, և ծառայ դարձցի ընդդէմ տեառն իւրոյ: Օրէնք աստուածային կացցեն թագաւոր ի վերայ ամենայնի, և ի նմին օրինաց ընկալցին յանցաւորք զպատիժս դատապարտութեան:

10. Եւ իբրև այս այսպէս հաստատեցաւ կազմեցաւ, երևեցան ամենեքեան զինեալք և սաղաւարտեալք, սուր ընդ մէջ և վահան ի ձեռին՝ ոչ միայն արանց քաջաց, այլ և կանանց առնականաց:

11. Իսկ գունդն Հայոց ամենայն օգնականօքն հան-դերձ և մեծացն բազմութեամբ յամսեանն չորրորդի[3]

1. Այս պատգամաւորս ասորի քա-հանայ մի էր որ խրկուեցաւ ի Հայս նախարարաց ուրացութիւնը իմացնելու համար:

2. Ահա դարձեալ մեր նախահարց սովորութեանց նկարագիր մը:

3. Այս է Պարսից արեգակնային Դիր ամիսն որ ըստ Պունտահիշի կը սկսէր Ամառնային արևադարձէն տասն օր յա-ռաջ. տես գլ. ԽԵ. 3, այս է Յունիս—Յուլիս 449:

449 եկին հասին յաշխարհն Հայոց, ի գիւղաքաղաք մի մեծ՝
Յունիս որում անուն էր Անգղ[1]: Բանակեցան, բոլորեցան, դե-տեղեցան, և յամենայն կողմանց անդր ժողովեցան[2], և էին անթիւ բազմութիւն:

12. Եւ եղև յետ աւուրց քանի և հնգից, մոգպետն ինքնին մոգօքն հանդերձ հատանէր մեծաւ զօրութեամբ՝ քակել զդրունս եկեղեցւոյն յաւուր միաշաբաթուն. ըղ-փորձ առնուլ կամէր զառաջարկութեան գործոյն: Իսկ սուրբն Ղևոնդ երէց միաբանութեամբ առաջին խորհըր-դակցօքն[3] և բազում ուխտիւ ի տեղւոջ անդ պատրաս-տական դիպեցաւ, ոչ ետ թոյլ: Թէպէտ և ոչ էր տեղե-կացոյն միայն ամենեցուն նախարարացն, և ոչ զօրու-թեան ուժոյ մոգպետին, ոչ ինչ եկաց մնաց ամենայն եպիսկոպոսացն, և ոչ առ սակաւ մի համբեր անօրէն իշ-խանին թողացուցանել. այլ բազում ամբոխ ապաղակի զօրացն և մոգացն հատուցանէր: Քանզի վիրգս ի ձեռն առեալ՝ զկառափունս մոգացն և մոգպետին[4] ջարդեցին. փախստական յիւրաքանչիւր վանս արկանէին, և ինքեանք զպաշտօնն բարձրացուցեալ յեկեղեցւոջն՝ զանբռնական կանոնն կատարէին, մինչև ի նոյն միաշաբաթին անդա-դար լինելով:

1. Ի հարաւային ծայր վիճակին Արտամետայ, յաջակողմն խոշաբ գետոյ որ թափի ի ծովն Վանայ, կայ Անգղ գիւղ և վանք. յեկեղեցւոջն ի վիմէ միոյ ու-ծելոյ ի Ս. Թադէէ, որպէս աւանդեն, բամի իւղ որպէս քիրտն կայլակեալ (Տեղագիր Հայոց Մեծաց 91)։ Խօթա-նատուն անէ բաղկացեալ հայու. գիւղ։ Բայց առիկայ չէ Եղիշեայ յիշածը։ Ըստ Փարպեցւոյ՝ Անգղ ամուր բերդ մի է (էջ 174) ի Ծաղկոտան գաւառին Բա-գրեւանդայ, և այս ճանապարհաւ կու-գային Նախարարք և մոգք ի Հայաս-տան։ Պրոկոպիոս ալ կը յիշէ զաւանդ զոր կոչէ Անկլօն, որ յոյժ անմատչելի կիրճերու մէջ դիրք ունէր և 120 աս-պարիզօք հեռի էր ի Դւնայ։ «Եկեալ հասանէր ի գետն Արածանի, որ հոսի ի ծաղկաւէտ լերանցն Անգղայ գաւառին յակունքն Եփրատայ հանդէպ լերինն Այրարատայ»։ Պատմ. Աղեքսանդրի. 89։ — Ասպարէզդ կամ Stadium է 125 քայլ երկրաչափական կամ 184 մէտր. արդ 120 ասպարէզ՝ 22 քիլոմէտր են. մինչ Դւինէ ի Բագրեւանդ առ նը-ւազն 50 քիլոմէտր ըլլալու է։

2. Նախարարք, 700 մոգք և բազում այրուձի ժամադիր եղեն յԱնգղ, ուր և ժողովեցան։

3. Առաջին խորհրդակիցներն՝ այս է այն եկեղեցականքն, որք խումբ խումբ սփռեցան ի գաւառս և ի գեօղս և ի լեռնային գաւառս՝ ժողովուրդը գրգռելու համար։

4. Մոգպետը վիրաւորուեցաւ, բայց չմեռաւ։

13. Եւ յետ այս տագնապի խռովութեանն՝ յամենայն կողմանց յաշխարհէն Հայոց բազմութիւն արանց և կանանց ի տեղին հասանէին: Եւ անդ էր տեսանել զմեծ աղէտ տարակուսին. ոմանք զգերդաստանն իւր յազգականաց հատէին յաչաց իւրեանց. այլքն բարձրաձիչ աղաղակաւ՝ իբր այն թէ զերկինս դողացուցանէին. իսկ կէսքն խիզախելով և ի զէնս ընթանալով՝ զմահ քան զկեանս ընտրէին: Իսկ ոմանք ի սուրբ ուխտէ եկեղեցւոյն՝ զաւետարանն ի ձեռն առեալ, աղօթիւք առ Աստուած կարդային, և այլք ըղձանային զպատառումն երկրին, զի անձանց լիցի գերեզման: Եւ այսպէս շատ տագնապի ի վերայ մնացելոցն հասուցանէին: Բազում անգամ աղաչէր զօգնականսն իւր, զի ի մահուանէ կարասցեն զնա ապրեցուցանել, և ողջանդամ անդէն յարքունիս հասուցանել:

14. Այլ վասն գործոյն յոր եկեալն էր՝ ստիպէր զնոսա և ասէր. Թող զրեմ և ցուցանեմ մեծ թագաւորին, զի ի բաց թողացուցանէ զայսպիսի իրաց առաջարկութիւն. զի եթէ ինքեանք աստուածքն եկեսցեն յօգնութիւն, չէ հնար օրինացս մոգութեան ի Հայս առնուլ զհաստատութիւն, որպէս զփորձ առի միաբանութեան ուխտին եկեղեցւոյ: Զի թէ էին զօրք աշխարհիս մոգք[1], ոչ ինչ խնայէին ուքս ի նոսա սաստկմամբ՝ ոչ միայն զարտաքինն, այլ և յեղբարս և յորդիս և յամենայն մերձաւորս իւրեանց, նա և ոչ յանձինս իւրեանց: Մարդք, որ ոչ ի կապանաց զանգիտեն, և ոչ ի տանջանաց երկնչին, և ոչ ի ստացուածոց պատկառին, և որ յետին չարն է քան զամենայն չարիս, մահ քան զկեանս ընտրեն, ո՞վ է որ կարէ նոցա դիմակաց լինել:

1. Մոգ. Աւեստայի լեզուաւ՝ մակուշ կամ մագուշ » Բեհաստանի մէջ՝ մակուշ յուն՝ մագոս, լտ. մակուս. արաբ. մաճուս. միջնադարեան պարսկ. մուղ, մօղ, մով, որոյ յոգնակին մուղան կամ մովան:

Մակուշ, մուղ, որպէս և հայերէն «մոգ» երկու նշանակութիւն ունի, ա. քահանայ, վարդապետ զրադաշտական. բ. հեռուէն մոգական կարդաց և օրհնաց. այդ երկրորդ իմաստով իմանալու է ատանոր որպէս և ի 18 սաղմ.՝ «մոգն և զանդիկն և հրէայն և քրիստոնեայն»: և Յ. Բ 142 «քրիստոնեայ էր յառաջ, և Յազկերտ բանի մոգ արար»:

15. «Լուեալ իսկ իմ՛ էր ի նախնեաց մերոց, եթէ յաւուրս Տաճկաց[1] արքայից արքայի, իբրև սկսաւ ուսումն այդ աճել և բազմանալ և լնուլ զամենայն երկիրն Պարսից, և ես անդր յարևելս հասանել, իսկ որ վարդապետքն էին օրինացն մերոց՝ յորդորեցին զԹագաւորն, զի մի՛ ընաւ ամենեւին բարձցին օրէնք մոգութեան յաշխարհէն, եւ հրաման տուեալ, զի լռեալ դադարեսցէ քրիստոնէութիւնն: Եւ որչափ նա կամեցաւ արգելուլ, եւ քան զեւ աճեցին և բազմացան, և հասին մինչև յաշխարհն Քուշանաց, և անտի ի հարաւակողմն՝ մինչև ի Հնդիկս[2] տարածեցաւ:

16. «Եւ այնպէս աներկիւղ և համարձակք էին յաշխարհին Պարսից, մինչև յամենայն քաղաքս աշխարհին եկեղեցի շինեցին, որ զանցուցանէր պայծառութեամբ զԹագաւորական արքունեօքն[3]: Շինէին և վկայարանս իմն անուանեալս, և զնոյն զարդ եկեղեցեաց զարդարէին, և յամենայն տեղիս՝ յապատս և յանապատս միայնանոցս

1. Երրորդ դարուն սկիզբէն ի վեր, կրօնական մեծ շարժում մի կը դղրդէր զարեւմուտս Ասիոյ. կոոց պաշտամունքը ամէն կողմանէ զօրաւոր հարուածներ ընդունելով կը քայքայէր. ժողովրդոց միտքը աւելի բանաւոր և գոհացուցիչ հաւատք մը կը փնտռէր։ Այս ընդհանուր պէտքը քաշեր էր զՔրադաշտականութիւն որ հինգ հարիւր տարուոյ չափ անարգանաց և մոռացութեան ենթարկուելէ ետքը, Սասանեանց կանգնուելովը կը վերանորոգէր, ու կարգէ դուրս բանութեամբ կը յառաջանայր. զՔրիստոնէութիւն որ հզօրապէս կը տիրանայր ի Հայս և կը սփռէր տարածանէր ի Բաբելաստան, ի Բակտրիա և մինչև ցՀնդիկս. զՀրէութիւն որ ի բազմաց հետէ հաստատեալ էր ի Միջագետս և ինքեան կեդրոնատեղի ընտրեր էր զԲաբելոն. հրէութիւնն անգամ որ ընդհանրապէս այնքան անշարժ և անփոփոխ է, այն ատեններս կարծես թէ նոր կեանք մը և նոր ձև մը կ'աշխատէր առնելու այն դպրոցաց մէջ, ուր կը շարադրուէր մեծահատոր և տարօրինակ հաւաքածոյն, որ Բաբելոնական թալմուտ կը կոչուի։ Այդ երեք կրօնից իրարու չփման և ընդդիմակցութեան միջոցին՝ Մանի կամ Մանէս անուն ոմն կը յանդգնէր ոսցա իւրաքանչիւրէն, ինչպէս և ի Պուտտայութենէ մէկ մէկ բան առնելով նոր կրօն կամ աղանդ մը ձևացնելու և կերպով մը զասոնք իրարու համաձայնեցնելու. և անհամար հետևողներ կը գտնէր (Տես Ռօլինսընի պատմ. Սասանեանց և Միլմանի Պատմ. Հրէից)։ Սակայն մոգպետին ակնարկած Թագաւորը Շապուհ երկրորդ Երկայնակեաց կոչուածն է, որ քրիստոնէից դէմ խիստ հալածանս յարուցեր ու եկեղեցիները փակել տուեր էր։

2. Քրիստոնէութեան մինչև ցՀնդիկս տարածուելուն վրայօք տես Bohlen, das Alte Indien. հատ ա էջ 369. զոր ի վկայութիւն կը կոչէ Ռօլինսըն իւր Սասանեանց պատմութեան մէջ, էջ 95։

3. Կ'երևի թէ այդ առաջին դարուց մէջ քրիստոնէութիւնը ժողովրդեան հարուստ և բարեկեցիկ մասին մէջ ալ մեծ ընդունելութիւն գտած էր յարևելս, մինչ ներհակը եղած էր յարևմուտս։

չինէին: Եւ իբրև ոչ ինչ երևէր յայտնի[1] օգնութիւն ուստեք, աճելով աճէին և բազմանալով բազմանային, և մարմնաւոր մեծութեամբ մեծանային: Զպատճառս հարըստութեան մեք ինչ ոչ գիտէաք. բայց այսչափ ինչ ճըշմարտիւ իմանայաք, զի տիեզերք ամենայն զկնի ուսմանց նոցա գնային:

17. «Թէպէտ էարկ ի նոսա թագաւորն զձեռն իւր խստութեամբ, և զբազումս կալաւ և չարչարեաց ի նոցանէ, և զևս բազումս մահուամբ սատակեաց, դառնացաւ և ձանձրացաւ յանձն իւր, և զնոսա ոչ կարաց նուազեցուցանել ի բազմութենէն: Դարձեալ թէպէտ փակեաց և կնքեաց զդրունս եկեղեցեացն ընդ ամենայն աշխարհն Պարսից, նոքա զամենայն տուն եկեղեցի արարին. և յամենայն տեղւոջ զիւրեանց օրէնսն կատարէին: Եւ զանձինս իւրաքանչիւր վկայարանս համարէին, և լաւագոյն զշինուածս մարդկեղէնս քան զհողեղէնս[2] հաշուէին: Սուրք ադամանդայն բթեցան, և նոցա պարանոցքն ոչ ձանձրացան. աւարառուք ատացուածոց նոցա աշխատեցան, և աւարն օր քան զօր աճեցեալ բազմացաւ: Արամնեալ էր թագաւորն, և յոյժ դառնացեալ դահիճք բարկութեանն. իսկ նոքա արթունք և զուարթունք, և խնդալից ընդունէին զամենայն հարուածս տանջանացն, և սիրով տանէին զամենայն յափշտակութիւն ընչից իւրեանց[3]:

1. Հախգա՝ Աւեստայի լեզուաւ՝ յայտ. ճակատ՝ յայտնապէս։

2. Այս բառս կը ցուցանէ թէ շինութեան մէջ քարի գործածութիւնը առ հասարակ սակաւ էր. Ներկայ աւերակներէ ալ կ'երևի թէ աղիւսը շատ աւելի սովորական էր։ Սեպիլեան վարդապետը կը պատմէր մեզ թէ Պարսկաստանի հիւսիսակողմը շատ տեղ կաւեղէն է, ընակիչք հողը կը լեցնեն մեծուկի ձևով կաղապարի մը մէջ մեծրկ, որոյ վերի և վարի դին բաց է. և քիչ մը ջուր թափելէ ետքը կոխելով կը պնդացնեն. յետոյ կաղապարը վերստին կը գործածուի։ Այս արհեստական զանգուածներով կը շինեն բնակարանս իւրեանց, որք շատ դիւրութեամբ կը քանդուին և բաւական ալ ամրութիւն կ'ունենան։ Այսն եղանակաւ շինուած են Երևանայ և Էջմիածնայ պարիսպները և Վանայ տները։ Շարտէնի և Ֆլանտէնի վկայութիւնքն ալ կը հաստատեն մեր հանգուցեալ ուղևորին և հնագէտին տուած տեղեկութիւնները։ Աւեստայէ ալ կը հետևի թէ նոյն իսկ աւելի հնագոյն ժամանակաց մէջ, բնակարանք ընդհանրապէս աղիւսէ և կամ յարևու թրծած հողով շինեալ էին։ (Տես Հարլէզի Աւեստան. հատ. ա. էջ 165)։

3. Պատմահիչի մէջ Պարսկան Ար-

18. « Իբրև ետես թագաւորն եթէ զանձն տուեալ դիմեցին ի մահ իբրև խաչինք սուրբք յաղն երկնաւոր, արգել և կարճեաց ի նոցանէ զհարուածս տանջանացն. և հրաման ետ մոգաց և մոգպետացն, զի մի ամենևին ոք խռովեսցէ զնոսա, այլ հաստատեալ կացցեն աներկիւղութեամբ յիւրաքանչիւր ուսմունս, մոգն և զանդիկն՝ և

տաշրի և նորա որդւոյն Շապհոյ առաջնոյ ժամանակը մազդէականութեան պղընձեայ դարը համարեալ է, քանզի երկուքն ալ յոյժ պայծառացուցին զդէնն մազդեզանց. «Շապուհ կարգաւորեց զաշխարհ զոր ես արարի առ Աւհարմազդ. նա հաստատեց և զօրացոյց զպուրխդակի (որ է պղտութիւն ի մեղաց՝ բարի գործովք) աշխարհիս սահմանաց մէջ և յերևան հանեց զբարութիւն ամենուրեք »։ (Պարսիկք իւրեանց կրօնին Վեհտեհ՝ վեհ կամ բարի դէն կ'ըսէին և նորա հետևողաց՝ վեհդեհենան կամ պահտինան։ (Տես Pahlavi-Pazand Glossary). ուստի և Վեհդենչապուհ։ Շապհոյ բարձրագոյն պաշտօնեայն և քրմապետն՝ Ադարօ-բատ, որդի Մարասպանտայ, իւր քարոզած կրօնին ճշմարտութիւնը ապացուցանելու համար թերահաւատից, իւր կուրծքին վրայ հալած պղինձ թափել տուած էր (Տես Pahlavi texts հատ. էջ 199)։ — Այսու ամենայնիւ Շապուհ առաջնոյ ատենը քրիստոնեայք հալածանք չկրեցին։ Բայց նոյնը չկրնար դրուցուիլ Շապուհ երկրորդի նկատմամբ՝ Երկայնակեաց կոչեցելոյն, որուն համար է մոգպետիս խօսքը. սա սաստիկ հալածանս յարոյց Քրիստոնէութեան

մեծնալը արգիլելու համար և ծանր հարկ

մը դրաւ քրիստոնէից վրայ (330ին). և յորժամ Սելևկիոյ եպիսկոպոսը Սիմէոն խոստութեամբ զանգատեցաւ այդ հարկէն, Շապուհ եկեղեցիները փակել տուաւ նոցա սպասուածքը գրաւեց ու մեռցնել տուաւ զՍիմէոն։ Կոստանդիանոս կայսրը, որ դեռ նոր քրիստոնէութիւնը ընդուներ էր, նամակաւ յանձնարարեց Շապհոյ որ հալածանքը դադրեցնէ. բայց նա մինչև չըրաւ և սկսաւ պատերազմի պատրաստութիւն տեսնել (Ռօլինսըն Պատմ. Սասանեանց էջ 147)։ Տինքարտի հետեւեալ հատուածն ալ կը հաստատէ մոգպետին այն խօսքը թէ Շապուհ Բ հաւակ յետոյ թուլացոյց զհալածանս և ազատութիւն շնորհեց ամենայն կրօնից. «Շապուհ արքայից արքայն, որդի Որմզդայ, հաւաքել տուաւ աշխարհիս ամէն կողմի ընակչաց վարդապետութիւնքը առ ի քննութիւն, և լուսաւորութիւն, և ճախացնելու համար զԱվանխանաք?։ Յետ զատելոյ և որոշելոյ Ադրօ-Բադայ զվարդապետութիւնս (Զրադաշտայ) բաղդատեցին զնոսա զանազան դենից հետ. Նասքերուն թիւը հշդեցաւ և այսպէս պատուիրեց Շապուհ (մազդեզանց). «Հիմա որ տեսանք զուամունս աշխարհի, ամենայն ոք պարտի իւր դենին հաւատարիմ մնալ. զայդ պիտի ջանամ ի գլուխ հանել»։ (Տես Pahlavi-Pazand Glossary էջ 146-147)։

1. Մոգ՝ աստ ես իբրև մոգական օրինաց հետևող՝ և ոչ իբրև վարդապետ նոյն օրինաց (տես ի վերոյ 14 ծն 1)։

— Զանդիկ՝ պարսկերէն زنديك զանդիք,

է բառ Պիւրհանի-Գաթիի, հետևող Զանտ գրոց Զրադաշտայ. այս է որ հաւատս ընծայէ ի մեկնութիւնս, յաւանդութիւնս և յաւելորդապաշտութիւնս առաւել քան ի գիրսն։ Եւ բառ Նէրիօսանկի, նա որ բարւոք խորհի զԱրհմենէ և զդիւաց։

հրեայն և քրիստոնեայն, և որ այլ բազում կեշտք՝ են ի կողմանս կողմանս աշխարհին Պարսից։ Եւ ապա առ երկիրն զխաղաղութիւն հաստատութեամբ, և լսեալ զա-

Թէպէտ զանցիկ՝ առհասարակ «հերձուածող» ալ կը նշանակէ, բայց ի մասնաւորի (և այս իմաստով գործածած է Եղիշէ) է անուն աղանդաւորացն որք յարևմտեայց Մանիքեցիք կոչեցան յանուն աղանդապետին Մանեայ. (Տես ի վերոյ 15 ծն 1. և յէջ 146–147)։ Մանի՝ Աւետայի այժմ կորուսեալ Զանտ մը կամ մեկնութիւն մը հիմն առնելով, կամ Զրադաշտայ գրոց՝ ուղղափառ Մազդեզանց կողմանէ հերետիկոսական համարեալ մեկնութիւն մի տալով, երկու արմատս կը քարոզէր՝ բարւոյ և չարի, իբրնակից, հաւասարազօր և յաւիտենական. մինչ մոգքն զնոսա յղութեամբ և ծննդեամբ ի Զրուանայ սերեալ առէին, և զմին յաւիտենական և զմիւսը ժամանակաւոր կը համարէին։ Մանի առաւ ի զրադաշտականութենէ զերկարմատեան վարդապետութիւնը, ի պուտտհայութենէ զողեփոխութիւն, ի Թալմուտէ զկապալագիտութիւն (Cabalisme) և ի Քրիստոսի Աւետարանէ զԵրրորդութեան խորհուրդը։ Քրիստոս Միհր աստուածն էր և բնակէր յարեգակ։ Իսկ ինքզինքն համար կ՚ըսէր թէ Մխիթարիչն էր զոր խոստացաւ Յիսուս խրկել առ ի ցուցանել մարդոյ զճանապարհ ճշմարտութեան, և թէ «Էրդանկը» զոր շարադրեր էր և իւր ձեռամբ պատկերօք և նկարիւք զարդարեր էր, քանզի քաջ պատկերահան ալ էր, Աւետարանին տեղ պիտի հնայր։ Զանդիկք չէին ընդունէր մեռելոց կամ մարմնոյ յարութիւնը, որ Զրադաշտայ հիմնական վարդապետութիւններէն էր (Եղնիկ 290)։ Ի մասին բարուց աւելի խստակեացք էին և պիղծ կը համարէին զամուսնութիւն. մինչ մոգք՝ զեղխք և անձնադիւրք։ Իրարու կարգէ դուրս ատելութիւն ունէին։ Մոգք աւելի բազմաթիւ էին յԱրևմուտս Տէրութեան՝ ի Մարաստան և ի Պարսս. իսկ Զանդիկքն յԱրևելս՝ ի Բակտրիա (Եղնիկ 116–117 և 287)։ Թապարի ալ երբ Մանեայ անունը կու տայ, Մանիի Զանդիկ կը կոչէ զնա։ Տես և Բազմավէպ 1892 Օգոստ. Սեպտ. Հոկտ։

1. Եղիշէ կը գործածէ զբառդ իբրև կրօն, դէն, երբեմն ալ մի և նոյն դենի իբրև զանազան վարդապետութիւնք. որպէս մեղնեալ յԱրարացիս, որ այդ կըրկին իմաստ ունի։ Սա պարսկերէն դէն կամ դաչ (Աւետայի մէջ՝ դաէնա) բառը չկրնար ըլլալ. վասն զի նոյնը ունիմք հայերէն՝ դէշ. և ոչ մարթ է չփոթել ընդ եաչցի որոյ լծորդն է «յաշտ»։ «Կեշտ» է Բազանդ գրոց չէշտակ բառն, (Աւետայի մէջ Չէստի կամ Չէստա), զոր Պ. Ուէստ կը թարգմանէ վարդապետութիւն. է և չաշխանել՝ տալ ճաշակել, յայտնել, վարդապետել։ Կ բաղաձայնդ շատ պարսկերէն բառից մէջ կը փոխուի ի ճ կամ ի չ։ Ո՞րք են սակայն այդ ուրիշ բազում կեշտքն որք գտանէին ի կողմանս կողմանս Պարսից։ Ցայտնէ էր անշուշտ Մարկիոնի աղանդը, զոր հերքելու համար Եղնիկ յատուկ գիրք մը գրած է։ Այդ աղանդից Պարսկաստանի մէջ ծաւալած լինելն արդէն ուրիշ աղբիւրներէ ծանօթ է. բայց տարակոյս չկայ թէ Եղնիկ այդպիսի երկասիրութեամբ մը հարկ չէր տեսներ եթէ ի հինգերորդ դարու տակաւին կարևորութիւն չունենար։ Բազմաթիւ հետևողներ ալ ունենալու էին Պրահմանութիւնը և Պուտտհայութիւնը մանաւանդ պետութեան արևելեան սահմանաց վրայ։

*դարեցին ամենայն խռովութիւնք յուզմանց: Քանզի ընդ մերոյ աշխարհին շարժմանն՝ և արևմուտք ևս[1] մեծապէս շարժեցան, և ամենայն Տաճկաստան ընդ նոսին խռովեցան :*

19. *«Զայն ահա ի լսելոյ գիտեմք. բայց այս որ ես ինձէն աչօք տեսի, թուի ինձ՝ թէ մեծագոյն ևս լինի քան զառաջինն: Արդ դու որ մարզպանդ[2] ես աշխարհիս, պարտ է քեզ հոգ յանձին ունել. գրել և ցուցանել յարքունիս զմիաբանութիւն ռամկութեանս, որպէս աներկիւղութեամբ առ ոչինչ համարեցան զհրամանս արքունի: Եթէ չէր մեր աճապարեալ և ի փախուստ դարձեալ, միում՛ ի մէնջ ոչ տային ապրել: Եւ եթէ անզէն մարդիկ այդպէս բռնացան, եթէ յանկարծ զինուորս ևս ընդ ինքեանս միաբանեցուցանեն, ո՞ կարիցէ կալ առաջի դոցա յանդուգն յարձակմանց:*

20. *«Ես ահա անտեղեակ էի անքակ ուխտի եկեղեցւոյդ ի միմեանց. զի այլ է՝ զոր լսէ մարդ, և այլ է՝ զոր տեսանէ հաստատուն իւրովք աչօք: Դու որ ի մանկութենէ յայդմ օրէնս սնեալ էիր, և ճշմարտեալ գիտէիր զպնդութիւնդ մարդկանդ, եթէ առանց բազում արեան հեղլոյ դիւր մեզ ոչ տան ձեռն արկանել յեկեղեցիսդ, ընդէ՞ր ոչ զայդ ամենայն հաւաստեաւ յանդիման չասացեր ցթագաւորն: Քանզի ամենայն նախարարացն աւագ դու էիր, և զբոլոր աշխարհս քեզ յանձն արարեալ էր մարզպանութեամբ. ընդէ՞ր ոչ մեծապէս*

1. Կոստանդիանոս ինքինքն համօրէն քրիստոնէից պաշտպան կը հռչակէր: Կայսեր տուած խրատուցը ապարդիւն մնալը և Պարսից պետութեան մէջ Քրիստոնէից դէմ կատարուած անգթութիւնները այնքան յուզումն պատճառած ըլլալու էին ի Բիւզանդիոն, որ Շապուհ երկրորդ Կոստանդիանոսի աւելի ազդեցիկ եղանակաւ միջամտելու վախէն, պատերազմի պատրաստուելու հարկը տեսաւ: Բնական էր որ Տաճկաստանն ալ՝ այս է Միջագետաց Արաբացիք, որոց մէջ ալ քրիստոնէութիւնը բաւական ընդունելութիւն գտած էր, և որք անշուշտ Շապհոյ խիստ կառավարութենէն տաղտկացած էին, հանդարտ չկենային Հռովմայեցւոց և Պարսից մէջ գժտութիւն ծագած ատենը:

2. Վասակայ ուղղեալ են այդ խօսքերդ: Մոգպետը ի սկզբան կ՚ուզէ որ Վասակ գրէ առ արքունիս եղելութիւնը և գործոց դժուարութիւնը: Մարզպանին վկայութեանը վրայ ալ Դուռը չէր կրնար իրաց անյաջող ելքը Մոգպետին անխոհեմութեանը կամ անկարողութեանը վերագրել: Բայց երբ Վասակ յանձն չառնուր, ինքը կը ստիպուի անձամբ գրելու :

հոգ տարար յանձն քո: Զի յայլ ժամս իմաստուն էիր, և ես գիտէի. զայս՝ գործ իմաստութեան ոչ գործեցեր: Ապա թէ ոչ, յայտ է եթէ դու ի նոցա բանի ես, և քոյով խորհրդով անցուցին զայս անցս ընդ իս և ընդ զօրս :

21. « Արդ եթէ այդ այդպէս է, և քեզ կամք չէ ունել զմիգութիւն, մի ինչ պատկառեր դու երկիւղիւ յարքայէ. ես գրեմ և ցուցանեմ ի դուռն մովպետան մովպետի[1] և դերանդարձապետի և մեծ հազարապետին,

1. Դիտելի է թէ Հայաստան խըրկուած մոգպետը իշխանութիւն չունի ուղղակի թագաւորին գրելու այլ պաշտօնէից ը: Ըստ Միւհմէլ-իւթ-թավարիխի, Պարսից պետութեան պաշտօնեայք կամ վէզիրքն «Տաւթուր» կը յորջորջէին: — Մովպետան մովպետը՝ այս է մոգպետաց մոգպետը կամ գէնպետն Պարսից, որ Մահմետականաց քատըիւլ-քուտաթին կը համապատասխանէ, գինի վերաբերեալ խնդրոց մէջ վճիռներ կու տար. և ըստ Թապարիի նոր թագաւորի նա թագ կը դնէր ու արքայական պատմուճանը կը հագցնէր: Այժմեան պարսկերէնի մէջ յատկացեալն յառաջ կը դրուի և երկուքին մէջտեղը իզաֆէտ կը մտնէ. մովպէտ-ի-մովպէտան. բայց ի հինգերորդ դարուն կ'ըսէին մովպէտան-մովպէտ, յատկացուցիչը նախադասելով, որպէս Շահանշահ արքայից արքայ և ի Սասանեան արձանագրութիւնս՝ Մալքան մալքա: Անմիջապէս մովպետէն ետքը կու գային, ի մոգութեան կարգին, Մովպետք, որք գաւառի մը կամ նահանգի մը մոգուց առաջնորդքն էին, որպէս եպիսկոպոսքն ի մեզ, իսկ մոգքն էին վարդապետք օրինաց: Այժմ Բարսիք մօպետ որ է մոգպետ, ասելով իմանան՝ սոսկ վարդապետ. տասդուր անունը կու տան Եղիշեայ դարուն մովպետի աստիճան և պաշտօն ունեցող անձին, և Տասդուրի-տասթուրան՝ Մովպետան մովպետի:

Եղիշէ անգամ մի միայն գործած է Դերանդարձապետ. այլուր կը տեսնենք առանց դեր մասնկի՝ անդերձապետ. զոր այլ գրչագիրք դնեն համդերձապետ. զոր օրինակ՝ Մովան անդերձապետ ի ձեռանէ մովպետան մովպետի կամ սոսկ Մովան անդերձապետ. և այդ մարդուն պաշտօնն ինչ որ ալ ըլլար, գիտեմք յԵղիշէէ թէ մոգպետ մի էր. (Տես 45, 93, 98. Յ. Ը. և փարպ. էջ 262, 291, 307):

Ըստ Հայկազեան բառարանի Դերանդարձապետ է փոխանորդ և օգնական հանդերձապետի, կամ դեր-հանդերձապետ: Ըստ Աւձեան Բառարանի դերանդերձապետ՝ գանձապետ, իբրև խազնատար, որ պահէ թանկագին և ականակապ զգեստները: իսկ անդերձապետ ըստ Հայկ. Բառարանի է պաշտօն և հրամանատարութիւն ինչ ի դրան Պարսից մանաւանդ ի կարգի մոգութեանց. մոգպետ: Այդ զանազան և հակառական մեկնութիւնք անընդունելի կ'երևին: Պարսից արքունեաց հանդերձապետը՝ (Օսմանեանց Գաֆթան աղասըն կամ եսվապճը պաշըն) կրնայ կարևոր պաշտօնեայ մ'եղած ըլլալ, որպէս մայպետն և համբարապետն: Գուցէ ևս բառին սկիզբը գտնուած ն բաղաձայնը բառին էութիւնը չփոխեր և երկու կերպով ալ կարելի ըլլայ գրել անխտիր, ինչպէս «համբարապետ» գրի և «ամբարապետ»: Բայց յայնժամ ևս դժուարին կ'երևի մեզ մեկնել դեր մասնիկը, Հայաստան խրկուած

զի ածցեն զարքայ ի հաւանութիւն, որպէս զի ի բաց թողացուսցէ բառ առաջին հրամանին, և ի կամս մարդկան ապստամբ արասցեն, զի առ սակաւ սակաւ ընդելցին ընդ օրէնս մոգութեանս. զի որք կայցին՝ սիրով երեւեսցին կատարեալ զհրամանս արքունի: Քանզի մարդ[1]

մոգպետը, երբ կրօնական և ամենածանր խնդրոյ համար ուղղակի դենպետին և մեծ հազարապետին Դրան կը գրէ, ինչու փոխանակ առաջին հանդերձապետին ուղղելու իր գիրը, որ միւս երկուքին նայելով թէրքն իսկ երկրորդական և ստորին պաշտօնեայ մի էր, սոր փոխանորդին դիմէ: Դիտելի է և որ դերանդարձապետ Դենպետէն այս է Մովպետան մովպետէն անմիջապէս ետքը ու մեծ հազարապետէն այս է Միհրներսեհէն յառաջ կը յիշուի: Իսկ գանձապետին՝ ստուգաբանութեամբ հաստատել անհընարին կը թուի մեզ:

Ահաւասիկ մեր տալու մեկնութիւնը:

Բուզանդայ մէջ կը գտնեմք Մոգաց անդերձապետ, զոր Շապուհ կը խրկէ Արշակայ դէմ զօրօք բազմօք. արդ մոգ՝ պարսկերէն է մով, ուստի և կազմի մովպետ և յոգնակի ուղղական և սեռական ու կ'ըլլայ մովան: Եղիշեայ և փարպեցւոյ «մովան անդերձապետը» չէ այլ ինչ քան «զմոգաց անդերձապետն» Բուզանդայ:

Մովան չէ յատուկ անուն, այլ յոգն. սեռական մով հասարակ անուան: Կը մնայ մեզ մեկնել զերկրորդ բառդ: Է՛ պարսկերէն անտարզ, اندرز խրատ, խորհուրդ, կտակ, գիր կտակի, շարադրութիւն, պատմութիւն, գիր, մատեան: Բազանդ գրոց մէջ անտարզինիտան, զոր Պ. Ուէսդ կը կարդայ անտարժինիտան՝ է խրատել, ուսուցանել. առաջնորդել (Տես Մայնօ-խրատ): Հայերէն ալ ունիմք անդարձ գոյական՝ այլ միայն «կտակ» նշանակութեամբ: Ուստի անդարձապետ է խորհրդապետ, խորհրդական գուցէ, և դըպրապետ՝ մեքրուշպհի: Եւ որովհետև Եղիշէ և փարպեցին սանն՝ մովան անդերձապետ ի ձեռանէ մովպետան մովպետի, ու այդ պաշտօնատարից մոգպետ մի ըլլալն ալ մեզ կը զրուցուի, տարակոյս չմնար, թէ անդարձապետ՝ մոգուց անդերձապետն կամ լաւ ևս՝ անդարձապետն է դպրապետ, խորհրդական և փոխանորդ մովպետան մովպետի և հաւանօրէն ընդհանուր տեսուչ և կառավարիչ Դենպետի Դրան, զոր ոչ միայն նկատելու է իբրև մոգուց և կրօնական խնդրոց բարձրագոյն ատեան՝ այլ և պաշտօնարան արդարութեան և հասարակային կրթութեան. այդ պաշտօնէից պարսկերէն տիտղոսն էր մովան անդարձապետ: Բայց ատանօր մոգպետը ոչ անդարձապետին այլ դերանդարձապետին գրելիքը մեզ կը յայտնէ, այս է անոր երկրորդին կամ փոխանորդին, քանզի անդարձապետը Հայաստան խրկուած էր մոգուց բազմութեան հետ և մոգպետին գտնուած տեղը չէր. Դեր է պարսկերէն մանիկն Der, در «մերձ», «ի», «ի ներքոյ», «յետ» «ի ձեռանէ»: Է՛ և Բուզանդայ մէջ Սակստան անդերձապետ, որ ուղղելի է Սակստանն անդարձապետ. և կը մեկնեմք «պաշտօնեայ խորհրդական» կամ դպրապետ ի Սակաստան, քանզի ամէն կուսակալի քովը, մանաւանդ մեծամեծ նահանգաց մէջ, արքունի դպրապետ մի կը գըտնուէր. Հերոդոտ գիրք Գ. ՃԻԸ. — Արտաշրի Քար-Նամաքին մէջ ալ՝ Անտարժ-բադի սարդարպաքան որ թարգմանի «անդարձապետ այրուձիոյ»:

1. Պարսկ. մարզ مرز գերման Mark, գղղ. Marche է ծայր կամ եզր աշխարհի, սահմանագլուխ: Պարսից, Մարաց,

է աշխարհս, գուցէ յորժամ փոխս ինչ առնիցեն, և ինքեանք ցրուեալ վտանգեսցին յօտարութիւն. իսկ յորժամ աշխարհս թափուր լինիցի ի մարդկանէս, յայնժամ և քեզ գլխովին մեծապէս փոխս հատանէ յարքունուստ »:

22. Եւ պատասխանի մարզպանն մոգպետին, և ասէ. « Ամենայն բանք խրատուդ՝ զոր ասացեր, ճշմարիտ են. բայց զառաջինն զոր չիմացաք՝ տեսեր, և մեծապէս զղջացաք այժմ: Բայց դու արդ զոր ասեմս արա, և բարւոք թուեսցի քեզ. տակաւին մի երկայնամիտ լեր և զխորհուրդս քո արգել՝ ի բազմաց, բայց արանց՝ որոց ես ասեմ, նոցա յայտնեա. մինչև ես ինձ ուժ ժողովեցից զօր ի թիկունս ածելոյ, և զուխտ եկեղեցւոյդ թերևս կարացից երկփեղկել: Եւ եթէ զայդ այդպէս արարից, գիտեմ՝ ապա թէ և զհրամանն արքունի կարող եմ կատարել »:

23. Եւ անդէն հրոս[1] հանեալ ի Սիւնեաց աշխար-

որպէս և Հռովմայեցւոց պետութեան մէջ ազգերն յերիս կը բաժանէին. ա. տիրող ազգն. բ. նուաճեալ գաւառք. գ. սահմանաց մօտ գտնուող ազինք, որ իւրեանց սեփական օրէնք և տոհմային իշխանաց ձեռօք կը կառավարուէին, բայց կը ճանաչէին պետական աւագ իշխանութիւնը, և հարկատու ազգաց կարգն էին. (Բօլինեանն՝ Հերոդոտ Հատ. ա 61): — Մարզպան պարսկերէն է « զօրապետ – կուսակալ սահմանագլխոյ կամ աշխարհի, որ գտանի մերձ ի սահմանս թշնամւոյ ազգի », Commandant militaire des frontières, որպէս գերմաներէն Margrave: Եղիշէ Հայոց մարզպանէն զատ կը յիշէ զմարզպանն Վրաց: Հայաստանի մարզպանը ամենայն նախարարաց աւագ էր, ներկայացուցիչ Պարսից Դրան և գլուխ կառավարութեան, որում յանձնուած էր աշխարհն. նա կը հաւաքէր զհարկս և կը հոգէր ի վերայ տանուտերաց, որպէս զի անհաւատարիմ չըլլան Սասանեան պետութեան: Յանցաւոր մը կրնար մեռցնել տալ առանց հրամանի թագաւորին. բայց չկարէր փոփոխել զնախարարութիւնս:

1. Հրոս՝ պաշըպօզուգ, levée, անկանոն զօրք. Բուզանդայ մէջ կը տեսնենք ևս « գուգազ հանել »: — Լեռնցի ժողովուրդք աւելի շարքաշ և աղքատ ըլլալնուն, աւելի դիւրաւ կը յարմարէին զինուորութեան, միանգամայն և տներնին տեղերնին աւելի քիչ դժկամակութեամբ կը թողուն քան զընակիչս դաշտաց և քաղաքաց: Սիւնեաց լեռնականք մինչև ցվերջին ժամանակս կորիճ և տոկուն պատերազմող եղած են: Վասակայ առենը քաղաքականութիւնը և քրիստոնէութիւնն այդ աշխարհին լեռնաձորոց մէջ քիչ յառաջադիմութիւն ըրած էր. ապա թէ ոչ բնակիչքն աւելի եկեղեցականաց ձայնին կը լսէին քան Վասակայ. և ամենքը մէկ տեղ չէին ուրանար զքրիստոնէութիւն. մինչ ուրիշ գաւառաց մէջ ժողովուրդն յերկուս բաժնուեր էր: Տես էջ 45-48 և Յ. Դ. 10 « Եւ բովանդակ զիւր բոլոր աշխարհն ապստամբեցոյց յուրացութիւն »:

հէն զիւր զունդն սատարացոյց ի թիկունս օգնականութեան մոգաց և մոգպետին: Եւ ապա սկսաւ ասել. «Աղէ դու անգամ մի հրովարտակ ի դուռն տուր վասն այրուձիոյն[1] որ յԱղուանսն է տասն հազար, զի ի ձմերոց ի Հայս եկեսցեն. և յորժամ զնոսա ի ձեռին ունիցիք, չիք ոք որ եղծանել կարէ զհրաման արքունի»:

24. Պատասխանի ետ մոգպետն և ասէ ցմարզպանն. «Այդ խորհուրդ դարձեալ իմոց բանիցս ընդդէմ է. քանզի մեք յորժամ բռնութեամբ կռուեցուք ընդ աշխարհիս, աշխարհս ի բաց քանդի, և մեք ի պատուհասէ չապրիմք. անձանց վնաս, և արքունի մեծապէս զեան[2]»:

25. Եւ ոչ ինչ կամեցաւ ամենևին ունկն դնել նմա մարզպանն, զի սրտի մտօք կալեալ էր զպարսկական օրէնսն: Սկսաւ այնուհետև պատրել զոմանս կարասեօք և զոմանս ոսկեական բանիւք. զասմիկն ամենայն՝ ածել բանիւք ապատանեցեալ սրտաթափ առնէր: Համապարգ-
449–450 տատացոյց զանճիկան տաճարին, և յերկարէր զնուազան ուրախութեան, մաշելով զերկայնութիւն գիշերացն[3]
ձմեռն յերգս արբեցութեան և ի կաքաւս լկտութեան. քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական և զերգս հեթանոսականս. մեծապէս զոհութիւն մատուցանէր օրինաց թագաւորին: Բերեալ էր և յարքունուստ բազմութիւն կարասւոյ, և միում միում կաշառ տայր խեթէր ի պատճառս պարգևի և պատւոյ. և բազում նենգութեամբ զամենայն մարդիկ հրապուրէր և յինքն արկանէր:

26. Իսկ զայս ամենայն իբրև տեսին սուրբ եպիսկոպոսունքն, ևս քաջ գրգռեալ յորդորեցան ի նոյն միաբանութիւն, և հնարագէտ իմաստութեամբ ընդ երկուս բաժանեցին զբանակն: Մանաւանդ իբրև հաստատեալ գիտացին ի միտս իւրեանց, եթէ անօրէն իշխանն Սիւնեաց զօրհասական վէրն ի յոգին ընկալեալ էր, խորշեցան մերժեցան և ի բաց փախեան ի նմանէ:

1. Այս այն այրուձին է, զոր Պարսիկք ունէին Ճորայ մարզպանին հրամանին ներքև, պահակը պահպանելու և Անդր-կովկասեան ազգերը զսպելու համար: Այս միջոցիս Աղուանից երկիրը մտեր էին, անդ խրկուած մոգերուն պաշտպանութեան համար: Որոց դէմ գնաց Վարդան. տես ստորև 44 և 5:

2. Դիտելի է թէ մոգպետը որքան կը զարհուրի երկիրը աւրելէ. մազդեականութիւնը կը պատուիրէ շէնցնել և ոչ կործանել, վասն որոյ և աւերիչք ազատ չեն ի պատուհասէ:

3. Ձմեռն 449–450.

27. Խորհուրդ արարեալ ի գիշերի միում ամենայն ուխտին բազմութեամբ, կոչեցին և զպարապեան[1] զօրաց ի խորհուրդն. հարցին և քննեցին և ի վերայ հասին միայն անշարժութեան, որոյ ոչ սակաւ մի թերացեալ էր ի սիրոյն Քրիստոսի: Եւ միաբան աղօթս արարեալ ի վերայ նորա, վերստին ընկալան զնա յառաքինութիւն: Եւ նովաւ որսացեալ զբազումս ի նոյն միաբանութիւն, որք ոչ էին քակեալ յառաջին միաբանութենէն, եկին և ժողովեցան գունդ զօրաց բազմաց: Եւ ես առաւել հեռագոյն զատան ի մոգացն և ի մոգպետէն և յանօրինէն վտակաց:

28. Իսկ նա այնչափ յիմարեցոյց և ափշեցոյց զմիտս մոգպետին, մինչև չև ևս իմանալ զելս իրացն: Սկսաւ բաշխել մոգս ի տունս նախարարացն և մեծամեծ ռոճիկս կարգել, զոհել պատրուճակս[2], և բռնաբար կրնքաւոր մարդկանն տալ ուտել միս յաղածոյ, և երկիր պագանել արեգական: Իբրև սկսաւ բազմանալ ընդ ամենայն աշխարհն այնպիսի պղծագործ խառնակութիւն, յանդգնեցան և ես կանայք փշտիպանացն[3] յաւուր կիրակէի անցուցանել զճրագունս եկեղեցւոյն և պատառել զհանդերձս հաւատաւոր կանանցն:

29. Զայս դուժկան ազդկի իբրև տեսին միաբան սուրբ եպիսկոպոսունքն, զաւետարանն ի ձեռն առեալ հասին և անկան առաջի հարցանելոյ ի վանս սպարապետին[4], ուր ժողովեալ էին զօրքն Հայոց: Համբարձին զձայնս իւրեանց և ասեն. Աղաչեմք զձեզ զամենեսեան

1. Այս է Վարդան, որ ուրիշ ուրացեալ նախարարաց հետ Պարսկաստանէ կը դառնայր:

2. Ռոճիկ՝ որ է ուտելիք՝ Թայինար և ոչ թոշակ կամ դրամ: — Պարսիկք զպատրուճակս զոհելու տեսն՝ այլ և այլ աղօթներ և արարողութիւններ կատարելէ յետոյ կրակին կը ցուցանէին միայն: Միս յաղածոյ՝ է միս զոհեալ, Նուիրեալ, ըստ Աւեստայի՝ միյազդա:

3. Բառ պարսիկ. փուշդ پشت է թիկն, կռնակ. փուշդիպան՝ թիկնապահ, օգնական: Փշտիպանքն էին մարզպանին պաշտպանութեան համար Պարսից դրանէն տրուած զօրքն, որ ազգաւ պարսիկ էին. — Հաւատաւոր կանայք. այս է կուսան, մայրապետ. տես Ց. Բ. 83 և ծն:

4. Մամիկոնեանց բնակութեան տեղին էր ի Տարօն. բայց սպարապետը ինչպէս և նախարարաց գլխաւորները մայրաքաղաքին մէջ ալ բնակութեան տուն ունէին. իսկ մայրաքաղաքն յայնժամ կամ գոնեա եղելութեանց վայրն էր, եթէ չենք սխալիր, Վաղարշապատ:

սուրբ ուխտարանաւս, եթէ ձերով խորհրդեալ գործէ զայն անօրէնութեան չարիս մարզպանն և մոգպետն, նախ զմեր պարանոցս հատէք, և ապա յեկեղեցին ձեռնարկեցէք. ապա թէ առանց ձեր կամաց նոքա զայն չարն գործեն, այսօր խնդրեսցի վրէժ այդ ի նոցանէ:

30. Իսկ որք էին ի ներքս ի վանս սպարապետին՝ յոտն կացին, միաբան համբարձին զձայնս իւրեանց առ Աստուած և ասեն. «Դու, Տէր, սրտագէտ ամենեցուն, ոչ ինչ պիտի քեզ վկայութիւն ի մարդկանէ. եթէ խոտորեալ իցեմք ի քէն սրտի մտօք, զայն դու ինքնին քաջ գիտես, այսօր իսկ դատես զմեզ ըստ մեղաց մերոց: Ապա եթէ հաստատուն կամք յուխտի սուրբ ուխտարանիս, դու Տէր, լեր մեր օգնական այսօր. և տուր զթըշնամին ճշմարտութեան ի ձեռս մեր, զի արասցուք ընդ նմա ըստ կամաց մերոց»:

31. Զայս իբրև ասացին, ամենեքեան զգլուխ զգետնի հարկանէին. և ողջունեցան յաւետարանէն և յեպիսկոպոսացն: Իսկ մի ոմն ի նախարարացն [1] որ անդր գիպեցաւ, էր ի նոցա խորհրդի, և ոչ միաբանեաց ընդ նոսա ի մեծ վկայութիւնն. և անդէն առ ժամայն ի նոցունց ի տեղւոջն քարկոծեցաւ, և ահ մեծ անկաւ ի վերայ ամենեցունց:

32. Յայնժամ՝ ամենեքեան ի նախանձ բարկութեան բրդեցան, մինչև ամենայն տեսողացն երկիւմունքն գողային, որք առ ոչինչ համարեցան զպարգևս արքունի, և առ ոտն հարին զհրամանս ահագինս: Ընթացան վաղվաղակի ի զէնս իւրեանց, վառեցան կազմեցան զգիշերն ամենայն, և ընդ ծագել արեգականն զգունդն յերիս մասունս բաժանեալ ի բանակն արկանէին: Գունդն առաջին յարևելից կուսէ, և գունդն երկրորդ յարևմտից կող-

1. Փարպեցին քիչ մը տարբեր կը պատմէ այդ դէպքը. Սպարապետին վանաց մէջ որոշուեր էր բացէ ի բաց ընդդիմանալ Պարսից. «Մի ոմն յՈստանեայ տանէն, որում անուն էր Ջանդաղան, ակրիճ ժանտ... լսէր յամենայն զխորհեալն Հայոց և երթեալ վաղվաղակի պատմէր Վասակայ: Որոյ բանից իրազգած եղեալ ննջաւոր քունին՝ առաջ նախարարքն Հայոց, կալեալ զնա ի գեօղն որ կոչի Արծակ, տարեալ կապեցին ի միասին եւ ի գեօղ յանուանեալ Բերդկունս, ի նմին Բագրևանդ գաւառի, զոր և ոչ յետ բազում աւուրց՝ ըստ արժանի գործոց իւրոց անօրէնութեանց՝ քարկոծեալ սատակեցին »:

մանէ, և գունդն երրորդ ի հիւսիսոյ կողմանէ, շուրջանակի ի մէջ առեալ փակեցին զբազմութիւն բանակին[1]. և զբազումս կոտորեցին[2], և զեւս բազմագոյնս կապեցին զերևելի մարդիկ, և արկին ի բերդս ամուրս ընդ իւրեանց իշխանութեամբ: Եւ զառ և զապուռ զաւար[3] բանակին ի մի վայր ժողովեալ պահէին իբր հրամանաւ արքունի:

33. Իսկ զմարզպանն ձերբակալ արարեալ, և միաբանէր ընդ նոսա երդմամբ՝ հաստատուն կալ յուխտին, զղջանայր զառաջին քակումն ի նոցանէ: Անկանէր ապաշխարութեամբ յոտս սուրբ եպիսկոպոսացն, և աղաչէր խաղապատանելով՝ զի մի մերժեալ ընկեսցի առ ի նոցանէ: Կրկնէր և երեքկնէր զանսուտ երդումն առաջի բազմութեան ի սուրբ աւետարանն, դրէր և կնքէր զերդումն և կապէր զաւետարանէն. և աղաչէր՝ զի յԱստուծոյ յայտնեսցի վրէժխնդրութիւնն, և մի նոքա մարդկարար սատակեսցեն զնա: Իսկ նոքա թէպէտ և հաստատեալ գիտէին զնենգաւոր կեղծաւորութիւնն նորա, և թէ խաբէութեամբ դառնայ անդրէն ի հին մոլորութիւնն, ոչ ինչ փոյթ առնէին ձեռն արկանել ի նա վասն առաջին յանցանացն, այլ սուրբ աւետարանին թողին ի դատապարտութիւն:

34. Իսկ որք եկեալ էին յաւարի առնուլ զսուրբ զանձն եկեղեցւոյն, ակամայ եդին զանձինս և զաւար

1. Բանակս այս է մոգաց և նախարարաց հետ Պարսկաստանէ եկող զօրքն, զորս Վասակ ստուարացոյց լեռնականօք, և որուն մէջ ինքն ալ կը գտնուէր Սիւնեաց գնդաւն: Այս բանակս էր ի Շահապիվան Բագրևանդայ (այժմ՝ Իւչքիլիսէ): Վարդան յերիս գունդս կը բաժանէ զզօրս իւր և կու գայ կը պաշարէ զՎասակ:

2. Աստանօր դնել պարտ է Զարեհաւանի ճարդը. «Եւ արձակեալք յաղօթիցն ռամիկ զօրացն բազմութիւն զինեցին ի տուն մոխրանոցին. չմնալով ընդ աւագացն հրամանի. և առեալ զկրակարանն՝ վարեցին ի ջուրն զկրակարանն, որպէս ի գիրկս եղբօր, ընդ առնելոյ առաւ վարդապետացն Պարսից, զոր ըմբռնեալ ջրոցն թշնամաբար և ոչ եղբայրաբար՝ ծախեցին: Բայց զմոգուցն բազմութիւն պահել առ օրն հրամայեցին զգուշութեամբ. և ի վաղիւն ի ծագել արեւուն առս ի նոցանէ թուով այրանին սրով՝ ի գիւղն որ կոչի Զարեհաւան»: Փարպ. էջ 182. Տես և Յ. Ի. 27:

3. Բազանս լեզուաւ՝ աւառարան է յափշտակել, աւարել. աւառու՝ ըմբռնելութիւն անցեալ: — Աւար է աւարյարմէ աւարառութիւն. աւարառեալ աւարել: ա + այր «առնուլ» գանաբառէ եկած կ'երևի:

իւրեանց առաջի սուրբ եպիսկոպոսացն և ամենայն գորացն. և եղծեալ ապականեցաւ հրաման թագաւորին: Եւ յաջողեալք զօրութեամբն Աստուծոյ՝ ապաղակէին և ասէին գոհանալով արք և կանայք և ամենայն ռամիկ բազմութիւնն. «Պատրաստ եմք ի հալածել և ի մեռանել և յամենայն նեղութիւնս և ի չարչարանս վասն սուրբ եկեղեցեաց, զոր ուսուցին հարքն մեր առաջինք՝ զօրութեամբ գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով վերստին ծնաք ի մի յոյս հաւատոյն մկրտութեամբ ի Քրիստոս Յիսուս. ըստ նմին նմանութեան կամիմք չարչարանօք և արեամբ նորոգել զանձինս: Քանզի հայր մեր՝ զսուրբ աւետարանն գիտեմք, և մայր՝ զառաքելական եկեղեցի կաթողիկէ. մի ոք չար անջրպետ ի մէջ անկեալ՝ զմեզ քակեսցէ ի սմանէ»:

35. Ոչ երբէք այնուհետև առաւել տէր քան զծառայ և ոչ ազատ փափկացեալ քան զգեղջուկ մշակացեալ. և ոչ ոք քան զոք նուազեալ յարութենէ: Մի սէր յօժարութեան ամենեցուն արանց և կանանց, ծերոց և տըղայոց և ամենայն միաբանելոց ի Քրիստոս: Քանզի առհասարակ զմի զինուորութիւն զինուորեցան, և զմի ագան զրահս հաւատոյ պատուիրանին Քրիստոսի, և միով զօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք և կանայք:

36. Ընկեցեալ կայր այնուհետև ոսկի, և ոչ ոք առնոյր իւր առանձինն արծաթ[1]. և արհամարհեալ առանց ագահութեան, անարգեալ պատուական հանդերձք առ ի զարդս մեծարանաց: Նա՛ իւրաքանչիւր ստացուածք ոչ ինչ համարէին յաչս իւրեանց ստացողին. տեսանէին զանձինս իւրեանց իբրև զմեռեալ դիակունս, և զիւրաքանչիւր գերեզմանս ինքեանք փորէին. և կեանք իւրեանց ի մահ համարեալ էին, և մահք իւրեանց անշուշտ կեանք:

37. Բայց այս բարբառ ստէպ ստէպ ընթանայր. «Քաջութեամբ միայն մեռցուք, զանուն և զոգիս ևեթ ժառանգեսցուք. զի կենդանի իցէ ի մեզ Քրիստոս, որում դիւրին է միւսանգամ նորոգել զմեզ ի հողոյ և զամենայն

1. Ոսկի և արծաթ, իմա՛ ոչ միայն դրամ այլ և անօթ, սպաս, կարասի. որովհետև ոսկւոյ և արծաթի գործածութիւնը, մանաւանդ ոսկւոյնը շատ աւելի էր հին ատենները քան այժմ:

զյառաջագոյն ջնջեցելումն, եւ հաստատանել իւրաքանչիւր ըստ գործս իւրեանց »:

38. Զայս եւ առաւել քան զայս խօսելով, եւ մխիթարելով զանձինս եւ զմիմեանս, դարձեալ միաբանեալ զի-նուորքն պատրաստեցին զզէնս իւրեանց, եւ ազօթականքն անդադար լինէին յաղօթս իւրեանց, եւ պահօղքն ճգնէին ի պահս իւրեանց: Զայնք պաշտօնէին ի տուէ եւ ի գիշերի անհատ էին ի սուրբ սաղմոսն. ընթերցուածք աստուածային կտակարանացն ոչ երբեք անտի դադարումն յամենայն ժամ, այնպէս եւ մեկնիչքն ի մխիթարութիւն երկնաւոր վարդապետութեանն[1]:

39. Ցայնմ ժամանակի դարձեալ յարձակեցան ի վերայ բերդին եւ աւանաց, զոր ունէին պարսիկքն ի տեղիս տեղիս, յամրոցս աշխարհին. տապալէին քանդէին զբնակութիւնս նոցա: Առաջին զմեծն Արտաշատ հանդերձ աւանօք իւրովք. եւ առնուին զանմատոյց ամուրսն՝ զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս, եւ զաւանս իւրեանց. զԵրկայնորդան եւ զԱրհնին, եւ զաւանս իւրեանց. զԲարձրաբերդն, զԽորանխատն, զՄախանխատն, զանկասկածելի Ոգականն, եւ ընդ նոսա եւ զաւանս իւրեանց. զԱրբանեայն, զվանն աւան, ընդ նմին եւ զաւանան իւր. զԳրեայն եւ զկապոյտն, զՈրտան եւ զվասակաշատն[2]:

1. Ահա բանակ մը յորում զինուորք զէնքերնին կը պատրաստէին, քահանայք և կրօնաւորք շարունակ կ'աղօթէին. ոմանք պահք կը պահէին, սաղմոս կը գրուցէին. և քարոզիչք կը մեկնէին զաւետարան:

2. Եղիշեայ յիշատակութիւններէն կը հետևի, թէ Արտաշատ ի կէս հինգերորդ դարու էր տակաւին «Թագաւորանիստ քաղաքն» Հայոց, «ամրացեալ» և «կայեան (պարսիկ) զօրաց»: Անդ եկան ժողովեցան յամենայն կողմանց նիզակակիցքն Վարդանայ: Տեղ մի այլ կ'ըսէ Եղիշէ «Մեծն Արտաշատ աւանօք իւրովք»: Անդանօր՝ Պարսկաստանէն եկած մոգերն կանգներ էին ատրուշան մը, զոր քանդեցին Սամուէլ և Աբրահամ: Պատճառ մը չենք տեսներ կարծելու, որ աստ յիշուած Արտաշատը տարբեր ըլլայ Հայոց պատմական մայրաքաղաքէն: — «Քաղաք» անշուշտ նոյն է ընդ արաբացի անուան քա՛լա: Պունտահիշի մէջ է եւս քալաք, զոր ըննագիրը կը մեկնէ «բերդ»:

Անիս այս չէ ամրոցն որ և կոչի Կամախ. քանզի այս վերջինս կայ յարեւմտից Երզնկայ, և այն ատեն Յունաց իշխանութեան մէջ էր. այլ բերդն Շիրակայ որ յետոյ թագաւորանիստ եղև Բագրատունեաց: Մեծն Տրդատ զբերդս զայս Շիրակայ գաւառաւն տուած էր իւր ազգակից Կամսարականաց, որոց ձեռքը մնաց մինչև ութերորդ դարուն վերջերը (փորձ. 1880 մայիս. էջ 39 և

40. *Զամենեսին զայս իւրաքանչիւր գեղիւք և ագարակօք, զօրօք և զօրագլխօք ի նմին ամի առեալ տարա-*

Ալիշան վարդապետի Շիրակ. էջ 6)։ Ի հինգերորդ դարուն ուրեմն՝ Անիս այս էր ամուր մի անմատոյց և պարսպապատ (Փարպ. 366)։

Արտագերս.— Ի Զանլը վիճակէ (ի մասս Կաղզուանայ և յահեկէ Երասխայ), կ՚ըսէ Ալիշան Վարդապետ, «Եղանէ վտակն Կարսայ և առ նովաւ էր անշուշտ բերդն համանուն՝ ուր ամրացաւ Սմբատ Ա. և առ խնայելոյ յիւրոց՝ անձնատուր եղև ի Յուսուփ. յառաջնումն կոչէր Արտագերից բերդ»։ Վարդան Վարդապետի աշխարհացոյցին մէջ գրեալ է. «Արշարունիք և Ձորն Երասխայ՝ Կաղզուանն է. անդ և գաւառն Գարեգլենից և բերդն Կապոյտ, որ կոչի Արտագերից» — Եղիշէ այլուր ասէ. «Եւ յառաջ խաղային (Պարսիկք) ի միջոց աշխարհին, մարտ եդեալ կռուէին ընդ մեծ ամուրս Կապոյտ լերին»։ Հաւանական է որ Կապոյտ լեռ զԱրշարունիս կամ զԿաղզուան Շիրակէն զատող լեռնագօտին է, որ այժմ կոչի Գարատաղ. և այս գօտւոյս մէկ գժուարամատոյց դիրք վրայ կառուցեալ էր անշուշտ Արտագերից բերդը, որ գուցէ լերան անուամբը Կապոյտ ալ կը յորջորջէր։ Սա է Պտղոմէոսի՝ Artagigarta, Ստրաբոնի Artageras և Ամմիանոսի Artogerassa կոչած Հայոց հզօրագոյն ամրոցներէն մին, որ կրնար մետասան հազար հեծեալս պահել ի ներքս, տես էջ 189. ծն. 1։ Ի յարևելս Կաղզուանայ և յահեկէ Երասխայ Գեղս գիւղ, որ գուցէ այդ բերդին անունը կրէ ցարդ։ Սակայն ուրիշ Կապոյտ բերդ մի ալ կար, զոր Եղիշէ քիչ մը առաջ առանձինն կը յիշէ Սիւնեաց աշխարհին բերդերուն հետ։

Արճճի կամ Արխնի ուրիշ է Արղնի կամ Արկանայէ, որ Տիարպէքիրի արևմըտեան հիւսիսային կողմը գտնուելով Յունաց բանին մէջ կ՚իյնար։ Գուցէ ըլլայ Անճի, որ է յարևելս Արճէշի, յեզր Վանայ ծովու։

Ոզական կամ Ոզկան.— Եփրատայ արևելեան մեծ բազուկը՝ Արածանին կամ Մուրատ Չայը Մշոյ դաշտը ոռոգելով, երբ կը համնի անոր արևմտեան ծայրը՝ Կուրկուր կոչուած տեղ մը, երկու քարաժայռի մէջ կը սեղմի և անոր կը դահավիժէ տասն մէթր բարձրութենէ և ահաւոր դղրդմամբ։ Ի քարավագիցդ երկու ժամաչափ առաջ՝ մեծ առատութեամբ կը բաղխէ փրփրադէզ ալիքները ապառաժ բարձրաւանդակի մը դէմ, որոյ երեք կողմը շրջելով երկայն քառակուսի թերակղզի մը կը ձևացնէ յաջակողմն։ Այդ բարձրաւանդակը ջրոյն երեսէն քառասուն մէթր բարձր է և շուրջանակի պատեալ էր պարսպաւ, որոյ աւերակները նշմարելի են տակաւին։ Որմնափակ միջոցը 140 քայլ երկայնութիւն և 120 քայլ լայնութիւն ունի։ Քաղցրահամ վազուկ ջուր մը, որ կը բղխի պարսպացդ հիւսիսային կողմէն, կը հայթայթէր անշուշտ երբեմն առատապէս բերդականաց պիտոյքը։ Այդ է Ոզկան բերդը՝ Մամիկոնեան ամրոցը, զոր մերձակայ բնակիչք «Սլկունեաց բերդ» ալ կը կոչեն մինչև ցայժմ։ Վասն զի Սլկունեաց իշխանը՝ Սլուկ գաղտնի բանակցութեամբ ընդ Շապհոյ, ապստամբեր էր Տրդատայ դէմ և Ճենացի գաղթական Մամգուն հրամանատարութեան՝ բարեկամ և դաշնակից ձևանալով Սլուկի, իւր համօրէն աղխին անցեր էր ի Տարօն, և օր մը ամրոցէն դուրս իշխանին հետ որսի գնացած ատենը աղեղամբ զարկեր սպանաներ էր զապըստամբն և փոխարէն այդ ծառայութեան, ընդուներ էր յարքայէն զգեօղս և զդաս-

*լեցին[1], և ի գերութիւն վարեցին զարս և զկանայս ընչիւք և ստացուածովք, հանդերձ պատուական գանձիւք*

տակերտս և զամենայն իշխանութիւն ազգին Սլկունեաց: Գիւղացիք աւանդութեամբ կը ցուցանեն ի հիւսիսոյ ամրոցին բլուր մը, որ բերդէն աւելի բարձր է, ուրանոր ապաննուէր է Սղուկ: Անտառօք ծածկուած է բլրոյդ շրջակայքը. ուստի և յարմար որսոյ արշաւանաց. Տես Խորէն. Բ. ԶԴ: Բուզանդ ալ կ'ըսէ. «Եւ Մուշեղ սպարապետն Հայոց էր ի գաւառին Տարօնոյ յիւրում բերդին, որում Ողական կոչեն, որ կայ ի վերայ գետոյն Եփրատայ»: Այդ բերդէդ վար իջեցուցեր էր Մուշեղ ձմեռան զՀայր մարդպետն կապեալ ձեռօք և ոտիւք և ի մօրէ մերկ ու սառած գետոյն վրայ թողլով մեռուցեր էր զդա ի վրէժ անարգանացն, զոր արար նա փառանձեմայ տիկնոջ. Բուզանդ էջ 191: Ողականի հիւսիսակողմը և անկէ քիչ հեռի ըլլալու էր հին աւանն Կուառք կամ Կուառառուն. Զենոբ էջ 26:

Որոտն կամ Որոտան բերդ՝ յաշխարհին Սիւնեաց (Օրբելեան հատ. ա 52). Ծղուկ էր գահանիստ գաւառ Տեարց Սիւնեաց, և ի գաւառիդ՝ յահեկէ գետոյն Պարկուշատայ՝ Որոտն բերդ և աւան իշխանանիստ, որոյ անուամբն գաւառս ալ կը յորջորջէր Երկիր Որոտան կամ Որոտան Ձոր: Աւանը այժմ աւերեալ և ամայացեալ է. իսկ բերդն հզօր հանդէպ նորին տակաւին կիսականգուն կայ. քանզի յերից կողմանց անձեռագործ պարիսպ ունի զքարաժայռս. չորրորդն ձեռագործ խանդարեալ է, ի ստորոտէ բերդին փող գետնուղի հանէ յեզր գետոյն առ ի հանել ջուր ի վեր: Սիսական 218:

Կապոյտ բերդը Վայոց Ձորոյն մէջ էր. Օրբէլեան հատ. ա 52: Վասակակերտ և Վասակաշէն անուամբ բազում գեօղք կան յայլ և այլ գաւառս Սիւնեաց: Գիւղն Ջօթ կամ Սոթ. որ է յարևելեան հարաւային կողմն ծովուն Սևանայ, ի հնումն կոչէր Վասակաշէն. կան առ նովաւ հին գերեզմանք և խաչվէմք և եկեղեցիք. Ալիշան Վ. Տեղ. 148: Գուցէ այդ կամ Պարկուշատայ գետոյն ակերը՝ յ 2100 մեդր բարձրութեան գտնուած Վասակակերտն ըլլայ Եղիշեայ Վասակաշատն: Խշաթրա՝ հին բևեռագրոց մէջ և զենդ, բահլաւի լեզուաւ նշանակէ քաղաք, ուստի և մեր քաղաքաց ոմանց շատ վերջաւորութիւնը: Բայց Ալիշան Վ. աւերակաց մէջ չյիշատակեր պարըսպաց նշմարանք:

ԵՐԿԱՑՆՈՐԴՔ, ԲԱՐՁՐԱԲՈՒՆ, ԽՈՐԱՆԻՍՏ, ՃԱԽԱՆԻՍՏ, ԱՐՓԱՆԵԱԼ, ԴՕԵԱԼ. սոցա գիւղքն կարելի չեղաւ մեզ հաւաստել:

1. Կարծեմ թէ բացարձակ կերպով հասկնալու չէ. որովհետև այդչափ քաղաքներ չէին կրնար Հայք աւերել քանդել, մանաւանդ որ ամրութեանց և բերդից պէտք ունէին. զայս ձեռք անցնելէ ետքը խորտակելը յիմարութիւն կ'ըլլար. այլ իմա տապալեցին զիշխանութիւնն Պարսից: Այս բերդերուս կը բռնէին Պարսիկք զՀայաստան, ու ասոր համար էր, որ կ'ըսէր Յազկերտ. «Ոչ կարէք աւերել զանխար ամուրս իմ. — Յ. Բ 73, Սոքա Պարսիկ զօրագլխաց և զօրաց յանձնուած էին. ինչպէս որ ալ կը հետևի այս և հետագայ պարբերութիւններէ: Նոյնպէս էր և յԱղուանս Յ. Գ 61: — Բահլաւի–Բազանդ Բառարանին մէջ կը գտնեմք դապլօմտագան՝ կոտրել, աւերել. Ըստ Պ. Հաւկի այդ բառդ լծորդ է քաղդէարէն և եբրայեցերէն համանիշ արմատներու հետ, և միջնադարեան Պարսիկք զայն չէին հնչեր որպէս գրուած է, այլ շէքաստան կը կարդային: Ուրեմն դապլօմտագան՝ տապալել, նմանակն բառ մի է հասարակ Հայոց և Քաղդէացոց:

և նոյին սպասուք: Տապալէին քանդէին զշինուածս նոցա, և այրէին կիզուին զատենս պաշտօնարկի և պաշտաման կրակի[1]: Սրբէին զպղծութիւն կռապաշտութեանցն[2] և առնուին զկահ և զկազմածս ատրուշանացն, բերէին և գնէին ի սուրբ եկեղեցւոյն. և ի ձեռն սուրբ քահանայիցն նուիրէին ի սպաս տէրունական սեղանոյն: Եւ փոխանակ մնոտի պաշտամանցն՝ զոր տապալեցին յամենայն տեղիս հեթանոսացն, զփրկական խաչն Քրիստոսի կանգնէին. զամենասուրբ սեղանն ուղղէին, և զկենդանարար խորհուրդն կատարէին օրհնութեամբ. պաշտօնեայս և քահանայս ի տեղւոյն կացուցանէին: Յաւուր հաստատեալ խրնդայր ամենայն երկիրն առ հասարակ:

41. Եւ մինչ դեռ յայսմ մեծի առաքինութեան կատարեալ գործէին զգործ նահատակութեանն, երեւէր իմն ի վերայ ամենեցուն աստուածային շնորհք. քանզի առանց հրամանի ի զօրացն Հայոց, յարեւելից կողմանէ աշխարհին, յարձակեցան ոմանք յԱտրպատական աշխարհն[3], և

1. Ըստ Թովմայի Արծրունւոյ (Թդ. դար) և Վարդան պատմչի ԺԳ. դարու, մեհեան Որմզդի և տուն կրակի շինեալ կայր յԱրտաշատ ի ձեռն Շաւասպայ Արծրունւոյ և վնդոյ պարսից մոգպետի, որք քրմապետ կարգեր էին զՇերոյ՝ զորդին վնդոյի: Վարդան իւր գընդաւն յԱրտաշատ եկեր էր. ՛սատակէր զՇաւասպ և զպիղծն վնդոյ յատրուշանն հրոյ արկեալ այրէր. և զՇերոյ ի վերայ բագնին կախէր զփայտէ. և զտեղին շինէր եկեղեցի անուամբ Սրբոյ Գրիգորի: Թովմա և Վարդան կարդացեր էին զպատմութիւն Եղիշեայ. (Տես Թովմ. 26, 89 և Վարդ. էջ 12): Բայց այդ տեղեկութիւններդ զոր կու տան մեզ, մասամբ իւիք կրնան ճշմարիտ ըլլալ, քանզի ժամանակակից պատմիչք՝ Եղիշէ և Փարպեցին՝ զՇաւասպ արծրունին ըննեն ի կարգս նախարարաց որք ետուն զանձինս ի կապանս արքունի և գնացին յաքսոր: Թովմա Արծրունւոյ պատմութիւնը որուն հետեւած կ'երեւի Վարդան, ժամանակագրական մեծամեծ վրիպակներ ունի: Տես ի վերայ էջ 66 և 67:

2. Արդարացի չէ կռապաշտութիւն անուանել զմազդեզն օրէնս: Մազդեզունք նոյնքան ուժգնութեամբ կը դատապարտէին զկռոց պաշտամունս որքան Եղիշեայ ժամանակակից քրիստոնեայք: Նոյն իսկ յաւուրս Աքեմենեանց. որք Սասանեանց բաղդատմամբ նուազ մոլեռանդն եղած կ'երեւին, Կիւրոսի յաջորդն Կամբիւս եգիպտական մնապաշտութիւնքն անարգելով, Ապիսի և այլոց դից մեհեանները կործաներ էր և Ամմոնի տաճարն ալ տապալելու համար խրկեր էր բանակ մը, որ անապատին մէջ փոթորկի բռնուելով աւազու տակ թաղուեր էր: Քսերքսէս ալ ի Յունաստան մեհենից արձանները խորտակեր էր. մինչ Աղեքսանդր յարգեց ընդհանրապէս զպաշտամունս Պարսից:

3. Ատրպատական աշխարհ կամ Ատըրպայականն երկիր. (Բուզանդ 145): Երեք նշանաւոր կրակներ կային որք

*ի տեղիս տեղիս բաղում վնաս արարին՝ առնլով և աւերելով և քանդելով զբաղում ատրուշանս:*

42. *Իսկ որ ի մեծ ամուրսն անկանէին, խաչանշան արարեալ ի վերայ զօրուն յարձակէին. որ և երկու մեծամեծ բերդացն պարիսպքն առանց ուրուք մերձենալոյ անկեալ կործանեցան. մինչև ամենայն բնակչաց երկրին զահի հարեալ ի մեծ նշանէն, ինքեանք ինքեանց ձեռօք զկրակատունսն այրէին. ուրանալով զօրէնս մոգութեանն՝ խոստովանէին ի սուրբ աւետարանն:*

43. *Եւ այլ մեծամեծ աջողութիւնք կատարէին ի ձեռն զօրականին. քանզի ուր ոչ էր ակնկալութիւն, եթէ զանուն Աստուծոյ ոք յիշեսցէ, արհաւիրք մեծ անկանէին ի վերայ նոցա. և ամենայն մարդ պատմէր ընկերի իւրում տեսիլս նորս և զարմանալիս: Այնպէս և աստեղք ի յերկինս երեւէին յոյժ լուսալիր պայծառացեալ, զոր ոչ ունէին յառաջին բնութեանն: Եւ ամենայն տղայք աշխարհին իբրև զարս պատերազմողս խիզախէին:*

պահէին զանեղերս. ա. Փրօպաք՝ ի Խորազմ, ուսկից յետոյ փոխադրուեր էր ի Գապուլ. բ. Գուշնասպ, զոր Քայ-Խոսրով Ջէչաստ (Ուրմեան) լճին կառուցանէրը կործանելու ատեն այն կողմերը Անաւանտ լերան վրայ հաստատեր էր. գ. Պուրզին-միհրօ, զոր արքայն Վշտասպ ժամանակակիցն Զրադաշտայ, զետեղեր էր ի լեռան Րէվանտ՝ մերձ ի սահմանս Վաշգեսի, (Պունտ. 62–64. Զատ-Սպարամ էջ 186)։ Վասն որոյ հնագէտք ընդհանրապէս մեկնեն զանունդ Ատրպատական իբրև ատր + պատքան. ատր՝ կրակ և պատքան՝ ունող, պահպանող, լծորդ մեր «պատեան» բառի։ Բայց այդ մեկնութիւնդ մեզ հաւանական չերևիր. անունդ չէ Ատրպատկան, այլ Ատրպատական և Պունտահիշի մէջ գըրուած է Ադուր-Բադագան (Տես Pahlavi-Texts)։ Յայտ է թէ արմատը ադուրբադ՝ և քան յոգնակիի վերջաւորութիւն է. որում ապացոյց մի ունիմք մեր Ատրպատունիք անուան մէջ, որ Վասպուրականի գաւառ մի էր Ուրմեան լճին մօտերը (Ալիշան Վ. դնէ զսա ընդ մէջ Արճէշոյ և Քոզուր գետոյ)։ Հին Հելլէն պատմագիրք ալ Atropatène կը կոչէին. զոր Ստրաբոն եկած կը կարծէ Ատրոբատէս իշխանին անունէն, որ Մեծին Աղեքսանդրի ժամանակ այն կողմերը ինքնագլուխ կը թագաւորէր։ — Ատարօբատ կամ Ատրպատ է կրակապետ, կրակաքուրմ։ Ատրպատականի սահմանակից Վասպուրական և Սիւական նահանգներն ալ նոյն վերջաւորութիւնը կը կրեն, որ կամ յոգնական և կամ հայրանունական մասնիկ է։ Վասպուր «զօրագլուխ» կը նշանակէ (Տես Pahlavi-Pazand Glossary)։ Սիւնեաց աշխարհին Սիսական յորջորջիլն ալ աւելի Պարսից յատուկ էր քան Հայոց (Տես Խորեն. Ա. ԺԲ)։ Սորա հայերէնը՝ պէտք էր ըլլալ «Սիսականք»։

44. Եւ ահա յետ աւուրց բազմաց եկն եհաս հազարապետն Աղուանից[1] սուրբ եպիսկոպոսն աշխարհին, մեծաւ տագնապաւ փութացուցանէր զզօրսն ասելով. « Գունդ Պարսից, որ էր ի կողմանս աշխարհին Հոնաց, դարձաւ այսրէն, եկն եմուտ և այլ այրուձի՝ որ ի դրանէ[2] եկն: Եւ թող զայս ամենայն, այլ երեք հարիւր մոգ վարդապետ ածեալ ընդ իւրեանս, պատակտեցին զաշխարհն, և զոմանս ոմանս յինքեանս արկին, և կամէին յեկեղեցին ձեռն արկանել. և հրամանաւ թագաւորին ստիպէին զամենեսեան ի տաճին. Եթէ կամիք յանձն առնուք զօրէնս, պարգևս և պատիւս գտանէք ի նմանէ, և թողութիւն հարկացն յարքունուստ լիցի ձեզ. ապա թէ կամիք չառնէք, հրաման ունիմք ի գեօղս և ի քաղաքս շինել ատրուշանս, և զվռամական կրակն[3] ի ներքս դնել, և կա-

1. Աղուանք թագաւոր ունէին տակաւին (Ց. Ը 144):

2. Ոչ ճորայ պահակէն, այլ յարքայանիստ քաղաքէն Պարսից, որ և կոչէր դուռն, որպէս և սովոր է այժմ կոչել տէր զմայրաքաղաքն Օսմանեան Պետութեան:

3. Վռամական կրակ. Պահրամ կամ Վահրամ ատաշ (Բահլաւի ձեռագրաց մէջ գրի եւ ورهرام Վըհրամ): Կրակք ինչպէս և կրակատունք երկու տեսակ են. ա. մեծ կրակատուն որ Ատաշ–Պահրամ կը կոչի. բ. փոքր կրակատունք, որք Ատարան կ'ըսուին: Պոմպայի մէջ մինչ հարիւրի չափ ատարանք կան, Վռամականը միայն երեք է: Վռամական կրակի և Ատարան կրակի տարբերութիւնը՝ սոցա տեսակին՝ այս է ծագման և պատրաստութեան մէջ է: Տարի մը պէտք է զՎռամականը պատրաստելու. տասն և վեց տեսակ կրակէ պիտի բաղկանայ, որով կ'ամփոփէ յինքեան ամէն կրակաց ոյժը և էութիւնը. և յոյժ սրբազան է և յարգելի: Այդ զանազան տեսակաց նուիրագործումը երկար և մանուածոյ արարողութեանց կը կարօտի, որք կարգեալ են ի Վենտիտատ: Ըստ Բիւլայէթաց մէն մի քաղաքի մէջ մէկ Վռամական կրակ կրնայ գտնուիլ: Ոմանք տակայն ի Տաւթուրաց կը պնդեն թէ բաւանդակ հասարակութեան մը մէջ մէկէն աւելի ըլլալու չէ. քանզի, ասեն, Վռամական կրակը թագաւոր է կրակաց. և միոյ աշխարհի երկու թագաւոր չըլլար: Ատարան կոչուած կրակը երեքս գործածուած տնական կրակներէ կը կազմուի:

Զգոյշ կերակրելու եղանակն ալ տարբեր է. այժմ ի Հնդիկս կրակարանքը օրուան հինգ պահերէն իւրաքանչիւրին ճանդան (Sandale) փայտի մէկ մէկ չերտ միայն կու տայ Ատարան կրակի՝ յատուկ Նիյայիշն գրուցելով. մինչդեռ Վռամականին չերտերն վեց պիտի ըլլան, որք երկուս երկուս իրարու վրայ դրուելով՝ աստիճանաւոր գահ մի պէտք են կազմել թագաւորին: Կրակատանց ձեւը նոյն է. ընդհանրապէս Վռամական կրակի մեհեանը աւելի մեծ կ'ըլլայ: Հայաստանի մէջ հաստատեր էին Պարսիկք զկրակն Վռամական որպէս պատուիրեալ էր յօրինաց իւրեանց: Տես յէջ 143–44:

ցուցանել միգս և միգպետս օրէնդրի[1] ամենայն աշխարհիդ: Եւ եթէ ստամբակեալ ոք ընդդէմ դարձցի, ինքն մահու պատուհաս ընդունի, և կին և որդիք այնպիսայն անաշխարհիկ եղեալ՝ յարքունիս երթիցեն »:

45. Իսկ գունդն Հայոց իբրև լուաւ զայս գայժ դառնութեան, ոչ ինչ թուլացեալ լքան ի քաջութենէն. այլ դարձեալ համագունդ ժողով լինէր ամենայն աշխարհին վասն գումարելոյ հրեշտակացն, որ հասին առ նոսա: Եւ միաբան քաջալերս տուեալ՝ արձակեցին զնոսա, զի առ ժամանակ մի զնոսա պատիր խաբէութեամբ կալցեն, զի խափանեսցին ի չար կամաց, չձեռնարկել ի սուրբ ուխտ եկեղեցւոյն իւրեանց. և զօրութեամբն Աստուծոյ խորհուրդ ի մէջ առեալ՝ իրացն հնարիւք եւս խնդրէին:

46. Յայնմ ժամանակի զմի ոմն ի մեծ նախարարացն, ի տոհմէն գնունեաց Ատոմ[2], ճեպով առաքեցին յերկիրն արևմից ցուցանել զայս ամենայն խորհուրդ գչարիմաց թագաւորին արևելից. միանգամայն և պատմել զիւրեանց քաջութիւն արութեանցն, զոր գործովք կատարեցին՝ առ

վաճառական կրակին մոխիրը կը խառնէին Արարատ կրակաց մոխրոց հետ և ժամանակ մը պահելէ յետոյ արտերուն մէջ կը տարածէին:

1. Ահա կարճառօտ տեղեկութիւն մը, որ կը ցուցանէ մեզ թէ մոգք և մոգպետք Օսմանցոց Ուլէմային պաշտօնը կը վարէին Պարսից մէջ. օրէնդիրք էին և դատաւորք: Ձորայ մարզպանին անունն էր Սեբուխտ Նիխորական (Տես Յ. Գ 56 և փարպեցի էջ 187). ան ամենայն ջանք ըրեր էր զԱշուանս կրակապաշտ ընելու: Աշուանից թագաւորն ինքնին Վաչէ բռնի զրադաշտական եղաւ (Յ. Ը. 142):

2. Ըստ փարպեցւոյ, Թէոդոս կայսեր, Անդեղտան իշխանին, Ծոփաց, Հաշտենից, Եկեղեաց, որպէս և Աղձնեաց բդեշխին ուղղեալ նամակները տանողներն էին Վահան Ամատունի՝ այր մըտացի և խորհրդական, Սեպուհն Հմայեակ՝ եղբայր սպարապետին և Մերուժան՝ եղբայր Աշանայ ի տոհմէն Արծրունեաց (էջ 184). Այս երեքս Արտաշատ պատերազմին չէին հասած (Նոյն 216–220): Բայց ըստ Եղիշեայ, Վահան Ամատունին ներկայ էր անդ (Յ. Ե 3): Փարպեցին Ատոմայ ի Բիւզանդիոն խըրկուիլն բնաւ չյիշեր, մինչ Եղիշէ միայն Ատոմայ դեսպանութեամբ առաքիլն կը զրուցէ և այս ալ երկիցս (Տես Յ. Է 28): Մեր հեղինակը որ ականատես և գործակից էր իւր պատմած իրաց, չէր կրնար սխալիլ այդպիսի կարևոր խնդրոյ մը մէջ: Բաղդատելով զերկու պատմագիրս, պարտ է հետևցնել որ միայն Ատոմ առաքեցաւ ի Կոստանդնուպոլիս. իսկ միւս երեքն Յունաց բանակին մէջ գտնուող հայ գաւառները երթալու և ի նոցանէ օգնութիւն ճարելու պաշտօն ունէին: Ամատունին Վահան գուցէ աւելի մօտ նահանգ մը գնացած ըլլալուն համար, շուտով աւարտեց իւր գործը և կրցաւ հասնիլ պատերազմին:

տան հարկանելով զհրամանն աչեղ, և մեծապէս սաստկումն ի վերայ մոգացն հաստացանել[1]. խնդրել ի Նմանէ օգնականութիւն սատարութեան, և եթէ նա կամեսցի՝ նմա իսկ մնանել ի ծառայութիւն: Եւ այս է պատճէն հրովարտակին զոր գրեցին առ Թէոդոս կայսր.

47. Յովսէփ եպիսկոպոս[2] բազում եպիսկոպոսակցօք իմովք և ամենայն զօրք Հայոց, Վասակ մարզպան և Ներշապուհ Ռմբոսեան հանդերձ սպարապետաւս և ամենայն մեծամեծ նախարարօքս՝ առ մեծանունդ Թէոդոս կայսր, բազմասցի ողջոյն մեր առ քեզ և ամենայն զօրաց քոց, որ խաղաղասէր մարդասիրութեամբ ձերով տիրէք ծովու և ցամաքի, և չիք ոք յերկրաւորացս՝ որ ձերում անարգել տէրութեանդ ընդդէմ դառնայցէ[3]: Որպէս մեք իսկ

1. «Հաստացանելով» պէտք էր ըլլալ, որպէս կ'ուղղէ Թէոդոսեան տպագիրը։

2. Նամակիս վերնագիրը յոյժ նշանաւոր է. կը ցուցանէ թէ Եկեղեցականք որքան բարձրացեր էին Նախարարաց վրայ՝ Թէոդոս կայսեր ուղղեալ այս թուղթս գրողներն են իրենց յիշատակութեան կարգաւ. ա. Կաթողիկոսը. բ. Եպիսկոպոսունք. գ. Ամենայն զօրք Հայոց. դ. Մարզպանը. ե. Արծրունեաց իշխանը. զ. Սպարապետն. է. Մեծամեծ նախարարք։ Երկիր մը ուր գահու և ատենի համար կարգէ դուրս նախանձախնդրութիւն կար, այդ յիշատակութեան եղանակին կարևորութիւնը անուրանալի է։ Թէ եկեղեցականք նախարարներէ և նոյն ինքն մարզպանէն առաջ անցնին, զարմանալի չէ այն ժամանակին բարուց և հանգամանաց նկատմամբ. բայց թէ Հայոց զօրքն անմիջապէս եպիսկոպոսներէն վերջը ու բոլոր նախարարներէ յառաջ յիշուին, կը ցուցանէ թէ քրիստոնէութիւնը և մանաւանդ ազատամըտական շարժումը մեծ յեղափոխութիւն յառաջ բերեր էին Հայոց քաղաքական վիճակին մէջ։ Ժողովուրդը որ զօրաց մեծագոյն մասը կը կազմէր, մանաւանդ թագաւորութեան բառնալէն ետքը աւելի եկեղեցականաց հրամանին կ'անսայր քան նախարարաց, որք ի դարուց հետէ զինքը ճնշեր էին։ Նախարարաց մէջէն միայն մարզպանին Վասակայ և Արծրունեաց Ներշապուհ իշխանին անունը կը տրուի, որ Հայաստանի մեծագոյն տանուտեարքն էին։ Սոցա առաջինը սաստիկ դժկամակութեամբ կը տանէր եկեղեցականաց լուծը. իսկ երկրորդը կատարելապէս հնազանդ էր նոցա. այլոց նախարարաց և սպարապետին անգամ անունը չտրուիր. այժմ որ աստուածային օրէնք կը թագաւորէն, Կաթողիկոսին սպարապետն և նախարարքն են. «հանդերձ սպարապետաւս և ամենայն մեծամեծ նախարարօքս»։

Ներշապուհ կը բաղկանայ ի Ներ և Շապուհ անուանց. Ներ՝ պարսկերէն՝ է «այր, արու». շապուհ՝ թարգմանի արքայորդի։

3. Արևելեան կայսերութիւնն այն ժամանակին առաջին ծովային զօրութիւնն

ունիմք զանուն յիշատակարանն[1] զաւաքինի նախնեացն ձերոց. ունելով զԵւրոպէ՝ անցին և տիրեցին և ասխացւոց կողմանցն ի սահմանացն Սերաց մինչև ի կողմանս Գադերոնի[2], և ոչ ոք գտաւ ատամբակել և ելանել ընդ ձեռն նոցա։

48. Եւ յայնչափ մեծ իշխանութեան՝ դաստակերտ մեծ և սիրելի զՀայոց աշխարհս անուանէին[3]։ Վասն որոյ

էր։ Եւլեսպոնտոսի և Վոսփորոսի նեղուցներուն տէր եղող ազգը՝ Թրակեան Թերակղզւոյն և Փոքր Ասիոյ դէմ առ դէմ ափանց պատճառաւ, ամէն ժամանակ զօրաւոր նաւատորմիղ մ'ունենալու պարտաւոր էր։ Բայց այն խօսքը թէ « չիք ոք յերկրաւորացս որ ձեռաւ անարգել տէրութեանց ընդդէմ դառնայցէ », եթէ Կոստանդիանոսի կամ մեծին Թէոդոսի ուղղեալ ըլլար. բարեկամաբար գովեստ մը կը լինէր. բայց անդէպ և ծիծաղելի՝ նկատմամբ փոքուն Թէոդոսի, որ տեսեր էր Ատտիլասայ մինչև իւր մայրաքաղաքին շրջակայքը ասպատակելն և նմա հարկատու անգամ եղեր էր։ Արդէն Եղիշէ ինքնին պատմեց մեզ թէ Յազկերտի դէմ չկրցաւ ելանել ու նորա ամէն ուզածը կատարեց (Ց. Ա. 3)։ Թագաւորաց կողմանէ գրուած կամ նոցա ուղղեալ գրութեանց մէջ յախորժակք կամ չափազանց գովութիւնք սովորական էին այն դարերուն մէջ։

1. Այս նամակիս գրութեան առեն Խորենացւոյ պատմութիւնը շարադրուած չէր։ Եթէ պարբերութեանս երկրորդ մասին ալ նոյնինք Ագաթանգեղեայ կամ Դաշանց գրոց պէս մանաւանդ գրութեանց ալ ակնարկութիւն մի ըլլալու չէ այս խօսքս։ Հռովմայեցւոց Ասիոյ մէջ ըրած աշխարհակալութեանց վրայօք՝ հայ Թագաւորաց դիւանին մէջ պաշտօնական յիշատակարաններ կային անշուշտ, ինչպէս և հոյակապ նախարարաց ոմանց քով։ Գուցէ « մեք իսկ ունիմք » ըսելով իմանայ Կաթողիկոսը՝ Հռովմայեցի և Յոյն պատմչաց ընագիրքը։

2. Գադերոն է Գատիքս կամ Գադէս քաղաքն յարեւմուտս հարաւոյ Սպանիոյ, զոր Յոյնք Γαδειρα կը կոչէին. — Իսկ Սերք (Sères գղ.) կը յորջորջէին նախնի Հելլէնք և Հռովմայեցիք Ասիոյ արեւելեան ծայրը գտնուող ազգերն, որոց երկրէն կը բերէին մետաքս (Sericum) և բամբակեայ ազնիւ և բարակ կերպասներ։ Սերաց աշխարհը (Sérique) այժմեան Նեփալը կամ Սիամը և կամ Ճենաստանը կը կարծուի (Dézobry. Dict. de Biographie, d'Histoire et de Géographie)։ Իսկ վաճառքը՝ կարաւաններով և Թէյի ճանապարհաւ Հայաստանի և Մծբնայ վաճառանոցներուն մէջ կը մթերուէր, ուստի պարսիկ և այլ վաճառականք կ'առնուին և Ասորւոց ծովեզերեայ քաղաքներն տանելով Հռովմայեցւոց կը ծախէին (Տես Gibbon հատ. ա. 313)։ Հռովմէական պետութիւնը արդարև կը տարածուէր մինչև ցԱտլանտեան Ովկիանոս. բայց Տիգրիսէն անդին երբէք չէր անցեր. ի կողմանէ ելից Սերաց աշխարհը սահման կրնայ դրուիլ Մեծին Աղեքսանդրի աշխարհակալութեանց, որք ի մօտոյ կը յանդէին ցԱդրիականն։ Հայք որ Արևելեան կամ Յունական Կայսրութեան կը գրեն՝ կը խառնեն զաշխարհակալութիւնս Հռովմայեցւոց ընդ Աղեքսանդրի և Սելևկիացւոց տիրապետութեանց։

3. Դաստակերտ է ձեռակերտ՝ ագարակ, աւան, նոր քաղաք. բայց աստ նմանութեամբ իմանայ հեղինակն նա-

*Եւ նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, որ ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն[1] իւրոց՝ ապրեալ մնաց յերկրիդ*

մակիս, զհամօրէն աշխարհս Հայոց։ «Հայոց թագաւորութիւնն, ասէ Յուստինոս համառօտիչն Տրոգոսի – Պոմպէոսի, յետ Պարթեւացն Ասիոյ մեծագոյն թագաւորութիւնն է. քանզի ի Կապադովկիոյ ձգի ցծովն Կասպից» (գիրք ԽԲ 2). — Պարթեւ թագաւորք ալ երրորդ իշխանութիւն (Potentia), կը համարէին զՀայաստան։ Առաջինն էր Պարթեւաստան, որոյ վրայ ուղղակի կ'իշխէին. երկրորդը՝ Մարաստան. (Տես Տակիտոսի Տարեգիրք. գիրք ԺԵ 2)։ — Ըստ Ագաթանգեղեայ, Մեծին Խոսրովու ատենը Հայոց թագաւորը երկրորդ էր Պարթեւաց Տէրութեան. (բ)։ Սասանեանք երբ տակաւին Հայաստանի չէին տիրած զԱտրպատական երկրորդ տուն կը համարէին յետ Պարսից. (Բուզանդ 124)։

1. Զհայրն Տրդատայ՝ զԽոսրով սպանանողներն էին՝ Անակ և Անակայ եղբայրը որոյ անունը պատմութիւնը աւանդած չէ մեզ։ Անակ էր գլխաւոր նահապետ և տանուտէր պարթեւ Սուրէնեան ցեղին։ — Հայրասպան տատանօր չէ զհայրն սպանանող (որդի), այլ որդւոյն նկատմամբ զհայր նորին սպանանող (այլ ոմն)։ Հօրեղբարք՝ ոչ եղբարք Խոսրովու, այլ տոհմակիցք և հասակակիցք նորա։ Հօրեղբարցն առկայն այլեայլ մեկնութեանց տեղի տուաւ, ոմանք զԱնակ հարազատ եղբայր կարծեցին Խոսրովու (Գարագաշ. պատմ. Հյց)։ այլք Ը. դարու հեղինակք՝ Գէորգայ ասորի եպիսկոպոսի հետեւած, Լուսաւորչայ մէկ կենսագրութեան մէջ «Գրիգորիոս ազգաւ հռովմայեցի» ըսուած ըլլալը կռուան առին և Խոսրովու ընդ Անակայ ինչպէս և Գրիգորի ընդ Տրդատայ առընչութեանց մէջ տեսնուած խորհրդաւոր զուգադիպութիւնքը պատմական չհամարելով, Սասանեան արքայի կողմանէ խրկուած Անակայ գոյութիւնը մերժեցին և այս նամակիս վրայ ևս յենլով զԽոսրով կարծեցին սպանեալ յեղբարց իւրոց՝ գրգռութեամբ Պարսից։ «փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն» խօսքերն ալ արդարև աւելի շփոթութիւն կը պատճառեն։ Քանզի եթէ ըստ Ագաթանգեղեայ պատմութեան զԱնակ և զեղբայր նորա իմանանք, Տրդատ կամ անոր պաշտպան դայեակն՝ Արտաւազդ անոնցմէ վախ մը չէին կրնար ունենալ. վասն զի Խոսրով հազիւ թէ մահաբեր հարուածն ընդուներ էր և «ջերմ ոգիքն ի ծոցոյն չև էին թափեալ» նախարարք գունդագունդ զօրօք կամրջներն և պողոտաները բռնելով, զդաւաճանս գետավէժ ըրեր էին Երասխայ մէջ, և զկանայս և զմանկտիս և զհամօրէն ազգատոհմն նոցա կոտորեր էին, և միայն Անակայ երկու դեռատի մանկունքն ազատեր էին իրենց դայեկաց ձեռօք, մին ի կողմանս Պարսից և միւսն Յունաց. մինչդեռ Տրդատայ փախուստը՝ ըստ Ագաթանգեղեայ, յունական օժանդակ զօրաց Պարսից բանակէն վանուելուն հետեւանք եղած էր։

Ըստ մեզ, Ագաթանգեղոսի և Խորենացւոյ մանրամասն նկարագրոյն և ազգային մեծ և ընդհանուր աւանդութեան դէմ, որ Խոսրովու՝ յետ քառասնամեայ թագաւորութեան՝ ոչ եղբարս թողուցած ըլլալը և ոչ անոնց քաղաքական ո՛ և է դեր մը ունենալը կը յիշեն, նոր պատմութիւն մի հիւսելու համար բաւական կռուան չկրնար ըլլալ այս նամակս, որ վերէն ի վայր պատմական շփոթ գաղափարօք շարագրուած է, և որուն նայելով պէտք էինք Գրիգորի մեծամեծ ծա-

Յունաց, և ի ձէնջ Թագաւորեալ տիրէր հայրենի աշխարհիս, այնպէս և զհաւատոն որ ի Քրիստոս՝ ընկալեալ ի սուրբ եպիսկոպոսապետէն[1] Հռովմայ, լուսաւորեաց[2] ըդ-

ռայութիւններն անգամ ուրանալ, որ անշուշտ զայն գրել տուող եպիսկոպոսաց և իշխանաց մտքէն չէր անցած։ Արդարև Արտաշիր ջանացեր և յաջողեր էր Ասպահապետեան և Սուրէնեան պահլաւ տանուտէրքն իրենց ազգակցին Արտաւանայ դէմ գրգռել. բայց սոյնք Արտաւանայ եղբարքը չէին, այլ դարերէ ի վեր հաստատեալ նախարարական տոհմք (Խորեն, ԿԸ)։ Ջհայս երկպառակելու համար բաւական էր անոնց տանուտերց հակառակասէր և փառամոլները ձեռք առնել որք պակաս չէին. ու հարկ չկար դաւաճանս յարուցանելու արքունական գերդաստանին մէջ, որ նախարարաց այդ ընթացից պատճառն ընդհանրապէս ամփոփ և միաբան գըտնուած էր։

Մնաց որ Անակեանց Խոսրովու եղբարք կոչելն ընաւ զարմանալի չէ։ «Եղբայրութեան հարազատութեան զօրաւոր կապին տակ պահել ուզուած էր և այդ անուամբքդ իսկ յորջորջեալ էր այն ազգականութիւնը, որ կայր զանազան պահլաւ տոհմից մէջ, որոց գլխաւորը Պարթևաց արքայական ցեղն էր, կըրտսերագոյնքն ալ Հայոց, Քուշանաց, Մազքթաց Թագաւորական տոհմերն էին։ — Արտաւանայ սպանումը լսելով Խոսրով «էր ի մեծի տրտմութեան վասն քեռութեան եղբայրութեան ազգատոհմին... և էր գնայեան արարեալ զի իւրեանց (Արտաւանայ և Խոսրովու) տոհմայինքն ի Թիկունս եկեսցեն». այլ նոքա «միաբանեալ և հաւանեալ էին ի տէրութիւն Արտաշրի քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմի և եղբայրութեան». Ագաթ. Ա։ — Յետ սպանանելոյն զԱրտաւան և թագաւորելոյն Արտաշրի երկու ցեղք Պահլաւին նախանձ պահելով ընդ Թագաւորեալ ցեղին իւրեանց հարազատութեան ազգին, կամաւ յանձն առին Թագաւորել Արտաշրի որդւոյ Սասանայ, բայց երրորդն «Կարէն անուանեալ Պահլաւն մտերմութիւն պահելով առ եղբայրութիւն ազգականութեան տան ընդդիմացան պատերազմաւ» Խոր. Բ. ՀԱ։

1. Այսպէս գնեն Վենետկոյ և Երուսաղեմայ տպագիրքն. Կ. պոլսոյ երկրորդ և Թէոդոսիոյ ալ՝ եպիսկոպոսէն։

2. Առաջին տպագիրքն Մխիթարեանց գնեն՝ որ լուսաւորեաց. յարարերականդ չկայ ոչ Կ. Պոլսոյ և Թէոդոսիոյ տպագրաց և ոչ ալ Վենետկոյ 1864ի տպագրին մէջ։ Պարտ է ի բաց Թողուլ զայն. քանզի գրչագրի սխալ մի է, որ իմաստը կ՚եղծանէ ու պարբերութիւնը կը կաղացնէ։ — Կողմանք հիւսիսոյ. այս է Հայաստան, «հանուրց հիւսիսականաց վեհագոյն». Խորենացի՝ ՈՂԲ էջ 571։ — «Որ զլոյս աստուածային քոյ գիտութեան հիւսիսական ազանց ծագեցեր. և ի խաւարէ կռապաշտութեան փրածեր զմեզ ի ձեռն Սուրբ Լուսաւորչին, օրհնեմք զքեզ Են» (Շարական Որդւոց և Թոռանց Գրիգորի)։ — Մինթէ այս նամակս ալ փաւերական՚ն է։ Արդարև մեր տեսած Կ. պոլսոյ երկրորդ, Մխիթարեանց, Երուսաղեմայ, Թէոդոսիոյ, Տփխիսի տպագիրքն համաձայն են. վասն որոյ պարտ է հետևցնել թէ սոցա օրինակ եղած զանազան գրչագրաց մէջ ալ էական տարբերութիւն չկայ. այսու ամենայնիւ Գրիգորի Լուսաւորչի յիշատակութիւն մ՚անգամ չըլլալով, Տըրդատայ համար «զքրիստոնէական հաւատս Հռովմայ եպիսկոպոսապետէն առաւ և լուսաւորեց զՀայաստան» ըսուիլն այնքան տարօրինակ խօսք մի է, որ կասկած կու տայ եթէ ոչ ամբողջ նամակ-

խաւարային կողմանս հիւսիսոյ. զոր և այժմ կամին ի մէնջ կորզել հանել խաւարասէր որդիքն արևելից:

49. Եւ մեք ի ձեր քաջութիւն արութեանդ խնդախեալ, էր ինչ՝ որ ընդդէմ դարձաք նոցա հրամանացն, և բազում այն է՝ որ արդ առաջի պատրաստեալ եմք: Ընտրեցաք զմահ աստուածպաշտութեամբ քան զկեանս ուրացութեամբ. եթէ դուք եւս ի ձեռն առնէք զմեզ, ահա կրկին կենաց դիպեցաք և ոչ մի անգամ մահու: Եւ եթէ սակաւիկ մի հեզգայք, գուցէ բազում և այլ աշխարհաց հասանիցէ տալ բոցոյ սորա[1]:

50. Եւ իբրև յանդիման եղեն մեծի թագաւորին և ընթերցան զգիր պատասխանոյ Հայոց աշխարհին և զյիշատակարանն նախնեացն, բազում մատեանք ի մէջ եկեալ ընթերցան, որ զնոյն ուխտ հաստատութեան ի ներքս դանէին[2]: Եւ մինչ դեռ երանելին Թէոդոս հարցանէր զամենայն սինկղիտոսն, և հնարս իրացն՝ կամէր գտանել խաղաղութեամբ, և հոգ տանէր մեծաւ յօժարութեամբ, զի մի եկեղեցիքն արևելից յափշտակեա-
450 ցին յանօրէն հեթանոսացն, ի նմին ժամանակի հա՛ն ան-
28 Յուլ. դէն վաղվաղակի հասանէր վախճան կատարածի կենաց

մակին վաւերականութեանը, գոնեա անոր մէջ ձեռք խառնուած ըլլալուն: Մէկ բան մը միայն կրնայ զմեզ հաւանեցուցանել, որ այդ նամակդ ապաքէն այնպէս գրեցաւ ինչպէս որ կը տեսնենք ներկայ օրինակաց մէջ: Կ'երևայ թէ Եպիսկոպոսունք և Նախարարք՝ Յունաց օգնութիւնը ստանալու համար հարկաւոր դատեր են Բիւզանդիոյ արքունեաց՝ արևելեան չափազանցութեամբ տալ դըրուատիս որոց ամէն մէկը պատմական խոշոր սխալներ են: Երբ կ'ըսուի թէ չիք ոք յերկրաւորացս, որ փոքուն Թէոդոսի դէմ ելլէ, թէ կայսրութիւնը մինչև Սերաց աշխարհը տարածեցաւ երբեմն, թէ Հայաստան Հռովմայեցւոց ձեռակերտն է, ալ զարմանալու չէ որ Հայք զքրիստոնէութիւնը Հռոմէն առնեն. նա մանաւանդ երբ արևելեան եկեղեցեաց մեծի մասին չփոթութեանց և գայթակղական կռուոց պատճառաւ Հռովմայ եպիսկոպոսին միջամտութիւնը և ազդեցութիւնը յոյժ մեծցած էր նոյն իսկ Կոստանդնուպոլսոյ մէջ՝ փոքուն Թէոդոսի վերջի ժամանակները:

1. Ազդարարութիւնդ իրաւացի էր, եթէ մէյ մը Հայաստան իյնար, կարգը Յունաց տէրութեանն էր: Հայք իւրեանց դրից պատճառաւ երկու դրացի մեծազօր տէրութեանց իրարու դէմ ըրած արշաւանաց շատ անգամ խոչընդոտն եղած էին:

2. Անշուշտ Եղիշէ կ'ակնարկէ առա զդաշինս զոր կռած էր Տրդատ ընդ Կոստանդիանոս (Տես. Խորեն. Գ. Ե. Ագաթ, 653) և զայլ ուխտս նիզակակցութեան որ անոնց յաջորդներն հաստատած էին:

նորա [1], և կարի չար խափան լինէր գործոյն օգնականութեան ։

51. Եւ թագաւորէ փոխանակ նորա Մարկիանոս [2] կայսր, և ի ձեռն վատթար արանց խրատտուացն իւրոց ծառայիցն, Անատոլեայ՝ որ սպարապետն էր, և Եփլալիոս [3] սարքի, երկոքեան անարգք և վատթար արանց, միանգամայն և անաստուածք. ի նոցա բանս ելեալ թագաւորն, ոչ կամէր անսալ միաբան ուխտին Հայոց, որ ամենայն ուժով իւրեանց ընդդէմ կացեալ էին չարութեանն հեթանոսաց ։ Իսկ անարին այս լաւ համարէր պահել զուխտն [4] հեթանոսաց վասն մարմնա-

1. Թէոդոս Բ մեռաւ ի 28 Յուլիսի 450 (տես Lebeau, հատ. Զ. էջ 287)։ Նամակն ալ քիչ յառաջ գրուած էր։

2. Թէոդոսի մահուանէն ետքը Արևելեան կայսրութիւնը իւր քրոջը Բիւլքերիոյ անցաւ, որ թէպէտև միանձնութեամբ թագուհի հռչակուած էր, բայց խորհելով որ իւր սեռը կրնար պատճառ տալ այնպիսի նախապաշարմանց և դժուարութեանց, որք արգելք լինէին նմա վայելուչ կերպով վարելու զթագաւորութիւն, իրեն օգնական և ամուսին ընտրեց ծերակուտի անդամներէ զՄարկիանոս Թրակացին, որ յայնժամ վաթսնամեայ ծերունի մ'էր, և այր զգօն խոհեմ, և առաքինի։ Յունական եկեղեցին երկուքն ալ սրբոց կարգը դասած է։ Բուլքերիա Մարկիանու հետ երեք տարի միայն ապրեցաւ. ու անոր մահուանէն ետքը Մարկիանոս չորս տարի առանձինն թագաւորեց։ Թէպէտ զգուշացաւ ի պատերազմէ, բայց և այնպէս ազատեց զկայսրութիւնն յանարգանացն Ատտիլայի և պաշտպան կանգնեցաւ ուղղափառութեան Քաղկեդոնի ժողովոյն վճիռները յարգել տալով։ Եղիշէի առ Մարկիանոս կշտամբանքը արդարացի չեն ըլլար եթէ ի յուշ ածեմք թէ ինչ մեծ տագնապ հասուցեր էին բարբարոսք և մանաւանդ Հոնք Արևելեան կայսերութեան, մինչդեռ զԱրևմտեանը բոլորովին կը քանդէին։

3. Եփլալիոս սարքի՝ ըստ Եղիշէայ, իսկ ըստ Փարպեցւոյ՝ Փլորենտ անուն նոյնպէս սարքի ազգաւ, որ էր աւագ գրանն թագաւորին։ Ո՞րն է ուղիղը. գուցէ Եփլալիոս և Փլորենտ մի և նոյն անձին անունը և մականունն են։ — Օտար պատմաբանք կը յիշատակեն Թէոդոսի ժամանակակից Փլորենտիոս անուն հարուստ պատրիկ մը։ Այն ատենները տէրութեան եկամտից գլխաւոր աղբիւրներէն մէկն է եղեր գլխահարկ մը (կամ տեսակ մը patente տուրք մի) զոր չորս տարին մէյ մը կը հաւաքէին միայն ի վաճառականաց, յարուեստաւորաց և ի մանրավաճառաց, և որ այլանդակն է՝ ի պոռնկաց։ Կառավարութիւնը անբարոյականութենէ օգուտ քաղելու համար, օրինաւորութիւն տուած կ'ըլլար նմա։ Փլորենտիոս այդ խայտառակ տուրք բարձման համար յանձն առաւ իւր քսակէն վճարել անոր փոխարէնը ու Թէոդոս ալ ամօթ չսեպեց ընդունել զնուէրդ (տես Կիպպըն. հատ. Բ. ծանօթ)։

4. Այս է դաշինքն զոր կնքեր էր Յազկերտ ընդ Թէոդոսի. Տես Յ. Ա. 3։ — Յոյնք ոչ միայն օգնութիւն չեն ըներ Հայոց, այլ և գլանալնին կ'իմա-

կան խաղաղութեան, քան պատերազմակից լինել ուխտին քրիստոնէութեան: Վասն այսորիկ փութացաւ արձակեաց դեսպանս առ թագաւորն Պարսից զնոյն Եփփաղիոսն, և եմուտ ընդ նմա յուխտ հաստատութեան՝ ձեռնթափ լինել ի զօրացն Հայոց զօրու և զինու և ամենայն օգնականութեամբ:

52. Եւ իբրև այսպէս հաստատեցաւ, և հատաւ օգնականութիւն յուսոյ նոցա ի մարդկանէ, դարձեալ սուրբ եպիսկոպոսքն քաջալերել սկսան զանձինս և զօրսն Հայոց: Թէպէտ և հայէին յիւրեանց տկարութիւնն և յերկոցունց թագաւորացն միաբանութիւն, ոչ ինչ վատաբանեալ դողային. այլ ըստ առաջին ուխտին խիզախէին և առէին. Պատրաստ եմք ի սպանանել և ի մեռանել. դիւրին է Աստուծոյ տկարաւք զբազմաց գործ գործել, և անարգօք զմեծամեծ իրս կատարել:

53. Թէպէտ և ոչ ունէին թագաւոր առաջնորդ, և ոչ յարտաքուստ օգնական զաւք յօտարաց, սակայն անձանց առաքինութեամբ և սուրբ վարդապետաց մխիթարութեամբ համագունդ ամենայն զօրօք նախարարացն յիւրաքանչիւր տանէ ի մի վայր գային հասանէին վաղվաղակի. բազում և այլ այրուձի, որ յարքունի տանէ [1] անտի էր: Եւ զամենայն զօրսն յերիս գունդս բաժանէին:

ցնէն Պարսից, որով և կը քաջալերէն զասոնք ապստամբութիւնն անկասկած նըւաճելու: Անշուշտ Հոռոմոց ախորժելի չէր կրնար ըլլալ Պարսկական Հայաստանու անկախութիւն ձեռք ձգելը, որ կրնար իւրեանց բաժնին ալ անցնիլ:

1. «Գունդ կազմէր ի Հայոց Մեծաց, զազատ և զազատորդի, և յարքունի տանէ, զոստանիկ մարդիկ»: — «Բազում և այլ ազատ մարդիկ, զոր ոստանիկս անուանեն յարքունի տանէ»: Յ. Գ. 9: — Վաղարշակ, երբ կը բարենորոգէր զՀայաստան, հին թագաւորաց զարմէն չորս գունդ կազմեր էր, իւրաքանչիւրին զատ զատ զէնքեր և զարդեր տալով և կարգեր էր զնոսա պահապանս դրան արքունի. բայց Պարսից տիրապետութեան օրերը այդ հին ցեղերը կամ մէկդի թողուեր և կամ ապառեր էին, ու նոցա տեղը ուրիշներէ հաւաքեր և կազմեր էին թիկնապահ գնդեր, զորս ոստան կամ ոստանիկ կ'անուանէին, իբրև թագաւորանիստ քաղաքի յատկացեալ (տես Խորէն. գիրք. ա. գլ. Ը. և մանաւանդ գիրք. բ. գլ. Է. — Տես և Յ. Ա. 10): Այդ ոստանիկ զօրաց մէկ մասն ալ Վասակայ կողմն անցեր էին:

- Ոստան է դուռն արքունի, արքայանիստ կամ իշխանանիստ քաղաք. ըն-ծորդ աստա, ասիդան, ասիդանէ, պլոկ. բառի. յոյնք առէին ա՛ստի և լատինք ա՛ստու և իմանային այսու մանաւանդ զԱթէնք:

Զգունդն առաջին տային ցՆերշապուհ Ռմբոսեան[1], և գումարէին զնա պահապան աշխարհին, մերձ ի սահմանս Ատրպատական աշխարհին: Եւ զգունդն երկրորդ տային ի ձեռն Վարդանայ զօրավարին Հայոց՝ անցանել ընդ սահմանս Վրաց ի վերայ մարզպանին Ճորայ, որ եկեալ էր աւերել զեկեղեցիսն Աղուանից: Իսկ զգունդն երրորդ տային ի ձեռն Վասակայ իշխանին Սիւնեաց, որ ոչ ի բաց կացեալ էր յուխտէն հեթանոսաց ըստ ներքին խորհրդոցն իւրոց:

54. Ընտրեաց և սա ընդ իւր զորս գիտէր զթուլութիւն հաւատոյ նոցա. զիշխանն Բագրատունեաց զօրօք իւրովք, զիշխանն Խորխոռունեաց զօրօք իւրովք, զիշխանն Ապահունեաց զօրօք իւրովք, զիշխանն Վահեւունեաց զօրօքն իւրովք, զիշխանն Պալունեաց զօրօքն իւրովք, զիշխանն Գաբեղենից զօրօք իւրովք, զիշխանն Ուրծայ զօրօքն իւրովք[2]: Եւ զայս բազում զօրս յարքունի տանէն էարկ յինքն, և զնեպուհս ոմանս յայլմէ տոհմէ: Եւ խորամանկ խաբէութեամբ դարանամուտ լինէր յամուրս իւրոյ աշխարհին, ի պատճառս կեղծաւորութեան՝ եթէ ընդ ճապուկ անդր անցանէ ի վերայ գնդին Պարսից՝ հալածականս առնել յաշխարհէն Աղուանից[3]:

1. Այս է իշխանն Արծրունեաց: Վըռամայ հաստատած գահնամակին մէջ առաջին է Սիւնեաց Տէրն, Բ. Ասպետն որ է Բագրատունեաց իշխանն. Գ՝ Արծրունեաց Տէրն. Դ՝ Մամիկոնէից. Ե՝ Շահապն Ծոփաց. Զ՝ Մոկաց Տէրն. Է՝ Ռշտունեաց Տէրն. և այլն: Էին և երկրորդ և երրորդ Տոհմք Արծրունեաց, որ գահնամակին մէջ ԽԹ և ԼԴ կարգը ունին: Ներշապուհ Ռըմբոսեան առաջին տան իշխանն էր: Տես Պատմութիւն մեծին Ներսեսի. ծանօթ. էջ 133 Սոփ. Հայկ: — Ի՞նչ էր սակայն Ռըմբոսեան կոչուելուն պատճառը:

2. Չորրորդ Ցեղանակին մէջ աւելի կատարեալ զօրահամար մը կու տայ Եղիշէ Վասակայ նիզակակցացը. 9:

3. Սիւնեաց աշխարհին լեռներուն և ձորերուն մէջ պահուըտիլ ու շարժիլ, և անոր Աղուանից երկիրն յարձակիլ և Ճորայ մարզպանին առաջնորդած բանակը կողմնակի կամ ի յետուստ զարնել՝ դիւրին էր. Վասակայ առարկութիւնը շատ իրաւացի և օգտաւէտ կը լինէր եթէ անկեղծ ըլլար: Պատերազմական խաղացմանց մէջ հայ զօրավարաց քաջ հմուտ ըլլալն Եղիշէի պատմութենէն կ'երևի. բայց պատմագիրն ինքնին տեղեակ էր սոցա. որովհետև ուղիղ խորհրդածութեամբք կը ցուցանէ մեզ ճիշտ գրից և տեղեաց մարտական կարևորութիւնքը: — Ճապուկ է լծորդ պարսկերէն چابک չապուք բառի, որ է արագ, շոյտ, թեթև. յորմէ և չապուք խիրամ՝ արագոտն, չապուք տեսք՝ արագաձեան: Արմատը չապ գործածելի չէ արդի պարսկերէնի մէջ. բայց ունիմք հայերէն «ճեպ» ուստի կը բաղադրին այլևայլ բառեր:

55. *Իսկ նա յամբածածուկ հաւաքեցէն ճեպով դեսպանս արձակէր առ գունդն Պարսից*[1]. *«Ահա աւադիկ քակեցի զմիաբանութիւն ուխտիս Հայոց, և ընդ երիս կողմանս զգունդն քայքայեալ բաժանեցի: Զգունդն առաջին հեռացուցի ի կողմանս Հերայ և Զարաւանդայ. և գունդս երկրորդ ընդ իմով ձեռամբ է, որոց ոչ ինչ տամ միտս առնել զօրաց արքունի: Եւ զայլ ամենայն, որ այր կարող յաշխարհի աստ գտանէր, ցանեցի ցրուեցի ընդ ամենայն միջոցս աշխարհիս: Բայց զգունդն երրորդ արարի ընդ Վարդանայ յԱղուանս՝ տակաւաձեռն և ոչ բազմաթիւ: Եւ համարձակ ընդ առաջ նորա, և մի զանգիտեր ամենեւին տալ պատերազմ. գիտեմ՝ զի ի պարտութիւն մատնին առաջի քոյոյ մեծի զօրութեանդ»:*

56. *Զայս գրեաց և եցոյց մարզպանին, որում անունն էր Սեբուխտ: Իսկ նա իբրև լուաւ զայս ամենայն զքաջալերս ի Վասակայ. և ստուգեալ հաստատեաց ի միտս իւր, եթէ տակաւաձեռն գնդաւ գայ ապարասպեան Հայոց ի վերայ նորա, ոչ եկաց միայն ի կողմանս Ճորայ. այլ կուտեաց զամենայն բազմութիւն զօրու իւրոյ, և փութանակի անցանէր ընդ մեծ գետն Կուր անուն, և պատահէր նմա մերձ ի սահմանս վրաց հանդէպ Խաղխաղ*[2] *քաղաքի, որ ձմերոց էր թագաւորաց Աղուանից:*

1. *Գունդն Պարսից որ ընդ հրամանաւ Ճորայ մարզպանին էր:*

2. *Խաղխաղ. «ընդ մէջ Մրղուզ լերին և գետոյ և Ճակիր գետոյ է Նախամ երկիր (յարևելս հիւսիսոյ Սևանայ լճի)... ի հնումն թուի Սագամ կոչեցեալ վիճակիս և Գարդմանայ գաւառի Ուտիոյ մասն լեալ, ուր էին ձմերոցք թագաւորաց Հայոց ի ջերմահովիտս լեռնաձորոց մերձ ի գաւառն Աղուանից, այս ինքն Կուր գետոյ, և առ եզերբ Նախամայ կայ ցարդ Խալխաճայը գիւղ, որ թուի ունել զտեղի Խաղխաղ ձմեռնահանգիստ քաղաքի թագաւորացս մերոց Արշակունեաց՝ և ի հանդիպոյ դաշտին եհար մեծն Վարդան զՊարսս՝ ի գալ նոցա ի պահակէն Ճորայ ի Հայս, առ ափամբք Լոփնաս կամ Լուրանաս գետոյ». (Տեղագիր հայոց մեծաց. 162): — Այդ Լոփնաս գետը այժմեան Նախամ գետը կամ անոր արևելեան վտակն ըլլալու է. այդտեղ երկուքին իրարու խառնուած տեղը կայ ցարդ Լիփլիյու գիւղ: Վարդան Պարսից աջ թևը զարկաւ, քանզի հաւանօրէն ձախը Լոփնաս գետոյն կռթնած էր. ուստի և պատերազմի դաշտն ալ գետոյն արևմտեան կողմը փնտռել պարտ է: — Թէ Խաղխաղ էր քաղաք ձմերոց արքայութեանն Հայոց՝ գիտեմք յԱգաթանգեղեայ (էջ 37). բայց Վարդանանց պատերազմին ատեն, ըստ վկայութեան Եղիշէի, Աղուանից թագաւորաց ձմերոց եղած էր:*

Անցանէր բաւանդակէր ամենայն զօրք իւրովք, ռազմ արարեալ[1] գլոլոր մեծութիւն դաշտին ի ներքս փակէր: զինեալք և վառեալք ամենայն պատրաստութեամբ ի մարտ պատերազմի ընդդէմ գնդին Հայոց:

57. Իսկ քաջն Վարդան և ամենայն զօրքն, որ ընդ նմա էին, իբրև տեսին զբազմութիւն պատրաստութեան գնդին հեթանոսաց, հայեցան և յիւրեանց սակաւութիւնն, թէպէտ և կարի յոյժ նուազունք էին քան զնոսա, ոչ ինչ զանգիտեցին առ յոյժ բազմութենէն, այլ հաստատուն միաբանեցին և համբարձին յերկինս զձեռս իւրեանց, աղաղակէին և ասէին. Դատեա, Տէր, զայնոսիկ՝ որք դատին զմեզ. մարտիր ընդ այնոսիկ, որ մարտնչին ընդ մեզ. զինու և ասպարաւ քով օգնեա մեզ[2]: Շարժեա և զօրացս զգունդագունդ բազմութիւն անօրինացս. ցրուեա և վանեա զչար միաբանութիւն թշնամեաց քոց առաջի քոյոց փրկական մեծի նշանիս, և տուր ի ձեռն սակաւուցս զքաջութիւն յաղթութեան ի վերայ անհնարին բազմութեանս: Ոչ ի պարծանս սնոտի փառաւորութեան անօգուտ վաստակոց ինչ աղաչեմք՝ յաղահութիւն

1. Ռազմ կը նշանակէ ոչ պատերազմ և ոչ բանակ կարգել կամ ճակատ, որպէս դնեն ընդհանրապէս բառագիրքն. այլ՝ Տող զօրաց կարգելոց առ երի միմեանց. գղ. Rang. — «Զգիւացն քակեցեր զռազմունս»: — «Յերկու կողմանէ ռազմ գազտ կարգեաց և ինքն զ8000 արան բաժանեաց ի վեց ռազմս»: — «Հերձեալ ընդ մէջ զջոկիս առաջաւորակ ռազմին բազմութեան»: — «Հատեալ զռազմ պարուց նորա»: — «Անկեալ ի մէջ ռազմաւոր հանդիսին, արշաւէր սիգալով յայսկոյս և յայնկոյս»: — «Կացին զօրավարք Մամիկոնք ճակատամարտք ռազմահարք»: — «Ռազմամուտ երիվարք», «ռազմիկ հեծեալք», այս է ռազմի մէջ մտած՝ ռազմի մէջ պատերազմելու վարժած ու կրթուած ձի և հեծեալ, որպէս ասի գաղղ. troupes de ligne, առ ի զանազանել յանկանոն և ի թեթևազէն հրոսից:

Բ. Կարգ և շարք բանակաց, գղ. Ligne, rang d'une armée en ordre de bataille, suite de battaillons et d'escadrons placés les uns prés des autres sur la même ligne, et faisant face du même côté. «Ռազմ արարեալ գլոլոր մեծութիւն դաշտին ի ներքս փակէր». — «Ո՞ր զօրագլուխ յորմէ կողմանէ յռազմ մտանիցէ». — «Ճակատն և ռազմն» — «Ճակատու ռազմի մարտկաց ընդդէմ միմեանց պատրաստէին». — «կարգել զռազմն»:

Պատե. ազմ բառին առաջին մասն «պատ» է բախդի մասնիկն, որով կը կազմուին ևս «պատ-ասխան», «պատ-րաստ», «պատ-նէշ», «պատ-ուատ» և այլն բառերն. բախդի՝ «որ ինչ կայ յանդիման, հակառակ». բաղանս գրոց մէջ՝ բառ:

2. Սաղմոս ԼԴ:

ընչաւէտութեան զանցաւոր մեծութիւն կապանօք, այլ զի ծանիցեն և գիտասցեն ամենեքեան այնուքիկ՝ որ ոչ հնազանդին սուրբ աւետարանին քարոզութեան, եթէ դու ես Տէր կենաց և մահու, և ի ձեռս քո է յաղթութիւն և պարտութիւն: Եւ մեք պատրաստ եմք ի մեռանել վասն քո սիրոյդ, և եթէ սպանանել ես հաստատէ զնոսա, եղիցուք վրէժխնդիրք ճշմարտութեանն:

58. Եւ զայս ասելով՝ խումբ արարեալ յարձակէին, և զաջ թեւն ընկեալ՝ զձախոյ կողմանն արկեալ, և որրոյ ճարակ զամենեսեան տայրն ընդ երեսս դաշտին, և փախստական առնէին մինչև յամուր տեղիս մայրեացն առ խորագոյն զարիւքն Լափնաս գետոյ: Ուր ընդդէմ դարձեալ թագաւորազանց ոմանց բաղասական[1] արքայի, ընկեցին զոմն ի ձիոյ ի նախարարաց Հայոց, ի գնդէն Գիմաքսենից զՄուշ սպանին, և զԳագրիկ վիրաւորեցին:

59. Ցայնմ տեղւոջ դէտ ակն ի վեր ամբառնայր Արշաւիր Արշարունի[2], գոչէր առիւծաբար և յարձակէր վարազաբար, հարկանէր և սատակէր զվլուրկն քաջ զեղբայր թագաւորին Լփնաց[3], և զբազում համհարզս նորին ընդ նմին սատակէր: Եւ այնպէս ամենեքեան առ հասարակ այր զախոյեան իւր յերկիր կործանէր: Եւ առ

1. Թիֆլիսի արեւելեան կողմը կայ «Սղնաղ երկիր, մաս Կախեթու նահանգի Վրաց. յերկու արոհեալ գաւառս, ընդ մէջ Ալազան և Իօռ գետոց, յՄիքանտամխար, ի բուն Սղնաղ և ի Տիրախ. մասն են և սոքա հնոյն Աղուանից և կոչէին ի հնումն Կամբէճան կամ Կամբեճիկք, որպէս և ցարդ կոչի վիճակ մի Քամպէչի. և Բաղասական գաւառ որ է խոպանն ընդ մէջ Կուրայ և Իօռայ. երկոքին ևս յիշին առ պատմիչս մեր» (Տես Տեղագիր 199. ծանօթ. 1): — Բաղասական արքային անձամբ պատերազմի գալը չյիշեր Եղիշէ. ուստի մարթ է կարծել, որ անոր սպանուելէն ի վեր տեղը յաջորդ դրուած չէր. Տես Յ. Է. 30, և ի վերոյ էջ 41:

2. Արշաւիր Արշարունի Կամսարական էր փեսայ Վարդանայ, ունելով զդուստր նորա Վարդանոյշ ի կնութեան և զօրագլուխ աջակողմեան թեւին, նիզակակից ունելով զՄուշ Դիմաքսեան: Ձախ կողմը յանձներ էր Վարդան Խորենայ Խորխոռունւոյ, զօրավիգն տալով նմա զՀմայեակ Դիմաքսեան. և ինքն մէջտեղը կը կենար: Բաց ի վերոյգրեալ նախարարացդ այս արշաւանաց մէջ Վարդանայ ընկերացեր էին Թաթուլ Դիմաքսեան, Արտակ Պալունի, Գիւտն Վահեւունեաց և այլ տանուտեարք և սեպուհք, բազումք ի զօրացն Հայոց, և այլ գունդք ի զօրացն Մարդպետական այրուձիոյ (փարպ. 185. 190):

3. Սեբուխտ միայն պարսկական զօրք չէր զար. այլ ի Լփնաց և յԱղուանից ալ մարդ առած էր, Համեմատ՝ տես Յ. Բ. 44 ծն. 2:

յայժ յանդուգն յարձակմանն՝ յոլովագոյն այն էր զոր գետամոյնս առնէին քան զանկեալսն սրոյ ի ցամաքի։ Ի բազմութենէ դիականցն անկելոց՝ յատակ ջուրք գետոյն յարեան դառնային, և ոչ գտանէր ոք ամենևին ի նոցանէ ապրել և թաքուցեալ յանտառախիտ մայրիս դաշտացն[1]։ Բայց մի ոմն ի զօրականէ թշնամեացն՝ զինու հանդերձ ելեալ ի նիւս երիվարին անցանէր ընդ մեծ գետն[2], մազապուր պրծեալ ի պատերազմէն՝ գոյժ տանէր ի մնացեալ բուն բանակին, որք փախստական անկանէին ի մեծ շահաստանն[3]։

60. Յայնմ ժամանակի զօրքն Հայոց կատարելով զմեծ գործ պատերազմին՝ դիակապուտ դառնային, ժողովէին զբազում աւար բանակին, և կողոպտէին զանկեալ դիականն. և կուտէին բազում արծաթ և ոսկի, զզէնս և զզարդ զարդ արանց և զքաջ երիվարաց։

61. Դարձեալ յարձակէին ոչ սակաւ քաջութեամբ ի վերայ բերդիցն և քաղաքացն, զոր ունէին Պարսիկքն յաշխարհին Աղուանից. հզօրապէս մարտնչելով և այրե-

1. Այժմ Տփղիսէն Գանձակ գնացող ճանապարհը Կուր գետոյ հարաւային կողմէն ու այդ պատերազմին տեղւոյն վրայէն կ'անցնի։ Կը փափաքէինք գիտնալ թէ Մուրղուզ չայի և Դագամայ մէջ տեղը գտնուող երկիրը այսօր ևս անտառախի՞տ է։

2. Մեծ գետն՝ Կուր, զոր անցեր էր Սեբուխտ Վարդանայ վրայ գալու համար. Տես ի վերայ 56։

3. Այս է Պարտաւ մայրքաղաքն Աղուանից։ — «Ցեղը Թէրթէր գետոյ (Տրտու ըստ Խորենեաց), որ իջանէ ի լերանց Գարաբաղի ի Կուր, յահեկէ կողմանէ կայ Պէրտէ գեօղ առ աւերակօք հնոյ մայրաքաղաքին Աղուանից որ ցՃ. դար էր աթոռ կաթողիկոսի և բարգաւաճ վաճառականութեամբ, վասն որոյ և Շահաստան կոչեցաւ». Տեղագիր 180։ — Թուի մեզ թէ Շահաստան հայացեալն է պարսկերէն շահրաստան բառի, որ մեծ և ամրացեալ քաղաք ըսել է. ուստի Փարպեցի՝ «եկեալ ի շահաստանն որ անուանեալ կոչի Նիւշապուհ». «ի դղեակ շահաստանին Նիւշապուհ». Տես և Pahlavi Pazand Glossary. Միւսմէլ իւթ-Թավարիխի մէջ ալ կը տեսնեմք սաէսլ. շահրիսթա՛նի Իսֆահան, շահրիսթա՛նի կամ շարիսթա՛նի Րէյ։ Հաւանական է թէ Հայք ի սկըզբան պարսկերէն բառը ի կիր առին առանց հնչելու ր տառը, որպէս ի Շափուհր. և յետոյ շահաստան իւր հայկական իմաստով գործածուեցաւ իբրև վաճառաշահ քաղաք։

Կ'երևի թէ Սեբուխտ ամբողջ բանակաւը չէր եկեր Վարդանայ վրայ. այլ միայն յառաջապահ գնդաւ։ Որչափ ալ Վարդանայ զօրքը կարիճ ենթադրեմք ու բռնած դիրքը զօրաւոր և բարձր՝ բաղդատմամբ Պարսից, որք աւելի վարերը կը գտնուէին, կարելի չէր ամբողջ բանակ մը խորտակել միայն մէկ վիրաւոր և մէկ մեռեալ մ'ունենալով։

ընչասիրութեան զանցաւոր մեծութիւն կապտելոյ, այլ զի ծանիցեն և գիտասցեն ամենեքեան այնուքիկ՝ որ ոչ հնազանդին սուրբ աւետարանին քարոզութեան, եթէ դու ես Տէր կենաց և մահու, և ի ձեռս քո է յաղթութիւն և պարտութիւն: Եւ մեք պատրաստ եմք ի մեռանել վասն քո սիրոյդ, և եթէ սպանանել ես հասանէ զնոսա, եղիցուք վրէժխնդիրք ճշմարտութեանն:

58. Եւ զայս ասելով՝ խումբ արարեալ յարձակէին, և զաջ թեւն բեկեալ՝ զձախոյ կողմամբն արկեալ, և որրոյ ճարակ զամենեսեան տային ընդ երեսս դաշտին, և փախստական առնէին մինչև յամուր տեղիս մայրեացն առ խորագոյն դարիւքն Լփնաս գետոյ: Ուր ընդդէմ դարձեալ թագաւորազանց ումանց բաղաստական[1] ալքայի, ընկեցին զոմն ի ձիոյ ի նախարարաց Հայոց, ի գնդէն Գիմաքսենից զՄուշ սպանին, և զԳազրիկ վիրաւորեցին:

59. Յայնմ տեղւոջ դէտ ակն ի վեր ամբառնայր Արշաւիր Արշարունի[2], գոչէր ախուծաբար և յարձակէր վարազաբար, հարկանէր և սատակէր զվաւրկն քաջ զօրայր թագաւորին Լփնայ[3], և զբազում՝ համհարզս նորին ընդ նմին սատակէր: Եւ այնպէս ամենեքեան առ հասարակ այր զախոյեան իւր յերկիր կործանէր: Եւ առ

1. Թիֆլիսի արեւելեան կողմը կայ «Սղնաղ երկիր, մասն Կախեթու նահանգի Վրաց. յերկու տրոհեալ գաւառս, ընդ մէջ Ալազան և Իօռ գետոց, յՄիքանամխար, ի բուն Սղնաղ և ի Շիրակ. մասն են և սոքա հնոյն Աղուանից և կոչէին ի հնումն Կամբէճան կամ Կամբէճիկք, որպէս և ցարդ կոչի վիճակ մի Քամպէչի. և Բաղասականն գաւառ որ է Խօպանն ընդ մէջ Կուրայ և Իօռայ. երկոքին եւ յիշին առ պատմիչս մեր» (Տես Տեղագիր 199. ծանօթ. 1): — Բաղասական արքային անձամբ պատերազմի գալը չյիշեր Եղիշէ. ուստի մարթ է կարծել, որ անոր սպաննուելէն ի վեր տեղը յաջորդ դրուած չէր. Տես Ց. Է 30, և ի վերոյ էջ 41:

2. Արշաւիր Արշարունի Կամսարական էր փեսայ Վարդանայ, ունելով զդուստր նորա Վարդանոյշ ի կնութեան և զօրագլուխ աջակողմեան թեւին, նիզակակից ունելով զՄուշ Դիմաքսեան: Ձախ կողմը յանձներ էր Վարդան Խորենայ Խորխոռունւոյ, զօրավիգն տալով նմա զՀմայեակ Դիմաքսեան. և ինքն մէջտեղը կը կենար: Բաց ի վերոյգրեալ նախարարացդ այս արշաւանաց մէջ Վարդանայ ընկերացեր էին Թաթուլ Դիմաքսեան, Արտակ Պալունի, Գիւտն Վահեւունեաց և այլ անուանեալք և անպուհք, բազումք ի զօրացն Հայոց, և այլ գունդք ի զօրացն Մարդպետական այրուձիոյ (փարպ. 185. 190):

3. Սեբէոսի միայն պարսկական զօրք չէր գար. այլ ի Լփնաց և յԱղուանից ալ մարդ առած էր, Հաճեանց՝ տես Ց. Բ. 44 ծն. 2:

յայտ յանդուգն յարձակմանն՝ յոլովագոյն այն էր զոր գետամիջնս առնէին քան զանկեալսն սրոյ ի ցամաքի: Ի բազմութենէ գնդակացն անկելոց՝ յատակ ջուրք գետոյն յարին դառնային, և ոչ գտանէր ոք ամենևին ի նոցանէ ապրել և թափուցեալ յանտառախիտ մայրիս դաշտացն[1]: Բայց մի ոմն ի զօրականէ թշնամեացն՝ զինու հանդերձ ելեալ ի նիւս երիվարին անցանէր ընդ մեծ գետն[2], մազապուր ապրեալ ի պատերազմէն՝ գոյժ տանէր ի միացեալ բուն բանակն, որք փախստական անկանէին ի մեծ չահաստանն[3]:

60. Ցայնմ ժամանակի զօրքն Հայոց կատարելով զմեծ գործ պատերազմին՝ դիակապուտ դառնային, ժողովէին զբազում աւար բանակին, և կողոպտէին զանկեալ դիակունսն. և կուտէին բազում արծաթ և ոսկի, զզէնս և զզարդ զարդ արանց և զքաջ երիվարաց:

61. Դարձեալ յարձակէին ոչ սակաւ քաջութեամբ ի վերայ բերդիցն և քաղաքացն, զոր ունէին Պարսիկքն յաշխարհին Աղուանից. հզօրապէս մարտնչելով և այրե-

1. Այժմ Տփղիսէն Գանձակ գնացող ճանապարհը Կուր գետոյ հարաւային կողմէն ու այդ պատերազմին տեղւոյն վրայէն կ'անցնի: Կը փափաքէինք գիտնալ թէ Մուղղուգ չայի և Շամքամայ մէջ տեղը գտնուող երկիրը այսօր ևս անտառախի՞տ է:

2. Մեծ գետն՝ Կուր, զոր անցեր էր Սեբուխտ Վարդանայ վրայ գալու համար. Տես ի վերոյ 56:

3. Այս է Պարտաւ մայրաքաղաքն Աղուանից: — «Ցեղր Թէրթէր գետոյ (Տրտու ըստ Նախնեաց), որ իջանէ ի լերանց Գարաբաղի ի Կուր, յահեկէ կողմանէ կայ Պէրտէ գեօղ առ աւերակօք հնոյ մայրաքաղաքին Աղուանից որ ցՌ դար էր աթոռ կաթողիկոսի և բարգաւաճ վաճառականութեամբ, վասն որոյ և Շահաստան կոչեցաւ». Տեղագիր 180: — Թուի մեզ թէ Շահաստան հայացեալն է պարսկերէն շահրաստան բառի, որ մեծ և ամրացեալ քաղաք ըսել է. տես փարպեցի՝ «եկեալ ի շահաստանն որ անուանեալ կոչի Նիւշապուհ». «ի դղեակ շահաստանին Նիւշապուհ». Տես և Pahlavi Pazand Glossary. Միւսմէլ խիթ-թավարիխի մէջ ալ կը տեսնեմք ասէպ. շահրիարա՛նի խաֆանան, շահրիարա՛նի կամ շարիարա՛նի Բէյ: Հաւանական է թէ Հայք ի սկզբան պարսկերէն բառը ի կիր առին առանց հնչելու թ տառը, որպէս ի Շափուհր. և յետոյ շահաստան իր հայկական իմաստով գործածուեցաւ իբրև վաճառաշահ քաղաք:

Կ'երևի թէ Սեբուխտ ամբողջ բանակաւը չէր եկեր Վարդանայ վրայ. այլ միայն յառաջապահ գնդաւ: Որչափ ալ Վարդանայ զօրքը կորիճ ենթադրեմք ու բռնած դիրքը զօրաւոր և բարձր՝ բաղդատմամբ Պարսից, որք աւելի վարերը կը գտնուէին, կարելի չէր ամբողջ բանակ մը խորտակել միայն մէկ վիրաւոր և մէկ մեռեալ մ'ունենալով:

լով զամուրս արգելանաց նոցա, և զերամս երամս մագացն՝ զոր պատրաստական ածեալ աշխարհին գայթակղութիւն, ուր և գտանէին յամուրս ամուրս վայրացն, որոյ ճարակ առեալ գնէին գէշ թռչնոց երկնից և գազանաց երկրի: Սրբէին զտեղին յամենայն պղծագործ զոհիցն, և փրկեալ ազատէին զեկեղեցին յանհնարին նեղութենէն:

62. Եւ բազումք ի նախարարացն Աղուանից և յամենայն շինականացն, որք վասն անուանն Աստուծոյ ցրուեալ և վտանեալ էին յամուրս լերանց Կապկոհի[1], իբրև տեսին զաջողութիւն գործոյն՝ զոր կատարէր Աստուած ի ձեռն գնդին Հայոց, գային ժողովէին և նոքա, և խառնէին ի զօրս նոցա. և միաբանք և հաւատարք կցորդք լինէին գործոյն նահատակութեան: Խաղային գնային այնուհետև ի վերայ պահակին Հոնաց[2], զոր ունէին բռնութեամբ պարսիկքն. առնուին քանդէին զպահակն, և կոտորէին զզօրսն՝ որ ի ներքս բնակեալ էին. և զդուռն տային ի ձեռն վահանայ, որ էր յազգէ թագաւորացն Աղուանից: Եւ յայսր ամենայն քաջութեան վերայ ոչ ոք անկեալ վիրաւորեցաւ ամենեւին ի նոցանէ, բայց ի միոյ երանելոյ որ կատարեցաւ նահատակութեամբ ի մեծ պատերազմին[3]:

63. Եւ անդէն ի նմին տեղւոջ զայրն՝ որում զդուռնն յանձն արարին, զնոյն դեսպան արձակեցին յաշխարհն Հոնաց, և ի բազում յայլ ազգս բարբարոսաց, որ համագործք էին Հոնաց աշխարհին, բանս դնել ընդ նոսա և ուխտ հաստատել՝ անքակութեամբ ունել զմիաբանութիւնն: Իսկ նոքա իբրև զայն ամենայն լուան, փութապէս վաղվաղակի հասանէին ի տեղին, և ականատեսք լինէին գործոյն յաղթութեան: Եւ ոչ ինչ յապաղեցին

1. Այս է Կովկասու կամ Կաւկասու, որ երկու մասէ կը բաղկանայ. գաֆ՝ որ պարսկերէն և արաբերէն՝ Կովկասի անունն է. և քօհ կամ քուհ՝ լեռան. Գաֆքօհ՝ բառ առ բառ՝ Գաֆ լեռան. ինչպէս մինչև ցայժմ Սեվատ-քօհ, Սիւլէյման-քօհ և այլն: Կովկաս անուան ստուգաբանութեան վրայօք Եւրոպացի աշխարհագէտք տեսակ տեսակ ենթադրութիւններ ըրած են. հաւանօրէն Գաֆ-քօհի աղաւաղեալն է. և սորա առաջին մասն ալ գուցէ Աւեստայի Կաւ բառն է, որ թարգմանի «կով»: — Պունտահիշի մէջ Կովկաս՝ Գաֆ լեռան կոչեալ է:

2. Այս է պահակն Ճորայ:

3. Այդ նահատակդ Մուշ դիմաքսեանն է, որոյ վերայ խօսեցաւ Եղիշէ քիչ մը վերը:

երգմամբ յուխտ մտանել ըստ կարգի իւրեանց օրինաց. յանձն առին և զերդումն քրիստոնէից[1], պահել ընդ նոսա հաստատութեամբ զմիաբանութիւն:

64. Իսկ իբրև զայս կատարեցին և արարին իւրեանց մեծապէս հաստատութիւն, և գեռ անդէն ի տեղւոջն զետեղեալ էին խաղաղութեամբ, գուժկան հասանէր[2] յաշ-

1. Ի նախնիս ամենայն ազգ իւր օրինաց որոշած ձեւով կ'երդնույր. Հոնք ալ իւրեանց սովորութեանց համեմատ երդում տուին: Կ'երևի թէ այդ երդման ձեւդ բաւական վստահութիւն չազդեց քրիստոնեայ Հայոց. ուստի Հոնք զնոսա աւելի եւս ապահովելու համար՝ քրիստոնէից պէս Աւետարանի վրայ ալ երդուընցան: — Ինչ էր Հոնաց երդման ձեւը. չկրցանք ստուգել: Պարսից թագաւորաց ամենէն հաւատարիմ խոստմանն ձեւն էր ծրարի մը մէջ աղ դնել ու կնքել վարազ նկարագիր մատանեաւ: Բուզանդ 164. Սեբէոս 64: Իսկ առ հասարակ առէին երդումն ըմպել, յորմէ անկ. անտ իմէք. վասն զի երդման ժամանակ մանաւոր կերպով պատրաստեալ կամ նուիրագործեալ ջուր մը կը խմէին յետ կոչելոյ զանուանս աստուածայնոց ի վկայութիւն: Տես Պուռնուահիչ էջ 207:

Աստ կը տեսնեմք Վարդանայ արշաւանաց բուն նպատակը, և թէ ինչու թողուց նա զմիջոց աշխարհին զԱյրարատ, ուր իւր ներկայութիւնը ամենահարկաւոր էր, և զսահմանս Աղուանից ու զէպ ի հիւսիս գնաց: Այսպէս, մինչև հետևեալ գարնան Պարսկաստանէն բանակ չէր կրնար գալ, ուստի այն կողմանէ վախնալու բան մը չունէր Վարդան առ այժմ: Ճորայ մարզպանը անմիջապէս կրնար վազել Հայաստանի վրայ, որպէս և ըրաւ. վասն որոյ իւր առաջին գործն էր նորա բանակը խորտակել. այս ալ կատարեցաւ Լոփնասի ճակատամարտին: Բայց Վարդանայ արշաւանաց բուն շարժառիթը այդ չէր. կը յուսար վանել զՍեբուխտ երբ և ուր որ ալ ըլլար, ինչպէս որ չվախցաւ իւր կռնակը թողուլ նորա բանակին Ճագորդը՝ զուցէ եւս ստուարագոյն մասը: Գաղտնի խորհուրդ մի այլ ունէր, զոր անշուշտ Վասակէն պահեր էր. և պահել ալ հարկ էր, վասն զի սա կրնար բոլորովին խանգարել զայն: Ցունաց կողմանէ օգնութիւն չգտնուելուն վրայ, պէտք էր որ Հայք ուրիշ զօրաւոր ազգ մը նիզակակից ունենային. մի միայն յոյսերնին Հոնաց վրայ էր. ուստի փութաց Վարդան ժամ յառաջ հասնիլ ի պահակն Ճորայ, քանդել և բանալ զդրունս, ու դաշնակցիլ անոր Կովկասեան ազգաց հետ, որք տարիներով առաջ խոստացեր էին օգնելու Հայոց (Տես յէջ 41, 43 և Ց. Ա. 14 ծն 2, և 9 ծն 2): — Կ'երևի թէ այս միջոցիս կամ առկէ քիչ ետքը պահակը սաստիկ աւերեցաւ. Տես Ց. Է. 18: Այդ արշաւանքդ Վարդանայ հանճարոյն և արագութեանը նշանաւոր ապացոյց մի է. դժբախտաբար Հայք յոյսերնին բարբարոս ժողովրդեան մը վրայ դնելու սխալած էին: Հոնք թէպէտ երդումներ ընելու չդանդաղեցան, բայց կարևոր օգնութիւն մը չըրին Վարդանանց: Մէկ օգուտ մը միայն ձեռք բերուեցաւ. Ճորայ մարզպանը Հոնաց հետ զբաղելու ստիպուելով չկրցաւ այնուհետև նորէն գալ ի Հայաստան. Տես Ց. Դ. 15:

2. «Գուժկանք հասանէին ի կողմանցն Գալիլիացւոց անտի, գոձիս պատառեալ. զճակատ հարեալ և զգոյժս զայս տային»... Մակաբայեցւոց ա. գլ. Ե. 14: Տես և ի վերոյ 7. ծն 2 և 2 ծն 3:

լով զամուրս արգելանաց նոցա, և զերամս երամս մու-գացն՝ զոր պատրաստական ածեալ աշխարհին գայթակղութիւն, ուր և գտանէին յամուրս ամուրս վայրացն, որոյ ճարակ տուեալ դնէին դէշ թռչնոց երկնից և գազանաց երկրի: Սրբէին զտեղիսն յամենայն պղծագործ զոհիցն, և փրկեալ ազատէին զեկեղեցիսն յանհնարին նեղութենէն:

62. Եւ բազումք ի նախարարացն Աղուանից և յամենայն չինականացն, որք վասն անուանն Աստուծոյ ցրուեալ և վարեալ էին յամուրս լերանց Կապկոհի[1], իբրև տեսին զաջողութիւն գործոյն՝ զոր կատարէր Աստուած ի ձեռն գնդին Հայոց, գային ժողովէին և նոքա, և խառնէին ի զօրս նոցա. և միաբանք և հաւատարք կցորդք լինէին գործոյն նահատակութեան: Խաղային գնային այնուհետև ի վերայ պահակին Հոնաց[2], զոր ունէին բռնութեամբ պարսիկքն. առնուին քանդէին զպահակն, և կոտորէին զզօրսն՝ որ ի ներքս բնակեալ էին. և զդուռն տային ի ձեռն Վահանայ, որ էր յազգէ թագաւորացն Աղուանից: Եւ յայսր ամենայն քաջութեան վերայ ոչ ոք անկեալ վիրաւորեցաւ ամենեին ի նոցանէ, բայց ի միոյ երանելոյ որ կատարեցաւ նահատակութեամբ ի մեծ պատերազմին[3]:

63. Եւ անդէն ի նմին տեղւոջ զայրն՝ որում զդուռնն յանձն արարին, զնոյն դեսպան արձակեցին յաշխարհն Հոնաց, և ի բազում յայլ ազգս բարբարոսաց, որ համագործք էին Հոնաց աշխարհին, բանս դնել ընդ նոսա և ուխտ հաստատել՝ անքակութեամբ ունել զմիաբանութիւնն: Իսկ նոքա իբրև զայն ամենայն լուան, փութապէս փաղփաղակի հասանէին ի տեղին, և ականատեսք լինէին գործոյն յաղթութեան: Եւ ոչ ինչ յապաղեցին

1. Այս է Կովկաս կամ Կաւկաս, որ երկու մասէ կը բաղկանայ. գաֆ՝ որ պարսկերէն և արաբերէն՝ Կովկասի անունն է. և քօհ կամ քուհ՝ լեռան. Գաֆքօհ՝ բառ առ բառ՝ Գաֆ լեռան. ինչպէս մինչև ցայժմ Սէֆատ-քօհ, Սիւլէյման-քօհ և այլն: Կովկաս անուան ստուգաբանութեան վրայօք Եւրոպացի աշխարհագէտք տեսակ տեսակ ենթադրութիւններ ըրած են. հաւանօրէն Գաֆ-քօհի աղաւաղեալն է. և սորա առաջին մասն ալ դուցէ Աւեստայի Կաւ բառն է, որ թարգմանի «կով»: — Պունտահիշի մէջ Կովկաս՝ Գաֆ լեռան կոչեալ է:

2. Այս է պահակն Ճորայ:

3. Այդ նահատակը Մուշ Դիմաքսեանն է, որոյ վերայ խօսեցաւ Եղիշէ քիչ մը վերը:

*երգմամբ յուխտ մտանել ըստ կարգի իւրեանց օրինաց. յանձն առին և զերդումն քրիստոնէից*[1], *պահել ընդ նոսա հաստատութեամբ զմիաբանութիւն:*

64. *Իսկ իբրև զայս կատարեցին և արարին իւրեանց մեծապէս հաստատութիւն, և դեռ անդէն ի տեղւոջն գետեղեալ էին խաղաղութեամբ, գուժկան հասանէր*[2] *յաշ-*

1. Ի նախնիս ամենայն ազգ իւր օրինաց որոշած ձևով կ'երդնույր. Հոնք ալ իւրեանց սովորութեանց համեմատ երդում տուին: Կ'երևի թէ այդ երդման ձևը բաւական վստահութիւն չազդեց քրիստոնեայ Հայոց. ուստի Հոնք գնացին աւելի ևս ապահովելու համար՝ քրիստոնէից պէս Աւետարանի վրայ ալ երդուընցան: — Ինչ էր Հոնաց երդման ձևը. չկրցանք ստուգել: Պարսից թագաւորաց ամենէն հաւատարիմ խոստմանն ձևն էր ծրարի մը մէջ աղ դնել ու կնքել փարագ նկարագիր մատանեաւ: Բուզանդ 164. Եղիշէ 64: Իսկ առ հասարակ ասէին երդումն ըմպել, յորմէ տճկ. անտ իչմէք. վասն զի երդման ժամանակ մասնաւոր կերպով պատրաստեալ կամ նուիրագործեալ ջուր մը կը խմէին յետ կոչելոյ զանուանս աստուածայնոց ի վկայութիւն: Տես Պունտահիշ էջ 207:

Աստ կը տեսնեմք Վարդանայ արշաւանաց բուն նպատակը, և թէ ինչու թողուց նա զմիջոց աշխարհին զԱյրարատ, ուր իւր ներկայութիւնը ամենահարկաւոր էր, և զսահմանս Ատրպատականու դէպ ի հիւսիս գնաց: Այլապէս, մինչև հետևեալ գարնան Պարսկաստանէն բանակ չէր կրնար գալ, ուստի այն կողմանէ վախնալու բան մը չունէր Վարդան առ այժմ. Ճորայ մարզպանը անմիջապէս կրնար վազել Հայաստանի վրայ, որպէս և ըրաւ. վասն որոյ իւր առաջին գործն էր նորա բանակը խորտակել. այս ալ կատարեցաւ Լոփնասի ճակատամարտիւ: Բայց Վարդանայ արշաւանաց բուն շարժառիթը այդ չէր. կը յուսար վանել զԱներուխտ Երբ և ուր որ ալ ըլլար, ինչպէս որ չփախցաւ իւր կոնակը թողուլ նորա բանակին մնացորդը՝ գուցէ ևս ստուարագոյն մասը: Գաղտնի խորհուրդ մի այլ ունէր, զոր անշուշտ Վասակէն պահեր էր. և պահել ալ հարկ էր, վասն զի սա կրնար բոլորովին խանգարել զայն: Յունաց կողմանէ օգնութիւն չգտնուելուն վրայ, պէտք էր որ Հայք ուրիշ զօրաւոր ազգ մը նիզակակից ունենային. մի միայն յոյսերնին Հոնաց վրայ էր. ուստի փութաց Վարդան ժամ յառաջ հասնիլ ի պահակն Ճորայ, քանդել և բանալ զդրունս, ու դաշնակցիլ անոր Կովկասեան ազգաց հետ, որք տարիներով առաջ խոստացեր էին օգնելու Հայոց (Տես յէջ 41, 43 և Յ. Ա 14 ծն 2, և 9 ծն 2): — Կ'երևի թէ այս միջոցիս կամ առկէ քիչ առաջ պահակը ստակք աւերեցաւ. Տես Յ. Է. 18: Այդ արշաւանքդ Վարդանայ հանճարոյն և արագութեանը նշանաւոր ապացոյց մի է. դժբախտաբար Հայք յոյսերնին բարբարոս ժողովրդեան մը վրայ դնելու ստիպուած էին: Հոնք թէպէտ երդումներ ընելու չդանդաղեցան, բայց կարևոր օգնութիւն մը չըրին Վարդանանց: Մէկ օգուտ մը միայն ձեռք բերուեցաւ. Ճորայ մարզպանը Հոնաց հետ զբաղելու ստիպուելով չկրցաւ այնուհետև նորէն գալ ի Հայաստան. Տես Յ. Դ. 15:

2. «Գուժկանք հասանէին ի կողմանցն Գաղիլիացւոց անտի, զօձիս պատառեալ. զճակատ հարեալ և զգոյժս գուժ տային»... Մակաբայեցւոց Ա. գլ. Ե. 14: Տես և ի վերոյ 7. ծն 2 և 2 ծն 3:

խարհէն Հայոց, զճակատ հարեալ և զօձիս պատառեալ վասն ապստամբին Վասակայ, յետ կացեալ յուխտէն քրիստոնէութեան և ուրացեալ զբազում տեղիս Հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի, որ կայեանք զօրացն էին [1], զԳառնին և զԵրամօնս և զԴրասխանա-

1. Այս հատուածիս մէջ յիշեալ վայրերէն զԳառնի և զԱրտաշատ վարդանանք ատեն յառաջ ձեռք անցուցեր էին վանելով զՊարսիկ բերդապահս, (Տես Ց. Գ. 39 (Գառնի որոյ հնագոյն անունն էր Գեղամէ, Երիվանու հարաւային արևելեան կողմը կ'իյնայ, չորս ու կէս ժամու հեռի: Այստեղ էր Տրդատայ ամառանոցը, որոյ աւերակները կը տեսնուին այժմ ինչպէս և միջնաբերդին և այլոց շինութեանց. (Տեղագիր 140):

Երամօնս. Եղիշէ մեզ կարևոր տեղեկութիւն մի կու տայ ցուցանելով թէ ուր էին զօրաց ձմերոցքն. անշուշտ սաքա կամ բերդաքաղաքներ էին որպէս Արտաշատ, Գառնի և այլն, և կամ սոսկ ամրոցներ միանգամայն և զինուորանոց: Գուցէ Երամօնս գրչագրի սխալ մի ըլլայ ու պէտք ըլլայ ընթեռնուլ Երազմոյն որ Արտաշատայ արևմտեան կողմը մեհեան մի էր Տիր դից նուիրեալ՝ զոր կործանեց Տրդատ. (Տես Ագաթանգ. էջ 584). կամ Արամօնս գիւղ՝ ի գաւառին Երիվանու, յորում պայծառ եկեղեցի շինեցաւ յութերորդ դարու և նշխարք նորա մնան. (Տեղագիր 138):

Դրաշխանակերտ կամ Մեծ Դաստակերտ. պարսկերէն Տաստակերտ՝ որ է ձեռակերտ: Այդպէս կը կոչէին պարսիկ և հայ թագաւորք իրենց շինել տուած ապարանքը կամ քաղաքը. երբեմն այլ այդ հասարակ անունը քաղաքին յատուկ անունն եղած էր. այսպէս՝ Խոսրով երկրորդի Ապրուէզի պալատան և նորա շրջակայից անունը մնաց Տաստակերտ, որոյ հոյակապ աւերակները կանգուն են մինչև ցարդ: Իսկ Հայք «մեծ դաստակերտ» ասելով կ'իմանային զԵրուանդակերտ, զոր Արտաշէս Բ Մարմետ կոչել տուած էր Երուանդայ անունը մոռցնել տալու համար, և որ Խորենացւոյ օրերը Դրասխանակերտ կամ Դրաշխանակերտ կը յորջորջէր. Տես Խորենացի. Բ. ԽԲ. ԽԶ. Գ: Երուանդակերտ՝ որոյ գեղեցիկ դիրք և շինութեանց նկարագիրը կ'ընէ մեզ Խորենացին, ինչպէս և հանդիպակաց Երուանդաշատ՝ որ պարսպապատ և միջնաբերդիւ ամուր քաղաք մի էր, Կամսարականաց տրուած էին ի Տրդատ թագաւորէն, և նոցա Ոստանն էին: «Մեծ դաստակերտ» ըսելով զերկոսին ևս իմանալ. վասն զի Երուանդաշատ աւելի յարմար էր «ձմերոց» և «կայեան զօրաց» լինելու: Իսկ վերջերս Դրասխանակերտ կամ Դրաշխանակերտ կոչուելուն պատճառը չգիտեմ. է պարսկերէն դարսան՝ երկչոտ, վախկոտ. գուցէ այդպէս անուանեցին՝ Երուանդայ սաստիկ վախկոտութեան համար, որ Արմաւրայ մէջ ինքզինքը ապահով չգտնելով զԵրասխայ ձորն իրեն բնակութեան տեղի ընտրեր և Երուանդաշատայ ընական և արհեստական ամրութիւնքը բաւական չհամարելով երկաթի գաղտնի սանդուխներ շինել տուեր էր. և որպէս զի զոհից և պաշտամանց պատճառաւ բազմամբոխ ժողովուրդ չխռնի ի թագաւորանիստ քաղաքն, զբագինս հայրենիս 40 ասպարիզօք հեռի տեղ մի ի Բագարան հաստատեր էր:

Վարդանաշատ. էր Վարդանակերտ աւան զոր Ալիշան Վ. մերձ դնէ այժմեան Սալեան քաղաքի (Տեղ. 188): Ըստ Մասուտի, որ ճանապարհորդեր էր ի Հայս, Երասխ գետը «Վարդան քաղաքին քովէն անցնելէն ետքը կը հասնի ի Սա-

կերտն՝ զմեծ Դաստակերտն, զվարդանաշատն և զամուրն
Օշական, զփառախոսն, զԱրդևանն, զՋողկերտն աւան

նորա ուր կը թափի ի Կուր գետ »։ Բայց այդ քաղաքդ կամ աւանդ որ հին փայտակարան քաղաքէն քիչ հեռի էր, չկրնար Եղիշէի յիշատակած արքունի ձմերոցը լինել։ — Է այժմ ի մուտս Ալեքսանդրօպօլի, ի Շիրակ գաւառի՝ գիւղ մի Վարդանելը, որ գուցէ մեր փնտռած Վարդանաշատն է. (Տես Շիրակայ էջ 7)։

Օշական. «Ի դաշտին Վաղարշապատու (Էջմիածնի) են իբրև 40 գեօղք և վանորայք անուանիք, յոլովք յարեմըտակողմն և յաջմէ Քասաղայ և են ի հիւսիսոյ մայրավանացն, յորս գլխաւոր է Օշական գիւղ յարեմտից հիւսիսոյ երկժամու հեռի, առ կամրագդյն չեչաքար ափամբ Քասաղայ, որ առաջարն Օշականայ կոչիւր առ նախնեօք. անդ եհար Վահան Ամատունի զհէնն հիւսիսոյ ակն արկանելով յեկեղեցիս կուսանացն, և ընկալաւ զգեօղն ի պարգև մասին ի Խոսրովայ յորդւոյն Տրդատայ, և ժառանգ իւր միւս ևս Վահան Ամատունի (Եղիշեայ ժամանակակիցն) անդ հանգոյց զմարմին մեծին Մեսրոպայ (որուն և աշակերտն էր), ուր և կայ ցարդ ընդ փայտածածուկ յարկաւ նորոգեալ եկեղեցւոյն, առ որով են աւերակք, զոր ապարանս և մահարձանս չիրմի Վահանայ Ամատունեաց ասեն. (Տեղ. Հայ. Մեծ. 134)։

Փառախոս և Ջողկերտ. Ջողկերտ այլ գրչագիր Ջողակերտ, այս անուամբ նահապետական աւան մի կար՝ Ջողկերտի (Սոփերք Հայկ. Ա. Էջ 34)։ Խորենացին կ'ըսէ թէ Ամասիա որ բնակէր յԱրմաւիր, անցանէ զգետովն մերձ ի լեառնն հարաւոյ, և շինէ անդ առ խորշիւք լեռնոտին մեծապէս ծախիւք երկուս տունս. զմին յարևելս կոյս մօտ յակունս աղբերցն՝ որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն յարևմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբրև մեծ օր հասարակօրոյ միոյ հետևակագնացի ստն ճանապարհի։ Էջ եւ զնոսա ի ժառանգութիւն երկուց որդւոց իւրոց Փառոխի և Ցոլակայ. յորոց բնակեալ՝ յիւրեանց անուն զտեղիսն կոչեցին Փառախոտ և Ցոլակերտ։ Բայց զկեանն Ամասիա անուանէ իւր անուամբ՝ Մասիս։

Արդեւանն. Այլ ընթ. զԱրդեօնն, զԱրդեօնն։ «Դեսպան ձիով վաղ հասուցանէր ի գաւառն Այրարատու ի մեծ ի գիւղն Ընջին արքունի, որում Արդեւանն կոչեն, առ թագաւորն Հայոց Պապ ». արքունի պալատ մի կար անդ. տես Բուզանդ 204։ Զմարթացաք սակայն ասկէ աւելի ճշդել զտեղի գիւղիդ։ Դիտողութեան արժանի է նմանութիւնը զոր ունի անունդ ընդ Ardiniի, որ էր յերրեակ աստուածոց արմենական բևեռագրոց, և որ կ'անձնաւորէր զԱրեգակն ։

Արմաշիր՝ յելից Շէհրիար և ի հարաւոյ Թէփէ–ախղի գիւղերու. է հնագոյն ի մայրաքաղաքացն Հայոց, որոյ տակաւ մնացուածքն կան տակաւին ի կարմիր լուսաքար բլրի կամ բարձրաւանդակի. (Տեղագիր)։ Ռուսական կառավարութեան հրամանաւ Պ. Երիցեանց պեղմունս արար անդ։

Կոշայ աւան. «Ցելից հիւսիսոյ Թալիշի, ի կողս Արագածու կայ Կօշ կամ Կուաշ աւան, յորում նստէր կուրացեալն Տիրան արքայ եղկելի և ապընջական լեալ թոռին իւրում Գնելայ՝ վասն այն անդ ապանու հրամանաւ որդւոյ իւրոյ Արշակայ. են և առ նովաւ աւերակք. և մերձ էր ի սա լճակն յորմէ Մեծամօրի ելանէ » (Տեղագիր 129)։

Արուճ. «Ի հիւսիսոյ Թալնոյ վիճակին կայ Մեծիւաշին կամ Միսախըը վիճակ. քան գիւղօրէք, յորս և Թալիշ

և զբերդն Արմաւրի, զկուաշն աւան, զԱրուճ, զԱշնակն և զամենայն տուն Արագածոյ, և զնահանգն Արտաշատու և զԱրտաշատն ինքնին զկնովին, և զամենայն գեօղս և զաւանս՝ որ շուրջ զնովաւ էին, առեալ աւերեալ և հըրձիգ արարեալ[1], և զամենեցուն ձեր զընտանիս փախուցեալ մերժեալ յիւրաքանչիւր բնակութենէ։

65. Ջեռն արկեալ և ի սուրբ եկեղեցիսն, տարեալ և զսուրբ սպաս եկեղեցւոյն սեղանոյ. գերի վարեալ զընտանիս քահանայից, և զնոսին կապեալ և եդեալ ի բանդի և ինքն սփռեալ տարածեալ ապատակաւ աւերէր զերկիրն ամենայն։ Եւ գունդն՝ որ էր ի կողմանս Ատրպատականի, ոչ ժամանեաց ձեռն տալ ի միջոց աշխարհին[2]։ Եւ զօրքն՝ որ անդ մնացեալ էին, խոյս տուեալ յանօրինէն մերժեցան յեզր աշխարհին, և դեռ պահեն ընդ ձեռ զուխտ միաբանութեան սիրոյն Քրիստոսի։ Բայց այն որ ընդ նմայն էին, են ոմանք՝ որ փախեան յիւրաքանչիւր տեղիս, և բազումք այն են՝ որ զհետ մոլորեցան նորա ամբարշտութեանն։

66. Ջու արարեալ ի տեղւոջէ անտի՝ դառնայ անդրէն յաշխարհն Հայոց մեծաւ ամբոխով և բազում աւարաւ և անչափ մեծութեամբ։ Եւ անտրտում ուրա-

ուան ի տեղւոջն հնոյն Արուճայ, ուր Գրիգոր Մամիկոնեան կանգնեաց իւր ապարանս և եկեղեցի մեծ և հոյակապ յամին 671. որ և բաց ի զմբեթէն՝ կանգուն կայ մինչև ցայսօր հազարամեայ արձանագրութեամբք. են առ նըմին և մնացուածք դղեկի» (Տեղագիր)։

Այժմ. «Ի ստորոտս Արագածու, յելից Թալնոյ կայ Աշնակ աւան ի տափարակ և ընդարձակ դաշտավայր տեղւոջ. զաւանի այժմ ի սմա աւերակ հին եկեղեցւոյ ի տաշածոյ քարանց (Սոփ. բազդ. կաթ. Էջմիածնի. Շահխաթունեանց հատ. Բ. 57)։

Արագածոտն՝ Հայաստանի չէն, բազմամարդ և բարեբեր գաւառներէն մէկն էր։

1. Առնել կամ աւերել և կամ հըրձիգ արարել՝ համանուն է։ Փարպեցին դեպանին բերանը հետագայ խօսքերը կը դնէ, որք կը լուսաբանեն Եղիշէի ըսել ուզածը։ «Զբերդեան ամրոցացն ի բաց կալան, և զիւրեանցն բերդակալս արարեալ զգուշացուցին, և զորդիս տոհմին Մամիկոնէից և Կամսարականաց և զայլոց Տանուտեարցն ժողովեալ յիւրաքանչիւր դայեկաց, յամուրս բերդից իշխանութեանն Սիւնեաց եանցուցանել (Վասակ) և հրամայեաց պահել զամուրսն զգուշութեամբ. և ապա նենգաւորն Վասակ տայ տանել զորդայսն առ Թագաւորն Պարսից»։ Այս աւերմանց և հրկիզութեանց հետևանքն եղած ըլլալու է, որ հինգերորդ դարուն վերջին կիսին մէջ Դուին առաջին Ոստան եղև Հայոց. Տեր Փարպ։

2. Անդ՝ այսինքն ի միջոց աշխարհին, ի Նահանգն Այրարատայ։

խուժեամբ երգս ի բերան առեալ և ասէին ձայնիւ․ խոստովան եղերուք Տեառն, զի բարի է զի յաւիտեան է ողորմութիւն նորա․ և եհար զազգս մեծամեծս և սպան զիշխանս հզօրս, զի բարի է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա[1]: Եւ զայս առնէին երգելով մինչև ի վախճան կատարեալ աղօթիւք փառաւորութիւն սուրբ Երրորդութեանն մատուցանէին: Ընդ յանձանձէր ածէր զօրավարն զկայս և զմնացս զօրականին, առաջապահօք, մեր-ջապահօք կողմնապահօք ողջ և առողջ հասուցեալ յաւուրս երեսուն[2] մերձ ի սահմանս հայրենի աշխարհին:

67. Ազդ եղև ուրացելոյն Վասակայ և իշխանացն որ ընդ նմա էին քաջութիւն նահատակութեան գնդին Վարդանայ յաշխարհին Աղուանից, և միաբանութիւնն եւ Հոնաց: Մինչ չև յանդիման եղեալ էին միմեանց, զգիշեր մի օգնական գտեալ նորա՝ փախստական անկանէր յամուրս խորոց աշխարհին. և այնպէս տագնապաւ մերժեցաւ, զգերի և զաւարն զոր առեալ էր յԱյրարատ գաւառէ, ակամայ զիւրն եւ եթող և փախեաւ:

450–51 68. Եւ քանզի ժամանակ ձմերայնոյ[3] հասեալ էր,
ձմեռն և զաւճիկս՝ թշնամեաց գնդին հարեալ էր, ոչ կարէր[4] զմիով տեղեաւ համագունդ զզօրսն դարմանել. այլ սփռէր տարածանէր ընդ գաւառս գաւառս աշխարհին առ ի հանգիստ ձմերոցին: Պատուէր հրամանի տայր պատրաստական լինել կազմութեամբ առ ժամանակ գարնայնոյն: Եւ զակաւս ի գնդէն յաւագ նախարարացն գործակից իւր թողեալ, բռնանայր ի վերայ՝ ունելով զթագաւորանիստ տեղիսն:

69. Եւ գունդս գունդս արձակէր յաշխարհն Սիւ-

1. Սաղմոս ԽԵ։

2. Երեսուն օրուան մէջ Վարդան բանակը բերաւ Դարբանդայ դռնէն ցսահմանս Հայոց, որ 650–700 քիլոմեթր երկայնութեամբ ճանապարհ մը է․ զօրքը օրը 25 քիլոմեթր կ'առնուին վրայէ վրայ և այս ալ շարունակ ամիս մը։ Ձորայ պահակին վրայ գնացող հայք պէտք է, որ ամբողջապէս ձիաւորեալ ըլլային։ Եղիշեայ միտքը Մակաբայեցւոց գրոց շարադրութեամբ առագորեալ է․ «Ընդ յանձանձէր զկայս մնացս ժողովրդեանն, մխիթարէր զամենեսին Յուդա․ ընդ ամենայն չուս ճանապարհին այսպէս առնէր, մինչև ածէր հասուցանէր յերկիրն Հրէաստանի»։ Մակաբ․ Ա․ գլ․ Ե 53։

3. Ձմեռն 450–451։

4. Ոչ կարէր Վարդան։

նեաց, առնոյր և աւերէր զբազում գաւառս, և այնպէս ի նեղ արկանէր զնա և զամենայն զօրսն որ ընդ նմա էր, զի զէնս և զձիս մեռելոտիս առ սովոյն վտանգի անխտիր ուտէին: Եւ բազում հարուածս հասուցանէին ի վերայ ուրացելոյն, մինչև ժողով սուրբ եպիսկոպոսացն և ամենայն ուխտ քահանայութեանն դառնապէս արտասուս իջուցանէին ի վերայ չարաչար վշտացելոցն՝ որ բոկ և հետի վարէին զարս և զկանայս փափկասունս, և բազում տղայք զքարի հարեալ ընկեցան յանցս ճանապարհաց[1]:

70. Իբրև այս ամենայն աջողութիւն լինէր երկիւղածացն Աստուծոյ, ամենայն եպիսկոպոսունք և երիցունք պատուէր հրամանի տուեալ աշխարհին, զողջոյն ամեն քաղաք[2] պահօք և աղօթիւք առնել խնդրուածս առ Աստուած, և զտօն պատերազմացն յաղթութեան խառնել
451 ի սուրբ տօն յայտնութեանն[3] Քրիստոսի, զի անխափան
յունուար կացցէ մեծ յիշատակարանս այս ընդ աստուածային անանց տօնին: Եւ զայն զայս ամենայն այցելութիւնս Աստուծոյ, որ ի վերայ աշխարհին Հայոց մեծապէս երևեցաւ, գրեցին սուրբ եպիսկոպոսունքն և ետուն տանել յաշխարհն Յունաց ի մեծ քաղաքն[4] առ սուրբ ուխտ եկեղեցւոյն, զի և նոքա աղօթս առնելով խնդրեսցեն յԱստուծոյ, որպէս սկսաքս ի նմին և կատարեսցուք:

71. Եւ զմի յաւուրն կապելոցն Պարսկաց[5] լուծեալ

1. Սիւնեաց գաւառը իր ուտելիքը և ցորենը Արարատայ նահանգէն կ'ընդունէր. Ինչպէս որ այժմ Շիրակայ դաշտին ցորեանը մեծաւ մասամբ կը վաճառի անդ. Վարդանայ Արարատ հասնելովը ամենայն հաղորդակցութիւնք դադարեցան այդ երկու նահանգաց մէջ. ուսկից և սով յառաջ եկած էր: Բայց ինչ էր այն ատեն Սիւնեաց երկրին բերքը, զորս կու տային բնակիչքը փոխանակ ցորենոյն որում պէտք ունէին: Անշուշտ՝ ոչխար, բուրդ, բրինձ և բամբակ ի Շարուրայ դաշտէ. Խորենացին յիշէ միայն զմուրտ, զգեղերի և զնուռն. Տես աշխարհացոյց էջ 609:

2. Է հինգերորդ ամիս հայկական տարւոյ, որ ըստ հաշւոյ Աւիշան վարդապետի, այն տարին կ'սկսէր ի 6 Դեկտեմբերի (450) ց5 Յունուար (451):

3. Յայտնութեան տօնին օրն ալ կը կատարուի ի 6 Յունուարի: Այս թուականս ճիշտ ամիս մը պահքէ ետքը կու գայ, որով և նախընթաց ծանօթութեան մէջ գրուած հաշւոյն ուղղութիւնը կը հաստատէ:

4. Այս է Կոստանդնուպոլիս:

5. Այս ինքն այն գերիներէն, որ Վարդանանց ձեռքն անկան, երբ սոքա առաջին անգամ յարձակեցան Պարսից բանած բերդերուն վրայ. Տես Յ. Գ. 39:

և ածեալ զառաջեաւ նախարարացն, խօսէին ընդ նմա և ցուցանէին զամենայն վնասն որ եղև, կամ աշխարհացն աւերեալն, կամ զօրացն արքունի հարկանելն, և կամ որ այլ ինչ առաջոյ լինելոց էին: Եւ իբրև զայս ամենայն բովանդակ ցուցին նմա, միաբան լինէր ամբաստանութիւն երկոցունց կողմանցն, զաւաքինեացն և գլխոտ կացելոց, որպէս զուր և տարապարտուց նեղեաց զնոսա՝ ի հայրենի օրինացն յետս կալ. և զխաբէութիւն ապստամբելն վասակայ, որպէս Հայոց բանիւ խաբեաց զթագաւորն, յանձն առնուլ զմոգութիւն. իբրև չէր ուրուք ընդ նմա բանս եդեալ, նա յանձնէ սուտակապաս լինէր[1]:

72. Իբրև լուաւ զայս ամենայն իմացուցին, արձակեցին զնա հրեշտակութեամբ յաղերս ապարանութեան և ի հնարս հայթայթանաց, թերևս կարասցեն զեղբարս[2] իւրեանց ի նեղութենէն գողանալ: Այլ առ նա[3] անօրէնն վասակայ գուժկանքն յառաջագոյն հասեալ էին, պատմել զաղէտս տարակուսանացն, զոր անցուցեալ էր ընդ զօրսն արքունի. և ամենայն ամբաստանութիւնն ի սուրբ ուխտ եկեղեցւոյն[4] կրթեալ էր: Քանզի այն իսկ կամք էին անօրինին, եթէ զմիաբանութիւն եպիսկոպոսացն քակեսցէ ի նախարարացն. և զայս ոչ էր տեղեկացեալ տակաւին, եթէ հոգի և մարմին բաժանիցին առ ժամանակ մի՝ գոյ տեսանել ի բնութեանս, այլ որ սիրովն Աստուծոյ յուխտ մտեալ է՝ այսմ անհնար է լինել:

73. Արդ երթեալ այրն ի տեղի ձմերոցին[5], պատմեաց զայս ամենայն յականջս թագաւորին. շարժեալ

1. Այս է թէ առանց Հայոց գիտութեան՝ Հայերը մոգութիւնը յանձն առնելու պատրաստ են, ըսելով ժողովրդեան զգացմունքը այլ ընդ այլոյ ներկայացուց առ արքունիս:

2. Որք կամ պաշտօնով և կամ իբրև պատանդ մնացեալ էին ի Պարսկաստան, միանգամայն և որդիս Տանուտերաց, զորս Վասակ խրկեր էր ի Դուռն (Տես և ի վերոյ 64. ծան. 1):

3. Այս է առ Յազկերտ:

4. Ուխտ եկեղեցւոյ՝ Եկեղեցականք. Վասակ մի միայն սոցա վրայ կը ձգէ յանցանքը, ու չամբաստաներ նոցա համախոհ նախարարքը: Եպիսկոպոսաց ձեռքըն էր ազգին սիրտը. եթէ մէյ մը տապալէր զնոսա կը յուսար որ իրեն հակառակող տանուտերքը ուրիշ նեցուկ չէին գաներ ու կը հնազանդէին նմա:

5. Այս է Տիզբոն, ուր դարձեր էր Յազկերտ:

գաղայոյց, որ և յամենայն զօրութենէն պակասեալ գը-տաւ. մանաւանդ զի յարենլից պատերազմէն[1] կորակոր՝ և ոչ բարձրագլուխ էր դարձեալ: Իբրև տուգեալ հաս-տատեաց ի վերջին հրեշտակէն որ եհաս առ նա, զամե-նայն վնաս զիւր գործոյն զխորհրդակցօք արկանէր: Եւ անդէն չիջանէր ի բազմորոց բորբոքմանէն. քանզի խը-ցաւ բերան չար խրատտուացն, որ անդադար յորդո-րէին զնա ի գործ դառնութեան: Խոնարհեցաւ ի բարձր հպարտութենէն, և զվայրենացեալ սիրան դարձոյց ի մարդկային բնութիւն. հայեցաւ և ետես զինքն լի ակա-րութեամբ. գիտաց եթէ զամենայն զոր կամի առնել՝ ոչ կարէ կատարել: Վասն այնորիկ և դադարեաց յանդուգն յարձակմանէն, և լռեցոյց զմոլեգնոտաբար գոչումն:

74. Եւ որ մեծաձայն բարբառով որոտայր, և ես ա-հագին հրամանօքն զհեծաւորս և զմերձաւորս դողացու-ցանէր, սկսաւ քաղցր և ազերս բանիւք խօսել ընդ ա-մենեսեան և ասել. «Զի՞նչ ինչ վնաս գործեալ է իմ, և կամ զո՞ր յանցս յանցուցեալ կամ առ ազգս կամ առ լեզուս[2] կամ առ անձն իւրաքանչիւր: Ո՞չ ահա բազում ումանք են յաշխարհիս Արեաց, և իւրաքանչիւր պաշ-տամունք յայտնի են. ո՞ երբէք նեղեաց պնդեաց դար-ձուցանել ի մի օրէնս միութեան. մանաւանդ վասն օ-րինաց քրիստոնէութեանն, որպէս հաստատուն և ճըշ-մարիտ կացեալ են յիւրեանց դենին, նոյնպէս և առ մեզ լաւագոյն քան զամենայն կեշտան նոքա երևեալ են: Եւ բիծ իսկ ոչ կարէ ոք գնել ընտրեալ օրինաց նոցա. այլ զոյգ և հաւասար համարիմ դենիս մոգդեզանց, որպէս և յարգեալ իսկ էին նոքա առ նախնեօքն մերովք, զոր ես ինձէն իսկ յիշեմ առ հարբն[3] իմով որ նստէր ի մեծ դահոյս յայսմ:

1. Ի Բուզանդայ, որոց վրայ երկրորդ անգամ խաղալն գրուցեց մեզ Եղիշէ (Ց. Բ. 77):

2. Լեզու՝ արևելեան բացատրութիւն մէկ լեզու խօսող ժողովուրդս ըսելու համար. այսպէս Բուզանդ տեղ մը կ'ըսէ. «աշխարհն ամենայն Հայոց լեզուի» 106 — «Եւ ազգային զՆերսէս ամենայն ազատք և շինականք ծագէ ի ծագ ամենայն սահմանաց երկրին Հայոց, ամենայն բը-նակիչք տանն Թորգոմայ, Հայ լեզուն առ հասարակ» 227: «Իբրև զկայրս մա-լորեցան երկիրն լեզուին Թորգոմական աշխարհին». Նոյն 32:

3. Այս է Վռամ Ե. որ գահակալեց յամին 420: Թագաւորութեան առաջին

75. «Յորժամ սկսաւ անդաճել և քննել զամենայն ուսմունս և հաստատութեամբ ի վերայ եհաս, տաւել վեհ գտանէր զօրէնս քրիստոնէից քան զամենեցուն. վասն այսորիկ մեծարեալք և պատուեալք շրջէին ի դրան արքունի, և առատաձեռն պարգևօք երահիկք[1] լինէին ի նմանէ, և համարձակութեամբ շրջէին ընդ ամենայն երկիր: Նա և որ գլխաւորքն էին քրիստոնէիցն, զոր և եպիսկոպոս անուանեն, ընծայից և պատարագաց արժանիս առնէր զնոսա: Եւ իբրև հաւատարիմ ոստիկանս՝ յանձն առնէր նոցա զհեռաւոր մարզսն[2], և ոչ երբեք սխալ լինէր ի մեծամեծ իրացն արքունի:

76. «Եւ դուք զմի զայն երբեք ոչ յիշեցէք, այլ հանապազօր ձանձրացուցէք զլսելիս իմ, խօսելով զնոցանէ զամենայն չարութիւն: Տեսէք՝ զի ետուք գործել ինձ զոր ինչ ոչ կամէի, և եղեն վնասք մեծամեծք ի սահմանսն ի մէջ երկուց անհաշտ թշնամեաց[3]: Եւ մեք գեո

տարիները հալածեց զքրիստոնեայս, որք խմբովին կը թողուին իրենց հայրենիքը և յունաց երկիրը կ'ապաստանէին։ Վը-ռամ դեսպան կը խրկէր ի Բիւզանդիոն և կը պահանջէր ի Թէոդոսէ, որ իւր ձեռքը տայ այդ պանդուխտները։ Երբ ուզածը չկատարուեցաւ, պատերազմ հրատարակեց, որ շատ յաջող ելք մը չունեցաւ։ Կ'երևի թէ խաղաղութեան հաստատուելէն ետքը Քրիստոնէից հետ սիրով վարուեցաւ, որուն յոյժ նպաստեց Տիգրանակերտի Եպիսկոպոսին առաքինի ընթացքը։

1. Երահիկ. բառն՝ արաբ. راهی է անդորր, խաղաղ (կեանք). չարունակ կերպով տրուած (պարէն)։ Հայկ. բառարանը լծորդ կը համարէ պրսկ. Ֆէրահ և հայ «ուրախ» ածականաց։

2. Օտար պատմագրաց մէջ յիշատակութիւն մը չգտանք, որ Վռամ այդպիսի հեռաւոր մարզեր յանձնած ըլլայ Եպիսկոպոսաց։ Անկէ յառաջ տեսանք որ Սուրմակայ տուեր էր Բզնունեաց տանուտէրութիւնը։ Կարելի է ևս առել թէ մինչև այն ժամանակը, յորում մերժեց զԱրտաշէս Արշակունեաց գահէն, զՊարթևն Սահակ յոյժ մեծարեր էր և Հայաստանի իրաց նկատմամբ նորա ամէն աղաչանքը և խորհուրդքը կատարեր էր. սխալ չի լինիր ասել թէ Վռամ զՀայս աւելի Կաթողիկոսին յանձնած էր քան Վռամշապհոյ, կամ ուրիշ ո՛ և է նախարարի և իշխանի։ Յունաց հետ խաղաղութիւն կնքած միջոցին Ամիդայ (Տիարպէքիր) եպիսկոպոսը Ակակիոս եկեղեցեաց ոսկեղէն և արծաթեղէն ըսպասքը ծախեր ու սոցա փոխարէնով եօթն հազար պարսիկ գերի գներ էր ի Յունաց և նոցա ամէն պիտոյքը հայթայթելէ յետոյ Պարսից Թագաւորին յանձներ էր։ Այս ճշմարիտ քրիստոնէավայել գործս մեծ տպաւորութիւն ըրած էր Վռամայ մտաց վրայ. ու պատճառ եղած էր, որ այնուհետև յարգէ զկրօնն, զոր հալածեր էր մինչև ցայն վայր։

3. Իմա՛ օտարացուցիք զՀայ ազգը որ Յունաց և Պարսից՝ երկու անհաշտ թշնամեաց սահմանաց մէջտեղն է։

ի հեռաւոր ճանապարհի, և ոչ մի ինչ գործ ի պատերազմիս ի գլուխ եւրթեալ, և դուք աստէն յինում տանս յարուցէք ի վերայ պատերազմ, որոյ չարագոյն ես լինելոց է կատարածն իւր քան զարտաքին թշնամեացն »:

77. Զայս ամենայն և առաւել քան զայն խօսէր ընդ ամենայն աւագանին, և զհետս յանցանացն արկանէր զմոգպետսն և զմոգս: Եւ ամենայն վզուրկքն և պատուական նախարարքն, որ նստէին յատենին և ունկն դնէին յեղյեղուկ լեզուի նորա, ամաչեցեալ կորանային և ընդ երկիր պշնուին, և զգլուխ ի վեր ոչ կարէին համբառնալ :

78. Բայց ակամայ ի նոցանէ զմիտս հաճելով ասէին զայս. « Այո, արքայ քաջ, այդ այդպէս է որպէս ասացեր, և արդ կարես զամենայն ուղղութեամբ նուաճել, չիք ինչ այն, որ ըստ քո կամաց արտաքս կարէ ելանել. զի տուեալ է քեզ աստուածոյն, զի զամենայն զոր և կամիս, կարես առնել: Մի՛ ներեալ տագնապիր յանձն քո և հարկաներ զմիտս մեր ամենեցուն. թերևս և դիւր իցեն հնարք իրացն կատարածի: Երկայնամիտ լեր և համբերութեամբ թողացո մարդկանդ[1] անդրէն զքրիստոնէութիւն, և դուզք զապստամբսն ածցես ի հաւանութիւն »:

79. Հաճոյ թուեցաւ բանքն առաջի թագաւորին. և անդէն վաղվաղակի կոչէր զառաջեաւ յամենայն ազգացն որ ունէին զքրիստոնէութիւնն, և ի զօրու նորա էին, և բռնաբար արգելեալ էր զնոսա, զի մի՛ ոք իշխան լիցի յանդիմանն պաշտել զԱստուած. քանզի որ ընդդէմ կային, չարչարեաց և արգել ի նոցանէ զյայտնի պաշտօնն, և ոմանց ոմանց ակամայ երկիր եա պագանել արեգական, և նստոյց ի սուգ տրտմութեան զամենայն զօրականսն :

80. Իսկ այն օր հրամայէր անդրէն համարձակութեամբ ըստ առաջին կարգին հաստատուն կալ յօրէնս քրիստոնէութեանն: Իսկ որք յանցաւորքն էին, ոչ կամէին վաղվաղակի առանց մեծի ապաշխարութեանն գալ և խառնել ի կարգ քրիստոնէութեան. հրամայէր թա-

1. Այս է քրիստոնէից որ ի զօրուն էին Յազկերտի հետ։

գաւորն՝ զի բանի կայցեն և տարցեն յեկեղեցին իւրեանց: Եւ երիցանցն համարձակէր, որպէս զիարդ և գիտիցեն՝ ըստ կարգին իւրեանց արտացեն: Եւ պհատեալ ռոճիկսն կարգէր անդրէն իւրաքանչիւր, և զարգելեալ բազմականսն ի նոցանէ՝ ի տեղի հրամայէր մատուցանել, և հանապազորդ յարքունիս մտանել ոչ արգելոյր զնոսա. և զամենայն որ զիարդ և կարգեալ էին յառաջագոյն՝ անդրէն յօրինէր: Խոնարհէր և խօսէր ընդ նոսա սիրով ըստ առաջին սովորութեանն:

81. Եւ իբրև զայս ամենայն արար և կարգեաց, յանդիման նոցա թողութեան հրովարտակս տայքէր ընդ ամենայն երկիր իշխանութեան տէրութեան իւրոյ վասն քրիստոնէից: Եթէ ի կապանս ոք կայցէ, արքունի հրամանաւ արձակեալ լիցի. և եթէ ինչք ուրուք յափշտակեալ իցեն, դարձցին անդրէն: Այնպէս և երկիրք, եթէ հայրենիք, եթէ պարգևականք և եթէ քաղաքինք, և հանեալ ուրուք իցէ, հրամայեցաք զի դարձցին[1]: Եւ իբրև այսմ ամենայնի զնոսա տեղեակ առնէր, խնդրէր ի նոցանէ մկայութիւն հաւատարմութեան յերկիրն Հայոց, և երդմամբ յուխտ մտանէր առաջի նոցա՝ հաստատութեամբ ամենայն մեծամեծաց իւրոց, եթէ ոչ ինչ յիշեցից ամենևին զքէն վրիժուցն խնդրելոյ: Որպէս ունէիք յառաջ ճշմարտութեամբ զօրէնս ձեր, այսուհետև տաւել կալարուք. բայց միայն ի ծառայութենէ մերմէ մի ելանէք:

82. Զայս ամենայն գրէր և ցուցանէր երկրին Հայոց և ի բազում յայլ աշխարհս, որ ունէին զօրէնս քրիստոնէութեանն. և ինքն գաղտ խորամանկեալ փութայեալ դեսպանս առաքէր առ Մարկիանոս կայսր: Եւ իբրև ստուգեալ ճշմարտեաց, եթէ Հոնք ի բաց կացին ձեռն-

1. Այս տուն և նախընթացը ներշնչեալ կ'երևան հրովարտակէն, զոր գրեր էր Մաքսիմինոս, երբ չարաչար յաղթուեալ ի Լիկինոսէ ազատութիւն կը շնորհէր քրիստոնէից. և զոր ի մէջ բերէ Եւսեբիոս. (Պատմ. Եկեղ. Թ, 10). «Եւ զայս ևս յաւելաք դնել յօրէնս, զի թէ իցեն տունք կամ տեղիք ինչ՝ որ իբրև ի բաժնէ Քրիստոնէից յառաջագոյն էին, և որպէս ի հրամանէ հարցն մերոց յարքունիս գրուեցան կամ ի միոյ քաղաքաց ումեք առան, կամ վաճառելով վաճառեցան, կամ ի պարգևի մասին ումեք տուան, ամենեքին սոքա յառաջին բաժին և յիրաւունս քրիստոնէից հրամայեցաք դարձուցանել»:

տու լինել քրիստոնէութեանն ոչ զօրու օգնականութեան և ոչ այլ իրօք, դարձեալ անդրէն ի նոյն յառաջին կարծիս մոլորութեանն շրջեցաւ: Զի յաջողութեան իւրայն ի ձեռն իւրոց պաշտօնէիցն հրամայէր. և այնպէս ածէր զմիտս, եթէ ըստ առաջին կարծեացն կատարեսցէն զամենայն :

83. Իսկ Հայք թէպէտ և ընկալան զգիրն խաբեբայ ողոքանաց թագաւորին, որ ի վերոյ ունէր զաւետիս կենաց և ի ներքոյ զդառնութիւն մահու, զարմացեալ ընդ թերի խորհուրդս՝ ասէին ցմիմեանս. «Քանի՛ լիրբ է խորամանկ խաբէութիւն նորա, զի երկիցս և երիցս զփորձ առեալ կշտամբեցաւ, և ոչ ամաչէ: Եւ տեղեակ եղեալ մերոյ անքակ միաբանութեանս, առաւելն լրբի և լկնի, զհետ մտեալ՝ կամի զմեզ լքուցանել:

84. «Իսկ հաւատացո՞ւք անհաստատ հրամանի նորա. զո՞ր բարեգործութիւն տեսաք առ ամենայն եկեղեցիս, որ են յաշխարհին Պարսից: Զի որ ինքն իւր չար է, այլում՝ բարի ոչ կարէ լինել. և որ ինքն ընդ խաւար գնայ, այլում՝ ոչ առաջնորդէ ճշմարտութեան լուսով: Որպէս զի չիք յանիրաւութենէ արդարութիւն, այսպէս ի ստութենէ ճշմարտութիւն, այնպէս և ի խռովասէր մըտաց՝ անկեղծութիւն խաղաղութեան:

85. «Այլ մեք ապրեալքս զօրութեամբն Աստուծոյ, և հաստատեալք հաւատովքն ի յոյսն Քրիստոսի, որ եկն և էառ ի սուրբ կուսէն զմարմին մերոյ բնութեանս, և միացեալ անբաժանելի աստուածութեամբն՝ ընկալաւ ըզչարչարանս մերոյ մեղաց ի յիւր մարմինն, և նովին խաչեցաւ և թաղեցաւ և յարուցեալ երևեցաւ բազմաց, և վերացաւ յանդիման աշակերտացն առ Հայր իւր, և նստաւ ընդ աջմէ զօրութեանն, զնոյն հաւատամք Աստուած ճշմարիտ, և նմին ակն ունիմք, որ փառօք Հօր և զօրութեամբ գայ յարուցանել զամենայն ննջեցեալս, և նորոգել զհնութիւն արարածոց, տանել համօրէն յաւիտենից ի մէջ արդարոց և մեղաւորաց:

86. «Ոչ պատրիմք իբրև զտղայս, և ոչ մոլորիմք իբրև զանտեղեակս, և ոչ խաբիմք իբրև զտգէտս. այլ պատրաստ եմք ամենայն փորձութեանց: Եւ աղաչեմք զԱստուած, և անդադար խնդրեմք ի բազում՝ ողորմութենէ

նորա, զի յորում սկսաք, ի նմին և կատարեսցուք քաջութեամբ, և ոչ վատութեամբ: Զի արդ արևելք և արևմուտք զխաղին զձեր աստուածամարտ լինել, և զմեզ ի զուր սպանանել ի վերայ ամենայն վաստակոցն մերոց: Վկայեն մեզ երկինք երկնաւորօք և երկիր երկրաւորօք, եթէ չեմք ինչ մեղուցեալ ի միտս մեր անգամ. և ի վերայ պարգևաց և բարիս առնելոյ մեզ՝ զճշմարիտ կեանս կամիք հանել ի մէնջ, որում չէք հնար, և այլ մի լիցի:

87. « Իսկ արդ հաւատացո՞ւք անարժան բերանոյ նորա, որ առնպէր չարաչար յուրացութիւն, և այսօր առանց մի ինչ բարիս գործելոյ լինիցի՞ նա քարոզիչ աւետեաց: Եւ որ հայհոյէրն զՔրիստոս, և ուրացուցանէր ի նմանէ զհաւատացեալս, այսօր ակամայ խոստովանութեանն ոչ կարեմք վաղվաղակի յանձն առնուլ: Եւ որ երդնոյրն ի սնոտի պաշտամունս իւրոյ մոլորութեանն, անցուցանել զամենայն չարչարանս ընդ պաշտօնեայս եկեղեցւոյ, արդ եկեալ գոդանալով զոհութիւն մատուցանէ. և այնու կամի զամենայն չարութիւն իւր ի մեզ հեղուլ: Ոչ այդմ հաւատամք, և ոչ զսուտ հրամանդ յանձն առնումք »:

88. Իսկ նա իբրև գիտաց, եթէ ոչ կարեմք քակել զհաստատութիւն միաբանելոցն, յայնժամ քակեաց յինքենէ զծերն[1] լի դառնութեամբ, յորում հանդուցեալ էր սատանայ զօրութեամբ իւրով, և բազում գործեալ էր նորա նախճիրս[2]. որոյ կերակուր կամաց իւրոց էր ի մանկութենէ անարատ մարմին սրբոց, և ըմպելի անյագութեան նորին՝ արիւն անմեղացն: Յաւելյր ևս ի վերայ չարութեան նորա և գլուխ մահաբեր հրամանն. գունդս գունդս յամենայն աշխարհացն գումարէր ընդ նմա, և բազում երամակս[3] փղաց յղէր ընդ նմա:

50-51 89. Հասեալ մերձ ի սահմանս Հայոց, մտանէր ի քաղաքն Փայտակարան[4], և զզօրսն ամենայն սփռէր տարա-

1. Այս է Միհրներսեհ:
2. Նախճիր. Բաղանդ՝ նախչիր:
3. Հին և նոր պարսկերէն րամակ, րամա:
4. Քաղաքն Փայտակարան, զոր յետ ժամանակաց, Արաբացիք Պայլական կը կոչէին. «ի մղոնաչափութիւնս ուրեք Հայոց քաղաքաց՝ հնգիւք ևեթ մղոնաք

ծանէր շուրջ զքաղաքաւն առ ի զգուշութիւն պատրաստութեան իւրոյ չարահնար խորհրդոյն: Եւ յամուր որջն մնեալ հին վիշապն չարաթոյն, և բազում կեղծաւորութեամբ զինքն թաքուցանելով յանիրաւութիւն, հեռաւորացն ահագին ձայնիւ սաստէր, և ի մերձաւորսն իբրև զօձ սողալով փչէր: Սա էր իշխան և հրամանատար ամենայն տէրութեանն Պարսից, որում անունն էր Միհրներսեհ. և չէր ոք ամենեին՝ որ իշխէր ըստ ձեռն նորա ելանել: Եւ ոչ միայն մեծամեծք և փոքունք, այլ և ինքն թագաւորն հրամանի նորա անսայր. որոյ և ձախող իրացն իսկ բուռն հարեալ էր նորա:

տարակայ ի Կասպից ծովէն նշանակի և նոյնքան ի Վարդանակերտ աւանէ. որոց հարկ է մերձ յայժմուս Ալիան լինել. ուրանոր և աւերակք գոն հնոյ քաղաքի, և չէ պարտ շփոթել զքաղաքս ընդ Տփխեաց և Պարտաւայ, որպէս ոմանք Փայտակարան կոչեցին և գնացին »: Տեղ. Հայոց 188: — Միհրներսեհ հասաւ ի Փայտակարան գարնան ժամանակ յամին 451:



# ՉՈՐՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

## ՎԱՍՆ ԵՐԿՊԱՌԱԿՈՒԹԵԱՆ ԻՇԽԱՆԻՆ ՍԻՒՆԵԱՑ ԵՒ ԱՆՕՐԷՆ ԸՆԿԵՐԱՑ ԻՒՐՈՑ

1. *Մինչև ցայս վայր ոչ ինչ կարի զանգիտէի պատմել զհարուածս ազգիս մերոյ, որ յարտաքին թշնամեաց ճշմարտութեանն չարաչար յարեան ի վերայ մեր. որք տկարագոյնք հարին զմեզ, և յոլովագոյնք հարեալ գրուան ի մէնջ. քանզի դեռ ևս միաբանք և հաւատարիմք էաք։ Թէպէտ և ոմանք ի ծածուկ ունէին զերկմտութիւն նենգութեանն, սակայն յաչս արտաքնոցն ահաւոր երևէր միաբանութիւնն. որպէս յերկուս և յերիս տեղիս ոչ կարացին կալ առաջի։*

2. *Արդ յայսմ հետէ և անդր, ուր սպրդեալ անկանի երկպառակութիւն ի ներքս, ընդ քակել միաբանութեանն՝ և երկնաւոր առաքինութիւնն հեռանայ, և անձնընտիրք լինելով՝ յոյժ բազմանայ լալումն ողբոյս։ Քանզի հատեալ անկեալ անդամքն, որ յառաջագոյն սրուն սուրբ մարմնոյս էին, դառնայ մարդ յարատևս առաջի մերձակայ դիտականն։ Եւս առաւել լու դառնութեամբ ի վերայ այնորիկ, որ յոգի և մարմին առ հասարակ դիակնանայ։ Եւ եթէ ի վերայ միոյ անձին այսպէս, որչափ ևս առաւել ի վերայ ողջոյն ազգի միոյ։*

3. *Այլ յայսմ տեղւոջ ոչ միայն ի վերայ միոյ ազգի է ողբումն մեր, այլ ի վերայ ազգաց և աշխարհաց. զոր և յառաջ մատուցեալ առացից ըստ կարգի, թէպէտ և ոչ խնդութեան մտօք։ Ահա ակամայ ճառագրեմ զրազումն. որպէս կորեան ոմանք ի ճշմարիտ կենացն իւ-*

բեանց, և պատճառք եղեն բազմաց կորստեանն, ոմանց՝ երեւելեացս միայն, և այլոց՝ երեւելեաց և աներեւութից: Եւ այն, ևս չար է քան զամենայն. դուռն՝ զոր բացին կորստեան, Աստուծոյ միայն կարողութիւն է փակել զնա, այլ ըստ մարդկան սահման՝ ահա անցեալ է հնար :

4. Այս անօրէն Միհրներսեհ, քանզի յառաջագոյն տուեալ գիտէր զամբարշտութիւնն Վասակայ, և յայնմ ժամանակի ևս յղէր և կոչէր զնա առ ինքն: Որպէս նորա իսկ յառաջագոյն զատեալ և որոշեալ էր ի միաբանութենէն Հայոց, եկն և յանդիման եղև[1]. և տուգէր զիւր հաւատարմութիւնն և զՀայոց անիրաւ ապստամբութիւնն: Ցուցեալ և պատմեաց ևս ստուերաբանութեամբ զոր ինչ ոչ էր գործեալ Հայոց, և կամէր ընդանեբար ընդ միտ մտանել անօրինին:

5. Բայց նա թէպէտ և ի ներքոյ յոյժ գուրովէր զնա, այլ արտաքին դիմօք մեծարեաց զնա, և եդ առաջի նորա զմեծամեծ պարգևս երկրաւորս: Եւ խոստացաւ նմա իշխանութիւն աւելի քան զոր ունէրն. և հայեցոյց զնա ի կարծիս մնալ, որ ի վեր էր քան զիւր տէրութիւնն, իբր թէ անկ իցէ նմա հասանել մինչ ի թագաւորական վիճակն. բայց միայն հնարս իրացն խնդրեսցէ, թէ որպէս քակեսցի միաբանութիւն ուխտին Հայոց, և թագաւորին կամքն կատարեսցին յաշխարհին:

6. Եւ իբրև յանձն էառ զամենայն ինչ՝ երթալ զկնի կամաց նորա, գիտաց և ծերն դառնացեալ, եթէ թըմբրեալ և ցնորեալ և քակեալ է ի հաստատութենէ միաբանելոցն, յոյժ մխիթարեցաւ ի միտս իւր տրտմեալս, և ած զմտաւ՝ թէ զամենեսեան այսպէս կարիցեմք որսալ յանդիւտ կորուստն: Եւ իւրոյ հնարագիտութեանն տայր զիմաստութիւնն. և այնմ ոչ էր տեղեակ, թէ նա իւրովի զիւր անձն զատեալ և որոշեալ է ի սուրբ եկեղեցւոյ, հեռացեալ և օտարացեալ ի սիրոյն Քրիստոսի:

7. Քանզի մոռացօնք եղեն նմա զալուստ որդւոյն Աստուծոյ, և ոչ յիշեաց զքարոզութիւն սուրբ առաքելո-

1. «Յանդիման եղև», «տուգէր» և «պատմեաց» բայերն Վասակայ կը պատկանին: Տուգէր՝ է [illegible] հաստատել, ցուցանել, ապացուցանել:

նին, ոչ ի սպառնալեացն զանգիտեաց, և ոչ յաւետիսն մխիթարեցաւ: Ուրացաւ զաւազանն՝ որ յղացաւ զնա, և ոչ յիշեաց զընկալուչ սուրբ Հոգին՝ որ ծնաւ զնա: Անարգեաց զՄարմինն պատուական՝ որով սրբեցաւ, և առ ոտն եհար զԱրիւնն կենդանի՝ որով և քաւեցաւ ի մեղաց: Ջնջեաց զգիր որդէգրութեանն, և իւրովք ձեռօք խորտակեաց զհաստատուն կնիք մասանւոյն[1]: Եւ ի թուոյ երանելեացն, և ապստամբեցոյց ընդ իւր զբազումս :

8. Ձեռն արկ կամակորութեամբ և եմուտ յորդէգրութիւն դիւապաշտութեանն, և եղև ամեն չարին, և ելից զնա սատանայ ամենայն խորամանկութեամբ: Ի ձեռն էառ[2] իբրև զվահան, և ագաւ զնա իբրև զբահ, և եղև իբր զինուոր կատարեալ կամաց նորա: Մարտեաւ հնարիւք ընդ իմաստունս, և յայտ խորագիտութեամբ ընդ գիտունս, յայտնի ընդ անմեղս, և ի ծածուկ ընդ խորհրդականս. ձեռն էարկ և եհան զբազումս ի գնդէն Քրիստոսի, և խառնեաց ի գունդս դիւաց: Եւ ի բազում յայլ անգլս գողաբար սողեցաւ և եմուտ իբրև զօձ ի մէջ ամբարշտաց. և խրամ հատեալ յափշտակեաց և էառ և եհան յայտնութեամբ զբազումս յազատաց և զբազմագոյնս ի շինականաց, և զայլ ումանս յանուանեալ քահանայից :

9. Որոց անուանքն են այս՝ գործակցաց նորա[3]. Իշ-

1. Երկու բան մարթ է հետևցնել այս պարբերութենէս. ա՝ թէ ի հինգերորդ դարուն ալ որդեգրութեան համար գիր մը՝ մուրհակ մը կը շինուէր. բ՝ Ստորագրութեան ամենէն զօրաւոր ձեւն էր մատանիոյ վրայ փորագրեալ կնիք կոխել, ոչ մելանով սակայն, այլ հաւանօրէն մեղրամոմի՝ (խորտակեաց): Իսկ գիր գրելու համար եղէգ գրիչ և թանաք կը գործածուէր. «Եղեգամբ մարդիկ գրին և արձակին յազատութիւն ի չարաչար ծառայութենէ. իսկ դուք աւադիկ երկրաբոյս եղեգամբ աստուածային ձեռամբն անջինջ դեղով գրիք և արձակիք յերկնաւոր ազատութենէն ի սատանայական ծառայութիւնն»: Եղիշէ՝ Զարչարանաց 268:

2. Եղիշէ նախ ամանի կը նմանցնէ զՎասակ, զոր խորամանկութեամբ կը լեցնէ սատանայն. բայց այս նմանութիւնս իւր տաք երևակայութիւնը չըգոհացներ, զսատանայն վահան և զրահ կ՚ընէ, զորս Վասակ ձեռքը կ՚առնէ և կը հագուի:

3. Ասկէ յառաջ ալ տուաւ մեզ Եղիշէ Վասակայ նիզակակցաց անունները (Յ. Գ. 54): Բայց յայնժամ Սիւնեաց և Ակէոյ իշխանները չյիշեց.

*խանն Ռըշտունեաց Արտակ անուն, իշխանն Խորխոռունեաց Գադիշոյ անուն, իշխանն Վահեւունեաց Գիւտ անուն, իշխանն Բագրատունեաց Տիրոց անուն, իշխանն Ապահունեաց Մանէճ անուն, իշխանն Գարեղենից Արտէն անուն, իշխանն Ակէոյ Ընջուղ անուն, իշխանն Ուրծայ Ներսեհ անուն, իշխանն միւս եւ Պալունեաց Վարազշապուհ անուն, սեպուհ մի Ամատունեաց Մանէն ա-*

գուցէ սոքա ի վերջոյ Վասակայ կողմն անցան։

Ռշտունիք՝ յարեւելից հարաւոյ Վանայ ծովու։ — Խորխոռունիք՝ յարեւմտից հիւսիսոյ նոյն ծովու, եւ այժմեան Պուլանըգ վիճակ, (Տեղագիր. ՑԿ)։ Գադիշոյ էր տանուտէր իշխան Խորխոռունեաց. իսկ Վարդանայ նիզակակիցը Խորէն Խորխոռունի նոյն տոհմէն սեպուհ մի ըլլալու էր։

Վահեւունիք՝ ուխտաւորք էին ի Գահնամակն Վռամայ. եւ ըստ Ալիշան Վարդապետի, բնակէին ի ստորին Բասեն, ի մասս Գարեղեանց։

Գարեղեանք. Ինձ ի գահնամակն. բընակէին այժմեան Կաղզմանի վիճակին մէջ, ի մասս Արշարունեաց։ — Փարպեցւոյ տպագրին մէջ իշխանն Արեղենից Արտէն, որ գրչագրի սխալ մի է. գոնէ տարբեր անձ մի չէ Գարեղեան Արտենէ, զոր ըստ նոյն պատմագրի, Ատրորմիզդ խրկեց Հմայեկայ դէմ ի Տայս ընդ Պալունեան Վարազշապհոյ. Փարպ. 216։ Էր եւ Արեղենից նախարարութիւն մի որ Ինչ է ի գահնամակն։ Տես եւ Խորենացի Բ. Է։ Ալիշան Վարդապետ դնէ զԱրեղեանս յելից Սողանլուի եւ ի հարաւոյ Վանանդայ (Շիրակ էջ 6)։

Բագրատունիք. Վռամական գահնամակին մէջ երկրորդ կարգն ունին, Սիւնեաց իշխանէն ետքը եւ Արծրունեաց տանուտերէն յառաջ։ Սոցա սեփական գաւառն էր Սպեր՝ Բարձր Հայոց մէջ. յետոյ Այրարատայ Կոգովիտ գաւառն ալ առին, ուր Դարոյնք կամ Դարօնք (արդի Պայազիտ) գլխաւոր քաղաքն էր։ Տես էջ 50։

Ապահունիք, այժմեան Մէլազկերտ վիճակին մէջ, ի հիւսիսոյ Վանայ ծովու։

Ակէ. այժմեան Մակուայ վիճակը. Պարսից Հայաստանու մէջ, ընդ մէջ Պայազիտոյ եւ Խոյայ։ Ընջուղ, թէպէտ յատուկ անուն՝ նշանակէ՝ փոքր արու հորթ։ Անասնոց անուանք շատ անգամ յատուկ անուն կ'ըլլան մարդոց, մանաւանդ նուազական մանկաւ. զոր օրինակ. Այծեամն, անուն կամ մականուն կնոջ. Առիւծ, Արտոյտ, Եզնիկ կամ Եզնակ. Գոր (պարսկերէն gór, վայրի էշ), Գոզան։ Հաւանական է եւ որ Ակնակ ալ նուազական ըլլայ ակն կամ ակին հասարակ անուան, որ է արու վայրի ոչխար։ Վարազ բառով ալ շատ յատուկ անուններ կազմուած են։

Ուրծեայք. Ալիշան Վ. Շիրակայ տեղագրութեան մէջ կը դնէ զՈւրծ յարեւելեան սահմանածայր նահանգին Այրարատայ, ի մօտից հարաւոյ ծովուն Գեղամայ եւ յելից Շարուրայ դաշտին (էջ 6)։

Պալունիք. երկու ցեղք էին, որոց միոյն իշխանը Վարազշապուհ նիզակակից էր Վասակայ. միւսոյնը Արտակ՝ Վարդանայ։ Միոյն բնակութեան երկիրը Վասպուրականի մէջ էր. տեղը որոշ չգիտեմք. միւսը Տարօնոյ սահմանակից Կուասս եւ Հաշտեան աւաններուն մէջ կը բնակէր։ Տես Պատմութիւն Տարօնոյ եւ Հնախօսութիւն Ինճիճեանի։

նուն. բազում և այլ ազատ մարդիկ, զոր ոստանիկսն անուանեն յարքունի տանէ:

10. Եւ բովանդակ զիւր բոլոր աշխարհն ապստամբեցոյց յուրացութիւն, ոչ միայն ըստ աշխարհին բազմութեանն, այլ և զբազումս յուխտէ եկեղեցւոյն. մանաւանդ սուտ երիցամբքն, որով գործէր զչարիսն. երէց մի Ջանդակ անուն, երէց մի Պետրոս անուն, սարկաւագ մի Սահակ անուն, զորս յղէր առ անմեղ մարդիկ, խաբէր և պատրէր. սուրբ աւետարանաւն երդնուին և ուտէին, եթէ ի թագաւորէն շնորհեսցի ամենեցունց քրիստոնէութիւնդ: Եւ այսպէս խորամանկ խաբէութեամբ հանէին զբազումս ի սուրբ միաբանութենէն, ածէին և խառնէին ի գունդս ուրացողացն[1]:

11. Եւ ժողովեաց զամենայն գայթակղութիւն, և արար գունդ զօրաց բազմաց. գրեաց և եցոյց զբազումս ի Նոյանէ յականէ յանուանէ մեծ հազարապետին, և զիւր քաջութիւն արութեանն, մեծապէս պարծելով որպէս աշակերտեալ ի մոլորութիւն խաբէութեան, և բաժանեալս և երկցեալս երևեցոյց զզօրսն Հայոց:

12. Եւ իբրև այս ամենայն չարիք յաջողեցան նմա, քակեաց և զմիաբանութիւն աշխարհին Վրաց[2] ի Հա-

1. «Վասակ ոչ երբէք դադարէր գրել նամականի առ իշխանս և չինականս և քահանայս աշխարհիս Հայոց. ցուցանէր իւր բերեալս ի դրանէ ուխտս սուտս և վկայութիւնս ընդունայնս, թէ արքայից արքայ զքրիստոնէութիւն շնորհեաց աշխարհի, և զմեծ կոտորածի մոգուցն չխնդրէ, և զապստամբութեանն առէ, թէ ընդ և յիշեմ իսկ ոչ, միայն թէ ի բաց դառնայք ի խրատուէ և ի բանից Վարդանայ... Եւ տուեալ ի ձեռս սուտ քահանայից ըղգրեալսն՝ որոց անուանքն են՝ Ջանդակ մի ոմն, Սահակ Զայնող և միւս ոմն Պետրոս Երկաթի: Եւ էին Սահակն և Պետրոս ի գաւառէն Սիւնեաց, յորոց ձեռս տայր զաղտ ի սպարապետէն Վարդանայ՝ զգրեալսն շրջեցուցանել ընդ աշխարհն Հայոց»․ (փարպ. էջ 197):

2. Վիրք միաբան էին Հայոց հետ, թէ վասն քրիստոնէութեան և թէ որովհետև Գուգարաց մեծ բդեաշխը Աշուշայ, Արծրունեաց տնէն աղջիկ առած էր, որ էր քոյր կնոջն Համայեկայ Մամիկոնէի, եղբօր Վարդանայ: Իսկ Աշուշայ որդին՝ Վազգէն փեսայ էր Վարդանայ ունելով ի կնութիւն զդուստր նորա՝ Վարդենի ի ծնողացն կոչեցեալ և Շուշանիկ յորջորջանօք յետոյ անուանեալ. (Սոփ. Հայկ. Թ): Այս այն Վազգէն է, որ տասն և ութ քան տարի վերջը՝ մոգութիւնը կամովին ընդունելով Պարսից թագաւորին Պերոզի կնոջը մայրը կին առեր էր ու եօթը տարի (468–475) անգթաբար չարչարեր էր զՎարդենի: Աղուանից Հայաստան դեսպան խրկելնին և օգնութիւն խնդրելնին արդէն տեսանք: — Այծնիք ալ

յոց, և Աղուանիցն ու եւ յառաջ խաղալ, և զաշխարհն Աղձնեաց ըստ նմին իսկ օրինակի յեառ կալաւ։ Գրեաց հրովարտակ և աշխարհին Յունաց, ցուցանելով նոցա այլ ընդ այլոյ առութեամբ, առ այր մի՝ որոյ Վասակ անուանէր, յայնց Մամիկոնենից՝ որ կան ի ծառայութեան Յունաց։ Եւ ի թշուառութեան ժամանակին այրն այն սպարապետ էր ստորին Հայոց[1], և հաւատարիմ զօրացն Հռովմոց ի սահմանին Պարսից, և արտաքոյ էր օրինացն Աստուծոյ գործովք իւրովք։ Եգիտ այս Վասակ զայն Վասակն իւր գործակից ի մեծամեծ չարիսն, զոր միաբանեցին երկրքեանն։

13. Գրէր և ցուցանէր հանապազորդ նա, իբր թէ ամենայն Հայք զկնի իւր միաբանեցին. և զնոյն գիր մեծաւ զգուշութեամբ ներքին Վասակն[2] տայր տանել ի թագաւորանիստ քաղաքն կայսեր. մինչև զաւրբ եպիսկոպոսացն զմիտս եւ ուծացոյց ի նոցանէ, և զամենայն զօրսն Յունաց յերկբայս արար յուխտէն։ Մանաւանդ զի ի ձեռն սուտ քահանայիցն պատրէր և խաբէր իբրև ճշմարիտ մարդովք, աւետարան հանդերձ խաչիւ տայր տանել, և զիւր զամենայն ստանայական ստութիւնն նոքօք ծածկէր։ Գնէր զինքն յաստուածպաշտութեան կարգի և զամենայն կողմ ուրացելոցն. առաւել զինքն հաստատէր հաստատուն քան զամենայն զօրսն Հայոց. երդնոյր և հաստատէր, եւ և զամենայն հրամանս թողութեան յարքունուստ ցուցանէր։

14. Այն էին և կամք Յունաց աշխարհին[3], լնուլ զայն ախորժութեամբ. այլ ի ձեռն նորա առաւել եւ ի նոյն

անշուշտ դժգոհ էին ի Պարսից, որովհետև Յազկերտի խրկած մոգերուն մէկ մասը սոցա երկիրը գնացեր էր. (Տես Յ. Բ 82)։

1. Ստորին Հայք՝ արևմտեան հարաւային կողմանքն՝ Ծոփաց և Տիարպէքիրի գաւառներն, որ աւելի ցած և տաք են։

2. Այս է Մամիկոնեանն որ էր ի ծառայութեան Յունաց, որոյ մարզպանին հետ ունեցած բարեկամութիւնը գուցէ ցեղակցին Վարդանայ դէմ նախանձէ և ատելութենէ յառաջ եկած էր։ Մամիկոնեանց Տունը յերկուս մասունս բաժնուեր էր, մին ի բնագաւառն իւրեանց ի Տայս մնացեր էր. միւսն Յունաց բաժնին մէջ անցեր էր։

3. Որովհետև պատերազմ ընելու ոչ փափաք ունէին և ոչ կարողութիւն, և նոյն իսկ Պարսից Հայաստանի մէջ եղած ապստամբութենէ մը դժգոհ էին, վախնալով որ եթէ յաջողին Հայք ազատութիւնին ձեռք անցնելու Յունաց բաժինն ալ կը փրցուէին։

*յեղեալ տապալեցան։ Այնպէս առնէր և ընդ ամենայն կողմանս ամրականաց աշխարհին, ի Տմորիսն և ի Կորդիսն*[1]*, յԱրցախ*[2] *և յԱղուանսն, ի Վիրս և յաշխարհն Խաղտեաց յղէր պնդէր, զի ասպնջականութեան ոք արժանի մի՛ արասցէ։*

1․ Ալիշան Վ․ զՏմորիս և զԿորդուս համանիշ կը համարէ․ Խորենացին ալ իր պատմութեանը մէջ կ՚ըսէ տեղ մը․ «Տմորիք որ այժմ Կորդիք կոչին»։ Բայց Եղիշէ և Բուզանդ (էջ 160) զատ զատ կը յիշեն իբրև առանձին գաւառ։ Մեր հեղինակին ուրիշ տեղ մը (Ց․ Է 11) մերձակից աշխարհին Պարսկաց և Խորենացւոյ ալ Ասորեստանեայց սահմանակից համարելուն թէ նայինք՝ Տմորիք Կորդուաց աշխարհին արևելեան հարաւային գաւառն ըլլալու է, այս է այժմեան Հաքքեարի և Ճուլամերկ․ մինչ Կորդուք, գոնէ հին ժամանակաց մէջ Քիւրտիստանի արդի Պոհթան գաւառն էր։ Վերջապէս՝ մեր պատմութեան մէջ Տմորիք կը յիշուին միշտ իբրև կարգէ դուրս ամուր և անմատչելի գաւառ մի, ուր կ՚ապաւինին թագաւորէն ապստամբող կամ փախչելու պատճառ ունեցող իշխանք և զօրավարք։

2․ Արցախ՝ Սևանայ ծովուն արևմըտակողմը գտնուող լեռնոտ երկիրն է, զոր կ՚ոռոգէ Թարթառ գետ և որ ունէր զայժմեան Այրում գաւառը Գանձակայ և զՉլաբերդ և զԿիւլիստան գաւառս Ղարաբաղի։ Լեռնակոհակ և արդ իսկ անտառախիտ է յոյժ նահանգս։ Չլաբերդի հիւսիսային կողմը կ՚ամբառնայ Ղարաբաղի չափեալ կատարներուն բարձրագոյնը՝ Մուրով լեռան, 11,540 ոտնաչափ։ Այս և սորա մօտ Խոշխարա լերինք ապաւէն եղեն փախստէից ի ժամանակս պատերազմաց անդստին յաւուրց Վարդանանց, որպէս ցուցանեն պատմիչք, և առ Բագրատունեօք և զկնի․ Տես Տեղագիր 174։

Խաղտիք․ «Պայպուրդ կամ Բաբերդ վիճակ Խաղտեաց Հայոց, որոյ քաղաք համանուն գլխաւոր քաղաք էր Հայաքաղդեաց և Արմենոխալիւբք կոչեցեալ ազգի․ արտաքոյ հնդետասան աշխարհացն Հայոց Մեծաց և կայ ի վերայ գետոյն Ճորոխի»․ Տեղագիր 48։ — Իսկ բուն Խաղտիք կը բնակէին, ըստ նկարագրութեան Պրոկոպիոսի, Պարխար լերանց վրայ, որ կը բաժանեն զՊոնտոս ի Հայոց։ Ըստ նախնի յոյն մատենագրաց, Խալիւբք կը տարածուէին մինչև ցԹերմոդոն գետ, և աւելի հին ժամանակաց մէջ մինչև ցԱլիւս։ Խորենացին ալ կ՚ըսէ․ «Ճանիւս Պոնտացւոց, որ են Խաղտիք»։ Ճանիւս անշուշտ է Օտարանեանց Ճանիք կոչածն (յորում և գտանի Քէլքիթ երկիր և գետ Քայլքիթ չայ, որ ոռոգէ զշրջակայս Կիւմիւշխանէի և Շապին Գարահիսարի և ըխի ի Քէլքիթ վիճակէ։ Պրոկոպիոս կ՚ըսէ թէ Խաղտեաց երկիրը անմատոյց լեռներ են, անշէն և անապատ, լի հեղեղատիւք, անտառօք և գահավիժօք և թէ սահմանակից են Յունական և Պարսկական Հայաստանի։ Իւր առենը տակաւին անսանձաբարոյ էին և չունէին բնաւ թագաւոր կամ իշխան։ Զծառս, զթռչունս և զայլ անասունս պաշտէին։ Հողագործութեամբ չէին պարապեր և աւարառութեամբ կ՚ապրէին․ երկիրնին յոյժ անբեր է, ոչ արօտ կը բուսցանէ և ոչ պտղատու ծառ․ մշտատև ձմեռ կը տիրէ անդ․ Տես Anecdota, par Isambert էջ 623–624։ Բայց Եղիշէի ակնարկած ամուր տեղուանքը աւելի դէպ յարևմուտս է, այս է Պարխար լերինք, յորս Խալաքար կամ Վարսամպէկ բարձրանայ իբրև 12.000 ոտն․ տես Ց․ Է 8 ծն․ 1։

15. Եւ ըստ մեծի չարութեան նորա տուեալ են ժամանակն երեք նմա զյաջողութիւն իւրոյն. զի ամենեւին արտաքուստ օգնական ոք ոչ գտաւ գնդին Հայոց, բայց յայնց Հոնաց, որոց բանս եդեալ էր: Սակայն և վասն նոցա կուտեաց զբազում այրուձին Արեաց, արգել և փակեաց զդրունս ելին նոցա. քանզի ոչ տայր դադար ամենեւին Թագաւորին Պարսից, այլ յղէր և կոչէր զունդս բազումս ի պահակն Ճորայ, և զՎրաց աշխարհին բովանդակ գումարէր, զզօրն Լփնաց և զՃղբբայ, և զվատն, զԳաւն և զԳդուարն և զխրսանն և զՀեճմատակն, զփասխն և զփխուքոնան և զամենայն զօրն Թաւասպարանն[1], զլեռնայինն և զդաշտայինն,

1. Կովկասեան լեռնագօտւոյն արեւելեան կողմը յերկուս տաշտ կը բաժանի, յորոց մին՝ հիւսիսայինը կը մերձենայ յայժ Կասպից ծովուն, Դարբանդայ քաղաքին մօտերը, նեղ անցք մը միայն թողլով: Այս անցքս փակելու համար շինուած պարիսպը կ'արգելոյր զՀոնս կամ զՄազքութս դէպ ի հարաւ արշաւելէ: Իսկ հարաւային և հիւսիսային տաշտքին մէջ գտնուող աշխարհին ժողովուրդք լեռնականք կամ դաշտայինք, բնական էր որ Հոնաց թշնամի լինէին, վասն զի նոցա արշաւանքէն առաջին վնասուողները իրենք պիտի ըլլային: Այդ զանազան ժողովուրդքդ, որոց թիւը Եղիշէ տասն և մէկի կը հանէ (Յ. Ը 144), մէկ մէկ ալ թագաւոր ունէին: Սոքա Ճորայ պահակին պահապանքն միանգամայն և Արքայից արքային նիզակակիցքն էին: Բայց որո՞նք են այդ «մետասան թագաւորքն լեռնորդեայք»: Այս հատածիս մէջ արդարև Եղիշէ տասն և մէկ ցեղ կը յիշէ. բայց Լփինք հեռու էին միւսներէն (Տես Յ. Ա 10 ծն. 1): Զասոս ի բաց թողլով և ասոնց տեղ եօթներորդ յեղանակին մէջ յիշուած խիրխիվանը դնելով, կը լրացնեմք Եղիշեայ տուած թիւը: Ճիղըք կը բնակէին ի հարաւային տորոսս Կաւկասու, այժմու Շիրվան կոչեցեալ նահանգին մէջ, և գլխաւոր քաղաք էր նոցա Ցուի, ուր քարոզեց Ս. Գրիգորիս (Տեղագիր 186): Բուզանդայ մէջ ալ կը գտնեմք կովկասային շատ մը ազգաց անուններ, յորոց ոմանք նոյն են Եղիշէիններուն հետ. ոմանք ալ տարբեր. «Յայնժամ ժամանակի թագաւորն Մազքթաց Սանէսան անհնարին նիւթեաց զարամտութիւն ոխութեան ընդ իւրում ազգակցին Խոսրովու արքային Հայոց, և գումարեաց ժողովեաց զամենայն զօրս Հոնաց և Փոխաց, Թաւասպարաց, Հեճմատակաց, Իժմախաց, Գատաց և Գղուարաց, Շղբաց և Ճղբաց և Բաղասճաց և Եգերսուանացն և այլոց խառնաղանճ բազմութեամբ անթիւ անբնակն վաչկատուն զօրութեանց, որում միանգամ ինքն իշխէր զօրացն բազմաց: Եկն անց ըստ իւր սահմանն՝ ընդ գետն մեծ ընդ Կուր, և եկն տարածեցաւ ելից զերկիրն Հայոց աշխարհին»: Յայսցանէ Ճիղբք, Գղուար, Հեճմատակ Թաւասպարան միայն յիշեալ են յԵղիշէէ: Բայց Սանէսանայ դաշնակիցքը միայն պահակին հարաւակողմը և արդի Տաղիստանի մէջ գտնուող ազգերը չէին, այլ ասոնց հետ Կուրայ և Կովկասու մէջտեղը բնակող ուրիշ ժողովուրդներ

և զամենայն ամրակողմն լերանցն[1]: Էր զոր կարասեաւ, մեծաւ պարգևօք և առատաձեռն բաշխելով զգանձն արքունի, և էր զոր հրամանաւ թագաւորին սաստիւ տագնապէր:

16. Զայս ամենայն իբրև արար և կատարեաց ըստ հրամանի թագաւորին, օր ըստ օրէ գրէր և ցուցանէր մեծ հազարապետին Պարսից, որ զօղեալ և թաքուցեալ էր ի քաղաքն փայտակարան: Համարձակեցաւ[2] այնուհետև և նա ցուցանել զինքն բազում ազգաց. էր որոց ահ արկանէր, և էր որոց սիրով պարգևս բաշխէր: Կոչէր առ ինքն զՎասակ, և որք ընդ նմա իշխանքն ամենեքեան. բազում պարգևս բաշխէր նոցա յարքունուստ, և զօրացն՝ որ ի նոցա բանի էին: Տանէր զառաջեաւ և զուրացեալ երիցունսն. ցուցանէր, հաստատէր և յայտ առնէր, եթէ սոքօք որսացայց զնոսա՝ քակել ի միաբան ուխտէն: Իսկ հազարապետն իբրև զայն լսէր, յոյժ շնորհակալ լինէր երկոցունցն[3], և յոյս առաջի դնէր նոցա. Եթէ լիցի մեր յաղթութիւն, զայլոց քահանայից կեանս դոցա շնորհեցից, և զմեծ վաստակ դոցա ցուցից թագաւորին:

17. Եւ այսպէս շարժեաց[4] և շփոթեաց զաշխարհն Հայոց, մինչև զբազում եղբարս հարազատս քակեաց ի միմեանց. ոչ եթող միաբան զհայր և զորդի, և ի մէջ խաղաղութեան արար խռովութիւն:

18. Եւ անդէն իսկ յիւրում աշխարհին եղբօրորդիք երկու էին նորա ի սուրբ ուխտին առաքինութեան. գրեաց և եցոյց վասն նոցա յարքունիս, և էառ իշխա-

ալ կոյրին։ — Դիտելի է թէ այդ երկու պատմագիրդ ալ չեն յիշեր զՂեկա արդի Լէզգիներն, որոց թագաւորը Շերգիր Հայոց դէմ պատերազմի եկեր էր ի Ջիրաւ դաշտի (Խորէն 457)։

Անուններէդ մի քանին ծանօթ են մինչև ցայժմ. այսպէս Թապասէրան, Պուտու, Քուպա, Խիզի՝ Եղիշեայ Թաւասպար, Վատ, Գաւ և Խիրիովանն են։ Ճիղբք այժմեան Ռուշալինները կը կարծուին, որք փոքրիկ ժողովուրդ մի են յարևմտից Թապասէրանի։

1. Այդ երկու ածականներդ Թաւասպարի միայն կը պատկանին. քանզի այժմեան Թապասէրանն եւ բաժանի յերկուս՝ եօխարի՝ վերին և աշաղի՝ ստորին. շարունակութիւն է գաւառին Նարին-Գալայի դէպ յարևմուտս։

2. « Համարձակեցաւ » և « կոչէր » բայերն վերաբերին Միհրներսեհի. իսկ ոմանք Վասակայ։

3. Այս է երկոցունց երիցանց՝ Զանգակ և Պետրոս. Տես ի վերոյ 10։

4. Շարժեաց (Վասակ)։

նութիւն ի վերայ կենաց նոցա, մերժեաց և եհան զնոսա յաշխարհէն, զի մի այլ դարձցին անդրէն[1]: Հալածեաց և փախոյց զամենայն միայնակեացս աշխարհին, որք հայհոյէին զանդարձ ամբարշտութիւն նորա, որ արար և կատարեաց զամենայն չարիսն ընդդէմ ճշմարտութեանն. և զոր ինչ ոչ գիտէին անօրէն հեթանոսքն՝ խնացուցանէր նոցա, և վասն ախտին քրիստոնէութեան, եթէ որպէս հնարիւք կարասցէ բառնալ յաշխարհէն Հայոց:

19. Զայս ամենայն չարիս իբրեւ եւես ի նմա Միհրներսեհ, քան յանձն իւր՝ առաւել ի նա էր յուսացեալ: Հարցանէր և ստուգէր, թէ քանի այր կայ ի Հայոց աշխարհին ի գնդին Վարդանայ ընդ ամենայն բազմութիւնն: Իբրեւ լուաւ ի նմանէ՝ թէ աւելի քան զվաթսուն հազար[2] են, խնդրէր եւս տեղեկութիւն վասն իւրաքանչիւր անձին քաջութեան, և կամ՛ քանի այն որք իցեն՝ որ սպառազէնքն[3] իցեն, և կամ՛ քանի այն որք իցեն՝ որ

1. Անկէ յայտնի կ'երեւի թէ Սասանեանց կառավարութեան ձեւը որքան կեդրոնացեալ էր: Մարզպանաց իշխանութիւնը սեղմեալ էր յայժ նախարարաց և սեպհաց նկատմամբ: Թէպէտ պարսկական քաղաքականութիւնը բացէ ի բաց քրիստոնէութեան դէմ կը կռուէր ու Սասանեանց իշխանութիւնը ի վտանգի էր ի Հայս և Վրաստան ձեռնտուութեամբ և ջանիւք կը յուսային վերահաստատել. թէպէտ Վասակ իւր եղբօրորդւոց նկատմամբ տանուտէրական և կէս մի ալ հայրենական իշխանութեամբ վարուելու իրաւունք պէտք էր ունենալ, այսու ամենայնիւ յարքունուստ հրաման չառած՝ չէր կարող զնոսա աքսորելու: Իսկ եղբօրորդեաց հետ հակառակութեան պատճառը տես Յ. Է. 37. ծն: Սոցա անուանքն են Բաբգէն և Բակուր, որք եւսուն զանձինս ի կողմանս արքունի, ընդ այլ նախարարս:

2. Վաթսուն և վեց հազար, ու եթէ Վասակայ հայ զօրքն ալ միատեղ հաշուեմք հարիւր հազարը կ'անցնէր. ահաւոր զօրութիւն. բայց ինչ կանոնով կը զումարուէր այդքան մարդիկ, ինչպէս կը կերակրուէր: Քանի միլիոն ժողովուրդ կար պարսկական Հայաստանի մէջ, որ այդպիսի մեծ բանակ մը կըրնար պատերազմի խրկել:

3. Հայոց զօրքը երեք տեսակ էին. ա. Սպառազէն՝ որ ձիաւոր էր. ու յազատաց և յաստանկաց կը բաղկանայր. բ. Աղեղնաւոր մերկ առանց զինու, այս է առանց զրահի կամ վերտի, որ հետեւակ էին. գ. Բուն հետեւակք որ միայն վահան մի ունէին պաշտպանութեան համար, ու նիզակ և սուր կը գործածէին: Ի բաց առեալ զփղաց գունդն, որ յատուկ էր Պարսից, հայկական զինուորութիւնը պարսկականին համեմատ կազմուած ըլլալու էր, վասն որոյ յեղանակիս վերջը մանրամասն ծանօթութիւն մը կը դնենք որ բաւական լոյս կու տայ երկուց ազգաց զօրաց տարազից վրայ:

մերկ առանց զինու աղեղնաւորք իցեն. այնպէս և վասն վաճառաւոր հետևակացն:

20. Եւ իբրև լուաւ զԹիւ համարոյ բազմութեանն, առաւել ևս փութացաւ ուսանել՝ թէ քանիք իցեն պարագլուխք քաջ նահատակացն, զի երես ընդ միոյ պատրաստեսցէ առ մի մի ի նոցանէ: Թող զայլ ամենայն, այլ և դրօշից [1] անգամ իւրաքանչիւրոց տեղեկանայր ի նմանէ. և թէ քանի գունդ զզօրսն բաժանիցեն, և որ ոք ի նոցանէ սպարք [2] լինիցին, և որ զօրագլուխ յորմէ կողմանէ յառաջ մնասցէ, և զինչ անուանք՝ իւրաքանչիւր համհարզացն իցեն [3], և քանի փողահարք [4] ի մէջ գնդին ձայնիցեն: Դակի՞շ [5] գործիցեն արդեօք, եթէ արձակ բանակեսցեն. ճակատ առ ճակա՞տ գործիցեն [6], եթէ

1. Դրօշ կամ դրաւշ՝ է պարսկերէն درفش տրաֆշ: Բայց դրօշ հյ. սոսկ պարզուած պաստառ կամ դրօշակ չէր նշանակեր. այլ և ինչպէս տառ՝ մէկ դրօշակի տակ խմբուած զօրք, որ գնդին ստորաբաժանումն էր, որպէս լիվա յՕսմանեանս նշանակէ դրօշակ միանգամայն և brigade. — «բայց ուր լինէր հանդէս ի նշանաւոր տեղիս, գնդի գնդի, դրօշու դրօշու, վաշտուց վաշտուց, յերեւելի տեղեաց՝ մէն մի ըռնաքար առ այր հրամայէին, զի բերցեն ընկեսցեն շեղջ կուտել, զի որչափ լիցի, այնու երեւեսցի նշանակ բազմութեանն» Բուզանդ էջ 15:

2. Պարսկերէն սալար է 1 ծեր, ծերունի. 2 զօրագլուխ, հրամանատար, իշխան առաջնորդ, դատաւոր:

3. Կոստանդնուպոլսոյ և Թէոդոսիոյ տպագիրք՝ ինչպէս և Մխիթարեանց մի քանի գրչագիրք՝ զի՛նչ անուանք՝ իւրաքանչիւր համհարզացն իցեն. որ հասկնալի է և ուղիղ: Չգիտեմք թէ ինչո՞ւ համար Մխիթարեանք ընտրեր և պահեր են՝ իւրաքանչիւր համհարզ անցանիցեն, որ բառ մեզ իմաստ չունի: Այլ ընթերցուած՝ իւրաքանչիւր համհարզարացն իցեն, բռ նոյնպէս անընդունելի է:

4. Արեաց հազարապետը իմանալ կ'ուզէ թէ իւրաքանչիւր գնդին մէջ որքան փողահարք կան. ասկէ պիտի հետեւցնէր անշուշտ թէ հրամանները ինչ արագութեամբ և ապահովութեամբ զօրաց պիտի հաղորդուէին. որով և Հայոց բանակը ինչ տարածանի ընդարձակ համարել պէտք էր:

5. Դակիշ է յարմար դրից վրայ հողով կամ շերտաւորօք ամրացեալ բանակատեղի. camp retranché, retranchements: Պէտք չէ շփոթել զսա պարսկ՝ լաշքար և հայերէն «լաշկար» բառին հետ: Միհրներսեհ կը հարցնէ թէ Հայք բանակնին արձակ դաշտի՞ մէջ կը դնեն, թէ հռովմէական ամրութեան համեմատ, որ քիչ շատ Պարսից և Հայոց մէջ ալ ընդհանրացած էր, զբանակատեղին խրամաւ և ցիցերով կը փակեն:

6. Այս է թէ Հայք ալ Պարսից նըման զօրքը աջակողմեան, ձախակողմեան և միջին գնդերու պիտի բաժնեն, թըշնամւոյն թեւերուն դէմ առ դէմ, թէ միահամուռ և մէկ տեղւոյ վրայէն պիտի յարձակին: Ահաւասիկ օրինակ մի ալ Եղիշէի ռազմային գործոց մէջ ունեցած հմտութեանը, և նկարագրական հանճարոյն. ուժ տասն տողով ցուցուց

համագունդ ընդ մի ակղի դրդիցեն։ Ո՛ ոք ի նոցանէ յերկրայս կայցէ, և կամ ո՛ ոք ի նոցանէ զանձն ի մահ գնելով զուն գործիցէ:

21. Եւ իբրև զայս ամենայն տեղեկացեալ ի նմանէ, կոչէր զամենայն զօրագլխեանն, պատուէր հրամանի տայր ամենեցուն յանդիման նորա, զի խրատու նորա լուիցեն ամենեքեան: Եւ զամենայն զօրսն զօրագլխօքն հանդերձ յանձն առնէր առն միում յաւագացն, որում անուն էր Մուշկան Նիւսալաւուրտ[1]:

22. Եւ ինքն խաղայր անդրէն գնայր յերկիրն արեւելից. և յանդիման եղեալ մեծի թագաւորին, պատմէր զամենայն անցս իրացն, զիւր հնարաւոր խնամութիւնն և զվասակայ խաբեբայ պատրանան հայթայթանացն, որպէս զառաջինն զիւր զամբարշտութիւնն կամեցաւ ծածկել այնու՝ զի քակեալ երկպառակեաց զգունդն Հայոց: Իբրև լուաւ զայս ամենայն թագաւորն ի բերանոյ մեծ հազարապետին, դառնացաւ յանձն իւր, և առէ անսուտ երդմամբ. Եթէ ապրեսցի անօրէնն այն ի մեծ պատերազմէն, մեծաւ անարգանօք տամ՝ ըմպել նմա զբաժակն դառնութեան մահու[2]:

մեզ Հայոց զօրաց տեսակներն, զինուց տարազքը, պատերազմելնուն եղանակը, բանակներուն կազմութիւնը, փողահար գործածելնին և այլն։

1. Հմուտ անձ մ՚ սանսքրիտ արձանագրութիւններով կը մեկնէ զանունդ՝ ներքինապետ։

2. Եղիշէի այն ժամանակի զինուորութեան վրայօք այդ և յետագայ եղանակաց մէջ տուած կարեւոր տեղեկութիւնները աւելի ես լուսաբանելու համար, տարև կը դնենք Սասանեան զօրաց վրայ Ռօլինսընի գրածը, որ օտար աղբիւրներու վրայ հիմնեալ ըլլալով, համաձայն են Եղիշէի նկարագրութեանց։

«Սասանեանց զինուորական դրութիւնը քիչ կը տարբերէր Աքեմենեան նախկին թագաւորաց ատենի դրութենէն. ժամանակը երկու նշանաւոր փոփոխութիւն միայն բերեր էր. պատերազմական կառքը գրեթէ բոլորովին երեսէ ընկած էր և փղաց գործածութիւնը բաւացեր էր առաջին կարգի կարեւորութիւն մը։ Չորս գլխաւոր զէնքէ կամ զօրութենէ կը կազմուէր Սասանեան բանակն՝ փիղք, Այրուձի, Աղեղնաւորք և հասարակ Հետեւակք։ Սոցա առաջինը կը համարուէր փղաց գունդը։ Գազանքս ինչպէս և փղապետքն ի Հնդկաստանէ կը բերուէին, և թէպէտ երբէք յոյժ բազմաթիւ չէին, բայց և այնպէս կարգէ դուրս յարգ կ'ընծայուէր նոցա. և Արաբացւոց դէմ եղած առաջին պատերազմաց մէջ յաղթութիւնը գլխաւորաբար սոցա միջոցաւ ձեռք ձգուած կը կարծուէր։ Անշուշտ այդ գունդք մեծ գործ կը տեսնէր արձակ և տափարակ տեղւոյ մէջ. բայց փղաց տրուած կարեւորութիւնը այն տաղեանի էր, որ որքան երկիրը խորդուբորդ, լեռնային ու

անտառախիտ ըլլար, զասոր բանակին հետ պիտի քալեցնէին, և մինչև անգամ մանաւոր խնամք հանապարհներ պիտի բանային, որպէս զի կարենան անցնիլ։

« Կ'երևի թէ Սասանեանք՝ միայն ծանր հեծելագունդ ունեցած են. որովհետև ան մը յիշատակութիւն չկայ այն թեթև այրուձիոյ, որք նախկին Պարսից և Պարթևաց ժամանակ արշաւող կամ նահանջող թշնամի բանակաց բոլորտիքը ամպի նման պատելով անթիւ բազմութեամբ և արագ արագ շարժուածօք շարաշար կը ըլլէին զնոսա եթէ զօրութեամբ յառաջ գային, և ընաջինջ ատակումն կը սպառնային եթէ քիչ մը ձախողակ պարագայից մէջ տեսնէին զնոսա։ Յուլիանոսը հալածող պարսկական բանակը սպառնաղէն այրուձիէ, աղեղնաւորներէ ու փղերէ կը բաղկանայր ու այդ աղետալի նահանջին առեն, Շապհոյ դաշնակիցք Սարակինոսք միայն կը յիշուին իբրև թեթև հեծեալք։ Այդպիսի այրուձիոյ երբ Պարսիկք պէտք ունենային, առնցմէ կը ժողովէին կամ ի Կադուշաց (Cadusiens) որք բնակէին յարևմտեան հարաւոյ Կասպից ծովու։ Բայց բուն Սասանեան հեծելագունդը ամբողջապէս սպառազէն էր, որոյ օրինակն և պատկերն ունիմք յորմաքանդակին Խոսրովայ երկրորդի ի Թակ-Թի-Պոստան։ Ձիոց գլուխը, պարանոցը և լանջքը թանձր զրահիւք պահպանեալ էին. ու հեծեալը վերը կը հագնէր, որ մինչև ցգխոյքն ամբողջ կը ծածկէր. և ամուր դիմակաւոր սաղաւարտ մը աչքերէն զատ բոլոր գլուխը կը գոցէր։ Ձախ ձեռքը կը կրէր բոլորշի պղտի վահան մի ու զէնքերն էին սուսեր մկունդ, սուսեր, աղեղ և նետք, ու կրնար անվեհեր զարնուիլ լուսաղոյն հռովմայեցի զինուորին հետ։ Սասանեան այրուձին շատ անգամ յաջողութեամբ յարձակեր էր լեգէոնաց հետևակազօրուն վրայ ու վաներ էր զայն։ Խաղաղութեան ժամանակ արքունի հեծելայն աւելի պարզ կազմած ունէին։

« Հետևակազօրուն ամենէն մարդիկ և ընտիր մաս էին Աղեղնաւորքն, որ և հասարակ հետիոտն զինուորէն շատ աւելի բարձր թոշակ կ'ընդունէին։ Սանաւոր եղանակաւ հրահանգեալ էին նետաձգութեան մէջ և ի նպատակէն քիչ անգամ կը վրիպէին։ Այն աղեղին ողորահիւս վահաններն, զորս Աքեմենեան Պարսիկք յԱսորեստանեայց առնելով մտուցեր էին, գործածական էին միշտ։ Այս վահաններէս կարգ մը կը զետեղէին գետնոյ վրայ ու կռնկէն իբրև յորմնածերպից կ'արձակէին զնետս, որ սոսկալի վնաս կը հասուցանէր թշնամւոյն. այնպէս որ լեգէոնք հաւասար զինուք կռուելու համար կ'սպասէին ընդհանրապէս, որ աղեղնաւորաց նետն բապառի (1)։ Երբեմն ալ աղեղնաւորք փոխանակ այդպէս հակառ կազմելու բապառազէն ձիաւորաց մէջ տեղուանքը կը կենային, ընդ որս զուգընթաց քայլելու դժուարութիւն չէին զգար ու սաստիկ տագնապ կը պատճառէին թշնամւոյն առանց ինքեանք մեծ վնաս կրելու, որովհետև լեգէոնք քիչ անգամ կը խիզախէին Սասանեան այրուձիոյն դէմ։ Նահանջելու ստիպուած առենին ալ յետս ընդդէմ կ'արձակէին փախչելով, և Հռովմայեցոց մէջ առակ եղած էր ըսել թէ « մանաւանդ այն ատեն ահարկու են »։

« Հասարակ հետևակազօրք սուսեր, գեղարդն գուցէ և նիզակ (2) ունէին, և սովորաբար աղեղնաւորաց կռնակը կը կենար. թէպէտև այս վերջինքս հետևակաց առջևից մէջ կը քաշուէին, երբ

(1) Ասպարաց այս եղանակ գործածութիւնը հայոց մէջ ալ կար ի ժամանակս ինքնիշխանութեան. Տես Բուզանդ 201։

(2) Նիզակ է գեղարդն փոքր, որպէս թէ նետ ձեռամբ ձգելի. գղ. javelot։

երկու թշնամի բանակք իրարու խառնուելու սկսէին։ Չեռնեակազօրը գրեթէ անզրահ է, բայց և այնպէս պընդութեամբ և արիութեամբ կը կռուէր, և ընդհանրապէս լեգէոնականաց հաւասար քաջամարտիկ և բազում այլոց ազգաց զօրաց գերիվերոյ կընար համարուիլ։ Այդ չորս տեսակ զինուց ներքին կազմութեան վրայօք քիչ տեղեկութիւն ունինք։ Հռովմէական լեգէոնին կամ արդի régimentի համապատասխանող բաժանում մը հաւանական է թէ չըկար. բայց կարելի ալ չէ ենթադրել թէ այդպիսի գնդեր բնաւ եղած չըլլան։ Մէկ գնդի վրայ միայն որոշ տեղեկութիւն ունինք, այս է «Անմահից» կամ «Մատենի» գունդն, որ այրուձիոյն մէկ մասն էր և 10.000 ձիաւորէ կը բաղկանայր, վասն որոյ և արդի եւրոպական գնդի կազմութիւնը չունէր (1)։ Գուցէ իւրաքանչիւր նախարար իւր գաւառին զօրաց հրամանատարն էր (2). բայց սպարապետը յարքունուստ կ'ընտրուէր, ինչպէս և հաւանօրէն միւս զօրագլուխք. ուստի և նախարարք սոցա հրամանին ներքև գնդապետի պաշտօն վարելու էին։

«Ազգային մեծ դրօշն էր հռչակաւոր Մաշկեայ գոգնոցն Քավաի, որ ի սկըզբան սոսկ երկաթագործ մի էր և յետոյ Հռուդենայ սպարապետն եղած էր. վասն որոյ և Տրաւշի Քավան կամ տրաֆշի Քավիեան կը կոչուէր։ Սա 18 ոտնաչափ երկայնութիւն և 12 լայնք ունէր։ Շատ հին ատեններն անպաճոյճ էր, բայց աւելի վերջերս պատուական ակամբ զարդարուած։ Այդ արքայական դրօշդ միայն մեծամեծ վտանգաց մէջ պատերազմի կը տանէին. ու անոր տեղը աւելի սովորական դրօշներ կամ նշաններ կը գործածէին. որք աւերակաց վրայի քանդակաց նայելով երկու տեսակ էին։ Սոցա իւրաքանչիւրն ալ կը բաղկանայր ձողէ մը, որոյ վերի մասին վրայ խաչաձև ցուպ մը հաստատուած էր. բայց մէկ տեսակին խաչաձևը կը կրէր շրջանակ մը, որոյ առանցքէն ցուպ մը կ'անցնէր, յորմէ առուեալ երկու ծոպք կախեալ էին. իսկ միւս տեսակին խաչաձևին վրայի դին երեք ակօսաւոր գնտակք զետեղեալ էին սոցա ստորև փոխանակ փնջից երկու համանման ուրիշ գնդակներ։ Դժուարին է սակայն թէ ինչ կը նշանակէին այդ նշանները և թէ երկու տեսակ լինելուն պատճառն ինչ էր։ Պատերազմի տարուած նշանաց բազմաթիւ լինելն անկէ ալ կը հետևի, որ անգամ մը պարսկական բանակ մը թէպէտ բոլորովին յաղթուած չէր, թըշնամւոյն ձեռքը յայացանէ քան և ուժ հաս թողուցեր էր։ Աքեմենեան ժամանակ Պարսից դրօշը կամ նշանն արծիւ էր. (Տես Քսենոփոնի Կիւրամարդ, Է 1, 2 և Եսքիղեսի՝ «Պարսիկք» Տող 205–210)։

«Սասանեան ռազմակարգը (tactique) նշանաւորութիւն մի չունէր. բանակաց զօրութիւնն երկաունէն վաթսուն հազար էր. թէպէտ երբեմն հարիւր հազար և անգամ մի ևս՝ Խոսրով Առաջնոյ ատենը 140.000 զօրական եղած էր։ Զօրաց մեծագոյն մասը հետևոտ էր. հեծելազունդը ամբողջին մէկ երրորդէն աւելի եղած ըլլալու չէր երբեք։ Ասպատակի համար երբեմն միայն այրուձի, բայց երբ երկրի մը տիրել պէտք ըլլար, զինուց ամէն տեսակները միանգամայն կը գործածէին. այսինքն հեծելազունդ, հետեւակ, փիղք և մեքենայք։ Հռովմայեցւոց դէմ յարձակմանց մէջ բերդաքաղաք պաշարելու հարկը անհրաժեշտ էր. և թէպէտ ի սկզբան քիչ ճարտարութիւն ցուցուցեր էին Սասանեանք պաշարման արհեստին մէջ, բայց հետզհետէ պէտք եղած միջոցներն և գործիները ձեռք ձգելով, չափաւոր ժամանակի մէջ կը տիրանային ամրապարիսպ քաղա-

(1) Հերոդոտ գ. Է. 83։

(2) Նոյն Է. 26։

քաց. զարմանալի է որ վերջի տասնները Մարաթինի, Ամիդայ, Եդեսիոյ, Թէոդոսուպոլսոյ, Անտիոքայ, Երուսաղէմայ, Աղեքսանդրիոյ պէս ամուր քաղաքներ քիչ դժուարութեամբ առնուեցան։ Պաշարման ձեւն ալ այս էր. պարըսպէն չափաւոր հեռաւորութեամբ կը սկսէին ական հատանել ու ցանկերու հովանաւորութեամբ կը յառաջանային մինչեւ ցխրամն պարսպին, զոր կը լեցնէին հողով և որցակօք. յետոյ սանդղօք վերելակելու կ'աշխատէին, կամ շարժուն աշտարակներ մերձեցնելով որմոյն՝ կը բաղխէին զայն խոյովք կամ բաբանօք մինչեւ որ պատառուած մը բացուէր։ Երբեմն ալ հողէ բլրակներ կը ձեւացընէին ու սոցա կատարէն կը ծեծէին պարսպաց վերի կողմերը, որ համեմատաբար աւելի տկար էր, կամ սան դուղք կը նետէին։ Ու եթէ քաղաքը դարձեալ չառնուէր, կը շրջապատէին զայն, հաղորդակցութիւնքը, ջուրը և ուտեստեղէնը կը կտրէին, այնպէս որ եթէ օտար բանակ մը օգնութեան չհասնէր պաշարելոց, ապահով կրնային ըլլալ սովով տիրելու քաղաքին։



# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

## ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ԱՐԵՒԵԼԵԱՑՑ

1. *Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. և այնպէս աներկիւղս առնէ զմարդիկ, իբրև զանմարմինս զօրս հրեշտակաց. որպէս անդստին ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում անգամ ի բազում տեղիս: Մարդիկ, որ սիրովն Աստուծոյ իբրև զինու վառեալք էին, ոչ ինչ խնայեցին զանգիտելով, իբրև անարի գոլով վատասիրաք, կամ ի մահ անձանց, կամ յափշտակութիւն ընչից կամ ի խողխողումն սիրելեաց, կամ ի գերութիւն ընտանեաց, ելանել ի հայրենի երկրէն և անկանել ի ստրկութիւն յօտարութեան. առ ոչինչ համարեցան զայս ամենայն անցս չարչարանացն. այլ միայն միաբան կալ ընդ Աստուծոյ, զի ի նմանէ միայն մի՛ գերի ելցեն, և ամենայն երկրի մեծութեամբ զնա բաւական համարեցան՝ ընտրեալ ի միտս իւրեանց: Եւ զուրացութիւնն մեռելութիւն վարկանէին, և զմահ վասն Աստուծոյ՝ անանց կենդանութիւն և ծառայել յերկրի՝ ազատութիւն կենաց իւրեանց, և ընկենուլ զանձինս յօտարութիւն՝ ընդ Աստուծոյ գիտէին: Որպէս յայսմ ժամանակի տեսաք աչօք մերովք, զի զնոյն նահատակութիւն նահատակեցաւ և աշխարհս Հայոց:*

2. *Քանզի իբրև եսես մեծն Վարդան զերկպառակութիւն աշխարհին իւրոյ, ոչ ինչ թերահաւատութեամբ զանգիտեաց: Թէպէտ և ստուգեալ գիտաց զբազմաց այլոց ևս զերկմտութիւն, որ դեռ ևս ընդ նմա միաբանեալք էին, քաջալերեցաւ յանձն իւր և քաջալերեաց զզօրսն իւր. քանզի ինքն իսկ դեռ բնացեալ ունէր*

զԹագաւորանիստ տեղին[1] միաբանութեամբ նախարարացն, որ ոչ քակեցան ի սուրբ ուխտէն։ Հրաման տըւեալ ամենայն զօրացն ժողովել յԱրտաշատ[2] քաղաք, փոխանակ յետս կացելոցն՝ որ եղին զհետ իշխանին Սիւնեաց, զեղբարս կամ զորդիս կամ զեղբարցն որդիս ի տեղի նոցա մատուցանէր, և զիւրաքանչիւր զօրս տան նոցա. զի դեռ ևս ինքն ունէր զամենայն աշխարհն[3]։

3. Եւ փութով ամենեքեան ի տեղի պատերազմին[4] եկեալ հասանէին իւրաքանչիւր զօրօք և ամենայն պատրաստութեամբ, նոքա և որ բունքն հաստատուն կացեալ էին ի տեղւոջն, Ներշապուհ Արծրունի, և Խորէն Խորխոռունի[5], և ինքն սպարապետն, և Արտակ Պալու-

1. Իմանալու է այն քաղաքները, բերդերը և ամրոցները զորս ինքնիշխանութեան ատեն հայ թագաւորք կը բըռնէին. և որոց մէջ Սասանեանք պարսիկ զօրք կը բնակեցնէին. ասոնք իւրեանց դրից և ամրութեանց պատճառաւ երկրին դռները կամ բանալիքը կրնային համարիլ. և թէպէտ Վասակ՝ Վարդանայ բացակայութեան միջոցին՝ զոմանս յայսցանէ զարկեր, աւերեր ու այրեր էր. բայց ի հասնելն սպարապետին, թողուցեր ու քաշուեր էր իւր երկիրը։

2. Այդ հրամանը տուաւ Վարդան յամսեանն Ապրիլի 451։

3. «Եւ կատարեալ զաւուրս ձմերային ցրտաշունչ օդոցն, և հասեալ ի տօն մեծ Զատկին բովանդակ ուխտապահքն, և ամենայն աշխարհի եղև խընդութիւն... և յետ սակաւ ինչ աւուրց անցելոց լուան թէ զօր եհաս բազում ի Հեր և ի Զարևանդ գաւառ։ Սպարապետն ազգ առնէր ուխտապահացն, որք յաղագս տօնի աւուրցն երթեալք էին ի տունս իւրեանց՝ կատարել զտօնն զատկի առ ընտանիս իւրեանց, եթէ գունդ բազում հասեալ գայ՝ բերելով պսակս երկնաւորս. արդ որ ոք ցանկայ առնուլ անճապարեցէք.... և եթէ ոք խորհի այլ ազգ ինչ, դադարեալ հանգիցէ ուր և թուեսցի հաճոյ ումեք»։ Փարպ։

4. Այս է յԱրտազ։ — Իսկ՝ որ բունքն հաստատուն կացեալ էին ի տեղւոջն. իմա՛ զգունդն առաջին զոր տուեր էին Թըմրոսեան Ներշապհոյ Արծրունեաց իշխանին, և զոր պահապան կարգեր էին մերձ ի սահմանս Ատրպատականի։ Եղիշէ կ'իմացնէ մեզ թէ այդ իշխանը իւր զօրօքն արդէն յԱրտազ էր։

5. Տես Յ. Գ., 9. ծն. 3. Գիտելի է թէ Եղիշէ թէպէտև տոհմից դասակարգութեան համեմատ զԽորէն Արծրունեաց իշխանէն անմիջապէս ետքը ու սպարապետէն առաջ կը յիշէ, բայց Խորէն՝ Խորխոռունեաց տէրը չէր. այլ հաւանօրէն աւագ սեպուհ մը։

Արտակ տանուտէր էր Պալունեաց մէկ ցեղին ի Մոկաց գաւառ (Յ. Գ. 9 ծն 3)։

Վահան էր տանուտէր Ամատունեաց. և Վարդանայ ամենէն գործունեայ նիզակակիցը։ Սա էր աշակերտ Մեսրոպայ և երբեմն հազարապետ Հայոց. և Դենշապուհ զսա պաշտօնէն ձգելով, տեղը պարսիկ մը դրած էր (Եր. 217. ծն 1. Յ. Գ 64 ծն 2)։ Սորա հազարապետութեան ատենը վախճանած էր Մեսրոպ, և Վահան սրբոյն մարմինը «տարաւ յիւր գեօղն որ անուանեալ կոչի

*նի, և վահան Ամատունի, և գունդն վահեւունեաց, և Թաթուլ Դիմաքսեան, և Արշաւիր Արշարունի, և Շմա-*

Օշական և յոյժ մեծարանօք զդին երանելւոյն կազմեալ, տօն յիշատակի առնեն ամենափոյթ պատուով ամենայն բազմութիւնքն ժողովրդոցն Այրարատոյ» (փարպ. 105–106)։ — Կրօնական եռանդին չափ «մթերքն առաջին ոխութեան» կը դրդէին զՎահան ընդդէմ Վասակայ (փարպ. 173) և այդ հակառակութիւնք աւելի սաստկացեր էր Վասակայ քսութեամբ և նենգութեամբն՝ հազարապետութեան պաշտօնէն իջնալէն ի վեր։

Վահեւունեաց տանուտէրը Գիւտ որ Արտաշատայ ժողովոյն ներկայ գտնուեր էր՝ այժմ ուրացելոց կողմն էր։

Եղիշէ ուրիշ տեղ մը «Թաթուլ Վանանդեցի» կ'ըսէ. (Յ. Զ. 5)։ Փարպեցին՝ «Թաթուլ տէրն Վանանդայ» (210) և երկու տեղ ալ՝ «Թաթուլ Դիմաքսեան»։ Երկու հեղինակները բաղդատելով մեզ կ'երևի թէ այս մէկ անձ մի է և թէ Դիմաքսեններէն գոնեա մէկ ճիւղին բնակութեան տեղը Վանանդ էր։

Ըստ Փարպեցւոյ է և «Հմայեակ Տէրն Դիմաքսենից», բայց սորա իշխանութեան վայրն ուր ըլլալն չգիտեմք։ Այս տոհմէն ուրիշ նիզակակից մ'ալ կը յիշուի՝ Գազրիկ, որ սեպուհ մի ըլլալու էր։ Ըստ Գահնամակին Վռամայ, Դիմաքսեանք երեք ցեղք էին. ԼԴ Դիմաքսեան. ԼԵ Բուխս Դիմաքսեան. ԿԷ. Միրակա Դիմաքսեան։

Արշաւիր Կամսարական՝ փեսայ Վարդանայ (փրպ. 190) և տանուտէր Արշարունեաց ցեղին, որ Մամիկոնեան տան պէս կարիճ զօրավարներ կու տար Հայաստանի։ Արշարունեաց տուած էր Տրդատ զմեծ Դաստակերտն Արտաշիսի ԲԻ՝ զԴրասխանակերտ հանդերձ Շիրակաւ և զքաղաքն Երուանդայ (զԵրուանդաշատ, որ եղև Ոստան Արշարունեաց) հանդերձ գաւառաւն որ կոչի Երասխաձոր. Տես Խորեն. Բ. Դ. Արշաւրի քաջութիւնը արդէն տեսանք Աղուանից պատերազմին մէջ. Յ. Գ. 59։

Շմաւոն՝ տանուտէր Անձաւացեաց. Տես Յ. Բ. 26. ծն։

Գնթունիք՝ քանանացի հին գաղթականութիւն մի էին. (Խորեն. Ա. ԺԹ)։ Բնակութեան տեղերնին Գեղամայ ծովուն քովերը կը կարծուի։

Ատոմն է այն իշխանն՝ որ Հայոց կողմանէ նամակ մի տարաւ առ Թէոդոս կայսր (Յ. Գ. 46)։ Տանուտէր էր Գնթունեաց (փարպ. 126), որոց բնակութեան վայրն էր Տուրուբերանի Աղիովիտ գաւառը։ (Հնախօս)։

Խորով սեպուհ մի էր. որովհետև Գաբեղեններից իշխանը Արտէն Վասակայ հետ էր զօրօք իւրովք (Յ. Գ. 54)։ Գաբեղեանց բնակութեան տեղին էր Գազզըմաճ (Տեղ. 43)։

Սահառունիք Խեդ կարգն ունին ի Գահնամակն Վռամայ։ Սոցա բնակութեան վայրն կ'երևի լինել Շիրակայ Մրէն քաղաքը (Տես Ալիշան Վ. Շիրակ 137), որոյ երէցն Խորէն ներկայ էր Արտաշատայ ժողովոյն։ Մրէն որ այժմ կոչի Գարապաղ, լի է հոյակապ աւերակօք. պայծառացու սա յոյժ յէ դարու. բայց Եղիշէայ ժամանակն ալ կարևոր քաղաք կամ աւան մի եղած կ'երևի։

Ի մօտից Բերկրոյ և ի հարաւոյ Պայազիտու է հին երկիր Քաջբերունեաց և Արճիշահովիտ գաւառ, զոր արդ Քուրդք ունին։ Արճէշ քաղաքաւանն անուանի ի բերան գետակի համանուան յեզր պարանոցաձև ծովուն Վանայ, գրուեալ է ի ջուրցն մեծաւ մասամբ, վասն որոյ և լքեալ ի բնակչաց։ Տեղ. 89։

Մանդակունիք բնակէին հաւանօրէն Հայք և Տարօն գաւառաց կողմերը. Հնախօս։

*ուն Մնձաւայի, և Ցաճատ Գնթունի, և Աստմ Գնունի, և Խոսրով Գաբեղեան, և Կարէն Սահառունի, և Հմայեակ Դիմաքսեան, և միւս եւս այլ Գազրիկ Դիմաքսեան, և*

Արուեն Ընձայացի կամ Ընծայինն. Անձահից ձոր, Անձախաձոր ուր ուրեք և Ընծայից կամ Ընծահից ձոր, է այժմեան Քոդուր վիճակին, և սորա աւանն Քոդուր՝ է բերդն Կոտորոյ առ համանուն գետով. Տեղ. 103։

Ոլկունեաց ցեղին երկիրն էր Տարօն գաւառը. բայց Մամգուն ապաստանելով զնահապետն Ոլկունեաց զՈղուկ, որ ապստամբեր էր ի Տրդատայ, ի պարգև ունեցաւ նորա երկիրը, ինչպէս որ խոստացեր էր նմա Տրդատ։ Սոցա ամուր բերդն էր Ողականն որ մինչև ցարդ կոչի Ոլկունի բերդ. (Տես Յ. Գ. 39 ծն 2)։ Վռամայ գահնամակին մէջ Ոլկունիք տակաւին ԽԸ գահն ունին. բայց ո՞ւր կը բնակէին՝ չգիտեմք։ Այրուկ՝ նըշանակէ թզուկ։

Հիւսիսակողմն Աղեքսանդրօփօլ գաւառի, ի հարաւոյ Լալվար լերանց՝ է վիճակն Լօռի, ի հին Տաշիրս ոռոգեալ յարևմտեան կամ ի սկզբնաւոր վտակաց Տեպետայ (Ձորագետոյն) որք են Ջէնկիլէրու և Ճիլկա։ Բերդաքաղաքն Լօռի կամ Լօռէ, պատեալ ի Ճիլկայ և ի Ճէնկիլէր գետոց և հզօր պարսպօք, որոց միջավայրն աւերակ է ամայի. Տեղ. 125։

Շահռապետն արքունի. այլ ընթերցուած՝ Շախռշապետն կամ Շահախռապետն։ Այժմ համօրէն տպագիրք գնեն՝ Շահ՝ խռապետն. և կը մեկնուի՝ Շահ՝ յատուկ անուն և խռապետ՝ կուրապաղատ, իշխան յարքունիս, փոխանորդ արքային. գուցէ պարսկերէն խօռ բառէն կազմեալ, որ թարգմանի պալատ, արքունի տուն։ Սակայն եթէ այդպիսի պաշտօնեայ մը ըլլար, գահնամակաց մէջ նշանակուած պէտք էր ըլլալ։ Արդ Խոսրովայ գահնամակին մէջ կը տեսնեմք Շահռապետք. վասն որոյ ուղիղ չերևիր մեզ բաժանել զանուանդ յերկուս։ — Բայց ինչ էր շահռապետին պաշտօնը. հաւանօրէն շահր և պետ բառերու բարդութիւն մի է և կը նշանակէ «քաղաքապետ»։ Եւ թէպէտ նոյն գահնամակին մէջ կը տեսնեմք և առանձինն «քաղաքապետք». այսու ամենայնիւ մարթ է կարծել թէ Շահռապետն արքունի թագաւորանիստ քաղաքին իշխանն էր և նոյն ընդ քաղաքապետին արքունի. իսկ Վռամայ գահնամակին «քաղաքապետքն» միւս մեծամեծ քաղաքաց իշխանք էին։

Սրուանձտեայք, Բողեանք, յիշուած են Մեծին Խոսրովայ գահնամակին մէջ. նոյնպէս և Աստրպատունիք որ նոյն ըլլալու են ընդ Տրպատունիս. Աստրպատ նշանակէ կրակապետ կամ քուրմ կրակի։ Քրիստոնէութեան ատեն այդ անունդ ականջաց գէշ հնչելուն համար կրճատուած ըլլալու էր ի Տրպատ։ Աստրպատունիք՝ Շահխաթունեանի ցուցակին մէջ՝ Ակէացոց, Անձևացեաց, Գողթնեցւոց հետ կը յիշուին, և 100 զինուոր կրնային տալ։ Աստրպատականի սահմանակից ըլլալու էին։

Ակէ և Արտազ, ի հնումն երկու գաւառք. այժմեան Մակուայ վիճակին մէջ կ'իյնան։ Եւ Շաւարշան դաշտ և քաղաք էր գլխաւոր, ուր հովանոցք և զօրանիստ թագաւորացն Հայոց և ապարանք Սանատրկոյ, թերևս ի նոյն իսկ ի սահմանս Մակուայ. Տեղ. 102։

Ուշտունեաց զօրաց միայն մէկ մասը. տանուտէրն Արտակ Նիզակակից էր Վասակայ։

Գործակալքն արքունի. այս է վերակացուք արքունի ագարակաց և գաւառաց, որք և էին սաղարք ոստանիկ զօրաց։

Ներսեհ Քաջբերունի. և փառաւոր Մանդակունի, և Արսէն Ընծայացի, և Այրուկ Սլկունի, և Վրէն Տաշրացի, և Ապրսամ Արծրունեաց, և Շահտապետն արքունի, և խուռն Սրուանձտեաց և Բողեանքն և Ակէացիքն և Տրպատունիքն և զօրքն Ռըշտունեաց և ամենայն գործակալքն արքունի իւրաքանչիւր զօրօքն հանդերձ:

451 ապրիլ վերջերը
4. Սոքա ամենեքեան համագունդք հասանէին ի գործ պատերազմին ի դաշտն Արտազու[1], և լինէր հանդէս

1. Փարպեցին կ'ըսէ թէ Վարդանայ զօրքը Զատկական տօնը իրենց բնակարաններուն քով կատարելու համար երթեալ էին ի տունս իւրեանց: Վարդան լուր երկեց նոցա, որ տօնը կատարեն ու անհապաղ իր հետը երթալու Պարսից դէմ, որք հասեր էին ի Հեր և ի Զարեւանդ: Հայք նախընտրեցին գործադրել զօրավարին հրամանը. յայնժամ Վարդան միաբանութեամբ աւագանւոյն երկեց զսեպուհն Առանձար 300 հեծելովք լրտեսելու զբանակն Պարսից. սա եկաւ տեսաւ զթշնամի բանակն և անոր հզօր վերջապահ թեւոյն վրայ յիշելով «զբազումս հանէր ի սուր և զայլս փախստական արարեալ արկանէր ի զօրն Պարսից, և ինքն դարձեալ ողջանդամ հասանէր ի գունդն Հայոց»: Վարդան փութաց ժամ յառաջ հանել ի Հեր և ի Զարեւանդ գաւառ, ու զարնուել Պարսից հետ անդ ի սահմանագլուխն, որպէս զի ինչ որ ալ ըլլայ պատերազմին ելքը — յաղթութիւն կամ պարտութիւն — Հայոց աշխարհը սպառնութեանց և յարձակմանց ապահով չըլլայ: Բայց Պարսից գունդն առաւել սրտեկելով կը քալէր ու արդէն հասեր էին ի գաւառն Արտազ «հուպ ի գետոյն որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին, զոր ընտրեցին յաղագս երկիւղի զօրացն Հայոց. ամուր ապաստանի անձանց համարէին պատուհաս, և ի միջի նորա անել զակիշ բանակէին»: Իսկ ինքն Վարդան յունիսի 1ին, Պենտեկոստէի օրը հասաւ անդ և Պարսից մօտ բանակեցաւ:

Փարպեցւոյ տուած այդ տեղեկութիւնքդ յոյժ համառօտ և անբաւական կը թուին մեզ: Արտաշատէն ցՀեր և Զարեւանդ՝ այս է արդի Խոյ, ուղիղ գծով 150 քիլոմեդրի չափ է. արդ դժուարին է հաւատալ, որ Վարդան, որ տակաւին Արտաշատայ մէջ կամ մօտերը կը գտնուէր, այնքան հեռու երկէր զԱռանձար, միայն 300 հոգւով և սա ալ թշնամի հզօր թեւոյ մը հետ զարնուէր: Մնաց որ զատկական տօնէն անմիջապէս ետքը ճամբայ ելլել հրամայեր էր զօրացը ու ամէնքն ալ հնազանդեր էին պատուէրին. ինչպէս կ'ըլլայ ուրեմն որ մէկ ու կէս ամիս դնէ գալու համար յԱրտազ, որ աւելի մօտ էր քան զՀեր և ուրանոր առ առաւելն չորս հինգ օրուան մէջ կրնար ժամանել:

Եղիշէայ պատմածը, ինչպէս և զինուորական շարժմանց և գործոց նկատմամբ ամէն բաները, շատ աւելի մանրամասն և լուրջ է. բայց որովհետև երկայն ճառերով կ'ընդմիջէ զայն, որ ընթերցողին ուշադրութիւնը կրնան ցրուել, ասոր կ'ամփոփենք, աւելցունելով միայն այն թուականները և աշխարհագրական տեղեկութիւնները զորս տայ մեզ Փարպեցին:

Կը յիշէ ընթերցողը որ առաջի տարին Հայք՝ զօրքը յերիս գունդս բաժանեցին. Վարդանայ հետ Դարբանդ գընացողը «սակաւաձեռն էր և ոչ բազ-

*համարուն վաթսուն և վեց հազար այր՝ ընդ հեծեալ և ընդ հետևակ: Եկին ընդ նոսա սուրբքն Յովսէփ և Ղևոնդ*

մաթիւ»․ (Յ․ Գ․ 55)․ Վարդանը իր համախոհներէն կը բաղկանայր․ մէկ փոքրիկ մասն մի զօրաց բերդերու մէջ ցրուած էին․ իսկ քրիստոնէութեան համար մարտնչիլ ուզող Հայոց մեծագոյն մասը, որ առաջին և ստուարագոյն գունդը կը կազմէր, ի Հեր և ի Զարաւանդ խրկուած էր ընդ հրամանատարութեամբ Արծրունեաց իշխանին Ներշապհոյ․ և «գումարէին զնա պահապան աշխարհին մերձ ի սահմանս Ատրպատական աշխարհին»: Այս գնդին համար էր, որ Վասակ կը գրէր առ Մարզպանն Ձորայ Սեբուխտ․ «հեռացուցի ի կողմանս Հերայ և Զարաւանդայ»․ Յ․ Գ․ 53 և 55: Վարդան 450ին աշնան ժամանակները ի Դարբանդայ յաղթական դարձած առենը, ձմեռն վրայ հասեր էր և որովհետև Վասակ պաշար չէր թողուցեր, «ոչ կարէր զմիով տեղեաւ համագունդ զզօրսն դարմանել, այլ ըմփռէր տարածանէր ընդ գաւառս գաւառս աշխարհին առ ի հանգիստ ձմերոցին․ պատուէր հրամանի տալով կազմ և պատրաստ լինել գարնան»:

Զատկական տօնը (451․ Ապրիլ 13) կատարելէն յետոյ, ամենայն որ պիտի փութայր գալ հասանել յԱրտաշատ: Վարդան չյապաղեցաւ ի քաղաքդ, թէպէտ բանակը շատ պակասներ ունէր ուստի զայն իջեցուց ի դաշտն Արտազու, ուր միացաւ Ներշապհոյ գնդին հետ, որ կը պատուէր անդ տարիէ մը ի վեր: Եւ որովհետև յԱրտաշատայ ցՄակուայ գետ 100 հազարամետր է, Վարդան հասած ըլլալու է Ապրիլ ամսոյ վերջերը: Օրբելեան ալ կ'ըսէ․ «և անցեալ յԱրտազ գաւառ, յետ ամսօրեայ աւուրց եղև խմբումն մեծ պատերազմին յորում ընտակեցաւ Ս․ Վարդան»:

Երկրին ճանապարհք տանին ի Պարսկաստանէ յաշխարհն Արարատեան: Սոցա ամենէն հարթն և կարճն Երասխայ աջակողմեան ափունքն են: Ի հին ժամանակս գետեղեցին Հայք այդ ճանապարհիդ վերին մասին մէջ, և մեծագոյն ապահովութեան համար՝ Երասխայ կըռնակը, յԱրմաւիր իրենց ամրացեալ մայր քաղաքը, զոր յետ դարուց փոխադրեցին հետզհետէ յԱրտաշատ, ի Վաղարշապատ, ի Դուին, ինչպէս և նորագոյն տեարք երկրին՝ յԵրևան: ՅԱրմաւրէն կամ Ախուրեանի խառնուրդէն վեր՝ Երասխայ դաշտը կը սեղմի յոյժ․ աստ էին և Երուանդակերտ, Երուանդաշատ և Արտագերսն անուանին:

Երկրորդը Բագրևանդայ կամ Պայազիտի ճանապարհն է, կրկին լեռնագօտեաց մէջ ամփոփեալ, զոր գնան այժմ ի Դավրեժէ յԵրզրում երթևեկող կարաւանք: Բագրևանդայ մէջ Ճահապիվանի մօտերը կը գտնուէր միշտ զօրաւոր բանակ մը, քանզի էր «բուն բանակի տեղն Արշակունեաց»․ (Բուզանդ էջ 117)․ Նշանաւոր էին Վաղարշակերտ (Թոփրագ-գալէ) և Արծափ (Արզապ) բերդաւանքն:

Արդ այս ճանապարհներէս զո՛ր որ ընտրէ Դավրեժի և Խոյի վրայէն եկող բանակը, պարտ է Արտազու դաշտին մէջէն կամ քովէն անցնիլ: Երասխայ աւելի վարերէն կամրջաւ անցնիլն դըժուարին էր և անօգուտ, որովհետև կամ Սիւնեաց աշխարհին լեռնային լաբիւրինթոսին մէջ կը հանէր և կամ առաւել ևս յարևելս՝ յանապատն Մուղանի: Շատ շատ մարթ էր Խոյէն ուղղակի դէպ ի Վան յարձակիլ․ բայց և այնպէս վտանգաւոր էր թշնամի բանակ մը ձգել յԱրտազ, որ ուզած ատենը կրնար պարսկական զօրաց կռնակը բըռնել կամ կողմնակի զարնել ու ամենայն

*երէց, բազում և այլ քաջանայք, և ևս բազմագոյն պաշ-*

հաղորդակցութիւն կտրել նորա կեդրոնին հետ։ Ուստի յԱրտազ պէտք էին դիմաւորել Հայք զՊարսիկս եթէ կ'ուզէին արգիլել նոցա Հայաստան մտնելը, ինչպէս և յԱրտազ դիմելու են Պարսիկք եթէ հարկ ըլլայ պաշտպանել զԱտրպատական ընդդէմ թշնամւոյ մը, որ թէ ի Բագրևանդայ և թէ յՃրախայ դաշտէն կրնայ անդ հասանել։ Աւարայրի պատերազմէն 1063 տարի ետքը, այս է 22 օգոստոս 1514ին, Եաւուզ Սուլթան Սելիմ Շահ Իսմայիլի բանակները նոյն տեղերը խորտակեց, քանզի Չալտըրանի դաշտը նոյն ինքն Շաւարշականն է։ Սելիմ Բագրևանդայ և Մակուայ ճամբով կու գար, Իսմայիլ ալ Խոյի։

Դառնանք արդ մեր պատմութեան։ Վարդան յԱրտազ հանելուն պէս զօրահամար ընել տուաւ. 66.000 հեծեալ և հետևակ յանձն առեր էին իրեն բանակակից լինել։ Բայց ո՞րը զէն չունէր, ո՞րը հանդերձ. շատերն արտորնօք վազեր եկեր էին և լաւագոյն էր մարզել և կազմել զնոսա ի սահմանագլուխն՝ թշնամւոյն մօտ, քան յԱրտաշատ ուր կրնային թուլանալ։ Վարդան ըստ կարի պակասներն լեցուց և հուսկ յետոյ յորդորելով և քաջալերելով զզօրականն, «տեղեն ի դաշտին» յարմար տեղ մը զզօրսն զետեղեաց. ու այնուհետև ուշադրութիւնը այրուձին կազմելու տուաւ։

«Ցետ բազում աւուրց» Նիւսալաւուրտ եկեալ հասաւ ի Հեր և ի Զարաւանդ. բայց որովհետև թշնամին շատ հեռի չէր, գաւառին մէջ կանգ առաւ, բանակը հաստատեց և ամրացոյց իբրև զքաղաք, և սկսաւ ադիս անդէն զունդեր խրկել ասպատակութեան համար։

Երկու բանակները դեռ իրարու մօտեցած և իրարու դէմ ճակատած չէին. նոյն միջոցին Աղանձար ասպատակողաց վրայ կ'երթայ ու փախստականս առնէ զնոսա ի բանակն Պարսից։

Վասակ վերստին բանակցութեան կը մտնէ Վարդանանց հետ. երէցներ կը խրկէ երկպառակութիւն ձգելու եթէ չյաջողին համոզել։ «Բազում աւուրք» այդ բանակցութեամբք անցան։

Երբ Նիւսալաւուրտ կը տեսնէ, որ անհնարին պիտի ըլլայ համոզել զՀայս եթէ ոչ զինու զօրութեամբ, զամբացեալ բանակատեղին կը թողու ու դէպ յառաջ կու գայ յեզր Տղմուտ գետոյ ու կը ճակատէ զզօրսն։

Վարդան ի ժողով կը գումարէ զաւագանին և այլևայլ գնդից զօրագլուխներն որոշելէ ետքը հրաման կու տայ, որ իւր զօրքն ալ յառաջ խաղան ու ճակատին դէմ յանդիման Արեաց գնդին, առ ափն Տղմուտ գետոյ, ի 1 Յունիսի, 451։

Հետևեալ առաւօտուն՝ բանակները կը զարնուին։

Արդ կը մնայ մեզ պատերազմի տեղւոյն դիրքը վրայ խօսիլ և ճշդել այն աշխարհագրական անունները, զոր տան մեզ Եղիշէ և Ղազար։ Պատերազմին վայր Մեծ դաշտ մի է ընդ մէջ Արտազ և Հեր և Զարաւանդ գաւառաց։ Այդ մեծ դաշտը կամ «լայնատարած տեղիք պատերազմին», Արտազու կից կամ անոր մասն ըլլալուն համար, սա Արտազու դաշտ, և աւելի հին ժամանակաց մէջ Շաւարշական դաշտ։ Դաշտիս մէջ գետ մի պիտի ըլլայ՝ Տղմուտ որոյ մէկ կողմը Հայք՝ միւս կողմը Պարսիկք բընեցին։ Գետը դժուարութիւններ կը մատուցանէ Պարսից. բայց Հայք աւելի հմուտ վայրացն դիւրաւ կ'անցնին։ Տըղմուտին ոռոգած մասին կամ զոնեա սորա հարաւային ափանց՝ Փարպեցին «Տղմուտ դաշտ» կ'ըսէ. իսկ Եղիշէ կ'անուանէ «դաշտ Աւարայրի». վասն

տօնեայք[1]: Քանզի ոչ ինչ զանգիտեսցին և նոքա գալ ընդ նոսա ի գործ պատերազմին. զի ոչ եթէ մարմնական համարէին զկռիւն, այլ հոգևոր առաքինութեան. ցանկային մահակից լինել քաջ նահատակացն:

5. Սկսաւ սպարապետն խօսել միաբանութեամբ նախարարացն ընդ զօրսն և ասէ. «Ի բազում պատերազ-

մի Աւարայր, ըստ փարպեցւոյ, գիւղ մի էր, և այդ գիւղիդ մօտ բանակեցան Պարսիկք՝ ի շրջափակ տեղի Տղմուտ գետոյ։ Դաշտիս եզերքը (այս է ըստ աշխարհագրական քարտիսից՝ արևմտեան և հիւսիսային կողմերը) կը գտնուին «լեռնադաշտք և ամուրք ձորոց»։

Իջմիածնայ Արարատ ամսագրին մէջ (1872. Նոյեմբեր և Դեկտեմբեր), Գ. Գալուստ Տէրմանուէլեան, որ այն կողմերը բազում անգամ ճանապարհորդեր էր, կարևոր տեղեկութիւններ կու տայ մեզ։ Յարևելս Մասեաց և ի հիւսիսոյ Մակուայ գետոյ, կայ արդարև տափարակ տեղի մը, զոր մարթ է նախնեաց Գերատոյ դաշտն համարել, և որ շարունակութիւն մի է Շարուրայ դաշտին յորմէ կը բաժանի Երասխաւ։ Բայց ըստ քննութեանց Գ. Տէրմանուէլեանի այդ Գերատոյ կամ Մակուայ դաշտը չէ Աւարայրինը, ըստ որում չէ շրջափակ ու անյարմար է պատերազմի։ Մակուայ գետն անցնելէ ետքը, դէպ ի հարաւ երթալով, կը հանդիպի, ասէ, երկրորդ դաշտի մը, որ գլխաւոր գիւղին անուամբը մարթ է կոչել զնա Քարաշեաղին։ Այս երկրորդ դաշտն ալ կը խառնուի երրորդի մը հետ, զոր այժմ Զօրսի դաշտ կը կոչեն, և որ կը զատուի յերկրորդէն՝ միայն Ագոռու գետով։ Ըստ Թադէի վանականաց՝ այդ Ագոռուն է Տղմուտ գետը, և լեռներով շրջափակ Զօրսը՝ Աւարայրի դաշտը։ Ուստի Պարսիկք Ագոռու և Խոյ գետոց մէջտեղը՝ Զօրսի դաշտին մէջ, իսկ Վարդանանք նոյն դաշտին Ագոռույի հիւսիսակողմը գտնուող Քարաշեաղինի մասին մէջ բանակած ըլլալու են։ Վանականք ի հնուց հետէ սովորութիւն ունին, Քարաշեաղինը անցնելէ ետքը Վարդանանց շարականը երգելու։ Մեր ճանապարհորդը Զօրսի դաշտին հողը կաւային և կարգէ դուրս տղմուտ տեսեր էր, և ամենայն կերպով յարմար բանակ մը պատսպարելու։ Յարևելս Զօրսի դաշտին է աւանն Մաաական. այս կողմերս նշանաւոր է այծեմի պորտին արտադրած մուշկը կամ քարացեալ արիւնը, որ դեղի համար սուղ կը վաճառի։ Ռամկական աւանդութիւն մը կ'ըսէ, թէ այդ մուշկդ Վարդանանց պատերազմէն առաջ չէր ըլլար, և թէ այծեմունք այդ սրբազան տեղեաց վրայ երեք օր արածուելէ ետքը կը սկըսին արտադրել զայն։ — Պայազիտի և Մակուայ և սոցա գեղերուն Հայք՝ տարին մի անգամ սաստիկ պահք կը պահեն սուրբ Վարդանայ համար Հոկտեմբերի վերջերը։ Արտազու բնակիչքն յԱլանաց երկրէն գաղթեալ էին. «Հրամայեալ Արտաշիսի (այս է որդւոյ Սանատրկոյ, Քրիստոսի երկրորդ դարուն սկիզբը) բնակեցուցանել զԱլանս ի հարաւոյ յարևելից կուսէ Մասեաց, որ կոչէր Շաւարշական գաւառ, ի վերայ պահելով զընիկ անունն Արտազ, քանզի և աշխարհն ուստի գերեցանն Արտազ կոչի մինչև ցայսօր ժամանակի». Խորենացի Բ. ծբ։ — Ի հարաւոյ Ս. Թադէի վանուց Գ. Տէրմանուէլեան տեսեր էր Շաւարշան քաղաքին աւերակները։

1. Այս է սարկաւագունք, սաղմոսերգողք, դպրակարգացք. Տես Յ. Ե. 30։

մինս[1] մնալ է իմ և ձեր ընդ իս. է ուրեք՝ զի քաջալէս յաղթեցաք թշնամեացն, և է ուրեք՝ զի նոքա մեզ յաղթեցին. և բազում այն է՝ որ յաղթող գտեալ եմք և ոչ յաղթեալք: Եւ միանգամայն այն ամենայն էին մարմնոյ պարծանք: Քանզի հրամանաւ անցաւոր թագաւորին մարտնչէաք. որ փախչէր, վատանուն յաշխարհի երևէր, և անողորմ մահ ի նմանէ գտանէր. իսկ որ քաջութեամբ յառաջ մատչէր, բաջ անուն ազգի ժառանգէր, և պարգևս մեծամեծս յանցաւոր և ի մահկանացու թագաւորէն ընդունէր: Եւ մեք իսկ աստի յիւրաքանչիւր մարմնոս ունիմք վէրս և սպիս բազումս. և բազում այն քաջութիւն իցէ, վասն որոյ տեալ իցէ և պարգևս մեծամեծս: Անարգ և անօգուտ զքաջութիւնն համարիմ, և առ ոչինչ զպարգևսն զբազումս. վասն զի ամենեքեան խափանելոց են: Իսկ արդ եթէ վասն մահկանացու հրամանատուին զայն արութիւնս կատարէաք, որչափ ևս առաւել վասն անմահ թագաւորին մերոյ, որ տէրն է կենդանեաց և մեռելոց, և դատելոց է զամենայն մարդ ըստ գործոց իւրոց: Արդարէն եթէ կարի չատ յառաջ մատուցեալ ծերացայց, սակայն եղանելոց եմք ի մարմնոյ աստի, զի մացուք առ Աստուած կենդանի, որ ոչ ևս եղանիցեմք ի նմանէ:

6. «Արդ աղաչեմ զձեզ, ով քաջ նիզակակիցք իմ, մանաւանդ զի բազումք ի ձէնջ լաւագոյնք էք քան զիս արութեամբ, և գահու ի վեր ըստ հայրենի պատուոյն[2].

1. Քուշանաց երկրին պատերազմները կ'ակնարկէ և ոչ տարի մը յառաջ ձորայ մարզպանին հետ եղածը. ինչպէս որ քիչ մը ստորև ալ յայտնի կ'ըլլայ։

2. Վարդանայ հետ եղող տանուտարց մէջ իրմէ բարձրաստիճան՝ Արծրունեաց իշխանը միայն կար, բայց Մամիկոնէից ցեղէն աւագագոյն գերդաստաններէ ալ բազում սեպուհք կը գտնուէին։ Բաղդատելով Եղիշէի և Փարպեցւոյ տուած անուանց կարգը, մարթ է կարծել թէ պատերազմին առենները գլխաւոր նախարարաց գահոյք հետագայ կարգն ունէին. Սիւնիք, Արծրունիք, Ռշտունիք, Բագրատունիք, Խորխոռունիք, Մամիկոնեանք. (Եղիշէ՝ Ց, Բ. 61. Ց, Գ. 47. 54. Ց. Ե. 3. Ց, Ը. 131. – Փարպեցի էջ 126. 134 և 256)։ Ըստ գահնամակին Խոսրովայ՝ Ա Բագրատունիք, Բ Խորխոռունիք, Գ Արծրունիք, Դ Մամիկոնեանք, Ե Սիւնիք, Ռշտունիք շատ ետ մնացեր էին։ Իսկ Վռամայ գահնամակին մէջ Ա Սիւնեաց տէր. Բ Ապեան. Գ Արծրունեաց տէր. Դ Մամիկոնէից տէր. Ե Շահապն Նրափաց. Զ Մոկաց տէր. Է Ռշտունեաց տէր. Խորխոռունեաց անունը չկայ։

բայց յորժամ ձերով կամօք և յօժարութեամբ[1] առաջնորդ և զօրագլուխ ձեզ կացուցէք, հեշտ և բաղձալի թուեցան բանք իմ ի լսելիս մեծամեծաց և փոքունց: Մի երկուցեալ զանգիտեսցուք ի բազմութենէ հեթանոսացն, և մի յահագին սրոյ առն մահկանացուի զթիկունս դարձուսցուք. զի թէ տացէ Տէր յաղթութիւն ի ձեռս մեր, սատակեսցուք զզօրութիւն նոցա, զի բարձրասցի կողմն ճշմարտութեանն. և եթէ Հասեալ իցէ ժամանակ կենաց մերոց սուրբ մահուամբ պատերազմիս, ընկալցուք խնդութեամբ սրտիւ. բայց միայն յարութիւնս քաջութեան՝ վատութիւն մի խառնեսցուք:

7. «Մանաւանդ զի անմոռաց է ինձ, յիշելով զիմ և զմանց ի ձէնջ, ի ժամանակին՝ զի զանօրէն իշխանն խաբեցաք, պատրեցաք իբրև զմանուկ մի տղայ անպիտան. իբր այն եթէ ի վերինն երեսս զկամս նորա ամբարշտութեանն կատարեցաք. բայց ի ծածուկ զխորհուրդս Տէր ինքնին վկայէ մեզ, որպէս անքակ կացեալ եմք ի նմանէ: Զոր և դուք ինքնին իսկ գիտէք, վասն սիրելեաց մերոց՝ որ ի մեծի նեղութեան էին, հնարս խնդրէաք վասն յանդորր Հանելոյ. զի նոքօք Համդերձ մարտ եդեալ կռուեսցուք ընդ անօրէն իշխանին վասն Հայրենի աստուածատուր օրինացն: Եւ իբրև նոցա ոչ ինչ կարացաք օգնել, անհնար լիցի այս՝ եթէ վասն մարմնաւոր սիրոյ զԱստուած ընդ մարդկան փոխանակիցեմք:

8. «Իսկ արդ յերկուս և յերիս կուիս Տէր ինքնին մեծաւ զօրութեամբ օգնեաց մեզ, որպէս զի զանուն քաջութեան ժառանգեցաք, և զզօրսն արքունի չարաչար Հարաք, և զմոգսն անողորմ սատակեցաք, և զպղծութիւն կռապաշտութեանն ի տեղեաց տեղեաց սրբեցաք, զանօրէն Հրամանն թագաւորին եղծաք ապականեցաք, զխռովութիւն ծովուն ցածուցաք, լեռնացեալ ալիքն դաշտացան, բարձրագէզ փրփուրն սպառեցաւ, դադարեցեալ

1. Վարդան արդէն սպարապետ և տանուտէր էր. բայց անիշխանութեան ատեն այդ պաշտօնը կարևորութիւն մը չունէր եթէ նախարարք և զօրքը վերստին չհաստատէին զայն: Մօտակայ վտանգին առջև անձնասիրութիւնք և անհատի զգացմունք մէկդի ձգելով կարողագոյն անձն ընտրուեր էր առաջնորդ և զօրագլուխ:

սրամտութիւնն դադարեաց: Որ ի վերայ ամպոց սրո-տայր, նկուն եղեալ՝ քան զամբարտական բնութիւնն ի վայր գայ ընդ մեզ խօսելով: Որ բանիւ հրամանաւ կամէր կատարել զչարութիւնն իւր ի վերայ սուրբ եկե-ղեցւոյ, արդ աղեղամբ և նիզակաւ և սրով կամի: Որ իբրև զհանդերձ կարծէր ունել մեզ զքրիստոնէութիւնն, արդ իբրև զգոյն ի մարմնոյ՝ չկարէ շրջել, թերևս և ոչ այլ կարասցէ մինչև ի կատարած: Քանզի հիմունք սորա հաստատութեամբ եղեալ են ի վերայ վիմին անշարժու-թեան, ոչ ի վերայ երկրի, այլ ի վեր յերկինս, ուր ոչ անձրևք իջանեն և ոչ հողմք շնչեն և ոչ հեղեղս յարու-ցանեն: Եւ մեք թէպէտ և մարմնով յերկրի եմք, այլ հաւատովք յերկինս եմք շինեալ. ուր ոչ ոք կարէ հա-սանել յանձեռագործ շինուածն Քրիստոսի[1]:

9. «Հաստատուն կացէք յանշուշտ զօրագլուխն մեր, որ ոչ երբեք մոռասցի զգործս նահատակութեան ձերոյ: Ո՛վ քաջք, մեզ այս մեծապէս է՝ զոր կատարեաց Աս-տուած ի ձեռն մերոյ բնութեանս. յորում և զօրութիւնն Աստուծոյ մեծապէս երևի: Զի եթէ զայլս կատարելով ի վերայ աստուածային օրինացն՝ պարծանս անձանց ժա-ռանգեցաք, և զքաջ անուն ազգատոհմին մերոյ թողաք եկեղեցւոյ, և վարձուց անկապուտին ի Տեառնէ է, որ պահի իւրաքանչիւր ումեք ի մէնջ ըստ սրտին յօժարու-թեան և ըստ գործոց առաջարկութեան, ո՛րչափ ևս ա-ռաւել եթէ մեք մեռանիցիմք ի վերայ մեծի վկայու-թեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում և եր-կնաւորքն են ցանկացեալ, եթէ գոյր հնար: Եւ զի այս պարգևք ոչ ամենեցուն է անկ, այլ որում պատրաստի ի բարերար Տեառնէն, և մեզ այս ոչ եթէ յարդար գործոց ինչ պատահեաց, այլ յաննախանձ պարգևա-տուէն. որպէս և ասէ իսկ ի սուրբ կտակարանին. Ուր

1. Եղիշէ մասնաւոր բերմունք մի ունի իւր միտքը ետևէ ետև երկար և աւելի ձևով կամ նմանութեամբ բացա-տրելու, որուն չորս հինգ օրինակ ու-նինք միայն այս հատուածիս մէջ. հեղի-նակին երևակայութեան առատութեան և բեղմնաւորութեան ապացոյց: Վարդա-նայ բերանը դրուած ճառը շատ ճար-տասանական է և գեղեցիկ. և թէպէտ Եղիշէի շարադրութիւնն ըլլալուն տա-րակոյս չկայ, բայց և այնպէս անոր գըլ-խաւոր իմաստներն իրապէս բացատրուած ըլլալու են ի Աւարայրեանէն:

առաւել եղեն մեղքն, անդէն առաւելան շնորհքն Աս-տուծոյ :

10. «Եւ մեզ կարի քաջ ի դէպ եղանէ հրաման պա-տուիրանացս այսորիկ. որպէս և առաւելապէս երևեցաք մարդկան ամբարշտեալք, կրկին առաւելապէս երևես-ցուք արդարացեալք մարդկան և հրեշտակաց և հօրն ամենեցուն: Զի որ օր լուան ապաքէն զմէնջ մարդիկ ի գործ ամբարշտութեանն, արտասուս բազում հեղան ի սուրբ եկեղեցւոջն, և ես բազմագոյն ի մէջ սիրե-լեացն սորա: Նա և ընկերք մեր որով սրտմտեալ սատա-նային մեզ, և մահ դատնութեան ի վերայ հատուցանել կամէին, և ծառայքն մեր սարտուցեալ[1] փախչէին ի մէնջ: Եւ հեռաւորաց, որոց լուեալ էր զանուն քրիս-տոնէութեան մերոյ, քանզի ոչ էին տեղեակ խորհրդոյն մերոյ, զզբս ի բերան առեալ անդադար աշխարէին զմեզ, և անդխոութեամբ հայհոյութիւնս բազումս խօսէին զմէնջ: Եւ որ մեծն քան զամենայն տացից. ոչ միայն մարդիկ յերկրի, այլ և հրեշտակք յերկնից զերեսս իւրեանց դարձուցին ի մէնջ, զի մի՛ տեսուր գլխոք հայեսցին ի սեզ :

11. «Եւ ահա եկն եհաս ժամանակ, զի զամե-նայն զկեղտ անուան ի մէնջ ի բաց բարձցուք: Յայն-ժամ՝ իբրև զթախծեալ սգաւոր՝ յոգի և մարմին էաք տրտմեալք, այսօր զուարթացեալ և զգաստացեալք յեր-կուսեան առ հասարակ եմք լցեալք. քանզի և զՏէրն բարերար ընդ մեզ տեսանեմք յառաջնորդութիւն. չէ մեր մարդ զօրավար, այլ զօրագլուխն ամենայն մարտի-րոսաց: Երկիւղ՝ թերահաւատութեան է նշանակ. զթե-րահաւատութիւն մեք ի մէնջ վաղ մերժեցաք, ընդ նմին և երկիւղն փախիցէ ի մտաց և ի խորհրդոց մերոց»:

12. Զայս ամենայն առաքինի զօրավարն խօսեցաւ ընդ ամենայն բազմութեանն. դարձեալ և զմի մի ի նոցանէ քա-ջալերէր ի ծածուկ և սրտապնդէր, և զամենայն պա-կասութիւն աղքատութեան լնոյր: Որոյ ոչ ինչ դոյր զօ-րականին, յանձնէ և յընկերաց մատուցանէր. որոյ զէն

1. Տես Յ. Գ. Գ. Սարտ سرد բազմոտ և արդի պարսկերէնէ ցուրտ, սառնացուրտ. յորմէ սարտի՝ ցրտութիւն. սարտոյալ՝ ցրտացոյն. սարտուցեալ՝ ցրտացին.

չէր, զէն պատրաստէր. և որում՝ հանդերձ պակաս էր, հանդերձ զգեցուցանէր, և որում երիվար՝ երիվար տայր: Եւ տուտ ռոճկօք[1] ուրախ առնէր զամենեսեան, և զուարթագին զինքն ցուցանէր ամենեցուն: Եւ ըստ պատերազմական կարգին դքաջ արանց զյիշատակարանս հանապազ երկրորդէր առաջի նոցա. զի և ինքն իսկ տեղեակ էր ի մանկութենէ իւրմէ սուրբ կտակարանաց: Զոր և ի ձեռն առեալ դքաջ նկարագիրն մակաբայեցւոց ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն. և յորդառատ բանիւք զեւս իւրայն իմացուցանէր նոցա, որպէս մարտուցեալ կուեցան ի վերայ աստուածատուր օրինացն ընդդէմ թագաւորին Անտիոքացւոց[2]: Զի թէպէտ և ի նմին կատարեցան մահուամբ, սակայն անուն քաջութեան եկաց մինչև ցայսօր ժամանակի, ոչ միայն յերկրի, այլ և անմահայ յերկինս: Նա և զայն յուշ առնէր զօրականին, որպէս ազգատոհմն Մատաթեայ քակտեալ բաժանեցան ի միութենէ նորա, դարձան ի հրամանն թագաւորին, չինեցին մեհեանս, մատուցին զոհս պղծութեան, խոտորեցան յԱստուծոյ, և ընկալան զպատիժս պատուհասի մահուան ի սուրբ միաբանելոյն: Իսկ Մատաթի և որք ընդ նմայն էին՝ ոչ ինչ լքեալ թուլացան, այլ ևս առաւելապէս պնդեցան, և ձեռնամուխ եղեն ի գործ պատերազմին բազում ժամանակս: Զայս ասէր, և անդէն ի դաշտին զանգի առեալ՝ զզօրսն զետեղէր, և յամենայն կողմանց տակաւ զպարուձին կազմէր[3]:

13. Իսկ յետ բազում աւուրց[4] զօրագլուխն Պարսից խաղայր գայր ամենայն հեթանոսական բազմութեամբն,

1. Ռոճիկ՝ ոչ թոշակ, դրամ, այլ օրական պարէն, ուտելիք. տճկ. Թայյինատ. պարսկերէն ռոզի روزی ռոզ՝ է օր:

2. Այլ ընթերցուած Անտիոքոսի. երկուքն ալ ուղիղ են. վասն զի Անտիոք մայրաքաղաք էր Սելևկեանց իշխանութեան. և Անտիոքոս Եպիփան թագաւորէր յաւուրս Մատաթեայ (167 նախ քան զՔրիստոս). Եպիփանի յաջորդեց Անտիոքոս Եւպատոր, որոյ ժամանակն է Յուդա Մակաբէ:

3. Այրուձին ամբողջապէս կազմելուտան չէր ունեցած Վարդան և հետևակ զօրաց պէս ալ դիւրին չէր. մանաւանդ զի սպառազէն էր:

4. Ըստ փարպեցւոյ Վարդանայ բանակը Պարսից բանակէն վերջն հասաւ. զնոսա անպատրաստ ու ցրուած գտաւ, ուր կրնար նոցա մեծ վնաս հասուցանել, եթէ անմիջապէս յարձակէր վրանին. Թեոդոսեայ տալ՝ «Իսկ յետ ոչ բազում աւուրց»:

և եկեալ հասանէր յաշխարհն Հայոց ի Հէր և ի Զարաւանդ գաւառ[1]: Եւ անդէն ի գաւառին զանգի առեալ նորա, բանակ բոլորէր, փոս հատանէր, պատնէշ կանգնէր, չերտաւոր փակէր, ամրացուցանէր իբրև զքաղաք ամենայն պատրաստութեամբ[2]: Գունդ բազում հատանէր

1. Նախադասութեան ի Հեր և ի Զարաւանդ հատուածէն ետքը առ ինքն կոչեց ընդդակակեցս Վասակայ, որք յաճէ Վարդանայ՝ Սիւնեաց լեռնային նահանգը փախած էին. վասն զի Վարդան բանակցեալ ունէր զթագաւորանիստ տեղին միաբանութեամբ նախարարացն, որ ոչ քակեցան ի սուրբ ուխտէն. (Տես Յ Ե. 2. Յ. Զ. 1): Պարսկական բանակը տեղակի Պարսկաստանէ կու գար, որովհետև Միհրներսեհ Թիկնապահս միայն ընթած ըլլալու էր իր հետը ի Փայտակարան, ու յետոյ միացեր տարած: Հեր՝ է այժմեան Խոյ. և Զարաւանդ՝ արդի Սալմաստ (Տեղագիր 104, 106):

2. Ահաւասիկ ամենապիտանի տեղեկութիւններ, որք կը ցուցանեն թէ Եղիշէ որքան ընտանեցած էր բանակաց գործոց: Ասկէ կ՚իմանամք թէ պարսկական զօրքը, ինչպէս Հռովմայեցւոցը, երբ ագանել պէտք ըլլար, անմիջապէս բանակատեղի մը կ՚ընտրէր, որոյ բոլորտիքը փոս կը բանար, պատնէշ կը կանգնէր, այս է փոսէն ելած հողով կամ քարերով ըլլուր կը շինէր փոսին ներքին եզերքը. և զայս ալ բաւական չհամարելով այդ ըլլուր հողակոյտին վրայ չերտեր կամ ցիցեր կը զարնէր, և ինչպէս կ՚ըսէ մեր պատմիչը « ամրացուցանէր իբրև զքաղաք ամենայն պատրաստութեամբ »: — Օտար աղբիւրներէ ալ գիտեմք որ Սասանեանք Հռովմէական բանակաց նախկին կազմակերպութիւնը մուծեր էին Պարսից մէջ: Վեգետիոս ռազմագէտ մատենագիր Հռովմայեցի ի վերջ կայս չորրորդ դարու, կը գանգատի որ Հռովմայեցիք ի բազմաց հետէ թողուցած են բանակատեղեաց բոլորտիքը փոս փորելու և ցից անկելու սովորութիւնը: « Եթէ այս զգուշութիւններ երբեք ձգած չըլլայինք, ասէ, թշնամիք չէին համարձակեր առնհար լինել մեզ ի տուէ և ի գիշերի. Ինչպէս որ եղաւ: Պարսիկք նախկին Հռովմայեցւոց օրինակէն օգուտ քաղելով, իրենց բանակատեղին խրամաւ կը փակեն, և որովհետև իրենց երկրին հողը աւազուտ է չպնդանար, խրամէն ելած աւազը կը լեցնեն խոշոր պարկերու մէջ, զոր հետերնին ունին միշտ այս նպատակիս համար, և իրարու վրայ դիզելով պատնէշ կը ձևացնեն »: Գիրք Գ. գլ. 10:

Այլուր ասէ. « պատերազմի ժամանակ լաւ ամրացեալ բանակատեղիէ աւելի հարկաւոր բան չկայ. քաղաք մ՚է որ զօրականը ամենուրեք կը շինէ ինքեան »: Գիրք Ա. 21:

« Բանակ բոլորէր ». — Բանակատեղւոյն ձևը կրնար կիսաբոլոր՝ ձուաձև՝ քառակուսի կամ եռանկիւնի ըլլալ, ըստ պատշաճութեան վայրին: (Նոյն Գիրք Ա. գլ. 23, և ծանօթ. Նիզարի Հաւաքածոյն Լատին Մատենագրաց):

Ստորև կը գտնենք Հռովմայեցի զօրականին նկարագիրը, որ համաձայն է Եղիշէի պարսկական բանակին վրայ տուած տեղեկութեանց:

« Հռովմայեցի զինուորը միշտ ծանրաբեռն կ՚երթար. հետը կը կրէր ամենայն տեսակ զէնք, բանակելու համար պէտք եղած կահք և կազմանք, պաշար, մինչև անգամ չերտեր՝ պատնիշաց ամրութեան համար: Ամէն երեկոյ, ագանելու տեղերնին՝ կանոնաւոր բանակատեղի մը կը կազմէին, և սովոր էին միշտ ամրացնել զայն, սովորութիւն մը որ

ի զօրաց նորա, ապստամբուր արշաւէր, յաւարի առնուլ կամէր զգաւառս բազումս:

14. Զայն իբրև լուան զօրքն Հայոց, սեպուհ մի յազգէն Ամատունեաց՝ Առանձար անուն, ընտրեցին յամենայն զօրականէն լի իմաստութեամբ և քաջութեամբ: Եւ ընդ առաջ նորա հազարօք երկու[1], հար սատակեաց զբազմութիւն գնդին, և զմնացեալսն ի նոցանէ անդրէն փախստական ի բանակն արկանէր: Եւ ինքն ողջանդամ այսրէն դառնայր, և լինէր տօն ուրախութեան մեծ յաւուրն յայնմիկ զօրացն Հայոց:

15. Դարձեալ միւսանգամ՝ ուրացեալն Վասակ անդրէն ի հնարս հայթայթանաց մտանէր ըստ առաջին կեղծաւորութեան իւրոյ. շրջեցաւ ի ձեռն սուտ երիցանցն՝ զոր յառաջագոյն ասացաք, նոքօք հրամանաւ արքունի ի պատգամաւորութիւն խօսէր, և երդմամբ հաստատէր զքրիստոնէութիւնն անդրէն ունել: Եւ զայս արարեալ զբազում աւուրս՝ ոչ կարաց զմիաբանութիւնն քակել, մանաւանդ զսուրբ ուխտ եկեղեցւոյն, որ ոչ էր հեռացեալ ի զօրականէն: Որպէս երանելի երէցն Ղևոնդ հրաման առեալ ի սուրբ ընկերացն ի մեծէն Յովսեփայ և յամենայն մեծամեծացն, ի քահանայիցն և

անծանօթ էր Հելլենաց։ Եթէ գիշեր մը միայն կենալ հարկ ըլլար, և յանկարծահաս թշնամիէ չկասկածելու չափ ալ հեռի գտնուէին, օրուան վերջը առաջին գործերնին էր բանակի չորս կողմը փոս բանալ, որոյ երեք մեդր լայնութիւն և երկու մեդրէ աւելի խորութիւն կուտային, և յետոյ խրամին ներքնակողմը ըլրաձև գիզուած հողերը կ'ամրացնէին չերտիւք, որ իւրաքանչիւր զինուորին զինուց և կազմածոց մասն համարեալ էր։ Յոյժ տաժանելի՛ կեանք. և չկայ ազգ մը որ նոցա հաւասար զինուորական աշխատութիւններ և գործեր կատարած ըլլայ»։ Michel Chevalier. Economie politique. հատ. Բ. 188. Տես և Գիպպըն հատ. Ա. 19։

1. Պէտք է կարդալ երկու հազար ճեծելովք, որովհետև հետևակ զօրքը յարմար չէր գործոյն, ինչպէս որ ալ Փարպեցին կը վկայէ. թէպէտ Առանձարի 300 հեծեալ միայն տրուեցաւ կ'ըսէ, որ մեզի յոյժ սակաւ կ'երևի. Տես Յ. Ե. 4. ծանօթ. 1։ Սեպուհ կը կոչուէր նախարարին կամ տանուտեառն որդիքը և եղբայրքը։ Զգիտեմք թէ ինչ օրինօք կը բաժնուէր նախարարին ստացուածքը իւր ժառանգաց մէջ։ Այսչափս յայտ է թէ տանուտէրը իւր գաւառին բարձրագոյն իշխան և դատաւոր և զինուորական հրամանատարն էր, տանուտիրութիւնը յանդրանկէ յանդրանիկ կ'անցնէր. բայց սեպուհք ալ կը մասնակցէին խորհրդոց, ունէին իրենց յատուկ սեպհական իրաւունքը և ստացուածքը, բայց ոչ վարչական զօրութիւն։

ի զօրագլխացն, եբաց զբերան իւր և ասէ բարձր բարբառով առաջի հրեշտակացն:

16. «Յիշեցէք ամենեքեան զհարսն զառաջինս, որ յառաջ քան զծագումն որդւոյն Աստուծոյ յիւրաքանչիւր ժամանակս: Քանզի իբրև մերժեաց և ընկէց զմեզ չարն յաստուածային տեղւոյն, զտաք մեք անկեալք ընդ անողորմ դատաստանօք բռն մեղացն յանցաւորութեան, որ ի կամս ազատութեան մերոյ գործեցաք զանարժանս, և զարարչական զօրութիւնն շարժեցաք ի վերայ մեր ի ցասումն բարկութեան, և զողորմած դատաւորն յուզեցաք վրէժ առնուլ անաչառութեամբ յարարածոցս. մինչև հրաման տուեալ երկնային ծովուն հեղուլ ի վերայ ցամաքիս, և հաստատուն յատակք երկրիս ծածկեալ՝ ընդդէմ զհակառակին գործեցին: Վերինք և ներքինք եղեն մեզ գործիք տանջանաց՝ առանց բարեխօսի վրէժ առնուլ յանցանաց մերոց:

17. «Ապաքէն արդարն Նոյ միայն գտաւ կատարեալ յազգի մարդկութեանս, որ ցածոյց զարտմութիւն բարկութեան տեառնեան ցասմանն, և եղև սկիզբն առաջարկութեան առ աճումն բազմութեան մարդկային ազգիս: Դարձեալ և Աբրահամ ի փորձութեանն իւրում գտաւ առաքինի, և զընկալեալ պարգևսն յԱստուծոյ՝ ինքեան ձեռօք փոխ անդրէն նմին մատուցանէր, վասն այսորիկ և յառակս ընկալաւ զնա Աստուած. զի ի նմա տպաւորեալ տեսանէր զաներևոյթ գալուստ որդւոյն Աստուծոյ, և զըմբռնումն անըմբռնելւոյն և զզենումն անմահին, որ խոյով մահուամբն խափանեաց զիշխանութիւն մահու: Եւ եթէ մահուամբ մահ մեռանի, մի երկիցուք մահակից լինել Քրիստոսի. զի ընդ որում մեք մեռանիմք, ընդ նմին և կենդանանամք:

18. «Յիշեցէք, առաքինիք, զմեծն Մովսէս, որ մինչ չև հասեալ էր յարութեան հասակն՝ խորհուրդ սուրբ նահատակութեանն ի տիս տղայութեանն երևէր նմա. և տուն թագաւորին եգիպտացւոց ի ծառայութիւն մատնէր նմա, և ակամայ դայեկութեամբ սնուցանէր զնա. և ի ժամ փրկելոյ զժողովուրդն ի նեղութենէն, միջնորդ եղև երկնի և երկրի, միանգամայն և աստուած անուանեցաւ ի վերայ եգիպտացւոյն: Քանզի ուր գտաւ սուրբ խոր-

հուրդն զօրացեալ, անձամբ խրով վրէժ առնոյր յեղխատացուցն. իսկ ուր աստուածային յայտնութիւնն ի վերայ նորա լինէր՝ ի ձեռն գաւազանին գործէր զմեծամեծ սքանչելիսն: Եւ վասն սուրբ նախանձուն զոր ունէր՝ եհար զեգիպտացին և ընդ աւազեաց. վասն որոյ զմեծ անուն գնէր նմա, և առաջնորդ ժողովրդեանն զնա կացուցանէր: Եւ բազում այն է, որ հեղմամբ արեամբն արդարացաւ, և անուանեցաւ մեծ քան զամենայն մարգարէս. ոչ միայն զարտաքին թշնամիսն կոտորելով, այլ զազգատոհմին, որ փոխանակեցին զԱստուած ընդ որթուն յանապատին:

19. « Եւ եթէ նա ի հեռուստ այնպիսի վրէժ խնդրէր զալատեան որդւոյն Աստուծոյ, մեք որ ականատեսք եղաք, և մեծամեծ վայելեցաք յերկնաւոր պարգևսն շնորհաց նորա՝ ևս առաւել պարտիմք վրէժխնդիր լինել մօտակայ ճշմարտութեանս: Որ եդ մահուամբ զանձն իւր ի վերայ մեղաց մերոց և արդարացոյց զմեզ յանհնարին զատապարտութենէն, դիցուք և մեք զանձինս մեր մահուամբ ի վերայ անմահ զօրութեանն, զի մի նուազ քան զեղվրէժխնդիրն գտանիցիմք:

20. « Յիշեցէք զմեծ քահանային փենեհէզ[1], որ սպանմամբ երարձ զպղծութիւնն ի ժամ պատերազմին, և յազգէ յազգ երդմամբ հաստատեաց զքահանայութիւնն: Մի՛ մոռանայք և զսուրբ մարգարէն զԵղիա, որ ոչ կարէր հանդուրժել հայել ի կռապաշտութիւնն Աքաբու. և արդար նախանձուն իւրոյ զութ հարիւրսն ինքեան ձեռօք սատակեաց, և զերկուս յիսունսն անշէջ հրոյն մատուցանէր լուցկի. և զաստուածային վրէժն խնդրելով անըմբռնելի և աչագին կառօքն յերկրէ ի յերկինս վերացաւ: Դուք՝ ես նորին մեծի վիճակի հասեալ էք, զի ոչ ես կառք առաքին ձեզ ի վերացումն, այլ ինքնին Տէրն կառաց և երիվարաց հզօր զօրութեամբ և սրբովք հրեշտակօք ընդ առաջ եկեալ՝ ձեզ իւրաքանչիւր թևս բուսուցանէ, զի նորա ուղեկիցք լինիցիմք և նմին քաղաքակիցք:

21. « Եւ այլ զի՞նչ ես երկրորդեցից առաջի ձերոյ քաջ նահատակութեանդ, զի քան զիս տեղեկագոյնք և

1. Թիւ. ԻԵ:

հմուտք էք սուրբ կտակարանացն: Դաւիթ ի մանկութեան ժամանակին քարիւ կործանեաց զմեծ բլուրն մսեղէն, և ոչ ինչ զանգիտեաց յահագին սոյն հսկայէն. ցրուեաց զգունդս այլազգեացն, և ապրեցոյց զզօրսն ի մահուանէ, և զժողովուրդն ի գերութենէ. եղև անդրանիկ թագաւորաց իսրայելի, և անուանեցաւ հայր որդւոյն Աստուծոյ: Նա անուանեցաւ առ ի պէտս ժամանակին, և դուք ճշմարտիւ ծնեալք ի սուրբ Հոգւոյն որդիք էք Աստուծոյ և ժառանգակիցք Քրիստոսի: Մի ոք զձեր բաժինն ի ձէնջ հատանիցէ, և զձեզ օտարախորթ արարեալ՝ տարաբաժին հանիցէ:

22. « Յիշեցէք զամենայն զօրավարսն իսրայելի զառաջինսն, զՅեսուն, զԳեդէոն, զՅեփթայէն և զայլսն ամենայն. որք ճշմարիտ հաւատովք էին, հարին կոտորեցին զզօրսն հեթանոսաց, և սրբեցին զերկիրն ի պիղծ կռապաշտութենէն: Եւ վասն հաստատուն արդարագործութեանն, որ ոչ ինչ երկմտեցին ի խորհուրդս իւրեանց, արեգակն և լուսին առանց ականջաց լուան և կատարեցին զբան հրամանի նոցա. ծով և գետք ճանապարհ գործեցին առաջի նոցա ըստ ոչ սովորութեան. և բարձրացեալ պարիսպք քաղաքին ձայնիւ լռելով անկեալ կործանեցան: Եւ այլքն ամենայն՝ որ ըստ հաւատոյ քաջութիւնս կատարեցին ի դարս իւրաքանչիւր, գովեցան ի մարդկանէ և արդարացան յԱստուծոյ:

23. « Այսպէս նոյն Տէր է որ ի սկզբանէ մինչև ցայսօր և առ յապա, և յաւիտենից յաւիտեանս, և անդր քան զամենայն յաւիտեանս: Ոչ նորոգի, զի ոչ հնանայ. ոչ մանկանայ, զի ոչ ծերանայ. ոչ փոխի անյեղյեղուկ բնութիւնն Աստուծոյ. որպէս և ինքն իսկ ասէ բերանով սուրբ մարգարէիցն. Ես եմ, ես եմ, ի սկզբանէ նոյն մինչև յաւիտեանս. ոչ տամ զփառս իմ այլում, և ոչ զքաջութիւնս իմ դրօշելոց:

24. « Զայս գիտելով, եղբարք, մի թուլութեամբ լքանիցիմք, այլ պնդութեամբ սրտիւ և հաստատուն հաւատովք կամակարութեամբ յարձակեսցուք ի վերայ թշնամեացն, որ յարուցեալ գան ի վերայ մեր: Մեր յոյս մեզ կրկին երևի. եթէ մեռանիմք՝ կեամք, և եթէ մեռուցանեմք՝ մեզ նոյն կեանք առաջի կան: Յիշեսցուք

զբանն Առաքելոյ, որ ասէ, թէ փոխանակ ուրախութեանն՝ որ նմա առաջի կայր, յանձն էառ զհամբերութիւն մահու, և մահու խաչի. վասն այսորիկ և Աստուած զնա առաւել բարձրացոյց, և ետ նմա անուն՝ որ ի վեր է քան զամենայն անուն. զի յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց[1]:

25. « Եւ քանզի որ ճշմարտութեամբ միացեալ է ընդ որդւոյն Աստուծոյ, հոգւոյն աչօք տեսանէ զաներևոյթ յատակ լոյսն ճառագայթից իմանալի արեգականն, որ յամենայն ժամ և յամենայն օր գեր ի վերոյ ծագեալ երևի ամենեցուն, և սրբատեսիլ և սրբահայեացս անպղտոր յստակութեամբ ձգտեցուցանէ զհայեցուածս, և թափանցանց եղեալ ընդ երկինս՝ յանմատոյց տեսիլն մերձեցուցանէ, և կորովութեամբ կշռէ զերկրպագութիւն զերից հաստուածոյն միաւոր զօրութեանն: Եւ արդ որ ընդ Աստուծոյ աստիճանն անփոխ եղեալ իցէ, և բարձրութեամբ յարքունիսն հասեալ, և զամենայն մեծութիւն բովանդակ տեսեալ, նա միայն է որ ժառանգէ զանանց ուրախութիւնն և զանտրտմական մխիթարութիւնն:

26. « Արդ, տեարք իմ պատուականք, յետ այսչափ ի բարձունս վերանալոյ, այսրէն յերկիր անկեալ թաւալգիմք, այլ տեղի առեալ անդրէն ի բարձրութեանն հաստատեսցուք: Թէպէտ և հայեսցուք ի ստորին կողմ երկրիս, տեսանեմք զսա լի ամենայն ապականութեամբ և անսուրբ պղծութեամբ: Քանզի զի՞նչ աղէտք տարակուսի են, որ ոչ գործին յերկրայինս ախտաբերս. թշուառութիւնք աղքատաց և անթիւ չարչարանք նոցուն, աղցաւոր ծանրութիւնք հարկահանաց[2], զզուանք և կոփանք ի բռնաւոր ընկերակցաց, քաղց և ծարաւ ըստ կարօտութեան բնութեանս: Սառնամանիք ձմերայնոյ և խորշակք ամառայնոյ[3], հիւանդութիւնք տարաժամք և ախտք մա-

1. Թուղթ Պաւղոսի առ Փիլիպպեցիս Գլ. Բ:

2. Դեռնդ որ անշուշտ շատ մը չինականաց կ'ուղղէր խօսքը, չէր կրնար աւելի յարմար բան մը յիշեցնել նոցա քան ի հարկահանաց կրած նեղութիւնները:

3. Ճշգրիտ նկարագիր Հայաստանի կլիմային. Թէպէտ Մեծ և Փոքր Հայք Սպանիոյ լայնութեան աստիճանաց ներքև կը գտանին, բայց ջերմութիւնը տեղէ տեղ այնքան կը տարբերի որ, կարծես թէ Սառուցեալ և Այրեցած գօտ-

Հարեւք հանապազ տանջեն զմարդիկ. երկիւղ արտաքնոյ և արհաւիրք ի ներքնոյ անդադար ի վերայ հասանեն. ցանկան մահու յառաջ քան զժամանակն, և ոչ գտանեն. և բազումք են՝ որ փորեն և խնդրեն, և խնդալից լինին յորժամ գտանեն: Իսկ որ թուին մեզ, եթէ յաջողեալք են ի մեծութեան և փափկանան ուրախութեամբք ի պակասելի կեանս, մեծամեծալ հպարտանան յանցաւոր մասունս աշխարհիս, նոքա են՝ որ կուրացեալ են ի ճշմարիտ կենացն: Իսկ արդ զի՞նչ այն չարիք իցեն՝ որ ի նոսա ոչ գործիցին. ընդ մեծութիւնն խառնեալ է յափշտակութիւն ընչից աղքատաց, ընդ սուրբ ամուսնութիւնն՝ գէճ պղծութիւն: Յորս վայելեն ընտրութեամբ, նոցուն երկրպագութիւն իբրև Աստուծոյ մատուցանեն, մոլորեալք ի ճշմարիտ կենացն:

27. « Ո՞չ ահա աշխարհս ամենայն արարչին բոլորեցուն է գոյացութիւն. և զոր նոքայն պաշտեն և պատուեն՝ ապաքէն ի մին նիւթոյ է մասն. իսկ արդ մասունքն մասանց կան ի ծառայութիւն: Զի եթէ մի մասն աշխարհիս ապականացու է, հարկ է թէ և ամենայն մասունքն ընդ նմին ապականին: Նա և ի մասանց անտի՝ պարտ է թէ և ընտրութիւնք երևեսցին. իսկ արդ որ լաւ է՝ յայտնի է ամենեցուն, և որ գիտէն իմանալ՝ նա է ըն-

ւոյն մէջտեղը գտնուած այլևայլ սարահանաց կլիմայները միանգամայն կը պարունակեն. և աւելի զարմանալին է, որ այդ հակառակ կլիմայներն շատ անգամ ի միում վայրի կը տեսնուին։ Այսպէս՝ ի Կեսարիա որ հիւսիսային 38° 42' աստիճանին տակ է և ծովու երեսէն 1,195 մեդր բարձր. ձմեռը Ամստերտամի չափ ցուրտ և ամառը Թուլուզի հաւասար տաք է։ Ցերզրում ձմեռը Մոսքուայի և Սուրբ Բետերսբուրգի չափ ցուրտ, գարունը Համպուրկի նըման, իսկ ամառը Բրակայի ամառուան չափ տաք է։ Երիվանայ ձմեռը Բեդրըսպուրկինին հաւասար սաստիկ է (ջերմաչափը երբեմն զրոյէն 30 աստիճան վար կ'իջնայ), իսկ ամառը շուքի մէջ մինչ 45 և յարեւու 50 աստիճան կը բարձրանայ։ Որմիոյ ձմեռները (37° 30') ընդհանրապէս Րիկայիններուն (58°, 23') չափ ցուրտ են մինչդեռ ամառը Նիսի և Լիսպոնայի չափ տաք է։ Աւելորդ կը համարինք ասել որ ամառուան և ձմերան մէջ ջերմութեան այդ ահագին տարբերութիւններդ ամէն տեղ նոյնքան մեծ չեն. բայց մեր յառաջ բերած չորս օրինակները քիչ շատ գաղափար մը կրնար տալ Փոքր Ասիոյ և Հայաստանի կլիմային. այսու ամենայնիւ դրից բարձրութեան և անխնամ օդոյ պատճառաւ ընակիչք առ հասարակ քաջառողջ են և յաղթանդամք. (Տես Պ. Չիհաչեֆի Փոքր Ասիան և Une page sur l'Orient։

տիր ի մտանցն: Ապա թէ այդ այդպէս է, քան զամենայն պաշտամունս հեթանոսաց, որում երկիր պագանեն, երկրպագուքն են առաւելեալք քան զանբան տարերսն, որոց չարաչար կան ի ծառայութեան. և զէն Աստուած՝ որ ի մարդ կերպարանեցաւ՝ չպաշտեն, այլ արարածոց տանին երկրպագութիւն. որոց մեղաց չիք քաւութիւն յարդար ատենին:

28. «Ո՛ն անդր ի բաց թողցուք զխաւարային խորհուրդս մոլորելոցն. եղկելիս և ողորմելիս քան զամենայն մարդիկ գտեալ համարեսցուք. մանաւանդ զի կամօք են կուրացեալք և ոչ ի հարկէ, և ոչ երբէք գտցեն զճանապարհն ճշմարտութեան: Այլ մեր բացահայտեալ աչօք տեսեալ զլոյսն երկնաւոր, մի պատահեսցէ մեզ խաւարն արտաքին: Զի դէք էին ի խաւարի, եկն առ նոսա լոյսն ճշմարիտ, կուրացեալք վրիպեցան ի կենացն. իսկ որք ընկալայքդ հաւատովք՝ որդիք էք և ոչ օտարախորթք, սիրելիք և ոչ թշնամիք, բաժանորդք և ժառանգորդք վերին իմանալի քաղաքին:

29. «Անդ է առաջնորդ փրկութեան մերոյ. սա քաջութեամբ նահատակեցաւ, և զնոյն ուսոյց ամենայն նիզակակից գործակցաց իւրոց առաքելոց. յորմէ և դուք էք այսօր կրկին երեեալք, օրհնեալք հաւատովք ընդդէմ աներևոյթ թշնամւոյն, պատենազէն զրահիւք դէմ ընդդէմ ընկերակից սատանայական գործոյն: Եւ եթէ այսպէս և եթէ այնպէս, զերկոսեան կողմանսն ի պարտութիւն մատնէք, որպէս և Տէրն ինքնին արար. աշխարհի թուեցաւ թէ մեռաւ, այլ նա յայնժամ տարաւ զկատարեալ նահատակ առաքինութիւնն. զախոյեանն ընկէց, զպատերազմն եհար, զթշնամին ցրուեաց, զաւարն ժողովեաց, զգերին դարձոյց, զպարգևսն բաշխեաց ամենայն սիրելեաց իւրոց ի ձեռն իւրաքանչիւր առաքինութեանց:

30. «Գիտէք դուք ամենեքեան, յառաջ ժամանակաւ հասեալ ձեր ի գործ պատերազմի, թէպէտ և էր ձեր սովորութիւն՝ քաջանայից հանապազորդել ի մէջ բանակին, ի ժամ ճակատուցն յանձնեալ ձեզ ի նոցանէ արօթիւք՝ յամուր տեղւոջ ուրեք թողուլք զնոսա. իսկ այսօր եպիսկոպոսք և երիցունք և սարկաւագունք, սաղմոսեր-

գունդք և գլխակարգացք իւրաքանչիւր կարգեալ կանոնաւ՝ իբր վառեալք զինու և պատրաստեալք ի պատերազմ, կամին ընդ ձեզ յարձակել հարկանել զթշնամիսն ճշմարտութեան: Եւ եթէ մեռանել ևս հասանէ ի նոցանէ, սակայն և յայնմանէ ոչ են զանգիտելոց. քանզի լաւագոյն զմեռանելն կամին քան զմեռուցանելն: Որպէս զի կրկին աչս ստացեալ ունիցին. հաւատոյ աչօք զքարկոծանս մարգարէիցն տեսանեն, և մարմնոյ աչօք զքաջութիւն ձերոյ նահատակութեանդ: Մանաւանդ թէ ի ձեզ զերկոսեան իսկ տեսանեմք. քանզի և դուք իսկ տեսանէք զչարչարանս սուրբ առաքելոցն և զպանծալիս զամենայն սուրբ մարտիրոսացն, որոց մահուամբն հաստատեցաւ սուրբ եկեղեցի, և հեղումն արեան իւրեանց եղև ի պարծանս վերնոցն և ներքնոցն: Արդ մինչև ի գալուստն երկրորդ՝ նոյն նահատակութիւն կատարի չարչարանօք¹ »:

31. Ցայս վայր խօսեցաւ ի գիշերին յայնմիկ սուրբ երէցն Ղևոնդ, և փառաւորելով կատարեաց զամէնն ասելով: Եւ սկսան ուղղեալ՝ զամենասուրբ խորհուրդն կատարեցին. ուղղեցին և աւազան, և եթէ գոյր ոք երախայ ի բազմութեան զօրուն՝ զգիշերն ամենայն մկրտեցին. և ընդ առաւօտս սուրբ օրինացն հաղորդեցան, և այնպէս լուսազգեստ եղեն՝ որպէս ի տերունեան մեծի սուրբ զատկին: Եւ մեծաւ զուարճութեամբ և յոյժ խընդութեամբ աղաղակեաց ամենայն բազմութիւն զօրացն և ասեն. Հաւասարեսցէ մահ մեր ընդ մահու արդարոցն, և հեղումն արեան մերոյ ընդ արիւն սուրբ մարտիրոսացն. և հաճեսցի Աստուած կամաւոր պատարագաւս, և մի տացէ զեկեղեցի իւր ի ձեռս հեթանոսաց:

1. Թէոդոսիոյ տպ. կը յաւելու «առաքինեացն և ընտրելոց նահատակացն յորոց միջի և դուք էք հանդիպեցեալ այսօր, և հրաւիրեալ ի լուսաւորչացն ձեր սրբոց հասանել ի գունդս նոցա և ժառանգորդս խոստացելոցն լինել անանց բարութեանց ի Քրիստոսէ Յիսուսէ, որ է օրհնեալ յաւիտեանս »:

# ՎԵՑԵՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

## ԿՐԿԻՆ ԱՆԳԱՄ[1] ԸՆԴԴԷՄ ԿԱՅ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԱՒ

## ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ

1. *Յետ այսորիկ իբրև ետես զօրավար գնդին Պարսից[2], եթէ հատան պատգամաւորքն ի միջոյ[3] խաբել զնոսա, և բարձաւ յոյս ակնկալութեան իւրոյ ցրուել ըզնոսա յանքակ միաբանութենէն, յայնմ ժամանակի յառաջ կոչէր զանօրէնն վասակ և զամենայն ուրացեալ իշխանսն, որ էին ընդ նմա յաշխարհէն Հայոց. հարցանէր զնոսա, և ուսանէր ի նոցանէ զհնարագիտութիւն յաղթութեան: Եւ իբրև ուսեալ տեղեկացաւ զառն առն իւրաքանչիւր քաջութիւնս, կոչէր և զբազումս ի զօրագըլխացն՝ որ էին ընդ իւրով ձեռամբ, և հրամայէր ածել զառաջեաւ զերամակս փղացն, և ի գունդս գունդս զգազանսն բաժանէր, և առ մի մի փիղ երեք հազար սպառազէնք[4]. թող զայլ զօրսն ամենայն:*

1. Առաջին ընդդիմակալութիւնը Ճօրայ մարզպանին դէմ եղած պատերազմն էր։

2. Մուշկան Նիւսալաւուրտ որ էր ընդհանուր հրամանատար զօրացն Պարսից։ Փարպեցին Դողըվհ անուն զլխաւոր զօրավար մը ալ կը յիշէ (էջ 201) առանց զրուցելու մեզ թէ ինչ էր այս վերջնոյս պաշտօնը կամ դիրքը Նիւսալաւուրտի նկատմամբ։

3. Այս է պակասեցան կամ չյաջողեցան երիցունքն ի հաւան ածել զվարդանեանս կամ երկպառակել զնոսա. Յ. Ե 15։

4. Որովհետև երկիրը տափարակ, կամ մեր հեղինակին գործածած բառերով՝ մեծ դաշտ մի էր, փղերը և սպառազէն հեծելագունդը աւելի գործ կրնային տեսնել. վասն որոյ զայդօրիկ յառաջ կը կոչէր Նիւսալաւուրտ։ Իսկ թեթև այրուձին որ կը բաղկանայր ի Կատոշաց և հաւանօրէն ի Հոնաց, ի Գեղաց, և յԱպարհայիկ զօրաց, առ այժմ երկրորդական կամ սպասողական դրից մէջ պիտի կենայր, պատրաստ զՀայս հալածելու

2. Խօսէր և ընդ մեծամեծսն արքունի հրամանաւ և ասէր. Յիշեցէք այր իւրաքանչիւր զպատուէր մեծ թագաւորին, և դիք առաջի զանուն քաջութեան. ընտրեցէք զմահ քան զկեանս վատութեամբ: Մի մոռանայք զիւղն և զպսակն և զուսն[1] և զաստուածեան պարգևսն, որ շնորհի ձեզ յարքունուստ: Տեարք էք իւրաքանչիւր գաւառաց, և ունիք իշխանութիւն բազում: դուք ինքնին գիտէք զքաջութիւն աշխարհին Հայոց և զառն առն իւրաքանչիւր նահատակութիւն արութեան. գուցէ ձեր ի պարտութիւն մատնեալ, կենդանեաւ վրիպիցէք ի մեծ կենացն զոր ունիք: Յիշեցէք զկին և զորդիս ձեր, յիշեցէք զսիրելի բարեկամս ձեր. գուցէ անանհար լինիցիք յարտաքին թշնամեաց և ողբակիցք նեղքին սիրելեացն[2]:

եթէ ի փախուստ դառնային կամ յետս ընկրկէին: — Յուլիանոս կը պատմէ թէ Մծբնայ վրայ յարձակելու ատենն ալ Շապուհ երկրորդ փղերուն մէջ աղեղնաւորք սպառազէն այրուձի կեցուցեր էր (Յուլիանոսի՝ պատմ. Սասանեանց էջ 163): Իսկ փղերուն քամակին վրայ երկաթեայ աշտարակներ կը բարձրանային, որոց մէջէն աղեղնաւորք կ'արձկէին նետերնին: — Նոյն եղանակաւ կը գործածէին զփիղս և Սելևկիացիք, այս տարբերութեամբ որ գինւով և զմռսաւ կը կատղեցնէին զգազանսն: «Կազմեցին պատերազմի զփիղսն, հաշակեցուցին յարիւն խաղողոյ, ի զմուռս և ի գինի: Եւ կարգեցան բաշխեցին ի գունդս գունդս, և կարգեցին առ փիղ փիղ՝ հազար հազար այր սպառազէն. և պահապան գլուխ գնդիցն՝ հինգ հազար հեծեալ վառեալ նժոյգ ի ձեռն պաշտպան գնդիցն. զի ուր և կային գազանքն՝ կային և նոքա, և ուր և գնային՝ գնային և նոքա. և փայտակերտ մարտկոցս ամրականայիւք ի վերայ փղացն կազմեցին, և զփղապանն ի վերայ զըլխոյն նստուցին, և զայլ այրուձին յաջ և յահեակ թևս գնդին կազմեցին». Մակաբ. ա. գլ. Զ. 39:

1. Պսակի վրայօք տես Էր. 196. ծն. 1: Հին աշխարհին մէջ իւղն այնքան ազնիւ բան մի համարեալ էր, որ մազդեզն արդարոց հոգիք արքայութեան մէջ իւղով պիտի օծանէին. Pahlavi texts 83. ծն 5: Իսկ ուս որ է բարունակ որթոյ, գուցէ պսակ շինելու համար կը տրուէր կամ այգի տնկելու:

2. Աստուածպաշտոյ տպագիրն՝ որպէս եղաք. Մխիթարեանց և Թէոդոսիոյ տպագիրքն՝ ողբակից ի նեղքին սիրելեացն: Հայկազեան բառարանն ալ երկու նշանակութիւն կու տայ ողբակից ածականին. 1 Կցորդ և ընկեր ողբոց. 2. Ողբալի յայլոց: Եւ այս երկրորդ իմաստիս ի հաստատութիւն ի մէջ կը բերէ Եղիշէի այս խօսքս, որ անշուշտ գրչագրի վրիպակ մ'ունի: Եթէ ուրիշ օրինակ մը չկայ, հարկ չեմք տեսներ նոր նշանակութիւն մը հնարելու, զոր չներեր բառին կազմութիւնը, և զոր չունին ցաւակից, վշտակից և այլ նոյնաձև անունները: Սիրելեաց՝ սեռական՝ յատկացուցիչ պէտք է որ ըլլայ, որպէս ի տպագիրն Աստուածպաշտոյ: Նիւսալաւուրտի խօսքը ուղղեալ են իր մեծամեծացը, որք եթէ պատերազմին տագնապէն վատութեամբ հեռու կենային,

3. Նա և յուշ ես առնէր նոցա զբազում ընկերակիցս փախուցեալս, որք թէպէտ և ի պատերազմէն ապրեցան, սրով ընկալան զվճիռ մահուն իւրեանց. ուստերք և դստերք և ամենայն ընտանիք իւրեանց յանաշխարհիկս գերեցան, և ամենայն հայրենի գաւառք հատան ի նոցանէ[1]:

4. Զայս ասէր, և առաւել քան զայն սատակացուցանէր զհրամանն արքունի: կարգէր կազմէր զզօրսն ամենայն, և տարածանէր երկայնէր զճակատն յերկայնութիւն դաշտին մեծի: Եւ իւրաքանչիւր գաղանայն յաջմէ և յահեկէ զերեքհազարեան սպառազէնն պատրաստէր, և զընտիր ընտիր նահատակացն շուրջ զիւրեաւ գումարէր. այսպէս ամրացուցանէր զգունդն մատեան[2] իբրև դաշտա-

կինային ապահովապէս մահուընէ ազատիլ. «Եթէ յաղթուիք, կ'ըսէ, ի թըշնամեաց անարգեալ ոտնհար լինիցիք, և երբ ձեր երկիրը գաւառայք, բարեկամաց և սիրելեաց հետ ողբալու և լալու պիտի հարկադրուիք, որովհետև պիտի զրկուիք ձեր տէրութենէն և իշխանական պատուէն»:

1. Տես Յ. Բ 73 ծան. 2:

2. Մատեան գունդը փղաց գունդը չէ. Եղիշէ կ'ըսէ թէ Մատենի հեծելագընդին մէջ մարտկոցաւոր փղեր խառնելով Նիւսալաւուրտ կ'ամրացնէր զայն. որով ամէնքը միանգամայն հզօր աշտարակի կամ անմատոյց բերդի մը կը նմանէր: Բայց գաղանաց մեծագոյն մասը բանակին ետևը կը կենար և սոցա հրամանատարն էր Արտաշիր: Իսկ Մատեան գունդը՝ զոր օտարազգիք «Անմահից գունդ» կը կոչէին, ըստ վկայութեան Հերոդոտեայ, 10,000 ընտիր այրուձիէ կը բաղկանար, ու առանձին գլուխ ունէր. անմահ ըսուելուն պատճառն ալ այն էր՝ որ երբ մէջերնէն մէկը մեռանէր, տեղն անմիջապէս ուրիշ մը կը դրուէր, որով թիւը երբէք չէր պակսեր (Հեր. գիրք Է. գլ. 83): Յոյն պատմագրին տուած այդ տեղեկութիւնքը Քսերքսեսի զօրաց համար են. բայց Պրոկոպիոս՝ պատմիչ Զ դարու, կ'ըսէ թէ Սասանեանք վերահաստատեցին զԱնմահից գունդն: Իսկ ի մեզ՝ գուցէ ես Պարսից մէջ Մատեան կոչուելուն պատճառը, սոցա յատուկ մատենի մէջ յանուանէ արձանագրուած լինելն է անշուշտ, որպէս նախկին Աթենացիք ալ ունէին մատեան մի (rôle) յորում կ'արձանագրէին ստուարազէն հետևազօրաց մէջէն զքաղաքացիս միայն. ի բաց թողլով զեկամուտն որպէս և քաղաքացւոց ամիկ կարգը՝ իբրև չքաւոր և անկարող զինուորին անկած կազմածքն հայթհայթելու և ծախքերն ընելու (Տես Թուկիդիդէս՝ Գ. Զ. 43): Հայոց ինքնիշխանութեան առեն զօրաց ընտրագոյն և կանոնաւոր մասը Մատեան կը յորջորջէր. «Հրաման եա արքայ Խոսրով Դատարայ նահապետի Բզնունեաց, գուգաղ հանել յաշխարհէ առաւել քան զչափն. և զհամար զօրուն Մատենի գընդուն ընդ առաջ նոցա խաղալ հատանել ի դիմի հարկանել, արկանել զթշնամին». Բուզանդ էջ 19: Մատիկան՝ բահլաւի և մատեան՝ բազանտ լեզուաւ է որպէս հայերէն մատեան, գիրք, վէպ, պատմութիւն. Տես Pahlavi-Pazand

բակ մի հզօր և կամ իբրև զբերդ մի անմատոյց։ Նշանս բաշխէր, դրօշս արձակէր[1], և ի ձայն մեծի փողոյն[2] պատրաստ հրամայէր լինել։ Իսկ զգունդն զապարհայիկ[3], և զկադուշայս և զՃոնաց և զԳեղաց, և զայլս ևս ամենայն զընտիր ընտիր զօրուն մարդիկ ի մի վայր ժողովէր, և

Glossary։ — Խօսրով Ա. Նուշիրվան՝ զօրքը կարգադրելու ատենը կը պատուիրէ համարակալին Պապէքայ, որ զինուորները մի առ մի աչքէ անցնէ. «եթէ զէնքերնին և կազմածնին ամբողջ են, արձանագրէ տումարին մէջ, և ամէն անգամ որ թոշակ վճարելու ըլլայ, քննէ թէ զէնքերը կատարեա՞լ են. եթէ պակաս ըլլան, մի՛ վճարեր»։ Տես Թաբարի և Միրխոնտ։

1. Բուզանդայ մէջ՝ «նշանաց վառեալք կարգեալք կազմեալք ի պատերազմի, ի մի վայր գումարեալք. Նշանս արձակեալս, դրօշս փողփողեալս. էջ 254. 187։ — Եւ նշանակիր մի ի Մերուժանայ, իբրև ետես զԱրտաւազդն, յընչացս երաց. զի տեսանէր զնա պատանեակ մի կայտառ անմօրուս, երեսօք գեղեցիկ, այլ զնշանն զնիզակաւն պատեալ յարձակեցաւ ի վերայ նորա»։ 254։ — Թէ Նշան և դրօշ որոշ որոշ բաներ կը նշանակեն՝ տարակոյս չունիմք։ Չորրորդ Ցեղանակին վերջը Պարսից զինուորական կազմութեան վրայ խօսած ատեննիս նշաններուն ինչ կերպ ըլլալը նկարագրեցինք. Եղիշէի տուած ակնարկածն ալ ասոնցմէ ըլլալու են և ոչ կտաւեայ, թէպէտ Բուզանդ Նշան բառով կտաւէ դրօշակ կ'իմանայ։ Իսկ Սասանեանց կտաւէ դրօշից ձեւին վրայօք տեղեկութիւն մի չունիմք։

2. Փողն մեծ՝ յարձակման նշանը կուտար կամ զօրագլխին հրամանը կը հռչակէր, և աւելի փոքր փողեր կ'երկրորդէին նոյն հրամանը։ Այդ մեծ փողդ գալարափողն ըլլալու էր. Տես Եր. 366. ծն. 1.

3. Ապարհայիկք, Կադիշք և Գեղք Կասբից ծովուն արեւմտեան հարաւային եզերաց լեռնցի և կէս վայրենի ժողովուրդներն էին։ Պտղոմէոսի և Ստրաբոնի տուած տեղեկութեանց նայելով՝ Կադիշք (ըստ յոյն պատմչաց Cadiseni կամ Caduseni) բնակէին այժմեան Թալիշ նահանգը։ Կադուշաց երկիրը կը նկարագրի ի Պլուտարքոսէ իբրև դժուարամատոյց և մգամած, ուր ոչ ցորեն և ոչ ուրիշ արմտիք կը բուսնէին, և որ զինք պատերազմասէր բնակիչս միայն վայրի տանձով և խնձորով և սոյնց նման պտուղք կը սնուցանէր. հմտ. Դ. 438։ Խորենացւոյ Աշխարհացոյցին մէջ սոցա երկիրը Կադուշան կոչեալ է. Լթ։

Գեղք կամ Gelae, բնակիչք այժմեան Կիլանի, որ տակաւին նոցա անունը կը կրէ (Կիպպըն հմտ. Ա. էջ 441. ծն)։

Թէոդոսիոյ տպ. զգուշեղն ապարհացի։ Ստրաբոն Կասբից ծովուն հարաւային եզերքը բնակող ազգաց վրայ խօսած ատենը կը յիշատակէ զԱնարիս (Anariaces), զԱմարդս և զՎրկանս։ Կ'երեւի թէ ի սոցանէ ամենէն աւելի յարեւմուտս և Կադուշաց մերձակից գտնուողը Անարիք էին, որոց գլխաւոր քաղաքն էր Անարիակէ՝ մօտ ի ծովն։ Ստրաբոն կը յաւելու սակայն թէ այլեայլ Պարհասեանք (Parrhasiens) իրենց բնակութիւնը Անարեաց մէջ հաստատելով այս վերջինքս իւր ժամանակը Պարհասեանք կը յորջորջէին։ Այդ ժողովուրդ է Եղիշէի Ապարհայիկ կոչածն, որոյ բնակութեան վայրն էր այժմեան Մազանտէրան գաւառը։

Հոնք՝ Ճորայ պահակէն բերուած զօրք ըլլալու էին։

*հրաման պատուիրանի տայր ընդ աջմէ կողմանէ[1] գնդին իւրոյ պատրաստ լինել ընդդէմ Հայոց զօրավարին։*

5. *Իսկ արին Վարդան յառաջ մատուցեալ և զաւագանին հարցանէր, և միաբան ամենեցուն խրատու բդ-զօրագլուխն կարգէր։ Զգունդն առաջին[2] տայր ի ձեռն իշխանին Արծրունեաց, և նիզակակից նմա զմեծ իշխանն Մոկաց[3], և զայլն ամենայն նախարարեան համհարզս երկոցունց, և զամենայն բազմութիւն գնդին[4] ժես առ-*

1. Ուրեմն Վարդան Հայոց բանակին ձախ թևը բռնած էր, ինչպէս որ կը գրուցէ մեզ փարպեցին։

2. Այս է միջոցի գունդը։ — «Միջոցի գնդին կարգէր գլխաւոր զՏէրն Արծրունեաց և զմարդպետն Մեհրշապուհ, հանդերձ իշխանաւն Արշարունեաց Արշաւրաւ և Արտակաւ իշխանաւն Մոկաց և այլ աւագ նախարարօք. և կողմանն աջոյ կարգէր աւագ զՄախազ Խորէն հանդերձ Թաթլաւ տեառն Վանանդայ և Ներսեհիւ Քաջբերունւոյ և այլ աւագ նախարարօքն. և ընդ ահեկէն կողմանէ պատրաստէր զինքն իւրով գնդովն և իշխանաւն Առաւեղենից Փափագաւ և այլ իշխան նախարարօքն Հայոց. քանզի յայն կողմանէ առաւելապէս երևէր Պարսից գնդին սիւնի զօրուն և այլ զօրաւոր արանց նշանք գրօշիցն։ Եւ զՀամազասպեան զիւր եղբայրն Թաթուլ վերջապահ»․ Փարպեցի։

3. Որոյ անունն էր Արտակ (Ց. Բ 61)։ Բայց Եղիշէ աւելի յառաջ Վարդանայ նիզակակցաց անուններն տուած ատենը չյիշեց զիշխանն Մոկաց (Ց. Է. 3), որ ամենայն Արտաշատայ ժողովոյն ներկայ էր (փարպ. 126) և էր այր համեստ, մտացի և քաջ զոր առաւելապէս պատուով սիրէր Վարդան (նոյն 148)։ Աւարայրի մէջ մեռնող Արտակն՝ Պալունեաց տոհմէն սեպուհ մի էր (փարպ. 213)։ և ոչ մեծ իշխանն Մոկաց, որ կ'երևի թէ պատերազմէն ապրելով Մոկաց անմատոյց առապարից մէջ առանձնացեր էր․ քանզի այնուհետև խօսքը չըլլար։

4. Պարբերութիւնս շփոթ է քիչ մը, Եղիշէ կ'ուզէ ցուցանել մեզ միջին գնդին կազմութիւնը․ Ներշապուհ Արծրունեաց զօրք այս գնդիս մէջ տեղը կը կենար, նիզակակից ունենալով զիշխանն Մոկաց․ շատ մը ուրիշ նախարարները իւրեանց զօրօք այս երկուքին աջ և ձախ կողմը կը բռնեն, և ամէնը միանգամայն կը կազմեն միջին գունդը։ Խորենայ գունդը բանակին աջ թեւն էր (փարպ 210) իսկ Թաթլայ գունդը ձախ թեւը պէտք էր ըլլալ։ Իսկ ինքն Վարդան՝ չորրորդ գունդ մ'առաւ պահեստի և հաւանօրէն միւս երեքին կռնակն անցաւ ի սկզբան՝ պատերազմը վարելու և հարկ եղած տեղը հասնելու համար։ Ճակատին իրեք գնդերն բաւական ատեն լաւ ընդդիմացան Պարսից յարձակմանց, մանաւանդ թէ երբ ասոնց բանակը տեղւոյն դժուարութենէն չէր կրնար շարժիլ, Հայք մղեցին ձիերնին Տղմուտի մէջ ու պարսկական զօրաց գտնուած եզերքը բռնեցին․ առաջին յաջողութիւնը Հայոցն էր։ Սակայն երբ Վարդան տեսաւ որ իւր ձախը կը տկարանայր ու յետս կը մղուէր, իւր գնդաւն կամ առանձինն անդ վազեց։ Ձախակողմը բռնեց։ Անդ իմացաւ անշուշտ, որ առանց իւր ձեռամբ կարգէ դուրս հարուած մը տալու թշնամւոյն, կարելի պիտի չըլլար իւր միջին և աջ թեւերուն համար երկար ժամանակ դիմակալել․ ուստի

տի և անուն կամէր նոցա: Եւ զգունդն երկրորդ տայր ի ձեռն Խորենայ Խորխոռունեաց, և նիզակակից նմա

յանդուգն և թերևս յուսահատական փորձ մը փորձել ուզեց որ աւելի նպաստաւոր պարագայից մէջ յաջողեր էր երբեմն Հռովմայեցւոց. պատռել ծակել թշնամի բանակը, հանիլ ու մտնել փղերուն մէջ, վիրաւորել կատղեցնել զգազանս, որով կը քակէր ու կը պղտորէր զկազմս և զասպարս Պարսից: Իրեն ընական արագութեամբ և բուռն քաջութեամբն ի գլուխ հանեց այդ զարհուրելի խորհուրդը ու քիչ մը դեռ՝ և ահա Մամեան գունդը ի փախուստ պիտի դառնայր. բայց Հայոց միջին և աջակողմեան գնդերն, որք զուրկ էին Վարդանայ ներկայութենէն չկրցան պինդ կենալ ու զօրաց մէկ մասը կը քաշուէր ի հովիտս լերանց: — Յայնժամ Մուշկան ժողվեց զիւր բոլոր զօրութիւն Վարդանայ վրայ, պաշարեց զնա և խորտակեց վերջապէս նորա գունդը, որ երկար ատեն դեռ կռուեցաւ Վարդանայ անկմանէն ետքն ալ:

Այդ է ահա Եղիշէի նկարագրութենէն մեր առած գաղափարը. աւելի կատարեալ տեղեկութիւն ուզողները պարտին ընթեռնուլ Ալիշան Վարդապետի «Կարմիր Վարդանն» ի Յուշիկս հայրենեաց. հատ. Ա: Թէպէտ հեղինակը պատերազմին ելքը անորոշ թողուց, կ'ըսէ. այդ տեսութիւնդ հաւանական չթուիր մեզ (տես և զփարպ. 212). վասն զի եթէ Հայոց բանակը ամբողջ կեցած ըլլար պատերազմին առաջին օրը, պատճառ մը չկար անմիջապէս ցրուելուն. պատճառ մը չկար դարձեալ որ երկրորդ օրն ալ նոյնպէս չկենային, ու այնքան պատերազմողաց մէջէն մէկը՝ գոնէ ժամանակ մը Վարդանայ պակասը լեցուցած կը լինէր: Բայց Հայոց համար ինչ յաջողութիւն կրնար սպասուիլ երբ մէկ կողմանէ Սասանեանց բազմաթիւ և սնդակազմ և պատերազմափորձ բանակը Հայոց մէկ մասին հետ միացած՝ քաջ առաջնորդեալ բայց արտորինք հաւաքուած զօրաց հետ կը կռուէր արձակ դաշտի վրայ: Անշուշտ եթէ Վարդան Հայաստանի լեռներուն և հովտին զարմանազան կերպարանութենէն օգուտ քաղելով թողուր որ Պարսից բանակը ներս մտնէ տարածուի, ու զայն չարունակ նեղելով, պաշարը կտրելով յոգնեցնէր, շատ աւելի երկար կը դիմանար, գուցէ և բոլորովին կը յաջողէր, ինչպէս ըրաւ և յաջողեցաւ պատերազմէն երեսուն և հինգ տարի վերջը իւր եղբօրորդին Վահան: Բայց ասոր համար երկրին աւերումը՝ բնակչաց սպանումը պէտք էր յանձն առնուլ. և որ ոք կը մտաբերէ Արարատայ այն ժամանակին բարօրութիւնը ու հարստութիւնը (տես փարպ. 22–29) որում նմանելու էին քիչ շատ ուրիշ նահանգներն, չկրնար մեղադրել զՎարդան թէ ինչո՞ւ զարնուիլ ուզեց Պարսից հետ սահմանաց վրայ (փարպ. 102)։ Մնաց որ guérillaի պատերազմը, յորում շատ անգամ պէտք է փախչիլ թշնամւոյն հզօր եղած ատեն, մանր մանր խայթուածովք ըկել զայն, հոգնեցնել քան մէկ հարուածով խորտակելու ջանալ, և աւելի հնարք և խորամանկութիւն ձեռք առնուլ քան յայտնի պատերազմ տալ, անյարմար էր Վարդանայ կորիճ, վեհական և շիտակ բարուցը: Զմոռնանք սակայն ըսելու թէ մարտիրոսութեան փափագը, որ Յովսեփայ և Ղևոնդի պէս ջերմեռանդն քահանայից ներկայութեամբը կ'արծարծէր, ինչպէս և ժամանակեայ ուրացութեան մը խղճի խայթը Վարդանայ պատերազմական հանճարը քիչ մը շփոթած ըլլալու էր: Փարպեցին կը պատմէ թէ երբ թշնամեաց բանակին մօտ հասան, Պար-

զԸնծայինն[1] և զՆերսեհ Քաջբերունի: Եւ զգունդն երրորդ մատուցանէր ի ձեռն Թաթլոյ Վանանդեցւոյ, և նիզակակից նմա հրամայէր զՑահատ Գնթունի, և զբազումս ի քաջ արանց տանն և անուն ի թիւ նոցա: Ցանձն իւր առնոյր զգունդն չորրորդ, և նիզակակից իւր զքաջն Արշաւիր և զհարազատ եղբայր իւր զՀամազասպեան:
451 Յուն. Կարգէր և կազմէր զճակատն յորդորելով ընդ ամենայն
1 ուրբաթ երեսս դաշտին դէմ յանդիման Արեաց գնդին, առ ափն
Պենտեկոստէ Տղմուտ գետոյն[2]:

6. Եւ իբրեւ այսպէս պատրաստեցան երկոքեան կողմանքն, լի սրտմտութեամբ և մեծաւ բարկութեամբ զայրանային, և գազանացեալ զօրութեամբ յիրեարս յարձակէին երկոքեան. և ամբոխ աղաղակին յերկոցունց կողմանցն՝ իբրեւ ի մէջ ամպոց շփոթելոց ճայթմունս գործէր, և հնչումն ձայնից զքարանձաւս լերանցն շարժէր: Ի բազմութենէ սաղաւարտից և ի փայլման սպառազէն վառելոցն իբրեւ նշոյլք ճառագայթից արեգական հատանէին: Նա և ի բազում սուսերացն շողալ, և ի ճօճել բազմախուռն նիզակացն իբրեւ յերկնուստ ահագին հրաձգութիւնք եռային: Քանզի ո՛վ իսկ է բաւական առել զմեծամեծ տագնապ ահաւոր ձայնիցն, որպէս կոփիւնք վահանաւորացն և ճայթմունք լարից աղեղանցն զլսելիս ամենեցուն առ հասարակ խլացուցանէին:

ոփկք անպատրաստ էին, և «եթէ Հայք կամեցեալ էին՝ կարող էին մանաւանդ այնպէս վճարել երամակարձակ ծուլացելոցն. բայց թող տուեալ գաղարեցին յայնմ աւուր: Քանզի ոչ էր եղեալ ի մտի այնուհետև յաղթել, այլ անձնալի մարտիրոսութեան փութային հասանել»: Մենք չենք ուզեր հաւատալ, որ Վարդան այդպիսի յանցանք մը գործած ըլլայ եթէ Եղիշէի մէջ Վարդանայ առ Հայոց բանակն ուղղած խօսքերէն ալ չհետևէր որ նա ոչ թէ յաղթելու յուսով պատերազմի կ'երթար այլ նահատակութեան փափագաւ: Զոր անշուշտ սխալմունք մը պարտ է համարել մարդկային մտաց տեսակէտով: Վկայանալու համար հարկ չկար վաթսուն և վեց հազարաւ յԱւարայր վազել ու պատերազմ փնտռել: Զօրավարին առաջին և միակ պարտքը զթշնամին խորտակել էր երբ և ուր որ հանդիպէր. սակայն միայն իւր կրօնքը և երկիրը պիտի ազատէր: Եթէ Վարդան այդ նպատակին միայն դէտ եղեալ չարժած ըլլար, իւր քաջութեամբ և երկար փորձառութեամբը գուցէ ուրիշ տեղ և ուրիշ միջոցներով մեծագոյն վնաս կրնար հասուցանել թշնամւոյն:

1. Այս է Արսէն Ընծայացի (Յ. Ն. 3. ծան. 5). Տես և Յ. Ջ. 14:

2. 1 Յունիս 451. յաւուր Ուրբաթու Պենտեկոստէի:

7. *Անդ էր տեսանել չասալ մեծի տագնապին և զաղէտս անրաւ տարակուսանացն երկոցունց կողմանցն, առ ի յանդուգն յարձակմանէն զմիմեանս բախելով. քանզի թանձրամիտքն յիմարէին և վատասիրտքն լքանէին, քաջքն խիզախէին և նահատակքն գոչէին։ Եւ խումբ արարեալ ամենայն բազմութեանն զգետն ի մէջ փակէին, և զանգիտեալ գունդն Պարսից ի դժուարութենէ գետոյն՝ ըզեզերեաւն գնալ սկսան։ Իսկ գունդն Հայոց հասեալ անցանէին, ձի ի վերայ առեալ յարձակէին մեծաւ զօրութեամբ։ Սաստկապէս բախեալք ընդ միմեանս, յերկոցունց կողմանց բազում վիրաւորք յերկիր անկեալ գլխթաւալ խաղային։*

8. *Յայնժամ մեծ տագնապի ի վեր հայեցաւ քաջն Վարդան, և տեսանէր զընտիր ընտիր քաջ նահատակաց Պարսից զօրուն, զի զձախակողմն չարժեցին զՀայոց գնդին. մեծաւ ուժով յարձակէր ի տեղին, և զաջ թեւն Պարսից գնդին բեկեալ՝ արկանէր զգաղանօքն, և շրջան առեալ կոտորէր մինչև ի նոյն տեղի։ Եւ այնպէս չասալ տագնապի ի վերայ հասուցանէր, մինչև գունդն մատեան քակեալ բաժանեցան ի մեծամեծ պատրաստութենէն, դեռ ես քաջ քաջ ի փախուստ դառնային։*

9. *Այս դէտ ակն ի վեր համբառնայր Մուշկան Նիւսալաւուրտն, քակեալ զամանս տեսանէր ի գնդէն Հայոց, և զկնի մնացեալ ի հովիտս լերանց։ Վասն որոյ զաղաղակ բարձեալ՝ քաջալերէր շուրջ զիւրեաւ զզօրս Արեաց, որք զտեղի առեալ կային ընդդէմ գնդին Վարդանայ։ Եւ անդէն ի տեղւոջն երկոքին կողմանքն զպարտութիւն խոստովանէին, և առ յոյժ թանձր անկեալ դիականց իբրև զքարակոյտ դերբկաց երևէին։*

10. *Զայն իբրև ետես Մուշկան Նիւսալաւուրտն, Մայր գաղանացն Արտաշրի[1], որ ի վերայ գաղանացն նստէր ի բարձր գլխանոցին և կամ իբրև յամուր քաղաքի, և ի ձայն մեծ գալարափողոյն[2] զիւր գունդան*

1. Արտաշիր փղաց գնդին հրամանատարն էր, որ կը նստէր գաղանաց կրած աշտարակաց միոյն մէջ։

2. Այս է գալարեալ փող. կարծեմ թէ Պարսից գալարափողը շրջանակաձև չէր այլ պարուրաձև, en spirale, գալարեալ։

առնլէր, և յառաջամարտիկ զօրքն զնա ի մէջ փակէր։ Իսկ կորովին Վարդան խուռն քաջ նիզակակցօքն ոչ սակաւ նախճիր ի տեղւոջն գործեաց, յորում տեղւոջ և
451 ինքն իսկ արժանի եղև առնուլ զկատարեալ նահատա-
2 Յունիս կութիւնն[1]:

11. Եւ յերկարել գործոյ պատերազմին՝ օրն տարաժամէր, և մօտ առ երեկս կարճառէր. բազմաց օրահասք մահու հասանէին, մանաւանդ ի թանձրութենէ անկելոց զխականց մօտ առ մօտ խռնելոց իբրև զփայտահարս մայրաւորաց[2]: Անդ էր տեսանել զբեկումն նիզակացն և զխորտակումն աղեղանց. վասն այնորիկ և ոչ կարէին կալ ճշմարտիւ ի վերայ սուրբ մարմնոց երանելեացն. և սաստիկ խուճապ տագնապի էր կողմանցն երկոցունց անկելոցն: Եւ որ մնացեալքն էին, վանեալք և ցրուեալք լինէին ի լեռնադաշտս և յամուրս ձորոցն. և յորժամ պատահէին միմեանց, դարձեալ միաանգամ զմիմեանս սատակէին: Եւ մինչև ի մուտս արեգականն անդադար լինէր գործ դառնութեանն:

12. Եւ քանզի գարնանային էր ժամանակն, ծաղկալից դաշտքն դառնային յորդահոսանս արեանց բազմաց: Մանաւանդ յորժամ տեսանէր ոք զբազմակոյտ դիականցն անկելոց, սիրտն բեկանէր և աղիքն գալարէին՝ լսել ըղձմնչիւն խոցելոցն և զմռնչիւնս բեկելոցն, զթաւալգլոր խաղալ ողալ վիրաւորացն, զփախուստ վատացն, զթագուստ լքելոցն, զարտաթափումն զանարի արանցն, զճչիւն կանացեացն, զողբս սիրելեաց, զաշխարումն մերձաւորաց, զվայ և զաւաղ բարեկամացն: Քանզի ոչ եթէ կողմ էր՝ որ յաղթեաց, և կողմ էր՝ որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս ելեալ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան:

1. Ճակատամարտիս Թուականն է 26 Մարերի, որ շաբաթ, այս է 2 Յունիս 451։ Եղիշէ Վարդանայ մահուան նկարագիրը ըրած ատեն, միտքը մէջ ունէր Յուդա Մակաբէի նահատակութիւնը. բաղդատէ Մակաբայեցւոց առաջին գրոց Թ գլուխը։

2. Փայտահար է մարդ որ հատանէ կամ հարկանէ զփայտ կամ զծառ։ Մայրաւոր է, 1 Մայրի որ ունի զմայր փայտս. անտառ. 2 Փայտահար կամ պահապան անտառի։ — Կ'երևի թէ Եղիշէ՝ փայտահար՝ իբր փայտ հարեալ կամ փայտի կտորք կ'իմանայ սատանոր. Տես և զՀայկ. բառ։

13. *Բայց քանզի անկեալ էր զօրավարն Հայոց ի մեծ պատերազմին, ոչ ոք գոյր այնուհետեւ ի մէջ գլխաւոր, յոր յեցեալ ժողովէին զունդն միացելոյն: Թէպէտ և բազում այն էր՝ որ ապրեցան, քան թէ որ մեռանն, սակայն ցանեալ ցրուեցան, և հասեալ անկանէին ի տեղիս տեղիս յամուրս աշխարհին, և բանակքն ի վերայ բազում գաւառաց և բերդից, զոր և ոչ առնուլ իսկ ոք կարէր:*

14. *Եւ այս անուանք են քաջ նահատակացն՝ որ անդէն ի տեղւոջն կատարեցան: Յաղգէն Մամիկոնէից քաջն Վարդան*[1] *հարիւր երեսուն և երեք արամբք. յաղգէն Խորխոռունեաց Խորէնն կորովի ինն եւ տասն արամբք. յաղգէն Պալունեաց արին Արտակ յիսուն և եօթն արամբք. յաղգէն Գնթունեաց զարմանալին Տաճատ ինն եւ տասն արամբք. յաղգէն Գիմաքսենից խմաստունն Հմայեակ քսան և երկու արամբք. յաղգէն Քաջբերունեաց հրաշակերտն Ներսեհ եօթն արամբք. յաղգէն Գնունեաց մանուկն Վահան երեք արամբք, յաղգէն Ընծայնոց արդարն Արսէն եօթն արամբք. յաղգէն Սրուանձտայ յառաջադէմն Գարեգին երկու հարազատօքն և ութուտասն արամբք:*

15. *Այս երկերիւր ութսուն և եօթն նահատակք, ընդ ինն մեծամեծ նախարարսն անդէն ի տեղւոջն կատարեցան: Եւ յարքունի տանէ և ի տանէ Արծրունեաց և յիւրաքանչիւր յայլոց նախարարացն տանէ, թող զայս երկերիւր ութսուն և եօթնս, այլ ես եօթն հարիւր և քառասուն այր, որք զանուանս իւրաքանչիւր ի դպրութիւն կենաց գրեցին ի նմին աւուր ի մեծի պատերազմին: Եւ միահամուռ լինի ամենայն հազար և երեսուն և վեց այր:*

16. *Իսկ ի կողմանէ ուրացելոյն*[2] *անկանէր յայնմ*

1. 133 *արք ի Մամիկոնէից՝ Վարդանէն զատ. նոյնպէս ի Խորխոռունեաց* 19 *բաց յիշխանէն Խորենայ էն: Ասանկով միայն ինն տոհմէ* 287 *արք մեռան: Այս թուոյս վրայ եթէ յաւելումք ա. նոցա* 9 *առաջնորդները, որոց* 287*ին մէջ հաշուել չըլլալը յայտնի է «այս երկերիւր ութսուն և եօթն նահատակք, ընդ ինն մեծամեծ նախարարսն, անդէն ի տեղւոջն կատարեցան». բ. Արքունի և Արծրունեաց և ուրիշ նախարարաց տանէն* 740 *այր, կ'ունենամք Եղիշէի տուած համագումարը՝* 1036:

2. *«Իսկ ի զօրացն Պարսից (կ'ըսէ Փարպեցին, որով կ'իմանայ անշուշտ զՊարսիկս և զուրացեալ հայս) որք ան-*

ւուր երեք հազար հինգ հարիւր քառասուն և չորք այր: Ինն այր ի Նոյանէ՝ ի մեծ պատուհասաւորացն էր, վասն որոյ և կարի յոյժ ի խոր խոցեցաւ Մուշկանն Նիւսալաւուրս: Մանաւանդ իբրև ետես զանհնարին հարուածսն եօթնպատիկ զիւրոյ գնդին քան զՀայոցն, բեկաւ անկաւ զօրութիւն ուժոյն իւրոյ, և ոչ հանդարտէր կալ ի վերայ խորհրդոց մտացն. քանզի ոչ որպէս կարծէր զպատերազմն՝ կատարեցաւ: Մանաւանդ իբրև հայէր տեսանէր զբազմութիւն անկելոց իւրոյ կողմանն, և թիւ համարոյ ևս առնէր, և իբրև այնչափ յոլով գտանէր զիւր անկեալսն քան զՀայոց գնդին, ևս առաւել վասն երևելի արանցն, զորս յականէ յանուանէ գիտէր թագաւորն, ի մեծ տագնապի լինէր այրն յանձն իւր: Արդարութեամբ զիրսն գրել և ցուցանել՝ ի թագաւորէն երկնչէր, դարձեալ և թաքուցանել ևս ոչ կարէր, քանզի ոչ ծածկէր այնպիսի մեծ կռիւ:

17. Եւ մինչդեռ յայսմ մտաց խորհրդի էր յանձն իւր և նեղէր ի միտս իւր, ուրացեալն Վասակ որ զանձն իւր ի մէջ գաղտնոյն թագուցեալ ապրեցուցանէր, մխիթար մատուցանէր մտացն լքելոց. և ուսուցանէր նմա հնարս նենգութեամբ, թէ որպէս կարասցէ մարտնչել ընդ ամուրն խաբէութեամբ: Երդմունս կնքէր արքունի հրամանաւ և վկայութեամբ անձին իւրոյ և խաբեբայ երիցամբքն, որ ընդ նմայն էին. պատգամաւորս առնէր զնոսա, և երևեցուցանէր զթողութիւն ապստամբութեանն առ ի շինութիւն եկեղեցւոյ շնորհել անդրէն, և զամենայն կարգս անդրէն յարմարել ըստ առաջին սովորութեանն: Թէպէտ հրաման թագաւորին հաստատու-

կան ի պատերազմին յաւուրն յայնմիկ, զոր առուգիւ պատմեցին մեզ անեղեկացեալք ի զօրագլխացն Պարսից, 3544 այր »: Եղիշէ այլ նոյնպէս իմանալ կ'երևի « Ինն այր ի Նոյանէ ի մեծ պատաւաւորացն էր », անշուշտ ի Պարսից. քանզի եթէ այս Ինն անձինք հայ նախարարք ըլլային, մեր պատմիչքն կը յիշատակէին զնոսա: Բայց մը ստորև Եղիշէ կ'ըսէ թէ Պարսից կորուստը եօթնպատիկ էր քան զՀայոցն: Մարթ է իմանալ թէ 3544 ի մէկ ութերորդը՝ 443 յուրացեալ Հայոց էր, իսկ մնացածը՝ 3101՝ ի Պարսից:

Թէոդորոսեայ ապագիրն ունի. « Իսկ ի կողմանէ ուրացելոցն և ներանոսաց անկանէր յայնմ աւուր 3544 այր... Մանաւանդ իբրև ետես (Նիւսալաւուրս) զանհնարին հարուածսն եօթնպատիկ զիւրոյ գնդին »:

թեամբ էր տուեալ, վասն զի յոյժ բեկաւ զօրութիւն նորա, որպէս զի երկոքին կողմանք[1] նորա հարան, սակայն զօրքն Հայոց վասն նենգութեանն Վասակայ, որ բազում անգամ հասեալ էին ի վերայ ստութեան նորա, վասն այնորիկ և հրամանի թագաւորին փաղփաղակի ոչ կարէին հաւատալ։

1. Խմբ՝ Քուշանաց վերջին պատերազմին անյաջող ելքն (Տես Ց. Գ. 73) և Հայաստանի մէջ եղած խառնաշփոթ վիճակը։



աւուր երեք հազար հինգ հարիւր քառասուն և չորք այր: Ինն այր ի նոցանէ՝ ի մեծ պատուաւորացն էր, վասն որոյ և կարի յոյժ ի խոր խոցեցաւ Մուշկանն Նիւսալաւուրտ: Մանաւանդ իբրև եւս զանհնարին հարուածն եօթնպատիկ գլխոյ գնդին քան զՀայոցն, ընկաւ անկաւ զօրութիւն ուժոյն իւրոյ, և ոչ հանդարտէր կալ ի վերայ խորհրդոց միոյն. քանզի ոչ որպէս կարծէր զպատերազմն՝ կատարեցաւ: Մանաւանդ իբրև հայէր տեսանէր զբազմութիւն անկելոց իւրոյ կողմանն, և թիւ համարոյ եւ առնէր, և իբրև այնչափ յոլով գտանէր զիւր անկեալսն քան զՀայոց գնդին, եւ առաւել վասն երեւելի արանցն, զորս յականէ յանուանէ գիտէր թագաւորն, ի մեծ տագնապի լինէր այրն յանձն իւր: Արդարութեամբ զիրսն գրել և ցուցանել՝ ի թագաւորէն երկնչէր, դարձեալ և թաքուցանել եւ ոչ կարէր, քանզի ոչ ծածկէր այնպիսի մեծ կոխ:

17. Եւ մինչդեռ յայսմ մտաց խորհրդի էր յանձն իւր և նեղէր ի միտս իւր, ուրացեալն Վասակ որ զանձն իւր ի մէջ գազանացն թագուցեալ ապրեցուցանէր, մխիթար մատուցանէր մտացն լքելոց. և ուսուցանէր նմա հնարս նենգութեամբ, թէ որպէս կարասցէ մերձենալ ընդ ամուրսն խաբէութեամբ: Երդմունս կնքէր արքունի հրամանաւ և վկայութեամբ անձին իւրոյ և խաբեբայ երիցամբքն, որ ընդ նմայն էին. պատգամաւորս առնէր գնալ, և երեւեցուցանէր զթողութիւն ապստամբութեանն առ ի շինութիւն եկեղեցւոյ շնորհել անդրէն, և զամենայն կարգս անդրէն յարմարել ըստ առաջին սովորութեանն: Թէպէտ հրաման թագաւորին հաստատու-

կան ի պատերազմին յաւուրն յայնմիկ, զոր ստուգիւ պատմեցին մեզ տեղեկացեալք ի զօրագլխացն Պարսից, 3544 այր »: Եղիշէ ալ նոյնպէս իմանալ կ'երեւի « Ինն այր ի նոցանէ ի մեծ պատուաւորացն էր », անշուշտ ի Պարսից. քանզի եթէ այս ինն անձինք հայ նախարարք ըլլային, մեր պատմիչքն կը յիշատակէին զնոսա: Քիչ մը առջեւ Եղիշէ կ'ըսէ թէ Պարսից կորուստը եօթնպատիկ էր քան զՀայոցն: Մարթ է իմանալ թէ 3544 ի մէկ ութերորդը՝ 443 յուրացեալ Հայոց էր, իսկ մնացածը՝ 3101՝ ի Պարսից:

Թէոդոսիոյ տպագրին ունի. « Իսկ ի կողմանէ ուրացելոցն և հեթանոսաց անկանէր յայնմ աւուր 3544 այր... Մանաւանդ իբրև եւս (Նիւսալաւուրտ) զանհնարին հարուածն եօթնպատիկ գլխոյ գնդին »:

թեամբ էր տուեալ, վասն զի յոյժ բեկաւ զօրութիւն նորա, որպէս զի երկոքին կողմանք[1] նորա հարան, սակայն զօրքն Հայոց վասն նենգութեանն Վասակայ, որ բազում անգամ հասեալ էին ի վերայ ստութեան նորա, վասն այնորիկ և հրամանի թագաւորին վաղվաղակի ոչ կարէին հաւատալ։

1. Իմա՛ Քուշանաց վերջին պատերազմին անյաջող ելքն (Տես Ց. Գ. 73) և Հայաստանի մէջ իրաց խառնաշփոթ վիճակը։



# ԵՕԹՆԵՐՈՐԴ ՅԵՂԱՆԱԿ

## ՅՈՐՈՒՄ ՆԿԱՐԱԳՐԻ ԴԱՐՁԵԱԼ ԱՌԱՔԻՆՈՒԹԻՒՆՆ ՀԱՅՈՑ ԵՒ ՉԱՐԱԳՈՑՆ ԵՒՍ ԵՐԿԻՒ ԱՆՕՐԷՆՈՒԹԻՒՆՆ ՎԱՍԱԿԱՅ

1. *Արդ դարձեալ յայնժամ՝ դրդեաց*[1] *զՄուշկան Նիւսալաւուրտ և զամենայն աւագանին Արեաց, առեալ ըզզօրսն՝ հասանէր ի վերայ ամրոցին*[2]*, յոր անկեալ էին գունդ մի ի զօրացն Հայոց հանդերձ սուրբ քահանայիւքն, և մարտ եդեալ կռուէին շուրջ զբերդաւն: Եւ իբրև ոչ ինչ կարացին առնել նոցա, դարձեալ յերդմունս ապստամբ եղեալ, զի ուխտիւ իջուցեն զնոսա առանց զաւ ինչ գործելոյ, եւ երկիցս և երիցս անգամ ետուն տանել զաւետարանն: Թէպէտ և քահանայքն յանձն առնուին զիջանելն կալ առաջի, բայց ոմք ի զօրականացն ոչ կարէին հաւատալ սուտ ուխտին Վասակայ. քանզի սկսաւ երթալ Մուշկան Նիւսալաւուրտ զհետ չար խրատուն Վասակայ:*

2. *Եւ ամն ի քաջ զօրականէն Հայոց, որ անկեալ էր ի բերդն փախստեամբ, Բակ անուն, ելեալ ի պարիսպն թշնամանս դնէր անօրինին, և յիշեցուցանէր առաջի Պարսից զօրագլխին զամենայն չարիսն, զոր անցուցեալ էր նորա ընդ աշխարհն Հայոց: Յորոց բազում՝ իսկ լուեալ՝ արդարացուցանէին զամբաստանութիւնն, ոչ միայն*

1. Վասակ:

2. Ամրոցին անունը չտար Եղիշէ · Փարպեցին ալ չյիշատակեր սորա պաշարումը · Թէպէտև տեղ մը կը գրուցէ եպիսկոպոսաց և Ղևոնդայ ձեռք ընկած ըլլալը:

ի Հայոց կողմանէն, այլ ևս առաւել զօրքն Պարսից: Այն այրս այս ի նմին գիշերի եօթն հարիւր արամբք ել գը-նաց ի բերդէ անտի, և ոչ կարացին ձեռն արկանել ի նա:

3. Իսկ որ ի ներքս յամրին մնացին, թէպէտ և գիտէին ճշմարտիւ զխաբեբայ երդմունս նոցա, ոչ ու-նէին համբար ի ներքս: Իբրև ոչ կամէին իջեալ կացին առաջի, հրամայեաց սպանանել ի նոցանէ երկերիւր և երեքտասան այր: Աղաղակեցին ամենեքեան և ասեն. Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր. մինչդեռ շէն են եկեղեցիք և անքակ տաճարք վկայից[1] և միաբան սուրբ ուխտ եկեղեցւոյ առաքինացեալ, արժանի արարեր զմեզ կոչմանդ երկնաւորի: Հաւասարեսցէ մահս մեր ընդ մահ քաջ նահատակացն, և խառնեսցի արիւնս մեր ընդ ա-րեան անկեալ վիրաւորացն. և հաճեսցի Տէր ընդ եկե-ղեցիս իւր՝ բազմութեամբ կամաւոր զուարակացս, որ ելանեն ի վերայ սուրբ սեղանոյս: Զայս ասելով ի տեղ-ւոջն կատարեցան երկերիւրքն և երեքտասանքն:

4. Իսկ սուրբ քահանայքն՝ որ անդ դիպեցան յա-մուրն, երանելիքս այս Յովսէփ և Ղևոնդ բազում ըն-կերակցօքն իւրեանց, մնացին և նոքա զպարանոցս իւրեանց առաջի որոյ դահճապետին, ասելով զնոյն բանս՝ զոր խօսեցան երկերիւրքն: Քանզի ոչ եթէ անկարօ-թիւն ինչ էր երանելեացն ըստ մարմնաւոր կենացս, այլ իմաստութեամբ հնարս խնդրէին լինել փոխանակ ամե-նայն աշխարհին շինութեան: Վասն որոյ և բողք ի դուռն կարդային, և զամենայն ամբաստանութիւն ար-կանէին զանօրէնն զՎասակաւ: Զայս իբրև լուաւ Մուշ-կան Նիւսալաւուրտ, ոչ իշխեաց ի նոսա ձեռն արկանել մահուամբ. այլ զՅովսէփ և զՂևոնդ զան հարեալ, հրա-մայեցին պահել զգուշութեամբ. քանզի բողք ի դուռն կարդացին[2]: Իսկ զայլ քահանայսն արձակեցին յիւրա-քանչիւր տեղիս, հրաման տուեալ վասն շինութեան և խաղաղութեան աշխարհին:

1. Տաճարք վկայից կամ վկայարանք. տես Յ. Բ. 73. ծն. 3:

2. Բարձրագոյն իշխանութեան բողո-քելու իրաւունքը Հռոմայեցիք ալ ու-նէին, որ Պօղոս առաքեալն մահուընէ ազատելուն պատճառ եղաւ. Գործք Ա-ռաքելոց գլ. իե:

5. Այլ մարդիկն Հայոց [1], որ հասեալ էին ի վերայ յեղյեղուկ հրամանաց թագաւորին և ուրացեալ չարիմացին վասակայ, ոչ ինչ հաւատային սուտ թողութեանն, այլ քաջալերէին զմիմեանս և ասէին. Զի՞ պիտոյ է մեզ ընաւ կեանք անցաւոր աշխարհիս, և կամ ընդէ՞ր տեսանեմք զարև յետ մերոյ սիրելեացն: Զի եթէ քաջ նահատակքն մեր անկան ի մեծ պատերազմին, և բազում վիրաւորք տապալեցան յարեան յապաժոյժ ի մէջ դաշտին, և ամենեցուն մարմինքն եղեն գէշ թռչնոց և կերակուր գազանաց, և պատուական նախարարքն մեր հասին յանարգութիւն թշուառութեան, լքին զիւրաքանչիւր իշխանութիւն և են ի հալածանս նեղութեան, որ և ամենայն փափկութիւնն Հայոց եհաս ի վիշտս վտանգի և յանհնարին աղքատութիւն, ոչ անսամք խաբեբայ հրամանացդ և անկանիմք ի ձեռս անօրէն իշխանացդ:

6. Թողին այնուհետև իւրաքանչիւր զգեօղս և զաւանս և զագարակս. ելին հարուստք յառագաստից [2] և փեսայք

1. Այսինքն անոնք որ զէնք առած էին Սասանեանց իշխանութեան դէմ կամ յանցաւոր նկատուելով կրնային վախ ունենալ կեանքերնուն համար: Կարելի չէ կարծել թէ բոլոր հայ ժողովուրդը ընտակութեան տեղերնին ձգելով Խաղտեաց և Տմորեաց ամուրներուն և Արձախոյ անտառաց մէջ փախած ըլլար, որ այնչափ մարդ ոչ կրնային պարունակել և ոչ սնուցանել: Իսկ սոցա կանանց՝ լեռները ապաւինելուն պատճառը նախ այն էր, որ ըստ պարսկական օրինաց ապըստամբելոց կանայք և զաւակունք իրենց արանց կամ հարց յանցանաց ի պատիժ ստրկաբար գերի կը տարուէին ի Խուժաստան, և անդ արքունի ագարակաց մէջ ծանր աշխատութեանց կ'ենթարկուէին. և երկրորդ՝ որովհետև քաղաքական յուզմանց մէջ անպաշտպան կանանց և աղջկանց նկատմամբ խժդժութիւնք անպակաս են: Արտաճմլիկ նկարագիր մը կ'ընէ Եղիշէ այս և հետագայ էջին մէջ, որ ուրեք ուրեք կը նմանի Մակաբայեցւոց Առաջին գրքին Բ Գլուխին. «Եւ զի՞ պիտոյ են ընաւ մեզ այս կեանք». եւն: Բայց Եղիշեայ բացատրութիւնքը շատ աւելի անուշ և խորունկ տխրութեամբ խմորեալ են քան Եբրայեցի հեղինակինը:

2. Առագաստ է ըստ հայկ. բառարանի ներքին սենեակ հարսին և փեսային: Հայաստանի մէջ չկայ մոխրով ծածկուած և պահուած Պոմպէա մը, և մինչև ցայժմ անոր ծոցոյն մէջ չկատարուեցան ըստ բաւականի պեղմունք, որով կարողանայինք որոշ գաղափար մի առնուլ հին բարեկեցիկ Հայոց տանց արտաքին և ներքին ձևին և բաժանմանց նկատմամբ: Մարթ է սակայն կարծել թէ հաստատուն բաժանմունքն՝ այժմեան եւրոպական տներուն մէջ տեսնուածէն շատ պակաս էին. սենեակները կամ սրահները՝ ընդարձակ և բարձրաձեղուն, բայց թուով յոյժ սակաւ ըլլալու էին, և սոցա մէկ մասը ընդհանրապէս վարագուրաւ զատելով հարսին և փեսին կը յատկացը-

ի սենեկաց, անկան ծերք յաթոռոց և տղայք ի գրկաց. երկթային երխտասարդք և կուսանք և ամենայն բազմու- թիւն արանց և կանանց, հասեալ ունէին զամուրս անա- պատին[1] և զանխառ տեղիս բաղում լերանց։ Լաւ հա- մարէին զգազանաբար բնակութիւնն աստուածպաշտու- թեամբ ի քարանձաւս կեալ, քան ուրացութեամբ փափ- կանալ յիւրաքանչիւր շինուածս։ Առանց տրանջելոյ համ- բերէին խոտաբուտ կերակրոցն, և ոչ յիշէին զամորա- կան խորտիկսն։ Համարեալ էին նոցա զարանաձորքն իբրև զյարկս բարձր շինուածոյ, և զետնանկողինքն իբրև զնկարեալ պաշտկամս։

7. Սաղմոսք էին նոցա մրմունջք երգոց, և ընթեր- ցուածք[2] սուրբ գրոց կատարեալ ուրախութիւնք։ Ամե- նայն մարդ յանձն իւր եկեղեցի էր, նոյն ինքն քահա- նայ. մարմինք իւրաքանչիւր սուրբ սեղան, և ոգիք նո- ցունց՝ պատարագ ընդունելի։ Քանզի ոչ ոք ի նոցանէ ողբայր յուսահատութեամբ զանկեալսն ի սրոյ, և ոչ ոք հեծեծելով հառաչէր ի վերայ մերձաւոր սիրելեաց իւ- րոց։ Խնդութեամբ ընկալան զյափշտակութիւն ընչից բազմաց, և ոչ յիշէին զամենեսին՝ եթէ եղեալ իցեն նոցա ստացուածք։ Համբերութեամբ ճգնէին և մեծաւ առա- քինութեամբ տանէին զքաջ նահատակութիւնն։ Զի եթէ ոչ բացաւ աչօք տեսանէին զլոյսն խնդալից, և ոչ կա- րէին իսկ գործել զայնպիսի մեծ առաքինութիւն։

նէին, ուստի և ատագասա անունդ տը- րուած ըլլալու է սոցա սենեկին։ Մինչև ցայժմ Կոստանդնուպոլսոյ և փոքր Ասիոյ՝ կրակէ և փտութենէ ազատած շատ հին շինութեանց ոմանց մէջ նոյն ճար- տարապետութիւնը տեսնուած է. ներ- քին բաժանմունքները աւելի ընդարձակ սրահներ են քան խցեր. այս սրահներուս մէկ անկեան կամ մէկ կողմին յատակը երբեմն շատ բարձր է սրահին մնացած յատակէն, և սորա չորս կողմը ապակ- եով և վարագուրօք գոցուած մինչև ցա- ռագաստ. իսկ ներսի դին անկողին դնե- լու համար հաստատուն մահճակալներ շինուած են։ Այսր նման բան մի էր ան- շուշտ Եղիշէի քիչ մը առօրև եկարեալ պատշկամքը։ — Դատելու համար կ'ե- րևի թէ Հայք աւելի արոտ կը գործածէին քան տաճկական կոչուած բազմոցներ։

1. Անապատ չէ աստանօր դաշտ աւա- զոյ, այլ անշէն, անմարդ, անկոխ անգը- նալի տեղի. պարտիզ հակառակը։ Ասի են անապատ լերինք։ Արդի պարսկերէն ապատ կամ աբատան. բացասականն ալ գտանի Բաղանտ գրոց մէջ՝ անավատան։

2. Թէպէտև նախարարաց և սեպհաց մէջ ալ տակաւին կարդալ գրել չգիտ- ցողներ կային, բայց նոր դպրութեանց գիւտէն ի վեր ընթերցումը օր ըստ օրէ տարածուելու վրայ էր։

8. Քանզի բազումք յազգէ ի մեծ նախարարացն էին, և եղբարք և որդիք և դստերք, հանդերձ ամենայն սիրելեօք իւրեանց ի մէջ ամրական վայրացն, ոմանք յանլոյս երկիրն Խաղտեաց[1], և այլ բազումք ի կողմանս հարաւոյ՝ յանմատոյց ամուրսն Տմորեաց, և կէսքն ի թանձրախիտ մայրիսն Արձախոյ[2], և այլ ոմանք անդէն ի միջոց աշխարհին[3] բունացան ի վերայ բազում ամրոցացն: Եւ ամենեքին մեծաւ համբերութեամբ տանէին զբազում նեղութիւնն վասն յուսոյն Աստուծոյ. աղաչելով զայս միայն խնդրէին յԱստուծոյ, մի տեսանել նոցա զաւեր սուրբ եկեղեցեաց:

9. Այլ որպէս ցուցաք բազում անգամ զամբարշտին[4] չարութիւն, յորդորէր և ստիպէր զզօրսն Պարսից ի մօտաւոր կողմանց աշխարհին, զի հրամանաւ արքունի զօր եկեսցէ յօգնականութիւն նոցա: Եւ հասեալ բազում այրուձի՝ յաւելոյր ի թիւ անկելոցն, և լինէր գունդ բազմութեան իբրև զառաջինն: Եւ յառաջ խաղային ի միջոց աշխարհին, մերձ եղեալ կուտէին ընդ մեծ ամուրս կապոյտ լերինն[5]: Իսկ որ ի ներքսն էին՝ քաջու-

1. Ի՞նչ գեղեցիկ բացատրութիւն. անլոյս երկիրն Խաղտեաց, որ կու յիշեցնէ մեզ Ոդիսականին Կիմմերեան խաւարը (տես ԺԱ. դրուագին սկիզբը): Իսկ Խաղտեաց դիրքը տես էջ. 327. ծան. 2: Բայց աստ Եղիշէի Խաղտեաց արևելեան մասը՝ այս է Ճորոխի և Պարխար լերանց մէջ տեղի՝ Կիւրճիստան կոչուած վիճակը կ'իմանայ: Փարպեցին Հմայեկայ բանած տեղը այսպէս կը սահմանէ. «առ վայր մի առ լերամբն որ կոչի Պարխար, մերձ առ սահմանակցութիւնն Խաղտեաց, ամբարդին տեղի մի գտեալ դադարեցին» էջ 219. բաղդատէ և Եղիշէի բանածն Ց. Ի. 12: — Իսկ անլոյս կոչուելուն պատճառը, երկրին անտառախիտ և ընդհանրապէս միգամած ըլլալն է: Ճորոխի ձորը, ինչպէս և Տրապիզոնի և Գասթամօնոլի նահանգները Օսմանեան պետութեան ամենէն հարուստ անտառները կը պարունակեն, ուր երկինք սովորաբար ամպոտ են և մառախուղը անպակաս:

2. Տես Տմորիք և Արձախ Ց. Դ. 14. ծն. և Ց. Ի. 11:

3. Այս է Նահանգն Այրարատայ:

4. Վասակայ:

5. Ըստ Ալիշան վարդապետի Երզրումի հիւսիսակողմը գտնուող Կեօք կամ Քօբտաղըն կապոյտ կը կոչուէր. այս լեռնէս կը բղխի Եփրատ. Պլինիոս ալ կ'ըսէ թէ Եփրատ Մեծին Հայոց Կարին գաւառին մէջ կը բղխի (Prefectura Caranitide) և թէ ի մօտոյ տեղանդներէն՝ Դոմէտ Կորբուլոն զօրավարականս նորա գնէ յԱպա լեռան, և Լիկինոս Մուկիանոս՝ ի ստորոտ լերինն որ կոչի Capotes, 12000 քայլէք չափ անդրքան զԶիմառա: — Բայց Կեօք լեռնդ, որ կապոյտ կը նշանակէ, Եղիշէայ ակնարկածը չկրնար ըլլալ, որովհետև Երզրումի արևմտեան հիւսիսային կողմանքն Յունաց բաժնին մէջ էին, ոչ Վարդա-

թեամբ մարտուցեալ հարկանէին զբազումս ի գնդէն Պարսից, և զմնացեալսն փախստական ի բանակն արքունէին: Իսկ նոքա դարձեալ յորդորանս մատուցեալ, նուաճել խաբէութեամբ կամէին:

10. Իբրև ոչ ոք հաւատայ իշխանել առ նոսա, զի մի մատնեսցին չարաչար ի ձեռս թշնամեացն, ապա յետ վասն երդմանցն հարկ եղև քահանայի մի իշխանել առ նոսա, որում անուն էր Արշէն: Խօսէր ընդ նոսա յաղերս ընտանութեամբ, և ցուցանէր[1] զանգիտս փախուստ անմեղացն. արկանէր գութ առաջի ուրացելոյն վտանգայ, և պատմելով յիշեցուցանէր նմա զառաջին կարգ ուխտին քրիստոնէութեան, զի թերևս սակաւիկ մի քաղցրացի յանհնարին զառնութենէն: Այլ նա ոչ ինչ լուաւ և անսաց բազում բանիցն նորա, կալեալ և խաղացուցեալ զերանելին և որք ընդ նմա իջեալ էին:

11. Մանաւանդ իբրև ետես եթէ երթայ զօրավարն զհետ խրատու կամաց նորա, սկսաւ այնուհետև ի բազում տեղիս արձակել զապստամբաւորն, և զոր արտաքոյ քան զամուրսն գտանէր զբազմութիւն մարդկանն, վարեցին ի գերութիւն. և զամրար[2] ի ձեռն առեալ հրձիգ առնէին զբազում տեղիս: Իսկ որք էին յամուրս ցմրեալ, իբրև լուան զայս ամենայն չարիս, զոր գործեցին զօրքն արքունի, ոչ ինչ չահ օգտի համարէին զկալն ի մէջ ամրականացն: Քաջութեամբ ելեալ յարձակեցան օգնականութեամբ ամրականացն, և հասեալ ի մօտաւոր աշխարհն Պարսկաց, յանկարծ կոտորելով նախճիրս արեան գործէին, և զմնացեալսն գերի առեալ տանէին, և անդէն յամուրսն արկանէին, և զշինուածս աշխարհին՝ զամրար ի ձեռն առեալ հրոյ ճարակ տային:

12. Դարձեալ և որք էին ի լերինս խաղտեաց, իբրև

նանք և ոչ Պարսիկք կրնային տիրանալ անոր: Այսկէ զատ Եղիշէի կապոյտ լեռը ի միւսոց աշխարհին փնտռելու է: Կարելի է թէ Պլինիոսի ակնարկած կապոյտ լեռը՝ Պինկէօյն բլլայ (որպէս կարծէ և Քիփէրթ) որ օժանդակ գետ մը կ'արձակէ յԷփրատ: Այսկէ յառաջ (տես էջ. 287. ծանօթ. 2) ցուցուցինք թէ կապոյտ լեռդ մը կայ Սիւնեաց նահանգին Վայոց Ձորոյն մէջ. և թէ կապոյտ լեռան հաւանորէն կողզմանի լեռն է:

1. Բայց իմաստը մթին կ'երևի առաջուցէ Եղիշէ կ'առաջարկէր ըսել կ'ուզէ:

2. Զամբարա. հրձգութիւնք միայն վառելեանց յատուկ չեն. տես ի վերջոյ հատածիս:

տեսին եթէ յանդգնաբար զօրքն Պարսկաց յանբերկրելիս իջանէին յամուրս աշխարհին Հայոց, յարձակեցան և նոքա մեծաւ զօրութեամբ ի ձորագաւառն Տայոց[1]: Եւ գտին անդ գունդ բազում ի զօրացն արքունի, որ գերի առնուլ կամէին զամրականս աշխարհին. դարձեալ և կարծէին եւս եթէ գանձք նախարարացն անդ իցեն, վասն այնորիկ և յանխնայ յուզէին զվայրսն:

13. Նա տեսին եւս անդ ի գեօղս երկուս, զի զեկեղեցիսն այրեցեալ էր. առաւել եւս վասն այնր ի նախանձ բրդեցան բարկութեամբ: Յարձակեցան, հարան ի դիմի միմեանց, և կամակարութեամբ յաղթեալ, բեկեալ արկին զզօրութիւն գնդին Պարսից, և կոտորեցին զբազումս ի նոցանէ, և զմնացեալսն փախստական հանէին յաշխարհէն: Եւ յայնչափ յանդուգն յարձակմանէն՝

1. Փարպեցին այսպէս կը պատմէ Տայոց ձորագաւառին կռիւը. «Աստր-միգդ գունդ կազմէր այրձիոփր բազմութեամբ ի Պարսից և ի Սիւնեաց՝ ի վերայ ժողովելոցն առ երանելին Հմայեակ յամուրսն Տայոց. և յերկուս բաժանեալ զգունդն՝ կարգէր նոցա զօրագլուխս զԱրտէն Գաբեղեան և զՎարազշապուհ Պալունի: Քանզի բազմութիւն փախստէիցն Հայոց, նախարարք և սեպուհք, ռստանիկք և ռամիկք՝ դիմեալ ի յերկիրն Տայոց, ժողովէին առ Հմայեակ եղբայր Վարդանայ, որ էր յամեալ յաշխարհին Յունաց, խնդրել զօրս ի թագաւորէն, ըստ յառաջագոյն գրելոցն կարգի. (Տես էջ. 293. ծան. 2)... Եւ մինչդեռ յապաղեալ էր զրոյց պատասխանւոյն, հասեալ գործ պատերազմին Հայոց և Պարսից կատարէր: Եւ տանուտեարքն Հայոց... դարձան և փութացին, բայց ոչ ժամանեալ ի գործ ժամու պատերազմին, առ վայր մի առ լերամբն որ կոչի Պարխար՝ մերձ առ սահմանակցութիւնն Խաղտեաց, ամրագոյն տեղի մի գտեալ դադարեցին, թէ որպէս առաջիկայ իրացն մարթասցեն պատրաստել: Յորոց վերայ տեղեակ առաջնորդք եկեալ զգայլն, և ընդ ծագել առաւօտուն պատրաստքն զինուք անկանէին ի վերայ այնց նորին ընկերաց՝ Հմայեկայ Մամիկոնէի, ի գիւղն որ անուանի Որջնհաղ՝ ի գաւառին Տայոց. քանզի ի ժամուն իջեալ էին ի յամրոցացն լերինն Պարխարայ. որք փախըստէիցն հեպով յիւրաքանչիւր երիվարս հասանէին: Ոմանք մերկանդամք և ոմանք զինեալք հարկանէին ի զօրացն Պարսից. և դարձուցեալ ընդ կրունկն անդէն փախըստականս առնէին. յորոց զբազումս անդէն ի շինամիջին և զայլս ի մէջ այգեստանւոյն յերկիր կործանէին: Անդ զկատարելութեան պսակն ընդունէր Հըմայեակ... Իսկ զօրն ուխտապահացն որք առ սրբոյն Հմայեկի... անդէն ի վեր ի լեառն դառնային ի Պարխար»: Ճորոխի աջակողմը կայ մինչև ցարդ Օրջնաղ գիւղ ի ստորև Սպերայ: Տայք լեռնոտ, բազմահովիտ և ջրաշատ՝ վասն որոյ և գեղեցիկ երկիր մի է, ունէր բազմամարդ մեծամեծ աւաններ, Թորթում քաղաք, Ոխտիք՝ այժմեան Օլթի. Արդուին և այլն: — Պարսիկ զօրականք կը յուզեն զվայրսն՝ լսելով որ այստամբ նախարարաց թանկագին գոյքն և գանձն անդ տարուեր ու պահուեր են:

միայն երանելին Հմայեակ, եղբայր սպարապետին Հայոց Վարդանայ, յանխնայ քաջութեամբ մարտուցեալ՝ կատարեցաւ նահատակութեամբ ի վերայ սուրբ ուխտին միաբանութեան: Եւ այլքն ամենայն ողջանդամ ապրեալք երթային զհետ փախստականին:

14. Եւ իբրև այս այսպէս կատարեցաւ, դադարեցին զօրք թագաւորին խառնամուխ լինել յամենայն տեղիս անխտրութեամբ, և ևս առաւել ձեռնպահ լինել եկեղեցեացն[1]: Դարձեալ միւսանգամ անդրէն հարցանել սկըսան յարքունիսն:

15. Նա և որ յԱրձախայ մայրին անկեալքն էին փախստականք, ոչ ինչ լռեալ դադարեցին խաղաղութեամբ. այլ հանապազ յղէին յաշխարհն Հոնաց շարժէին և յորդորէին զզունդն Հոնաց, և յիշեցուցանէին նոցա զուխտն[2] զոր եդեալ էր ընդ Հայս և անսուտ երդմամբ հաստատեալ: Հաճոյ թուէր բազմաց ի նոցանէ լսել զբանսն քաղցրութեամբ: Նա և մեղադիր ևս յոյժ լինէին նոցա, եթէ ի կռուին ընդէ՞ր ոչ եկիք պատրաստութեամբ: Եւ իբրև յառաջնումն ինչ ոչ հնարէին զմիմեանս հաւանեցուցանել, ապա գունդ բազում գումարէին, և անդէն յարձակեալ հասանէին[3] ի սահմանս տէրութեանն Պարսից. և զբազում գաւառս հարեալ, բազմագոյն ևս գերի առեալ տանէին յաշխարհն իւրեանց, և յայտնի ցուցանէին թագաւորին զմիաբանութիւն՝ զոր ունէին ընդ գնդին Հայոց:

16. Իսկ իբրև այս ամենայն ազդումն հասանէր առ զօրավարն Պարսից, սրտմտեալ զայրանայր. և մեծաւ բարկութեամբ կուտէր զխեռն ի վերայ անօրինին Վասակայ, իբր թէ նա իցէ սկիզբն և առաջնորդ ամենայն չարեացն, որ գործեցան: Եւ անդէն չու արարեալ դընայր խաղայր հասանէր յաշխարհն Պարսից. գրէր և ցուցանէր յարքունիս զամենայն ստուգութեամբ, և զվընաս գործոյն արկանէր զուրացելովն:

17. Իբրև լուաւ թագաւորն զամենայն աւեր աշխարհին, և ստուգեաց զիրս մեծի պատերազմին, բեկանէր

1. Թէոդոսեայ առ՝ յեկեղեցեացն:
2. Յ. Գ. 63:
3. «Լինէին» կը յարաբերի Հայոց. իսկ «գումարէին» և հասանէին Հոնաց:

անկանէր ի մեծ խռովութիւն, և լռեալ դադարէր ի հանապազորդ և ի խաբեբայ խորհրդոյն. յուզէր և քննէր զվրիպումն անհանճար գործոյն, և կամէր տեսանել՝ ասելով. Ո՞ ոք իցէ որ զիս ճշմարտութեամբ ի վերայ իրացդ հասուցէ: Իսկ որ էր գլխաւոր անօրէն գործոյն, անդրէն ի դրան արքունի, նոյն հազարապետն Միհրներսեհ, յառաջ մատուցեալ ասէ ցթագաւորն. Զայդ ես ասեմ՝ քեզ, արքայ քաջ, եթէ կամիս ստուգութեամբ լսել զարդարն, որք գլխաւորքն քրիստոնէիցն են ի Հայս, տուր կոչել, և գան յօժարութեամբ և առնեն քեզ զամենայն արդարութեամբ:

18. Յայնժամ զմի ոմն յաւագ նախարարացն, Ատրորմիզդ[1] անուն, որոյ իշխանութիւնն իսկ խառն էր ընդ Հայոց աշխարհին և գործակից էր զօրավարին ի նմին պատերազմի, գրէր և յանձն առնէր նմա զաշխարհն Հայոց մարզպանութեամբ: Եւ զՄուշկան Նիւսալաւուրտ հանդերձ ամենայն հեծելոց զօրուն գումարէր յաշխարհն Աղուանից և Լփնաց և Ճղբաց և ի Հեճմատակաց և ի Թաւասպարաց և ի Խիբխոնան[2], և յամենայն ամրականն, զորս աւերեալ էր գնդին Հոնաց վասն ուխտին Հայոց: Որպէս և յոյժ իսկ արտմեալ էր թագաւորն, ոչ միայն ընդ աւեր աշխարհացն և ընդ անկանել զօրացն, այլ ևս առաւել ընդ աւերել պահակին՝ զոր ի բազում ժամանակաց հազիւ ուրեմն կարացին շինել. որ և յայնմ ժամանակի դիւրեաւ առեալ քանդեցաւ, որում և չէր իսկ անկարութիւն շինութեան[3]: Իսկ զվատակ հանդերձ գլխաւոր քրիստոնէիւքն ի դուռն հրամայեաց կոչել[4]:

1. Բաղդատելով զեղիշէ ընդ փարպեցւոյ (էջ 215) Ատրորմիզդ Արշական՝ Մուշկանայ հետ կը գտնուէր ի Հայս: Արշական կոչուելէն կը հետևցնէ Սէն-Մարդէն, թէ Պարթև Արշակունեաց ցեղէ էր, որ տակաւին զօրաւոր և ազդեցիկ տոհմ մի էին Պարսից մէջ: — Ի՞նչպէս մեկնելու է սակայն այս խօսքս՝ «որոյ իշխանութիւնն իսկ խառն էր ընդ Հայոց աշխարհին». գուցէ Ատրորմիզդ դեռ Հայաստան չեկած Նիւսալաւուրտի հետ, արքունի դրան մէջ Հայաստանի վերաբերեալ գործոց տեսուչն էր՝ իբրև քաբու–քեանեաւք, կամ թէ ի Հայս իբրև քաղաքական վարիչ խրկուած էր, մինչ Նիւսալաւուրտ զինուորական գործոց միայն պիտի հսկէր:

2. Ոչ բացառական հոլով այլ նախդրիւ տրական. «յաշխարհն Հեճմատակաց և յաշխարհն Թաւասպարաց: Տես Յ. Գ. 15 ծն. 1:

3. Տես Յ. Ա. 9. ծն 2:

4. Ըստ փարպեցւոյ՝ նախարարքն և եկեղեցականք գնացին ի դուռն արքունի

19. *Արդ եկն եհաս*[1] *մարզպանն Ատրորմիզդ յաշխարհն Հայոց սիրով խաղաղութեամբ: Հրամանաւ արքունի կոչեաց առ ինքն զՍահակ տէրն եպիսկոպոսն Ռշտունեաց, ուսանել ի նմանէ զիրացն ամբաստանութիւն: Բայց թէպէտ և նորա աւերեալ էր ատրուշան մի, և բազում չարչարանօք հարեալ էր զպաշտօնեայս կրակին, ոչ ինչ զանգիտեաց գալ յառեան հրապարակին*[2]*. դարձեալ և ի տանէն Արծրունեաց բարեպաշտօն երէց մի Մուշէ անուն*[3]*, որ առաջնորդէր աշխարհին Արծրունեաց, աւերեալ էր և նորա զկրակատուն մի, և կապանօք և տանջանօք բազում չարչարանս անցուցեալ էր ընդ մոգսն. և սա ոչ ինչ զանգիտեաց, այլ կամաւ եկն և յանդիման եղև մարզպանին: Եւ երկու ևս այլ քահանայք երանելիք, որոց անուանքն են Սամուէլ՝ և*

յերեքտասաներորդ ամի թագաւորութեան Յազկերտի (էջ 223)․ այս է ըստ Գ․ Լանկլուայի 452․ Ըստ մեզ պատեհագմէն քանի մը ամիս ետքն ըլլալու է՝ 451ին վերջերը․ քանզի Յազկերտի թագաւորութեան թուականը 438 տարւոյն սկզբնաւորութենէն հաշուել պարտ է․ Տես էջ․ 178․ ծն 2։ Իսկ յայնժամ Արեաց դուռը գնացող նախարարաց անուանքն ասոնք են․ Արծրունեաց մեծ իշխանն՝ Ներշապուհ, իշխանն Վանանդայ, Արշաւիր Կամսարական, իշխանն Անձևացեաց՝ Շմաւոն, Վահան Ամատունի, Գնթունեաց իշխանը, Աշոցայ իշխանը, Առաւեղենից իշխանն՝ Փափագ, Տաշրայ իշխանը՝ Վրէն, Արծրունեաց իշխանն՝ Ապրսամ և ուրիշ տանուտեարք և աւագ սեպուհք․ (Փարպ․ 221)։ — Ասոնցմէ զատ խրկուեր էին Մամիկոնէից և Կամսարականաց և այլ իշխանաց տղայքը, զորս Վասակ կալեալ էր յառաջագոյն (նոյն 223)․ Տես էջ․ 310․ ծն 1։

1․ «Եկն եհաս» ճիշդ չերևիր․ որովհետև Ատրորմիզդ արդէն Հայաստան կը գտնուէր, ինչպէս բացորոշ կը ցուցանէ մեզ Փարպեցին, և Եղիշէ ալ ըսաւ, «գրէր (Յազկերտ) և յանձն առնէր նմա պաշխարհն Հայոց մարզպանութեամբ»։

2․ Ռշտունեաց Սահակ եպիսկոպոսը ինչպէս և Մուշէ գերի չէին ընկած Յովսեփայ և Ղևոնդայ հետ յամրոցին․ Յ․ Է․ 1–4։ — «Առեան հրապարակին» քանզի հրապարակային էին դատաստանք։

3․ Արտաշատայ ժողովոյն անդամոց ցուցակին մէջ Եղիշէ ինչպէս և Փարպեցին «Մուշէ՝ եպիսկոպոս Արծրունեաց», կ՚ըսեն․ բայց աւելի վերջը Փարպեցին զնա կը կոչէ դրան երէց իշխանին Արծրունեաց․ Եղիշէ ալ այսուհետև զնա կ՚անուանէ «երէց որ առաջնորդէրն աշխարհին Արծրունեաց»։ Աղբակացի էր Մուշէ, (Փարպ․ ԽԳ և ԾԷ)։ Այլ է Մուշէ որ Սիւնեաց աշխարհին քահանայապետ եղած էր, և օգնական և ընկեր ունէր զՂազար Փարպեցի, որ նոր դարձեր էր ի Հոռոմոց (Տես Փարպ․ էջ 571)։ Քանի որ Աղբակացին Մուշէ, որ վկայացաւ ի Վատգէս, Արտաշատայ ժողովոյն ներկայ գտնուող Արծրունեաց եպիսկոպոսն է, ինքնիրեն կ՚ելնայ այն ենթադրութիւնը ըստ որում Մովսէս Խորենացին Արծրունեաց եպիսկոպոս էր Արտաշատայ ժողովոյն ատեն։

Աբրահամ[1]. քանդեալ էր և սոցա զատրուշանն յԱրտա-
շատ, և յառաջագոյն ըմբռնեալ էին ի կապանս յուրա-
ցեալն Վասակայ. ածին և զնոսա յառաջինսն ընկերսն:
Եւ ժողովեցին ևս ի նոյն տեղի զմեծն Յովսէփ և զՂե-
ւոնդ և զՔաջաջ և զԱրշէն[2]: Եւ իբրեւ ուսաւ և տեղե-
կացաւ յամենեցունց մարզպանն, գրեաց և եցոյց յար-
քունիս զամենայն ճշմարտութեամբ որպէս զիարդ լուաւ
ի բերանոյ նոցա:

20. Բայց Վասակ թէպէտ և յառաջագոյն[3] հասեալ
էր ի դուռն, ըստ կամաց խորոց այլ ընդ այլոյ երթեալ
պատմէր զամենայն ստութեամբ, սակայն ի միտս թա-
գաւորին ոչ կարէր զանձն արդարացուցանել. այլ պա-
տասխանի տայր նմա և ասէ. Յորժամ քրիստոնեայքն
ևս եկեսցեն, հասարակ լուայց յատենի:

21. Իսկ զսուրբ քահանայսն վասն զի կապանօք տա-
նէին՝ յետ երկուց ամսոց և քան աւուր հասանէին ի
452 Ձմերոցն արքունի[4]: Իբրեւ լուաւ մեծ հազարապետն,
եթէ ածին զնոսա ի քաղաքն, ինքնին իսկ ականատես լի-
նէր նոցա: Բայց թէպէտ և տեղեկութեամբ լսէր ի նո-
ցանէ զամենայն, ոչ կարէր ձեռն արկանել և չարչարել
զնոսա. քանզի բազումք ի նախարարացն Հայոց դեռ
ևս բռնացեալ ունէին զամուրս աշխարհին, և դեռ ևս

1. Սամուէլ՝ երէց էր Արծայ գեղջ որ ի գաւառին Շարուրայ (Ալիշան Վ. – Շիրակ էջ 6), և Աբրահամ էր Սամուէլի հոգեւոր որդին և սարկաւագ (փարպ. 229)։

2. Քաջաջ՝ սարկաւագ էր ի գաւառէն Ռշտունեաց և աշակերտ եպիսկոպոսին Սահակայ։ Իսկ Արշէն՝ երէց էր Եղեգեկի գեղջ, որ ի գաւառին Բագրեւանդայ. փարպ. 232։ Իսկ Բասենոյ եպիսկոպոսը Թաթիկ՝ ըստ բանից Սիւնեաց իշխանին, յառաջագոյն խրկուեր էր ի Խուժաստան, ուր խիստ կապանօք կը պահուէր. փարպ. 222։

3. Ըստ փարպեցւոյ Վասակ զքահանայս իրմէ յառաջ ճամբայ հաներ էր. բայց ճանապարհին մէջ տեղուանքը անոնց հասեր ու հետերնին խօսակցութիւն մ'ալ ունեցեր էր։ Բայց որովհետև քահանայից ուղեւորութիւնը ութսուն օր տևեր էր, հաւանական է թէ Վասակ կէս ճամբէն ետքը վերստին աւելի շուտութեամբ երթալով, աւելի յառաջ ժամաներ էր ի Տիզբոն (223–228)։

4. Արտաշատէ ցՏիզբոն՝ Բագրեւանդայ, Պիթլիսի և Տիգրիսի ճամբով և ըստ կարի ուղիղ գծով, շուրջ հազար յիսուն քիլոմէդր է. սովորաբար երեսուն քառասուն օրուան մէջ կ'երթցուի։ Իսկ Արտազու, Խոյի, Սիւլէյմանիյէի ճանապարհը շատ աւելի կարճ է (շուրջ 850 քիլոմէդր)։ Բայց քահանայք կապեալ էին ու մէջերնին ծերեր ալ կային. այս ալ կրնայ պատճառ եղած ըլլալ ծանր երթալնուն։

մարզպանն յերկիւղի էր: Վասն որոյ զգուշութեամբ հրամայեաց պահել զուրբան, և զաշխարհն հրամայէր սիրով նուաճել:

22. Վասն որոյ և ինքն իսկ[1] շրջէր և ժողովէր և չինէր ուխտին հաստատութեան: Եւ եպիսկոպոսացն հրաման տայր ունել զիւրաքանչիւր իշխանութիւնն, և բստ առաջին սովորութեանն պաշտել յայտնութեամբ, և համարձակ ելս գալ ի հրապարակ: Նա և ընծայից և պատարագաց արժանի առնէր թողուլ զառաջեաւ[2]: Եւ քանզի բազում գաւառս առեալ և աւերեալ էր զօրականին, թողուլ հրամայէր զհարկս աշխարհին. և զայրուձին ևս զարքունի թեթևացոյց առ ժամանակ մի: Եւ միայնակեացք որք ելեալ և կորուսեալ էին, հրամայէր գալ և ունել զիւրաքանչիւր տեղին:

23. « Եւ զամենայն կարգս աստուածպաշտութեանն, որպէս զկարգ և ունէին յառաջ ժամանակաւ առ նախնեօքն, նոյնպէս և այժմ, ասէ, կալցին: Եւ եթէ ոք ի հեռի աշխարհ ուրեք գնացեալ իցեն, ունիմ իշխանութիւն յարքունուստ, ասէ մարզպանն, եթէ յազատաց իցեն, եթէ ի շինականաց իցեն, եթէ յեկեղեցւոյ, զինչ կեանս[3] և թողեալ իցէ, եկեսցեն և կալցեն զիւրաքանչիւր զարարս ». Երդմամբ կնքէր և առաքէր ի կողմանս կողմանս: Որ և բազումք իսկ եկին և ժողովեցան, և կալան զիւրաքանչիւր կալուածս:

24. Նա և որ մեծն է քան զամենայն որ ի բռնութենէ ոք ակամայ կալեալ էր զմոգութիւնն, հրովարտակս առաքէր[4] յարքունուստ, անդրէն ունել զքրիստո-

1. Այս է մարզպանն Ատրորմիզդ։

2. Միթին է պարբերութիւնդ։ Թէոդոսեան՝ « Նա և ընծայից և պատարագաց արժանի առնէր զառաջեաւ կոչելով »։

3. « Կեանք » զոյք, ստացուածք։ Կ'երևի թէ ընակութիւնը թողլով հեռաւոր աշխարհ գնացողներուն ստացուածքը գրաւեալ էին. վասն որոյ Ատրորմիզդ յարքունուստ իշխանութիւն չառած չկրնար եա դարձնել։

4. Բայց ամենէն մեծ և դժուարին խնդիրը մազդէականութիւնը մէյմը ընդունողներուն նորէն քրիստոնէութեան դառնալու հրաման տալն էր. Ատրորմիզդ իշխանութիւն չունի անձամբ այս արտօնութիւնս տալու, այլ կը գրէ յարքունիս ու հրովարտակներ կը ստանայ՝ անշուշտ օրին օրին պարագայից և մէն մի մարդու համար։ Գիտեմք որ այլադեն ազգաց գթութեամբ նոյնոյ մահմետական պետութիւնք ալ մինչև մօտ ժամանակներս, մահուան կը դատապարտէին, մահմետականութենէ վերստին իւր առաջին կրօնքին դարձողը։

նէութիւնն: Եւ յանդիման խօսէր թագաւորն, որք էին ի դրանն արքունի, եթէ «Որք ոչ սիրով ունին զդենիմազդէզն, այնպիսեացն և աստուածքն են ցասուցեալ, և ես ոչ ինչ եմ շնորհակալ. և այսօր զնոյն հրաման տամ ամենեցուն, ի կամս մարդոյն թողեալ ըստ իւրաքանչիւր մտաց, որպէս զինչ և կամի պաշտել՝ պաշտեսցէ. ամենեքեան իմ ծառայք են»: Զայս ասէր, և գրով հրաման տայր ամենայն աշխարհի:

25. Իբրև զայս լուան և տեսին բազումք՝ որ էին ցանեալ և ցրուեալք ի հեռաւոր տեղիս, գային և ունէին զիւրաքանչիւր արարս: Իսկ նախարարքն որ էին յամուրս աշխարհին և կամ ի հեռաւոր օտարութեան, իբրև տեսին զշինութիւն երկրին՝ մանաւանդ զեկեղեցեացն հաստատութիւն, քաջալերեցան համարձակեցան եւ նոքա յանդիման լինել արքային: Վասն որոյ և պատգամ յղեցին առ մարզպան աշխարհին, զի ի դուռն ցուցցէ զբանս նախարարացն: Իսկ նա փաղփաղակի յարքունուստ գիր ողորմութեան և ուխտ հաստատութեան տայր տանել առ նոսա հրամանաւ արքունի: Բայց թէպէտ և գիտէին նոքա զդառնութիւն տէրութեանն՝ թէ սուտ են յամենայնի, կամեցան չարչարակից լինել սրբոցն. զի եթէ մահ ևս առաջի կայցէ, ոչ ինչ զանգիտեսցեն երկիւղիւ:

26. Եւ զայս լուեալ թագաւորին, ոչ կապանօք, այլ արձակ ոտիւք և արձակ ձեռօք հրամայեաց առ ինքն կոչել: Ածին փաղփաղակի զկին և զորդիս, և զինչս իւրաքանչիւր ետուն ի ձեռս մարզպանին[1]. և ինքեանք փութանակի գնացին, ի ձմերոցն արքունի:

27. Եւ մինչ դեռ անդրէն ի ձմերոցին էր թագաւորն, ատեան հարցափորձի ի մէջ նոցա հրամայէր լինել: Եւ նստաւ հազարապետն[2] զի լուիցէ կողմանցն եր-

1. Նախարարք մարզպանին դիմելու մինչև մէկ տարիէն ստիպուած ալ էին, քանի որ ժողովուրդը իր բնակութեան և գործոյն կը դառնայր, երկիրը կը խաղաղանայր ու դիմակալութիւնը օր ըստ օրէ աւելի կը դժուարանայր: Իսկ զկանայս և զորդիս և զինչս նմա յանձնելնին զուցէ մասամբ սոցա ապահովութեան համար էր, բայց աւելի ևս իբրև պատանդ և գրաւական Պարսից դուռն երթալնուն, վասն զի առանց կապանաց և ազատ պիտի թողուր զնոսա մարզպանն:

2. Այս է Միհրներսեհ. որ և արդարութեան բարձրագոյն պաշտօնը կը վարէր (փարպ. 234):

կոցանց: Եւ իբրև յերկարեցաւ ամբաստանութիւնն զաւուրս բազումս, պարտաւորեցաւ կողմ ուրացելոցն: Քանզի ցուցանէին զթուղթսն՝ զոր տուեալ էր Վասակայ և ամենեցուն որ ընդ նմա էին, զի միաբանք իցեն ընդ նմա յուխտ ապստամբութեանն. թուղթ մի ի Վրաց աշխարհէն, և թուղթ մի յԱղուանից աշխարհէն. սոյնպէս և թուղթ մի յԱղձնիս, և հրովարտակ մի առ թագաւորն Յունաց, և թուղթ մի առ մեծ սպարապետն Անտիոքայ[1]: Եւ ի բոլորեսին յայտնի թուղթսն վաւերականի մատանի[2] Վասակայ եդեալ էր: Սոյնպէս խառն էր նա և ի մահ մոգուցն ի Զարեհաւանի[3]: Եւ զբազում բերդս՝ զոր հանին ի Պարսկաց, յայտ առնէին զնորա թուղթսն և զհրամանսն. քանզի նա էր մարզպան ի ժամանակին:

28. Որպէս և հրեշտակութեամբ իսկ զոր յղեալ էր առ Յոյնս նախարար մի, որում անունն էր Ատոմ[4],

1. Այդ նամակներդ յերեւան հանողներն ապստամբ նախարարք չէին անշուշտ. վասն զի եթէ յաջողած ալ ըլլային Վրաց և Աղուանից գրուած թղթերուն ընագիրները ձեռք անցնել, կայսեր, Անտիոքայ սպարապետին խրկուածները իրենց տրուած չէին կրնար ըլլալ: Յունաց գրուածները, առանց կողմանէ Պարսից թագաւորին՝ մատնութեամբ ղրկուած ըլլալու էին, ինչպէս մարթ է հետեւցնել Եղիշէի ասկէ յառաջ ըսածէն. Տես Յ. Գ. 51: Այս թղթերէս միայն Յունաց կայսեր գրուածը յիշատակեց մեզ Եղիշէ ի ժամանակին. բայց միւսներն ալ նոյն ատեն գրուեցան. Տես փարպ. 184: Այս նամակներս նախ Սիւնեաց իշխանին Վասակայ և ապա ամենայն տանուտեարց մատանեաւ կնքեալ էին: — Անտիոքու՝ ըստ Մխիթարեան տպագրաց. և Անտիոքայ ըստ Թէոդոսիոյ տպագրին. ուղիղը վերջինս է և ըստ այսմ պարտ է սրբագրել զտպագիրս, որովհետեւ Արեւելից մեծ սպարապետը Անատոլ էր, որ կը նստէր ի քաղաքին Անտիոքայ: փարպեցին ալ յայսմ մասին տարակոյս չթողուր (Տես էջ 184 և 217):

2. Թէոդոսիոյ տպ՝ վաւերականն. իսկ Կ. Պոլսոյ երկրորդն՝ վաւերական: Սեռական հոլովն ալ անշուշտ սխալ չէ նոյն իսկ գոյականին ուղղական ձեւովն:

3. Զարեհաւանի արկածը մեզ կը պատմէ փարպեցին (էջ 182): Բաղդատելով զայս ընդ Եղիշէի կը տեսնեմք, որ այդ դէպքը Երրորդ Յեղանակին 31 հատոծին մէջ նկարագրեալ իրաց կը վերաբերի: — Զարեհաւան՝ գլխաւոր տեղի Ծաղկոտան գաւառի հնոյ, թուի մերձ կամ նոյն ինքն Տիատին ի Պայազիտ գաւառի (Տեղագիր):

4. Տես էջ. 293. ծան. 2: Մինթէ Ատոմ նոյն ինքն Վասակայ և նախարարաց մատանեաւ կնքեալ հրովարտակը, այս է ընագի՞րը յառաջ կը բերէր. չեմք կարծեր. հնարաւոր ալ չթուիր. բայց միայն մէկ պարագայի մէջ՝ եթէ Յունաց արքունիքը մերժեց կամ յետ ընթեռնլոյ և երկարօրէն խորհելոյ ետ դարձուց Ատոմայ զնամակն զոր բերեալ էր: Կարծեմ թէ սորա ամբաստանութիւնը սոսկ վկայութիւն մի է:

յազգէն Գնունեաց. սա միաւորեալ յանդիմանէր զնա առաջի մեծի ատենին հրովարտակաւն իսկ՝ զոր ունեալ էր նորա իւրով մատանեաւ: Նա և ի մէջ իսկ բերէր զամբաստանութիւն նորա Մուշկան Նիւսալաւուրտ[1], և յայտ առնէր պատերազմակից ընկերօքն իւրովք, որ և յետ վճարելոյ պատերազմին բազում արիւն ետ հեղուլ վաստակ. թէ որպէս սուտ երդմամբք խաբէր և իջուցանէր յամրոցաց անտի. էր՝ զոր կոտորէր և էր՝ զոր գերի տանէր զծառայս և զաղախնայս արքունի[2]: Եւ ի վերայ այսր ամենայնի վնաս, և գող եւս գանձէր հարկի աշխարհին, որ յարքունիսն երթայր:

29. Նա և յուրացեալ ընկերացն նորա բազումք էին, որ յայտ արարին զչարիս նորա՝ զոր գործեալ էր ընդ աշխարհն Հայոց: Եւ խմացեալ մոգացն և ի փշտիպանացն՝ որք ի կապանսն արկեալ էին և ապա ածին յարքունիս, հարցին և գտին վասն նորա և ասեն. Դուք էք ինչ տեղեակ վասն չարութեան սորա: Ետուն պատասխանի և ասեն. Ամենայն անցք չարչարանաց՝ որ անցին ընդ մեզ, և բազում հարուածք որ եղեն ի զօրքն արքունի, եւ աւեր և գերութիւն աշխարհին Հայոց, և կորուստ հարկացն արքունի, սկիզբն և առաջնորդ չարեաց այրդ այդ եղեւ:

30. Եւ մինչ դեռ այս ամենայն ամբաստանութիւն զնմանէ էր զայնչափ բազում աւուրս, յառաջ մատեան և իւր ազգականքն[3], որ եւ յառաջագոյն զատախազ

1. Կ'երևի թէ դարձած էր յԱղուանից երկրէն, ուր խրկուեր էր (Յ· Է 18)։ Փարպեցին ասէ թէ երբ Ատրորմիզդ մարզպան կարգեցաւ, Մուշկան կոչեցաւ յարքունիս։ Բայց Ղազար աւելի համառօտ գրած է զիւր պատմութիւն քան Եղիշէ. և շատ հաւանական ալ է, որ Մուշկան Հայաստանի մէջ գործը լմնցընելէ յետոյ հրաման ընդունեցաւ Աղուանից երկիրն այցելել, այն տեղի խառնակ վիճակը կարգադրելու և ճորայ պահակն աչքէ անցնելու համար. ու այնուհետև դարձաւ ի Տիզբոն։

2. Արևելեան թագաւորք սովոր են ծառայ և աղախին կոչել զհպատակս իւրեանց. «Ամենքեան իմ ծառայք են» կ'ըսէ Յազկերտ Յ· Է 24։

3. Վասակայ ազգականներէն Պարսից դուռը կը գտնուէին յայնժամ իւր փեսայն Վարազվաղան և իւր եղբօրորդիքը՝ Բարգէն և Բակուր, զորս հալածեր էր Վասակ (Տես Յ· Դ 18 և էջ 54)։ Բայց ո՞վ էր Վասակայ եղբայրը և ի՞նչ կ'ուզէր Վասակ իւր եղբօրորդիներէն։ Հաւանօրէն պարտ է իմանալ հօրեղբօրորդի, այս է զարդիս Վաղենակայ, որովհետև հայերէն կրկին իմաստիւք ալ գործածուած է ի նախնեաց. և Վասակայ

լեալ էին զնմանէ առաջի արքային, սկսան կարգաւ ցուցանել և յայտ առնել, որպէս զի բարեկամացեալ էր նա ընդ Հեռանայ Հոնի միաբանութեամբ բաղասական արքային, ի ժամանակին՝ զի կոտորեաց Հեռանն այն զզօրսն Պարսից յԱղուանս, և աւարառու եհաս յերկիրն Յունաց, և բազում գերի և աւար խաղացոյց ի Հոռոմոց և ի Հայոց և ի Վրաց և յԱղուանից. որպէս զի ի վերայ իսկ եհաս խորհրդոյն ինքն իսկ թագաւորն, և սպան զբաղասական արքայ[1]: Եւ Վասակ մարզպան էր Հայոց ի ժամանակին, և թշնամեացն արքունի խորհրդակից գտաւ: Ցուցին և յայտ արարին ազգականքն նորա, որպէս զի հմուտ և տեղեակ իսկ էին չար խորհրդոյն նորա. զամենայն ցուցանէին և յայտ առնէին առաջի թագաւորին. և զայլ ևս բազմագոյն խարդախութիւնսն, որ ստութեամբ փարէր զկեանս իւր՝ ոչ միայն առ ընկերս, այլ և առ թագաւորն ինքնին գլխովին. զի ոչ երբեք արդարութեամբ փաստակեալ էր ի մանկութենէ :

31. Յայնմ ժամանակի հրաման ետ հազարապետն. «Ածէք այսր և ի կապելոյն, որք են ի բանտի անդ»: Լուծին և ածին յերանելեացն զՍահակ եպիսկոպոս[2] Ռշտունեաց և զսուրբն Յովսէփ և զՂեւոնդ երէց: Եւ իբրև մերկացան ամենայն բանք ատենին առաջի նոցա, ետ պատասխանի Սահակ եպիսկոպոսն և ասէ. «Որ յայտնի ուրացեալն են ի ճշմարիտն Աստուծոյ, ոչ գիտեն զինչ գործեն և կամ զինչ խօսին. քանզի խաւարեալ են խորհուրդք նոցա. զտարրս պաշտեն սուտ պատճառանօք. և ընդ ընկերս մտանեն յուխտ ստութեամն: Եւ են նոքա դարանք սատանայի, զի նոքօք իսկ կատարէ զդառնութիւն կամացն իւրոց, որպէս երբեմն իսկ

եղբայր մ'ունեցած ըլլալուն պատմչաց մէջ յիշատակութիւն մը չգտանք: Ու այն ատեն դիւրաւ կը մեկնուի Վասակայ սոցա դէմ ունեցած ատելութիւնը, վասն զի զհայր նոցին քսութեամբ մեռցնել տուեր և Սիւնեաց իշխանութիւնն յափշտակեր էր:

1. Որովհետև Հեռանայ ապստամբութիւնը Վասակայ Հայոց մարզպան եղած ատենն է, պէտք է նորա թուականը 442էն ետքը դնել. Տես յէջ 40–41:

2. Երանելի քահանայից կողմանէ Սահակ եպիսկոպոսը կը խօսի, որովհետև սա միայն քաջ պարսկերէն գիտէր. (Յ. Ը. 17):

ի գոյն յայդ Վասակ: Քանզի մինչ ունէր զանունն քրիստոնէութեան, մերինն երեսք կարծէր ծածկել և թաքուցանել զամենայն չարութիւն իւր առաջի ձերոյ անգէտ տէրութեանդ, և զամենայն նենգութիւնն իւր քրիստոնէութեամբն ծածկէր:

32. «Ուստի և ձեր իսկ կարծեցեալ՝ մեծապէս պատուեցէք զդա առաւել քան զարժանն իւր: Հաւատացէք դմա զաշխարհն Վրաց[1]. հարցէք, եթէ գո՞հ իցեն զդը-

1. Տես Փարպեցի էջ 247: – Վրացի պատմագիրք չեն յիշեր Վասակայ Վրաց մարզպան եղած ըլլալը: Բայց ժամանակակից պատմչաց՝ Եղիշէի և Փարպեցւոյ վկայութիւնքը տարակոյս չեն թողուր յայսմ: Մարթ է եւ նոյն ինքն Վրացի պատմագրաց նկարագրած իրաց մէջ որոշել այն թուականը կամ գոնեա ժամանակի միջոցը, յորում հայազգի մարզպանդ վարած ըլլալու է իւր պաշտօնը:

Ըստ Վրաց պատմութեան (Տես Brosset, Hist. de la Géorgie I. Partie էջ 143–153), Փարսման Դ. թագաւոր էր Վրաց 405էն ց408, և էր այր կորիճ, որ Յունաց հետ բարեկամանալով ապըստամբեցաւ Պարսից դէմ և չուզեց որոշեալ հարկը վճարել նոցա:

«Նմա յաջորդեց եղբայրն Միհրդատ Դ. 408–410. սա թշնամի ըրաւ թէ զՅոյնս և թէ զՊարսիկս: Արքայից արքայն անոր դէմ խրկեց զզօրավարն Ուպարապ: Միհրդատայ զօրքն յոյժ սակաւաձեռն էին, բայց և այնպէս չդանդաղեցաւ պատերազմ տալու, գերի ընկաւ և տարուեցաւ ի Տիզրոն, զօրքը ցիրուցան եղան և Պարսիկք տիրեցին Վրաստանու, զեկեղեցիս փոխեցին յատրուշանս և զաշխարհն կը կառավարէին Ագուանից և Մուղանայ մարզպանին ձեռօք: Այդ անիշխանութեան ատեն Վըրաց թագաւորական ցեղը Կախեթի ամուր տեղերն ապաւինած էր, և երբ երեք տարի ետքը Պարսիկք ուրիշ կողմեր պատերազմաւ կը տագնապէին, Վըրացի «Ազնաուրք» կամ մեծամեծք պատեհ սեպեցին և զԱրճիլ թագաւոր կարգեցին ի Մցխիթա:

«Արճիլ Ա. թագաւորեց 410–434: Զնա կը յիշէ և մեր Խորենացի, իբրև ժամանակակից Մեսրոպայ, երբ այս վերջինս՝ Գուգարաց բդեշխին Աշուշայ հրաւիրանօք քարոզութեան գնաց ի գաւառ նորա ի Տաշիր (շուրջ 426ին): Արճիլ վերահաստատեց զքրիստոնէութիւն, նորոգեց զեկեղեցիս և Պարսից դէմ խըրկեց զիւր որդին զՄիհրդատ զօրօք բազմօք, որ յաջողութեամբ ապատակեց զերկիրն Ագուանից և զՄուղան: Պարսիկք այս անգամ ալ պատերազմի բըռնուած ըլլալով յԱրևելս, չէին կրցեր զօրաւոր բանակ ղրկել Վրաց դէմ: Արճիլ իւր թագաւորութեան վերջի ժամանակները հարս առաւ իւր որդւոյն Միհրդատայ զդուստր մարզպանին Ագուանից և սանկով վախճան տրուեցաւ թշնամութեանց»:

Ասկէ մարթ է հետևցնել 410էն առջը քսան տարւոյ չափ միջոց, Վրաստան՝ մերթ կատարելապէս նուաճեալ և մերթ ապստամբ և խառնաշփոթ՝ պարսկական նահանգ մի էր ընդ իշխանութեամբ մարզպանացն Ագուանից, որք հետզհետէ կարգեցան ի դրանէն Պարսից: Նոյն միջոցին պարտ է վերագրել զմարզպանութիւն Վասակայ, որ զայդ պաշտօնդ ունեցեր էր յառաջ քան զիշխանութիւն Սիւնեաց. այս է 412էն յառաջ: Բայց թէ որչափ ատեն տևեց,

մանէ: Ետուք դմա զտէրութիւնն Սիւնեաց. լուարուք յազգականաց այտի դորա, զինչ պատմեն զդմանէ: Արարէք զդա մարզպան Հայոց. զոր նախնեացն ձերոց մեծաւ աշխատութեամբ գտեալ էր, դա ի միում ամի կորոյս զերկիրն ամենայն: Տեսէ՞ք, իբրեւ բարձաւ ի դմանէ պատուական անունն Աստուծոյ, զոր ունէր ստութեամբ, մերկ երեւեցաւ ամենայն չարագործութիւն դորա: Զի եթէ առ Աստուածն իւր սուտ գտաւ, առ ո՞ ոք ի մահկանացուաց ստի դա արդար գտցի:

33. «Արդ ամենայն ամբաստանութիւն՝ որ այժմ յայտնի եղեւ զդմանէ, ո՛չ ահա ձեր իսկ յառաջագոյն լուեալ էր. բայց յոր դէմս ծածկեցէքն, դուք ձեզէն իսկ քաջ գիտէք: Ինձ այսպէս թուի, եթէ սուտ յուսով դա զձեզ խնդացոյց[1]: Այլ ոչ դուք եւ ոչ դա եւ ոչ որ զկնի ձեր գալոցն է, զայն ի մեզ ոչ կարէ տեսանել: Արդ արարէք զդա որպէս եւ կամիք. ցմեզ զի՞ հարցանէք»:

34. Զարմացաւ մեծ հազարապետն ընդ միտս իւր. եւ ի խորհուրդս իւր քննէր զամենայն բանս ատենին: Քանզի հասեալ էր ի վերայ, եթէ յիրաւի դատապարտեցաւ այրն ըստ անարժան գործոցն իւրոց, եմուտ եւ եցոյց զամենայն բանս ատենին յարքունիսն: Եւ իբրեւ լուաւ թագաւորն եւ ստուգեաց ի հազարապետէն զամենայն պարտաւորութիւն, բարկացաւ յոյժ եւ ի խոր խոցեցաւ. բայց միայն երկայնմտութեամբ կամեցաւ հաստատել զնա ի մեծ անարգութիւն: Լուռ եկաց աւուրս երկոտասան, մինչեւ ի գլուխ չոգաւ փորձիչ[2] ամբաստանութեանն:

կամ ինչ աջողութեամբ վարեց զայն՝ չգիտենք. կ'երեւի թէ Վիրք շատ գոհ եղած չէին:

«Արծիւայ յաջորդեց որդին Միհրներսեհ Ն (434էն ց446) որ բարեկամ եւ հարկատու մնաց Պարսից եւ մեռաւ թողլով զեօթնամեայ զորդին զՎախթանգ: Սորա կրտսերութեան ատեն (446–454) Վրաստան վերստին Աղուանից մարզպանին բացարձակ իշխանութեան տակ անկաւ, որ վերահաստատեց զպաշտամունս կրակի, եւ թէպէտ ազատանին քրիստոնէութեան հաւատարիմ մնաց, բայց ժողովուրդն առ հասարակ մոգութեան հետեւեցաւ»:

Այդ Աղուանից մարզպանը Եղիշէայ եւ Փարպեցւոյ՝ Սեբուխտն է, որ իւր հրամանաց ներքեւ ունէր 10,000 այրուձի, եւ որուն ժամանակը խրկուեցան մոգք ի դրանէ Պարսից, որպէս եւ ի Հայս եւ յԱղուանս:

1. «Ըսելով ձեզ թէ ես դՀայս ուրացող կ'ընեմ, մինչ ինքն ալ գիտէր խոստացածին սուտ ըլլալը»:

2. Է բառ պարսիկ. հարցումն, հարցուփորձ, լծորդ «փորձ» բառի:

35. Եւ եղեւ յաւուր միոջ մեծի զամենայն երեւելի և զպատուականսն հրամայէր յընթրիս կոչել: Կոչեցին և զաւրացեալսն. և նա ըստ առաջի կարգի օրինացն արքունի արկանէր զպատուական հանդերձն, զոր ունէր ի Թագաւորէն [1]. կապէր և զպատուաւորսն, և զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ, և զկռանակուռ ձոյլ ոսկի կամարն ընդելուզեալ մարգարտով և ակամբք պատուականօք ընդ մէջ իւր ածէր, և զգինդսն յականջսն, և զգումարտակն

1. Այս դարձեալ փոքրիկ հատուած մի. որ ժամանակին բարուց և զգեստուց նկարագիր կամ պատկեր մի է: Սասանեանց Թագաւորը, որ Որմզդայ սերունդ և կրօնից գլուխ համարեալ էր, առական ինքնակալաց նման միայնութեան մէջ շարրիր. այլ մեծ տօնի մ'առթիւ յընթրիս կը կոչէ իւր պետութեան երեւելի անձինքը: Վաստկ ալ կը հրաւիրուի ու կ'երթայ իւր շքեղ զգեստները հագած, զորս արքային տուեր էր և քիչ մը վերջը դաւճանպետը պիտի մերկացնէր (38): Սասանեան Թագաւորներու իրենց ուազ պաշտօնատարաց պատիւը կամ աստիճանը բարձրացնելու նպատակաւ շքեղ հանդերձներ (խիլաթ) պարգեւելու սովորութիւնը, որ մինչեւ այս դարուս սկիզբները կար, շատ հին է ուրեմն, զուցէ եւս ի Պարսից անցած: Զգիտեմ թէ Յազկերտի պարգեւած պաշտօնական զգեստքն ինչ էին: Ի ԺԹ դարու Պարսկաստանի Թագաւորաց շընորհած խիլաթն կը բաղկանայր՝ 1 ներքին զգեստէ. 2 աւելի երկայն և լայն վերարկուէ. 3 գօտիէ կամ կամարէ. 4 ապարօշէ: Մազերը պատուավորու կամ տեսակ մը վարսակալաւ կապուած էին, որոյ վրայէն կը դնէր զխոյրն ոսկեղէն: Կռանակուռ ձոյլ ոսկի էր գօտին՝ մարգարտօք եւ ուրիշ ակամբք ընդելուզեալ. բոլոր հին պատմիչք կը վկայեն արեւմտեան Ասիոյ մէջ ոսկեղէն զարդուց և կարասեաց առատութեան, միանգամայն և կը հաստատեն մարգրտի մեծ յարգը և առատութիւնը: Ականջը օղ ունէր և գումարտակ (տեհ. կերասեղէք) ի պարանոցին. կանրկի զգեստն ալ էր սամոյր, ինչպէս և Սասանեան պաշտօնակալաց ընդունածը. և այդ ամէնը Վաստակայ աստիճանին և պատուոյն յարմար և օրինական հանդերձանքն էին: Բազմամբոխ զունդ մի սպասաւորաց ալ եռեւէն կ'երթար: Եթէ Օրբելեանի նոյնինք՝ նոյն ինքն Վաղարշակայ օրէն յառաջ Սիւնեաց իշխանաց հրաման եղած էր «ունել արծաթի գահոյս, վարսակալ ածել մարգարտեայ և մատանի ունել վարսագիր. նաև կօշիկ կարմիր և մական ոսկի ունելով ի վերայ գրեալ զանուն և զպատիւ ցեղին»: — Իսկ ըստ աւանդելոյ Պրոկոպիոսի «Լօդիկ կամ քղամիդ (հայ նախարարաց) էր աօրանիւթ, ոչ ի խաշանց, այլ ընտրանօք հաւաքեալ ի մանրաթելից ի ծովային ինչ կենդանւոյ՝ որ կոչի պինայ (ազնուագոյն տեսակ ինչ փինէլի). որ ի հարկանել արեւու՝ գոյնզգոյն փողփողէր: Ծիրանի հանդերձ նոցա ունէր զարդ ոսկեհուռն յայնմ մասին, ուր ամփոփեալ կայիւր: Ի վերին ծայր լօդկին շիղդ ոսկի, ազնիւ ակամբք յեռեալ, զորմէ երեք յակինթք կախէին ոսկի շղթայիւք: Մետաքսեայ պարեգօտ նոցա համակ ոսկեղէն պալարազարդ. Կօշիկք կարմիր նանագոյն մինչեւ ցծունկն պատեալ: Զորս ասէ Պրոկոպիոս ո՛չ այլ ումեք բաց ի կայսերէ և յարքայէն Պարսից օրէն էր զգենուլ»: Զամչեան Հա. Ա. 215:

ի պարանոցին, զսամոյրն զթիկամբքն և զամենայն օրէնս պատուոյն զանձամբ արկեալ՝ երթայր յարքունիս. չքեղ և երևելի քան զամենեսեան երևէր բազմութեանն:

36. Իսկ նախարարքն որք կային ի Հայոց չողան՝ անձամբ տուեալ զանձինս ի փորձութիւնն, և սուրբքն որ յառաջագոյն հասեալ էին, կապանօք ունէին զամենեսեան առ դրանն արքունի: Իբրև տեսին զնա զարդարեալ և չքեղացեալ, և բազմամբոխ գնդաւ գայր յարքունիս, ի միտս իւրեանց սկսան այպանել և ասել. Ո՜վ անմիտ վաճառական[1], զանմահ և զանանց պատիւ ետուր, և զանցաւորդ գնեցեր, զոր և զայդ ես ընդ մօտոյ աւուրս կորուսանելոց ես:

37. Եհաս և նստաւ ի ներքին դահլիճն[2], որ էր հրապարակ մեծամեծացն: Արդ եկն ել սենեկապանն[3] յարքունուստ, հարցանէր զնա և ասէր: Արքայ յղեաց առ քեզ. յորմէ՞ գտեալ է քո զայդ ամենայն պատուական պատիւդ, առա ինձ վաղվաղակի, վասն որո՞յ արդար վաստակոց: Եւ յաչս առնէր նմա զամենայն բանս առաջնին, յորում՝ դատապարտեցաւ. Նա և զոր ոչ ես անդ խօսեցան՝ զայն ես յայտնէր նմա: Զի ոչ ըստ կարգի ունէր նա զտէրութիւնն Սիւնեաց աշխարհին, այլ նենգութեամբ և քսութեամբ ետ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղինակ, և ինքն առեալ զտէրութիւնն իբրև քրպիկար յարքունիս[4]: Նա և այլ ես բազում բանիւք գա-

1. Բաղդատ՝ վազարկուն:

2. Ըստ Հայկ. բառարանի, դահլիճ է սրահ վարագուրաձիգ, սենեակ ընդարձակ յարքունիս. դիւան: — Տաճիկ պարսկերէն دهليز է գաւիթ ընդ մէջ երկուց դրանց կամ ընդ մէջ արտաքին դրան և տան, portique, արտաքին գաւիթ. ճեմելիք. Տես Johnson: — Սասանեան թագաւորաց ապարանքը միայարկ էին. սենեակները զմբեթաւոր և մէկէն միւսը կ'անցնուէր և սոցա իրարու հաղորդակցութեան համար նեղ անցք կամ փողք չկային ընաւ. ուստի Եղիշէի դահլիճ՝ ներքին սենեակ ըսել է. իսկ արտաքին կամ բուն դահլիճն էր հաւանօրէն կամարակապ մեծ գաւիթն, որ Սասանեանց ամէն շինութեանց ճակատը կը տեսնուի, որոյ երեսը ամբողջ բաց է, և որուն խորը կը գտնուի չէնքին դուռը կամ մուտքը: (Տես Սասանեան ճարտարապետութեան վրայօք Ֆէրկիւսըն և Ռօլինսընի Սասան. Պատմութիւն):

3. Սենեկապանդ կը յիշեցնէ մեզ Օսմանեան ինքնակալաց մապէյնճին, որ կը խրկուի՝ զարքայն ահաճեցնող վէզիրէն արքունի կնիքն ետ առնելու:

4. Քրպիկար յարքունիս, ինչպէս որ Պլինիոս ալ կը վկայէ հայ նախարարութեանց մի քանին երբեմն մի մի առանձին թագաւորութիւնք էին: Տանուտէ-

տապարակեցին զնա, որում ամենայն աւագանին վկայ կային: Պապանձեցաւ ամենեին, և չգտաւ բան ճշմարիտ ի բերան նորա: Իբրև կրկնեցին և երեքկնեցին ցուցանելով ի ներքս յարքունիսն, հատաւ վճիռ[1] մահու ի վերայ նորա:

38. Արդ եկն եւ դահճապետն, և մատեաւ առաջի ամենայն մեծամեծացն մերկեաց ի նմանէ զպատիւն զոր ունէր յարքունուստ, և զգեցոյց նմա հանդերձ մահապարտի[2]: Կապեցին զոտս և զձեռս, և կանանցաբար նստուցին ի ձի մատակ[3]. տարան ետուն յայն զընդան[4], ուր կային մահապարտք ամենայն:

39. Իսկ նախարարքն Հայոց և սուրբ եպիսկոպոսքն հանդերձ երիցամբքն, թէպէտ և էին ի մեծի պատուհասի, ոչ ինչ յիշէին զնեղութիւնսն՝ որ անցեալ էր ընդ նոսա, և կամ որ այլ ևս ակնկալութիւն էր գալ ի վերայ, այլ զարմացեալ էին ընդ մեծ յայտնութիւնն՝ որ եղև յԱստուծոյ: Մխիթարէին զմիմեանս և ասէին. «Քաջութեամբ պատերազմեցաք, առաւել ևս համբերու-

ութիւնը իջանէր պայազատութեամբ յորդւոց յորդիս ի ժառանգս, եւ կը հաստատուէր արքունի հրամանաւ. և էր անփոփոխ, բայց եթէ վասն իրիք հարկի այլում ումեք ի նոյն ցեղէ շնորհեալ լինէր ի թագաւորէն (Զամչեան. Հատ. ա. 215): Այդ իշխանութիւնք բանեցուցեր էին հայ թագաւորք և ժամանակէ մը ի վեր Պարսից թագաւորին կը պատկանէր: Այսպէս մինչ Սիւնեաց տէրութիւնը սովորական օրինօք Բաբգէնէն իւր որդւոյն Վասակայ պէտք էր անցնիլ, Վռամ Դ Բաբգենի սենեկապետին Սամայ տուեր էր: Տարի մը ետքը Սամ թունաւորեալ մեռնելով, հաւանօրէն Վռամշապհոյ կամ Սահակայ Պարթևի խորհրդով Վասակայ հօրեղբայրը Վաղինակ իշխան կարգուեր էր Սիւնեաց: Հիմայ Վաղինակայ որդիքն Բաբգէն և Բակուր, զորս Եղիշէ եղբօրորդիս կը կոչէ Վասակայ, հօրենուն յաջորդութեանը ցանկացող պիտի ըլլային, բայց Վասակ ծանր ամբաստանութիւններ հանելով Վաղինակայ դէմ սպաննել տուեր էր զնա, ու յանցաւոր իշխանին տէրութիւնը իբրև քրոփկար՝ այս է գործ արգիւնական և արժանի վարձուց՝ տարեր էր յարքունիս. և այս ծառայութեան ի փոխարէն Սիւնեաց իշխանութիւնը առեր էր յարքայից արքայէն, «ետուք զմա զտէրութիւնն Սիւնեաց». Տես Յ. Ի, 32. և էջ 252. ծն. 1:

1. Վճիռ. բազանդ՝ վչիռ. արդի պարսկերէն. وچر

2. Մահապարտի ինչ զգեստ կը հագցնէին. դուցէ ճերմակ երկայն շապիկ մը:

3. Բազանդ՝ մատաք, կամ մատէք, որ անուանց սկիզբը դրուելով իգականը կը նշանակէ:

4. Պարսկերէն զինտան زندان բանտ, ուստի զինտանեան՝ բանտապան՝ զինտանի բանտարկեալ:

թեամբ ճգնեցուք: Լուեալ է մեր ի սուրբ հարցն մերոց, եթէ գլուխ ամենայն առաքինութեան համբերութիւն է, և խոնարհութիւն երկնաւոր՝ կատարեալ աստուածպաշտութիւն, և զայս ոչ ոք կարէ գտանել առանց չարչարանաց: Իսկ չարչարանքն յորժամ ընդերկարանայ ի վերայ, յայնժամ բազմանայ վարձ հատուցմանց պարգևին:

40. « Այս թէ այդ այդպէս է, զայս միայն աղաչեսցուք զԱստուած, զի համբերել կարասցուք ամենայն փորձութեանց. և Տէր ինքնին արասցէ հնարս մերում փրկութեան: Լուեալ է մեր զդատաստան քառասուն զինուորացն Քրիստոսի, որք բազում հարուածս տանջանաց ընկալան: Մինն ի նոցանէ փութացաւ ի բաղանիսն, և վրիպեաց ի պսակէն. իսկ երեսուն և ինն համբերութեամբ կատարեցան, և հասին այնմ աւետեաց, որում ցանկացեալն էին: Իսկ մեր ընկերակիցն աւանիկ, որ յառաջագոյն որոշեցաւ ի մէնջ, ահա եղեւ գործակից սատանայի: Մինչ դեռ ոգիքն ի մարմինին են, ընկալաւ զառհաւատչեայ գեհեննին տանջանաց, որ ոչ միայն սրբոց է ողբալի, այլ և ամենայն գազանաբարոյ մարդկան »:

41. Զայս ասէին, և բազում արտասուս ի վերայ կորուսելոյն հեղուին. և անդէն զերգս հոգևորս ի բերան առեալ ասէին. Բարի է յուսալ ի Տէր քան յուսալ ի մարդիկ. բարի է յուսալ ի Տէր քան յուսալ յիշխանս. ամենայն ազինք շրջեցան զինև, և անուամբ Տեառն յաղթեցի նոցա[1]: Քաջալերէին զմիմեանս և ասէին. Զայս գիտելով, եղբարք, մի երկիցուք յանաստուած ազգէս հեթանոսաց, որ քան զմեղուս վատթարագոյն են ի զայրանալն իւրեանց. զի և նոցա ցասումն ի սատակումն անձանց իւրեանց լինի[2]. այլ մեք զանուն Տեառն կարդասցուք, և վանեսցուք զամենեսեան:

1. Սաղմոս ճծէ:

2. Եղիշէ կը նմանեցնէ մեղուաց, որք երբ իրենց խայթոցը կը մխեն թըշնամւոյն մարմնոյն մէջ, շատ անգամ ետ չեն կրնար քաշել. ու յայնժամ խայթոցը կը փրթի ու կը բաժնուի մեղուէն. ու ասկէ վէրք մը կը գոյանայ, յորմէ անմիջապէս կը մեռանի մեղուն. Milne Edwards, Histoire naturelle:

42. Իսկ ուրացեալն վասակ հայեր ի միաբանութիւն սուրբ կապելոցն, որք մեծաւ խնդութեամբ ընդունէին զչարչարանսն, և զուարթագոյն և պայծառք երևէին որպէս յառաջագոյն յարքունիսն. հայեր և կարօտէր, և ոչ ոք խառնեաց զնա ի նոսա, այլ ուրոյն նստէին կապանօք պահէին: Եւ օր ըստ օրէ բերէին[1] իբրև զդէշ ընկենուին ի մեծ հրապարակին[2], ձաղէին և այպանէին, և տեսիլ ամենայն կարաւանին զնա առնէին: Կողոպտեցին հանին և ոչ ինչ թողին զոր ընդ իւրն ունէր. այնպէս ձաղեցին աղքատութեամբ, մինչև հաց մուրանային և բերէին նմա իւր ծառայքն: Եւ այնպէս սաստիկ արկին զպարտերս հարկաց աշխարհին ի վերայ տան նորա, որ մինչև զհարց և զհաւուց և զիւր արարս և զպարգևս կանանց ևս եդ ի վերայ և ետ և տուժեցաւ, և ոչ կարաց հատուցանել զպարտսն արքունի: Եւ յայն տեղի հասուցին, մինչև հարցանել նմա եթէ կայցէ՞ ինչ գանձ ի գերեզմանս նախնեացն[3] մերոց. և եթէ գտեալ էր նորա, հանէր և տայր ընդ իւր և ընդ ընտանեացն սագանս. որպէս զի բազում մարդիկ իսկ չոգան ի տուժին[4]:

1. Այս և ուրիշ օրինակներէ յայտ է թէ Պարսից մէջ՝ մահուան դատապարտութիւնը գլխատմամբ կամ ուրիշ եղանակաւ կենաց անմիջական խորտակումն չէր նշանակեր. այլ մահապարտը ծանր շղթայներու զարնելով բանտի մէջ կը գնէին, ուր խոնաւութիւնը, աղտեղութիւնը, լուսոյ պակասութիւնը, կերակրոց անբաւականութիւնը (ընդհանրապէս միայն գարեհաց և ջուր կուտային) բանտարգելոյն կազմուածքին համեմատ կանուխ կամ ուշ կը քայքայէր բնութիւնը:

2. Հրապարակ է ատեանօր անշուշտ արձակավայր ի մէջ քաղաքի. իսկ կարաւան բառով իմանալի է բանակ, զօրաց խումբը, որ յայնժամ ի Տիզբոն էր արքային հետ:

3. Ուրեմն Սիւնեաց նախարարք, ինչպէս և անշուշտ այլ տանուտեարք, բացօթեայ գերեզմանատեղւոյ մէջ թաղուած և սոսկ մահարձանաւ ծածկուած չէին. այլ յատուկ և յարկածածուկ շիրիմներու (տես. բիւզանդ) մէջ, յորս կը հանգչեցնէին զմեռեալս, հանդերձիւք և թանկագին զարդուք:

4. Երբ Վասակայ տուգուածքը չէին բաւած արքունի գանձին ունեցած պարտքը հատուցանելու (քանզի գող եւ գըտանէր հարկի աշխարհին), ընտանիքէն բազում մարդիկ բռներ էին Պարսիկք ու տարեր էին յարքունիս, ոչ իբրև պարտաւոր պատասխանատու, այլ իբրև սեփականութիւն և փոխարէն պարտուց նորին. զորս ազատելու համար կը ստիպուէր Վասակ գանձս հարել: Մարդոյ մը յանցանքը միայն անոր անձը պատժոյ չէր ենթարկեր, այլ և բոլոր գերդաստանը: Այս սկզբամբ տեսանք որ Պարսիկք ապստամբելոց կինն և որդիքն ալ յարքունիս տարին:

43. Եւ իբրև այսպէս յամենայն կողմանց հարեալ վատթարացաւ, անկաւ յախտս դժնդակս անդէն ի կապանսն: Քեռաւ փոր նորա, և հարան և տորեցան գոգք նորա, և քամեալ մզեցաւ թանձրամսութիւն նորա: Եռացին որդունք ընդ աչս նորա և ի վայր սորեցին ընդ անդունս նորա. խցան լսելիք նորա, և ծակոտեցան չարաչար շրթունք նորա. լուծան ջիղք բազկաց նորա, և յետ կոյս կորացան կրկունք ոտից նորա: Բղխեաց ի նմանէ հոտ մահու, և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա: Լեզուն միայն կայր կենդանի ի բերան նորա, և ոչ գտաւ խոստովանութիւն ի շրթունս նորա [1]: Ճաշակեաց զմահ հեղձամղձուկ, և էջ ի դժոխս

1. Փարպեցին որ իր տեղեկութիւնները առեր էր «յարդարապատում պատուորացն Վասակայ» — որք մինչև ցօրն մահուան տեառն իւրեանց քովը գտնուեր էին՝ կը գրէ. «Եւ նեղացուցին Վասակ կացեալ ի դրանն ամս ինչ կարի վշտագին և նեղութեամբ բազմաւ, մաշէր զաւուրս իւր հառաչելով և հոգւոց հանելով զամենայն օր և զժամ, մինչև թշնամանակերպ ձաղանօք սփռեալ զթաթս ձեռաց իւրոց՝ ինքնին զիւրովին ծեծէր զդէմսն»... Վասակայ աչուըներէն վար որդերուն վազելը բանաստեղծական չափազանցութիւն համարելու չէ, Պարսկաստանի խոնաւ բանտերուն աղտեղութեանը մէջ մարմնոյն կապած թարախը կրնայ դիւրաւ որդանց փոխուիլ: Եթէ Եղիշէի համար կասկած ունենայ ոք թէ Վասակայ դէմ ունեցած կիրքը նորա համար քստմնելի մահ մը երեւակայել տուեր է, կրնայ փարատել իւր կասկածը հետագայ հաստատուածով, զոր կը քաղեմք Մեծին Վարդանայ դստեր և Գուգարաց դշխոյն Շուշանկայ պատմութենէն, որոյ հեղինակը, ամենևին պատճառ մը չունէր, այդ վեհ և սիրելի վկայուհւոյն մահը պժգալի երեւցնելու. «բերին կտաւս բարակս և լուացեալ զմարմին սրբոյն յորդանցն եւ ի թարախոյն զոր ունէր ի բանտէն և ի չարչարանացն»: Սոփերք Հայկ. Հատ. Թ.

Եղիշեայ Վասակայ մահուան նկարագիրը նմանութիւններ ունի Մակաբայեցւոց մէջ Անտիոքոսի մահուան նկարագրոյն հետ: Բայց Եղիշէ օրինակող չէ և ոչ իսկ հետեւող. մեր ոսկեդարեան մատենագիրք գրեթէ բերնուց գիտէին զաստուածաշունչ գիրս. (Փարպ. 604–606): Մտացը մէջ պատրաստ ունի երբայեցի հեղինակաց այլեայլ խորհրդածութիւնքը, որք յարմար առթիւ կը զարթնուն և կը խառնուին իւր յատուկ մտածութեանց հետ: Նոր հագի, նոր գոյն և նոր կենդանութիւն տալով անոնց, կ'իւրացնէ զնոսա և երկրորդ ծնող և հեղինակ կ'ըլլայ:

«Տէր Աստուած Իսրայելի եհար զնա աներևոյթ հարուածովք. այն ինչ բանք ի բերան նորա էին, ցաւք սաստիկք և անհնարին ոսկերաց ի վերայ հասանէին. և դառնութեան խիթք ի փոր անկանէին: Կարի յիրաւունս. զի որ բազում նորանոր չարաչար ցաւս յայլոց մարմինս տանջանօք հասուցանէր, նոյն սաստկագունեան ցաւք զնովաւ անկեալ պաշարեալ պահէին... մինչև դէպ եղև նմա անկանել ի կառաց... անդ անկանէր նա ի չարաչար տանջանս, զի ամենայն ոսկերքն առհա-

անճնարին դառնութեամբ: Ոտնհար եղեն նմա ամենայն սիրելիք նորա, և ոչ յագեցան տեսանել հարուածովքն ամենայն թշնամիք նորա:

44. Եւ այն որ կամէրն թագաւոր լինել մեզօք Հայոց աշխարհին, ոչ երևեցաւ տեղի գերեզմանի նորա. քանզի իբրև զշուն մեռաւ և իբրև զգէշ քարշեցաւ: Ոչ յիշեցաւ անուն նորա ի մէջ սրբոց, և ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն: Ոչ ինչ եթող չարիս՝ զոր ոչ գործեաց ի կեանս իւր, և ոչ ինչ մնաց ի մեծամեծ չարեաց՝ որ ոչ անցին ընդ նա ի մահուան նորա:

45. Գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա, առ ի կշտամբումն յանդիմանութեան մեղաց նորա. զի ամենայն որ զայս լուեալ գիտասցէ, նզովս ի հետ արկցէ, և մի լիցի ցանկացող գործոց նորա:

տարակ խորտակէին. և այն որ այն ինչ կամէր ի վերայ ալեաց ծովու տատանել վասն անօրէն հպարտութեանն, և զվերին լերանցն ներքին առնել և զներքին վերին, զնա ինքն յերկիր հողեալ, շալակաւ շրջեցուցանէին, յայտնապէս Աստուծոյ զօրութեանցն երևելոց. մինչև յաչաց անուի անօրինին եռանդն որդանց ըղխեալ սորսորէր, և կենդանութեամբ իւրով՝ ախտին ցաւոց զանգամն ի մխմեանց յօշել, և ի նեխոյն հոտոյ զօրացն ամենայնի նեղել տագնապաւ. և որ յառաջն հպարտացեալ մտօք զաստեղս երկնից ամփոփել համարէր, այժմ անդր շրջշրջել ոչ ոք կարէր վասն նեխոյն հոտոյ տագնապի… զի և ինքն իսկ ոչ կարէր ժոյժ ունել ի նեխոյ հոտոյ անտի »: Մակաբայեցւոց Բ. գլ. Թ:

Տես ևս Եղիշեայ Զարչարանաց մեկնութեան մէջ Յուդայի մահը: « Քանզի և աշակերտակիցքն բարկացեալ էին և քահանայքն ցասուցեալ և ընտանիքն իւր ատուցեալ. ոչ ոք փոյթ արար խնդրել զանդիւտ կորուստ նորա, և ոչ ոք իջոյց զնա ի չարաչար կախաղանէն, ուռաւ փոր նորա, և ցրուեցան ամենայն ոսկերք նորա ի գձոխս. իբրև զշուն մեռաւ և իբրև զգէշ քարշեցաւ. եղ օին ի վատտակոցն, և ջնջեցաւ անուն նորա ի դպրութենէ կենաց » էջ 261:

Վասակ Սիւնեաց իշխան եղած էր յամին 412ին ծաղիկ հասակի մէջ որպէս վկայեն Կորիւն և Խորենացի. և որովհետև հօրը Բաբկայ մահուան ատեն՝ 399ին, պատանի կամ տղայ էր յարքունիս Պարսից, — գիր տասն և հինգ ամաց — ու Բաբիկէն եղբը Սամ և Վաղինակ տասն տարի իշխանութիւն վարեր էին Սիւնեաց, ծննդեան թուականը հաւանօրէն 384ին ըլլալու է: Այդ հաշուով Սիւնեաց իշխան եղած ատենը 28 տարեկան, իսկ Աւարայրի պատերազմին ատենը 67 ամաց կ'ըլլայ: Քառասուն տարի վարեր էր Սիւնեաց իշխանութիւնը և տասն տարի Հայոց մարզպանութիւնը: Իրմէ եղբը Սիւնեաց իշխան կարգեցաւ փեսայն և թշնամին սեպուհն Սիւնի ուրացողն Վարազվաղան (452–476):

# ԱՐՏԱՔՈՅ ԵՕԹՆ ՅԵՂԱՆԱԿԻՆ,

## ՈՒԹԵՐՈՐԴ

### ԴԱՐՁԵԱԼ ՎԱՍՆ ՆՈՐԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԵՒ ՉԱՐՉԱՐԱՆԱՑ ՍՈՒՐԲ ՔԱՀԱՆԱՅԻՑՆ

1. *Արդ ի վեշտասաներորդի ամի*[1] *տէրութեան Նո֊րին Թագաւորի, դարձեալ անդրէն խաղայր գնայր յաշ֊խարհն Քուշանաց մեծաւ սրտմտութեամբ ի գործ պա֊տերազմին: Եւ գնացեալ ի Վրկանէ*[2], *և եկեալ յԱպար աշխարհ, նովին կապանօք*[3] *գնախարարսն և զքահանայսն հրամայեաց պահել ի դղեկ քաղաքին ի Նիւշապուհ*[4]. *և* 454

1. Յամին 454։

2. Վրկան է աշխարհ յելս հարաւոյ կասպից ծովու. Աւեստայի լեզուաւ Վ.ը-հրքանա. արդի պարսկերէն՝ Կուրկան گرگان։ Կուրկ՝ որպէս Վ.ըհրքա է «գայլ». հայկական անուանդ՝ Աւեստական բառէն եկած է ուրեմն։

3. Եղիշէ զկապեալ նախարարս եւ զքահանայս յարքունի ձմերոցն՝ ի Տիզբոն թողուց, յեօթներորդ Յեղանակին։ Բայց սորա Վասակայ դատապարտութենէն յետոյ Վրկան խրկուեր էին ըստ վկայե֊լոյ Փարպեցւոյ, ուր պահեցան խիստ կա֊պանօք մինչև յամն վեշտասաներորդ թա֊գաւորութեան Յազկերտի։ Սա Վրկանէ անցնելու ատենը հետը կ՚առնու զնոսա և Նիւշապուհի դղեկին մէջ բանտարկել կու֊տայ ու միայն զերկուս քահանայս՝ զՏէր Սամուէլ և զԱբրահամ իւր հետը կը տանի զանի և բուռն կապանօք նեղե֊լով հանապազօր։ Կապեալ քահանայք ութ են. իսկ նախարարք 37 ըստ Եղի֊շեայ և 34 ըստ Փարպեցւոյ. բաց ի մանկանց ազատաւորաց. որք եկեալ էին ինքնակամ յաշխարհէն Հայոց։ Փարպ. 255. 282։

4. Նիւշապուհ՝ զոր Փարպեցին «Շա֊հաստան Նիւշապուհ» կ՚անուանէ, էր գլխաւոր քաղաք Ապար աշխարհի կամ այժմեան Խորասան նահանգի։ Պարսիկք ասեն Նիւշափուր։ Այս հին քաղաքս, որ այժմ հազիւ տասն հազար բնակիչս ու֊նի, քանդեցաւ ի Մեծէ Աղեքսանդրէ և վերստին շինեցաւ ի Շապհոյ Առաջնոյ։ Սելճուգեանց օրով մայրաքաղաք եղեւ Պարսկաստանի, և Թաթարք կործանե֊

գերկուս յերանելի կապելոցն ընդ իւր խաղացոյց: Ահ արկանէր ամենայն քրիստոնէութեան ընդ որ անցանէր:

2. Իբրև զայն տեսանէր Հոն մի, որ էր յազգէ Թագաւորացն ի Խայլանդրաց աշխարհէն, Բէլ անուն [1], և ի ծածուկ խոնարհէր առ քրիստոնեայսն, և սիրով յօժարութեամբ ուսանէր ի նոցանէ զճշմարտութիւնն և կամօք իւրովք նուաճեալ էր ընդ իշխանութեամբ Թագաւորին, և կարի յոյժ գաղտնայր ի միտս իւր յորժամ տեսանէր չարչարեալ զսուրբսն: Եւ իբրև այլ ոչ ինչ էր ձեռնհաս, փախստական անկանէր առ արքայն Քուշանաց: Երթայր և պատմէր նմա զամենայն անցս չարչարանացն, զոր անցոյց Թագաւորն ընդ աշխարհն Հայոց. տեղեակ ևս առնէր զնա վասն խրամատութեան պահակին Հոնաց [2]. ցուցանէր և զերկպառակութիւն զօրացն, որ բազում ազգք բաժանեցան ի սիրոյ Թագաւորին. ազդէր նմա և զորտանջ զԱրեաց աշխարհին:

3. Զայս իբրև լուաւ Թագաւորն Քուշանաց, ոչ ինչ երկմտութեամբ Թերանայր յառնէն, և ոչ կարծիք լեր-տեսի անկանէին ի միտս նորա: Քանզի սակաւ մի յառաջագոյն նորա լուեալ էր, զարհեալ իբրև ստուգեալ ես ի Բէլայն յայնմ՝ եթէ խաղացեալ գայ ի վերայ աշխարհին Քուշանաց, փութացաւ վաղվաղակի զօր ժողովէր, գունդ կազմէր՝ ելանել նմա ընդ առաջ հզօր ձեռամբ: Զի Թէպէտ և ոչ կարէր յանդիման տալ պատերազմ ընդդէմ նորա, այլ ի վերջի Թևոյն անկեալ, բազում հարուածս հասուցանէր ի վերայ զօրացն արքունի: Եւ այնպէս նեղեալ շտապէր, զի անձուկ լաշկարու [3] վա-

ցին վերաբերին յժԲ դարու: Ասելի հին ժամանակաց մէջ կը կոչուէր Նիսա: Զոր ոմանք կարծեցին Անդմըշ կամ Անյուշ բերդն, որ այնքան թշուառ յիշատակօք նշանաւոր եղած է մեր պատմութեան մէջ. բայց այդ Անյուշ բերդդ խուժաստանի մէջ փնտռելու է և ոչ ի Խորասան. Տես Բուզանդ 202 և 205:

1. Բէլդ Կովկասային Հոներէն էր, և Պարսից արքային ծառայութեան մէջ մտեր էր: Տես Խայլանդուրք էջ 194. ծն. 1: Զարմանալի է սակայն այդ Բէլ անուանդ Կովկասային Հոնաց մէջ գործածուիլը:

2. Այս է Ճորայ պահակը:

3. Տես Փարպ. էջ 258. «Քանզի ոչ դէմ յանդիման հակառակեալ պատերազմէին ընդ զօրսն Պարսից, այլ յեղակարծումն անկեալք ի վերայ միոյ միոյ Թևին հանէին ընդ սուր զբազումս, և ինքեանք դարձեալ անփոյթ աներևոյթք լինէին»: Առաջին յեղանակի մէջ ալ

տախտարակ արարեալ՝ այսրէն դարձուցանէր, և ինքն տապաստակալ զհետ մնեալ աւերէր զբազում գաւառս արքունի. և ինքն ողջանդամ անդրէն յերկիրն իւր դառնայր :

4. Եւ իբրև ետես եթէ անարգանօք և վատթարութեամբ դարձեալ եմ՝ ի պատերազմէս, զիջաւ փոքր մի ի հպարտութենէն, և գիտաց եթէ յերկպառակութենէ զօրացն եղեն չարիքն ամենայն: Եւ առ մղձկել սրտին՝ չգիտէր թէ յո՛ թափէր զթոյնս դառնութեանն: Իսկ մեծ հազարապետն[1] յայտ էր յերկիւղի, քանզի ինքն էր պատճառ ամենայն չարեացն զոր գործեաց:

5. Սկսան բանս ի բերան դնել մոգպետին և մոգացն, որք մատուցեալ յանդիման առէին ցթագաւորն. Արքայ քաջ, մեք ի դենէ իսկ գիտեմք, զի ոչ ոք ի մարդկանէ կարէ կալ առաջի քոյոյ մեծի զօրութեանդ, այլ վասն քրիստոնէիցն, որ են ընդդէմ օրինաց մերոց, բարկացեալ են մեզ աստուածքն, զի մինչև ցայսօր կենդանի պահեցեր զնոսա: Եւ յիշեցուցանէին ևս նմա, որպէս նոքա ի բանտի անդ անիծանէին զքեզ: Եւ բազում և այլ հայհոյութիւնս խօսէին զսրբոցն, և զօր հանապազ զնոսա յաչաց հանէին, և զմիտս թագաւորին ածէին ի ցասումն բարկութեան. մինչև փութացաւ վաղվաղակի հեղուլ զարիւն անմեղացն:

ռեանք, որ Ցազկերտ յամառութեամբ կռուեր էր Քուշանաց դէմ. բայց ան տեղն Մերվի ճանապարհաւ գնացեր էր. այս անգամ Նիւշափուրէն ի Վաղգէս (այժմ Պատկիս) և ի Հրև (այժմ Հէրատ) կ'երթայ։ Աշկարհ յաշկարու՝ այս է ռազմական բանակաւ. պարսկ. լաշքար, لشكر. Վատախտարակ՝ կը բաղկանայ վատ, ախտար բառերէ և ակ մասնիկէ. վատ պարսկերէն պատ بد է չար, յոռի, դէշ։ Սասանեանց ժամանակ վատ կը հնչուէր. վասն որոյ առէին վատ—ախլ՝ վատաախտ, վատ—կաճառ՝ վատաբարոյ, վատթար՝ վատ—թար, եւ այլն։ Պարսկերէն ախտար اختر այժմ նշանակէ աստղ. բայց բուն նշանակութիւնն է Զոդիակոսի աստղ, անշուշտ Բաղդերական ճախերու բաժնի կրճատումն, որ աստեղաց բուրջ՝ խումբ ըսել է. մինչ ախտարար որ է հակառակ կամ ընդդիմակաց ախտար, նշանակէ ն և է աստղ, որ Զոդիակոսի կամ ուրիշ համաստեղութեան մը մէջ չգտնուիր, զոր օրինակ մոլորակ կամ այլ աստեղք որք առանձին կ'երևին։ — Ի և արդի պարսկերէն սատ—ախտար՝ Թշուառ, աստղը դէշ, վատախտարակ։

1. Միթէ Միհրներսեհ Ցազկերտի հետ գնացե՞ր էր յԱպար աշխարհ. չեմ կարծեր. թուի ինձ թէ Եղիշէ կը պատմէ աստ Ցազկերտի անյաջող դարձոյ ընդհանուր արդիւնքը

6. Եւ հրաման վասն երկուցն՝ որ անդէն ի կարաւանին առ իւրն էին, Սամուէլ և Աբրահամ, զի գաղտ կորուսցեն զնոսա [1]: Իսկ որք էին ի գդեկ քաղաքին, հեռի էին ի կարաւանէն իբրև օթևանս հնգետասան [2]: Հրամայեաց համբարակապետին, որում անունն էր Դենշապուհ [3], զի յառաջ քան զնա երթիցէ ի քաղաքն, ուր էին սուրբ քահանայքն Տեառն, և չարաչար տանջանօք իշխեսցէ դատել և հարցանել, և սրով վախճանել:

7. Այլ զնոսա մոգպետին՝ [4] յառաջագոյն, որում յանձն

1. «Ցաղագս չգտանելոյ ուրուք ի քրիստոնէից և պատուելոյ զոսկերս նոցա» փարպ. 260: «Վ. կոյեցան սուրբքն յամենայն Հրաւից, որ օր եօթն էր ամսոյն, ի գաւառին որ անուանեալ կոչի Վ.ոգգէս» (նոյն 261 և Եղիշէ Յ. Ը 92): Այս Վ.ոգգէս գաւառ, որ ձեռագրաց մէջ Վ.որդգէս, Վ.առգեսս, Վ.ագէս ալ գրուած է, գտանի յարեւելս Խորասանու և ի հիւսիսոյ Հերատայ կամ լաւ եւս Պարապամիսեան լերանց, ընդ մէջ Հերի-ռուտ և Մուրղապ գետոց և այժմ իսկ կոչի Պատկես. բստ Պուետահիշի՝ Վ.ատկես և բնակիչքն Վ.ատկեսեանք. իսկ Աւեստայի մէջ Վ.աիդի-կաէգս: — Իւ և այժմ Վ.ատկէս աւան գլխաւոր տեղի գաւառին: Ըստ պարսիկ աշխարհագրին Համտ-ուլլահ էլ Գազվինի (որ մեռաւ 1449ին) Վ.ազգէսի գաւառին մէջ պիստակենեաց անտառ մի կար հինգ փարսախ (25 քիլօմէդր) լայն և նոյնչափ երկայն: Պտղոց առենը ամէն կողմանէ մեծ բազմութիւն մը կը ժողովէր անդ. իւրաքանչիւր որ ուզածին չափ կը քաղէր և օտար աշխարհներ կը տանէր վաճառելու համար. էին եւս մարդիկ որ մի միայն այս առատութեամբ կ՚ապրէին:

2. Այս է 15 փոճաք. մէկ օթը մարթ է հաշուել հինգ կամ վեց ժամու ճանապարհ կամ չուրջ 25 քիլօմէդր և ընդ ամէնը 375 քիլ. ուղիղ գծով նոյնքան միջոց մը հաշուելու է ըստ աշխարհացոյց տախտակաց ընդ մէջ Նիւշափուրի և Պատկէս աւանի: Յազկերտ այս անգամ Մարվռոտի կողմերը չէր պատերազմեր, այլ Հերի-ռոտի ընթացքը բռնելով իջեր էր ի Վ.ազգէս, ի հիւսիսոյ Հրեւայ կամ Հերատ քաղաքի, ուսկից աւելի ապահովապէս կրնար յարձակիլ Քուշանաց կեդրոնատեղւոյն և մեծ ամրոցին Բալխի կամ Պահլի վրայ: Իրեն հետ տարեր էր անդ զկապեալ նախարարն:

3. Այս այն Դենշապուհ է որ առաքեցաւ ի Հայս աշխարհագիր առնել. (Տես Յ. Բ 15-17 և Յ. Ը 67): Համբարապետը այժմեան պետութեանց ելեմտից պաշտօնէին չափ կարեւորութիւն ունէր. որովհետև տայոց, զինուորաց, նախարարաց և առհասարակ ամենայն կարգի պաշտօնէից թոշակը աւելի առճիկ կը տրուէր յարքունուստ: Իւ Դենշապուհէն աւելի յարմար անձ մը չէր կրնար խրկել Յազկերտ ի Հայս հարկերը փոփոխելու կամ աւելցնելու համար: — Յառաջ քան զնա երթիցէ ի քաղաքն. չէ թէ Յազկերտ տակաւին ի Նիւշափուր չէր հասեր, այլ այդ քաղաքէդ շատ յառաջ գնացած ըլլալով, զօրացը ուրուելովն հիմայ ետ պիտի դառնար անդր:

4. Այս է Աշար աշխարհին մոգուց առաջնորդին, որ ոչ միայն կրօնական գլուխ, այլ և իշխան-կուսակալ էր նահանգին:

արտաբերել էր, բազում անգամ՝ աւելի քան զհրամանն արքունի չարչարել էր. քանզի իշխան դենպետ էր Ա-պար աշխարհին, և առաւել ջերմագոյն էր ի մոլու-թեանն. քան զբազումս՝ գիտուն եւ տեղեակ էր զրա-դաշտական օրինացն: Նա և զոր մեծ պարծանս համա-րէին ըստ իւրեանց մոլորութեանն կարգի, համակդեն անուն էր[1]. գիտէր և զամենայն պարտքաշն, ուսեալ էր

1. Այս պարբերութիւնս Եղիշէի գըր-քին ամէնէն աւելի դժուարութիւն տուող մասն է: Եւրոպացի հնագիտաց ալ ու-շադրութիւնը գրաւած է. բայց տակաւին սորա ամէն խրթնութիւնքը գոհացուցիչ մեկնութիւն մը չկրցան ունենալ:

Մեր բանախօսութեան մէջ որ «Յա-ղագս Դենին Պարսից», տեսանք որ մեր ձեռքը հասած մազդէական մատեանք յայլեայլ մասունս բաժանին. Ա. Աւեստա՝ գրեալ զուտ Զենդեան բարբառով, որ հնագոյն է քան զվեդայի սանսքրիտը. — Բ. Զանտ՝ թարգմանութիւնք Աւեստայի և ծանօթութիւնք յօրինեալք պահլաւիկ, այս է Պարթևաց լեզուաւ, որ պարս-կերէնով խառն ասորերէն է: Գ. Բա-զանտ՝ այս է մեկնութիւն Զանտի կամ երկրորդ ծանօթութիւն. սորա լեզուն շատ նման է Ֆիրտէվսիի պարսկերէնին և անխառն ի Սեմական արմատոց: Սո-քա միայն ճանչցուած են այժմ իբրև կանոնական մատեանք ի Բարսի մազ-դեզանց, որ ի Հնդիկս: Կու յիշեցնենք դարձեալ, թէ Սասանեանց օրերը՝ Աւես-տայի լեզուն գրեթէ անիմանալի էր. վասն որոյ և անոր պահլաւիկ թարգ-մանութիւնն աւելի գործածական էր, թէպէտ աղօթներն և արարողական եր-գերն Աւեստայի լեզուաւ կը կատա-րուէին: Արդ՝ ուսեալ զպահլաւիկն, ըսել է թէ մոգպետ գիտէր զպահլաւիկ լեզուն միանգամայն այն ամենայն կրօնական վարդապետութիւնները, որ ամփոփեալ են Բահլաւի կամ Հիւզվարէշ գրոց մէջ: Բայց Սասանեանց ժամանակակից հայ և յոյն մատենագրաց մէջ կը գտնենք խել մը վարդապետութիւններ, որ չը-կան Բահլաւի գրութեանց մէջ. օրինակ իմն Զրուանայ նախագոյութիւնը, արե-գական, լուսոյ աստեղախառն ծա-գումը: Որմզդայ սպանումը, և այլն, որք ի վերջոյ մոռած բաներ էին, բայց և այնպէս զօնեա Պարսկաստանի արե-մըտեան և հարաւային նահանգաց մէջ դա-ւանութեանց կարգն էին: Այդ վարդա-պետութեանց ամբողջութիւնը, որ ընդ-հանրապէս գրի վրայ առնուած չէր, որ-պէս վկայէ մեզ Եզնիկ, և որ խառն էր Բահլաւի գրոց վարդապետութեամբք, կը կազմէր զոր ինչ Եղիշէ կը կոչէ Պարս-կադէն:

Գիտէր և զՊարտքաշն. այլ ընթեր-ցուած զԱմպարտքաշն. կրկին եղանակաւ ալ գրուած է ի Հայկազեան բառարա-նի: Ալիշան վարդապետ կը գրէ մեզ թէ «Եղիշէայ դժուարիմաց բառերն շատ ի հնոց ազգային կարդացողաց միտքն ալ քրքրեր են ստուգելու այդ բառից իմաստները, և թէ հին բառա-գրոց մէջ գրուին զատ յայլոց հանդերձ մեկնութեամբք. այս բառագրաց հնա-գոյն օրինակաց մէջ եղեալ է ամ. պարտ-քաշ, առաջին վանկը կէտով միւսներէն բաժնուած»: Կոստանդնուպոլսոյ 1823 տպագրին հրատարակիչը կ'ըսէ թէ իւր ձեռքն ունեցած հին բառարանին մէջ ամպարտքաշ գրուած էր. բայց որովհե-տև ՈՃԶ թուականը կրող ձեռագիրը, որ օրինակ եղած էր այդ տպագրոյն, ունէր զամենայն պարտքաշն, անոր համար

**և զռոզպայիտն, ունէր և զպայծառիկն և զպարսկադենն. քանզի այս հինգ կեշտք են՝ որ գրաւեալ ունին զամենայն**

ինքն ալ երկու բառով գրած էր։ Հին բառարանի այն օրինակներն՝ որ մէկ բառով ամպարտաքաշ գնեն, կը մեկնեն «լուսակրօն» իբրև էնվէրքէշ, որ ընդունելի չէ. քանզի էնվէր՝ լուսաւոր, արաբական բառ է, և չէր կրնար ի կիր առնուած ըլլալ ի Պարսից Եղիշէայ դարուն, մանաւանդ կրօնական յատուկ անուան կազմութեան համար։ Ուղիղն է Պարտաքաշ, ինչպէս պիտի ցուցանեմք։ — Պաոիրյօ—տքաէշս կը կոչեն մազդեական մատեանք զհնագոյն և զառաջին կրօնն Երանեանց, յորժամ տակաւին Զրադաշտն Արիդամա չէր նորոգեր և փոփոխեր զայն. (տես էջ 161 ծանօթ. 3)։ Բայց շատ անգամ ալ այդ անունը կու տան նոյն ինքն Արիդամայ վարդապետութեան, զանազանելու համար զայն վերջին ժամանակաց մէջ անոր պակասաւոր և աղաւաղեալ ձևէն, կամ նոյն ինքն ուղղափառ մազդեզն դենի, որ դարու կամ ժամանակի որ ըլլայ։ — Պարտաքաշ անունը երկու բառէ կը բաղկանայ՝ որոյ վերջինը տքաշէ տքաէշն Աւեստայի, յորմէ կրճատեցաւ քէշ՝ կրօնք, օրէնք, քէշ. իսկ բառուբեռ է «առաջին». պարտաքաշ է ուրեմն «առաջին կրօն». և իմանալու է աստ ոչ զկրօնն Ջէմշիտի միայն, այլ և զօրէնս Արիդամայ։ Պահլաւի գրութեանց մէջ Պուրուդքէշ, Պօրիօդքաշ։ Հարկ է ուրեմն դնել ի տպագիրս զամենայն պարտաքաշ փոխանակ ամպարտաքաշի։

Գալով Ռոզպայիտի, այլ ընթերցուած՝ Ռազպայիտ. զոր ուսեալ էր եւ Մովպետն նախ խոստովանինք՝ որ մազդեական մատենագրութեան մէջ չգտանք որոշ և գոհացուցիչ տեղեկութիւն մը, որպէս վերլուծելու երեք անուանց համար։ Եթէ բառական ստուգաբանութեան դիմենք՝ Ռազպայիտ պարտի նշանակել՝ աղօթք, աղերս, պաշտամունք, avazba, upazba, է հայցել, կարդալ. upastú գովել, արդարև Յուստիի բառարանին մէջ միայն վերջնոյն ածանցը կը գտնենք՝ upastuiti, որ նշանակէ գովութիւն. պատճառ մը չկայ սակայն որ առջի երկու բայերն ալ նոյն վերջաւորութիւնը չառնուն։ Աւեստայի եօթնեւտասներորդ գրոց կամ նասքին անունն է Hûsparam, որ ծիսից և արարողութեանց վրայ կը խօսէր։ Այդ նասքէն մասն մի կայ այժմ, որ Նիրանկիստան կը կոչի (Տես էջ 152)։ Եղիշէ կարելի է ըսել ուզէ թէ Մովպետդ գիտէր ոչ միայն զՕրէնս՝ զՊարտաքաշ, այլ և զայլ արարողութիւնս և զկարգս պաշտամանց և աղօթից՝ զՌոզպայիտ. քանզի Պարսիկք այս վերջնոցս առջինին չափ կարևորութիւն կու տային եթէ ոչ աւելի։ Գուցէ եւ Ռոզպայիտ՝ Հուսպարամի տեղ գրուած ըլլայ. Այսու ամենայնիւ Ռոզպայիտի վրայ գրուցածներնուս ստուգութիւնը չենք կրնար երաշխաւորել. որովհետև ըստ Եղիշէի առանձին կեշտի, այս է մասնաւոր կրօնի կամ վարդապետութեան անուն լինել կը թուի քան մասնաւոր մատենի կամ ծիսարանի։

Բայց լաւագոյն կը լինի կեշտ բառին բացարձակ իմաստ չտալ ու այս չորս տեսակ ուսմունքդ չնկատել իբրև իրարու հակառակ և զիրար մերժող դաւանութիւններ, այլ զանազան վարդապետութիւններ (Տես էջ 277. Ծանօթ. 1), որք զատ զատ ուղղափառ համարեալ էին, և որոց միայն հետևիլն ալ օրինաւոր էր։ Բայց չորսին ալ տեղեակ եղողն կամ զամէնն ալ ընդունողն «համակդեն» (համայնադեն) կը կոչուէր. (արդի պարսկերէն hամա՝ հին առենը կը գրուէր և կը հնչուէր եւ hamak, որպէս հայերէն՝ համակ)։

օրէնս մոգութեանն: Բայց արտաքոյ ասցա է միւս ևս այլ վեցերորդ, զոր մոգպետան կոչեն:

8. Թուէր ինձ անձին, եթէ կատարեալ իցէ ամենայն գիտութեամբ. հայէր ընդ երանելին, եթէ առ ի ազխտութեան մոլորեալ են ի մեծ գիտութենէս մերմէ: Եդ մնոտի կարծիս ի մին՝ անդադար չարչարել զնոսա, զի թերևս առ չժուժալ մարմնոյն նեղութեանց՝ լուայց ի նոցանէ բանս ինչ ողորմանաց: Վասն որոյ զատ և որոշեաց ի նախարարացն զքահանայսն, և հեռացոյց ի նոցանէ բացագոյն. և արկ զնոսա ի ներքնատուն մի գէճ խաւարչային: Եւ հրամայէր վեց առն երկու քաշկէնս [1]

Ըստ Եղիշեայ համակղնութիւնը զատ կեչտ մի է. որով չորս կեչտէ հինգ կեչտ ձևացած կ'ըլլան։

Շայաստ-լա-շայաստ Պարսքաշի այս է ուղղափառ մազդեզն դէնի վեց վարդապետութիւնս (յեշտակ՝ որ է «կեչտ») կը յիշէ, ըստ վեց Նշանաւոր վարդապետաց կամ մեկնչաց. առաջնոյն վարդապետն է Կոկոշասր. երկրորդին՝ Ադարբ-Աւհարմազդ. երրորդին՝ Մօշեանս. չորրորդին՝ Ադարբ-Ֆրոպակ-Նոսայ. հինգերորդին՝ Մէտեօզ-մահ. վեցերորդին՝ Աֆարկ: «Ամենայն ուղղափառ մազդեզանք (բօրեօդքէշան), յաւելու հեղինակն Շայաստ-լա-շայաստի, կը հետեւին այդ վեց վարդապետութեանց. և են որք յայդցանէ ոմանց միայն կը հետևին տառել կամ Նուսազ»: Պլ. Ա. 3. 4։ — Իսկ այդ վարդապետութեանց տարբերութեանը գալով, օրինակ իմն, մին ասէ թէ վառելու փայտը՝ հատանելէն ետքը տարի մը պահուելու է. միւսն ասէ թէ մարթ է վառել զայն անմիջապէս սովորական կրակներու համար։

«Զայս և ես իսկ», կ'ըսէ Թովմա Արծրունի, «տեղեկացեալ գիտացի ի բազմաց յայնցանէ՝ որ Շախրիքն կոչին, որոց դէպ եղև և ինձ հանդիպել եկեղեաց ոմանց ի յԱպգաստան աշխարհէ, որք անուանէին զինքեանս ճամակդեա, այ-ոինքն անհետացեալ ի ճաւասո կրակի». էջ 27. — Գուցէ Շախրի է ընիկ Ապար աշխարհի որում պարսկերէն Ապրշահր կ'ըսուէր. իսկ Ապլաստան հաւանօրէն կամ Զապլաստան՝ Սագաստանի մէկ գաւառը պիտի ըլլայ, որ Խորհնացւոյ աշխարհագրութեան մէջ ալ յիշուած է և կամ Ապրաստան փոխան «Ապր-շահր»ի որ ըստ ոմանց թարգմանի «վերին աշխարհ, բարձրագաւառ»:

Ըստ Պ. Սպիկէլի՝ այս տարբերութեան մէջ ամենէն ուշադրութեան արժանի կէտն այս է, թէ նոյն ինքն Եղիշեայ որը պահլաւիկ դէն մի կար, և պարսկական դէն մի որիշ որիշ ի միմեանց. այս երկուքս հարաւային Պարսկաստանու մէջ աւելի ծաւալեալ էին, մինչ Պարսքաշն և Բոզպայիան աւելի հիւսիսային մասին մէջ հետեւող ունէին. (Spiegel, Eran, Alterthumskunde III p. 778)։

Իսկ վեցերորդ կեչտը՝ որ մոգպետան (այլ ընթերցուած՝ պետամոգ) կոչեալ է և միւս հինգէն դուրս էր, առոր վրայօք բան մը չկրցանք առուգել. զարմանալի է թէ Եղիշէ և թէ Շայաստ-լա-շայաստ-թի հեղինակը վեց կեչտս կը յիշեն, թէպէտ ուրիշ կողմանէ դրուցածնին բոլորովին տարբեր է։

1. Քաշկէն՝ գարեհաց. պրակ թաշքին

ժամէ ի ժամ, և գորակ և կէս ջուր. և ամենևին ոչ զոք թողոյր մօտ երթալ ի դուրս բանտին:

9. Եւ իբրև աւուրս քառասուն այսու նեղէր զնոսա, և ոչ լուաւ ի նոցանէ բան թուլութեան, այլ ևս առ զմտաւ եթէ ոք յուրոց ծառայիցն գաղտ եղիտ ինչ¹ ի նոցանէ, և ի ծածուկ տայց նոցա կերակուր: Ինքն երթեալ կնքէր զերդ և զդուռն բանդին, և զկարգեալ առճիկն տայր յուր հաւատարիմն տանել նոցա. և արար զայս աւուրս հնգետասան. սակայն և այնպէս երանելիքն ոչ ինչ շատացեալ տագնապեցան. այլ մեծաւ համբերութեամբ տանէին զճգնութիւնն, և անդադար սաղմոսիւք կային ի հանապազորդ պաշտամանն. և ի կատարել աղօթիցն զուարթագին գոհանալով, սակաւիկ մի հանգչէին ի գետնախշտի յանկողինսն:

10. Իսկ պահապանքն, որ ի վերայ կապելոցն կային, յոյժ էին զարմացեալ ընդ տոկունութիւն անհնարութեանն նոցա, իբրև լսէին զանդադար հնչումն ձայնիցն: Վասն այնորիկ պատմեցին յականջս մոգպետին և ասեն. Ոչ են արքն այն լոկ առանց մեծի զօրութեան. զի եթէ պղնձի մարմինք ունէին նոքա, արդ լուծեալ էր ի դէճ խոնաւոյ անտի: Բազում՝ ժամանակք են մեր, զի յանձն է մեզ պահպանութիւն բանդիս. ոչ յիշեմք՝ եթէ ի կապելոց ոք ամսօրեայ ժամանակ կեցեալ է ի տանդ յայդմիկ: Արդ մեք ասեմք քեզ. եթէ առեր հրաման մահու նոցա և սպանանես, դու գիտես². ապա թէ ոչ, պահել յանձն արարաւ քեզ և ոչ դատել զնոսա, շարաչար վրտանգ է կապելոցն: Նա և մեք զահի հարեալ եմք և յոյժ

کشکین նշանակէ 1 գարեհաց. 2 ցորենի, գարւոյ, բակլայի և ոսպեան ալիւրէ շինուած հաց։ — Վաղգէն՝ Գուգարաց բդեաշխը զիւր դշխոյն զՎարդենին բանտարկելէ յետոյ կը հրամայէ պահապանաց, որ միայն գարիէ հաց և ջուր տան նմա. Սոփերք հայկ. Թ։ — Գորակ. պարսկերէն՝ տօրա [illegible] է շէշ. փարչ։

1. Մութ է բացատրութիւնդ. իմա՛ եթէ պարգև ինչ ի նոցանէ։ Եղիշէի ժամանակակից հեղինակաց բազմաթիւ վկայութիւններէն կը հետևի թէ պարգեւք և բաշխիշք այն ժամանակ մեծ դեր կը խաղային Պարսից մէջ։

2. Ահաւասիկ օրինակ մի և՛ս որ Պարսիկք զխստամամբ չէին սպանաներ զմահապարտս, այլ զէճ և խաւարչտին բանտի մէջ ծանր կապանօք կը պահէին և կը սպասէին որ ինքնեան անբաւականութենէն մեռնին։ Տես և Ց. Է 42 ծն. 1։

երկնչիմք, յորժամ տեսանեմք զայնպիսի անհնարին նեղութիւնս։

11. Եւ իբրեւ զայս լուաւ Մակեդոն, յարուցեալ ինքնին երթայր ի մէջ գիշերին յերդ բանդին։ Եւ հայեցեալ ի ներքս ընդ մութ գիշերոյն, այն ինչ լինէր նոցա ի պաշտամանէն հանգչել, և տեսանէր զանձն իւրաքանչիւր կապելոյն, զի իբրեւ զկանթեղ անշիջանելի վառեալ բորբոքէր։ Զահի մեծի հարաւ, և ասէր ընդ միտս իւր. Զի՞նչ է այս մեծ սքանչելիքս. աստուածք մեր ուրեմն եկեալ իջեալ են ի բանդս, և նոցա փառաւորութիւնն լուցեալ բորբոքի։ Եւ եթէ նոքա առ սոսա ոչ մերձենան, մարդոյ լոկոյ անհնարին է զայսպիսի պայծառութիւն լուսոյ զգենուլ։ Իմ այսպէս լուեալ էր վասն կեշտիս այսորիկ, եթէ առ յոյժ յիմարութեանն մոլորեալ են, և ստութեամբ կերպարանին յայս ազգս մարդկան. Թերեւս և այս տեսիլ այնպէս ինչ երեւեցաւ ինձ։

12. Եւ ոչ կարէր համօրէն կալ ի վերայ իրացն երեւման։ Եւ մինչ դեռ յայսմ մտաց խորհրդի էր, դարձեալ սուրբքն յիւրաքանչիւր խշտեկացն կանգնեցան կացին ի սովորական պաշտամանն։ Յայնժամ ճշմարտեալ գիտաց Մակեդոն, եթէ ոչ այլ ընդ այլոյ տեսանէր՝ որ երեւեցաւն նմա, այլ ի նոցունց յանձանց փայլէր լուսաւորութիւնն։ Յայնժամ կրկին անգամ զահի հարաւ և ասէ. Ո՞վ ի կապելոյն եղեւ այնպիսի յայտնութիւն. ես և ոչ զմի ոք ոչ գիտեմ, և ոչ լուեալ է իմ ի հարցն յառաջնոց։ Եւ քանզի անհնարին շարժեցաւ ի մեծ սքանչելեացն, և դողային ամենայն մարմինքն, և թըմբրեալ կիսամեռ լինէր ի վերայ տանեացն մինչև յառաւօտն. և ի ծագել լուսոյն իբրեւ զարմացեալ հիանայ յարուցեալ երթայր ի վանս իւր, այլ և ոչ ումեք իշխեաց տեսանելին պատմել զոր ինչ ետեսն[1]։

13. Կոչեաց առ իւր զպահապանն և ասէ ցնոսա.

1. Դիտելի է՝ որ Փարպեցին որ Եղիշեայ ութերորդ Յեղանակին շատ անգ տուն առ տուն կը հետևի, մոգպետից խօսքը չըներ ընաւ. մինչ Հայոց պատմութենէ դուրս եղելութիւն մը համարելուն համար. բայց և այնպէս վայել էր համառօտ յիշատակութիւն մը ընէր։ Պատճառն ինչ որ ալ ըլլայ. չմոռնանք որ Եղիշէին ալ Ութերորդ Եղանակին մէջ պատմած իրաց ականատես վկայ չէ. այլ ի լրոյ կը պատմէ Արդար աշխարհի և անապատին մէջ եղած դէպքը։

« Երթայք հանէք զկապեալսն ի վերնատունն մի ցամա-քաղոյն, և անդ պահեցէք զնոսա զգուշութեամբ, որպէս և տայցէքն »: Մի ոմն ի դահճաց անտի, իբրև լուաւ զհրամանս մոգպետին, փութով ընթացեալ երթայր, իբրև մեծ ինչ աւետիս տանէր նոցա: « Հրամայեաց ձեզ, ասէ, ելանել ի ցամաք վերնատուն մի. արկք վաղվաղա-կի, և մի հեղգայք, քանզի և մեք իսկ պատրաստեցաք վասն ձերոյ տառապանացդ »:

14. Իսկ սուրբն Յովսէփ հեզաբար սկսաւ խօսել ընդ դահճապետին և ասէ. « Երթ ասա ցյիմար առաջնորդն ձեր. չէ լուեալ քո վասն հանդերձեալ դատաստանն Տեառն մերոյ և կամ՝ վասն մերոյ հրաշակերտ շինուածոյն, որք մեզ կան պահին ի սկզբանէ պատրաստութիւնքն. վասն որոյ դիւրեաւ համբերեմք մեծի նեղութեանս առ սէր այնր յուսոյ՝ զոր ակնկալեմք: Դու բարւոք արարեր, զի արգահատեցեր մեծի նեղութեանս մարմնոյ. այլ ոչ ինչ եմք ձանձրացեալք իբրև զանաստուած ոք, որ չիք այլ ինչ յոյս ի միտս նորա քան որ երևին: Այլ մեք առ սէրն Քրիստոսին մերոյ՝ ընդ այս յոյժ եմք խնդացեալ, և կատարեալ պարգևս զայս իսկ համարիմք, զի ժամա-նակեայ վշտօքս զանժամանակ երանութիւնն ժառան-գեսցուք:

15. « Եթէ շինուածոյ իցեմք ցանկացեալք, ունիմք շինուածս յերկինս առանց մարմնաւոր ձեռագործի, որ ոչ երևին ձեր աչքունքդ առ նուղք: Նոյնպէս և հան-դերձից և փառաց և անախտ կերակրոց, զոր եթէ ոք կամեսցի ասել ձեզ, չհանդարտէ լսել ձեր տկարութիւնդ. վասն զի կուրութեան հնութեամբն չտեսանէք և ոչ լսէք և ոչ իմանայք, յայն սակս զմեզ զուր և անիրաւ առանց յանցանաց անողորմ դատիք: Այլ մեր թագաւորն ա-ռատ է և բարերար, և բաց է դուռն արքայութեան նորա. եթէ կամեսցի ոք դիմել՝ դիմեսցէ համարձակ. ի դարձելոց յապաշխարութիւն չնախանձի և ոչ ընդ ու-մեք երբեք:

16. « Բայց վասն դիւրութեանս՝ որ դու հրամայե-ցեր առնել մեզ, էր մեր իշխանութիւն անդրէն յաշ-խարհին մերում չանկանել մեզ ի ձեռս թագաւորիդ, որպէս և այլքն՝ զի ապրեցան յայսպիսի փորձանաց. այլ

որպէս կամք և յօժարութեամբ եկաք, իբրև թէ գիտէաք զվիշտ վտանգին, ոչ ինչ զանգիտեցաք յայսպիսի ճգանց, այնպէս և կամիմք՝ զի և այլ ես ծանրագոյնս ի վերայ մեր, մինչև քո չարութիւն կամայդ յագեսցի ի մեզ: Զի թէ Աստուածն մեր, որ է արարիչ երկնի և երկրի և ամենայն երևելեաց և աներևութից, և առ սէր իւրոյ բարերարութեանն խոնարհեցաւ առ ազգս մարդկան, և զգեցաւ մարմին չարչարելի, և անց ընդ ամենայն հանգէս առաքինութեան, և կատարեաց զամենայն գործ տնտեսութեան[1], ի կամս իւր մատնեցաւ ի ձեռս խաչահանուացն, մահու մեռաւ և եդաւ ի գերեզմանի, և զօրութեամբ աստուածութեանն իւրոյ յարուցեալ երևեցաւ աշակերտացն և այլոց բազմաց, և վերացաւ առ հայր իւր յերկինս, և նստաւ ընդ աջմէ հայրենի աթոռոյն, և շնորհեաց մեզ զօրութիւն երկնաւոր, զի ըստ նորա անմահութեանն՝ և մեք մերով մահկանացու մարմնովս կարիցեմք չարչարակից լինել անմահ մեծութեանն, և նա ոչ ես իբրև զմահկանացու համարի զմեր մահն, այլ իբրև անմահից հատուցանէ մեզ զվարձս վաստակոց մերոց. արդ փոքր համարիմք մեք զչարչարանս զայս առ սէր փոխարինին, զոր էարկ առ ազգս մարդկան»:

17. Իբրև լուաւ զայս ամենայն բանս մոգպետն ի դահճապետէ անտի, խռովեցաւ, պղտորեցաւ ի միտս իւր, և հատաւ քուն յաչաց նորա զբազում գիշերս: Իսկ յաւուր միոջ յերեկուն պահուն[2] յարուցեալ երթայր առ

1. Տնտեսութիւն՝ խորհուրդ մարդեղութեան Բանին. Հյկզ. բռ։

2. Պահ՝ է բաժանումն ժամանակի պահապանաց գիշերոյ. յերիս յերիս ժամս՝ մի պահ համարելով: Գիշերը ուրեմն չորս պահ ունէր, որպէս և ցերեկն: Եղիշէ պահ կը գործածէ (տես և Ց. Ը. 21) մինչ փարպեցին ժամով ալ կը բացատրէ. «Ի վեցերորդ ժամու աւուրն...» «Բայց զինն ժամու աւուրն երրորդի յարուցեալ երանելին խուժիկն»... էջ 283 և 309: Թուի թէ այդ երկու կերպ բաժանմունքդ ալ գործածական էին, գուցէ ժամք աւելի ռամկական էին ժողովրդեան մէջ: Երկու կերպով ալ օրը առաւօտէն սկըսելով կը հաշուէին: Իսկ Պարսիկք զօրն ի հինգ կամս կը բաժանէին, 1 կամ Հաւանի, որ կը սկսէր ի ծագել արեգական. 2 Ռապիթվինա, ի հասարակ աւուր. 3 Իւզաերինա, վերջնալուսոյ հետ. 4 Այվիսրութրիմա՝ աստեղաց լուսավառ փայլելու ատենը: 5. Ուշահինա՝ աստեղաց լուսոյն աղօտացած կամ արշալուսոյ սկսած ատեն: Պ. Հաւկ՝ զառաջինը կը դնէ ժամը 6–10 նախ քան զՄիջ. զերկրորդը՝ 10-3. զերրորդը՝ 3–6 (ի մուտս արեգական). զչորրորդը 6–12 և զհինգերորդը 12–6: Մէն մի կահ, միոյ միոյ

նստ միայնիկ լռիկ, և ոչ զոք առնոյր ընդ իւր ի սպա-սաւորացն: Եւ իբրև եհաս ի դուրս տանն, հայէր ընդ ծակ մի ի ներքս և տեսանէր ըստ առաջին տեսլեանն, բայց նոքա ի քուն կային խաղաղիկ: Հեզաբար կարդայ յանուանէ զեպիսկոպոսն[1], քանզի քաջ իսկ գիտէր զպարս-կերէն: Եկն ի դուրս և հարցանէր. Ո՞վ ես դու: Ես ինքն իսկ եմ, ասէ. կամիմ ի ներքս մտանել և տեսանել զձեզ:

18. Եւ իբրև եմուտ ի մէջ սրբոցն, ոչ ևս երևէր նմա այլ նշանն. և պատմեաց նոցա զերկիցս երևումն զքանչելեացն: Ետ պատասխանի Գինդ երէցն և ասէ. «Աստուած, որ ասաց ի խաւարի լոյս ծագել[2], որ և ծագեաց և լուսաւորեաց իմաստութեամբ զաներևոյթ արարածս, նոյն զօրութիւն և այսօր ծագեաց ի խաւարեալ միտս քո, և բացան աչք կուրացեալ ոգւոյդ, և տեսեր զանշիջանելի լոյս շնորհացն Աստուծոյ. փութա, մի հեղգար, զուցէ դարձեալ կուրացեալ ընդ խաւար գընայցես»:

19. Եւ զայս իբրև ասաց, յառն կային ամենեքեան ասելով զքառասներորդ երկրորդ սաղմոսն. Առաքեա, Տէր, զլոյս քո և զճշմարտութիւն քո, զի նոքա առաջնորդեսցեն և հանցեն զմեզ ի լեառն սուրբ և ի յարկս քո: Արդարև ճշմարիտ, Տէր, առաջնորդեցեր և ածեր զմոլորեալս զայս յանանց ուրախութիւն և յանմերժելի հանգիստ: Ահա նմանեալ է օրս այս սուրբ չարչարանացն քոց. որպէս ապրեցուցեր զմահապարտ աւազակն յերկրորդ մահուանէն, և նմա բացեր զդրախտի դուռն Ադենայ, այսպէս զսոսա և զայս կորուսեալս. որ էր պատճառք մահու բազմաց, արդ արարեր զսա պատճառք կենաց մեզ և անձին իւրում: Գոհանամք զքէն, Տէր, գոհանամք և ձայնակիցք լինիմք սուրբ մարգարէին. Մի

հրեշտակի նուիրեալ էր, և իւրաքանչիւրին յատուկ աղօթքներ սահմանեալ էին, զոր ամէն հաւատացեալ պարտէր ասել: Նախկին Երզնկանք Բասուշ կ'ըսէին փոխանակ կանի (տես Վենետիկ Գլ. Է): Բայց Սասանեանց ժամանակը վերջին անուանդ աւելի գործածական էր: Հաւանօրէն «կահ» և «պահ» նոյն են: կ և վ կը փոխանակին՝ որպէս և վ ընդ պ. այսպէս պարսկերէն վատ՝ չար, յոռի. վատ, զրի ևս կատ. որպէս և վէճ վեհ՝ փոխեցաւ ի պէճ:

1. Այս է զՍահակ:
2. Սաղմոս ՃԺԱ:

մեզ Տէր, մի մեզ, այլ անուան քում տուր փառս վասն ողորմութեան և ճշմարտութեան քո. զի մի երբեք ասասցեն ի հեթանոսս, թէ ուր է Աստուած նոցա[1]. որպէս և այսօր իսկ յայտնի եղեւ զօրութիւն քո մեծ ի մէջ ապարասան խաւարազգեաց ազգիս:

20. Իսկ որ ձրին եղիտ զաստուածատուր շնորհսն, սկսաւ և նա առանձինն ասել. Տէր լոյս իմ և կեանք իմ, ես յումէ՞ երկեայց. Տէր պաշտէն կենաց իմոց, ես յումէ՞ դողացայց: Քանզի գիտեմ ճշմարտիւ, եթէ բազում են պատուհասս թշնամիք իմ, և կամին մերձենալ և ուտել զմարմինս իմ: այլ դու, Տէր ամենայնի, եղիր վասն ամենեցուն կենաց, զի դարձցին և կեցցեն առաջի քոյոց մարդասիրութեանդ: Մի որոշեր զիս ի սուրբ դասանցս՝ յորս խառնեցայ, զի մի լաւ քո փարախդ արտաքս եղեալ՝ չար գազան դարձեալ ըմբռնեսցէ զիս: Մի հայիր, Տէր, ի բազմամեայ անիրաւութիւնս իմ, զի մի մոլորեալ ի ճշմարիտ կենացդ՝ զրադումն անդրէն ի կորուստ աշակերտիցեմ. այլ որոց եղէ պատճառ մահու՝ նոցին եղէց և պատճառ կենաց: Սատանայ՝ որ ինև խրոխտացեալ պարծէր ի մէջ մեծի կորստականացս, ինև կորացեալ ամաչեսցէ ի մէջ իւրոց աշակերտացն»:

21. Եւ զայս իբրև ասացին, նմին իսկ ետուն կատարել զաղօթսն, և դադարեցին նոքա հանդերձ մինչև ի պահն երրորդ. և այնպէս խաղաղացեալ կացին ի քուն ամենեքեան մինչև ի ժամ առաւօտուն: Իսկ նորա յառն կացեալ, և ի քուն ոչ մտանէր. այլ զձեռն իւր ի վեր համբարձեալ՝ կայր յաղօթս: Եւ մինչ դեռ ընդ երդ պշուցեալ հայէր յերկինս, յանկարծակի տունն լի եղև լուսով. և երևեցան նմա սանդուղք լուսեղէնք՝ որ կանգնեալ էր յերկրէ յերկինս, և գունդք գունդք զօրաց ելանէին ի վեր. և էր ամենեցուն տեսիլն նոր և չքնաղ, ահաւոր և սքանչելի իբրև զանսկ հրեշտակի: Ունէր և գլխու համարս ի մէջ իւր զիւրաքանչիւր գնդիցն, զոր տեսանէր, էր՝ որ զհազարն, էր՝ որ զբիւրան և զբիւրս, էր՝ որ զբիւրկերիւրոց և զբիւրքատա-

1. Սաղմոս ՀԸ:

նից[1]: Եւ այնպէս մօտագոյնս մերձենայր, մինչև ճանաչել նմա զերիս ի նոցանէ, զՎարդան և զԱրտակ և զԽորէն: Եւ ունէին ինն պսակ ի ձեռին, խօսէին ընդ միմեանս և ասէին. Ահա եկն եհաս ժամ՝ զի և սոքա խառնեսցին ի գունդս մեր. քանզի և մեք սոցա իսկ Յոյսք, և առհաւատչեայ պատիւ սոցա բերաք: Եւ որում ոչ եւս Յոյսք՝ եկն երևեցաւ և խառնեցաւ, և եղև իբրև զմի ի զինուորաց Քրիստոսի:

22. Այս երիցս անգամ՝ երևեցաւ չքնաղ տեսիլն առն երանելւոյ: Զարթուցց զուրբան ի քնոյ անտի, և պատմեաց նոցա զամենայն տեսիլն կարգաւ: Իսկ նոքա յարուցեալ կացին յաղօթս և ասէին. «Տէր, Տէր, զի՛ զարմանալի է անուն քո յամենայն երկրի. համբարձաւ մեծվայելչութիւն քո ի վերոյ քան զերկինս. ի բերանոց մանկանց տղայոց ստնդիացաց հաստատեցեր զօրհնութիւն, զի եղծցի թշնամին և հակառակորդն: Զի ոչ եւս է այսուհետև ասել, եթէ տեսից զերկինս զգործս մատանց քոց[2], այլ թէ տեսից զքեզ, Տէր երկնի և երկրի. որպէս երևեցար իսկ այսօր ի ձեռն սուրբ զօրականացն քոց հեռաւոր օտարիս, որ անցեալ էր ըստ ակնկալութիւն կենաց իւրոց:

23. «Ահա դու, Տէր, ողորմութեամբ քով պահեցեր զսիրելիս քո, և գթութեամբ քով եկեր ի խնդիր կորուսելոյս, դարձուցեր և խառնեցեր ի դասս սրբոց: Ոչ միայն ետես սա զերկինս՝ զգործս մատանց քոց, այլ ետես զերկինս և զբնակիչս նոցա, և մինչ դեռ է յերկրի՝ խառնեցաւ ի գունդս բիւրաւոր հրեշտակաց քոց: Ետես և զոգիս արդարոց կատարելոց, ետես և զխնամութիւն փառաց աներևոյթ պատրաստութեանցն, ետես և ի ձեռին նոցա զանչուչս ռարունայն[3], որ հանդերձեալ պահի ի ձեռն ճարտարապետին: Երանի՜ սմա վասն սուրբ տես-

1. Արտազու մէջ ինկող նահատակքն 1036 հոգի էին: Մոզպետը տեսեր էր 1000+33+3 որ են Վարդան, Արտակ և Խորէն: Իսկ երկու հարիւր և տասն և երեքը պատերազմէն վերջը ամբոխէ մը անձնատուր եղողներն են. (Յ. Է 3):

2. Սաղմ. Ը:

3. Ռարունայ՝ առհաւատչեայ, գրաւական. լատիներէն Arrabo կամ Arrha. զղ. Arrhes մի և նոյն բառն են. արդի պարսկերէն բառագրոց մէջ ալ կը գտնեմք ربون բառս նոյն իմաստով: Սեմական բառ մի կ'երևի, որ մուտ գտած է ի յունարէն և անտի ի լատին:

լեանս, և երանի է մեզ վասն սորա մերձաւորութեանս առ մեզ. քանզի հաստատեալ գիտացաք սմա, եթէ որում՝ այսպիսի սքանչելիք յայտնին, մեծ մասն ընկալուաս յանսպառ քոյ բարութեանցդ: Անսպառ են պարգևքն քո, Տէր, և առանց խնդրելոյ տաս ում՝ և կամիս քոյով յորդ և աննախանձ առատութեամբդ: Եւ եթէ որ ոչ խնդրեն՝ չարգելուս ի նոցանէ, բայց մեզ, Տէր, զգուշ ողորմութեան քոյ, որ ի մանկութենէ մերմէ ցանկացեալ եմք բարեմասնութեան սրբոյ քոյ: Զնորագիւտ գաստակերտս քո բարեխօս առնեմք վասն անձանց մերոց. մի ընկրկեսցի նա հաւատոց մերոց ի մէջ ալէկոծեալ ծովու մեղաց»:

24. Եւ այսպէս յերկար կատարելով զաղօթսն, յորդ և առատ արտասուս հեղուլին ի վերայ անձանց իւրեանց: Գութ ողորմանաց արկանէին առաջի բարերարին, զի բեկլի լիցի ձայն պաղատանաց նոցա, և հաստատուն կայցեն ի վիշտս ճգանցն, զի մի զրկեսցին ի ցանկալի պսակացն, զոր ունէին սուրբքն ի ձեռս իւրեանց, որպէս և աղդեցաւ նոցա ի ձեռն Հոգւոյն սրբոյ, զի մերձեալ էր ժամանակ կոչման նոցա, որպէս զի երթիցեն և աներկիւղ դադարեսցեն ի կասկածելի ակնկալութենէ, որում համբերէին բազում տառապանօք, զի առհաւատչէիւ փոքու հասցեն երկնաւոր մեծութեանն, որում ի վաղնջուց խոկ էին ցանկացեալք:

25. Եւ քանզի ինքն խոկ մօտջեան իշխան էր աշխարհին, և նմա յանձն արարեալ էր զկապեալսն քաղաքին, վասն այնորիկ և համարձակութեամբ ընդ առաւօտն հանեալ ածէր յապարանսն իւր: Լուանայր և սրբէր զնոսա ի չարչարանաց բանդին. առնոյր զջուր լուացմանն սրբոցն և արկանէր զիւր մարմնովն: Ուղղէր և տան իւրում՝ աւազան, և ընդունէր ի նոցանէ զսուրբ մկրտութիւնն. հաղորդէր ի կենդանարար մարմինն և ի քաւիչ արիւնն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Յարձր բարբառով աղաղակէր և ասէր. Մկրտութիւնս այս լիցի ինձ ի լուացումն մեղաց իմոց, և ի ծնունդս նորոգութեան վերստին Հոգւոյն սրբոյ. և ճաշակումն անմահ խորհրդոյս ի ժառանգութիւն երկնաւոր որդէգրութեանն: Դնէր և բաժ մարմնոյ առաջի նոցա սեղան կերակրոյ, և

մխիթարութեան բաժակ մատուցանէր նոցա, և միաբանէր ընդ նոսա հացին օրհնութեան:

26. Այլ թէպէտ և ինքն եհաս յերկնաւոր բարեաց, և աներկիւղ էր ի մարդկանէ հարուածոց, սակայն վասն ընտանեացն յոյժ ունէր կասկած. զի մի իբրև փառակալք մանկանցն յիրս արքունի[1]: Վասն այնորիկ ի ծածուկ կոչէր ի գիշերի և զնախարարսն, որ ի նմին քաղաքի էին ի կապանս, և առնէր ծախս մեծամեծս: Եւ էին ամենեքեան ի մեծի խնդութեան վասն սքանչելեացն, որ երևեցաւ նոցա: Ոչ յիշէին ամենևին, եթէ վիշտք ինչ անցեալ էին ընդ նոսա:

27. Բայց ի ժամ բազմականացն կարծիք ինն եղեն ի միոս որդոյն վասն երիցու միոյ[2], որ էր ընդ նոսա ի սուրբ կապանսն. զի ի մէջ չինական մարդկան կեցեալ էր, և աղքատագոյն ևս էր ի գրոց մխիթարութենէ: Հրամայեցին նմա ունել զգլուխ բազմականին. եւ պատասխանի երանելին և ասէ. «Զի՞նչ է այդ՝ զոր դուքդ գործէք, և կամ՝ յինէն զի՞ թաքուցանէք զծածուկս խորհրդոցդ: Ես քան զկրսերս ձեր խոնարհագոյն եմ, և քան զեւս փոքունս յաշակերտաց ձերոց աղքատագոյն եմ, զիա՞րդ կարացից այդմ առնել: Այս իսկ մեծ էր ինձ, զի սուրբ կապանաց ձերոց հաղորդեալ եմ այսօր: Եթէ արժանի համարիք զիս ձերում սեղանոյդ, կարգուք դուք զիւրաքանչիւր տեղի բազմականիդ, և հրամայեցէք ինձ զիմ տեղին»: Եւ բռնադատեալ սուրբ եպիսկոպոսն միաբանութեամբ ամենայն որդոցն, և ի վերոյ քան զամենեսեան բազմեցուցին զնա:

28. Եւ իբրև բոլորեցան ակումբ բազմականին, և հաղորդեցան ամենեքեան ի կերակուրն զուարթութեամբ, յոտն եկաց սուրբն Յովսէփ, և սկսաւ զուարթութեան նուագն մատուցանել և ասել այսպէս. «Ուրախ լերուք ամենեքեան ի Քրիստոս. քանզի վաղիւ այս ժամ իցէ, ահա մոռացեալ իցէ մեր զամենայն նեղութիւնս և զչարչարանս զոր կրեցաք: Եւ փոխանակ սակաւ աշխատու-

1. Մէկ մարդոյ յանցանաց համար ընտանիքն ալ կը պատժուէին. Տես Ց. Է. 42. ծան. 4։

2. Այս է Արշէն երէցն Եղեգեաց գեղջ, որ ի Բագրևանդ։ Տես Ց. Ը. 64։

թեանս մերոյ՝ բազմապատիկ հանդիսա ընդունելոց եմք, և փոխանակ խաւարային արդեանն բանդին՝ մտանելոց եմք յերկնից քաղաքն լուսաւոր, որոյ քաղաքի քաղաքապետ ինքն Քրիստոս է, հանդիսապետ՝ յորում ասպարիսի նախ ինքն տաւքինեցաւ անձամբ զնշան յաղթութեան: Եւ այսօր նոյն Տէր է, որ յաջողէ մեզ զնոյն նշան ընդունելով ի փրկութիւն անձանց մերոց և ի պարծանս մեծափառ սուրբ եկեղեցւոյ: Եւ զոր օրինակ տեսէք դուք զեղբայրս զայս ի գլուխ բազմականս մերոյ, այնպէս սա նախ ընդունելոց է վաղիւ զպսակն ի ձեռն կատարմանն իւրոյ: Զի ահաւասիկ եկն եհաս և մերձեցաւ առ մեզ թշնամին կենաց մերոց և պսակիչ սուրբ չարչարանաց ծառայից Քրիստոսի»:

29. Զայս իբրև ասաց, լուաւ ի Նմանէ[1] բանս պընդութեան, որով յայժ մխիթարեցան ամենեքեան. ասէ. «Ի սուրբ աղօթից ձերոց այդպէս արասցէ ինձ Քրիստոս, և կատարեսցէ զկես վախճանի իմոյ յաշխարհէս ըստ բանի քում: Եւ ահա ընդ առեալ քո ազդումն եղև հոգւոյս իմոյ և յիշեցի ես զմարդասիրութիւնն Քրիստոսի, որոյ և զալուստ իսկ նորա յաշխարհս վասն մեր մեղացն եղև: Գթացի յիս որպէս և յաւազակն ի ժամ խաչին. որպէս նովաւ զդրունս փակեալ դրախտին երաց, և յառաջեցաւ լինել կարապետ այնոցիկ՝ որ անդրէն ի նոյն տեղի դառնալոց էին յուրախութիւն, արասցէ և զիս այսօր Տէր Յիսուս Քրիստոս պատուաւոր ձերում մեծաշուք գնդիդ:

30. «Աւանիկ վասն միոյ մեղաւորի՝ որ դառնայ յապաշխարութիւն, անվախճան լինի ուրախութիւն Հրեշտակաց յերկինս. որպէս զի գիտեն իսկ զկամս Տեառն իւրեանց: Քանզի վասն միոյ կորուսելոյ ոչխարին եկն ի խնդիր, վասն այնորիկ և նոքա խնդակիցք լինին վասն միոյ դարձելոյ յապաշխարութիւն: Թերևս վասն իմ եկեալ էր մեծ զօրավարն Հայոց բազում սուրբ ընկերակցօքն իւրովք. զպսակն վասն ձեր բերեալ էր, այլ զուրախութեան աւետիսն Հասարակաց տայր: Եւ սա-

1. Շարադրութեան կարգը Արշէն գրուած խօսքերէն յայտ է թէ զմոգերէցն ըլլալու էր, բայց քիչ մը աւելի պէտն իմանալու է։

ւել ես ընդ իս էին զարմացեալ, զի ոչ ճանաչէին զիս ի կեանս իւրեանց, ահա ի սուրբ մահն իւրեանց՝ կամէին զի եւ ես մասն ընկալայց ընդ երանելիսն:

31. «Աղաչեմ զձեզ, տեարք իմ եւ հարք, աղօթս արարէք ի վերայ անարժանութեանս իմոյ, զի արժանի եղէց մեծի աւետեացն հասանել, որ յանուշ ձերոյ բերանոյդ բարբառեցաւ ի լսելիս իմ: Արդ փութամ տեսանել զօրն, և յաւուր անդ զժամն եկեալ հասեալ ի վերայ մեր: Եւ ե՞րբ իցէ զի ելից ի թանձրագանգաղ ձանձրալի մարմնոյս այսորիկ, ե՞րբ իցէ զի տեսից զքեզ Տէր Յիսուս, ե՞րբ իցէ զի աներկիւղ եղէց ի մահուանէ, ե՞րբ իցէ զի տգիտութիւնս իմ հասցէ ի կատարեալ գիտութիւն: Օգնեա ինձ, Տէր, օգնեա ինձ, և կարկառեա զամենազօր աջդ յօգնականութիւն. զի խոստմանն բանիցս իմոց և գործք արդեամբք կատարեսցին ի վերայ մեր. և փառաւոր լիցի յիս ի մեղաւորս անուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»:

32. Զայս իբրև ասաց երանելին, յառն կացին ի բազմականացն անդ, գոհանային ասելով. փառք քեզ, Տէր, փառք քեզ Թագաւոր, զի ետուր մեզ կերակուր ուրախութեան. լցո զմեզ Հոգւովդ սրբով, զի գտցուք առաջի քո հաճոյք և մի ամաչեցեալք, զի դու հատուցանես իւրաքանչիւր ըստ գործս իւր:

33. Ի նմին ժամու եղեւ խորհուրդ մեծ ի մէջ նոցա, թէ զի՞նչ օրինակաւ կարասցեն ապրեցուցանել զմոգպետն. զի մի լուեալ յարքունիսն, իբրև զհուր բորբոքեսցի բարկութիւն ի վերայ մնացելոցն: Իբրև ոչ ինչ կարացին ի ժամուն վճարել, միաբանութեամբ աղօթս արարեալ՝ յԱստուած ապաստան առնէին զկեանս առն հաւատացելոյ:

34. Իսկ նախարարքն հրաժարեցին ի սրբոյն յորդառատ արտասուօք, և ողբալից ուրախութեամբ անկեալ յոտս նոցա աղաչէին մեծաւ պաղատանօք՝ յանձն առնել զնոսա Հոգւոյն սրբոյ: Զի մի ոք ի մէնջ, ասեն, թուլացեալ և երկեալ սրտաքս ի հաւասար միաբանութենէս, կերակուր լիցի չարաբարոյ գազանին:

35. Իսկ երանելիքն միաբան քաջալերէին զնոսա և ասէին. «Զօրացարուք, եղբարք, ի Տէր, և մխիթարե-

ցարուք ի մարդասիրութիւնն Աստուծոյ, որ ոչ թողու զձեզ որբս և ոչ ի բացէ առնէ զողորմութիւն իւր ի մէնջ հաւատով ի Քրիստոս: Բազում բարեխօսուքն զոր ունիմք առ նմա, ոչ շիջանի փառումն կանթեղաց ձերոց, և ոչ ուրախ լինի խաւարասէր թշնամին կենաց ձերոց: Այս նոյն Տէր է որ զօրացոյց զառաջին նահատակսն՝ խառնելով զնոսա ի գունդս հրեշտակաց իւրոց. նոյն սուրբ ոգիք և ամենայն դասք արդարոց հասցեն ձեզ յօգնականութիւն համբերութեան, զի ընդ նոսին նոցունց պսակացն արժանի լինիջիք »:

36. Զայս խօսէին ընդ նոսա, և զգիշերն ամենայն աղօթիւք ի գլուխ տանէին. իսկ ի ժամ առաւօտուն ասէին ամենեքեան. Ծագեա, Տէր, զողորմութիւնս քո՝ ոյք ճանաչեն զքեզ, զարդարութիւնս քո ոյք ուղիղ են սրտիւք: Մի եկեսցէ ի վերայ մեր ոտն ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի դողացուսցեն զմեզ. անդ անկցին ամենեքեան, որ գործեն զանօրէնութիւն. մերժեցան, և այլ մի կարասցեն հաստատել[1]:

37. Եւ անդէն փայփայակի հասին դահիճքն[2] ի դուռն բանդին. մտին ի ներքս և տեսին, զի որ յառաջ մեղպեան էր, և նմա իսկ յանձն արարեալ էր պահել զնոսա, նստէր ի մէջ նոցա և լսէր ի նոցանէ, նա և քաջալերէր ևս զնոսա չերկնչել ի մահուանէ: Իբրև տեսին զմեծ սքանչելիսն դահիճքն. յոյժ զարմացան ընդ իրսն, այլ ոչ ինչ իշխէին հարցանել զնա. բայց չոքան և պատմեցին Դենշապհոյ, որում յանձն արարեալ էր զչարչարանս սրբոցն: Իսկ նա իբրև լուաւ ի դահճացն արքունի, զահի մեծի հարաւ ի միտս իւր, թէ զուցէ և ինքն անձամբ ի ներքս լիցի. քանզի և ծանօթագոյն ևս էր

1. Սաղմոս ԼԵ:

2. «Ընելով» ընդ ինքեանս բազմութիւն զարբնաց զործովք արուեստաւորութեան իւրեանց, այլուք և ուռամբք, կռանօք և խարտոցովք, խարտել և կըտրել և ի բաց հանել զերկաթսն ի ձեռաց և յոտից և ի պարանոցէ սրբոցն. և զոր ոչն կարացին կարել խարտոցօքն, ուռամբք ջարդեալ զբեռս երկաթսն, զնելով ի վերայ սալիցն բեկեալ հանցեն ի բաց: Քանզի սաստիկ էին և ծանունք բան զինութիւն ամենայն երկաթոյ, որովք զայլ մահապարտն կապէին, զոր ի նոցա իսկ անուն առեալ էր անել մեզումն, որպէս յանուն արանց փառաւորաց և աշխարհակալաց և աստուածապատաց ». փարպ. 274:

տանն: Հրամայեաց հանել ի բանդէ անտի զամենեսեան կապանօքն, և հեռացուցանէր ի քաղաքէ անտի երկոտասան պարսիկ հրասախաւ[1]: Եւ ի ծածուկ խօսէր ընդ մոգպետին, եթէ զի՞նչ պատճառք իցեն կապանաց նոցա: Եւ պատասխանի այրն և ասէ ցնա. Մի՛ խօսիր ընդ իս ի ծածուկ, և մի՛ լսեր զխորհուրդս լուսոյ ի մէջ խաւարի, զի բացան աչք իմ արդ. քանզի տեսի զլոյսն երկնաւոր: Եթէ կամիս լինել խորհրդակից կենաց, հարց ցիս յանդիման, և պատմեմ քեզ զօր տեսի զմեծամեծն Աստուծոյ:

38. Եւ իբրև լուաւ ի նմանէ զամենայն, և տեսեալ ես վասն իւրոյ միաբանութեանն, եթէ ոչ քակտի ի սրբոցն հաւանութենէ, ոչ իշխեաց ձեռն արկանել ի նա, թէպէտ և ունէր հրաման յարքունուստ: Այլ փութացաւ, և ինքն երթեալ պատմէր թագաւորին ի ծածուկ զամենայն որպէս զիարդ լուաւ ի նմանէ:

39. Եւ պատասխանի թագաւորն և ասէ ցՊենչապուհ. «Մի՛ ոք ամենեւին լուիցէ զայդ ի քէն, մանաւանդ վասն տեսլեանն մեծի՝ որ երևեալ է նմա, զի մի՛ ապէտ մարդիկ երկմտեալ՝ բաժանեսցին ի մեր հաստատուն օրինացս: Մինչ մեք զայլս կամէաք հնազանդեցուցանել՝ թերևս զոգիս գոցեն, իբրև նոցա ոչ ինչ կարացաք առնել, մեր որ վարդապետ օրինացդ էին, զկնի նոցա մոլորութեանն խոտորեցան:

40. «Նա և այն ևս չար է մեզ քան զամենայն, զի ոչ դուզնաքեայ ոք խոտորեցաւ ի նոցա օրէնն, այլ այր մի հանճարեղն, երևելի ընդ ամենայն վերին աշխարհս: Եթէ փայքարիմք[2] ընդ նմա, նա տեղեկագոյն է քան

1. Բաղդատ՝ Ֆարսանկ, Ֆրասանկ, Ֆրըր-սանկ. պարսկական փարասախը հինգ քի-լոմեդրէ քիչ մ'աւելի է, այս հաշուով Պենչապուհ վաթսուն քիլոմեդրի չափ հեռացնել կը հրամայէ ի Նիւշափուրէ. իսկ քահանայից նահատակուած տեղը նոյնչափ մը դեռ հեռի պիտի ըլլար քան Եղիշէայ (Ց. Ը. 46) որ չափազանց կը թուի: — Իսկ ըստ Պունտահիշի, Ֆրա-սանկ կամ Ֆարսանկ է հազար քայլ, մէն մի քայլ՝ երկու ոտնաչափ երկայն, կամ հեռաւորութիւն մը՝ յորում սրատես մարդ մը կրնայ զանազանել թէ եզ մը ճեր-մակ է թէ սեւ, (Տես և Մայնօ-խրատ և (Pahlavi - Pazand Glossary):

2. Փայքար پیکار բառն լեզուաւ է վիճաբանութիւն, կռիւ, մարտ. բաղ-կացեալ ի բառից կամ բառ՝ «ընդդէմ» և քար «գործ» բառից:

զամենայն փարթամութս աշխարհիս. գուցէ ի հիմանէ խարխարեալ աւերէ զօրէնս մեր: Եւ եթէ զատիմք զնա ընդ այլ չարագործսն, նա և այնպէս հռչակեալ երանէ համբաւ քրիստոնէութեանն նորա, և մեծ անարգանք զկնի գենիս ձգին: Եւ եթէ սրով ես վախճանեսցի, բազում են քրիստոնեայք ի կարաւանիս, ընդ ամենայն երկիր ցանեալ ցրուեսցեն զոսկերս նորա: Սակաւիկ ինչ էին մեզ անարգանք առ ամենայն մարդիկս, ուր մեծարեալ պատուէին ոսկերքդ Նազարայեցւոյդ. իսկ եթէ մոգացդ և մոգպետացդ զնոյն պատիւ կրեսցեն, մեք մեզէն լինիցիմք քակտիչք օրինացն մերոց:

41. « Այլ այժմ իմ է քեզ երդումն ուտեալ յանմահ գրին. նախ զդառնացեալ ծերն կոչեա առաջի քո: Եթէ հաւանեսցի սիրով, և զզջացեալ ապաշաւեսցէ զկախարդութիւն նոցա, մեծարեսջիր զնա սիրով՝ պատուով ըստ առաջին կարգին, և մի՛ ոք գիտասցէ զթշնամանս նորա ամենեքին: Ապա թէ ոչ հաւանեսցի, և ոչ կամեսցի անսալ բանից իմոց, յարուսջիր ի վերայ նորա բազում ամբաստանս՝ յաշխարհէ անտի, զի վստահաբ գացի յիրս արքունի. և աշխարհաւ փութիչ ի վերայ յարուսջիր, և չկոթակ արտաջիր յայն կոյս քան զԿուրան և զՄակուրան[2]. և անդ ընկեցեալ զնա ի վիրապ մի, և ընկալցի զմահ թշուառութեան: Եւ զայլազգեանն[3] փութանակի կարճեա ի կենաց աշխարհիս, զի մի՛ գրգռեսցեն զօրէնս մերոյ աշխարհիս: Զի եթէ զճարտար մոգպետն այնպէս արագ աշակերտեցին, ագէտ մարդիկ զիա՞րդ կարասցեն կալ առաջի նոցա պատիր խաբէութեանն »:

42. Արդ եւ նստաւ Դենշապուհ արտաքոյ բանակին

1. Դիտելու արժանի է թէ Ցազկերտ բացարձակ անպայման հրաման չկրնար տալ մէկու մը սպանման համար, ինչպէս կը տեսնենք շատ անգամ նուազ քաղաքականացեալ ազգաց պատմութեան մէջ: Տակաւին մէջ շատ օրինակներ կան, որ երբ Հռովմայեցի կայսերք ուզէին անիրաւ անձը մեռցնել զայն, նախ և յառաջ անոր վրայ շատ մը քսութիւններ և ամբաստանութիւններ կը հնարէին: Անիրաւելու եղանակն ալ կը ցուցանէ թէ իրաւունքը գոնէ ընդհանրապէս յարգեալ էր:

2. Երկու գաւառք հարաւային Պարսկաստանի. (Տես Աշխարհացոյց Խորենացւոյ. ԼԲ):

3. Այլազգեն՝ բաղանս լեզուաւ՝ աքտինս:

յառենի, որպէս ասացաք, հեռի երկոտասան հրասախաւ[1]: Հարցանէր ցմեզ պետն և ասէր. Իշխանութիւն

1. փարպեցին աւելի եւս կը ճշդէ զվայրն. «Դենշապուհ ի սկզբանն ոչ պատմէր խուժկին զաւրը քահանայիցն, զոր ինչ գործելոց էր ընդ նոսա. այլ ասէր թէ ի Վրկան տանիմք և անտի արձակեմք: Եւ երթային այն որ ի գեօղ մի՝ որում անուն էր Ռեւան՝ (զոր պարտ է փնտռել ընդ մէջ Նիւշապհոյ և Վրկանայ) հեռի ի Նիւշապհոյ որպէս հրասախօք վեցիւք և թէ աւելի եւս ըստ չափոյ համարուց Պարսկացն. և դադարէին անդ մինչև ցառաւօտուն պահն: Յարուցեալ փութով զաղտ ոչինչ զգացուցեալ ումեք ի գեղջէն, և ոչ ամենեցուն զորս ընդ ինքեանս բայց միայն երանելի խուժկան և անօրէն դահճացն գնացին ի գեղջէն լռելեայն: Եւ առեալ զաւրրան դահճացն՝ գնացին զբովանդակ մնացեալ մասն ի գիշերոյն՝ ընդ անկոխ անապատն հեռի ի գեղջէն՝ որպէս պարսիկ հրասախաւ միով և թէ աւելագոյն, և ընդ ծագել առաւօտուն հասանէին ի տեղի մի քարուտ, տատապարածոր, տատաղուտ. ի տեղի յոր ոչ հասանէր արօտական և ոչ բնաւ անցանէր ընդ նա ուղևոր, վասն ոչ գտանելոյ երբէք ի նըմա ճանապարհ» 289–291:

Իսկ գրքահանայս այդպիսի հեռաւոր և անկոխ տեղեր տանելնուն պատճառը իմացուց մեզ սակաւիկ մի Եղիշէ. բայց փարպեցին այնքան որոշ կը յայտնէ մեզ և ժամանակին բարուց այնպիսի գեղեցիկ նկարագիր մի կ'ընէ, որ կ'ուզեմք ամբողջապէս ընթերցողին առջև դնել այս վերջնոյս գրածը:

«Յայժ պատուիրանաւ զգուշացուցանէր թագաւորն Դենշապհոյ ոչ տալ ումեք գիտել ոչ զառնուլ և զգնալ զնոսա ի քաղաքէն և ոչ զճանապարհն ընդ որ տանիցին, և ոչ զտեղի մահուանն ուր սպանանիցեն զնոսա: Քանզի լուեալ է, ասէ, մեր ստուգութեամբ, թէ աւելի վասն այսր կարի խնդան ի մահ՝ որք ի մոլար աղանդս են քրիստոնէից, զի այդպէս ասեն թէ ոսկերք այնոցիկ՝ որք յաղագս Աստուծոյ իւրեանց մեռանին, և որ ոք, ասէ, յիւրում տանն ունիցի ինչ մնացի, թէ և փոքր խորխոր ինչ ունի, և վաս ինչ և խորամանկ ի նա և ի նորա տունս և ի սիրելիս ոչ մերձենայ: Եւ զայս եւս ասեն, թէ ի բանս ամենի յաջողութիւնս տան և իմաստս և քաջութիւնս գտանել և պահպանութիւն: Եւ մինչև ի մահ ջանան անձամբ և կարաւով գոնէ ատամն մի կամ եղունգն մի գտանել յայնպիսեացն, և ի տունս իւրեանց տանել: Այլ և զայն եւս ի հաւատարիմ մարդկանէ՝ որք ի մոլար աղանդին նոցա են եղեալ, ապա զմեր լուսաւոր և զարդար օրէնս ունին, տեղեկացեալ եմք՝ թէ կանայք նոցա, ուստերք և դստերք, և զզարդս ոսկւոյ և արծաթոյ և մարգարտոյ տարեալ ուրուք նոցա, թէ կարի փոքր ինչ յոսկերաց այնր մեռելոց տայր նոցա, զայն մեծարգոյ և պատուական համարին: Եւ զինչ եւս այլ աւելի ասեմ. և զհարց և զմարց զարդս զոր յանուն նոցա արարեալ է մեծաւ աշխատութեամբ՝ հիւսակս և կամ զտակս ինչ մարգարտոյ կարի մեծագնոյ, կանայք քրիստոնէից չհամարին ինչ հանել յանձանց և տալ և գնել փխրանս ինչ յոսկերաց այնպիսեացն: Այլ դուք ուշիմ լերուք, և յայնմ վայրի եղիցի սպանումն նոցա՝ ուր յայնպիսեացն կարծեաց և պատուոյ՝ սպանեալքն և որք սպասեն ոսկերացն՝ վրիպեալ լիցին» (262–264): — Մարտիրոսաց մարմինը գտնողները՝ «Զերծ իւրաքանչիւր մարմնոց նոցա ոսկի առնուին» Եղիշէ. Յ. Ը. 97: — Բաղդատէ և Կիրակոսի Սրբոց նշխարաց վրայոք գրածը: (Հատ. Գ. 297-306):

*առ ի վանս քո, ոչ միայն բանիւ հարցանել, այլ և ամենայն հարուածովք տանջանաց: Մինչ չև ձեռն արկեալ է իմ ի քեզ, ընկալ զմեծարանս և արհամարհեա զանարգանս, և խնայեա ի պատուական ալիսդ: Թող անդր ի բաց զքրիստոնէութիւնդ՝ զոր ոչ ունէիր ի բնէ, և դարձիր անդրէն ի մոգութիւնն, որպէս զի վարդապետ էիր բազմաց:*

43. *Եւ պատասխանի ետ երանելին և ասէ. «Աղաչեմ զքեզ, տէր, որ յառաջ իբրև զհարազատ եղբայր համարեալ էիր յաչս իմ, և այսօր թշնամի կատարեալ. մի՛ բառ առաջին սիրոյն գթար դու յիս, այլ կատարեա ի վերայ իմ զկամս չարութեան թագաւորին ձերոյ. և որպէս առեր իշխանութիւն ի վերայ իմ, դատեա զիս»:*

44. *Յայնժամ իբրև ետես Դենշապուհ, եթէ առ ոչինչ զապառնալիս արքունի համարեցաւ, և ոչ ողոքանացն երես ինչ արար, և քան ի ծածուկ՝ յայտնի ես կամէր զի խօսեսցի, կատարեաց ի վերայ նորա ըստ հրամանի արքունի: Եւ գաղտագողի ընկեցաւ ի հեռաւոր օտարութիւն, որպէս զկարգ և ուսաւ ի վարդապետէն, և արար:*

45. *Եւ հրամայեաց* [1] *ես Դենշապհոյ երկուս ես ընկերակիցս օգնականս յաւագ գործակալացն, զՋնիկանն՝ որ էր մայպետ արքունի* [2]*, և զՄովան անդարձապետ ի ձեռանէ մովպետան մովպետի:*

46. *Արդ երկքեան սոքա իւրաքանչիւր սպասաւորք առին զուրբան յայնմ անապատէ, և փոխեցան նոյնչափ ես հեռագոյն ի միւս ես դժնդակ տեղի ի նմին գիշերի:*

1. Եւ հրամայեաց (Յազկերտ)։ Եղիշէ իրաց կարգը կը խանէ. որովհետև այդ երկու օգնականքն տրուած էին Դենշապհոյ, երբ սա տակաւին Յազկերտի քով էր։ Եթէ Եղիշէ հրամայեալ էր Յազկերտի ըսած ըլլար, աւելի ճիշդ կ'ըլլար։

2. Այդ օգնականաց անունները խառնակ են ապագրաց մէջ։ Միխիթարեանք և Թէոդոսիոյ տպագիրը դնեն՝ զՋնիկանն՝ որ էր մարգպետ արքունի եւ զՄովան հանդերձապետ են։ Բաղդատելով 93դ համածին և փարպեցւոյ հետ՝ հարկ է ուղղել՝ զՋնիկանն, որ էր մայպետ արքունի եւ զՄովան անդարձապետ, են։ — Ի ձեռանէ՝ եղեալն ընդ ձեռամբ ուրուք, երկրորդ և յետ նորա ի կարգի. տես Հայկազն. Բառ։ Իսկ Մովան չէ յատուկ անուն, այլ յղն. սեռական Մով բառի, որ է «մոգ». մոգան անդարձապետ՝ է «մոգուց խորհրդապետ. առաջնորդ»։ Տես Յ. Դ. 21. ծանօթ. 1։

Եւ զօք ի կարաւանէն անդր ոչ թողին անցանել, ոչ ի Հայոց և ոչ յամենայն քրիստոնէից, և ոչ ընդ յարտաքին հեթանոսաց: Եւ սպասաւորքն՝ որ էին ի վերայ կապելոցն անդէն ի քաղաքին, հրամայեցին պահել զգուշութեամբ, զի զհետս նոցա մի ոք գիտասցէ՝ ընդ որ տանիցեն ի մահու տեղի, մի նոքա և մի ամենևին ոք ի մարդկանէ:

47. Բայց այր մի Խուժիկ անուն[1] ի զօրացն արքունի, որ ի ծածուկ ունէր զքրիստոնէութիւնն, և վիճակեալ էր ի դասս դահճացն, և կայր ի սպասու օրապահացն հանդերձ գործիական տանջանարանօքն, եկն եմուտ ի մէջ գիշերին և խառնեցաւ ի դասս նախարարացն: Առաջին դասն ի միջնոյն կարծէր զնա, և միջինն երրորդին, և երեքեանն միմեանց համարէին զնա. և ոչ ոք ի նոցանէ եհարց՝ եթէ դու ով ես ընդ մեզ, ոչ ի տերանցն և ոչ ի սպասաւորացն:

48. Իբրև հասին ի տեղի անապատին[2], որ ամենևին

1. Խուժիկ չէ յատուկ անուն մարդոյ՝ այլ ազգի. այս է Խուժաստանցի: Այդ Խուժաստանցւոյդ անունը չեն կրցեր գիտնալ ոչ Եղիշէ և ոչ Փարպեցին (Տես այս վերջինս էջ 313): — Ըստ Փարպեցւոյ Խուժիկդ վաճառական մի էր, որ Շատ անգամ առևտրի համար ճանապարհորդեր էր ի Հայս, «որ և զլեզու հայերէն խօսից քաջ տեղեկաբար գիտէր. և էր ինքն այր ի մանկութենէ իւրմէ կեցեալ առաքինի վարուք, եղեալ որդի քրիստոսասէր և հաւատացեալ ծնողաց, որ զերանելի քահանայն Աստուծոյ և զնախարարսն Հայոց՝ որ ի կապանսն էին, յոյժ ընտանութեամբ գիտէր, առ որս և բազում ծախս յընչից և սպասաւորութիւն արարեալ էր մինչ ի Վրկանին էին՝ ուշադրելով զամենայն օր և ակն ունելով մասին նշխարաց սրբոցն ի կատարումն նոցա լինել արժանի»: Սա բանակին հետ Վադգէս գնացեր էր. անդ՝ «լսեալ զհրաման թագաւորին՝ ճեպով և անյապաղ ոչինչ զգացուցեալ ումեք թողոյր և զգրաստ իւր և զկարասի ի մանկունս իւր և յընկերս, և իւր առեալ ի գրաստուց իւրոց գրաստս տակուանս և ումեքս, և նմանեալ առն կարավանի՝ գնայր ընդ ճանապարհ, որ երթայր յԱպար աշխարհն, և ուղեկցեալ ճանապարհորդէր ընդ Դենշապհոյ, ցուցանելով նմա զճանապարհայնն և յօթեանս ուր հանգչէին՝ բազում արթնութեամբ շուտութիւնս»:

2. Այդ է Խորասմի անապատը: Կասպից ծովուն հարաւային արևելեան անկիւնէն լայնատարած և մարթ է ասել անեզր անապատին դաշտ մը ձգի դէպ ի հիւսիս 800 մղոնաւ չափ ցատորատ Մօղանար լերանց, և յարևելս նոյնքան հեռաւորութեամբ մինչև Բալխի մօտերը: Այս ընդարձակ երկիրս ուրանոր ոչ կենդանիք տեսանելի են, ոչ ծառ և ոչ խոտ, և որ տեղ տեղ Ովկիանու երեսէն ալ ցած է, աւելի զօրաւոր կերպով կ'անջատէ զատափն Ասուրոյ ի Խորասանայ քան եթէ լիովին ծովաւոյդ եղած

անբոյս էր ի գալարուց, և այնպէս էր ապառաժ դժնեայ, զի ոչ նստելոյ անգամ տեղի գտաւ անդ նոցա, իջին հեռագոյն նախարարքն երկքեան, և հրամայեցին դահճացն իւրեանց կապել զոտս և զձեռս նոցա: Եւ արկին պարանս երկայնս յոտս նոցա, և երկու երկու լծեցան և ածին ի քարշ: Եւ այնպէս ձգեցին ճողքեցին ընդ ապառաժ տեղին քարշելով, զի ամենևին խայծ ոչ մնայ ի մարմինս երանելեացն: Եւ ապա լուծին և ածին ի մի տեղի :

49. Թուէր ինձ նոցա այսպէս, եթէ կակղեցաք զխրոտութիւն նոցա, և հնազանդեցուցաք զբիրտ ապստամբութիւն նոցա. և արդ զինչ և խօսիցիմք, անսայցեն բանից մերոց, և առնիցեն զկամս թագաւորին, և ապրեալ լիցին յանհնարին տանջանացն: Եւ զայն ոչ կարացին քաջ իմանալ, եթէ իբրև զ.քաջ զինուորս վառեցին զնոսա, և ի հրաման կրթութեան վարժեցին զնոսա. և իբրև զգազանս վայրենիս, արիւնախանձս ուսուցին զնոսա: Եւ եթէ ունէին սակաւ ինչ կասկած յառաջագոյն, հայեցեալ նոցա ի չարաչար վէրս մարմնոյն իւրեանց, զառաջին երկիւղն ի բաց մերժեցին: Սկսան իբրև արբեալք անզգայք զխմեամբք եղանել ի բանից պատասխանի. և փութային իբր ծարաւիք յաղբիւր, եթէ ո՛ նախ վաղ զիւր արիւնն հեղցէ յերկիր:

50. Եւ մինչ դեռ յայսմ պատրաստութեան էին սուրբքն, խօսել սկսաւ ընդ նոսա Դենշապուհ և ասէ. «Արքայ յղեաց զիս առ ձեզ. ամենայն աւեր աշխարհին Հայոց, ասէ, և կոտորածք զօրացն՝ որ հասին ի վերայ, ի ձէնջ եղեն վնասքն ամենայն. և բազում նախարարք՝ որ այժմ կան կապանօք չարչարեալ, վասն ձերոյ յամա-

ըլլար, և իբրև ահագին ցամքեալ խրամ մը կը պաշտպանէ Նշպրուգի լեռնային պատուարը: Աւազոտ է և աղի. չէք անդ բնակութիւն բայց միայն ի դարեանդս բլրոց, որք կը սահմանեն զայն և յեղերս գետոց՝ որք այդ բլուրներէն իջանելով դէպ յԱրալ կամ ի Կասպից ծովն չհասած — ի բաց առեալ զմին կամ զերկուսն — կը ցամքին կամ կ՚անհետանան: Մուրավիէֆ որ այդ կողմերը գնացեր էր, կ՚ըսէ. «այդ դաշտը մահուան պատկերը կամ բնութեան մեծամեծ գղրդմանց և վրդովմանց աւերմունքը կը ներկայացնէ. անդ ոչ թռչուն կը տեսնուի և ոչ չորքոտանի. չէք ծառաստան կամ դալարի որ հանդչեցնէ զաչս. հա զի հազ կը հանդիպիս երբեմն ազաղուն թփոց»:

ուխտեանդ եղև այդ ամենայն: Այլ և արդ եթէ կամիք ինձ լսել, ասեմ ձեզ. որպէս եղերուք պատճառք ամենայն չարչարանաց մահուն, այսօր լերուք պատճառք կենաց ձերոց: Եւ նախարարքն՝ որ կան ի կապանս, ի ձեռն ձեր է իշխանութիւն արձակել զնոսա, և տալ աշխարհին ձերոյ ձեօք շինել, և բազումք որ վարեալ են ի գերութիւն, անդրէն դառնան:

51. «Ահա դուք ձերովին աչօք տեսէք այսօր, եթէ զորպիսի այր տոհմիկ, զոր թագաւորն ինքնին յականէ յանուանէ ճանաչէր վասն մեծի գիտութեան օրինացս մերոց, և կատարեալ էր յամենայնի ի դենս և ամենայն մեծամեծաց սիրելի, և գրեթէ բոլոր աշխարհս կախեալ էր զնմանէ. և վասն զի անարգեաց զդենմազդեզն և պատրեցաւ ի ձեր տխմար գիտութիւնդ, ոչ ինչ խնայեաց թագաւորն ի մեծ պատիւ նորա, այլ իբրև զգերի մի զանաշխարհիկ չկօթակ արարի զնա յայնչափ օտարութիւն հեռաւոր, զի ընդ երթալն իսկ ոչ ժամանէ ի տեղի պատուհասին իւրոյ:

52. «Արդ եթէ ի բուն դայեկութիւնն[1] վասն պատուական օրինացն ոչ խնայեաց ի նա, որչափ ևս առաւել ի ձեզ յօտարաշխարհիկդ, որ մահապարտ իսկ էք յիւր արքունի: Եւ չիք ինչ ձեզ այլ հնար կենաց, բայց եթէ երկիր պագանիցէք արեգական, և կատարիցէք զկամս թագաւորին, որպէս և ուսոյց զձեզ մեծն Զրադեշտն: Եւ եթէ զայդ առնէք, ոչ միայն արձակիք ի կապանացդ և ապրիք ի մահուանէ, այլ և մեծամեծ պարգևօք յուղարկիք յաշխարհն ձեր»:

53. Յառաջ մատուցեալ Ղեւոնդ երէց և թարգման կացոյց զՍահակ եպիսկոպոս. «Զի՞րդ լուիցուք, ասէ. երկդիմի հրամանացդ քոյ. ահա զերկրպագութիւնդ նախ ետուր արեգական, և զկատարումն երկրպագութեան ի կամս թագաւորին ձգեցեր, մեծարեցեր զարեգակն՝ յառաջ ձայնելով զանուն նորա, և մեծացուցեր զթագաւորն աւելի քան զարեգակն. և յայտ արարեր՝ եթէ առանց կամաց իւրոց սպասաւորէ արեգակնն ա-

1. Խնամ՝ սննդակցութիւն, ազգակցութիւն. կամ զմոգպետը՝ իր գիտութեանը՝ կրօնական կերպարանին համար դայեակ և դաստիարակ համարելով:

բարածոց, խակ թագաւորն ի կամս ազատութեանն իւ-
րոյ՝ զոր կամի ստացուածացուցանէ, և զոր կամի ծա-
ռայեցուցանէ. և ինքն ճշմարտութեանն վերայ չև է հա-
սեալ: Մի խօսիր ընդ մեզ իբրև ընդ տղայս, զի հասա-
կաւ կատարեալ եմք, և գիտութեամբ ոչ եմք անտեղեակ.
ուստի սկսար դու, այտի տաց քեզ պատասխանի:

54. «Այսպէս զմեզ եդիր պատճառս աւերածոյ աշ-
խարհին մերոյ և հարուածոց զօրացն արքունի. մեր օ-
րէնքն զմեզ այդպէս ոչ ուսուցանեն. այլ յոյժ պատուել
հրամայեն զերկրաւոր թագաւորս, և սիրել զնոսա յա-
մենայն զօրութենէ մերմէ, ոչ իբրև զմարդ ոք զուգնա-
քեալ ի մարդկանէ, այլ իբրև Աստուծոյ՝ ճշմարիտ կալ
ի ծառայութեան. և եթէ զրկիմք ինչ ի նոցանէ, փոխա-
նակ ընդ երկրաւորիս զերկնիցն խոստացաւ մեզ զար-
քայութիւն: Եւ ոչ միայն զարբանեկութիւն հպատակու-
թեան պարտիմք հարկանել նոցա, այլ և մահու չափ
զանձինս ի վերայ դնել սիրոյ թագաւորին: Եւ որպէս
յերկրի ոչ ունիմք իշխանութիւն փոխանակել զնա ընդ
այլում տեառն, նոյնպէս և յերկինս չունիմք իշխանու-
թիւն փոխանակել զճշմարիտ Աստուածն մեր ընդ այ-
լում, որ չիք Աստուած բայց ի նմանէ[1]:

55. «Բայց ասեմ քեզ՝ որում սակաւիկ մի տեղեկա-
ցոյն ես: Ո՞վ ի քոյ զօրականէն զկնի մտանիցէ ի պա-
տերազմ. և եթէ զայս արասցէ, ոչ քոյ անուանի նա,
այլ յոյժ վատ: Եւ կամ ո՞ յիմաստուն վաճառականաց
զպատուական մարգարիտն փոխանակիցէ ընդ անարգ
թրուշայի[2], բայց եթէ յիմարեալ իցէ ագխտութեամբ,
որպէս և ձեր մոլորութեան առաջնորդքդ:

56. «Միայն գտեր զմեզ ի բազում առաքինեաց
մերոց, և կամիս զողութեամբ աւերել զամուրս խորհրդ-
ոց մերոց. չեմք մեք միայն՝ որպէս և դուդ կարծես.

1. Թուղթ առ Կողոս. Գ. 22:

2. Թրուշայ, բառ Աճեան բառարա-
նի է քուրջ. 2, Ուլունք. 3, Ո՛ և է
չնչին բան: — Է բազմոն տարեոչ, յգն.
տարեօչ, աղքատ, անանկ, չքաւոր.
(Տես Մայիս–խրատ). Մարգարիտը որ
սակայ կը յիշուի, ամէն գոհարեղէնէ
աւելի գործածելի և յարգի էր. պարս-
կերէն՝ մարվարիտ: Բազմոն լեզուին մէջ
վ չատ անգամ կը փոխանակի ընդ կի
այսպէս վատ և վատբար գրին եւ կատ
և կատբար. վատարկ գրի և կատարկ:

չէք տեղի ունայն, ուր չիցէ Քրիստոս Թագաւորն մեր. բայց միայն այնքիկ են թափուր ի Նմանէ, որ խբրև զքեզ և զչարադև իշխանն քո, որք ուրացեալ էք ի Նը-մանէ: Զի թէ զինուորք աշխարհին մերոյ, որ աշակեր-տեալքն էին մեզ ի Քրիստոս, առ ոմն հարին զահագին հրամանս թագաւորին ձերոյ, և զմեծամեծ պարգևս առ ոչինչ համարեցան, և զհայրենի տէրութիւնն ի բաց կողոպտեցան, չխնայեցին ի կին և յորդիս և ի զանձս մարմնաւորս կենաց աշխարհիս, նա և ոչ զարիւնն ի-րեանց ածին ինչ զմտաւ վասն սիրոյն Քրիստոսի, այլ զերկրպագուս արեգականն՝ որ ձեր վարդապետք էին, չարաչար հարուածովք սատակեցին զնոսա, և մեծամեծ չարիս հասուցին ի վերայ զօրացն ձերոց, և բազումք ի նոցանէ անկանէին ի նմին պատերազմի, և այլք մա-նեցան ի պէսպէս փորձութիւնս, և կէսքն ընկեցան ի հե-ռաւոր օտարութիւն, և ևս բազմագոյնք վարեցան ի գե-րութիւն: Եւ ամենեքին նոքա յառաջեցին քան զմեզ յարքայութիւնն Աստուծոյ, և խառնեալ են ի գունդս վերին հրեշտակացն, և ցնծան ի պատրաստեալ յուրա-խութիւնս, յոր հասեալ խառնեցաւ երանելի այրն, զոր դու ասես չկօթակ արարի: Երանի տամ Նմա, և երանի երկրին՝ ընդ որ նայն անցանիցէ, և տեղւոյն՝ ուր նայն վախճանեցի. ոչ միայն զարքունեօք ձերովք անցանէ պատուականութեամբ, այլ և զերկնից լուսաւորօքդ՝ ո-րում դուքդ երկիր պագանէք:

57. Ետ պատասխանի Մովան անդարձապես և ասէ ցնոսա. «Աստուածքն բարերար են, և երկայնամտու-թեամբ ջանան ընդ ազգի մարդկան, զի գիտասցեն և ծանիցեն զիւրեանց փոքրկութիւնն և զնոցա մեծու-թիւնն, և վայելեսցեն ի պարգևս աշխարհիս, զոր տը-ւեալ է յիշխանութիւն ի ձեռս թագաւորի, և ի բերա-նոյ նոցա երանեն հրաման մահու և կենաց: Եւ ձեզ ոչ է իշխանութիւն այդպէս ընդդիմանալ կամաց նոցա և ոչ առնուլ յանձն զերկրպագութիւն արեգական, որ ճա-ռագայթիւք իւրովք լուսաւորէ զամենայն տիեզերս, և ջերմութեամբ իւրով հասուցանէ զկերակուր մարդկան և անասնոց, և վասն հասարակաբաշխ առատութեանն և անաչառ մատակարարութեանն անուանեցաւ Միհր աս-

տուած [1], զի չէք ի նմա նենգութիւն և անխնամութիւն։ վասն որոյ և մեք երկայնամիտ լինիմք ի վերայ տգիտութեան ձերոյ. քանզի չեմք մարդատեացք իբրև զգազանս շաղղակերս և արիւնարբուս։ Խնայեցէք յանձինս ձեր, և մի խառնէք զմեզ ակամայ յարիւն ձեր։ Թողէք անդր զառաջին յանցանս ձեր, և զառաջիկայ իրս ուղղեցէք, զի և այլոցն վասն ձեր լիցի ողորմութիւն ի մեծ թագաւորէն»։

58. Առ այս ետ պատասխանի Սահակ եպիսկոպոս և ասէ. «Իբրև ուսեալ և յոյժ խրատեալ՝ զգեղեցիկ հոգ յանձին ունիս շինութեան աշխարհի և փառաց թագաւորին. բայց զայս կարի տգիտաբար ուսուցանես, զի աստուածս բազումս խոստովանիս, և զմի կամս ոչ ունիս ամենեցուն։ Եթէ վեհքն առ միմեանս մարտուցեալ են, մեք խոնարհագոյնք քան զնոսա զիա՞րդ կարասցուք հաւանել բանից քոց։ Միաբանեա զջուր և զկրակ, զի ուսցուք ի նոցանէ զխաղաղութիւն. կոչեա զարեգակն ի տուն որպէս զկրակ, և եթէ նմա ոչ մարթի գալ՝ զի մի աշխարհ ի խաւարի մնասցէ, յղեա զդա առ նա, զի ուսցի ի նմանէ զանկարօտութիւնն։

59. «Եւ եթէ մի է բնութիւնն աստուածոյն քոյ, հաւասարեսցեն առ միմեանս զուգութեամբ. լիցի անկերակուր կրակ իբրև զարեգակն, և մի խափանեսցին ծառայքն արքունի ի ծախս ռոճկաց սորա [2]։ Արդ մինդ անյագ ուտէ, և հանապազ մեռանի. և միւսն որ չուտէ, առանց օդոյն նուազի լոյս ճառագայթից իւրոց. ցրր-

1. «Վասն հասարակաբաշխ տուութեանն և անաչառ մատակարարութեանն անուանեցաւ Միհր աստուած»։ Տես Միհր եաշդ յէջ 136–137։ Ինչպէս որ որոշ կը տեսնուի աստ, Արեգակն և Միհր աստուած մի և նոյն աստուածութիւնն համարեալ են և իրարմէ չէին զանազանուեր ի հինգերորդ դարու։ Աճոյան մատակարար՝ քանզի ի միջին Դարու Միհր աստուծոյ դատաւորութեան պաշտօն մի այլ կ'ընծայուէր ամենայն ոգիք մեռելոց Զինվատ կամրջէն անցնելէն առաջ ահեղ ատենի մը դիմաց կ'ելլէին՝ որ կը բաղկանայր ի Միհր, Սրաօշա և ի Ռաշնու աստուածոց, և որոց առջև թագաւորք և [illegible] հաւասար էին. (Տես Մայնօ–Խրատ գլ. Բ)։

2. Աթրուշանները միշտ վառ պահելու համար ռոճիկք, այս է, որոշեալ քանակութեամբ փայտ կարգեալ էր ի պետութենէն, միանգամայն և պատաւորք պաշտօն ունէին խնամ տանելու նոցա։

տանց ձմերայնի, և սառուցանէ զամենայն դալարաբոյս խոտոյն. տօթանայ յամարայնի, և հրակէզ առնէ զամենայն կենդանիս [1]: Եւ որ ինքն յար ի փոփոխման կայ, ոչ կարէ հաստատուն կեանս ումեք շնորհել: Եւ քեզ ոչ կարեմ մեղադիր լինել. որոյ ոչ տեսեալ է զմեծ թագաւորն, պատուաւորացն մատուցանէ զերկրպագութիւն. իսկ եթէ ոք զայս ի հմուտ գիտնոցն արասցէ, փաղփաղակի մահ ի վերայ հրամայեն:

60. « Այլ վասն արեգական, եթէ կամիցիս ուսանել, զճշմարիտն ասացից քեզ: Մասն է նա աշխարհիս արարածոց, ի բազում մասանց մի մասն որոշեալ է. կէսքն ի վերոյ են քան զնա, և կէսքն ի ներքոյ նորա: Ոչ է նա առանձին սուրբ յատակ լուսով, այլ ի ձեռն օդոյն հրամանաւն Աստուծոյ տարածանէ զճառագայթս իւր, և հրային մասամբ ջեռուցանէ զամենայն զգայացեալս ի ներքոյ իւրոյ կայանին: Իսկ վերինքն ոչ ինչ մասն ունին ի նորա ճառագայթիցն. քանզի իբրև յաման ինչ արկեալ է զլոյսն ի գունդ նորա, և ի վայր կոյս հեղու բերանացեալ՝ առ ի պէտս ներքնոցս վայելչութեան: Եւ զոր օրինակ նաւ մի թռուցեալ ի վերայ ծովային ջուրցն բազմութեան, անդխութեամբ զնայ զուղերութիւնն ի ձեռն հմուտ և ճարտար նաւապետին, այսպէս և արեգակն ի ձեռն կառավարին իւրոյ ունի զփոփոխմունս շրջանին իւրոյ տարևոր ժամանակին [2]:

61. « Եւ որպէս այլ մասունք աշխարհիս հաստատեալ են վասն մեր կենացն, և զնա իբրև զմի յայլոց մասանց տուեալ է մեզ յառաջնորդութիւն լուսոյ, որպէս զլուսին և զաստեղս և զօդս յարածուս [3] և զամպս անձրևաբերս. նոյնպէս և յերկրիս մասանց զծով և զգետս

1. Դարձեալ Հայաստանի ձմեռը սաստիկ ցուրտ և ամառը սաստիկ տաք կլիմային նկարագիր մը. Տես Յ. Ե. 26 և ծանօթ 3: — Իսկ արեգական վրայօք բուածներն, որոյ ճառագայթքը առանց օդոյ չեն կրնար տարածիլ և փայլիլ, որք իբր յամանի գրուած են՝ որ դէպ ի վայր կը հոսի առանց իւր վերի դին եղածին լոյս տալու, այն դարուն աստեղաբաշխական կամ բնագիտական գաղափարները մեզ կը ցուցանեն:

2. Եղիշէ, որպէս Եզնիկ. զերկիրն անշարժ և զարեգակն պտտող կ՚ենթադրէ:

3. Այլ ընթերցուած՝ յարածուփս. բայց միթէ յարածուփ օդոյ համար աւելի պատշաճ չէ. և ինչո՞ւ համար Մխիթարեանց վերջին տպագիրք յարածուփս կը դնեն՝ որ ջուրց աւելի յարմար է:

և զաղբիւրս և զամենայն պիտանացու ջուրս, նոյնպէս և զցամաքայինս ամենայն պիտոյիւք իւրովք: Աստուած և զմի ոք ի սոցանէ չէ արժան անուանել. և եթէ ժպիրհիցի ոք ասել, զանձն ագխատարար կորուսանէ. և աստուածանունն մեծարելով զնոսա՝ նոքա ոչ ինչ օգտեցան: Մինչ իշխանութեան երկու թագաւորք ոչ լինին. և եթէ մարդ զայդ քեզ յանձն ոչ առնու, քանի ևս հեռի է առ ի յԱստուծոյ բնութենէն այդպիսի կարգ չփոթել:

62. «Արդ եթէ կամիս ուսանել զճշմարիտն, քաղցրացո զգառնութիւն սրտիդ, և բաց զաչս մտացդ, և մի յարթնութեան կուրութեամբ ընդ խաւար գնայցես. որ անկեալ ես ի խորխորատ, և զամենեսեան կամիս առ քեզ ձգել: Եւ եթէ քոյքն զան զկնի մոլար վարդապետութեանդ՝ որ ոչ տեսանեն և ոչ իմանան, մի և զմեզ կարծեր զոյն օրինակ. քանզի բաց են աչք մտաց մերոց և սրատեսիլ եմք: Մարմնոյս աչօք զարարածս տեսանեմք, և իմանամք զսա յայլմէ արարեալ. և ամենեքեան են ընդ ապականութեամբ: Իսկ արարիչն ամենեցուն աներևոյթ է ի մարմնաւոր աչաց, այլ մտաց իմանի զօրութիւն նորա:

63. «Եւ վասն զի ետես զմեզ ի մեծի ագխտութեան, և ողորմեցաւ մերում անուսումնութեանն, յորում և մեք իբրև զձեզդ երբեմն զերեւելիսս կարծէաք արարիչ և գործէաք զամենայն անառակութիւնս[1], վասն այնորիկ առ սէր իւր եկն մարմնացաւ ի մարդկանէ, և ուսոյց մեզ զաներևոյթ աստուածութիւնն իւր: Այն զի բարձրացոյց զինքն ի խաչն կախաղանի, և զի մարդիկ զհետ լուսաւորացդ մոլորեցան, մերկեաց յարեգականէ զլոյս ճառագայթիցն իւրոց, զի եղիցի խաւար ապաստաւոր մարդկութեան նորա. զի որ իբրև զձեզ անարժանք իցեն, մի տեսցեն զկենանս իւրեանց ի մեծի անարգու-

1. Թէպէտ բացատրութիւնը ըստ բաւականի որոշ չէ, որ կրնայ ևս յարմարիլ կռոց պաշտաման, բայց իբրեւ զձեզդ ըսելէն միանգամայն և լուսաւորաց վրայ երկարօրէն ճառելէն կրնանք հետեւցնել թէ Եղիշէ ասով կ'ուզէ իմացնել թէ Հայք ալ կը պաշտէին զարեգակն, զլուսին և զաստեղս. (Տես Recherches sur le Paganisme arménien par J. — B. Emin. էջ 21–22): Իսկ անառակութիւնս ըսելով գուցէ իմանայ Եղիշէ զխառնակութիւնս, որք ըստ Ստրաբոնի Անահտայ մեհենին մէջ կը կատարուէին՝ ի գաւառն Եկեղեաց:

թեան։ Որպէս և այսօր որ ոչ խոստովանի զխաչելեալն Աստուած, նոյն խաւար մածեալ է զոգւով և մարմնով նորա. որպէս և դու իսկ այսօր ի նմին խաւարի կաս, և զմեզ դեռ ես չարչարես։ Պատրաստ եմք ըստ օրինակի Տեառն մերոյ մեռանել. որպէս զխարդ և կամիս կատարեա զկամս դառնութեան քո»։

64. Յայնժամ իբրև հայեցաւ ի նոսա անօրէնն Դենշապուհ, և ետես ի մեծի ուրախութեան զուարթագին զամենեսեան, գիտաց եթէ ոչ գնան առ նոսա բանք սպառնալեաց և ողոքանաց։ Հրամայեաց զմի ոմն ի կըրսերագունիցն յառաջ մատուցանել, երէց մի Արշէն անուն, վասն որոյ յառաջ կասկածն իսկ եղեւ սորայն։ Կապեցին զոտսն և զձեռսն, և մեծաւ ուժով պրկեցին, մինչև ճարճատիւն հատաւ ամենայն ջղացն. և այնպէս կայր մեծ ժամս յանհնարին պրկոցսն։

65. Եբաց սուրբն զբերան իւր և ասէ. «Ահա շըրջեցան զինեւ շունք բազումք, և ժողովք չարաց պաշարեցին զիս. ծակեցին զոտս իմ և զձեռս իմ, և փոխանակ բերանոյ իմոյ աղաղակեցին ամենայն ոսկերք իմ։ Լուր ինձ, Տէր, և լուր ձայնի իմում, և ընկալ զոգի իմ ի ժողովս սուրբ զօրականին քո, որ երեւեցաւ նորակերտ գաստակերտին քոյ[1]։ Ես որ կրսերս եմ յամենեսեան, ողորմութիւն քո գթացեալ յառաջեցոյց զիս»։

66. Եւ զայս իբրև ասաց, ոչ ևս կարէր բանալ զբերանն յանհնարին պրկոցաց գելարանին։ Եւ անդէն վաղվաղակի դահիճքն հրաման առեալ յերից նախարարացն՝ սրով հատանել զպարանոց երանելոյն, և ընկեցին զմարմինն ի խորխորատ մի ցամաք։

67. Եւ անդէն ի տեղւոջն սկսաւ խօսել Դենշապուհ ընդ եպիսկոպոսին և ասէ. «Յորժամ եկի ես յաշխարհն Հայոց՝ զտարի մի և զվեց ամիս եհաս շրջել ինձ անդ. ոչ յիշեմ ես ամենեւին՝ եթէ բան մի տրտունջ յումեքէ լուայ վասն քո, նոյնպէս և առաւել վասն Յովսեփայ. զի դա իսկ էր իշխան ամենայն քրիստոնէից, և հաւատարիմ յամենայն իրս արքունի։ Նա և որ մարզպան աշ-

1. Այս է տեսիլն՝ որ երեւեցաւ Մոգպետին (Ց. Ը. 21)։

խարհին լեալ էր յառաջ քան զիմ երթալն[1], մեծապէս գոհ էր զանձնէս զայսմանէ. և ես ինձէն աչօք իմովք տեսի, զի որպէս հայր հաստատուն համարեալ էր ամենայն աշխարհին, և անաչառութեամբ սիրէր զմեծամեծն և զփոքունս:

68. Արդ փոխանակ ընդ ձեր՝ ես աղաչեմ զձեզ. խնայեցէք ի պատուական անձինս ձեր, և մի մատնիք ի մահ չարչարանաց ըստ առաջնոյն կարգի, զոր տեսէք աչօք ձերովք: Քանզի թէ ի դոյն միտս յամառութեան կայք, և իմ եղեալ է ի մտի իմում բազում չարչարանօք կարճել զձեզ ի կենաց ձերոց: Եւ գիտեմ, զի ի հրապոյրս անդ[2] այդորիկ եղեալ էք դուք. քանզի ինքն ախտացեալ է մարմնով, և ձեռնարկութեամբ բժշկաց[3] չէք գտեալ առողջութիւն. և հիւանդոտ կենօք ձանձրացեալ է, և փափագէ ի մահ քան ի կեանս»:

69. Առ այս ետ պատասխանի սուրբն Յովսէփ և ասէ. «Գովութիւնդ՝ զոր ետուր դու նախ եպիսկոպոսիդ և ապա ինձ, յիրաւի արարեր և ըստ կարգի պատուեցեր վասն ալեացդ, այդպէս իսկ արժան է: Այլ ճշմարիտ ծառայից Աստուծոյ ոչ է օրէն դիմադարձ լինել երկրաւոր իշխանաց, և ոչ զոք ի ժողովրդոց տրտունջ առնել վասն մարմնաւոր զօշաքաղութեան. այլ ցածութեամբ և հեզութեամբ ուսուցանել զպատուիրանս Աստուծոյ, և առանց խարդախ իմաստութեան խաղաղասէր լինել առ ամենեսեան, և անաչառ վարդապետութեամբ առ մի Տէրն արարածոց առաջնորդել բոլորեցունց:

70. «Այլ վասն անձնս այդորիկ հրապուրանաց՝ զոր ասացեր, և զայդ ոչ ստեցեր, այլ կարի զճշմարիտն ասացեր: Զի ոչ իբրև զօտար ոք հրապուրէ զմեզ, և ոչ իբրև զպատրող ոք խաբեբայ մոլորեցուցանէ զմեզ, այլ յոյժ սիրէ զմեզ: Քանզի մի է մայր մեր եկեղեցի՝ որ երկնեացն զմեզ, և մի է հայր մեր սուրբ Հոգին՝ որ

1. Վասակ մարզպանութեան հասու յամին 442. և անկէ յառաջ Վեհմիհրշապուհ էր: Յովսէփ կաթողիկոս եղած էր 441ին. ուստի Վեհմիհրշապուհ կըրնար զինքը տեսած ըլլալ այդ պաշտօնին մէջ տարւոյ մը չափ. Թէպէտև Դենշապհոյ Հայաստան գնացած ատենը Վեհմիհրշապուհ շատ տարիներ յառաջ Պարսկաստան դարձած ըլլալու էր:

2. Այս է Ղևոնդ երէց:

3. Բժիշկ. պարսկերէն պըժիշկ:

ծնաւ զմեզ. զիա՞րդ համահայրք և միոյ մօր որդիք երկպառակք լինիցին, և ոչ միաբանք: Որ քեզ թուին՝ թէ հրապոյրք իցեն, մեր ի տուէ և ի գիշերի դոյն խորհուրդ էր՝ զի անքակ ունիցիմք զկենաց միաբանութիւնս: Իսկ եթէ սա ձանձրացեալ իցէ՝ երանել յախտալից մարմնոյս, տաւել ևս մեզ ամենեքեան. զի չէք ոք ամենեւին ի ծնունդս կանանց, որ ունիցի զմարմինս առանց ցաւոց չարչարանաց:

71. Եւ պատասխանի Գնեշապուհ և ասէ. «Զայդ ոչ գիտէք, որչափ երկայնամիտ լինիմ ես ի վերայ ձեր. այս ոչ հրամանաւ արքունի է այսչափ երկայնարան լինել ընդ ձեզ պայքարաւ, այլ յիմմէ քաղցրութենէ թագացուցի ձեզ. զի չեմ՝ իբրև զձեզ անադորոյն. զի անձանց տակլի էք և այլոց թշնամիք: Իմ՝ զի աղ և հաց կերեալ է[1] յաշխարհին ձերում, գութ և սէր ունիմ՝ ընդ աշխարհն ձեր»:

72. Եւ պատասխանի Ղևոնդ երէց և ասէ. «Որ առ արտաքինսն գութ և սէր ունի, զպատուիրանն Աստուծոյ կատարէ, այլ պարտի և յիւր ոգւոյն խնայել. զի չեմք անձանց տէարք, այլ է որ համարս խնդրէ ի մէնջ և վասն արտաքնոց և վասն ներքնոց: Այլ որ ասացեր՝ յինէն անսամ՝ ձեզ և ոչ հրամանաւ թագաւորին, եթէ դուք սովոր էք անցանել ըստ հրամանաւ թագաւորին ձերոյ, զայդ բարւոք առնէք, զի աւերիչ աշխարհի է և սատակիչ անմեղ մարդկան, բարեկամ՝ սատանայի և թշնամի Աստուծոյ: Այլ մեք ոչ կարեմք անցանել զհրամանաւ մերոյ թագաւորին, և ոչ զանանց կեանն մեր կարեմք փոխանակել ընդ ապականացու պատրանս աշխարհիս:

73. «Այլ վասն իմ՝ զի ասացեր, չգտեալ զառողջու-

1. Պահման Եաշդի մեկնութեան մէջ Ահուրամազդա տեսիլ մի կը յայտնէ Զրադաշտայ. յորում՝ կը ցուցանէ նմա թէ երբ հազարերորդ տարին լրանալու մօտենայ (տեսաւ կ'իմանայն Սատանեանց վերջին ժամանակները) յարևելից խուժդուժ ազինք պիտի յարձակին ի Պարսկաստան և աւերեն զաշխարհն. առաքինութիւնը պիտի պակսի, խարէութիւնը աճէ, հաւատքը տկարանայ, արտերն հունձք պիտի չտան, մարդկանց ծնունդը պիտի պզտիկնայ. անարգ և խարդախ բարուց տէր պիտի ըլլան, երախտագիտութիւն և յարգանք պիտի չունենան հացի և աղի: Pahlavi texts էջ 204:

թիւն ի բժշկաց, սիրէ զնոյն քան զկեանս, այդ բանք ոչ այնոցիկ են՝ որ տեսանեն զամենայն չարչարանս աշխարհիս: Այլ ցածո զբեղ սակաւիկ մի ի զայրագին արամտութենէդ, և եկ զհետ ճշմարիտ բանից խոհից, և հայեաց կարգաւ ընդ իրս աշխարհիս: Ո՞ որ ի մահկանացուացս ունի կեանս անտրտունջս. ո՞չ ահա ամենայն լի են ախտիւք, է որ ի ներքոյ, և է որ արտաքոյ. ցուրտ և տօթ, քաղց և ծարաւ և ամենայն աղքատութիւն կարօտութեան: Արտաքոյ՝ անիրաւութիւն, յափշտակութիւն, գէճ պղծութիւն անտառակ յարձակմամբ. ի ներքոյ՝ ամբարշտութիւն, ուրացութիւն, ագխտութիւն, անդարձ մոլորութիւն ի կամաւոր ազատութենէն:

74. «Բայց դու որ զբժիշկս խոտեալ անարգեցեր, թէ չիք իմ ի նոցանէ գտանել զառողջութիւն, չեն ինչ զարմանք, վասն զի մարդիկ են նոքա, է ցաւ՝ որում գտանեն հնարս առողջութեան, և է՝ որ ապստամբէ ի հնարից նոցա. վասն զի ամենեքեան եմք մահկանացուք, այն որ բժշկէն և որ բժշկին: Այլ երանի թէ և դուք բառ բժշկական արուեստին բերէիք զնմանութիւն, զի ոչ փոքր է ճշմարտութիւն նոցա բժշկութեանն: Քանզի յորժամ տեսանեն նոքա զոք հիւանդացեալ, ոչ յապաղեն երթալ առ նոսա, այլ փութացեալ հնարին մատուցանել զառողջութիւն: Մանաւանդ եթէ յարքունիս մի ոք ի սիրելեաց թագաւորին ախտանայցէ, և հասեալ ի մեծ հրապարակն՝ տեսանիցէ զբազմութիւն պատուաւորացն և զառողջութիւն զեղեցիկ երիտասարդացն, և եւ ի ներքս մատուցեալ ի սրահն արքունի, և անդ տեսանիցէ զամենայն ազատաւորացն զչքնաղ և զպանչելի տեսիլն, ոչ ինչ զարմանայ ընդ հրաշակերտ տեսիլն: Նա և եթէ զահոյք ականակապք իցեն և համակ ոսկեղէնք՝ յորոց վերայ հիւանդն անկեալ դնիցի, չէ ինչ նմա փոյթ զայնմ ամենայնէ: Այլ ի բաց հրամայէ առնուլ զոսկէհուռ վերարկուն, և ձեռն ի ներքս տարեալ՝ զննէ զամենայն մարմինն, եթէ ջե՞րմ իցէ բնութիւնն, և եթէ սիրտն ի տեղւոջն հանդարտ կայցէ, և կամ թէ լեարդն կակո՞ւղ իցէ, և կամ թէ շարժք երակացն[1] յարմա՞ր ի-

1. Նշան. Բազմանա՝ բակ. որպէս «երան» է պարսկերէն՝ բան։

ցեն. և ըստ նմին զգարման բժշկութեանն առնիցէ՝ շնորհելով նմա զառողջութիւն:

75. «Իսկ արդ եթէ մարդկային բժշկութիւնն այսպիսի գիտէ քամահել զամենայնիւ. և միայն զիւր արուեստն յառաջ մատուցեալ՝ զգործն կատարէ, որչափ ես առաւել ձեզ արժան էր, որ զբոլոր աշխարհս ունիք յիշխանութեան մեծի, հոգ յանձին տանել՝ նախ զհոգւոց բժշկել յամենայն ախտալից մոլորութեանց աշխարհիս, և մարմնովք իսկ կային ամենեքեան ձեզ ի ծառայութեան: Արդ այժմ զի դուք տգիտացարուք, և զանմահ հոգւոյ մահկանացու արարէք յանշէջ հուր գեհենին, մարմնովդ՝ թէ կամիք և եթէ ոչ կամիք՝ ախտացեալ էք յախտաւորութիւն անառողջութեան. և զմեզ նախատէք մարմնոյ ցաւովք, որ ոչ ի կամս մերոյ ազատութեան է, այլ որպէս դիպեցաւ ի բնութեան մարմնոյ իւրաքանչիւր մարդոյ:

76. «Եւ Քրիստոս ճշմարիտ Աստուած կենդանի և կենդանարար՝ ի կամս իւրոյ բարերարութեան եղև բժիշկ հոգւոց և մարմնոց, և նա ինքն ի ցաւս չարչարանաց իւրոց բժշկեաց զամենայն ազգս մարդկան: Եւ ես խանդաղատագոյն գթացեալ, վերստին ծննդեամբն ծնեալ զմեզ յառողջութիւն՝ անցաւս և անվէրս, և ի ծածուկ հարուածոց զհին ծակատուածն վիշապին[1] առողջացոյց. և արար զմեզ անապակ և անարատ հոգւով և մարմնով, զի իցեմք բանակակից հրեշտակաց և զօրք երկնաւոր թագաւորին մերոյ: Եւ քո զայս ոչ գիտացեալ, և ոչ վայելեալ յերկնաւոր պարգևն Աստուծոյ, և ոչ ես այլ կամիս ուսանել ի մէնջ. այլ և զմեզ ես վրիպեցուցանել կամիս, որում չիք հնար, և մի այլ լիցի, և ոչ կարես իսկ առնել:

77. «Այլ վասն խոց ախտալից մարմնոյս ասացեր քեզ կարճառօտս: Խնդամ՝ և ուրախ եմ՝ յորժամ՝ տեսանեմ՝ զմարմինս իմ՝ չարչարեալ. գիտեմ, զի զօրանայ յիս առողջութիւն հոգւոյս իմոյ: Մանաւանդ զի ունիմ՝

1. Վիշապ կը բաղկանայ յերկուց բառից. վիս՝ թոյն և ապ՝ ջուր: Պ. Հաւգ թարգմանէ՝ որ թունաւորէ զջուրս, կամ բառ առ բառ՝ որ ունի թունաւոր ջուր. Zand-Pahlavi Glossary

ինձ գրաւական զմեծ վարդապետն հեթանոսաց [1], որ ի ցաւս մարմնոյ անձին մխիթարէր, և ի կոփումն սատանայական մարմնոյ պարծէր, և ասէր. Զի եթէ տկակիցք եղաք նմանութեան մահու նորա, որչափ ևս առաւել լիցուք հաղորդք յարութեան նորա: Այլ դու որ ունիս իշխանութիւն ի վերայ մեր, դատեա զմեզ ըստ չարութեան կամաց քոց: Չեմք ինչ զանգիտելոց յահագին յահաւոր սպառնալեացդ քոց, և ոչ երկիւղած ի դառն մահուանէն՝ զոր ածելոց ես ի վերայ մեր»:

78. Յայնժամ մեկուսացոյց տակաւին մի զերանելիսն ի միմեանց, և միայն ասէ ցսուրբ եպիսկոպոսն. «Գովութիւն, զոր ետու քեզ յառաջ, ոչ խնայար պատիւ անձին քոյ: Յիշեցուցանեմ քեզ զչարիսն, զոր գործեցեր դու, զի անձամբ զանձն քո արարես մահապարտ: Արդարև դու աւերեցեր զատրուշանն յՌշտունիս, և կամ զկրակն դու սպաներ. Նա և որպէս լուայ և ստուգեցի, թէ և զմոգսն դու չարչարեցեր, և սպառ պաշտամանն դու տարար. արդ եթէ արդարև դու առեր, պատմեա ինձ»:

79. Ետ պատասխանի սուրբն և ասէ. «Արդ կամիս ուսանել զայդ յինէն, եթէ յառաջագոյն գիտէիր»: Դենշապուհ ասէ. «Այլ է համբաւ, և այլ է ճշմարտութիւն»: Եպիսկոպոսն ասէ. «Որպէս կարծեսդ ասա ինձ»: Դենշապուհ ասէ. «Իմ լուեալ էր, եթէ զամենայն վնասն յՌշտունիս դու արարեր»: Եպիսկոպոսն ասէ. «Եւ զի այդպէս հաւաստեաւ ի վերայ հասեր, կրկին զի՞ հարցանես»: Դենշապուհ ասէ: «Զճշմարիտն ի քէն կամիմ՝ ուսանել»: Եպիսկոպոսն ասէ. «Ոչ զօգուտ կենաց քոց կամիս ուսանել յինէն, այլ արեան իմոյ ցանկան միտք քո»: Դենշապուհ ասէ. «Չեմ գազան արիւնախանձ, այլ վրէժխնդիր եմ աստուածոցն անարգութեան».

80. Եպիսկոպոսն ասէ. «Զտարերս համերս աստուածս անուանես, և զպատկերակիցս քո մարդիկ խոտխոտել կամիս. տալոց հատուցանելոց ես վրէժ թագաւորաւն քով յանկաշառ ատենին Աստուծոյ: Եւ զոր քո չար

1. Այս է Պօղոս առաքեալ. տես Թուղթ առ Հռովմ. Զ. 5:

կամօքդ կամիս լսել յինէն, զայդ ես ասեմ քեզ: Զատունն արդարև ես աւերեցի, և զմոգսն ես չարչարեցի զանձն, և զկահ պղծութեան՝ որ ի տանն էր՝ ի ծովս ես ընկեցի[1]: Այլ զկրակ ո՛չ կարէ սպանանել. քանզի ամենիմաստ արարիչն արարածոց հող խնամոյ տարեալ յառաջագոյն՝ անմահս հաստատեաց զբնութիւն չորից նիւթոցն: Այդ սպան դու զօդ եթէ կարես, և կամ ապականեա զհող՝ զի մի բուսուսցէ զդալարի, փողոտեա զգետ՝ զի մեռցի: Եթէ զայդ երեսին կարես առնել, ապա և զկրակ կարես սպանանել:

81. « Ապա եթէ ճարտարապետն մեր միաբանեաց զչորից տարերացդ զանքակութիւն, ահա և զատանի բնութիւն հրոյ ի քարինս և յերկաթս և յամենայն տարերս զննելիս, ընդէ՞ր ստութեամբ զրպարտես զիս, թէ դու զկրակ սպաներ: Այդ դու սպան զջերմութիւն արեգական, զի ունի նա մասն հրոյ. և կամ տուր հրաման, զի մի թափեսցի հուր յերկաթոյ: Մեռանի այն՝ որ շնչէն և շարժի և գնայ և ուտէ և ըմպէ. Ե՞րբ տեսեր դու զկրակ գնայուն կամ խօսուն կամ գիտուն: Արդ զոր կենդանի քո չէ տեսեալ, մեռեալ խոստովանիս: Քանի՞ անթողլի է ամբարշտութիւնդ ձեր քան զամենայն հեթանոսաց, որ գիտնագոյնք են քան զձեզ. որ թէպէտ և ի ճշմարիտն Աստուծոյ մոլորեալ են, զանխօս տարերս Աստուած ոչ խոստովանին: Արդ եթէ դու անգիտութեամբ կորնչելի ասես զբնութիւն հրոյ, ոչ առնուն քեզ յանձն արարածքս. քանզի խառն է դա յամենեցունց »:

82. Դենշապուհ ասէ. « Ո՛չ ինչ մտանեմ[2] ես ընդ քեզ ի պայքար քննութեան վասն բնութեան արարածոցս. այլ խոստովանեա ինձ, եթէ դո՛ւ անցուցեր զկը-րակն, եթէ ոչ »:

83. Պատասխանի ետ երանելին և ասէ. « Որովհետև ոչ կամեցար լինել աշակերտ ճշմարտութեանն, աստի

1. Այս է ի ծովն Վանայ:

2. Սահակ վարպետութեամբ կը շըրջէ զհարցումն. կրակը մարելը Պարսից գաղափարաց համեմատ՝ սպանանել էր. բայց Դենշապուհ կը սեղմէ զխնդիրն ու ի բաց կը թողու սպանանել բառը. « Դո՞ւ անցուցեր զկրակն »: Սահակ դարձեալ ճարտարութեամբ կը պատասխանէ ու Դենշապհոյ ձեռքը օրինական փաստ մը չտալու կ'աշխատի:

զկամս հօրն քոյ սատանայի: Ես ինձէն մաւ ի կրակա-տունն ձեր, և տեսի՝ զի կային պաշտօնեայք ամբարշտութեանն մնալ կարծեացն ձերոց, և կրակարանն լի հրով առաջի նոցա բորբոքեալ այրէր: Հարցի ցնոսա բանիւք և ոչ գանիւ, թէ զի՞նչ համարիք ի միտս ձեր զկրակ պաշտամանս այսորիկ: Ետուն պատասխանի և ասեն. Մեք ինչ ոչ գիտեմք. բայց այսչափ ինչ խնամեմք, զի աւանդութիւն է նախնեացն և հրաման բուռն թագաւորին :

84. « Ասեմ դարձեալ ցնոսա. Եւ զընութիւն կրակիդ զի՞նչ խնամայք. արարի՞չ կարծէք, թէ արարած: Ասեն միաբան ամենեքեան. Արարիչ մեք զդա ոչ գիտեմք, նա և ոչ համարեցիչ աշխարհաց: Ձեռք մեր փապարեալ են ի կայծնի, և ոսկերք մեր տոչորեալ են ի փայտակրի[1], աչք մեր գիջացեալ են արտասուօք ի կծութենէ ծխոյ դորա, և երեսք մեր մրոտեալ են ի խառնաւութեան թանձրութենէ նորին ծխոյ: Եթէ շատ մատուցանեմք նմա զկերակուրն, յոյժ քաղցնու. և եթէ ընաւ չտամք, ամենեւին անցանէ. և եթէ մօտ երթամք և երկիր պագանեմք, կիզու զմեզ. և եթէ ոչ երթամք մօտ ամենեւին, մեռեալ լինի: Մեք այդպէս հասեալ է ի վերայ ընութեան դորա:

85. « Ասեմ դարձեալ ցնոսա. իսկ լաւ է ձեր, եթէ այր ուսուցեալ է ձեզ զայդպիսի մոլորութիւն: Ետուն պատասխանի և ասեն. Զի՞ ի լսելոյ հարցանես զմեզ, այլ հայեաց ընդ առաջիկայ իրոգ. զի օրէնսդիրքն մեր ազգովք մնաց միայն կուրացեալ են. այլ թագաւորն մեր մարմնով միով ականբն կոյր է[2], այլ ոգւոյն ընաւ չէք իսկ աչք:

86. « Վասն այնորիկ և ես իբրև լուայ զայս ի նոցանէ, յոյժ ողորմեցայ. զի տգիտութեամբ զարգարն խօսեցան: Սակաւիկ մի չարչարեցի զնոսա գանիւ, և նոցուն իսկ ետու զկրակն ի ջուրն ընկենուլ, և ասացի այսպէս. Աստուածք, որ զերկինս և զերկիր ոչ արարին,

1. Չէ միայն փայտ կրող. այլ և փայտակրութիւն. որպէս սատանոր. այս վերջի նշանակութիւնս աւելցնել հարկ է մեր բառագրոց մէջ:

2. Յօրինակս Բ միականի էր.

կորիցեն ի ներքոյ երկնից. և ապա զմոգսն ի բաց արձակեցի »:

87. Զայս ամենայն իբրև լուաւ Դենշապուհ ի բերանոյ սուրբ եպիսկոպոսին. անհնարին զահի հարաւ ի թշնամանաց թագաւորին և յանարգանաց դենին: Վասն որոյ և երկեաւ խել մատուցանել զնա ի տանջանս հարուածոց, թէ գուցէ այլ ևս մեծ անարգանս զթագաւորէն տացէ ասել յատենին, և ի նա ձգիցին կարծիք թշնամանացն. զի երկայնմտութեամբ պայքարեցաւ ընդ նոսա :

88. Եւ քանզի սուսեր ընդ մէջ ածեալ նստէր յատենի[1] ահ արկանելով որոցն, գոչեաց իբրև առիւծ զայրագին, և հանեալ զսուսերն զազանաբար յարձակեցաւ ի վերայ երանելեացն. և եհար եպիսկոպոսին զաջ ուսն թիկամբն հետ, և զձեռն ի վայր ընկէց: Եւ նորա յահեակ կողմն յերկիր անկեալ, և դարձեալ անդրէն պատսպարէր, առնոյր զաջ ձեռն ի վեր. աղաղակեաց մեծաձայն և ասէ. « Ընկալ, Տէր, զկամաւոր պատարագս՝ որ ինձէն զիս քեզ մատուցի բոլորովին, և խառնեա զիս ի գունդս սուրբ զինուորացն քոց »:

89. Դարձեալ քաջալերէր զընկերակիցսն իւր և ասէր. « Հայրս առաքինիք, եհաս ժամ կատարման մերոյ. խցէք զաչս մարմնոյ վայր մի, և այժմ տեսանէք զլոյսն մեր Քրիստոս »: Եւ թաւալելով ընդ արիւնն անձին իւրոյ ասէր. « Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, հանապազ օրհնութիւն նորա ի բերան իմ: Ի Տէր պարծեսցի անձն իմ, լուիցեն հեզք և ուրախ եղիցին »: Եւ ասելով զսաղմոսս զայս կատարէր մինչև զայս տեղի. « Բազում նեղութիւնք են արդարոց, յամենայնէ փրկէ զնոսա Տէր, և պահէ զամենայն ոսկերս նոցա »:

1. Ատեանին մէջ առեան կազմուեր էր. ըստ Փարպեցւոյ զօրականք աթոռալ տարեր էին, որոյ վերայ կը նստէր Դենշապուհ: Սուսեր ընդ մէջ ածեալ՝ իբրև իշխանութեան նշան, որպէս սովոր է զինուորականաց՝ երբ հրաման մը կատարեն կամ դատաւորութիւն ընեն: Դահճութիւնը ինքը պիտի չկատարէր, բայց որովհետև շատ խօսեցնել տուեր էր զՍահակ, որ զանձն թագաւորին նախատեր ու ծաղրածեր էր, ինքը սրով զարկաւ զնա. կարծեցնելու համար թէ՝ չկրցաւ հանդուրժել իր տէրոջ եղած անարգանաց: Բաղանտ՝ չուչիր, արդի պարսկերէն շեմշիր. Բահլաւերէն՝ տոպրա որ է « Թուր »:

90. Եւ մինչ դեռ կայր յուժի մարմնոյն սակաւիկ մի, իւրովք աչօք իսկ հայեցեալ՝ տեսանէր յերկնից եկեալ գունդս բազում հրեշտակաց և վեց պսակ ի ձեռին հրեշտակապետին: Դարձեալ և լսէր ևս բարբառ ի վերուստ որ ասէր. «Քաջալերեցարուք, սիրելիք իմ. զի ահա մոռացայք զվշտալի կենօք, և հասէք երանելի պսակացդ, որ ձերով ճարտարութեամբդ կազմեցէք. առէք դիք յիւրաքանչիւր գլուխ: Զի նիւթ պատրաստական ի ձէնջ հիւթեցաւ, իսկ ճշմարտութիւն գործոյ յամենասուրբ ձեռացն Քրիստոսի կազմեցաւ. զոր ի պատուարաց այտի իսկ ընկալեալ՝ ընդ Ստեփաննոսի լինիք պսակակից: Նա և զայն ևս քաջապէս տեսանէր, զի դեռ ևս շողայր սուրն ի վերայ պարանոցի երանելեացն:

91. Զոր իբրև ետես սուրբն Ղևոնդ, եթէ ոչ ևս զմի մի կամին հարցանել և դատել, այլ միանգամայն հրաման եղև մահու, ասէ ցերանելին Յովսէփ. «Մատիր, յառաջեա ընդդէմ սրոյն, զի դու աստիճանաւ ի վեր ես քան զամենեսեան»: Եւ զայս իբրև ասաց, կարգեցան կացին մի ըստ միոջէ. առ ճեպ տագնապի ստիպելոյ դահճացն՝ միանգամայն հատին ընկեցին զպարանոցս երանելեացն առաջի սուրբ եպիսկոպոսին. և նորա ընդ հանել ոգւոցն աղաղակեաց և ասէ. Տէր Յիսուս ընկալ զոգիս մեր ամենեցուն, և խառնեա զմեզ ի գունդս սիրելեացն քոց: Եւ միանգամայն կատարեցան ամենեքեան ի նմին տեղւոջ[1]:

92. Եւ եթէ զմոգպետն ես, որ հաւատաց ի Քրիստոս, կամիցիս ընդ նոսա ի համար արկանել, թուով են եօթն. թող զերկուսն ևս որ ի Վաղգեան կատարեցան, և միւս եպիսկոպոսն Թաթիկ[2] անուն յատարեւ-

1. «Ի վեշտասաներորդում ամի թագաւորութեան Յազկերտի, որ օր քսան և հինգ էր ամսոյն Հրոտից, յԱպար աշխարհի, մերձ ի գեօղն Մոգուց որ անուանեալ կոչի Ռևան». Փարպ. 305 և Եղիշէ Յ. Ը. 101: Այս է Սամուէլի և Աբրահամու նահատակութենէն 18 օր յետքը: Գիւղին տեղն անյայտ է տակաւին:

2. Այս է Թաթիկ եպիսկոպոսն Բասենոյ (տես Յ. Բ. 26) զոր յառաջագոյն տարեալ էր տանել զօրագլխացն Պարսից ի Խուժաստան (երբ քահանայք դեռ ի Հայս էին) ըստ քսելոյ իշխանին Սիւնեաց և անդ խիստ կապանօք պահէր. Փարպ. 223: Յազկերտ՝ զարկաւագն Աբրահամ և զՍամուէլ մեռցնել տուած

*տանի: Բայց անդէն ի տեղւոջն վեցեքին, որոց անուանքն են այսքիկ. Սահակ եպիսկոպոս յՌշտունեաց, սուրբն Յովսէփ ի Վայոց ձորոյ ի գեղջէ Հողոցմանց, Ղեւոնդ երէց ի Վանանդայ՝ ի գեղջէ Իջաւանից, Մուշէ երէց յԱղբակոյ[1], Արշէն երէց ի Բագրեւանդայ, ի գեղջէ յԵղեգեաց, Քաջաջ սարկաւագ՝ ուստի եպիսկոպոսն էր յՌշտունեաց: Իսկ երանելի մոգպետն ի Նիւշապուհ քաղաքէ, Սամուէլ երէց յԱյրարատոյ՝ ի գեղջէ յԱրածոյ, Աբրահամ սարկաւագ ի նմին գեղջէ:*

93. *Արդ զվեց զայս սուրբս յանապատին՝ ուր կատարեցին, Դենշապուհ և մոգպետն[2] և Ջնիկան մոգպետն անդէն ի տեղւոջն պահապանս ընտրեցին յիւրաքանչիւր սպասաւորացն, և պահել հրամայեցին զմարմինս երանելեացն ցաւուրս տասն կամ եւս աւելի, մինչև*

տանը հրաման խրկած էր, որ տաճիկներ եւ գթութիւն որ յայնժամ յԱստրախան փոխեալ էր. (Նշմ. 261)։ — Ջերկուսն եւս որ ի Վաղզկեն. Տես Յ. Բ. 6 ծանօթ 1։

1. Տարալադըզ գաւառ ի հարաւոյ Գեղարքունեաց Քուչիկեան լերամբք շրջապատեալ, յարեւմտից սահման ունի զՇարուր, ի հարաւոյ զՆախիջեւան յելից զԳարապաղ նահանգ, բարձր բարձր լերամբք նորուն անջատեալ. յորոց բղխեալ Արփա գետ արբուցանէ զգաւառս և ընթանայ յարեւմուտս յԵրասխ ընդ մէջ Շարուրայ և Նախիջեւանու. և է երկիրս Վայոց ձոր կամ Եղեգեաձոր հին գաւառ Սիւնեաց. լերամբք պարսպեալ յամենուստ, ոչ սակաւ և ի մէջն կոհակեալ. Ալիշան Վ. Տեղագիր Հայոց Մ։

Աղբակ. ի մուտս Վասպուրական գաւառի Պարսից և յելից Անձեւացեաց, կայ միճակն Ալբաղ որ է Աղբակ, որոյ գլխաւոր աւանն է Պաշգալէ ի բարձրաւանդակի իբրեւ 7000։ Ոչ սակաւ Հայք բնակին ի կողմանս. այլ և Հրէայք ոչ սակաւք. որք թուին ոմանց ի հին գերութենէն Հրէից սերեալք եւ կամ ի գերութենէն Տիգրանայ Բ.ի։ Գաւառդ ընդարձակ լեռնադաշտ մի է շրջապատեալ մեծամեծ սարերէ. ձմեռն՝ սաստիկ ցուրտ և ձիւնառատ։ Ունի նշանաւոր հնութիւնս. Աշտարակ գաւառ կամ բերդն, որոյ վերայ գտանին բևեռագիրք. Սեկալ իշխանի բերդ, և Բարթողիմէոս առաքելոյ վանքն և սինոդարդ տաճարն. կառուցեալ կոփածոյ ընտիր քարերէ՝ քանդակազարդ, ահաւոր, հոկայաձև և պարապարպատ. հաւանօրէն ի ժամանակս Տրդատայ կառուցեալ՝ հին Արեբանոս քաղաքի մօտ. (Տես Ալիշան Վ. Տեղ. 100. — Միրախորեան Հատ. Բ. 48–110։ — Խորենացի Բ ԼԴ)։

2. Ամենայն տպագիրք գնեն՝ Դենշապուհ, մոգպետն եւ Ջնիկանն եւ մոյպետն. Կոստանդնուպոլսոյ երկրորդը՝ Դենշապուհ, մոգպետն եւ Ջնիկանն եւ մովպետն։ Ոմանք ի գրչագրաց՝ Դենշապուհ եւ Ջնիկանն եւ մոյպետն կամ մովպետն. Բաղդատելով զԵղիշէ (Յ. Բ 45) ընդ Փարպեցւոյ, յայտ է թէ այդ ընթերցուածոցդ ամէնքն ալ սխալ են. երեք հոգի միայն պիտի ըլլան և ոչ չորս. Դենշապուհ, Մովան անդարձապետն և Ջնիկան մոյպետն։ Եւ որովհետև անդար-

կարաւանն արքունի [1] անցեալ գնասցէ. զի մի այլազգիքն եկեալ բառնայցեն զոսկերս դոցա, և բաշխեալ սփռեսցեն ընդ աշխարհս ամենայն, յոր և մարդիկ են տաւել յորդորեալ մոլորեցին զկնի նածարացւոց աղանդին։

94. Իսկ Խուժիկն, զոր յառաջագոյն ասացաք, զինու հանդերձ մնայր անդէն ընդ պահապանսն որպէս զմի ի նոցանէ, այր լի իմաստութեամբ, և կատարեալ աստուածային գիտութեամբ, սպասէր և դէտ ակն ունէր՝ եթէ որով օրինակաւ հնարս գտցէ զոսկերս սրբոյն գողանալ ի նոցանէ։

95. Եւ իբրև աւուրք երեք անցին ի վերայ, արհաւիրք մեծ անկանէին ի վերայ ամենեցուն, և իբրև թմբրեալ և կիսամեռք անյարիրք արկեալ դնէին զերիս աւուրսն։ Իսկ ի չորրորդումն աւուրն երկուք ի պահապանացն չարաչար ըմպեցան ի գինէ։ Դարձեալ հաստատակ գիշերաւ չափ՝ ձայնքն ահեղք հնչէին, և թնդիւնք և որոտաձայնք ի ներքուստ՝ որպէս դղրդումն գետնաշարժի. երկիրն դողայր ի ներքոյ նոցա, և շողիւնք սուսերաց փայլատակունս արձակէին շուրջ զնոքօք։ Եւ զամենեսեան զգլխակունս կանգնեալ տեսանէին, և զնոյն բանս ասենին ահագինս բարբառէին ի լսելս նոցա. մինչև խաճապել նոցա ընդ միմեանս, դեռ եւս զերեսս սատակէին։ Եւ այսպէս տագնապեալք և ցնորեալք մինչև այր զընկեր ի փախուստ չգիտէր ընդ որ երթայր։ Եւ եկեալ պատմէին մեծաւ զարմացմամբ զամենայն անցս չարչարանացն, զոր կրեցին։

96. Ի խորհուրդ մտին նախարարքն երկքեան, և սկսան զարմանալով ասել ցմիմեանս. Զի՞նչ գործեցաւք, զի՞նչ արարաք վասն ոսկերին աղանդոյն քրիստոնէից. քանզի մինչ դեռ կենդանի էին, զարմանալի էր կեանք նոցա, ընչատեացք էին իբրև զանկարօտս, սրբասէրք էին իբրև զանմարմինս, անաչառք էին իբրև զարդա-

ձայնող մօտակայ էր և փոխանորդ Մովսէսեան մովկեսի, որոյ կողմանէ ալ խրկուած էր, պարտ է ուղղել այսպէս. «Դինշապուհ և մօտակաւն և Ջնիկան մայլեան»։

1. Մինչև որ անցնի արքունի կարաւանը, այս է բանակը՝ որ Վ.ջազգեան են դառնալով Նիխշապուհ և անտի են ի Վ.րկան պիտի երթար. և յորում խիստ շատ քրիստոնեայք ալ կային։

բաղատս, աներկիւղք էին իբրև զանմահս: Եթէ զայս ամենայն ասեմք իբրև զոգւոյ և իբրև զյանդգնելոյ, իսկ զայն զի՞ ասիցեմք, զի ցաւոք ամենայն ի կարաւանի առ նոքօք առողջանան: Եւ կամ որ մեծս է քան զայդ ամենայն, ո՞ր ուրուք դի կանգնեալ երևեցաւ ի կենդանեաց կամ բարբառ բանից ոք լուաւ ի նմանէ:

97. Զի սուտ չեն մեր ապաստաւորքն. մեր մեղէն իսկ հասեալ է ի վերայ սուգութեան սոցա: Եւ եթէ կառեցեալ էր սոցա մարմնաւոր ինչ ապահովութիւն ի ներքս խառնել, սակաւ մի ակնարկէին քրիստոնէից ի կարաւանիս, զկշիռ իւրաքանչիւր մարմնոյ նոցա ոսկի առնուին: Դարձեալ և այրք, որ ի դիւէ չարչարեցան, զի յայնժամ ցաւոք չէին՝ և մեք դիտեմք, յայտ է եթէ այսօր նշանն մեծ երևեցաւ: Եթէ լուռ լինիմք, այսպէս մեզ և անձանց մերոց կասկած իսկ է. և եթէ տանիմք զդատ առաջի թագաւորին, լսելով նորա ի դոցանէ զայդ ամենայն մեծամեծ սքանչելիս, դուցէ և օրինացս մերոց քակտումն ինչ հասանիցէ:

98. Եւ պատասխանի մոգպետն[1] և ասէ ցնոսա. Ո՞չ զիս ստիկան արարին ի վերայ ձեր երկոցունցդ. զի՞ այդչափ նեղեալ տագնապիք յանձինս ձեր. դուք զգործ ձեր կատարեցէք, և հրամանն արքունի ի գլուխ տարայք: Արդ եթէ համբաւդ այդ յայտնեսցին, և հարցափորձ ինչ լինիցին առաջի արքային, այդ խնդիր մեր մոգաց է. դուք անհոգ լերուք, և մի ինչ ածէք զմտաւ: Եւ եթէ զարհուրեցայք ինչ յոգիս ձեր, վաղագոյն առաւօտուն ի դա՛րիթիւրէ եկայք. զի վաղիւ անդ մովպետան մովպետ ռատ յադէ[2], և նոյն հաճեալ հաւանեցուսցէ զմիտս ձեր:

1. Այս է մոգուց անդարձապետն. Տես Ց. Ը 93 ծն. 1. և Ց. Գ. 21 ծն, 1: — Որովհետև մոգերը պահանջեր էին քահանայից սպանումը՝ մովպետան մովպետին կողմանէ խրկուած էր անդարձապետն, որպէս զի եթէ քահանայք յանձն առնուն զմոգութիւնը, նա ընդունի նոցա դաւանանքը. միանգամայն և ականատես ըլլայ նոցա մահուանը եթէ դարձի չգան: Յերից նախարարաց՝ Դենշապհոյ և Ջնիկանի մասց երկրպայութիւն բերեր էր պահապանաց պատմածը, և սկսեր էին խորհիլ քրիստոնէութեան ճշմարտութեան վրայ. Տես փարպ. 310:

2. Թէոդոսիոյ սայ՝ ի գարիթիր. Մխի-

99. *Իսկ խուժիկն իբրև լուաւ զայս ամենայն, և գի-
տաց՝ եթէ փոյթ ինչ ոչ է նոցա յայնմհետէ սուրբ սպա-*

Թարգմանք 1828ի տպագրին մէջ ի դա-րիքիր և վերջնոյն մէջ ի դա՛րիքիւրև գնեն։ Իսկ յԱռձեռն Բառարանի՝ դա՛-րիքիւրև կամ տա՛րիքիւրև՝ գուան Օրի-նաց (տա՛ր-ի-թիւրէ), որպէս աւի պապ-ի-ֆէրվա Շէյխիւլիսլամի գրան։ Այս մեկ-նութիւնս կասկածելի կ՚երևի. — Նախ ձեռագրաց մէջ տա՛րիքիւրև ըլլալու չէ և ոչ իսկ, կարծեմք, դարիքիւրև, այլ դարիքիր, դարիքիւր կամ դարիքիւ։ Եր-կրորդ՝ բիւրա توره արդարև նշանակէ օրէնք. բայց Պիւրճա՛նի Գաթի այս բա-ռիս զանազան նշանակութիւնները տա-լէ յետոյ կը յաւելու. «Թիւըը լիսա-նըմըզ աուէթ վէ այյին մանաընա տըր, վէ Ճինկիզխանըն եպասա իթաիկի ըէսմ վէ ետասա տախի բիւրա տէնիւր. Մօղոլ թախթէսի պէյնինտէ Շէրիաթ տէրէճէսինտէ իթիպա էտէրլէր»։ Ու-րեմն այդ օտարոտի և վերջէն մտած բառդ չէր կրնար հինգերորդ դարուն մէջ մովպետան մովպետի դրան պաշտօնա-կան անունն ըլլալ։ Երրորդ՝ այն տեղին ուր կը հրաւիրուին շուարած Նախա-րարքն՝ պաշտօնարան կամ դատարան մի չէ, այլ կրակատուն կամ զոհարան, ուր Մոգպետաց մոգպետն պիտի յաղէ։ Ի պարսկերէն դարիւբիւր ژوژ «զաղջա-մուղջ», «խիտ մութ». է ևս դարի՝ تاری «խաւար». ածական՝ «մթին», որոյ բաղդատականը դարիբէր՝ «մթա-գոյն», «շատ մթին»։ «Առաւօտուց կանուխ ըսոց մուրճ եկայք», պէ՛տք է խմանալ արդեօք. այդ ալ գոհացուցիչ չըլլար. քանզի քիչ մը վերջը՝ անոր մակ-բայը անորոշ կը մնայ։ Կարծեմք թէ տառ ևս գրչագրի վրիպակ մի կայ և կարդալու է Դարիմիհր درمهر որ մա-զովրդեան ըերանը անշուշտ որպէս այժմ ի Փարսիս կը կրճատուէր ի Դարիմիր. վասն զի dari-Mihr «դուան կամ տա-ճար Միհրայ» կը կոչէին Պարսիկք մե-ծամեծ յաշտից յատկացեալ կրակատուն-ները. Le lieu du culte pour les grands sacrifices est le temple du feu ou *Dari-Mihr*, Porte ou Palais de Mi-thra. (Տես Darmesteter, Zend-A-vesta. հտ. Ա. էջ ծնթ)։ Մահմետակա-նութեան ժամանակ Թոթափեցաւ ա-նունդ ի պարսկերէն բառագրոց. և հայ գրչագիրք իրենց գիտցած պարսկերէնին մէջ սորա ամենէն մօտ բառը՝ դարի-բիւր՝ ընտրեցին. Տես Քրպիկար էջ 252 ծն. 1։

Մովպետան մովպետ՝ է Մոգպետաց Մոգպետ. գենպետին տիտղոսն էր, որ Օսմանեանց Շէյխ-իւլ-իսլամին պէս, Մեծ հազարապետին հաւասար իշխան մի էր։ Եղիշէ գենպետից՝ անունը չը-տար մեզ. ըստ Թապարիի՝ Միհրներ-սեհի անդրանիկ որդին՝ Զարուանդ՝ այր իմաստուն, մովպետան մովպետ եղած էր Վռամեայ վերջին ժամանակները. (Տես էջ 26)։ Իսա՛ արդի պարսկերէն է ա-ռատ, միանգամայն և բանիրուն, խե-լացի. առհասարակ կը կարծուի թէ ռատ յաղէ ըսել է՝ մեծ և առատ զոհ պիտի ընէ։ Այդ մեկնութիւնդ սխալ է։ Սասանեանց ժամանակի համօրէն Բահ-լաւի և Բազանտ գրոց մէջ՝ ռատ որ Աւեստայի ռադու բառն է, նշանակէ «տէր, գլուխ». և է անուն մովպե-տաց մովպետին կամ այժմեան Տաս-թուրի Տասթուրանին. երբեմն ռատ ռատ գործածուած է՝ իբրև գլուխ հոգևոր, տէր. և կը համապատասխանէ մեր «տէր, պատրիարք, եպիսկոպոս» բա-ռից, ռատի՝ տէրութիւն, պատրիարքու-թիւն. երբեմն ալ մովպետան մովպետ տիտղոսէն անմիջապէս վերջը կը դրուի, ինչպէս ատտանոր մեր հեղինակին մէջ. և յայնժամ նշանակէ «տէր գենպետ,

նեղոյն, փութացաւ վաղվաղակի էառ տուն մի, որոց զչափ գիտէր զքրիստոնէութեանն, և հասեալ ի տեղին՝ չէն եգիտ զամենեսեան: Եւ քանզի կապեալ ունէր տակաւին ի Նոցուն ի գահճացն, դարձեալ փոխեցին անտի զուրբսն յայլ տեղի բացագոյն իբրև երկու հրասախոք: Եւ իբրև յանհօգս եղեն, սրբեցին կազմեցին զակերս երանելեացն. բերին ի բանակն և ունէին ի ծածուկ. և տա սակաւ սակաւ յայտնեցին նախ զօրականին Հայոց, և ապա բազում՝ քրիստոնէիցն՝ որ էին ի կարաւանին: Եւ զառաջին պտուղ ընծային մատուցանէին կապեալ նախարարացն. և անդէն վաղվաղակի արձակեցան նոքա ի կապանաց խիբեանց[1]. և պատանդք մահուանն անցին զնոքօք. և հրովարտակք թողութեան առաքեցան յաշխարհն Հայոց:

100. Արդ այս երանելի խումբս, որ արժանի եղեւ ի ծածուկ պատուոյ լինել սրբոցն, որ ինչ ի մահուա-

տէր քահանայապետ»։ Տես Պ. Ուեսդի Pahlavi texts. էջ 115. 233)։ Պարտ է ուրեմն որոշել աստ ի բայէն. «Մովպետան մովպետ տատ՝ յազէ»։

Ըստ Մօնմէյ–Ուիլլիամսի աստ ... պատուանուանդ կը տրուէր եւ խորհրդականաց և բարձրաստիճան անձանց, որպէս և ի մեզ «տէր»։

Միջնադարեան գրութեանց մէջ որոշ կը տեսնուի թէ խոստովանանքը հարկաւոր պայման մի էր մեղաց քաւութեան։ Սայիտ–Տարտի մէջ՝ Ոգին իմաստութեան այսպէս կ'ըսէ. «Մեղաց քաւութեան համար կարեւոր է, որ մարդ մը կամովին (յամախանա) չմեղանչէ. և եթէ ոք գիտութեամբ կամ տկարութեամբ մեղք մը գործէ, պէտք է որ տատուրաց և բարի մարդոց (վեհից) առջև ապաշխարէ»։ (Տես գլ. ԾԲ. 16–19)։ — Ըստ Շայաստ–լա–Շայաստի, մեղք երկու տեսակ են. ա. համեմայան. բ. ռուպանիկ։ Առաջինքն ի վնաս բարի մարդոյ կամ անասնոյ եղած յանցանքն են. վնասակարն կ'ըլլայ յայնժամ համեմալ՝ այս է դատախող, որոյ պէտք է նախ հատուցումն տանել, որպէս զի խոստովանութիւնն առաջի մովպետաց (ռատ) կամ զղջումն կարենայ զմեղան բառնալ և հեռացնել ի մեղանչողէն։ Իսկ Ռուպանիկ այն մեղքն են, որ մեղաւորին հոգւոյն միայն կը վերաբերին ու կը վնասեն. ասոնց քաւութիւնը (բաղիդի) մի միայն քահանայապետաց՝ (ռատան) մեղքին մէջ ըլլալը խոստովանելով և առաջադրելով և անոր ամէն պատուիրածը կատարելով կ'ըլլայ։ Յայնժամ մեղքը կը զատուի ի հոգւոյ, և այնուհետև մարդուս ամենայն բարի գործքն (քիրփա) արդիւնաւոր կ'ըլլան. Տես Գլ. Ը։

1. Ոչ թէ ազատ թողութեան դառնալու յաշխարհն Հայոց. այլ այնուհետև անկաւ մնացին ու առաքեցան ի Հրև, այս է այժմեան Հերաթ քաղաքն Աֆղանաց (Հիրէվ կամ Հրև ըստ Պարսից. Հարյու ըստ Աւեստայի և Հարիւա ըստ բևեռագրոց), որպէս զի անդ ծառայեն պարսկական բանակին մէջ ընդդէմ Քուշանաց։

նէն և այսր տատցաւ դատակնիք վճռիս այսորիկ, նա երկրորդեաց մեզ[1] զամենայն կարգաւ. զչարաչար քարչումն, և զհարց և զփորձ դատաւորացն, և զիւրաքանչիւր անձանց ուրուցն զպատասխանիսն, և զկատարումն մահուան նոցա, և զահագին արհաւիրսն՝ որ ի վերայ պահապանացն անկաւ, և զհեծեծումն քննութեան նախարարացն երեցունց, և զամփոփումն սուրբ ոսկերաց նոցա. ոչ խառն ի խուռն ի մի վայր ժողովելով, այլ զմի մի ի նոցանէ ուրոյն ուրոյն ի վեց տապանս ժողովէր. և զանուանս իւրաքանչիւր ուսեալ և ի վերայ տապանացն նշանակեալ էր: Եւ զկապանսն երկաթիս ընդ իւրաքանչիւր ոսկերսն եդեալ էր, քանզի զահճացն ի բաց ընկեցեալ էր. որպէս և զհանդերձս զիւրաքանչիւր տապանի նշանակեալ էր[2]:

54 101. Եւ կատարեցան ապա վեցեքեան սուրբ և ցան-
5 կալի մահուամբ իւրեանց որ օր քսան և հինգ էր հրո-
տից ամսոյ[3], ի մեծ անապատին յԱպար աշխարհի ի
սահմանս Նիւշապուհ քաղաքի:

1. Եղիշէ խուժիկէն լսեր էր. բայց միթէ Եղիշէ Նիւշափու՞ր գնացեր էր կապեալ նախարարաց հետ, թէ խուժիկ Հայաստան եկեր էր վաճառականութեամբ։ Վերջին ենթադրութիւնս աւելի հաւանական է։ Փարպեցին Դենգեանց նահատակութեան հանգամանքը Արշարունեաց իշխանէն՝ յԱրշաւրէ անզեկացեր էր յետ դառնալոյ սորա ի Հայս, և Արշաւիր ալ խուժիկէն անդն ի անդօրն իմացեր էր. Փարպեցի 316։

2. Մխիթարեանց ՈՍՄՀԼ տպագրին ծանօթութեանց մէջ հետագայ դիտողութիւնը կը գտնենք. «հատուածդ՝ Եւ զկապանսն մինչև ի նշանակեալ էր, օտար թուի յԵղիշայի ոճոյ և եկամուտ ի ճառընտրաց»։

3. Ըստ ժամանակագրութեան զոր Մխիթարեանք տպած են Տումարին վերջը (1880), յամին անդ 454 ի 26 Յուլիսի։ Բայց ըստ Ալիշան վարդապետի դրութեան՝ պէտք էր ի 5 Օգոստոսի ըլլալ. Տես էջ 260 ծանօթ. 2։ Այս վերջի թուականս կը դնէ Պ. Լանկլուա։

## ԴԱՐՁԵԱԼ ՎԱՍՆ ԽՈՍՏՈՎԱՆՈՂ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՆՈՑՈՒՆՑ

102. *Իսկ աշակերտք երանելեացն ի կողմնս կային ի ներքս ի քաղաքին[1]. եկն դահճապետ մի արքունի և եհան զնոսա ի քաղաքէ անտի արտաքս:*

*Եհան ի նմին քաղաքէ տարեատանեայս քրիստոնեայս արս հինգ, քանզի և նոքա ի կողմնս էին փառն անուանն Քրիստոսի. եհարց զնոսա բանիւք, և ոչ հաւանեցան երկիր պագանել արեգական: Զարչարեաց զնոսա գանիւ, և նոքա եւս տուեալ ի նոյն միտս պնդեցան. կարեաց զնոցա ունչս և զականջս, և ետ տանել յԱսորեստան[2], զի կայցեն ի մշակութեան արքունի: Երթային մեծաւ յօժարութեամբ, իբրև այն՝ թէ մեծ պարգևս գտեալ ի թագաւորէն:*

103. *Արդ եկն դարձեալ նոյն դահճապետն առ աշակերտս սուրբ սպանելոյն, ընտրեաց երկուս ի նոցանէ որ համեստագոյնքն էին. առեալ մեկուսի յայլոցն և ասէ ցնոսա. «Զի՞նչ անուանք են ձեր»: Եւ պատասխանի միոյն և ասէ. «Առ ի ծնողաց ինձ Խորէն, և դմա Աբրահամ. իսկ ըստ շնորհատուր կարգին՝ ծառայք Քրիստոսի եմք, և աշակերտք երանելեացն՝ զոր սպանէք»:*

104. *Եւ պատասխանի դահճապետն և ասէ ցնոսա. «Իսկ արդ զի՞նչ գործ է ձեր, և կամ ընդ ո՞յր իսկ ածեալ է զձեզ այսր»: Առ այս ետ պատասխանի Աբրահամ և ասէ ցնոսա. «Զայդ ձեզ ի վարդապետաց մերոց արժան էր ուսանել. զի ոչ դուզնաքեայք ոք էին նոքա, այլ ունէին ստացուածս հայրենիս ըստ արժան բաւականին, ըստ նմին և ապաստուրս, էր որ իբրև զմեզ, և էր որ յաւագոյն քան զմեզ. որոց մնացեալ և ուսուցեալն էր, ընդ նոսա եմք եկեալ: Քանզի և պատուէր իսկ ունիմք յաստուածատուր օրինացն մերոց՝*

1. Այս է ի Նիւշապուհ:
2. Բազմաց գրութեանց մէջ Աստրիստան:

սիրել զնոսա իբրեւ զսուրբ ծնողս, եւ ապա տանել նոցա իբրեւ հոգեւոր տերանց »:

105. Ցասեաւ դաւհճապետն եւ ասէ. « Իբրեւ զանխրատ եւ զաներկիւղ ատամբակս խօսիս: Մինչդեռ ի խաղաղութեան եւ յաշխարհի էիք՝ բարիոք էր. յորժամ գրուահ[1] եղեն նոքա յիւրս արքունի եւ մահապարտ դատան ըստ գործոց իւրեանց, ձեզ չէր արժան ամենեւին մօտ երթալ առ նոսա: Ո՞չ տեսանէք ի մեծ կարաւանիս, յորժամ ոք ի պատուաւորացն ի դիպահւոյն արքունի լինիցի, ոգոյ հանդերձ ազանի, եւ զատեալ եւ որոշեալ ի բացէ նստի միայնիկ, եւ ամենեւին հուպ ոչ ոք իշխէ երթալ առ նոսա: Եւ դու այդպէս իբրեւ զանյանցի աշակերտ պարծելով խօսիս »:

106. Առ այս ետ պատասխանի Խորէն եւ ասէ. « Ոչ ձեր կարգդ անիրաւ է եւ ոչ մերս ստութեամբ. Նախարարն յանցաւոր՝ ուստի զպարգեւն գտեալ էր, այնպէս պարտ էր նմա հպատակ լինել, զի ի պատուոյն վերայ եւ այլ եւս պարգեւս մեծամեծս գտանէր ի նմանէ: Արդ փոխանակ զի զայն ոչ արար, ձախողակի յետս ընդդէմքն պատահեաց նմա: Եւ մեր վարդապետքն եթէ առ Աստուած յանցուցեալ էին, եւ կամ առ թագաւորն մեղուցեալ ինչ էին, նոյն օրինակ եւ մեք առ նոսա առնէաք. ոչ յաշխարհի մօտ երթայաք, եւ ոչ ի տար աշխարհ այսր զհետ նոցա գայաք: Արդ քանզի առ երկոսին կողմանն արդարութեամբ կեցեալ են, եւ դուք զուր տարապարտուց սպանէք զնոսա, մեք արդ եւ առաւել սպասաւորեմք սուրբ ոսկերաց նոցա »:

107. Ասէ ցնոսա դաւհճապետն. « Ես յառաջագոյն իսկ ասացի, եթէ կարի ատամբակ ոմն ես դու. ահա յայտ եղեւ առադիկ, եթէ յամենայն վնաս նոցա խառն էք դուք »: Աբրահամ ասէ. « Ցո՞ր վնաս »: Դաւհճապետն ասէ. « Առաջին ի մահ մոգուցն, ապա եւ յայլսն ամենայն »: Աբրահամ ասէ. « Այդ ոչ միայն ի մէնջ է, այլ

1. Գրուահ՝ քրէական յանցաւոր ըստ Աճառեան բառարանի. կարելի չեղաւ մեզ ստուգել այս բառիս ծագումը: Պօլսոյ երկրորդ տպագրին լուսաբանողը պարսկերէն բառ կը համարէ զայն. է մեքրուէ՝ քերիճ որ նմանին գրուահի, բայց սոքա արաբական են:

բառ կարգի և ձերոց օրինացդ. Թագաւորք ձեզ տան հրաման, և դուք ի ձեռն ձերոց սպասաւորացդ գործէք»:

108. Պահճապեան ասէ. «Ի Միհր աստուած երդուեալ իմ[1], խոստացայն ես խօսս քան զվարդապետսն քո. յայտ է եթէ վստահաբարագոյնք ես էք դուք: Արդ ոչ է հնար ձեզ ապրել ի մահուանէ, բայց եթէ երկիր պագանիցէք արեգական, և կատարիցէք զկամս օրինաց մերոց»:

109. Խորէն ասէ. «Յայժմ իբրև զմարդ չարախօսէիր, և արդ իբրև զշուն անպիտան ընդ վայր հաչես: Եթէ գոյր արեգական ականջք, դու տայիր նմա թշնամանս դնել. արդ նա բնութեամբ անզգայ է, և դու չարութեամբ անզգայագոյն քան զնա: Ցի՞մ տեսեր զմեզ պակասագոյն քան զհարսն մեր. մի բանիւք զփորձ առնուլ կամիս զմեր, այլ հանդէս արա քում չարութեանդ և մերում բարութեանս, և ամաչեցեալ դատնի հայրն քո սատանայ, ոչ միայն ի մէնջ՝ որ կատարելագոյնքս եմք, այլ և որ կարի փոքրիկն թուի քեզ, նա դիցէ վէրս սատակիս յոգիս և մարմինս քո»:

110. Զայս իբրև լուաւ Պահճապեան, սրտմտեալ բարկացաւ ի վերայ նոցա: Ետ քարշել չարագոյն քան զառաջինսն. և այնչափ սաստիկ քարշեցին, մինչև բազմաց կարծիք եղեն՝ թէ մեռան: Իսկ իբրև ժամք երեք ի վերայ անցին, դարձեալ խօսել սկսան երկոքեանն և ասեն. «Փոքր համարիմք զանարգանս զայս և առ ոչինչ զցաւս մարմնոյս առ մեծ սէրն Աստուծոյ, որով կատարեցան հարքն մեր հոգևորք: Հապա, մի դլար և մի դադարեր, այլ զոր ինչ առ նոսայն արարեր, զնոյն և առ մեզ կատարեա: Եթէ չարագոյն թուին քեզ գործք նոցա, կրկին և զմերս համարեսջիր. զի նոքա բանիւ հրամայէին, և մեք գործովք զարդիւնն կատարէաք»:

111. Յայնժամ ևս առաւել զայրացեալ ի վերայ նոցա, և հրամայեաց զմահու զան[2] հարկանել: Եւ առ

1. Տես Միհր եաշդ էջ 120–121. և Յ. Բ. 66.

2. Մահու զանը՝ ծեծելով մեռցնել չէր. այլ կիսամեռ ձգելու չափ ծեծ մը. որովհետև այդպայն՝ սպանանել հրամայած չէր։

մի մի ի նոցանէ փոխեցաւ վեց վեց այր ի գահճացն: Եւ մինչ դեռ կիսամեռք յերկիր անկեալ դնէին, հրամայեաց զերկոցունց ականջսն մօտ կարել: Եւ այնպէս բրեցին, որպէս թէ չիցէ լեալ ի տեղւոջն:

112. Զարթեան որպէս ի քնոյ ի սաստիկ հարուածոյն, սկսան աղաչել պաղատանօք մնացեալքն, և ասեն. «Աղաչեմք զքեզ, քաջ զինուոր Թագաւորին, կամ կատարեա զմեզ իբրև զհարսն մեր մահուամբ, և կամ արա զպատուհաս ըստ օրինակի վերջնոցս: Զի ահա լսելիք մեր ապաշխարութեան զանխաւարութիւն երկնաւոր, իսկ հոտոտելիքս դեռ ես ստէն ի տեղւոջ կան յանցս չարչարանաց. մի կիսապարգև առներ զմեզ յերկնից բարութենէն: Սրբեցեր զմարմինս մեր քարշելով և զլսելիս մեր կարելով, սրբեա և զռնգունս մեր հատանելով: Քանզի որչափ պակաս առնես զմեզ երկրաւորաւս, գեղեցկագոյնս առնես զմեզ երկնաւորաւն»:

113. Եւ պատասխանի հեղութեամբ գահճապետն և ասէ. «Եթէ և այլ յամեմ ես առ ձեզ մօտ կալով, կարծեմ՝ եթէ և աշակերտէք զիս ի ձեր յամառութիւնդ: Զի ահա արդ և զխորհուրդս արքունի ի վեր հանեմ ձեզ: Ցայդ վայր եղև հրաման պատուհասից ձերոց, և ի վերայ գործոյ պատուհասի երթալ ձեզ յԱսորեստան, և լինել ձեզ մշակ յարքունիս. զի որ ընդ ձեզ հայեսցի, մի ի զմին յամառութեան մնդեսցի ընդդէմ հրամանաց թագաւորին»:

114. Ասեն ցնա երանելիքն. «Դու զմեր երկիրս կիսագործ թողեր, մեք յարքունի երկիրն կէս մարմնովք մերովք ոչ վատնեմք»: Իբրև զայս լուաւ գահճապետն, աղաչեաց զզինուորսն՝ որ ածէին զնոսա, և ասէ. «Միայն սատ դուք առէք գնացէք, և հասեալ յԱսորեստան՝ ուր կամ՝ իւրեանց է և շրջեսցին»:

115. Այս են Հայոց խոստովանողք, որ զխեղութիւնն և զչարչարանս խնդութեամբ ընկալան յանձինս իւրեանց: Եւ վասն զի վրիպեցին ի սուրբ մահուանէն, սգով և տրտմութեամբ երթային զերկայնութիւն ճանապարհին: Ոչ ծանր թուէին նոցա կապանք ոտիցն և ձեռացն, իբրև զայն՝ թէ ընդէ՞ր ոչ եղաք արժանի հասանել ընդ քաջ նահատակսն:

116. Եւ իբրեւ տարան հասուցին զնոսա յերկիրն Բաբելացւոց, ի գաւառ մի զոր Շահուզն[1] անուանեն, թէպէտ և էին յարքունի պատուհասին, սակայն և յայտ և գաղտ մեծապէս ընկալեալ եղեն ի բնակչաց աշխարհին: Սակայն երանելիքն և յայնմ յոյժ տրտմագին էին, իբր այն՝ եթէ սակաւ վաստակեցաք և մեծապէս հանգչիմք. և հանապազ ի նմին զղջման կային:

117. Եւ անդէն թեակոխէին տեսանել զսուրբ կապանան նախարարացն[2], լինել սպասաւոր մարմնաւոր պիտոյից նոցա: Խնդացին զայս մեծամեծաց աշխարհին, որք էին ի նմին սուրբ ուխտի քրիստոնէութեանն: Եւ հաւանեալ ամենեցուն մեծամեծաց և փոքունց՝ ազդ առնել ամենայն երկրի, զի հաճոյ թուեսցի ամենեցուն՝ ի ձեռն մարմնաւոր պիտոյիցն կցորդ լինել սուրբ կապելոյն ի հեռաւոր օտարութեանն:

118. Եւ այսպէս ամ յամէ ժողովէին ըստ իւրաքանչիւր կարի մարդկանն, ոմն սակաւ և ոմն շատ, որպէս զինչ և ի ձեռս պատրաստութիւն լինէր, եթէ դրամոց և եթէ դահեկանաց[3], ժողովէին կազմէին տային յերանելիսն՝ տանել նոցա: Եւ այսպէս յարբանեկութեան կային, մինչև տասն ամն[4] լցաւ սպասաւորութեանն:

1. Փարպեցին կը գրէ Շահուլ. է Շահուր կամ Շահբուր ի Պարսս, յարեւելից Շիրազայ, ուր գտնուեցաւ աւերակք արքունի ապարանից: Է և Շէյուխ քաղաք կամ Սուզ Շէյուխ յաջակողմն Եփրատայ, ի հարաւոյ նախկին Բաբելոնի:

2. Կապանք ըսելով կ'իմանայ ոչ միայն նախարարաց բանդարգելութիւնը, այլ և զբանի ծառայութիւն նոցին ի բանակին՝ որ ի Հրեւ:

3. Մեր նախնիք դահեկան և դրամ շատ անգամ անխտիր գործածած են (Տես էջ 217 ծանօթ. 2) թէպէտ ի սկզբան տարբեր ստակներու յատկացեալ անուններ են: Եղիշէ սա կը թուի զանազանել: Դրամ կամ պարսկերէն տիրհամ է. Ա. չափ կշռոյ՝ որ գրեթէ հաւասար է արդի Տաճկաստանի տիրհէմի. ըստ Շիրակացւոյ (Է դար) դրամ է 6 դանգ և դանգն՝ 12 գարի: Բ. դրամ արծաթի նովին կշռով. այս է 65–70 հարիւրորդք ֆրանքի, կամ շուրջ 115 փարա օսմանեան: — Դահեկան՝ ստանոր իբրեւ պարսկերէն տահկան دهکن գործածած կ'երեւի, որ ոսկի դրամի մը անունն էր. և որպէս Պարսիկք առեն տիրհէմ ու տինար և իմանան «դրամ արծաթի և ոսկի», Եղիշէ ալ «Եթէ դրամոց և եթէ դահեկանաց» ըսելով կը հասկնայ արծաթ եւ ոսկի ստակ: Իսկ տինար մէկ ու կէս տիրհէմ կշռող ոսկի դրամ մի էր, այս է 15 ֆրանք:

4. Տասն ամ՝ մինչև ց464. եթէ Ղեւոնդեանց նահատակութենէն անմիջապէս ետքը աքսորուեցան:

119. Եւ վասն զի յոյժ խստագոյնս պահէին ի ջերմոյ աշխարհին, և անդադար էին ի ճանապարհորդութեանն ընդ նոյն Շահուղ, ընդ Մեշոնի[1] և ընդ Քաշկար և ընդ ամենայն Ասորեստան և Խուժաստան, տաժիկ տապով հարեալ ի խորշակէ մեռանէր սուրբն Խորէն, և աւանդեալ լինէր ի բնակչաց աշխարհին ընդ սուրբ վկայսն:

120. Իսկ երանելին Աբրահամ կայր ի նմին առաքինութեան անդադար. և զամենայն սուրս հաւատացելոցն չրջէր ժողովէր և տանէր ի մեծ հեռաստանն, և ինքն մատակարարէր ըստ իւրաքանչիւր կարօտութեան: Եւ այնպէս յերկարեցաւ մինչև յերկոտասներորդ ամն պատժուրայն[2], մինչև աղաչել զնա մարան ամենեցուն, զի հաւանեսցի երթալ յաշխարհն Հայոց. զի ընդ մտանել նորա առ նոսա ի նմա տեսցեն և զքաջ նահատակսն՝ որք կատարեցան սրով, ի նմա տեսցեն և զսուրբ կապանս չարչարանացն:

1. Մեշոնի է աշխարհ փոքր ի Պարսս ըստ աշխարհագրութեան Խորենացւոյ. ԼԸ. միանգամայն և մայրաքաղաք այդ աշխարհին: Ըստ Յոյն և Հռովմայեցի պատմագրաց է Mésène անուն նահանգին. իսկ քաղաքն կոչէր Charax, որ լծորդ կամ աղաւաղեալն թուի արամական քարաք և հայերէն «քաղաք» բառի: Սասանեանց օրերը կը կոչուէր Քարաք-Մէյշան, այս է «քաղաքն Մեշան» կամ սոսկ «Մէշօն», որպէս գնի ի Թալմուտ: Ապուլֆէտա եւս կը յիշատակէ երկուս աւանս ի մերձակայս Պասրայի՝ ميسان և مرش: Այժմ Շաթ էլ Արապի մասերը գտնուող Մանդէացիք՝ Մեշոնի հին արամական բնակչաց սերունդքն են: Տես Le Muséon որ հրատարակի ի Լուվէն՝ Ապրիլ 1890. և Սէն-Մարթենի Géographie et Hist. de la Mésène et de la Characène: Է այժմ Մէշուր յեզր Պարսկային ծոցոյ: — Քաշկար. «Եղիմացիք որ կոչին Քուստիկք Խուժաստան, յելից կալով Դկղաթայ և ի մտից Պարսից. և ունին Եղիմացիքն աշխարհս փոքունս գաւառիկ. զԽուժաստան, զՄիհրան, զՄայսողան, զՔրտակ, զՔաշքար, զՇիրական և այլն» Աշխարհ. Խորենացւոյ ԼԷ: Ըստ իս Քաշքարս այս չէ քաղաքն Թուրքստանի, որ ճամբէ դուրս է և յոյժ հեռի: Մասուտի այլ ասէ. «Իմ յիշատակարանացս մէջ բացատրեցի թէ ինչ պատճառներով Խոսրով Ապրուէզի ժամանակները Տիգրիս գետը փոխեց իւր ընթացքը մինչ ի հնուց հետէ Ճէրխայ քովէն կ'անցնէր. այս փոփոխմամբ ողողեց զվիճակն Թարթուր, որ Քաշքարայ գաւառին մէջ կ'իյնայ, և մի քանի օրուան ճանապարհաւ վայրեր ի ճահիճ դարձուց ընդ մէջ Պասիթայ և Պասրայի, որ երբեմն Սօվատայ (այս է Իրաքայ) պատուականագոյն մասն էին և որոց բնակիչքն լաւագոյն էին քան զայլոց գաւառաց աշխարհին» Հատ. 9. 318, 320:

2. Այս է նախարարաց որք դարձան յերկիրն իւրեանց 463ին: Սոքա աղաչեցին զԱբրահամ երթալ ի Հայս:

121. Եւ յորժամ մարտիրոսք և խոստովանողք և կուսանք նովաւ տեսանին, նովաւ օրհնի աշխարհն ամենայն, նովաւ օրհնին և այլք նոցա յաճումն, նովաւ զգաստանան երիտասարդք նոցա ի սրբութիւն, նովաւ համեստանան ծերք նոցա յխնամութիւն: Նովաւ ուսանին իշխանքն նոցա զմարդասիրութիւն, նովաւ անկանի զուժ յԱստուծոյ ի սիրտ թագաւորին՝ չփիել և խաղաղութիւն առնել բոլոր աշխարհին: Նովաւ եկեղեցւքն պարծին իբրև քաջ և կատարեալ զինուորաւ, նովաւ վկայարանքն զարդարին, նովաւ և վկայքն ցնծացեալ բերկրին: Նովաւ և դաշտն Աւարայրի պայծառացեալ ծաղկալից լինի, ոչ յանձրևաբեր ամպոց, այլ ի սուրբ և յարինաբուխ վկայից ցանեալ և ցրուեալք աղխակութիւնք սուրբ ոսկերացն: Յորժամ կոխեսցեն անձնավստահ ոտք խոստովանողին զպյնտատարած անգիս պատերազմին, յորժամ կենդանի մարտիրոս ընդնա շրջեսցի, կենդանի առ կենդանիս երթեալ՝ ամենայն աշխարհին կրկին լինի կենդանութիւնն:

122. «Գիտեմք, տեառն, յորժամ տեսցեն զատ ամենայն միայնակեացք աշխարհին Հայոց, նովաւ յիշեսցեն զհօգևոր զունդս պատերազմողացն, որ փախանակ մեր, տեառն, եստուն զանձինս ի մահ. և հեղին զարիւնս իւրեանց ի հաչտութիւն պատարագ Աստուծոյ: Սովաւ յիշին սուրբ քահանայքն, որք խողխողեցան յօտարութեանս և ցածուցին զպատմութիւն բարկութեան թագաւորին: Սովաւ թերևս զի և զմեր կապանս յիշեսցեն, և աղօթս առնելով խնդրեսցեն յԱստուծոյ զի զերեզարձ լիցի մեր անդրէն ի հայրենի երկիրն մեր:

123. «Քանզի յոյժ անձկացեալ եմք՝ ոչ միայն բառ մարմնոյ կարօտութեան, այլ աւանել տեսանել զսուրբ եկեղեցիսն մեր և զսրբազէր պաշտօնեայսն սեր, զոր ի նմա կարգեալ հաստատեցաք: Եւ եթէ միասին [1] յաջողեսցէ սեզ Աստուած երթալ և ինալ զկարօտութիւն մեոցելոցն, գիտեմք զի և մեզ բանալ Աստուած զդուռն ո-

1. Միասին՝ մակբայաբար գործածուած՝ միա եա, միանգամ. այս ձևս բառագրոց մէջ չգտանք. Եղիշեայ նախարարաց բերանը դրած խօսքերը գրեթէ ամենէն գեղեցիկ հատուածներէն մէկն է:

զորմութեան Իւրոյ՝ ընդ նոյն ճանապարհ երթալ, ընդ որ ոտք սրբոյս կարապետեն»:

124. Զայս խորհուրդ խորհելով աստուածաշնորհ նախարարացն, մեծաւ թախանձանօք ածէին զխոստովանողն ի հաւանութիւն: Եւ վասն զի ոչ էր սովորութիւն երբեք բարուոյն ընդդէմ դառնալ, ըստ առաջին սովորութեան և յայսմ վայրի փութացաւ վաղվաղակի կատարել զհրամանն զմխիթարն հաւանեցելոցն յաստուածային առաքինութիւնն: Եկն եմուտ յաշխարհն Հայոց:

125. Փութացան և ելին ընդ առաջ նորա վաղվաղակի արք և կանայք, մեծամեծք և փոքունք, և ամենայն բազմութիւն ազատաց և շինականաց: Անկանէին առաջի, փարէին զոտիւք և զձեռօք սրբոյն, և ասէին. «Օրհնեալ Տէր Աստուած ի բարձունս, որ առաքեաց մեզ հրեշտակ յերկնից՝ բերել մեզ աւետիս յարութեան, զի լինիցիմք ժառանգք արքայութեան: Զի ահա ի քեզ կերպարանեալ տեսանեմք զամենեսեան զհրաժարեալն յուսով յարութեամբ, և զկապեալն անկապութեամբ արձակեալ: Ի քեզ տեսանեմք և զաշխարհին շինութիւն խաղաղութեան. քև եկեղեցիքն մեր ցնծացեալ բերկրին, և քև սուրբ վկայքն մեր անդադար լիցին մեզ ի բարեխօսութիւն առ Աստուած: Օրհնեա զմեզ, սուրբ Հայր մեր. դու ես բերան հանդուցելոցն, խօսեաց ընդ մեզ յայտնի օրհնութեամբ, զի յոգիս մեր լուիցուք ի ծածուկ զօրհնութիւնս սրբոցն:

126. «Հորդեցեր ճանապարհ այնոցիկ՝ որ անձկացեալ էին գալ յերկիր իւրեանց, խնդրեա յԱստուծոյ՝ զի առէպ եկեսցեն զհետ սուրբ կարապետին: Եւ որպէս հորդեցեր զարդելեալ ճանապարհ երկրի, բաց և յերկինս զդուռն աղօթից մերոց. զի և մեր մեղաւորաց մնասցեն պաղատանք առաջի Աստուծոյ ի բարեխօսութիւն նոցին կապելոց. և մինչ դեռ եմք յերանելի մարմնիս, որպէս տեսաք զքո զերանելի սրբութիւնդ, տեսցուք և զփրկելի անձկալին մեր, որ ի բազում ժամանակաց հարեալ և պաշարեալ եմք յոգիս և մարմնիս մեր: Արդ հաստատեմք յանուս յայն, զի որպէս լցեալ կատարեցաւ ի քեզ տեսիլս ի սուրբ սէր քո, այսպէս և ընդ մեալ ունիմք տեսանել զճշմարիտ վկայն Քրիստոսի, որ

հանապազ խանդակաթ եմք ի տեսիլս երկնաւոր գեղոյ նորա :

127. Բայց երանելի խոստովանողն, թէպէտ և այսպէս սիրով ընկալեալ եղև յամենայն աշխարհէն, ոչ ինչ կամեցաւ ամենևին մերձենալ առ որ ըստ մարմնոյ կարօտութեան. այլ ընտրեաց իւր տեղի[1] մի զատ յամենայն բազմամբոխ ժողովրդոց, և առաքինի եղբարբք երիւք կատարեաց զկեանս իւր մեծաւ ճգնութեամբ:

128. Զոր եթէ կամիցի ոք ի կարգ արկանել, դժուարաւ կարասցէ առնել զմարս առաքինութեան նորա: Զի եթէ զարթնութիւնն առիցես, իբրև զկանթեղ անշէջ կայր զամենայն գիշերս. և եթէ զսակաւապիտութիւն կերակրոյն, համարեալ՝ եթէ զանկերակուր հրեշտակացն բերէր զնմանութիւն: Եթէ զհեզութիւն ցածութեանն կամիցիս առնել, ոչ զոք ի կենդանեաց կարիցես գտանել նման նմա. և եթէ զանընչասիրութիւնն կամիցիս առնել, դարձեալ զոր օրինակ չպատրի մեռեալ ի կարասի, զնոյն օրինակ ճշմարտութեամբ և առ երանելին իմասջիր:

129. Անյագական ձայնիւ հանապազօրդեալ էր ի պաշտաման, և անհատ աղօթիւք միշտ ընդ Աստուծոյ ի բարձունս խօսէր: Աղ եղև նա անհամելոց, և խթան ընդոստուցիչ ամենայն հեզգացելոց: Դարովեցաւ նովաւ ագահութիւն, և կարի յոյժ ամաչեաց նովաւ չուայտութիւն որկորամոլութեան: Առողջութիւն եղև նա աշխարհիս Հայոց, և բազում վիրաւորք ի ծածուկ նովաւ գտին զառողջութիւն: Եղև նա վարդապետ կատարեալ վարդապետաց իւրոց, և սուրբ հայր խրատու հարանց իւրոց: Ի լուր համբաւոյ նորա իմաստնացան տգէտք, և ի տեսիլ մերձաւորութեան նորա զգաստացան լկտիք: Բնակեալ էր ըստ մարմնոյ ի նեղ խցկանն, և ահ սրբութեան նորա անկեալ էր զհեռաւորօք և զմերձաւորօք:

1. Հայոց Ձորոյ կամ Երուանդունեաց գաւառին մէջ ի Խօշապ գետոյ ժամու չափ հեռի՝ անմարդաբնակ ձոր մը ընտրած էր. ուրանոր մահուանէն ետքը ի ստորոտ լերանց մենաստան մը շինուեցաւ հանդերձ տաճարաւ, որ կանգուն կայ տակաւին թէպէտ ամայի. անդ ամփոփեալ մնան Աբրահամու և իւր ընկերաց մարմինքը. և տարին միանգամ Համբարձման տօնին, ուխտաւորք կ'երթան ի մենաստանն՝ որ ժամաչափ հեռի է ի Խէքոյ վանուց (Միրախորեան. հատ., Ա. էջ 165).

Զարհուրեցան դևք և փախեան ի նմանէ, իջին հրեշ-տակք և բանակեալ էին զնովաւ։

130. Ցոյնք երանի ետուն վասն նորա աշխարհիս Հայոց, և բազում բարբարոսք փութացան տեսանել զնա մարմնով։ Սիրելի եղեւ նա սիրելեացն Աստուծոյ և ըզ-բազումս ի թշնամեաց ճշմարտութեանն ած ի հաւանու-թիւն սուրբ սիրոյ։ Սկիզբն արար առաքինութեան ան-դստին ի տղայ տիոց իւրոց, և նովին առաքինութեամբ կատարեցաւ ի վախճան կենաց իւրոց։ Որպէս ոչ խառ-նեցաւ ի կարգս սուրբ ամուսնութեան աշխարհիս, այս-պէս չեմուտ ընդ մարմնաւոր պիտոյիւք ամենայն ապա-կանացու իրաց աշխարհիս։ Եւ եթէ պարտ է պարզա-բար ասել, որպէս փոխանակեաց զպէտս մարմնոյ ընդ պիտանացու հոգևոր իրաց, այսպէս փոխադրեալ եղև յերկրէ ի յերկինս։



### ԱՆՈՒԱՆՔ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ,

### ՈՐՔ ԿԱՄՕՔ ՅՕԺԱՐՈՒԹԵԱՄԲ ՎԱՍՆ ՍԻՐՈՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ

### ԵՏՈՒՆ ԶԱՆՁԻՆՍ Ի ԿԱՊԱՆՍ ԱՐՔՈՒՆԻ

131. *Յազգէն Սիւնեաց երկու եղբարք Բարգէն և Բակուր, յազգէն Արծրունեաց Ներշապուհ և Շաւասպ և Շնգին և Մեհրուժան և Պարգև և Տաճատ, յազգէն Մամիկոնէից Համազասպեան և Համազասպ և Արտաւազդ և Մուշեղ, յազգէն կամսարականաց Արշաւիր և Թաթուլ* [1], *Վարձ* [2], *Ներսեհ և Աշոտ, յազգէն Ամատունեաց Վահան և Առանձար և Առնակ, յազգէն Գնունեաց Ատոմ, յազգէն Դիմաքսենից Թաթուլ և Սատոյ, երկու ևս այլովք ընկերօք. յազգէն Անձաւացեաց Շմաւոն և Զուարէն* [3] *և Առաւան, յազգէն Առաւեղենից* [4] *փառակ և Վարազդէն և Գադ* [5]. *յԱրծրունեաց տոհմէն Ապրսամ, ի տոհմէն Մանդակունեաց Սահակ* [6] *և Փարսման, յազգէն Տաշրացեաց Վրէն, յԽախանեան տանէն* [7] *Բաբիկ և Յուխնան:*

132. *Այս երեսուն և հինգ արք* [8], *են որ յաւագ նախարարացն, և են որ ի կրսերագունիցն, սակայն ամենեքեան ըստ մարմնոյ են նախարարազունք, իսկ ըստ հոգևոր ազատութեանն ամենեքեան երկնային քաղաքացիք: Եւ բազում ևս այլ ազատ մարդիկ, են որ յարքունի տանէ, և են որ ի տանէ նախարարացն իսկ նոցուն, նիզակակիցք և մարտակիցք քաջ նահատակացն:*

1. փարպեցին կը գրէ Թաթ։
2. Վարժ. փարպեցին՝ Վարժայ. և չյիշեր զՆերսեհ և զԱշոտ։ Այսու հին պարսկ. է անդրադ, որ չքաղցիր։
3. Զուարէն չկայ ի փարպեցի։
4. փարպեցին՝ «յազգէն առաջին Առաւեղենից»։
5. փարպ. Գատ. Նոյնպէս և Թէոդոսիոյ տպագիրն։
6. փարպեցին չյիշեր զՍահակ։
7. փարպեցին՝ «յազգէն Խոփանենից Բաբիկ և Յոհան»։ Սահակայ գահնամակին մէջ «Խոփանեանն» որ փարպեցւոյ համաձայն է։ Խորենայ գահնամակին մէջ «Առփանունիք»։
8. Երեսուն և հինգ արք յանուանէ յիշեալքն. փարպեցին միայն 31 արս կը յիշէ։

Եւ ամենեքին ոգւք կամօք մատնեցան ի սուրբ կապանս չարչարանացն։

133. Այլ մեք առ այժմ ոչ ընդ այս եմք զարմացեալ միայն, զի կամօք չոգան մահն ի փորձութիւնն, այլ առաւել ընդ այն եմք սքանչացեալ, զի մարդիկ փափուկ իբրև զնուշ՝ ընդարձակատուն բնակիչք ճխնեղէն լերանց՝ եղեն բնակիչք խորշակաբեր դաշտաց։ Որ զօրէն ազատ էրէոց շրջէին ի մէջ ծաղկաբեր լերանց, ընկեցան ի բոցակէզ աշխարհն արևելից կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք[1]։ Հաց նեղութեան և ջուր կարօտանաց, խաւարարգել ի տուէ և անլոյս ի գիշերի, անվերարկուք և անանկողինք, գազանաբար գետնախշտիկք լինէին զինն ամ և զվեց ամիս[2]։ Եւ այնպէս մեծաւ խնդութեամբ տանէին զնեղութիւնն, զի ամենևին ոչ ոք տրտունջ հայհոյութեան ի բերանոյ նոցա լուաւ. այլ յորդառատ գոհացողութիւն ըստ նմանութեան բարեկեցիկ մարդկան, որ են յաստուածպաշտութեան։

134. Եւ մինչ դեռ էին յայնպիսի նեղութեան, կարծիք եղեն ի միտս թագաւորին՝ թէ առ յոյժ վշտին ձանձրացեալ են դառնութեան կենօքն իւրեանց։ Յղեաց առ նոսա զմեծ հազարապետն և ասէ. «Գոնեայ յայսմ հետէ զգաստացայք յանձինս ձեր, և մի կայք ի նոյն յամառութեան. պագէք երկիր արեգական, և արձակիք ի չարաչար կապանացդ, և ունիք անդրէն զիւրաքանչիւր հայրենի կեանս ձեր»։

135. Ետուն պատասխանի երանելիքն և ասեն. «Ափո՞րձ ինչ եկեալ հարցանես զմեզ, եթէ արդարև թագաւորն իսկ յղեաց զքեզ»։ Երդուաւ հազարապետն և ասէ. «Ձի՞ք այդր բան ուրիշ կամ պակաս՝ որ ոչ ի բերանոյ նորա եղեալ է»։ Ասեն ցնա անդրէն։ «Որք

1. Նախարարք նախ ի Տիզբոն բանտարկեցան. ապա ի Վրկան և քանի մը տարի ալ ի Նիւշապուհ։ Խորասանի կլիման՝ դիրքը բարձրութեան պատճառաւ՝ զով է և քաջառողջ. խորշակաբեր և բոցակէզ սորա չյարմարիր. բայց Տիզբոնի և Վրկանայ համար ճիշդ են։

2. Նախարարք ի կապանս մնացին 451ի վերջերը կամ 452ի սկիզբները և դարձան ի Հայս 463-464. ուրեմն շուրջ 12 տարի մնացին յաքսոր։ — Այդ ինն ու կէս տարին կապեալ եղած միջոցնին է՝ որ կը լմննայ 460ին. այս է Յազկերտի մահուանէն երկու երեք տարի առաջ. մնացած երեք տարին պարսկական այրուձիոյն մէջ ծառայեցին ի Հրև։

միանգամ աշակերտեալ են ճշմարտութեանն, ոչ երբեք փոխին ի նմանէ. այլ որ ենն՝ նոյն կան: Միթէ յայնժամ առ չիմանալ ինչ պնդեցաք, և այսօր նեղութիւնս իմաստնացոյց ինչ զմեզ. այլ ոչ այնպէս: Այլ զղջումն մնաց մերոց այս է. եթէ ընդէ՞ր ընդ առաջինն չկատարեցաք զկեանս մեր: Բայց արդ աղաչեմք զքեզ և քեւ զթագաւորն ձեր, մի այլ վասն այդպիսի իրաց հարցանէք զմեզ. այլ զինչ եդեալ է ի մտի ձերում վասն մեր՝ կատարեցէք»:

136. Իբրև լուաւ զայս մեծ հազարապետն, յոյժ զովեաց ի միտս իւր զպնդութիւն հաստատութեան նոցա. և յայնմ հետէ սկսաւ արկանել սէր ընդ նոսա՝ իբրև ընդ սիրելիս Աստուծոյ: Եւ բազում բանիւք ողոքանօք ածէր զթագաւորն ի հաւանութիւն, զի թողութիւն արասցէ նոցա ի կապանացն իւրեանց: Զի թէպէտ և փոխեցաւ նա ի գործոյ հազարապետութեանն արքունի, և ի բազում իրս գտաւ փաստակար, ինքն իսկ յանձն իւր կրթէր զաւեր աշխարհին Հայոց, վասն որոյ և մեծաւ անարգանօք յուղարկեցաւ ի տուն իւր, սակայն զկապելոցն ոչ երբեք չարախօս կամէր լինել մինչև ցօր վախճանի կենաց իւրոց:

137. Իսկ յերանելեացն բազումք, ի նոցանէ՝ որ մանկագոյնքն էին, ուսան զդպրութիւն հայրենի աշխարհին իւրեանց, և եղեւ նոցա այն կերակուր հոգևոր, որով զանձինս քաջալերէին և զընկերսն մխիթարէին: Եւ այնպէս զմայլեցան ի միտս և յոգիս իւրեանց, զի և որ ծերագոյնքն էին ի նոցանէ, փափկացան մատաղացան մանկացան: Զի թէպէտ և դպրութեան ժամանակքն անցեալ էին, սակայն բազում սաղմոս ի բերան առեալ՝ հոգևոր երգակից լինէին մատաղերամ բազմութեան մանկտւոյն:

138. Եւ այնպէս բարձրացուցանէին զպաշտօնն սրբութեան, մինչև ոմանք ի դառն դահճացն, մեծապէս քաղցրութիւն անկանէր ընդ լսելիս նոցա, և որչափ ի ձեռս իւրեանց էր՝ արտաքոյ արքունի հրամանին դիւրութիւն առնէին նոցա. և սէր խնամոյ ունէին առ ամենեսեան, և բազում անգամ զմարմնաւոր պէտս նոցա լնուին նոքա: Մանաւանդ զի նշանք եւս բժշկութեան յԱստուծոյ

յաջողեալ լինէր ի ձեռս նոցա, որպէս զի բազումք ի գիւահարաց սրբեցան ի նմին քաղաքի ուր կայեալքն կային: Իբրև ոչ ոք գոյր առ նոսա քահանայ[1], գիմէին առ նոսա հիւանդք և ախտաժետք քաղաքին, և ընդունէին ի նոցանէ զիւրաքանչիւր ցաւոց զառողջութիւն:

139. Նա և որ մեծ իշխանն էր աշխարհին[2], զոր և Հարեւշղոմ Շապուհ անուանէին, և նմա իսկ յանձն էին ամենայն պատժաւորքն, մեծապէս գութ սիրոյ էարկ առ ամենեսեան: Զծերս ի նոցանէ առ հարս ունէր, և զմանկագոյնս ի նոցանէ իբրև զսիրելի որդիս գգուէր: Բազում անգամ գրեաց և եցոյց յարքունիս զվիշտ նեղու-

1. Մթին կամ պակաս թուի պարբերութիւնը· փարպեցին կ'ըսէ· «շնորհելով աջոյ Բարձրելոյն բազում և ազգի ազգի բժշկութիւնս ախտաժետաց ի ներխարաց սրբոցն, զոր ունէին քահանայքն՝ որ առ նոսա էին՝ գաղտ առ Ինքեանս»:

2. Այդ աշխարհդ Հրեն է· ՍԷն-Մարթէն կարծէ թէ օրինակը աղաւաղեալ է սա և պէտք էր ըլլալ՝ «Նա և որ մեծ իշխանն էր Հրե աշխարհին, զոր և Շղոմշապուհ անուանէին»: փարպեցին ունէ· «Իշխանն Հրեայ՝ Հրեաշնոմշապուհ»: Ըստ մեզ բնագիրը փոփոխելու հարկ չկայ· որովհետև արևելից մէջ սովորութիւն է մինչև ցայժմ նահանգի մը անունը աւելցնել կուսակալին անուան վրայ· երբ սա երկար ժամանակ անդ բնակեր և զիւր իշխանութիւնն մեծամեծ գործովք պայծառացուցեր է: Փարպեցւոյ վերոյգրեալ յիշատակութիւնը ալ զայն կը հաստատէ, նոյնպէս և Եղիշեայ «զոր և... անուանէին» ըսելը, որ սոսկ անունէն աւելի բան մը կը յայտնէ: Բայց Հրեւ չէ Ռէյ քաղաքն, որպէս կարծեցին ՍԷն-Մարթէն և Լանկլուա, այլ Հէրադ Աֆղանաց: Արդէն իսկ տեսանք, որ պարսկական բանակը Հերադայ կողմերն էր· (Տես Ց· Ը: 6· ծն· 1 և 2)· Հէրի կը կոչուի ցարդ գետն, որ Հերադայ քովէն կ'անցնի: Աւեստայի մէջ Հրօյու է անուն Հերադայ: Արդի պարսկերէնի մէջ ևս՝ Հիրեվի նշանակէ 1 բնիկ Հերադայ, հրեւցի· 2 գաւառաբարբառ Հերադայ, զոր յիշատակեն մահմետական այլ և այլ մատենագիրք, բայց որ կորուսեալ է այժմ: Հերատ ի հինգերորդ որպէս և ի ԺԵ դարուն՝ Խորասանի, այս է Ապար աշխարհի քաղաք էր, անուանի իւր քաջառողջ և զով օդոյն՝ գեղեցիկ պարտէզներուն և խաղողին համար: Հին դիւցազն Ներիման կանգներ էր զնա· յետոյ կործաներ էր, և Աղեքսանդր վերըստին շիներ էր: Ըստ պարսիկ աշխարհագրին Համտուլլահայ, շրջապատը 9000 քայլ էր· բնակիչքը զէնք և զրահ և մետաղ կը գործէին· անառիկ միջնաբերդ մի ունէր Շամիրամայ բերդ կոչուած: Քաղաքէն երկու փարսախ հեռի լերան մը վրայ ատրուշան մի կար Արշէշ յորջորջեալ: — Հերադայ մէջ Ցազկերտ և նորա յաջորդքը զօրաւոր բանակ մը կը պահէին՝ զԹուրանս զսպելու համար, վասն զի այդ նահանգդ յոյժ բերրի և արգասաւոր ըլլալով կարելի էր անդ բազմախումբ զօրաց ուտեստ հայթայթել: Այս պատճառաւ այժմ իսկ խնձոր հեռութեան կայ ընդ մէջ Ռուսաց և Անգղիացոց:

թեան կայերոյն, և զատն ամն իւրաքանչիւր զբարս ազնուականութեանն ցուցանէր նոցա. առաջի մեծամեծացն տատապէր, ջանայր ազգի ազգի հնարիւք, մինչև բազում բարեխօսիւք ածին ի հաւան զթագաւորն: Հրամայեաց լուծանել զկապանս նոցա. և բառնալ ի նոցանէ զուգ պատուհասին, և ազատել նոցա հանդերձ՝ զօրէն նախարարութեանն[1]. կարգեաց նոցա ռոճիկ, և զպատրաստութիւն սպասաւորութեանն հրամայեաց յարքունուստ: Գրեաց և յանձն արար մեծ սպարապետին[2], զի ընդ զօրս արքունի երթիցեն ի գործ պատերազմի:

140. Եւ իբրև այս այսպէս կարգեցաւ, և կազմեցաւ նոր հրամանն թագաւորին, ի բազում տեղիս՝ ուր և հասին՝ առաւելեալ գտան ի գործ արութեան, մինչև գովութեան հրովարտակ վասն նոցա ի դուռն տային: Որպէս զի քաղցրացաւ իսկ միտս թագաւորին, հրամայեաց զամենեսեան ածել զառաջեաւ: Եկին և յանդիման եղեն Յազկերտի արքայից արքային: Ետես զնոսա զուարթութեամբ, խօսեցաւ ընդ նոսա բանիւք խաղաղութեամբ, և խոստացաւ տալ նոցա զիւրաքանչիւր իշխանութիւն ըստ կարգի հայրենի պատուոյն, և արձակել զնոսա յաշխարհն օրինօք քրիստոնէութեանն, յորոյ վերայ և մեծապէս էին չարչարեալ:

141. Եւ մինչ դեռ անդէն մեծաւ խնդութեամբ շըրջէին ի կարաւանին առաջի թագաւորին, ի նմին ժամանակի հասանէր վախճան կենաց թագաւորին՝ յինն և ի տասներորդ ամի[3] թագաւորութեանն իւրոյ: Եւ ընդ հակառակս ելեալ երկու որդիք[4] նորա՝ ի վերայ տէրու-

1. Տես Ց. Է. 35 ծն. 1:

2. Սպարապետին Արեաց որոյ անունն էր Աշտատ, դայեակ Պերոզի և հայր Ցըղատվշնասպայ, որ առաքեցաւ առ Նախարարսն: Վերջին եղելութեանց ժամանակագրութիւնը յայտ խառնակ է յԵղիշէ: Յազկերտի ժամանակին կ'ընծայէ ինչ որ կը վերաբերի Պերոզի: Տես փարպեցի որ աւելի կարգաւ կը պատմէ: Ցըղատ-Վշնասպ՝ որ այժմ կը գրուի Իզատ-Կիւշասպ. Նշանակէ՝ աստուածապաշտ:

3. Ըստ Թապարիի և Միւճմէլիւթ-թավարիխի՝ Յազկերտ 18 տարի և 4 ամիս և 8 օր թագաւորութիւն քշեց, որ կը համաձայնի Եղիշէի բանին. ուստի մեռաւ 457ին սկիզբները:

4. Երկու որդիք Յազկերտի, մին՝ Պերոզ՝ Ֆիրուզ, միւսը Որմիզդ, մօրերնուն անունն էր Դենակ՝ որոյ պատկերը ծնած է գոհարի մը վրայ: (Նէօլդէքէ՝ Պատմութիւն Սասանեանց, և B. Dorn,

թեանն կռուէին. սատականայր գործ գաղնութեան պատերազմին գերկուս ամս:

142. Եւ մինչ դեռ նոքա յայնմ խռովութեան էին, ապստամբեաց և Աղուանից արքայն[1]. վասն զի քեռորդի էր նոցա, և ըստ կարգի հայրենի հաւատոյն՝ քրիստոնեայ էր յառաջ, և Յազկերտ արքայից արքայ բռնի մոգ արար: Եւ նորա գտեալ ժամանակ անձինն պարապոյ, հարկեցաւ զանձն ի մահ դնել. լաւ համարեցաւ մեռանել ի պատերազմի, քան ուրացութեամբ ունել զթագաւորութիւնն: Վասն այսր ամենայնի յապաղումն եղև չարձակելոյն նոցա յաշխարհն:

143. Իսկ կրտսեր որդւոյն Յազկերտի դայեակն, Ռահամ անուն ի Միհրան տոհմէն[2], թէպէտ և եւս ըզ-

Versuch einer Erklôrung der auf einer Gemme im Besitz des grafen S. Strogonov Befindlichen Pehlevy-Inschrift (compte-rendu de la commission Imp. arch. pour 1878 et 1879, 162 tf)։ Ըստ Եղիշեայ և Փարպեցւոյ՝ Պերոզ կրտսեր էր. իսկ ըստ պարսիկ պատմագրաց՝ աւագ եղբայրն էր։ Միրխոնտ կը պատմէ թէ Յազկերտ Որմիզդայ խելքին՝ և բնաւորութեանը աւելի կը հաւնէր քան Պերոզին, և զՈրմիզդ միշտ իւր քովը կը պահէր. մինչ զՊերոզ կողմնակալ անուաներ էր հարաւային նահանգաց։ Ինչպէս որ ալ ըլլայ, յայտ է թէ նորա մահուանէն ետքը երկու եղբարք իրարու հետ պատերազմեցան։ Որմիզդ աթոռին տիրացաւ և Պերոզ ստիպուեցաւ փախչիլ յաշխարհէն և ապաւինիլ Քուշանաց արքային քով, որոյ անունն էր Խոշնևազ։ Սա սիրով հիւրընկալեց զՊերոզ և նորա բնակութեան տեղի որոշեց զԹալագան քաղաք։ Անդ կեցաւ Պերոզ երկու տարիէ աւելի։ Որմիզդ չկրցաւ կառավարել և գոհացնել զժողովուրդս իւր. յորոց շատերն եկան Պերոզի քով՝ նիզակակից ըլլալու նմա։ Խոշնևազ պատեհ առիթ սեպեց, 30 000 զօրք տուաւ Պերոզի, որ եկաւ թագաւորութիւնը առաւ Որմիզդայ ձեռքէն և սպաննեց զնա. (Տես և Թապարի 195)։

1. Աղուանից արքայն էր Վաչէ։ Բռնի մոգ արար. ոչ թէ մոգ՝ օրէնսուսոյց այլ մոգութեան օրինաց հետևող. տես և Ց. Ը. 146. «զի ի բնէ մոգք էին» և այլն։

2. Սասանեանց պատմութեան մէջ եօթը տոհմք ամենէն աւելի նշանաւոր եղած են. Սուրէնեանք, Ասպահապետք, և Միհրան։ Այդ երեքն ալ Արշակունի էին ազգաւ, բայց հակառակելով անդրանին ի սկզբանէ իրենց ազգակից պարթև անդրանիկ ճիւղին, որ կը թագաւորէր, Սասանեան Արտաշրի նիզակակից եղան Արտաւանայ դէմ և մինչև Արաբացւոց յարձակման ատենը մեծամեծ պաշտօններ վարեցին։ Միհրանեան ցեղը Ասպահապետի տոհմին մէկ ճիւղն էր։ Սասանեանց օրերը Սուրէնեանք ընդհանրապէս քաղաքական բարձր պաշտօններու մէջ կը փայլէին. Ասպահապետք կամ Ասպետք մեր Բագրատունի ասպետաց նման, նորընտիր թագաւորին գլուխը թագ կը դնէին. սոցա բնակութեան գաւառը բուն Պարթևաց երկրին և մանաւանդ Թապարստանի մէջ էր. ուրանոր և ինքնագլուխ իշխեցին

գունդն Արեաց ընդ երկուս բաժանեալ, սակայն կիսովն գաղտնաբար յարձակեցաւ ի վերայ երէց որդւոյ թագաւորին, հար սատակեաց զգունդն. և ձերբակալ արարեալ զորդի թագաւորին, անդէն ի տեղւոջն հրամայէր սպանանել: Եւ զմիացեալ զօրսն ածէր հաւանեցուցանէր և առնէր միաբանութիւն ամենայն Արեաց գնդին. և թագաւորեցուցանէր զկրսերն, որում անուն էր Պերոզ:

144. Զի թէպէտ և Արեաց աշխարհին առնէր մեծապէս խաղաղութիւն, սակայն Աղուանից արքայն ոչ կամէր հնազանդել անդրէն ի ծառայութիւն. այլ խրամատեաց զպահակն Ճորայ, և անցոյց յայս կոյս զզօրսն Մասքթաց. միաբանեաց զմետասան թագաւորս[1] զլեառնորդեայսն, և ընդդէմ եկաց պատերազմաւ Արեաց գնդին, և բազում վնաս արար զօրացն արքունի: Թէպէտ և երկիցս և երիցս ետուն հրովարտակս աղաչանաց, ոչ ինչ կարացին ածել զայրն ի հաւանութիւն. այլ դրով և պատգամաւ[2] յանդիմանէր զնոսա, վասն զուր աւերածի աշխարհին Հայոց: Յիշեցուցանէր նոցա զմահ նախարարացն և զչարչարանս կապելոցն: Ի վերայ ամենայն սիրոյ և վաստակոց, փոխանակ կեանս առնելոյ՝ զարեւ հատէք, ասէր: Լաւ լիցի ինձ, ասէ, զնոցա չարչարանսն յանձն իմ առնուլ, քան թողուլ զքրիստոնէութիւնն:

145. Եւ իբրև տեսին, թէ ոչ բռնութեամբ և ոչ սիրով կարացաք ածել ի հաւանութիւն, գանձս սաստիկս

յետ կործանման Սասանեան հարստութեան: Իսկ Միհրան տոհմը մեծամեծ զօրավարներ տուած է. Միհր-Ներսեհ ալ որոյ համար Թապարի և Միրխոնտ կ'ըսեն թէ արշակունի էր ազգաւ, Միհրանեան տոհմէն էր: (Տես Խորէն. Փարպեցի և Պատկանեան՝ Essai sur l'histoire des Sassanides էջ 28-32):

1. Այս մետասան ազգաց կամ ցեղերու անունները տեսնել մեզ Եղիշէ Յ. Դ 15: Ասոնք կը բնակէին Կովկասու արևելեան երկու բազկին մէջ տեղը և Ճորայ պահակին հարաւակողմը. և ո՛ր կողմանէ չահ կամ օգուտ տեսնային, այն կողմը կ'անցնէին. այժմ կ'ապստամբէին Վաչէի հետ Պարսից դէմ: Տասը տարի յառաջ Վասակ սոցա պարգևներ տալով իրեն նիզակակից ըրեր ու անոնց ձեռօք արգիլեր էր զՀոնս, որ Վարդանայ օգնութեան չգան:

2. Բահլաւերէն՝ Բադգամ է դեսպան, պատգամաւորութիւն. որպէս և հրաման, խորհուրդ, համբաւ, լուր: Կամ երթալ գնալ + Բադի, որոյ բառական նշանակութիւնն է «որ ինչ գայ տա (ամէն) որ կայ ընդդէմ». Բադիգի է ընդունելութիւն անցեալ Բաստաճ զանա բայի: Այսպէս և «պատասխան» կազմեալ է ի պատ և ի սախուն سخن «խօսք» բառից:

եսուն տանել յաշխարհն Խաղանդրայ, բայցին զգրաւս Ալանաց[1] և հանին գունդ բազում ի Հոնաց, և կռուեցան տարի մի ընդ Աղուանից արքայի: Թէպէտ և թօթափեցան և ցրուեցան զօրքն իւր ի նմանէ, սակայն զնա ոչ կարացին հնազանդել, այլ և հարուածք ևս մեծամեծք հասին ի վերայ նոցա, էր որ կռուով և էր որ ախտիւ չարչարանօք: Եւ յայնչափ ժամանակաց ընդ երկարել պաշարմանն, մեծ կէս աշխարհին աւերեցաւ, այլ ոչ ոք ի նմանէ երկմտեալ բաժանեցաւ[2]:

146. Յղեաց առ նա դարձեալ թագաւորն Պարսից. Զքոյրդ իմ՝ ասէ, և զքեռորդիդ ի բաց տուր ածել, զի ի բնէ մոգք էին[3] և դու քրիստոնեայ արարեր, և աշխարհդ քեզ լիցի: Իսկ սքանչելի այրն ոչ ի տէրութեանն վերայ կռուէր, այլ յաստուածպաշտութեանն: Զմայրն և զկինն ետ տանել, և զաշխարհն բովանդակ ի բաց եթող. և ինքն զաւետարանն առ և յաշխարհէն ի բաց կամէր գնալ:

147. Զայս իբրև լուաւ թագաւորն, կարի զեղջ և ապաշաւ անկանէր ի միտս նորա, և զամենայն վնաս իրացն զհարբն իւրով արկանէր: Անսուտ երդումն կնքէր և տայր տանել առ նա, եթէ յաշխարհէդ միայն մի գնար և զինչ ասես՝ առնեմ: Խնդրեաց զմանկութեան սեպհականն, զոր հօր իւրոյ շնորհեալ էր նմա ի տղայութեանն՝ հազար երդ. առ զայն ի թագաւորէն, և նըստաւ ի նմա միայնակեցօք հանդերձ: Եւ այնպէս հանա-

1. Երբ ձորայ պահակէն անցնելն անհնարին եղաւ, Ալանաց դռնէն (այժմեան Վլատիքաւքասի համբէն) զխայլանդուրս մտուցին Պարսիկք. տես Ց. Ա 14. ծան. 1 և Յաւելուած Ա. Ցեղանակին:

2. Իմանալու է թէ զօրացը ցրուելէն ետքը իրեն հաւատարիմ մնացող ընկերօքը քաջութեամբ կը կռուէր Պարսից դէմ, ու վնաս կը հասցնէր նոցա. և թէպէտ ամէն կողմանէ նեղեցին զինքը և պաշարեցին, բայց դարձեալ քովինները զինքը չթողուցին:

3. Վաչէի մայրը քոյր էր Պերոզի. Յազկերտ զարքայն Աղուանից իրեն փեսայ ըրած ատեն, մոգութիւնը ընդունել տուեր էր նմա: Բայց Վաչէ պապուն մահուանէն ետքը ապստամբելով նորէն իւր նախահարց կրօնին դարձեր և զմայրն և զքոյրն քրիստոնեայ էր ըրեր: — Քանի մը տող ստորև Եղիշէ կ'ըսէ թէ Վաչէ «զմայրն և զկինն ետ տանել». կ'երևայ թէ Վաչէ կրակապաշտ եղած միջոցին զիւր քոյրն այս է Պերոզի քեռորդին իրեն կին առեր էր, որ ներեալ նա մանաւանդ պատուիրեալ էր ի մազդեզն օրինաց:

պաղորդեաց զինքն յաստուածային պաշտամանն, զի և չյիշէր ամենևին՝ թէ և թագաւոր լեալ իցէ յառաջ:

148. Եւ այս ամենայն յերկար խաղաղութիւնք, որ եղեն մինչև ի հինգերորդ ամն Պերոզի արքայից արքայի պատճառք եղեն շարժակելոց Նախարարացն Հայոց. այլ ռոճկաւ և ի տաճար մտանել յարքունիս մեծապէս առատացոյց քան զամաց սովորութիւնն: Եւ ի նմին հինգերորդ ամին զբազմաց նոցա անդրէն զկեանսն շնորհեաց.
463–464 և այլոցն ևս յայն խոստացաւ՝ յամն վեցերորդ[1] միանգամայն արձակել զամենեսեան կենօք և պատուով:

Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի[2]:

149. Իսկ կանայք երանելի առաքինեացն, և կապելոցն և անկելոցն ի պատերազմին, ընդ ամենայն աշխարհն Հայոց համօրէն համարել ես ոչ կարեմ. զի բազում այն էն զոր ոչ գիտեմ քան թէ գիտացեմ: Զի հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչեմ[3]. ոչ որ միայն ազատազգիքն էին, այլ զբաղումս ի կրտսերագունաց անտի[4]:

150. Ամենեքեան միահամուռ զերկնաւոր նախանձ բերելով, ոչ ինչ ընդ-հատ երևեցան յայնցանէ՝ որ ոչ ճաշակեցին զաշխարհ: Քանզի եթէ ազատազգիք էին, և եթէ մանկազգիք, զմի առաքինութիւն հաւասար զգեցան: Ոչ ինչ յիշեցին ամենևին զանուն փափկութեան մայրենի ազատութեանն, այլ իբրև մարդք՝ որ վշտամբերք լեալ իցեն անդստին ի շինական սովորութեանցն

1. Յամն վեցերորդ՝ այս է 463–464։

2. Եղիշէ միտք ունէր ուրեմն շարունակելու իր պատմութիւնը։ Բայց այդ վերջին մասը գրած ատենը, Նախարարք դարձեր էին ի Հայս. ինչպէս որ կը հետևի հետագայ նկարագրութենէն։

3. Կապեալ կամ պատերազմի մէջ անկեալ և կամ բնակութեան տեղերնին թողլով լեռնային ամրութեանց մէջ ապաւինեալ Նախարարաց՝ սեպհաց և ազատաց տիկիններէն և օրիորդներէն հինգ հարիւրի չափ յականէ յանուանէ ճանաչելու համար պէտք էր, որ Եղիշէ Հայաստանի գաւառաց խիստ շատերուն մէջ ճանապարհորդած ըլլար։ — Կանայքս այս յանխառն տեղիս կամ ի քարանձաւս լերանց կը գտնուէին. ոմանք յանկոյս երկիրն խաղացեալ, այլք յանմատոյց ամուրսն Տմորեաց և կէսք ի Թանձրախիտ մայրիսն Արձախոյ։

4. Ազատազգի և կրտսերազգի՝ տարիքի նկատմամբ և ոչ քաղաքական պատուոյ կամ աստիճանի, ինչպէս որ քիչ մը ստորև ազատազգեաց և մանկազգեաց ըսելէն ալ կը հետևի։

տանջելով վարեալ զկեանս աշխարհիս, անդրադարձք ևս քան զնոսա յանձն առին զհամբերութիւն վշտաց:

151. Ոչ միայն յոգիւն մխիթարեալ կային առ աներևոյթ զօրութիւնն յուսոյն յաւիտենից, այլ և մարմնոյ նեղութեամբք առաւել ևս բարձին զբեռն ծանրութեան: Զի թէպէտ և ունէին զիւրաքանչիւր ձեռնասուն սպասաւորս [1], ոչ ոք երևէր ի նոցանէ՝ թէ որ տիկինն իցէ և կամ որ նաժիշտն. մի հանդերձ էր հասարակաց, և միապէս գեղանախշակք երկոքեան: Ոչ ոք ումեք անկողնարկ լինէր [2]. քանզի և չծանուցէին իսկ զխառնելեանն ընտրել ի միմեանց. մի գոյն թխութեան փարայից [3], և մի գոյն սևութեան մնարից բարձից:

152. Ոչ գոյր նոցա համեմ խաժամուժք անուշարար [4]

1. Այս է աղջկունք՝ զորս տղայ հասակին մէջ կ'առնուին Տիկնայք Հայոց ի տունս իւրեանց, կը կրթէին, կը մեծցընէին և սպասաւորութիւն ընել կու տային: Ասոր համար գերեվաճառութիւն ենթադրելու հարկ չկայ. որովհետև տեսանք թէ զմանկունս հայրենի տնէն հեռացնելը և այլում յանձնելը՝ ժամանակին բարուց և սովորութեանց մասն էր. Տես Ց. Բ. 14 ծան. 1 և 62 ծան. 3:

2. Երեսուն քառասուն տարի յառաջ երբ Արևելից մէջ երկաթի կամ փայտեայ մահճակալք չէին գործածուեր, աղախինք կամ տան կրսերագոյն աղջկունք արկանէին զանկողինս: Մեր հինգերորդ դարու նախնեաց ապարանից մէջ կային սենեակներ կամ սենեկաց խորշեր, ուր տանուտիրոջ կամ փեսային յատկացեալ անկողինը հովանեօք և վարագուրօք միշտ զարդարուն և հանդերձեալ կը մնայր. բայց մնացեալ անկողինները իրիկուընէ կը տարածուէին ի գետին և առաւօտը կը վերցնային ու կ'ամփոփուէին. և Փարպեցւոյ զայնս բազմոցիմի կոչելէն (էջ 332) պէտք եմք կարծել թէ մի քանի կարգ իրարու վըրայ կը դրուէին. ստորինը հաւանօրէն ընդեայ և վրայինները աւելի փափուկ բամբակէ կամ փետուրէ:

3. Փարայ կամ փրխայ. բառ յուն. Ֆրի՛ասսեմ. խոխ, չորացեալ և արևակէզ ուռ, խոտ, բոյս, և հիւսեալ ի խոտոյ:

4. Արդի ամենայն տպագիրք ունին որպէս եդաք. այլ ընթերցուած և Կ. Պօլսոյ երկրորդ տպագրին՝ ոչ գոյր նոցա խաժամուժք անուշարար. որ աւելի դիւրիմաց է: Դիտելի է թէ ազատաց ապարանից մէջ այլ և այլ խոհարարներ կային. որը զխորտիկն անուշահոտ համեմօք կը հանդերձէր. որը զհացն շաղուէր միայն և եփէր ի նաշխեայ՝ իւր տեարց համար, և աւելի հասարակ ալիւրէ՝ մնացած տնեցւոց համար. միւսոմն կամ այլք սովորական կերակուրները կը պատրաստէին. գերդաստանը յոյժ բազմաթիւ էր. ոչ միայն հայր և որդիք մէկ յարկի տակ կը բնակէին, այլ և եղբօրորդիք իրենց հարսերով, և հեռաւոր նախարարաց պայազատք, որք տանուտիրոջ խնամոց յանձնուած էին և հարազատից հետ միասին կը սնանէին ու կը կրթուէին: Բազմութիւն մ'ալ կար «ձեռասուն» նաժշտաց, աղախնայց, սպասաւորաց, ընդոծնաց, զինակրաց և այլն:

առանձինն, և ոչ հացարարք որոշեալ ի պէսս ապատու ըստ ապատայ կարգի, այլ հասարակաց էր: Ծարաթամուան ըստ կարգի միայնակեցաց, որ յանապատս բնակեալ են: Ոչ ոք ումեք ջուր ի ձեռս արկանէր[1], և ոչ կրասերք ուպայց դաստառակս մատուցանէին. չանկաւօչնան[2] ի ձեռս փափկասուն կանանց, և ոչ մատուցաւ իւղ[3] ի զուարթութիւն խրախութեան: Զեղան առաջի սուրբ սկտեղք, և ոչ անկան բաժակակալք[4] յուրախութիւն. չեկաց ուրուք նոցա նուիրակ առ դուրս[5], և ոչ կոչեցան պատուականք յարանց ի տաճարս նոցա[6]. չյե-

1. Ասկէ յայտ է թէ նախնիքն մեր կոնք և քանոտ (լէյէն իբրիգ) կը գործածէին. և յորժամ պատուաւորքն լուացուողներուն ձեռաց վրայ ջուր կը թափէին, աղջկունք կամ տարիքով կրսեր կանայք ուպայց դաստառակ կը մատուցանէին, որպէս սովոր էր յԱրևելս. և որովհետև խօսքը կերակրի վրայ է, մարթ է կարծել որ սեղանէն յառաջ կամ ետքը ձեռք լուալու սովորութիւն կար:

2. Պարսկերէն իշնան اشنان է չոյէն Saponnaire, արմատ որ կը փրփրի աճառի պէս և որով մաքրեն զհանդերձս: Բայց աստ օշնան չէ սոսկ այդ արմատ կամ անոր մոխիրը՝ որ փափկասուն ձեռքեր մաքրելու չէր կրնար ծառայել, այլ այդ մոխրով և իւղով կամ պարարտ նիւթերով զանգուած օճառ. բայց չկարողացանք ստուգել թէ ինչպէս կը բաղդրէին և կը գործէին մեր նախնիք զօճառ:

3. Հին աշխարհին մէջ իւղն յոյժ ազնիւ և յարգի համարեալ էր. նոր և քաղցր ձէթը նախամեծար էր քան զկոգի և քան զճարպ համ տալու համար կերակրոց: Բայց աստանօր, կարծեմք, պարտ է իմանալ օծանելու իւղ և ոչ ուտելեաց վրայ անցընելու: Ձիթով կամ ուրիշ անուշահոտ իւղերով օծելու սովորութիւնը կար նաև առ Յոյնս և առ Հռովմայեցիս. կ'օծանէին մանաւանդ հիւրք հրաւիրեալք ի խնջոյս և յայլ ուրախութիւնս (Բառարան Ս. Գրոց):

4. Բաժակակալ՝ 1. Ունող զբաժակ կամ կրող. մատռուակ. 2 Ափսէայն յորոյ վերայ եդեալ իցեն բաժակք: Աստ անշուշտ ափսէայ իմանալու է:

5. Եղիշէ կու յիշեցնէ մեզ զապարանս մեծատանցն արևելից, ուր տիկնոջ նստած սենեկին դրան դին և դրան մօտ նաժիշտք կամ աղախինք կը սպասեն չարունակ, իւրեանց տիրուհւոյն հրամանը փութանակի կատարելու համար. որպէս և ի դուրս սենեկի տանուտեառն կը կենան պաշտօնեայք: Բայց արանց և կանանց զատ նստելու սովորութիւնը չկար ի Հայս. վասն որոյ նուիրակք կամ սպասաւորք ծառայէին տիկնանց:

6. Կարևոր տեղեկութիւն մը՝ զոր տայ մեզ Եղիշէ կանանց կենցաղոյն ընկատմամբ, ոչ միայն ճաշեմ սեղան չկար այլ և «արանց պատուականաց» հետ տեսութիւնը բնական և գովելի էր, և զնոսա հրաւիրելն յոյժ պատշաճ: — Երրորդ Ցեղանակին մէջ դրուցեց մեզ Եղիշէ, որ երբ ժողովուրդը եկեղեցականաց դրդմամբ ուխտ ելաւ հաւատոյ պաշտպանութեան համար, «երևեցան ամենեքեան զինեալք և սաղաւարտեալք, սուր ընդ մէջ և վահան ի ձեռին՝ ոչ միայն արանց քաջաց այլ և կանանց առ-

չեցան նոցա՝ թէ գուցէ ոք ամենեւին ի բնակամնունդ գայեկայ[1] և կամ՝ բնաւ ի սիրելի հարազատաց:

153. Փոշոտեցան և ծխոտեցան սրահակք և սրսկապանք[2] նորեկ հարսանց, և սարդի ոստայնք ձգեցան ի սենեակս առագաստաց նոցա. կործանեցան բարձրագահք տաճարաց նոցա, և խանգարեցան ոպաք երախանաց նոցա. անկան կործանեցան ապարանք նոցա, և տապալեալ աւերեցան ամուրք ապաստանի նոցա: Չորացան ապաղեցան բուրաստանք ծաղկոցաց նոցա, և տաշ-

ճակատաց» այս է ամուսնացեալ կանանց: Քաղաքական յուզմանց և զուարթանց՝ գիւղացի և ազնուական կանայք՝ արանց պէս կը մասնակցին: «Դըրգեցին ժողովեցին (եպիսկոպոսն) զբազմութիւն արանց եւ կանանց, շինականաց եւ ազատաց, դրահանայից և զմենակեցաց. խրատ եղին, պնդեցին և արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի»: — «Եւ յետ այս ապաւինակ խռովութեան (մոգաց ջարդը) յամենայն կողմանց յաշխարհէն Հայոց բազմութիւն արանց եւ կանանց, ծերոց և տղայոց... քանզի առհասարակ զմի զինուորութիւն զինուորեցան. և զմի ազան զրահս հաւատոց պատուիրանին Քրիստոսի, և միով զօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք եւ կանայք»: — Այսպէս կ'երևի թէ որպէս ի Հռովմայեցիս, այդ համարձակութիւնը և ազատութիւնը միայն ամուսնաւոր կանանց յատուկ էր. նոյն իսկ նոր հարսանց՝ առագաստը թողուլ և եկեղեցւոյ մէջ անգամ ժողովրդեան երևալ ամօթ սեպուած էր: Երբ Վահանայ մարզպանութեան հրովարտակը բերին, ամէնքն ուրախութեամբ լցեալ Աստուծոյ տունը վազեցին շնորհակալ ըլլալու. «դրոհ տուեալ առ հասարակ ամենայն մարդոյ՝ նախարարաց և ազատաց, ոստանկաց և ռամկաց, արանց և կանանց, ծերոց և տղայոց, այլ եւ հարսունք անգամ յառագաստաց մոռացեալ առ վայր մի առ խնդին զամօթ հարսնութեան, դիմեալ ընթանային յեկեղեցին». Փարպ. էջ 547: Կոյս աղջկունք նա մանաւանդ հարսնացու կամ խօսեցեալ օրիորդք ամենեւին ազատութիւն չունէին և արանց ընկերութենէն բոլորովին մեկուսի կը բնակէին: Բայց այդ առանձնութիւնին ընդհանրապէս շատ չէր տևեր, որովհետև մատաղ հասակի մէջ կը կարգուէին:

1. Բնակամնունդ՝ ոչ սնուցիչ բնածին սիրով, կարծեմ, որպէս դնէ Հայկ. Բառարանը, այլ իւր առն մէջ սնուցանող գայեակք՝ դաստիարակք կամ խնամակալք. Տես Ց. Բ. 14. ծն 1. և 62 ծն 3: Եւ հարազատ բառս իմանալու է ոչ միամայր կամ միահայր եղբարք, այլ բուն, ճշմարիտ հայր, հօրեղբայր և այլն, ընդդիմադրութեամբ՝ գայեկի, խընամակալի:

2. Սրսկապան է առագաստ հարսանեաց, վրանաձև կազմած մահճաց, baldaquin: Իսկ սրահակք առաւնոր կարծեմ չէ փոքրիկ սրահ կամ սենեակ, քանզի քիչ մը եաքը սենեկի առանձին յիշատակութիւն կայ, այլ վարագոյր դրանց, կամ որմոց: Սենեակ առագաստաց է ներքին սենեակ հարսին ու փեսային, հարսնարան. Chambre nuptiale. Բարձրագահ է բարձր նստարան կամ բազմոց, Sofa, divan, ուր կը նստէր տիկինը կամ պատուաւոր հիւրերն և որ սենեկին յատակէն մէկ կամ երկու աստիճան բարձր տախտակամածի վրայ հաստատուած էր:

տախիլ եղեն որթք գինէբեր այգեաց Նոյա: Աչօք իւրեանց տեսին զյափշտակութիւն աւարոց իւրեանց, և ականջօք իւրեանց լուան զվիշտս չարչարանաց սիրելեաց իւրեանց. տան գանձք իւրեանց յարքունիս, և ոչ մնացին ամենեւին զարդք երեսաց իւրեանց[1]:

1. Եթէ Եղիշեայ տուած մանրական տեղեկութիւններէն մեր նախնի մեծատանց ապարանքը կազմել ուզենանք, պէտք է դաշտի մը մէջ բլրոյ վրայ, կամ այդ դաշտը շրջապատող լերանց կողերուն վրայ և կամ աւելի եւս անմատչելի և ահաւոր լեռնաձորոց և ափափայից վրայ աշտարակաւոր մարտկոցաւոր և թանձր որմերով կերտեալ դղեակ մը աչաց առջև բերել. դղեակդ երբեմն տեղւոյն դրից համեմատ ատամնաւոր պարսպօք ալ շրջապատեալ է, որոյ ներսի դին զետեղուած են իշխանին այլ և այլ պաշտօնէից տըները, շտեմարանքն, ախոռներ, պահականին և այլն: Դղեկին անմիջապէս առջև կամ բոլորտիքն են «Բուրաստանք ծաղկոցաց» և աւելի հեռուն այգեստանք, արտորայք և պէսպիսի մշակութիւնք: Ապարանքն քիչ պատուհան ունին թշնամւոյն դէմ դիւրաւ պաշտպանուելու համար. բայց սրահներն և սենեակները ընդարձակ և գմբէթն կամ ձեղունն բարձր ըլլալուն, բաւական լուսաւոր էին: Ներքին բաժանմանց սակաւութեանը պատճառաւ գերդաստանին մէն մի անդամոց համար յատուկ խուց ըլլալու չէր: Տանուտէրն անշուշտ իւր առանձին սենեակն ունէր բայց մնացածները ընդհանրապէս լայնարձակ սրահից մէջ կը նստէին ու կը ննջէին, որոց խորշերն վարագուրօք փակուած կամ մէջտեղուանքն պատշգամի ձեւով բարձրացած և նկարօք զարդարուած՝ ամուսնացեալ սեպհաց առագաստքն և սրահապանքն էին: Դղեկին ամենէն ապահով և ամրափակ մէկ կողմը գերդաստանին գանձը կը պահուէր, որ բաց յանկեղէն և արծաթեղէն սպասուց, կը բաղկանայր պատերազմաց մէջ աւար առնուած թանկագին զարդերէ, դրօշներէ, զէնքերէ և թագաւորաց կամ իշխանաց կողմանէ տրուած պարգեւներէ: Սենեակ մի ալ յատկացած կ'երևի իբր ճաշատեղ կամ սեղանատուն: Սեղանին բոլորտիքը կամ մէկ կողմը կը նստուէր, ոչ աթոռոց վրայ այլ բազմականաց (սետիր, չիլթէ): Արծաթի կամ ոսկեայ ծաղկակալ սկուտեղք կը զարդարէին զսեղանն. Նաժիշտք «երգէին ձեռամբ» (լարաւոր գործեօք) նուագս երաժշտականս. Խորեն. Բ. ԿԳ: Գինւոյ սպասուն յոյժ առաւել էր քան զջրոյն: — Սովորական բազմելու կարասիքն էին աթոռ և մանաւանդ բարձրագահոյք և բազմականք, զորս կանայք նկարակերպ ստայնանկութեամբ կազմէին (Յովհ. Կաթող): — Տիկնանց զգեստքն կերպասեայ կամ բարակ կըտաւէ էին և ոսկեհուռ (փարպ). հանդիսաւոր օրերուն համակեալ էր ոսկւով (Նոյն): Ձեռքերնին, ոտքերնին (կօշիկնին?) պատուական ականիք ընդելուզեալ ապարանջանօք և զարդուք կը պճնէին, և զպարանոցն կարի մեծագնոյ մարգարտօք և մեծաւ աշխատութեամբ ձեռք ձգուած և գործուած ճիտակաւ կամ զտակաւ կը կապէին: Երեսնին՝ մանաւանդ տնէ դուրս, քողարկեալ էր, բայց քողը արգելք չէր ըլլար՝ «այսր անդր հայեցողութեան զաչս ածելոյ ի տեսս» (փարպ): Ձեռագործօք կը պարապէին ինչպէս և տանին մատակարարութեամբ և որում անհնար է, կ'ըսէ փարպեցին, յաղթել կանանց՝ շատ-

154. Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ գրգեալք և գգուեալք էին յիւրաքանչիւր պատուատն[1] և ի գահաւորակս, հանապազ բոկ և հետի երթային ի տունս աղօթից, անձանձրոյթ խնդրեալ ուխտիւք՝ զի համբերել կարասցեն մեծի նեղութեանն: Որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց և ամճովք երէոց, խոտաբուտ կենօք իբրև զվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ. և ոչ յիշէին ամենևին զաւորական փափկութիւնն: Սևացեալ ներկան մորթք մարմնոց նոցա, վասն զի ցերեկ արևակէզք էին և զամենայն գիշերսն գետնաբեկք: Սաղմոսք էին մշտընջենաւորք մրմունջք ի բերանս նոցա, և մխիթարութիւնք կատարեալք՝ ընթերցուածք մարգարէիցն: Միաբանեցին երկու երկու՝ իբրև ամոլք· հաւանք և հաւասարք՝ ուղիղ տանելով զակօսն արքայութեանն, զի առանց վրիպելոյ հասցեն ի նաւահանգիստն խաղաղութեան:

155. Մոռացան զկանացի տկարութիւն, և եղեն արուք առաքինիք ի հոգևոր պատերազմի, մարտ եդեալ կռուեցան ընդ մեղսն կարևորս, հատին կտրեցին և ընկեցին զմահաբեր արմատս նորա: Միամտութեամբ յաղթեցին խորամանկութեանն, և սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն. հատին զարմատս ագահութեան, և չորացան մահաբեր պտուղք ոստոց նորա: Խոնարհութեամբ կափեցին զամբարտաւանութիւն, և նովին խոնարհութեամբ հասին երկնաւոր բարձրութեանն: Աղօթիւք բացին զփակեալ դրունս երկնից, և

խոստութեամբ. բայց մէկ գլխաւոր զբաղմունքն էր ընթեռնուլ զՍուրբ Գիրս, «ուսանել և բազում հեզողութեամբ ուսուցանել տալ և խրատել, ոչ իբրև զանփոյթ և զանոխական կանայս, այլ իբրև զքաջալյրս, զառաջնեկայ զօգտաբեր շքեղաբար հրահանգս մանկանցն հոգացեալ լնուլ». և յայսմ մասին Հմայեկայ Մամիկոնէի կինն Ձուիկ այնպիսի կատարեալ կրթութիւն մը կարող եղած էր տալու իր երից զաւակաց, որ «յամենայնի յառաջադէմք եղած էին և հռչակաւորք. և մինչդեռ ի տիս մանկութեան էին՝ ամենայն տեսանող մըտաց երևէին աջողակք և զարմանալիք». Փարպ. 334:

1. Պատուատ. պարսկերէն պստար بستر է անկողին, matelas կամ տօշէք չիլթէ. գլխու կամ քովի բարձ: Գործածեալ ի պատուատուն՝ է մերին ռամկական չիլթէներու մէջ մեծցած: Աւսի եւ պարսկերէն պէր պստա՛րի իյլ ու նստ֊գուր՝ փափուկ և հանգիստ անկողնոյ վրայ՝ չիլթէի վրայ: — Պաշաւորակ՝ է դեսպակ կամ պատգարակ՝ թանթիրեվան:

սուրբ խնդրուածովք իջուցին զհրեշտակս ի փրկութիւն. լուան աւետիս ի հեռաստանէ, և փառաւորեցին զԱստուած ի բարձունս:

156. Այրիք որ ի Նոսա էին՝ եղեն վերստին հարսունք առաքինութեան, և բարձին յանձանց զնախատինս այրութեանն: Իսկ կանայք կապելոցն կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս, և եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց Նմանեցին քաջ Նահատակացն մահուամբ, և ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանդարգելեացն: Մատամբք իւրեանց վաստակեցին և կերակրեցան, և զկարգեալ ռոճիկ[1] Նոցա յարքունուստ՝ առ յամէ թոշակ առնէին և տային տանել Նոցա ի մխիթարութիւն: Անարիւն ճպռանց Նմանեցին, որ երգոյն քաղցրութեամբ առանց կերակրանաց կեան, և կենդանի են միայն զօդն ծծելով, զանմարմնոցն բերեն զնմանութիւն:

157. Բազում ձմերաց հալեցան սառնամանիք, եհաս գարուն և եկին Նորեկ ծիծեռունք[2], տեսին և խնդացին կենցաղասէր մարդիկ, և Նոքա ոչ երբեք կարացին տեսանել զանձկալին իւրեանց: Ծաղիկք գարնանայինք յիշատակեցին զպսակասէր[3] ամուսինս Նոցա, և աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի գեղ երեսաց Նոցա: Սպառեցան բարակք օրականք[4], և խցեալ կա-

1. Երբ Պերոզ արձակեր էր զկապեալ նախարարս և հրաման ըրեր էր նոցա երթալ ծառայել Հրևի բանակին մէջ, ռոճիկ (տճկ. թայյինաթ) կարգեր էր նոցա ի Հրև և կանանց նոցա յաշխարհի իւրեանց. (փարպ. 326): Տիկնայք նախարարաց, փոխանակ իւրեանց ռոճիկն առնելու և սպառելու, անոր փոխարէնը կ'առնուին դրամ և կը խրկէին նախարարաց: Կ'երևի թէ ռոճիկ ունեցողը կրնար՝ ըստ կամաց՝ պարէն կամ թոշակ առնուլ:

2. Ծիծեռունք ձմեռը տաք երկիրները կ'երթան և ամառը զով տեղեր կը փընտռեն և ասոր համար ահագին ճամբորդութիւններ կ'ընեն: Այսպէս յԵւրոպա՝ ծիծեռունք գարնան կու գան և աշնան յԱփրիկէ կը չուեն Միջերկրականի ամբողջ լայնութեան վրայէն անցնելով: Գարնան Հայաստան եկող ծիծեռունքն ալ ձմեռուան մօտ դէպ ի հարաւ ի Միջագետս և յԱրաբիա երթալու են:

3. Այս է հաւատարիմ ամուսնոյն: Եղիշէ բառի խաղ մը կ'ընէ. ծաղիկք գարնանայինք ի յուշ ածէին զպսակն, որ զուգեր էր զամուսինսն և որ ծաղկըներէ կը հիւսուէր:

4. Հայկազեան բառարանը նոյն կը համարէ ընդ պարսկերէն պարագ բառի: Բայց այդպիսի բառ մը չգտանք բառագրոց մէջ: Է պարիք կամ պարիչք ած. նուրբ, անօսր, որպէս հայերէն՝ «բա-

բացան արշաւանք որսորդաց: Բնագրոք յիշատակեցան նոքա [1], և ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա ի հեռաստանէ. ի ճաշատեղս նոցա հայեցան և արտասուեցին, և յամենայն յատեանս յիշեցին զանուանս նոցա: Բազում արձանք [2] կանգնեալ էին յանուն նոցա, և անուանք իւրաքանչիւր նշանակեալ ի նոսա:

158. Եւ իբրեւ այնպէս յամենայն կողմանց ալէկոծ լինէին միտք նոցա, ոչ ինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէ: Արտաքնոցն երեւէին իբրեւ այրիք սգաւորք և չարչարեալք, և յոգիս իւրեանց զարդարեալք և մխիթարեալք երկնաւոր սիրովն: Ոչ ևս սովորեցին հարցանել զեկեալ ոք ի հեռաստանէ, եթէ երբ լինիցի մեզ տեսանել զսիրելիսն մեր. այլ այն էին խնդիր աղօթից նոցա առ Աստուած, եթէ որպէս սկսանն՝ քաջութեամբ ի նմին կատարեսցին լի երկնաւոր սիրովն:

Եւ մեք և նոքա հասարակ ժառանգեսցուք զքաղաքամայրն բարեաց, և հասցուք խոստացելոց սիրելեացն Աստուծոյ ի Քրիստոս ի Տէր մեր:

րակ». բայց գոնէ արդի պարսկերէնի մէջ չնշանակեր եռ՝ չունի: Հաւանական է տակայն որ «բարակ» ածականն ալ գոյականապէս գործածուած է ի մեզ՝ իբրեւ բարակ գլխով կամ մարմնով շուն: Աւեստայի մէջ Արհմենի ամենէն մեծ թշնամին բարակ գլխով շուն մի է. ըստ պահլաւիկ թարգմանութեան՝ րոկչման պարիկ կամ սար պարիկ. — Մեր լեզուին մէջ որսական շանց տեսականի ալ ըսուած է. Աւեստայի լեզուաւ՝ սըա՝ արդի պարսկերէն սակ և խոյս նշանակեն՝ շուն: Հերոդոտոսի ժամանակ սըաքա՝ քած կամ էգ շուն. (Տես գիրք Ա. 110) Հնդեւրոպական լեզուաց հասարակ է սըաք կամ սվաք արմատը. որոյ յոգնակին է մերն տապակաճ կամ տապակաճի:

1. Հայկ. Բառարանը կը մեկնէ՝ «արձանագրութիւն ի յիշատակ վախճանելոցն ի Քրիստոս». «յիշատակագիրք կամ պատկեր կենդանագրեալ հանդերձ ներբողական յիշատակարանաւ»: Բայց բերուած վկայութիւններէն այդ նշանակութիւնը բնաւ չհետեւիր. միթէ աւելի պարզ չէ՞ ձեռագիր նամակ. autographe:

2. Արձան՝ անպատճառ չէ պատկեր քարեղէն այլ քարէ կոթող, տախտակ կամ սիւն հանդերձ յիշատակագրութեամբք:

Վ Ե Ր Ջ

# ԲԱՆ ԽՐԱՏՈՒ

## ՑԱՂԱԳՍ ՄԻԱՆՁԱՆՑ

1. *Մարդիկ, որ են ի մարմնի և կամօք եսուն զանձինս իւրեանց յաստուածպաշտութիւն, անդստին ի տըղայութենէ խոկան՝ կրթին ի վշտամբերութիւն. Հեռանան ի հայրենի բնակութենէն, և վարին յանապատ յանշէն երկիր. ոչ իբրև չարակնելով նախանձոտք փախուցեալք ի բազմամարդոյ աղքատաց* [1]*, այլ զի տեսանեն զաշխարհս լի ամենայն չարեօք, խոյս տան ի խորշս և ի սորոտս անապատ վայրաց:*

2. *Զոր տեսանեմք իսկ յաճախ ի կողմանս Հարաւոյ* [2] *բազմութիւն արանց՝ առանց կանանց* [3] *միաբանութեան,*

1. Հայկազեան բառարանը կը դնէ՝ ի բազմամարդոյ քաղաքաց, որ աւելի յարմար կու գայ պարբերութեանս. բազմամարդոյ կամ՝ բազմամարդ իբրև բազմաճամար կամ՝ բազմամեան գործածուած ըլլալու չէ։

2. Այս է Ասորւոց, Միջագետաց և մանաւանդ Եգիպտոսի, ուրանոր յոյժ բազմաթիւ էին միայնակեացք։

3. Նախադիրդ՝ առանց՝ գրչագրաց կողմանէ յաւելեալ է. Եղիշէի նկարագրած միանձունքն Փիլոնի ջատագոված Հեսսեանքն են, որոց մէջ կը գտնուէին և բազմաթիւ կանայք, (Տես Փիլոնի ճառք. Վենետ. 1892 էջ 14 և 25, 29, 31)։ Եղիշէ համառօտութիւն մը կ՚ընէ Փիլոնի նկարագրութեան. արդէն իսկ «Բազմութիւն արանց» ըսելէն ետքը «առանց կանանց միաբանութեան» աւելցնելն անյարմար և անընական է։ Վասն որոյ պարտ է ընթեռնուլ «Բազմութիւն արանց և կանանց միաբանութեան»։ Հեսսեանք որոց դասէն կը համարին ոմանք զՅովհաննէս Մկրտիչ, կարծէին թէ ամենայն չար ի մարմնոյ ելանէ վասն որոյ միս ոչ ուտէին. չէին ամուսնանար. զամենայն ինչ ունէին հասարակաց, և Մեռեալ ծովուն մօտերը անապատին մէջ կը բնակէին։ Նոյնպիսի հրեայ հասարակութիւն մի այլ կար Աղեքսանդրիոյ բոլորտիքը, որոց կենցաղը կը պատմէ մեզ Փիլոն։ Ի հինգերորդ դարուն՝ սոցա հետքն անգամ չէր մնացեր և փոխան նոցա քրիստոնեայ միանձունք և վանականք լցուցեր էին զանշէն վայրս։ Եղիշէ առանձնութեան կենաց կատարեալ

յագգաց և ի լեզուաց զմիով վայրօք հասեալք, ժողովեալք իբրև ի հայրենի գաւառ՝ առնեն զընակութիւնս երկու ընդ երկուս, և կամ՝ երեք ընդ երիս, և կամ՝ ևս բազումս քան զայնս: Եւ չինեն իւրաքանչիւր խցկունս զատուցեալս ի միմեանց. որք զուղնաքեայ[1] առ ցրտոյն պահպանութիւն, և զոյգ նմին ձեղուն՝ առ արեգական պահպանիլ. յատակք անպաճոյճք՝ չատացեալք խոտեղէն անկողնօք: Եւ քանզի բնութիւնս մեր զուղակ է՝ սիրէ ծածկել զմերկութիւն, առնեն և նոքա հանդերձս անպաճոյճս և յոյժ գձուձս, կողոպս[2] ամարանի և թեղմնաւորս ձմերանի, արկանեն և ապարօշս մեկնաւորս:

3. Մանաւանդ ի պարս չրջագայ անդադար պաշտամանն՝ երգս հոգևորս հօրն բոլորեցուն մատուցանեն զուարթ հոգւով: Կան ընդդէմ միմեանց զաչս ի վայր արկեալ՝ զծայրս ոտից մատանցն նկատելով, իբր թէ մի կէտ տեսակի ամենեքեան հայեսցին. զաջ ձեռն ի վերայ ծնօտին եդեալ և զահեակն ի վերայ կրծիցն, որպէս կարծեմ՝ ուսեալ ի բնական հարցն[3]: Երկու են պա-

օրինակ մը տալ ուզելով՝ կը յիշէ Փիլոնի՝ այս է Քրիստոսի ժամանակակից հելլենացեալ հրեայ Հեսսեանց նկարագրոյն, որ արդէն թարգմանուած էր ի հայերէն, բայց բառ առ բառ անյնի չէր կրնար պատշաճիլ իւր ժամանակի միանձանց:

1. Փիլոնի մէջ «իսկ տունք ի մի վայր եկեղոցն յոյժ գձուձք են. առ երկուս իրս հարկաւորագոյնք. ձեղուն ի վերայ ունելով, զյարեգակունէն խարշուածն և զօգոյն ցրտութիւն»:

2. Կողոպ՝ բառ մը. (գօյօ'վիօն որ է կրճատ, կարճիկ) զգեստ կարճ կամ առանց թեզանեաց. վերարկու անթև. Աղաւաղուած ալ է բառ մը. վերարկու, թիկնոց: — Փիլոնի մէջ «վասն զի և ծածկութի կրկին տեսակ է. հանդերձ և տուն: Արդ յաղագս տանն ասացեալ է յառաջագոյն, զի է անպաճոյճ և առանց խոհեմոյ, առ պիտանացուն միայն գործեցեալ. և զգեստն նոյնպէս զուղնաքեայ և առանց պաճուճանաց, առ ի յապրանս ի ցրտոյ և ի տօթոյ. քանզի վերարկու փոխանակ թաւ մորթոյ՝ ձմերայնի և թիկնանոց ամարայնի կտաւի». էջ 16: — Իսկ «առնեն եւ նոքա հանդերձս», այսինքն գործեն: Այս խօսքս ալ Հեսսեանց կը պատշաճի. վասն զի, ինչպէս որ կ'ըսէ Եւսեբիոս իւր Աւետարանի պատրաստութեան մէջ, այդ հասարակութեան մէջ մի անդամը մէկ մէկ գործով կամ արհեստիւ կը պարապէր. զգեստեղէնքն իրենք կը շինէին:

3. «Ի մի վայր զան իբրև ի հասարակ ժողովրդարան, և ըստ հասակի անցեալ նստին, հանդերձ վայելչական ձևով, ի ներքս զձեռան ունելով, զաջն ի մէջ կրծիցն և ծնօտին, իսկ զահեակն զանգեալ և ամփոփեալ առ կչտին»: Փիլոն էջ 14: Կարծեմ թէ տատանօք Եղիշէ ըսել կ'ուզէ, որ այդ սովորութիւնը մնացած էր ի Նախահարց իւրեանց, այսինքն ի Հեսսեանց:

տուականագոյնք ի մարմնի, կենդանական և խոհական, երկրքումբք երկոցունց ապատաւորեալ. կենդանականին՝ սրտմտականն է հակառակ, իսկ խոհականին՝ արտաքերականն բանս: Արդ ձախուն զերասանակ ի ձեռն առեալ՝ զսրտմտականն սանձահարեսցէ, և զաջ ձեռն ի վերայ աջոյ ծնօտին եդեալ՝ խոհականին սպաս ունի առ դրան բերման բանին[1], զի մի այլակութիւն յուղիղ փառաւորութիւնն խառնեսցի: Եւ ընդ այսու երկու մասամբքս նահանջին ամենայն զգայութիւնքս. աչք յուղիղ տեսութիւն և ականջք ի զգաստ լսողութիւն, միտք ի սուրբ իմաստութիւն, և այլն ըստ իւրաքանչիւր մասին:

4. Եւ իբրև այսպէս կարգեալք և յօրինեալք, ամենեքեան ի նմանութիւն վեցթեւեան սերովբէից շուրջ պարփակեալք ձայնս անհատս ի վեր հնչեցուցանեն, և օրհնութիւն եռաչափս[2] ի խորհուրդ միաբանութեան արարչին իւրեանց բոլորեն: Զախին ամենայն պարապեն երգոցն քաղցրութեան, յագեալք և զմայլեալք ի կերակուրն երկնային՝ առլցեալք հասանեն ի ժամ երեկոյին: Եւ քանզի մարմին ունին ըստ բնութեանս մերում զգայութեանս, ուտեն՝ զի մի քաղցիցեն, և ըմպեն զի մի ծարաւեսցին:

5. Արդ դու իբրև լսիցես զուտելն, մի առ մերս ընթանայցես[3], զի հաց է նոցա անպաճոյճ և բանջար վայրենի՝ զոր համով աղին համեմեն, և ջուր յստակ՝ զոր յամպոց բերմանէ ի գուբս ժողովեն: Սակայն և զայս ոչ երբեք ի տուընջեան մատուցանեն ի դարմանս պիտոյից մարմնոյ. այլ միաբան պահելով զերկայնութիւն աւուրն,

1. Այսինքն երկու ձեռամբք մարմնոյն երկու մասանց՝ կենդանականին և խոհականին ծառայելով:

2. «Եւ ապա աւագն՝ յառն կացեալ՝ երգ օրհնութեան երգէ արարեալ Աստուծոյ, զոր նորոգ իւր արարեալ, և սկզբնաւն իմն հնոցքերթողացն. քանզի չափս և նուագս բազում թողին տաղից, եռաչափաց, առձանապարհական երգոց» և այլն. Փիլ. 29: — «Ի խորհուրդ միաբանութեան Արարչին՝» այս է Երրորդութեան:

3. Յայտնի է թէ Հայոց գրոցն բարձրաւանդակին ընակիչքն, եթէ կամք աղընէին, Եգիպտոսի անապատներուն մէջ բնակող անձանց պէս ոչ սակաւապէտ կրնային ըլլալ և ոչ սակաւակեր: «Եւ կերակրին ոչ բազմապատիկ ինչ խահիւք, այլ հաց անպաճոյճ և աղ խորտիկ, զորս խահամոքքն համեմեն զօպայիւ, և է ըմպելի սոցա վտակային ջուր ինքնաբխաղաց». Փիլ. 15, 27:

տեղի տան արեգական մտանելոյ[1]. ձգեն երկայնեն զերեկուծն, մինչև աստեղք յիւրաքանչիւր կայանս պայծառանան. գոհանան իբրև ընդ մի բերան ասելով. ի խաւարային ժամու զխաւարային կերակուրս խաւարային մարմնոյս տացուք:

6. Եւ զայս ասելով, ի ձայն բարձր փառաւորեն զսուրբ Երրորդութիւնն, խնդալից ուրախութեամբ ուկրմբէին յիւրաքանչիւր տեղիս: Եւ որպէս ասացաքն՝ ուտեն հաց և զոպա, և ըմպեն ջուր ցուրտ: Քանզի գոն ի նոսա[2] ծերք փափկամարք, մատուցանեն ջուր ջերմ, զոր և բարեխառն անուանեն. այլ գինի և կամ այլ ինչ զանազանեալ, և գտանի ոչ ի սուրբ միայնանոցս նոցա:

7. Եւ յարուցեալ յանպաճոյճ ընթրեացն, միաբանութեամբ ասեն. փառք քեզ, Տէր, փառք քեզ Թագաւոր մեր, զի ետուր մեզ կերակուր ուրախութեան. լցո զմեզ Հոգւով սրբով, զի գտցուք առաջի քո հաճոյք, և մի ամաչեսցուք. զի դու հատուցանես իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց: Եւ այսպէս տեառնագրելով զինքեանս՝ տան զանձինս սակաւ մի անսոր քնոյ. զի մի տհալ կերակրովք գեղեցիկ շինուած մարմնոյն չփոթեալ խանգարեսցի: Նա և եթէ յամեն ես ի քունն, երազ հոգեկան տեսանեն, և անդէն զանուրջսն մեկնեն իբր զբանս սուրբ մարգարէիցն[3]:

8. Եւ զարթուցեալք առ հասարակ անդէն ի շըրջանս պարուց բոլորին. ոչ հակառակք և ոչ ընդդիմացեալք, քաղցր հաւանութեամբ և հեզ հանդարտութեամբ:

1. «Բայց կերակուր կամ ըմպելի ոչ ոք ընկալցի յառաջ քան զմուտս արեգական, վասն զի զիմաստասիրելն արժանի լուսոյ համարին, և խաւարին՝ զմարմնոյն հարկաւորս. վասն որոյ միւսն զտիւն. իսկ հարկաւորացն՝ զգիշերոյն զգուշն ինչ մասն եստուն». Փիլոն:

2. «Գինի յաւուրսն յայնոսիկ ամենեքին ոչ առնին ի ներքս, այլ ջուր առկանակին. յոլովոց ի նոցանէ հով. բայց ջերմ՝ ծերունեացն փափկակեցացն, և սեղան մաքուր յարինուորաց, յորոյ վերայ հաց կերակուր և խորոնիկ աղ, որոց էր երբէք զի և զոպա համեմով ամպեալ լինէր, վասն փափկակեցացն». Փիլ. էջ 27:

3. «Քանզի միշտ անմոռաց ունին զԱստուծոյ յիշատակն, մինչ զի և ի ձեռն անրջից ոչ այլ ինչ, այլ զգեղեցիկ զաստուածային առաքինութեանցն և զօրութեանց տեսակս տեսանել. քանզի բազումք և խօսին ընդ քուն, զանուրջսն մեկնելով զաստուածայինան իմաստութեան զմիջաւորգելի և զաքանչելի օրէնսն». Փիլ. էջ 13:

Աստուածորդւք դասուցն հնչումն ձայնի արձակեն, երգս հոգեւորականս քաղցրանուագս փոփոխելով. իսկ այլ կըրսերագոյնքն ձայնիցն միտ դնելով, խառնեն զիւրաքանչիւր բարբառն յարմարելով և կազմելով զմիաբանութիւն հնչմանն, զի իբրև ի միոջէ բերանոյ ամենայն բազմութիւն ձայնիցն հնչիցէ: Եւ այսպէս յերկարելով զձայնաւոր պաշտօնն, ծունր դնեն ամենքեան, յաղօթս կան լռութեամբ. և ի ձեռն առաջնորդի աղօթիցն կանգնեալք ամենքեան զփառաւորութիւնն կատարեն:

9. Եւ կատարեալ զաւուրնջեան պաշտօնն, լաւ համարեցան զգիշերոյն վաղայարոյց լինելով մինչև յառաւօտ աղօթիցն պարապեալք, և ընթեռնուն զգիրս սուրբս. իսկ որք ունին շնորհս վարդապետութեան, առնեն մեկնութիւնս ի մխիթարութիւն լսողացն: Պատմեն վասն լինելութեան աշխարհի յոչընչէ եղեալ, և կարգեալ մի ըստ միոջէ զխրատս բարեաց կարգեն ի լսելիս ժողովրդոյն վկայութեամբ սուրբ գրոց: Եւ այսպէս ուսուցանելով մինչև մօտենալ լուսոյն զամենայն իրս աշխարհականս, և չյիշել ամենեւին զհարկաւոր կերակուր և ըմպելիս :

10. Եւ այնպէս ուրախացեալք ի սէրն Աստուծոյ, մինչև չհամարեալ զինքեանս ի մարմնի, այլ յերկինս. և հեշտութեամբ անցուցանեն զերկայնութիւն գիշերոյն մինչև յառաւօտ: Քանզի սովորեալք են յերկրէս և զգեցեալք զերկինս: Ամաչէ մահ առ դրունս նոցա, և դառնացան դժոխք յիջանել նոցա: Կենդանութիւն նոցա դրունք են աղօթից աշխարհի, և ոսկերք նոցա գանձ են ամենայն ապաւինելոց: Լուր նոցա յորդորիչ է ամենայն հեղգացելոց, և գործք նոցա վարդապետութիւն ամենայն կամեցողաց, դասակիցք են հրեշտակաց, և օթեանք սուրբ Երրորդութեանն:

11. Արդ զայս ամենայն գիտելով, եղբարք, պարտիմք թեւակոխել. և զնոյն նախանձ սրբութեան յանձինս բերելով, նմանողք լիցուք այնպիսւոյ բազմագունդ միայնացելոց յաշխարհէ և դիմելոց ի քաղաքամայրն վերին, որ ազատ է յախտից երկրաւորաց. քանզի ընկերակիցք են մերոյ բնութեանս, որ զօրացուցանէ զտկարութիւնս: Միայն կամեաց, բուռն հար հաւատովք,

յուսա, սիրեա, և կարես տեսանել զայնպիսի նահատակութիւն[1]: Զի ոչ ինչ համեմատ են չարչարանք ժամանակեանք առ կեանսն՝ որ պատրաստեալ է այնպիսի ճգնողաց:

12. Քանզի յոյժ խիկ երկուցեալ եմ ես ընդ հեղգութիւնս սեր, զրեթէ զամենեսեան տեսանեմ թմաւլեալ յերկրաւոր ստացուածս: Իսկ արդ ընութիւնս իմ ո՞չ կշտամբեալ յանդիմանէ զիս, եթէ ստեղծայ մերկ, և եթէ եղայ ի դրախտին մերկ, և եթէ ելի անտի մերկ, և եթէ ծնայ մերկ, և եթէ անդրէն յերկիր մերկանդամ երթամ: Արդ եթէ տանել աստի ոչ կարեմք, զի՞ ես ստտէն ի մին թարթափիմք յաշխարհիս: Մերկացիր սակացիր, ով միայնակեացդ, մի թէ ամուր ընդունակ լինիր նենգաւոր թշնամոյն. զուցէ ի դարան մտեալ մտալուտ՝ զքեզ անդէն ի քեզ արշաւեսցէ կողոպտել, զերծանել ի քէն զզանձան երկնաւորս: Յաւակոն համարեաց քեզ զտերունեան կանոն, ոչ դք յերկրաւորացս կարէ երկուց տերանց ծառայել. որ յայտնագոյն խիկ ցուցանէ տանց միջնորդի և մեկնութեան. Ոչ կարէք դուք, ասէ, Աստուծոյ հաճոյ լինել և Մամոնայի:

13. Եւ արդ ես տեսանեմ ի սերում աշխարհիս և ոչ զոք ազատեալ յայսպիսի աղետից: Ցետս ընդդէմ ընթերցաք զգեղեցիկ գրեալսն. ի պատճառս ուխտաւորութեան հեռացաք ի սուրբ ծնողացն, և արարաք բաղում հարս օտարոտիս. զորս պատուելոյ արժանի էր՝ անարգեցաք, և յորս ոչն ունէաք իշխանութիւն զնել մեծարանս՝ զախտ աղետից մերոց յոյժ ծախեցաք: Ազատացաք ի հարկաց արքունի՝ զորս տանց մեղաց էր հարկիլն, և մտաք ընդ հարկաւ ստացուածոց, որ լի են անտակ ագահութեամբ: Զելաք յանկողինս սուրբ հար-

1. Նաեւ հոս չարուած այդ հինգ բայերդ ազդու և գեղեցիկ տպաւորութիւն մը կ'ընեն ընթերցողին մտաց վըրայ: Եղիշէ ուրիշ գրուածոց մէջ ալ գործածած է այդ ձեւ. «միայն հաւատա՛, յուսա՛, սիրեա՛ և անդէն կատարեցար խնդութեամբ»․ Տես զմեկնութիւն Հայր մերին էջ 202. — «Աո, լուաց, սըրբեաց, զգեցոյց զհանդերձն երկնաւոր, և մերձեցոյց անդէն ի նոյն ուրախութիւն»․ Նոյն էջ 200: — «Աղացիր քեզ. միայն հաւատա, միայն յուսա, միայն կամեաց, միայն ախորժեաց, միայն բուռն հար և զհետ երթ»․ մեկնութիւն Զարչարանաց էջ 312:

ամենայն, և արարաք մեզ բարձրագահս առաւել քան զաշխարհի: փափկանամք յանկողինս յարմարեալս, և յածեալ կոծին միտք մեր ի խորհուրդս ադանելս զգիշերն ամենայն:

14. Կօշիկք ոտից մերոց յանդիմանեն զմեզ, եթէ ոչ են սուրբ ճանապարհք մեր: Հանդերձք մեր ապականեն զգործոց մերոց, եթէ մերկ եմք յերկնաւոր զգեստուցն: Երիւարք մեր[1] ցուցանեն զմեզ, եթէ ոչ եմք յափշտակելոց ընդ առաջ Տեառն ի վերայ օդոց: Շինուածք ապարանից մերոց յայտ առնեն, եթէ ոչ ունիմք մեք տաճար առանց ձեռագործի յերկինս, յոր մտանելոց են ամենայն դասք սոսկացելոցն յերկրաւոր ախտից: Կալուածք անդաստանաց մերոց կշտամբեն զմեզ, եթէ չէք մեր բաժին ի վիճակին երկնաւորս:

15. Մրգուզք անյագք եղաք ի կերակուրս, և առանց չափոյ արբաք զինի պղտորիչ խորհրդոց և մտաց: Խօր ի քուն ննջեմք ամենեքեան, և երագ թուի մեզ ճշմարտութիւնն: Կափուցեալ են աչք մտաց մերոց ի տեսական խորհրդոց, և անյագ պակշոտեալ հայել ի կեանս աշխարհիս: Արգելեալք զլսելս ի սուրբ ընթերցուածոց, և ունկնդիր եմք բառաչման խաշանց մերոց: Ոչ եկն մեզ հոտ անոյշ ի Հոգւոյն սրբոյ, վասն զի սիրեցաք մեք զհոտ ախտալից աշխարհիս: Ոչ ճաշակեցին քիմք ոգւոց մերոց զկերակուր երկնային, վասն զի պարարեցաք զանձինս մեր ի զանազան խորտիկս[2]: Մութ է գոյն դիմաց մե-

1. Քանի որ հալածանաց այլ եւս երկիւղ չէր մնացեր, և Կոստանդիանոսէն ի վեր քրիստոնէութիւնը բարձակից եղեր էր քաղաքական իշխանութեան, հաւատացելոց նաև մանաւանդ եկեղեցականաց բարքը շատ ինկած էր: Օգոստինոս, Ոսկեբերան և այլք դառնապէս գանգատած են իրենց ազգակից քահանայից և երբեմն ալ եպիսկոպոսաց ընթացքէն. առանց յանդիմանութեանց քովը Եղիշէինը յայժ քաղարկեալ և մեղմ կը մնայ: Հերոնիմոս աշխարհասէր եկեղեցականաց նկարագիրը ըրած ատեն կ'ըսէ թէ իշխանաց ապարանքէն չէին հեռանար, մեծատանց խնջոյից հրաւիրել տային զինքեանս, նոր փեսայի պէս հագուած օծուած և անուշահոտ իւղերով օծուած կը պտտէին. ամենէն ընտիր գինեօք և խորտկօք կը պարարէին, տունէ տուն այցելութեան գնացած ատենին նոյն իսկ քաղաքին փողոցներուն մէջ տեսանելի էին «հեծեալ ի նժոյգ սիգաճեմ որ թրակիոյ թագաւորաց նախանձը կրնար շարժել»:

2. Բաղանա լեզուաւ՝ խորտիկք, և արդի պարսկերէն խորտի, որպէս և հայերէնն՝ է ուտելի եփեալ համադրանօք, համադամք:

րոց, վասն զի ոչ զուարթացան երեսք մեր ի խորհուրդս սրբութեան։ Ցաւալից են անդամք մարմնոց մերոց, վասն զի յառաջ քան զմարմինս՝ զոգիս ախտացուցաք։ Գերեզմանաց բռեկոց նմանեցաք յանձինս մեր, վասն զի ունայն եմք ի շնորհաց սուրբ Հոգւոյն։

16. Վասն այսորիկ եւ ամենայն չարիք եկին հասին յաւուրս մեր. կենդանեաւ մերով տեսաք զդիակունս անձանց մերոց։ Բայց նահատակք մեր անկան ի պատերազմի, եւ սուրբ քահանայք մեր խողխողեցան ի ձեռաց անօրինաց. գեղեցիկ երիտասարդքն զենան ի սպանումն, եւ բազում կուսանք վարեցան ի գերութիւն. գիրգ կանայք անկան ի տառապանս այրութեան, եւ բազում որբք կականեն դառնապէս։ Ազատ եկեղեցի անկաւ ի ծառայութիւն հեթանոսաց, եւ սուրբ քահանայք նորա կոփին չարչարին յանօրէն հարկահանաց[1]։ Բարձեալ է ողորմութիւն յաշխարհէ, եւ հեռացեալ է գութ յիւրաքանչիւր մտաց։ Երկինք ի վերուստ բարկացեալ են, եւ երկիր ի ներքուստ կայ յերերի տատանման[2]։

17. Շինուածք մեր եղեն գերեզմանք դիականց մերոց, եւ վաստակք ձեռաց մերոց տապալեցան ի վերայ մեր։ Պայթեաց եւ պատառեցաւ թանձրութիւն երկրիս, եւ բազում մարդիկ ի վայր հոսեցին։ Ոչ սպասեաց որդի հօր, եւ ոչ քոյր զուշ եղբօր կալաւ, եւ ոչ եւ ձայն լալոյ կանանց ի վերայ ծննդոց իւրեանց, վասն զի լքոյց սով[3] զբերանս նոցա։ Հզօրք խորտակեցան յանկարծակի

1. Այս տողս ազատ բառին իմաստը կը ցուցանէ մեզ միանգամայն եւ ազատաց վայելած առանձնաշնորհութեանց գլխաւորը՝ որ էր հարկ չվճարել։ Թէպէտ աշխարհիկ ազատք ամենէն ծանրագոյնը «զհարկն արեան» կը վճարէին, բայց զինուորութիւնը պարտաւորութիւն մը չէր ի Հայս. այլ արտօնութիւն եւ նշան իշխանութեան։ Հարկ վճարողը՝ ծառայ այսինքն ստրուկ կամ գերի համարեալ էր։ Եղիշէ Վարդանայ պատմութեան մէջ կը բաժանէ զժողովուրդն յազատս եւ ի շինականս։ — Ուրիշ գրուածոյ մը մէջ կ'ըսէ. «Ամենեցուն փութալ արժան է ի պատուիրանս Աստուծոյ՝ առնել եւ կատարել, ազատաց եւ կանանց, ծառայից եւ ազատաց». մեկնութիւն Հայր մերին։

2. Մեծ գետնաշարժ մը եղած կ'երեւի Վարդանանց պատերազմէն քիչ եաքը, հանդերձ պատառուածօք երկրի, որոյ ահաւոր նկարագրութիւն մը կ'ընէ Եղիշէ յետագայ տողերուն մէջ։ Ցողբան Խորենացւոյ եւս կը գտնեմք սասանմանց եւ գզրգմանց յիշատակութիւնք. տես յէջ 555։

3. Խորենացւոյ Ողբոց մէջ կը կարդանք «գարուն երաշտացեալ, ամառն

իբրև զմայրս բարձունս Լիբանանու. հնծանք եղեն բարկութեան, և ճմլեցան ամենեքեան իբրև ողկոյզք ընդ ոտամբ, փոխանակ գինւոյ՝ արիւն անմեղաց ցայտեցաւ ի հանդերձս մեր: Դառնացաւ քան զլեղի կերակուր ի քիմս մեր, և ի քացախ դարձաւ ուրբ ըմպելիք մեր: Ընդ հարեալն հարաք ամենեքեան յոգի և ի մարմինս մեր, և ընդ մեռեալն զմահ ճաշակեցաք: Արդ ո՞չ ապաքէն վասն մերոյ հեզգութեան անցին այս անցք չարչարանաց ընդ աշխարհ:

18. Ո՛ն անդր ի բաց կաց յաշխարհէ, որ վաղդ ելեր մեկնեցար յաղեաց սորա. թօթափեալ ընկեա ի բաց զկեղեւանս ախտալից աշխարհիս: Մերկեաց իբր զըմբշամարտիկ, օծ իւղովն Քրիստոսի, զի մի կառեւցին ի քեզ ձեռք ախոյանին: Իսկ արդ եթէ հեթանոսք՝, որ ըմբռնեցան ի տեսական իմաստութիւն, ոչ միայն ի ստացուածոց ի բաց կացին, այլ և յօրինաւոր կերակրոց հրաժարեցին, համառօտ և անպաճոյճ ըմպելեօք շատացան յանձինս իւրեանց, և տապքինի մահուամբ վախճանեցան ի կատարած կենաց իւրեանց, ո՜րչափ ևս առաւել մեզ պարտիմք նմանողք լինել սիրելեացն Քրիստոսի, որք հրեշտակակրօնք զանձինս կարգեցին, խառնելով զինքեանս ի դասս վերնոցն:

19. Եկայք և մեք, ո՛վ միայնացեալք, զօրէն թշնամեայն մնացուք ի մերն ստացուած իբր յօտար երկիր, արմատախիլ զծառատունկս թշնամւոյն կոտորեսցուք. իբրև զգերի առեալ ծախիցեմք ի նեղեալս զինչս մեր, ոչ զի տայցեմք զազգականս, այլ զի սիրիցեմք զաղքատ-

անձրեւայոյզ, աշունն ձմեռնացեալ, ձմեռն սաստկատարոյց, մրրկալից, յերկարացեալ. հողմք ըքարարք, խորշակաբերք, ախտահասակք, ամպք հրընկէցք, կարկտածուք. անձրեւք անժամանակք և անպիտանք. օդք դառնաշունչք, եղեմնարկուք ջրոյն առաւելուլն անօգուտ և նուազելն անհնարաւոր. երկրի անբերութիւնք պտղոց եւ անածելութիւնք կենդանեաց, այլ և սատանմունք և դըղըրդմունք»։ Եղիշէի ակնարկած սովը կըրնայ հետեւանք մը ըլլալ ընդհանուր անբերութեան յորմէ կը գանգատի Խորենացին, կամ մասնական ուտելեաց պակասութիւն մը, որ կը յաջորդէ մեծամեծ երկրաշարժից, յորժամ ոչ բնակարան կը մնայ կանգուն, ոչ ջաղացք, ոչ փուռն և ժողովուրդը ապրատած ցիր ու ցան կ'ըլլայ:

1. Կ'ակնարկէ աստ զԱլայիկեանս և զայլ կարգս նախնի հելլէն իմաստնոց:

սըն, որ են զօրականք Քրիստոսի և ճշմարիտ բարե-խօսք: Ապա թէ աստէն կամիս ընչիւք, և քեզէն վարես զքեզ յանդարձ գերութիւն, ուր չիք անդ գինք փրկանաց: Փութա փութա ճեպեա, եղբայր, ապրել յայնպիսի անօգուտ գեհենէ. զի կարիցես հասանել յամուր քաղաքն, ուր ոչ գոյ քեզ կասկած կամ երկիւղ խախտել և վարել ի գերութիւն:

20. Եւ եթէ եկեսցես զհետ գեղեցիկ վարդապետութեան հարցն, զորս վերագոյնն գծագրեցի քեզ զվարս սուրբ միայնակեցացն, յայնժամ կարասցես համբառնալ զաչս մտացդ առանց ախտից չարչարանաց, հայել և տեսանել զքեզ զեր ի վերոյ քան զամենայն երկինս: Երանի տայցես անձինդ, քաջապէս ճողոպրեալ ի վշտալից կենաց աշխարհիս, և խառնեսցիս յերամ միայնակեցացն, ի գունդս սրբոց արդարոյն, ի վիճակ առաքելոցն, ի գումարս մարգարէիցն, ի կաճառս մարտիրոսացն, ի բանակս հրեշտակացն և ի ժողովս անդրանկացն, ի մեծ քաղաքն երկնից, ի բազմականսն աբրահամեան, և ի կերակուրս երկնային և յըմպելիս անկարօտս: Դու ես այնուհետև մարգարէն, որ ոչ պատուեցար ի մարմնական աշխարհիս, այլ թևածեալ թռուցար յանմարմին աշխարհի, և հանդուցեալ դադարեցեր յանապական ուրախութիւնսն: Ցորս լիցի և մեզ՝ վերջին գրչութեանս աշխատողացս[1] միաբանութեամբ սուրբ ուխտիս վայելել, շնորհօքն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն:

1. Չենք կարծեր որ այդ երեք բասերդ Եղիշէին ըլլան. զասոս բառնալով պարբերութիւնն ամբողջ է: Հաւանօրէն գրչագրաց կողմանէ աւելցուած են: — Այս ճառս ութերորդ Յեղանակին ժամանակամիջոցին մէջ գրուած կ'երևի: Քննէ զհատուածս 16 և 17. ճառիս:

